**Նվիրվում է**

**Վանցյանների գերդաստանի**
**արժանավոր ներկայացուցիչներ,**

**Հայրենական մեծ պատերազմի մասնակիցներ՝**

***Գրիգոր Պարույրի Վանցյանի***
**(ծնվ. 25.12.1922թ., գ. Բեժանո,**
**մասնագիտությամբ՝ մեխանիկ)**
**և**
***Լորենց Պարույրի Վանցյանի***
**(ծնվ. 28.04.1924թ., գ. Բեժանո,**
**մասնագիտությամբ՝ պանրագործ,**
**ԽՍՀՄ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր,**
**ԽՍՀՄ Ժողտնտեսության ցուցահանդեսի**
**ոսկե և արծաթե բազմակի մեդալակիր)**

**ՀՈԲԵԼՅԱՆՆԵՐԻՆ**

Посвящается
ЮБИЛЕЯМ

Достойных представителей семьи Ванцянов,
Участников Великой отечественной войны

*Григора Паруйровича Ванцяна*
(родился 25.12.1922г., с.Бежано, механик по професии)
и
*Лоренца Паруйровича Ванцяна*
(родился 28.04.1924г., с. Бежано, сыродел по професии,
орденоносец Трудового Красного Знамени СССР,
золотой и серебрянный многократный медалист
Выставки достижений народного хозяйства СССР)

НАЦИОНАЛЬНАЯ АКАДЕМИЯ НАУК РА
ИНСТИТУТ ИСТОРИИ

ФОНД “ПОДДЕРЖКА ДЖАВАХКУ”

ЛИТЕРАТУРНЫЙ ФОНД
“БРАТЬЯ АРМЕН И ТАТУЛ ГАРСЛЯНЫ”

ГРИГОР ВАНЦЯН

# СОБРАНИЕ СОЧИНЕНИЙ
## В ДВУХ ТОМАХ

**I**
ТОМ




ЕРЕВАН 2015

ՀՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԶԳԱՅԻՆ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

«ՋԱՎԱԽՔԻՆ ԱՋԱԿՑՈՒԹՅՈՒՆ» ՀԻՄՆԱԴՐԱՄ

«ԱՐՄԵՆ ԵՎ ԹԱԹՈՒԼ ՂԱՐՍԼՅԱՆ ԵՂԲԱՅՐՆԵՐ»
ԳՐԱԿԱՆ ՀԻՄՆԱԴՐԱՄ

ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑՅԱՆ

# ԵՐԿԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒ

## ԵՐԿՈՒ ՀԱՏՈՐՈՎ

## I

ՀԱՏՈՐ




ԵՐԵՎԱՆ 2015

**Գիրքը հրատարակվում է**
***«Արմեն և Թաթուլ Ղարսլյան եղբայրներ»***
**գրական հիմնադրամի**
**(բարերար՝ *Արմեն Ղարսլյան*)**
**և**
***«Ջավախքին աջակցություն»* հիմնադրամի**
**(բարերար՝ *Սերգեյ Վանցյան*)**
**նյութական միջոցներով**

Книга издается финансовыми средствами
Литературного фонда
*“Братья Армен и Татул Гарсляны”*
(благодейтель *Армен Гарслян*)
и
Фонда *“Поддержка Джавахку”*
(благодейтель *Сергей Ванцян*)

ՀՏԴ 811.19
ԳՄԴ 81.2Հ
Վ 228

**Գիրքը հրատարակության է երաշխավորել ՀՀ ԳԱԱ պատմության ինստիտուտի գիտական խորհուրդը**

Книга издается по рекомендации научного совета Института истории НАН РА

Ժողովածուն կազմել և հրատարակության է պատրաստել
***Վահե Սարգսյանը***

Сборник составил и подготовил к изданию
*Ваге Саркисян*

Վանցյան Գրիգոր
Վ 228 Երկերի ժողովածու երկու հատորով: Հատոր I/ Գրիգոր Վանցյան: Կազմ. Վ. Սարգսյան.- Եր.: «Գրական հայրենիք» ՓԲԸ («Հայաստան» հրատ.), 2015, 728 էջ:

Григор Ванцян: Собрание сочинений в двух томах , том1: /Составитель: В.Саркисян Ер.: ЗАО "Гракан айреник" (изд. "Айастан"), 2015, 728 стр:

Հատորում ամփոփված են անվանի լեզվաբան, հայագետ **Գրիգոր Վանցյանի (1870-1908 թթ.)** տարբեր տարիներին հրատարակած գիտական և հրապարակախոսական բնույթի հոդվածները, գրքերը, նամակները, ինչպես նաև հեղինակի առաջին գիրքը՝ «Հայ հեղինակները» (Թիֆլիս, 1910, 4-րդ հրատարակություն): Հեղինակի գործերի առաջին համահավաք ժողովածուն է: Նախատեսված է պատմաբան-ազգագրագետների, լեզվաբանների, ինչպես նաև ընթերցասեր լայն շրջանների համար:

В томе обобщены научые и публистические статьи, книги, письма известного лингвиста, армяноведа Григора Ванцяна, изданные в разные годы, а также первая книга автора "Армянские авторы" (Тифлис, 1910, IV издание). Первое целостное собрание трудов автора предназначено для историков-этнографов, лингвистов, а также широких кругов любителей чтения.

ՀՏԴ 811.19
ԳՄԴ 81.2Հ

ISBN 978-5-540-02371-9

# ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑՅԱՆ.
# ԿՅԱՆՔՆ ՈՒ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ՈՒՂԻՆ*

Ընդամենը 38 տարի է ապրել սույն երկհատորյակում զետեղված աշխատությունների հեղինակը: Խոսքը լեզվաբան, գրաքննադատ, հայերենի ու հայոց պատմության նվիրյալ ուսուցիչ Գրիգոր Վանցյանի մասին է: Ուսուցիչ, որն իր կարճատև կյանքի ընթացքում հասցրեց հրատարակել լեզվաբանական, գրականագիտական, պատմագիտական ու դասագրքային մեծարժեք գործեր, ժամանակի մամուլի էջերում զետեղել գրախոսականներ, գիտական հրապարակախոսական և այլ բնույթի հոդվածներ ու ակնարկներ:

Հիմնականում երկու հանգամանք է մեզ ստիպել կյանքի կոչել Գ. Վանցյանի ուսումնասիրությունները մեկ ամբողջական գրքով հրատարակելու վաղուց հասունացած մտահղացումը: Առաջինը` նորօրյա սերունդը կարող է առավել հեշտությամբ ծանոթանալ իրենից հարյուր տարի առաջ ստեղծված լեզվաբանական և գրականագիտական նվաճումների հետ, ուսումնասիրել տվյալ ժամանակի հայագիտական ընկալումներն ու տվյալ ոլորտի գիտական զարգացվածության աստիճանը: Երկրորդը` Գ. Վանցյանի աշխատությունների հայագիտական արժեքն այսօր էլ` շուրջ մեկ դար անց, բնավ չի խամրել. նշյալ գործերն արդիական են և՛ հայագիտական, և՛ լեզվաբանական, և՛ հայրենաճանաչողական կողմերից քննելիս:

* Տե՛ս նաև Վ.Սարգսյան, Գրիգոր Վանցյան. կյանքն ու ստեղծագործական ուղին, Պատմաբանասիրական հանդես, N 1 (198), 2015, էջ164-182:

Գրիգոր Խաչատուրի Վանցյանը ծնվել է 1870 թ. Ախալքալաքի գավառի Բեժանո գյուղում[1]:

Մանուկ հասակում մի կարճ շրջան սովորել է Սբ. Մինաս եկեղեցուն կից գործող ծխական դպրոցում: Նրա ծնողները, ապրելով նյութական չափազանց սուղ պայմաններում, ուսումնառության հարցում գրեթե ոչնչով չեն կարողացել օժանդակել իրենց որդուն, և վերջինիս մանուկ հասակից իր հովանու տակ է վերցրել քեռին՝ ուսումը բարձր գնահատող գյուղական ուսուցիչ՝ Գևորգ Խուդավերդյանը (մահացել է 1892 թ.), Գրիգորի սիրելի Հոպալիկը (փաղաքշաբար այդպես էր նրան դիմում Գրիգորը): Վերջինիս ջանքերով էլ Գ. Վանցյանը 1885թ. աշնանն ընդունվել է Ներսիսյան դպրոցի 2-րդ դասարան (այնտեղ սովորել է 1885–1890 թթ.): Գ. Վանցյանի ներսիսյանական և հետագա տարիների նվիրյալ ընկերներից մեկը՝ ալեքսանդրապոլցի Սիմե-

1. Գ. Վանցյանի կենսագրական որոշ տեղեկություններ զետեղված են «Բազմավեպ» ամսագրում (1910, թիվ 1, հունվար, էջ 35–38): Հ. Ք. Չրաքյանը, ընդառաջելով իր բարեկամ, Ջավախքում տասնամյակներ ապրած և ստեղծագործած վաստակաշատ մտավորական Ջալալ Տեր-Գրիգորյանի (Սալլումյան) խնդրանքին, հենց վերջինիս ուղարկած նյութերի հիման վրա էլ «Բազմավեպում» հրապարակում է Գ. Վանցյանի կենսագրականը՝ լուսանկարով հանդերձ: Արսեն եպիսկոպոս Ղլտճյանը (ավազանի անունով Սիմեոն), որպես Գ. Վանցյանի ներսիսյանական տարիների մտերիմ ընկեր, Հովհ. Թումանյանին նվիրված հուշագրության մեջ իր պարտքն է համարել անդրադառնալ նաև Թումանյանի՝ այդ շրջանի (1880-ական թվականների վերջեր) չորս ամենամոտ ընկերների՝ Արամ Առաքելյանի, Դաթիկո Շահլամյանի, իր և Գրիգոր Վանցյանի կենսագրականներին (Թումանյանը ժամանակակիցների հուշերում (այսուհետև՝ ԹԺՀ), Երևան, 1969, էջ 268–284): Գ. Վանցյանի համառոտ կենսագրականին են անդրադարձել նաև գրականագետ Արամ Ինճիկյանը (**Ա. Ինճիկյան**, Հովհաննես Թումանյան. Կյանքի և ստեղծագործության պատմությունը (1869–1899), Երևան, 1969, էջ 224–225), բ. գ. թ. Վ. Մաղալյանը (Վ. Ս. Մաղալյան, Հայ տեղական մամուլը և գրատպությունը Վրաստանում (1885–1990), Երևան, 2012, էջ 83), Գ. Վանցյանի տոհմի շառավիղ, «Ջավախք» հանրագիտարանի հեղինակ և գլխավոր խմբագիր, Ջավախքի ինտերնետային պորտալի (www.javakhk.am) հիմնադիր Սերգեյ Խուդավերդյանը [«Ջավախք», 2 (8), մարտ, 1995: Կենսագրական հոդվածը հրապարակվել է Գ. Վանցգյանի հայրենի Բեժանո գյուղի դպրոցը վերջինիս անունով անվանակոչելու առթիվ Ս. Խուդավերդյանի ունեցած ելույթի հիման վրա]:

ոն (Արսեն) Ղլտճյանն իր հուշերում պատմում է. «Վանցյանի գյուղացի ծնողքն անկարող էին նույնիսկ ամենաչնչին միջոց հայթայթել իրենց որդու ապրուստի համար, ուստի և քեռին, իր խիստ աղքատ միջոցներից ամսական ուղարկում էր երբեմն 3, երբեմն 4 ռուբլի: Ահա այդ դրամով Վանցյանը ապրում էր, դպրոց հաճախում և իր աշխատասիրությամբ լավագույն սովորողների շարքը մտնում: … Նյութական զոհողությունների գնով (իր վաստակածի 25 տոկոսը, ինչպես պատմում էր Վանցյանը) նա ամեն ինչ անում էր, միայն թե կարողանա օգնել քրոջ որդուն, նրան մարդ դարձնել»[2]: Ս. Ղլտճյանի վկայությամբ, Գ. Վանցյանը, իրենց զանգեզուրցի ընկեր Արամ Առաքելյանն ու ևս մեկ ընկեր Ներսիսյան դպրոցում ուսանելու տարիներին ապրել են Թիֆլիսի Սերեբրեննայա փողոցում գտնվող մի բնակարանում՝ շուրջ 3 տարի գտնվելով նյութական ծանր պայմաններում, մինչև որ դպրոցի հոգաբարձությունը Ա. Առաքելյանին նշանակել է թոշակ, իսկ իրեն ու Գ. Վանցյանին ընդունել դպրոցի գիշերօթիկ աշակերտների շարքը[3]: Մինչ այդ, երկու ընկերները՝ Ս. Ղլտճյանն ու Գ. Վանցյանը, շաբաթ և կիրակի օրերին երգել են Թիֆլիսի Մուղնու Սբ. Գևորգ եկեղեցում ու դրա դիմաց ստացել շաբաթական վարձավճար:

Ներսիսյան դպրոցում սովորելու տարիներին Գ. Վանցյանը մտերմանում է ապագա բանաստեղծ Հովհաննես Թումանյանի հետ[4]:

Երբ վերջինս նյութական ծանր դրության պատճառով ուսումը կիսատ թողած (Ներսիսյան դպրոցում սովորել է 1883–1887 թթ.) աշխատում էր Վրաստանի ու Իմերեթիայի թեմական կոնսիստորիայում, եկեղեցում երգելու բերումով ծանոթանում և մտերմանում է Ս. Ղլտճյանի հետ: Այնուհետև Հովհ. Թումանյանը վերջինիս ծանոթացնում է իր ներսիսյանական դասընկեր, Թիֆլիս վերաբնակված ախալցխացու ընտանիքից սերված Դաթիկո Շահլամյանի հետ: Շուտով այս

2. ԹԺՀ, էջ 275:

3. Նույն տեղում, էջ 276:

4. Գ. Վանցյանի և Հովհ. Թումանյանի մտերմության, «հնգյակի» ձևավորման ու ընկերների միջև ձևավորված կապերի մասին հիմնական տեղեկությունները քաղել ենք Սիմեոն (Արսեն) Ղլտճյանի վերը նշված հուշագրությունից, մի դրվագ էլ վերցրել ենք խմբակի մեկ այլ անդամի՝ Արամ Առաքելյանի պատմածից (ԹԺՀ, էջ 268–290):

«եռյակին» միանում են ևս երկու ներսիսյանականցի՝ Արամ Առաքելյանն ու Գրիգոր Վանցյանը: Այսպիսով՝ 1888 թ. գարնանից (1887–1888 ուսումնական տարվա կեսեր)[5] միմյանց գրեթե հասակակից հինգ հայ ներսիսյանականներ (որոնցից մեկը՝ նախկին) մտերմանալով, սկսում են հաճախակի հավաքվել Թիֆլիսի Նորաշենի փողոցում գտնվող Դ. Շահլամյանի սենյակում, որը գտնվում էր Հովh. Թումանյանի ապրած բնակարանի վերնահարկում: Փաստորեն, սկզբից «եռյակի», կարճ ժամանակ անց նաև «հնգյակի» կողմից Դ. Շահլամյանի սենյակում ձևավորված գրական-գեղարվեստական այս խմբակը (տե՛ս այդ մասին ստորև) հետագայում պետք է հիմք դառնար շուրջ մեկ տասնամյակ անց Հովh. Թումանյանի տանը ձևավորվելիք «Վերնատան» համար[6]: Ավելին, Ս. Ղլտճյանն այն անվանում է Հովh. Թումանյանի՝ ցարդ անծանոթ ու անհայտ մնացած առաջին «Վերնատունը», որտեղ և կոփվել է ապագա արձակագրի, գրական, ազգային ու հասարակական գործչի, մեծն լոռեցու բանաստեղծական տաղանդը: 18–19 տարեկան երիտասարդներից կազմված նորակազմ «հնգյակի» երեկոները Դ. Շահլամյանի սենյակում անցնում էին բուռն քննարկումների մթնոլորտում: Հովh. Թումանյանը կարդում էր իր նոր գրած բանաստեղծությունները, որոնք արժանանում էին ներկաների հիացմունքին կամ դիտողություններին. ապագա բանաստեղծը դարձել էր «հնգյակի» առանցքը, և այդ ճանապարհով են հղկվել նրա սիրված մի շարք բանաստեղծություններ ու գործեր: Նորաստեղծ խմբակի անդամ Ա. Առաքելյանն ահա թե ինչպես է նկարագրում իրենց առաջին հանդիպումը. «Նշանակված օրը հավաքվեցինք Շահլամյանի մոտ: Այնտեղ էր և Հովհաննես Թումանյանը: Մեր խոսակցությունը Թումանյանի գրվածքների շուրջն է պտտվում: Վերջում առաջարկեցինք հրապարակ բերել իր գրվածքները և հնարավորություն տալ մեզ ծանոթանալու: Թումանյանը համեստո-

5. ***Հովհաննես Թումանյանի***, կյանքի և ստեղծագործության տարեգրություն (1869–1908), Երևան, 2010, էջ 42:

6. ***Ա. Բաղդասարյան***. Վերնատունը՝ «Հայոց լեզուն և գրականությունը դպրոցում», 1990, N5, սեպտեմբեր-հոկտեմբեր, էջ 24:

րեն հրաժարվում էր, պատճառաբանելով, թե մի առանձին արժեքավոր բան չեն ներկայացնում այդ գրվածքները: Մեր համառությանն ու պնդումներին նա ստիպված եղավ զիջել: Իսկույն ներս գնաց և իր բնակարանից, որ նույն տան միջին հարկումն էր գտնվում, բերեց գրելու թղթի թերթերից կարած մի մեծ տետր, մատիտն էլ թելով վրան կապած: Տետրը ձեռքեձեռք անցավ, և թերթել սկսեցինք ու կարդալ մեկը մյուսի հետևից «Շունն ու Կատուն», «Արև ու Լուսին», «Ամառվա գիշերը գյուղում», «Գութանի երգը», «Աղոթք», «Հին օրհնություն», «Մարո», «Ալեք», «Նահատակ», «Լոռեցի Սաքոն» և մեկը մյուսից գեղեցիկ ու գողտրիկ ոտանավորները»[7]: Այնուհետև, 1889 թ. խմբակը որոշում է հրատարակել 20-ամյա Հովհ. Թումանյանի բանաստեղծությունների առաջին ժողովածուն և ձեռնամուխ է լինում դրա կազմմանը[8]: Նրանց հետ չի պահում անգամ նյութական միջոցների իսպառ բացակայությունը. վերջիններս որոշում են մեկնել գավառներ (Ա. Առաքելյանը՝ Ախալցխա, Գ. Վանցյանը՝ Ախալքալաք, Ս. Ղլտճյանը՝ Շիրակ, իսկ Հովհ. Թումանյանն ու Դ. Շահլամյանը մնում են Թիֆլիսում) և կազմակերպել հրատարակվելիք գրքի բաժանորդագրությունը: Ահա այս ճանապարհով է լույս աշխարհ գալիս Հովհ. Թումանյանի առաջին գիրքը[9]: Մի քանի տարի անց՝ 1893 թ. ապրիլի 8-ին, Գ. Վանցյանը Հովհ. Թումանյանին Ախալքալաքից գրած նամակով, խոսելով բանաստեղծի առաջին շրջանի բանաստեղծություններից մեկի՝ «Կանչի» մասին, իր հիացմունքն է հայտնում հետևյալ խոսքերով. ««Կանչը» ամեն տեղ ֆուրոր է անում. «Это действительно высокохудожественное произведение». Եթե, Հով-

7. ***Ա. Առաքելյան***, Ընկերոջս հիշատակին.– ԹԺՀ, էջ 288: Այս մասին տե՛ս նաև «Աղոթք» բանաստեղծության (գրվել է 1887 թ. փետրվարին) ծանոթագրությունը. ***Հովհ. Թումանյան***. Երկերի լիակատար ժողովածու (այսուհետև՝ ԵԼԺ), հ. 1, Երևան, 1988, էջ 546–547:

8. ***Ա. Ինճիկյան***. նշվ. աշխ., էջ 230:

9. Տե՛ս ***Հ. Թումանյանց***. Բանաստեղծություններ, Մոսկվա, 1890, 98 էջ: Հովհ. Թումանյանի աշխատանքների տպագրման գործում իր ընկերների նվիրվածության մասին է պատմում «հնգյակի» անդամ Արամ Առաքելյանը (ԹԺՀ, էջ 285–290):

հաննես ջան, ուրիշ ոչ մի բան չգրեիր, այդ ստեղծագործությունդ բավական էր քեզ բանաստեղծի կոչմանն արժանացնելու: Ունիս, այո՛, ուրիշ գեղեցիկ բաներ, ունիս և շատ թույլ բաներ, բայց «Կանչը», դա գլուխգործոց է, դա մի գոհար է»[10]: 1901 թ., երբ Հովհ. Թումանյանը հանգստանում էր Ախալցխայի Ուրավել առողջարանում, նամակներից մեկում նշում է, որ այնտեղ ոչ միայն ճանաչում են իր բանաստեղծությունները, այլև շատերն անգիր գիտեն իր «Եթե կաս, աստված» («Կանչ» բանաստեղծության առաջին տողն է) ոտանավորը[11]: Հավելենք նաև, որ ընկերները մեծ վիշտ ապրեցին, երբ Դ. Շահլամյանը, գտնվելով հոգեկան ծանր ապրումների մեջ, 1894 թ. ինքնասպանությամբ հեռացավ կյանքից: Հետագայում՝ 1908 թ., նույնը պետք է տեղի ունենար նաև «հնգյակի» մեկ այլ անդամի՝ Գ. Վանցյանի հետ:

Գ. Վանցյանի և Հովհ. Թումանյանի պատանեկան տարիների հարաբերությունները հետագայում ծնունդ տվեցին բանաստեղծի մեկ այլ անմահ ստեղծագործության՝ «Փարվանա» բալլադին: Ջավախքում Փարվանա լճի և կրակի մեջ այրվող թիթեռների մասին տարածված զրույցները Հովհ. Թումանյանն առաջին անգամ լսել է Գ. Վանցյանից: Այս մասին խոստովանում է ինքը՝ բանաստեղծը, «Իմ մի քանի գրվածքների բացատրությունը» վերնագրի «Փարվանա, Վանցյան և Փշրանքներ թե Ջավախքի բուրմունք» ինքնակենսագրական գրառումների մեջ (Հովհ. Թումանյանն այստեղ հիշատակում է այն սկզբնաղբյուրները, որոնց շնորհիվ մտահղացել է գրելու իր այս կամ այն գործը)[12]: Իսկ Հովհ. Թումանյանի ժառանգների ընտանեկան արխիվում պահվող N 8 (3) ծոցատետրում բանաստեղծը «Փարվանային» վերաբերող այսպիսի գրառում ունի. «(Գրիգորն է լսել

10. ***Հովհ. Թումանյան***. Ուսումնասիրություններ և հրապարակումներ, հ. 4, Երևան, 1985, էջ 313, հմմտ.՝ Հովհ. Թումանյան. ԵԼԺ, հ. 1, էջ 566: 1891 թ. փետրվարին գրված այս բանաստեղծությունը ժամանակի գրաքննությունն արգելել է տպագրելու «Մուրճ» ամսագրում, որի պատճառով այն առաջին անգամ տպագրվել է բանաստեղծի հիշյալ ժողովածուում:

11. ***Հովհ. Թումանյան***. ԵԼԺ, հ. 9, Երևան, 1997, էջ 251–252:

12. **Է. Ջրբաշյան**. Հ. Թումանյանի ինքնակենսագրական գրառումները, ՊԲՀ, 1966, N 1, էջ 184, 186:

Ախալքալաք): Փարվանա (կրակի թիթեռ) թագավորը մի աղջիկ է ունենում, ասում է՝ ով որ կրակ բերի, նրան կտամ: Դա գալիս է, կրակի շուրջը պտտվում, որ կրակ տանի և միշտ ընկնում է մեջը, այրվում»[13]: «Փարվանա» լեգենդի մշակման նպատակով Հովհ. Թումանյանն առաջին անգամ Գանձա է այցելել 1901 թ. օգոստոսի 22–25-ը, օգոստոսի 23-ին այցելել է Գանձայից ոչ հեռու գտնվող Փարվանա լիճ[14]:

Այցի մասին տեղեկություններ իրենց հուշերում հանգամանորեն ներկայացնում են Վ. Տերյանի ավագ եղբայր Ջավախեցին, ինչպես նաև Ջավախքում հայտնի մտավորականներ Ջալալ Տեր-Գրիգորյանը (Սալլումյանը) և Վարդան Շահպարոնյանը[15]: Ջավախեցին, որը Գանձա և Փարվանա այցի ողջ ընթացքում ուղեկցել է Հովհ. Թումանյանին, իր հուշերում մանրամասն նկարագրելով բանաստեղծի՝ Ջավախքի բնության տեսարաններից ոգեշնչված ապրումները, բարձր տրամադրությունն ու արտաբերած խոսքերը, ավելացնում է, որ «Փարվանայի» նախերգանքը բանաստեղծը գրել է իրենց իսկ տանը՝ երեկոյան ընթրիքի սեղանի շուրջ բոլորած գանձացիների առջև, Փարվանա լճի ափից վերադառնալուց անմիջապես հետո[16]:

Գ. Վանցյանի և Հովհ. Թումանյանի միջև նամակագրական կապը շարունակվում է հետագայում, երբ Գ. Վանցյանը 1890-ական թվականներին արդեն ուսուցիչ էր, այնուհետև ուսանող: Նամակների բովանդակությունը հիմնականում վերաբերում է երկու մտերիմ ընկեր-

---

13. ***Հովհ. Թումանյան***. Ուսումնասիրություններ և հրապարակումներ, հ. 5, Երևան, 1998, էջ 253, հմմտ.՝ հ. 2, Երևան, 1969, էջ 420, 459, հմմտ.՝ Հովհ. Թումանյան. ԵԼԺ, հ. 2, Երևան, 1990, էջ 545, 558:

14. ***Հովհ. Թումանյան***. ԵԼԺ, հ. 9, էջ 274–275, 277, 601: 1901 թ. օգոստոսի 21-ով թվագրված և Ախալքալաքից Օլգա Թումանյանին ուղղված նամակում Հովհ. Թումանյանը նշում է. «Նամակս հենց վերջացրի, ուզեցի փակել, մի գյուղից մարդիկ եկան հրավիրելու իրենց գյուղը. չկարողացա ոչ մի կերպ մերժել. վաղը գնալու ենք» (նույն տեղում, էջ 275): Իր մեկ այլ նամակում բանաստեղծը նշում է, որ Գանձայում մնացել է 3 օր (նույն տեղում, էջ 277):

15. ***Ջ. Տեր-Գրիգորյան***, Ախալքալաքյան հանդիպումներ.– ԹԺՀ, էջ 400–415, ***Վ. Շահպարոնյան***. Անմոռանալի օրեր.– ԹԺՀ, էջ 416–422, ***Ջավախեցի***. Փարվանայի ափին.– ԹԺՀ, էջ 423 – 436:

16. ***Ջավախեցի***, նշվ. աշխ., էջ 423–436:

ների միջև տեղի ունեցող գրքափոխանակությանը, Հովի. Թումանյանի անդրանիկ ժողովածուների տպագրության և բաժանորդագրության հարցերին[17], Գ. Վանցյանի՝ գավառներից արված թղթակցություններին, հետաքրքրվել են ինչպես իրենց, այնպես էլ մյուս ընկերների վիճակով: Գ. Վանցյանն իր նամակներում հաճախակի անդրադարձել է նաև Հովի. Թումանյանի ստեղծագործությունների քննության հարցին, երբեմն ահա նման հորդորով դիմել բանաստեղծին. «... Չմոռանաս նախկին ուղղությունդ, չմոռանաս այն ժողովուրդը, որ քեզ ծնել է. երգի՛ր ժողովրդի ցավն ու վիշտը, հոգսն ու թշվառությունը: Սաքոներիդ ձեռից բաց չթողնես»[18]: Մեկ այլ նամակում Թումանյանի ստեղծագործությունները բնութագրում է որպես «ժողովրդական ոգու արտահայտություն՝ արվեստով արտաբերված»[19]: Հայրենիքում չորս տարի ուսուցչությամբ զբաղվելուց և իր ուսումնասիրությունների համար դաշտային նյութեր հավաքելուց հետո Գ. Վանցյանը մեկնում է Մոսկվա, ապա՝ Ս. Պետերբուրգ, որտեղից էլ՝ Ա. Արասխանյանի միջնորդությամբ Թիֆլիսի Ներսիսյան դպրոցի հոգաբարձությունն իր որոշմամբ ու միջոցներով նրան ուղարկում է Գերմանիա, որտեղ պետք է սովորեր մանկավարժություն[20]: 1895–1899 թթ. Գ. Վանցյանը սովորում է Բեռլինի համալսարանում, որը, չնայած ուսումնառության հաջող ընթացքին, ցավոք, չի կարողանում ավարտել, քանի որ Ներսիսյան դպրոցի հոգաբարձությունը չի ցանկանում ևս մեկ տարով երկարացնել Գ. Վանցյանի ուսման շրջանը, որպեսզի դրանով վերջինս կարողանար գրել իր դիսերտացիան ու ներկայանար քննության[21]:

Բեռլինից ևս շարունակվում է Գ. Վանցյանի նամակագրությունը

17. Նամակներից մեկը՝ թվագրված 1892 թ. փետրվարի 18-ով, վերաբերում է Թումանյանի անդրանիկ ժողովածուի երկրորդ հատորի տպագրմանը, որի առթիվ Գ. Վանցյանը մասնավորապես գրում է. «Գրքիդ II հատորի այդպիսի շուտափույթ տպագրության հանձնելը ինձ զարմացնում է, հույս ունի՞ս, որ ծախքդ հանես, կամ առաջին գրքիդ ծախքը հանեցի՞ր» (***Ա. Ինճիկյան***, նշվ. աշխ., էջ 319–320):

18. Նույն տեղում, էջ 249:

19. Նույն տեղում, էջ 250:

20. «Բազմավեպ», 1910, թիվ 1, հունվար, էջ 36:

21. ԹԺՀ, էջ 276:

Թումանյանի հետ: Հատկապես հետաքրքրական է 1895 թ. դեկտեմբերի 18-ին նրա գրած նամակը, որտեղ պատմելով Գերմանիայում իր ուսանողական կյանքի, գերմանացիների կենցաղի ու սովորույթների մասին, մասնավորապես գրում է. «Չգիտեմ, քեզ ի՞նչ է պատահել. քնարդ լռեցրել ես: «Հորիզոն» մի՞թե այլևս չպիտի հրատարակեք: – Բաց արա քնարիդ ձայնը լսենք և ուրախանանք: Գեթ նամակ գրի՛ր, երկա՛ր, մանրամասն: Թիֆլիսից չենք ստանում համարյա ո՛չ լրագիր և ո՛չ նամակ. ուստի երևակայիր, որ քու նամակդ եթե բազմաբովանդակ լինի ամեն տեսակ մեր ներքին և արտաքին կյանքին վերաբերող լուրերով, Բեռլինի ամբողջ հայ ուսանողության շնորհակալությանը պիտի արժանանաս»[22]: Գ. Վանցյանի և Հովհ. Թումանյանի միմյանց ուղղված նամակներից մի քանիսը հրապարակվել են «Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ» նյութերի ժողովածուների հատորներում: Ցավոք, որոշ նամակներ չեն պահպանվել, իսկ մնացած մասը գտնվում է Ե. Չարենցի անվան գրականության և արվեստի թանգարանում, Հովհ. Թումանյանի ֆոնդում[23]:

Ինչպես նշեցինք, Գ. Վանցյանը Ներսիսյան դպրոցում ուսումնառությունից հետո ուսուցչությամբ է զբաղվել հայրենի Ջավախքում՝ Ախալքալաքում՝ միաժամանակ աշխատակցելով Թիֆլիսում լույս տեսնող «Մուրճ» ամսագրին[24]: Դեռևս ուսանելու տարիներին նա մեծ հետաքրքրություն է ցուցաբերել լեզուների ազգակցության, առանձին ժողովուրդների ծագումնաբանական խնդիրների նկատմամբ, կատարել ուսումնասիրություններ բոշաների շրջանում և երկու մասով հրատարակել է «Հայ բոշաներ» աշխատությունը[25], որը հանդիսացել է նրա առավել ծավալուն աշխատանքի մի մասը. «... Մեր աշխատա-

22. ***Հովհաննես Թումանյանի*** կյանքի և ստեղծագործության տարեգրություն (1869–1908), էջ 257:

23. Գ. Վանցյանի և Հովհ. Թումանյանի՝ նամակագրության մասին մանրամասն տեղեկությունները տե՛ս Հովհաննես Թումանյանի կյանքի և ստեղծագործության տարեգրություն (1869–1908), էջ 104, 105, 117, 120, 152, 153–154, 168–169, 171–172, 179, 180, 182, 185, 186–187, 188, 192, 196, 201, 208–209, 257:

24. Գ. Վանցյանի՝ «Մուրճ» ամսագրին աշխատակցելու մասին հիշատակությունը, տե՛ս «Մուրճ», 1892, թիվ 9, էջ 1382, 1894, թիվ 10, էջ 1520 և այլն:

25. «Մուրճ», 1892, թիվ 7–8, 9:

կից պ. Գ. Վանցյանը գրում է մեզ՝ թե այդ հոդվածը հանված է իր մի ավելի ընդարձակ աշխատասիրությունից...»[26]: Հետագայում «Մուրճ» ամսագրում տպագրված այս աշխատությունը թարգմանվում է ռուսերեն և ընդգրկվում «Կովկասի տեղանքի և ցեղերի նկարագրության նյութերի» բազմահատոր ժողովածուի մեջ[27]: Ռուսերեն այս տարբերակն էլ իր հերթին թարգմանվել և տպագրվել է Փարիզում լույս տեսնող «Բանասեր» հանդեսում[28]: Գ. Վանցյանի այս աշխատանքի առթիվ կենսագիր Հ. Ք. Չրաքյանը գրում է. «Կարելի է ըսել թե նա Ախալքալաքի և շրջակա գյուղերուն մեջ ցրված ամեն մեկ Հայ–Բոշա ընտանիքի մեջ մտած է, ուսումնասիրած է անոնց նիստ ու կացը, կենցաղը, սովորությունները, ընտանեկան կյանքը և գլխավորապես Բոշաներու լեզուն»[29]: Շուրջ երկու տարի անց՝ 1894 թ., Գ. Վանցյանը հրապարակում է բոշաների մասին իր անտիպ աշխատության մի նոր հատված «Պատմական ակնարկ բոշաների անցյալից» խորագրով[30], ուր հեղինակն անդրադառնում է այդ ժողովրդի անվան, ծագումնաբանական, Հայաստան մուտքի և զբաղեցրած բնակավայրերի, նաև քրիստոնեացման խնդիրներին: Չնայած «Մուրճ» ամսագիրը, ինչպես և վերջինիս անվան հիշատակումն արգելված էր Օսմանյան Թուրքիայի տարածքում և այնտեղ լույս տեսնող մամուլում, այդուհանդերձ, Գ. Վանցյանի սույն հոդվածը նույն ժամանակ ամբողջապես արտատպվում է Կ. Պոլսի «Հայրենիք» օրաթերթում[31]: Բեռլինում ուսանելու ժամանակ՝ 1897 թ., դարձյալ «Մուրճ» ամսագրում տպագրում է հայ բոշաներին նվիրված ևս մեկ աշխատանք[32], որտեղ գնչու–բոշաների հոգեբանական, սովորութային գծերը քննելուց զատ, անդրադառնում է նաև վերջիններիս մտավոր ունակություննե-

26. «Մուրճ», 1892, թիվ 9, էջ 1382:

27. *Г. Ванциан*, Армянские цыгане.– Сборник материалов для опи са ния местностей и племен Кавказа, вып. 29, отд. 1. Тифлис, 1901, с. 45–70.

28. Հայ գնչուներ ***(Գ. Վանցյանի)***, ռուս. թարգմ.՝ ***Մ. Մապենճյան***. «Բանասեր», հ. 9, N11, Փարիզ, 1907, էջ 34–52:

29. «Բազմավեպ», թիվ 1, հունվար, 1910, էջ 35:

30. «Մուրճ», 1894, թիվ 7–8, էջ 1066–1088:

31. «Մուրճ», 1894, թիվ 10, էջ 1520–1521:

32. «Մուրճ», 1897, թիվ10, էջ 1394–1403:

րին, գիտության, արվեստի մեջ ունեցած դրսևորումներին: Հեղինակն այստեղ թվարկում է տարբեր ազգերի մի շարք հայտնի անձանց անուններ, որոնք ծագումով այս ցեղից են: Հայերի մեջ Գ. Վանցյանն առանձնացնում է Հարություն վարդապետ Ալամդարյանին, Քերովբե Պատկանյանին (Հ. Ալամդարյանի քրոջ զավակը, բոշայական ծագումը՝ մորական կողմից ծագումով բոշա) և աշուղ Հանես–օղլուն (ծննդյան անունով՝ Պողոս): Հայ բոշաների մասին նրա հոդվածաշարը ավարտվում է «Մուրճում» 1899 թ. տպագրած գրախոսականով[33], որտեղ հեղինակն անդրադառնում է Վրթանես Փափազյանի հրատարակած և հայ բոշաների կյանքը ներկայացնող աշխատությանը[34]: Գրախոսականում Գ. Վանցյանը թե՛ քննադատում է այդ աշխատանքը՝ անելով անհրաժեշտ դիտողություններ, թե՛ նշում է առավելություններն՝ արժևորելով դրանք:

Ախալքալաքում Գ. Վանցյանի ուսուցչության տարիները (1890–1894 թթ.) ներկայացնող մի փոքրիկ դրվագ է հիշատակում Հովհ. Թումանյանի ուսանողական տարիների մտերիմներից Հովհաննես Խիզանյանը, որը 1894 թ. ամռանը Անդրեաս Բարխուդարյանի հետ որոշել է գնալ Անի[35]: Վերջիններս ընտրել էին Թիֆլիս–Միխայլովո (այժմ՝ Խաշուր) կայարան (երկաթուղով) – Բորժոմ–Բակուրիան–Ցխրա–Ծղարոյի լեռնանցք (Թռեղքի լեռներ) – Ախալքալաք (ոտքով) երթուղին: Հովհ. Թումանյանը Գ. Վանցյանին և իրեն ծանոթ ախալքալաքցի այլ ուսուցիչներին ուղղված նամակներ է հանձնում Հովհ. Խիզանյանին: Դրանցում բանաստեղծը պատվիրում է պատշաճ ընդունել և աջակցել Հովհ. Խիզանյանին ու իր ընկերոջը: Բնականաբար, արձագանքը լինում է սպասվածից ավելին. «Ախալքալաքում մենք սիրալիր ընդունելություն գտանք տեղական մտավորականության՝ ուսուցիչների կողմից, որոնց թվում էին Ջալալ Տեր–Գրիգորյանը, Գրիգոր Վանցյանը և Սեդրակ Աղաբալյանը. վերջիններս միա-

33. «Մուրճ», 1899, թիվ 9, էջ 1079–1081:

34. Տե՛ս ***Վ. Փափազյան***, Հայ բոշաներ (Ազգագրական ուսումնասիրություն), Թիֆլիս, 1899, 99 էջ:

35. ***Հովհ. Խիզանյան***, Բանաստեղծի հետ. ԹԺՀ, էջ 374–378:

ցան մեզ, և մենք ուղևորվեցինք Ալեքսանդրապոլ»[36],– գրում է Հովի. Խիզանյանը:

1890-ական թվականներին և 1900-ական թվականների սկզբներին Գ. Վանցյանը լեզվաբանությանն առնչվող հոդվածներով հանդես է գալիս «Մուրճ» (Թիֆլիս), «Հանդես ամսօրյա» (Վիեննա), «Անահիտ» (Փարիզ) և այլ հանդեսներում, որոնք հետագայում հիմք դարձան գրքի ամբողջական հրատարակման համար: Բացի վերը նշված բնույթի հոդվածներից՝ նա մամուլում հանդես է գալիս նաև Ջավախքի ուսումնարաններին և ուսուցիչներին, քահանայական խնդիրներին, ջավախահայության ծեսերին ու սովորույթներին, Բաքվի, Եվրոպայի հայությանն առնչվող, տարբեր ցեղերի ծագումնաբանությունը ներկայացնող, փիլիսոփայական հարցեր շոշափող մի շարք հոդվածներով, գրախոսականներով, թարգմանություններով և այլն[37]:

Եվրոպայից հայրենիք վերադառնալուց հետո Գ. Վանցյանը շուրջ մեկ տարի աշխատում է Երևանի թեմական դպրոցում[38], որից հետո նրան հրավիրում են Թիֆլիսի առևտրական դպրոցում հայերեն դասախոսելու, որտեղ էլ աշխատում է մինչ իր եղերական վախճանը:

Մեր նյութի շարադրանքի ժամանակագրական սկզբունքը չխախտելու համար անդրադառնանք մի դրվագի, որը վերաբերում է Գ.

36. Նույն տեղում, էջ 377:

37. Եվրոպայում սովորելու տարիներին Գ. Վանցյանը ակտիվորեն օժանդակել է Թիֆլիսի հայկական մամուլի խմբագրություններին՝ վերջիններիս տեղեկություններ հայտնելով Եվրոպայի տարբեր բուհերի հայ ուսանողների թվի, տեղաբաշխվածության և այլնի մասին. «Զայնակցելով մեր հրավերին՝ ուսանողների մասին ստատիստիկական տեղեկություններ տալ՝ մեր աշխատակից պ. Գրիգոր Վանցյանն ուղարկել է մեզ ցուցակներ ձմեռվա կիսամյակի հայ ուսանողների Բեռլինի, Հալլեի, Ստրասբուրգի և Մարբուրգի համալսարաններում և Դարմշտատի պոլիտեխնիկումի՝ նոցա վերաբերյալ յոթ հարցերի պատասխաններով: Թողնելով այդ ցուցակների հրատարակումը գալ անգամին՝ առայժմ տալիս ենք հետևյալ թվանշանները. Հայ իսկական ուսանողների թիվն է Բեռլինում 26, Հալլեում 3, Ստրասբուրգում 1, Մարբուրգում 1, Դարմշտատում 3» («Մուրճ», 1898, թիվ 4, էջ 583):

38. Հ. Ք. Չրաքյանը գրում է. «Երևանու թեմական դպրոցը նախ օգտվեցավ տարի մը Վանցյանի ուսուցչութենեն, իր վերադարձին (Եվրոպայից (Բեռլինից), ուր ուսանում էր – Վ. Ս.), վասն զի հետո հրավիրվեցավ Թիֆլիզու առևտրական դպրոցին մեջ հայերեն դասախոսելու և այդ պաշտոնին մեջ ալ մեռավ» («Բազմավեպ», 1910, թիվ 1, հունվար, էջ 36–37):

Վանցյանի և հայ մեծանուն երաժշտագետ Կոմիտաս Վարդապետի միջև տեղի ունեցած մի անախորժ դեպքի: 1900 թ. սկզբներին[39] դեռևս անհայտ հանգամանքներում Կոմիտասի մասին մամուլում հրապարակվում է անստորագիր հոդված, որտեղ հոդվածագիրը ոչ դրական գույներով ներկայացնելով Բեռլինից նոր վերադարձած հայ երաժշտագետին՝ եզրակացնում է. «Երեք ու կես տարում կոշկակարություն սովորել չի կարելի, չէ թե երաժշտություն»[40]: Այս անստորագիր հրապարակումը անհայտ հանգամանքներում վերագրում են Գ. Վանցյանին: Կոմիտասի աշակերտներից մեկը՝ երգիչ Վահան Տեր-Առաքելյանը, «Անհիշաչար մարդը» խորագրով իր հուշագրության մեջ պատկերավոր ներկայացնում է ինչպես վերոնշյալ հրապարակմամբ պայմանավորված Կոմիտասի ապրած վիշտը, այնպես էլ՝ 1900 թ. ապրիլյան մի կիրակի Էջմիածնում, Կոմիտասի մոտ տեղի ունեցած հանդիպումը, որին անակնկալ ձևով միացել են նաև վիպասան Վրթ. Փափազյանը և Գ. Վանցյանը. «…Ներս մտավ վիպասան Վրթանես Փափազյանը, ձեռքին ջութակի ֆուտլյար, և կարճահասակ, գիրուկ մի մարդ, որին ներկայացրեց Փափազյանը, Կոմիտասի հետ ողջագուրվելուց հետո, ասելով. «Հայ–բոշաների բանասեր Գրիգոր Վանցյան»: Վերջինս կարմրեց և իր մազոտ աջով ամուր սեղմեց մեր ձեռքը, մնալով կանգնած՝ մի տեսակ շփոթված դրությամբ»[41]: Հանդիպմանը Կոմիտասը դաշնամուրով նվագում և երգում է ժողովրդական երգեր,

39. Կոմիտասը Բեռլինում սովորում է շուրջ երեք տարի և հայրենիք վերադառնում 1899 թ. սեպտեմբերին (Ռ. Թերլեմեզյան. Կոմիտաս, Երևան, 1992, էջ 31): Վահան Տեր-Առաքելյանը, ում հուշագրությունից տեղեկանում ենք Կոմիտասի և Գ. Վանցյանի հանդիպման մասին, նշում է, որ այդ հանդիպումը տեղի է ունեցել ապրիլ ամսին, Կոմիտասի արտասահմանից վերադառնալուց 6–7 ամիս անց: Իսկ հանդիպումից շաբաթներ առաջ մամուլում հրապարակվել էր խնդրո առարկա հոդվածը (տե՛ս Կոմիտաս: Ժողովածու՝ նվիրված Կոմիտասի ծննդյան 60 ամյակին, կազմեց Ռ. Թերլեմեզյանը, Երևան, 1930, էջ 96–101):

40. ***Կոմիտաս***, Ժողովածու… էջ 97, հմմտ.՝ ***Ռ. Թերլեմեզյան***. նշվ. աշխ., էջ 53, հմմտ.՝ ***Ի. Յոլյան***. Կոմիտաս, Երևան, 1969, էջ 31:

41. ***Վ. Տեր-Առաքելյան***, Անհիշաչար մարդը.– Կոմիտաս. Ժողովածու…,էջ 98, հմմտ.՝ ***Ռ. Թերլեմեզյան***. նշվ. աշխ., էջ 54: Վ. Տեր-Առաքելյանի հուշագրությունն ամբողջությամբ տե՛ս նաև ***Վ. Տեր-Առաքելյան***. Անհիշաչար մարդը.– Կոմիտասը ժամանակակիցների հուշերում և վկայություններում, Երևան, 2009, էջ 49–53:

որոնք կախարդում են ներկաներին: Այնուհետև արագորեն նոտագրում և դաշնամուրի վրա կատարում է իր խնդրանքով Վրթ. Փափազյանի կողմից ջութակով կատարած քրդական «Լուրդալուրը», որն առաջացնում է ներկաների, այդ թվում՝ Գ. Վանցյանի զարմացական բացականչությունը: Հանդիպման ավարտին Գ. Վանցյանը ներողություն է խնդրում Կոմիտասից, իսկ վերջինս այսպես է արձագանքում. «Երկու կոպեկ տուր, հոդվածի դառնությունը տանք քամուն»: «Հայր սուրբ ջան, երկու էլ, տասներկու էլ կտամ, միայն ներեք ինձ»,– լինում է Գ. Վանցյանի պատասխանը: «Ոչ, ճիշտ երկու կոպեկ»,– կրկնում է Կոմիտասը: «Մի քանի տարվա ընթացքում այդպես հավաքված երկու կոպեկներով Կոմիտասը Պարիզում հրատարակեց «Հայ Քնար» գեղջուկ երգերի իր առաջին ժողովածուն»[42], – այսպես է ավարտում իր հուշագրությունը Վ. Տեր-Առաքելյանը:

Գ. Վանցյանի և Կոմիտասի վերոնկարագրյալ հանդիպման և՛ փաստը, և՛ հանդիպման բնույթն արդեն իսկ վկայում են, որ Գ. Վանցյանը հազիվ թե հանդես գար նման հոդվածով: Հիրավի, եթե Վանցյանը քեն քշեր Կոմիտասի հանդեպ և նպատակ ունենար ոչ իր անունից պախարակելու նրան, ապա հազիվ թե այցելեր վերջինիս և բարեկամաբար սեղմեր նրա ձեռքը: Միաժամանակ, տաղանդավոր լեզվաբանի ու հայրենապաշտ անձնավորության կողմից հազիվ թե չնկատվեր Կոմիտասի տաղանդը և կասկածի տակ առնվեր Կոմիտասի կողմից «երեք տարում երաժշտություն սովորելու» իրողությունը: Այս հանգամանքները, կարծում ենք, հաստատում են, որ նշյալ անստորագիր հոդվածը գրվել է Կոմիտասի դեմ գործող բոլորովին այլ անձնավորության, խմբագրության կամ հաստատության պատվերով, իսկ թե ինչու է շրջանառվել Գ. Վանցյանի անունը, դժվար է ասել: Ինչ վերաբերում է Վանցյանի ներում հայցող խոսքերին և դրանցով նշյալ գրությունը փաստացի իրեն վերագրելուն, ապա դրանով վերջինս, ըստ երևույթին, կամեցել է շուտափույթ հարթել կնճռոտ պահը և, առավել մոտիկից զգալով Կոմիտասի բնավորության գծերը, չի կամեցել ծավալվել խնդրի բուն էության մեջ:

42. ***Վ. Տեր-Առաքելյան***, Անհիշաչար մարդը. Կոմիտաս: Ժողովածու…, էջ 101:

1900–1901 թթ. Գ. Վանցյանը հոդվածներով, գրախոսականներով և ակնարկներով հանդես է գալիս Թիֆլիսի «Տարազ» հանդեսում[43], իսկ 1904–1905 թթ. Թիֆլիսի «Լումա» ամսագրում հրապարակում է երեք աշխատանք, որոնցից երկուսը լեզվաբանական են («Նյութեր հայերենի մշակության համար», «Լումա», 1904, թիվ 5, էջ 180–184, «Հայերենը մշակելու նյութեր», «Լումա», 1905, թիվ 1, էջ 101–104), մեկը՝ իմաստասիրական բնույթի («Փիլիսոփայական զրույցներ», «Լումա», 1904, թիվ1, էջ 94–110): Եթե հաշվի չառնենք «Լումայի» մեջ տպագրված վերոբերյալ երեք գործերը, ինչպես նաև «Մշակում» և գերմանական որոշ թերթերում[44] հրատարակված սակավաթիվ հոդվածները, ապա, կարելի է ասել, որ Եվրոպայում ուսումնառությունից հետո Գ. Վանցյանն այնքան էլ ակտիվորեն հանդես չի եկել մամուլում, փոխարենը հայ հանրության դատին է հանձնել մի շարք արժեքավոր գրքեր և ուսումնական ձեռնարկներ:

Բեռլինից վերադառնալուց հետո՝ 1900-ական թվականների սկզբներից հիմնականում ապրելով և գործելով թիֆլիսյան մտավորականության միջավայրում՝ նա շարունակում էր մնալ նաև ջավախահայ մտավորականության հարազատ ընկերը, որի վկայություններից մեկն էլ նշանավոր բանաստեղծ Ղազարոս Աղայանի գրական և մանկավարժական գործունեության քառասնամյա հոբելյանի նշումն է. ցարական ռեժիմի անբարենպաստ պայմաններում և ոստիկանության վերահսկողության ներքո Թիֆլիսի Վերայի թաղամասի «Ֆանտազիա» այգում 1902 թ. մայիսի 19-ին տեղի է ունենում Աղայանի 40-

43. Գրիգոր Վանցյանն այս հանդեսում ստորագրել է «Գ. Վ.» տարբերակով, ունի նաև «Վնց., Գ.» ստորագրությամբ գործեր (տե՛ս ***Հ. Բ. Հովակիմյան***, Հայոց ծածկանունների բառարան, Երևան, 2005, էջ 726: Բառարանում կա վրիպակ՝ Գ. Վանցյանի հայրանունը նշված է Քրիստափոր. իրականում՝ Խաչատուր է):

44. Գերմանական թերթերում Գ. Վանցյանի տպագրված հոդվածների վերաբերյալ տեղեկությունը հայտնում է «Բազմավեպի» հոդվածագիրը՝ չնշելով թերթերի անունները (տե՛ս «Բազմավեպ», 1910, թիվ 1, հունվար, էջ 37): Ինքը՝ Գ. Վանցյանը, իր «Պատմական քերականություն արևելահայ լեզվի» (Թիֆլիս, 1906) գրքի առաջաբանում տալիս է մեկ թերթի անուն՝ “Zeitscrift fur Armenische Philologie”՝ տեղեկություններ չհայտնելով թերթի հրատարակման վայրի ու թվականի վերաբերյալ:

ամյա հոբելյանին նվիրված հանդիսություն, որտեղ ներկա են գտնվել ժամանակի մտավորականության, գրական, ազգային, հասարակական և քաղաքական գործիչների շուրջ երկու հարյուր ներկայացուցիչներ: Ախալքալաքի մտավորականությունը ևս գումարում է ժողով, որպես հոբելյանական հանդիսության մասնակիցներ ընտրում Հովհ. Թումանյանին և Գ. Վանցյանին՝ այդ մասին նամակով տեղեկացնելով Թումանյանին. «Պարոն Ղազարոս Աղայանի գրական ու մանկավարժական գործունեության 40-ամյա հոբելյանի հանդեսին Ախալքալաքի հայ հասարակության կողմից ներկայացուցիչներ ունենալու համար տեղական ինտելիգենցիայի ներկայացուցիչները՝ ժողով կազմելով պատգամավորներ ընտրեցին Ձեզ և Գրիգոր Վանցյանին: Հարգանքով խնդրում ենք, հարգելի՛ պարոն, բարեհաճեցեք հանձն առնել պ. Գր. Վանցյանի հետ միասին ներկա լինել հիշյալ գրական հանդեսին և Ախալքալաքի հասարակության կողմից շնորհավորել պատկառելի հոբելյարի բեղմնավոր գործունեության 40-ամյակը, մատուցանել մեր երախտագիտական զգացմունքներն ու հարգանքները, նաև մեր տեղական մի խումբ աշակերտների ու աշակերտուհիների կողմից ստորագրված ուղերձը: Աշակերտների թվում ստորագրվել են և մի քանի օտարազգիներ իրենց մայրենի լեզվով, այն է՝ հունարեն և ռուսերեն:

Եթե Ձեզանից որևէ մեկը հարգելի պատճառով չկարողանա հանձն առնել մեր ներկայացուցչությունը, ապա խնդրում ենք հայտնել պ. Հովհաննես Կարապետյանին, որ փոխարինե ձեզնից չհամաձայնվողին»[45]: Ղ. Աղայանին հիշյալ հոբելյանի առթիվ բանաստեղծություն է նվիրում աշուղ Ջիվանին, իսկ ելույթներով ու հոդվածներով հանդես են գալիս Շիրվանզադեն, Լեոն, Երվանդ Շահազիզը, Լևոն Սարգսյանը, Ավետիք Արասխանյանը, Հովհ. Թումանյանը և Գրիգոր Վանցյանը[46]: Ցավոք, Գ. Վանցյանի, նաև Թումանյանի և այլոց՝ հոբելյարին նվիրված հոդվածները գրաքննչական կոմիտեն արգելում է

45. ***Ս. Հովհաննիսյան***, Հովհաննես Թումանյանի կյանքի և ստեղծագործության պատմությունը (1900–1912 թթ.), Երևան, 2012, էջ 66:

46. Նույն տեղում, էջ 67:

տպագրել[47], որի պատճառը Աղայանի կուսակցական պատկանելության համար 1895–1900 թթ. բանտարկված լինելն էր[48]: 1905 թ. Գ. Վանցյանը Թիֆլիսում հրատարակում է «Հայ հեղինակներ» (264 էջ) գիրքը, որն ունեցավ բարեփոխված և հարստացված թվով 5 վերահրատարակություն (II տպագրություն, Թիֆլիս, 1906, 320 էջ, III տպագրություն, Թիֆլիս, 1909, 382 էջ, IV տպագրություն, Թիֆլիս, 1910, 384 էջ, V տպագրություն, Թիֆլիս, 1913, 384 էջ, VI տպագրություն, Թիֆլիս, 1914, 384 էջ): Գրքի բարեփոխումներն ու հարստացումներն իրականացվել են մինչև III տպագրություն. սկսած IV տպագրությունից մինչ վերջին՝ VI տպագրություն, ներառյալ նաև III տպագրությունը, Գ. Վանցյանի մահից հետո 1909–1914 թթ. իրականացրել է Գ. Վանցյանի այրին՝ Մ. Վանցյանը, հրատարակությունները հիմնականում վերատպվել են՝ չկրելով փոփոխություններ: III–VI տպագրություններում անփոփոխ բերված է հեղինակի առաջաբանը, որը գրվել է մահվան նախօրյակին՝ 1908 թ. հունվարին, Թիֆլիսում: Ինչպես նշում է «Հայ հեղինակների» առաջին հրատարակության առաջաբանում ինքը՝ Գ. Վանցյանը, իր «նպատակն է երկու կամ երեք ամփոփ հատորներում տալ մեր գրականության և լեզվի զարգացման պատմությունը, հեղինակների կենսագիրներով և նրանց լավագույն երկերից հանած նմուշներով՝ սկսած հնագույն անցյալից մինչև նորագույն ժամանակները»: Անհերքելի է, որ միջնակարգ դպրոցների համար նախատեսված այս գիրքը լույս աշխարհ էր եկել ժամանակի պահանջով: Հավելենք, որ «Հայ հեղինակներ»-ում տեղ

47. Նույն տեղում, էջ 588: Գ.Վանցյանի և այլոց հոդվածները, ինչպես և մի շարք ոտանավորներ ու հոբելյանին նվիրված այլ նյութեր, որոնք գրաքննությունն արգելեց տպագրել «Տարազ» հանդեսի հոբելյանական բացառիկ համարում, հանդեսի խմբագիր և հրատարակիչ Տ. Նազարյանը լույս ընծայեց տարիներ անց՝ 1911 թ., «Տարազ» հանդեսի մայիս-հունիսյան միացյալ համարում, որտեղ հիշյալ նյութերը տպագրվում են Աղայանի մահվան առթիվ գրված այլ նյութերի հետ միասին: Գ.Վանցյանի նշյալ հոդվածը տե՛ս նաև «Ղազարոս Աղայանը ժամանակակիցների հուշերում», Երևան, 1967, էջ 94:

48. Ղազարոս Աղայանը ձերբակալվել է 1895 թ. սեպտեմբերի 7-ին՝ հնչակյան կուսակցությանը պատկանելու մեղադրանքով, աքսորվել Նոր Նախիջևան, ապա՝ Ղրիմ:

գտած նշանավոր մի շարք հեղինակների գործերից առաջ, այդ նույն հեղինակների կյանքի ու գործունեության, գրական հայացքների և այլնի մասին ներկայացնող աշխատանքների հեղինակը հենց Գ. Վանցյանն է: Խ. Աբովյանի, Ռ. Պատկանյանի, Մ. Նալբանդյանի, Պ. Պռոշյանի, Րաֆֆու, Ղ. Աղայանի, Ղ. Ալիշանի կենսագրություններին շաղախված՝ կարելի է տեսնել վերջիններիս գրական գործերի մասին բավական խորքային դատողություններ ու եզրահանգումներ, որոնք ինքնին խոսում են Գ. Վանցյանի լայնախոհության և գիտական բարձր ձիրքերով օժտված լինելու մասին: «Հայ հեղինակներ»-ում ներկայացվել են նաև Գ. Վանցյանի ճամփորդական հուշագրությունները, որտեղ հեղինակը պատմում է եվրոպահայության որոշ հատվածների հետ իր հանդիպումների ու տպավորությունների մասին («Լեհաստանի հայերը», «Այց Լեմբերգի հայերին»), բոշաներին առնչվող ազգագրական հոդվածները և այլն: Բնականաբար, գրքի առաջին հրատարակության լույսընծայմանը հետևեց մամուլի արձագանքը՝ մի շարք գրախոսականներով, որոնցում մերթ ծավալուն վերլուծությունների միջոցով դրվատվեց[49], մերթ քննադատվեց[50] Գ. Վանցյանի աշխատանքը:

49. «Մուրճ», 1905, թիվ 4, էջ 174–185: Գրախոսն այսպես է ավարտում իր ծավալուն գրախոսականը. «... Շեշտում եմ, որ պ. Վանցյանի «Հայ հեղինակները» գնահատելի և դասատուներին հանձնարարելի աշխատություն է: Թո՛ղ հոյինողի այս «առաջին փորձը» փորձեն ուսումնարանները և տեսնեն, թե այս գիրքը որքան հարցասիրություն առաջացրեց աշակերտների մեջ դեպի հայ հեղինակներն ու նրանց երկերը» (տե՛ս նույն տեղում, էջ 185): «Հայ հեղինակների» III տպագրությունը դրվատել է նաև «Հանդես ամսօրյա» հանդեսը (1909, թիվ 12, դեկտեմբեր, էջ 383): Գրքի մասին դրվատանքով են արտահայտվել նաև «Լումա», «Աշխատանք», «Тифлисский листок», «Новое обозрение» ամսագրերն ու թերթերը, որոնց նյութերը զետեղված են «Գրպանի ուղղագրություն» գրքույկի «բ» և «գ» հրատարակություններում («Тифлисский листок»-ի գրախոսականը նույնությամբ զետեղված է նաև Գ. Վանցյանի «Հայոց պատմության» երկրորդ և երրորդ հրատարակությունների հավելվածում, «Լումայի» և «Աշխատանքի» նյութերը՝ «Դպրոցական քերականություն» գրքի երկրորդ, բարեփոխված տպագրության (առանց թվականի) հավելվածում):

50. «Բազմավեպ», 1905, մայիս, թիվ 5, էջ 233–238:

1906 թ. Գ. Վանցյանը տպագրում է իր «Պատմական քերականություն արևելահայ լեզվի» քերականագիտական ընդարձակ աշխատությունը, որի առանձին հատվածներ, ինչպես արդեն նշեցինք, ժամանակին լույս էին տեսել մամուլում[51]: Գրքում հեղինակն անդրադառնում է մարդկային լեզվի ծագմանը, հնդեվրոպական լեզուներին, հայերենին (գրաբարյան, արևելահայ և արևմտահայ ձևերին) առնչվող ամենատարբեր հարցերին, հայ քերականական մտքի ձևավորման վրա ազդեցություն գործած որոշ կրթօջախներին և այլն: Գրքի լույսընծայումը, անշուշտ, ժամանակի հայ գիտական և կրթամշակութային կյանքի կարևոր իրադարձություններից էր: «Բազմավեպ» ամսագիրը գրքի հրատարակման առթիվ տպագրում է ընդարձակ գրախոսական, որն ավարտվում է հետևյալ պատկերավոր խոսքերով. «Գր. Վանցյանի հետ կշրջինք ո՛չ միայն մերձավոր անցյալին, այլև խորագույն հնության մեջ: Իր գիրքը կրթություն մ՛ է և զբոսանք. համոյական է ինչպես դալարագեղ դաշտի մը մեջ հնախոսական պտղում մը»[52]: Նույն ամսագիրը շուրջ երեք տարի անց գրում է. «Վանց-

51. Թվարկենք լեզվաբանությանն առնչվող հիմնական հոդվածները. «Հայերենի նվազայնությունը [կարդացված Բեռլինի հայ ուսանողական ժողովում 1896-ին և Հայդելբերգի հայ ուսանողական համագումարում 1897 թ. ապրիլի 10-ին» («Մուրճ», 1897, թիվ 6, էջ 829–847)], «Հայերեն դերանունների սեռը [(Նվեր «Մուրճ»-ի տասնամյակին), («Մուրճ», 1898, թիվ 10, էջ 1507–1514: Հոդվածը քննադատվել է մամուլում. տե՛ս «Լեզվի մի համեստ դաս», «Արարատ», 1899, թիվ 1, էջ 40–42)], «Հայերենը մշակելու նյութեր [(Կարդացած Բեռլինի հայ ուսանողական ժողովում. 1897)» («Մուրճ», 1899, թիվ 2–3, էջ 278–281)], «Նա և այն» դերանունների կիրառությունը» («Մուրճ», 1899, 4–5, էջ 436–438), «Նյութեր հայերենի մշակության համար» («Մուրճ», 1899, թիվ 6, էջ 614–618), «Հնչմունք և գիր» («Մուրճ», 1899, թիվ 11–12, էջ 1424–1430):

52. «Բազմավեպ», 1907, հունիս, թիվ 6, էջ 273–276 (գրախոսականը, որպես հավելված, կրճատումներով ներառված է նաև Գ. Վանցյանի «Հայոց պատմություն: Ծխական դպրոցների համար: Պատկերազարդ» գրքի երկրորդ և երրորդ հրատարակություններում): «Պատմական քերականություն արևելահայ լեզվի» գրքի մասին մատենախոսական կարճ ակնարկով է հանդես գալիս նաև «Մուրճը» [(տե՛ս «Մուրճ», 1906, թիվ 9, էջ 156–157: Մատենախոսականը զետեղված է նաև Գ. Վանցյանի «Դպրոցական քերականություն» գրքի երկրորդ, բարեփոխված տպագրության (առանց թվականի) հավելվածում, նաև «Գրպանի ուղղագրություն» գրքույկի «բ» հրատարակության (առանց թվականի) հավելվածում)]:

յանի հիշատակը կապված պիտի մնա այսուհետև իր Պատմական քերականության հետ. ուրեմն մահարձանի չի կարոտիր»[53]: 1906 թ., «Պատմական քերականություն արևելահայ լեզվի» գրքի տպագրությանը զուգահեռ, Ալեքսանդրապոլի «Շիրակ» տպարանում լույս է տեսնում Գ. Վանցյանի «Դպրոցական քերականությունը»: 52 էջանոց այս գրքույկը նախատեսված էր պետական և ծխական դպրոցների համար և կարևոր տեղեկություններ էր հաղորդում հայերենի քերականության մասին: Գրքույկն ունեցավ երկրորդ՝ բարեփոխված և հարստացված տպագրություն, որը, սակայն, անթվակիր է: Դրանում զետեղված որոշ նյութերի թվագրումից և առաջաբանից կարելի է եզրակացնել, որ այն տպագրվել է հեղինակի մահվան նախօրյակին՝ 1907 թ. վերջին կամ 1908 թ. սկզբին:

1906 թ. լույս է տեսնում Գ. Վանցյանի «Գրպանի ուղղագրություն» գրքույկը: Հեղինակը առաջաբանում գրում էր, որ իր նորաստեղծ գրքույկն «... ամեն մի աշակերտ պետք է ձեռին ունենա սխալներից խուսափելու և ուղղագրությանը շարունակ ընտելանալու» համար: Այն կարճ ժամանակ անց ունեցավ երկրորդ, բարեփոխված հրատարակություն (գրքույկի վրա բացակայում է հրատարակման թվականը): Մինչ իր մահը՝ 1908 թ., Գ. Վանցյանը պատրաստում է գրքույկի երրորդ՝ կրկին բարեփոխված տարբերակը, որը հետմահու՝ 1914 թ. հրատարակում է կինը: Գրքույկը ծավալուն գրախոսականով գովաբանում է «Մշակը»[54], իսկ Գ. Գասպարյանն իր «Հայ բառարանագրության պատմություն» աշխատության մեջ նշում է հետևյալը. «Հայերեն աշխարհաբար գրական լեզվի ուղղագրական առաջին բառարանը «Գրպանի ուղղագրությունը» կազմել է Գրիգոր Վանցյանը՝ «Գրպանի ուղղագրությունը», սահմանափակ բառաքանակով աշխատություն է, բաժանված 4 հիմնական մասի, առանձին-առանձին տրված է Ե, Ո, Հ և Ռ տառերի ուղղագրությունը: Յուրաքանչյուր բաժնից առաջ տրված է համառոտ կանոն՝ բնորոշում և ապա Ե-ով գրվող

53. «Բազմավեպ», 1910, թիվ 1, հունվար, էջ 38:

54. «Մշակ», 1906, թիվ 193: Գրախոսականից մի փոքրիկ հատված ներառված է ***Գ. Վանցյանի*** «Դպրոցական քերականություն» գրքի երկրորդ, բարեփոխված տպագրության (առանց թվականի) հավելվածում:

բառեր՝ ալեխառն, ալեկոծ, աղետ–178 բառ, Ո-ով գրվող բառեր՝ ակոս, աղոթք, աղոթասեր, աղոն…– 186 բառ, Հ-ով գրվող բառեր՝ հագենալ, հագուրդ, հախճապակի, հախուռն…– 107 բառ, Ռ-ով գրվող բառեր՝ ագռավ, աթոռ, աթոռակալ, ախոռ, ականակուռ, ամառ – 230 բառ, ընդամենը՝ 701 բառ: … Գ. Վանցյանի «Գրպանի ուղղագրությունը» լավ ընդունելություն գտավ և ունեցավ մի քանի հրատարակություն»[55]: Այսուհանդերձ, ինչպես ժամանակի յուրաքանչյուր նորույթ, Գ. Վանցյանի «Գրպանի ուղղագրությունը» ևս զերծ չմնաց քննադատությունից[56]:

1906 թ. Թիֆլիսի հայկական դպրոցների աշակերտությունը ստանում է նոր նվեր. լույս է տեսնում Գ. Վանցյանի «Հայոց պատմություն: Ծխական դպրոցների համար: Պատկերազարդ» գիրքը (80 էջ), որտեղ հայոց պատմությունը ներկայացվում է հայ ժողովրդի ծագումից՝ Հայկ Նահապետից մինչև Բագրատունյաց թագավորության անկումը՝ Գագիկ Բ (1045 թ.) և սելջուկյան արշավանքները Հայաստան: Ձեռնարկի Բ տպագրությունը, որը կազմված էր երկու մասից, տեղի է ունենում 1908 թ. («Հայոց պատմություն (Ծխական դպրոցների համար), Բ տպագրություն: Պատկերազարդ», 152 էջ), որտեղ արդեն հեղինակն ամբողջացնում է հայոց պատմությունը՝ ներկայացնելով հայոց ծագումնաբանությունից մինչ իր ապրած ժամանակահատվածը՝ 1900-ական թվականների սկզբների կովկասյան անցքերը: «Հայոց պատմության» առաջին հրատարակությունը Բ տպագրության առաջին մասն է, իսկ երկրորդ մասը ներառում է Կիլիկյան թագավորության ստեղծումից մինչ 1905 թ. իրադարձությունները: Ամենավերջում հեղինակը զետեղել է «Հայոց թիվը և պարապմունքը ներկայում» փոքրիկ հատվածը, որտեղ կարևոր հաշվումներ է անում ամբողջ աշխարհում սփռված հայության թվակազմի վերաբերյալ՝ եզրակացնելով, որ 1900-ական թվականների սկզբներին երկրագնդի վրա ապրող հայության թիվը կազմում է մոտ 3 միլիոն: «Հայոց պատմության» Բ տպագրությունը հեղինակի կինը Թիֆլիսում նույնու-

55. ***Գ. Գասպարյան,*** Հայ բառարանագրության պատմություն, Երևան, 1968, էջ 464:
56. «Ձարկ», 1906, N 5, էջ 75–76, N 6, էջ 89:

թյամբ վերահրատարակում է 1909 (երրորդ տպագրություն, 143 էջ) և 1912 (չորրորդ տպագրություն, 142 էջ) թվականներին: Բոլոր հրատարակություններում նույնությամբ բերված է հեղինակի պատգամը. «Դուք, սիրելի աշակերտներ, որ սովորում եք Եգիպտոսի, Բաբելոնի, Ասորեստանի, Մարաստանի, Հրեաների, Պարսից և այլ բազմաթիվ ազգերի պատմությունները, շատ անգամ դիմել եք ինձ հարցնելով.– վարժապետ, ինչո՞ւ չենք սովորում հայոց պատմություն, ե՞րբ պիտի սովորենք մեր սեփական պատմությունը: – Ակամա լռությունից հետո, այս գիրքն է ահա, որ պիտի պատասխանե ձեր հարցերին, ուր համառոտ ու կարճ, պիտի գտնեք Ձեր Նախնյաց գործերի պատմությունը»: Գ. Վանցյանը «Հայոց պատմությունը» շարադրել է հայրենասիրական բարձր ոգով, ուր ոսկեղենիկ հայերենի, հայ ճարտարապետության և նախնյաց մեծագործությունների թվարկման միջոցով ձգտել է ազգային հպարտություն սերմանել պետականազուրկ վիճակում ապրող իր աշակերտների շրջանում՝ վառ պահելով նրանց հոգում ազգային զարթոնքի և պետականություն ունենալու հույսերը: «Սիրենք ու սովորինք, մեր ազգի պատմությունը, սիրելի մանուկնե՜ր...»՝ ահա հեղինակի բարձրագոչ հորդորը: «Հայոց պատմությունը» ևս արժանացավ քննադատության. գրախոսություն, որն ավելի շատ նման էր չարախոսության[57]:

1907 թ. Գ. Վանցյանը կազմում և Թիֆլիսում լույս է ընծայում «Հայ լեզու: Պատկերազարդ այբբենարանը» (64 էջ): Ձեռնարկը կազմված է երկու մասից. Ա մասը կազմում է բուն Այբբենարանը, Բ մասը՝ «Ընթերցարանը», որտեղ զետեղված են մի շարք մանկական կարճառոտ պատմվածքներ, բանաստեղծություններ, առածներ, շուտասելուկներ, հանելուկներ, մայրերին, տարվա եղանակներին, տարբեր կենդանիներին նվիրված այլևայլ նյութեր: Բնության, առարկաների, զանազան կենդանիների պատկերներով հարուստ այս Այբբենարանը Գ. Վանցյանի՝ տվյալ ժամանակի հայ կրթական կյանքում ունեցած մեծագույն ավանդն էր:

Հայ ականավոր գիտնական, կովկասագետ, հայագետ Արտաշես Աբեղյանն իր գործերից մեկում, նպատակ ունենալով չեզոքացնել

57. «Երկիր», 1906, թիվ 40:

1930-ական թվականներին եվրոպական երկրներում ապրող հայության շուրջ գերմանական ուժերի կողմից ստեղծված վտանգը, գերմանացի այլ գիտնականների գործերի շարքում հիմնավորում է հայ ազգի հնդեվրոպական կամ արիական ծագումը՝ մեջբերումներ կատարելով նաև Գ. Վանցյանից[58]: Մեկ այլ մտավորական, արվեստի խոշորագույն գործիչ, նկարիչ Եղիշե Թադևոսյանը 1935 թ. գրի առած իր հուշերում, նկարագրում է Թիֆլիսի Հայոց առաջնորդարանում կայացած խորհրդակցությունը, հանդիպմանը ներկա ժամանակի խոշոր մտավորականների՝ Աբգար Հովհաննիսյանի, Շիրվանզադեի, Ղ. Աղայանի, Պ. Պռոշյանի և Հովհ. Թումանյանի կողքին հիշատակում է նաև Գ. Վանցյանին: Հավելենք, որ խորհրդակցությունը տեղի է ունեցել 1904 թ. Վիրահայոց թեմի ժամանակավոր առաջնորդ Գարեգին Հովսեփյանի հրավերով և նվիրված է եղել հայ մշակութային ու հասարակական որոշ խնդիրների քննարկմանը[59]: Գ. Վանցյանի աշխատանքներն իրենց գործերում հիշատակել են նաևականավոր լեզվաբաններ, ՀԽՍՀ ԳԱ ակադեմիկոսներ Գուրգեն Սևակը[60], Գևորգ Ջահուկյանը[61], պ. գ. դ. Էդուարդ Դանիելյանը[62] և այլք:

Գ. Վանցյանը, ելնելով իր լեզվաբանական հետազոտություններից և լատինական մի շարք լեզուների համեմատական քննությունից, ժամանակին հանդես է եկել նաև հայերենի մեջ քերականական որոշ ճշգրտումներ մտցնելու առաջարկներով: Դրանցից մեկը, օրինակ, վերաբերում է հայերենի դերանվանաձևերի մեջ սեռի կիրառման հարցին: Բերելով մի շարք լեզուների օրինակներ և տալով հիմնավորումներ՝ Վանցյանն առաջարկում է որպես «նա» դերանվան իգական ձև, վերստին կիրառության մեջ մտցնել «նե» ձևը[63]: Նա նշում է,

58. ***Ա. Աբեղյան***, Հյուսիսային տիպերը Հայաստանում (հայկականություն, արիականություն), Երևան, 2001, էջ 30–38:

59. ***Հ. Թումանյան***, Արվեստի մասին, Երևան, 1969, էջ 206:

60. ***Գ. Սևակ***, Ժամանակակից հայոց լեզվի դասընթաց, Երևան, 1955, էջ 67, 354:

61. ***Գ. Բ. Ջահուկյան***, Հայոց լեզվի զարգացումը և կառուցվածքը (համառոտ ուրվագիծ), Երևան, 1969, էջ 279:

62. ***Է. Դանիելյան***, Շուշիի տեղը հայ տպագրական գործի մեջ. Հայկական տպագրությունը դարերի միջով (հոդվածների ժողովածու), Երևան, 2014, էջ 88:

63. ***Գ. Վանցյան***, Պատմական քերականություն արևելահայ լեզվի, Թիֆլիս, 1906, էջ 235, 240:

որ այդ դերանվան իգական նման ձևի կարիքը շատ վաղուց է նկատվել, և, ելնելով այդ հանգամանքից, այն գործածել են Ս. Մալխասյանը և Մ. Աբեղյանը. «... մի դերանուն, որ հնարելի էր դեռ Դավիթ Անհաղթը Ե. դարում, կազմելով նէ, նէրա, ինէրանէ և այլն... Դրա շնորհիվ է, որ Դուրյանի պես բանաստեղծն իր գլուխգործոցի մեջ երգում է «…թույլ տըվիՆ, որ միշտ ըզՆէ երազեմ»»[64]: Նկատենք, որ մեր օրերում Նե դերանունը, որպես հատուկ անուն, դանդաղորեն տարածում է գտնում աղջիկների շրջանում[65]:

Ավարտելով մեր խոսքը մեծանուն ուսուցիչ, գրականագետ ու լեզվաբան Գ. Վանցյանի մասին՝ ասենք, որ 1908 թ. մայիսի 5-ին նա ինքնասպան է լինում: Ինքնասպանությունից առաջ թողած նամակում Գ. Վանցյանը խնդրում է իր մահվան համար ոչ մեկին չմեղադրել[66]: Հուղարկավորությունը տեղի է ունենում մայիսի 9-ին, աճյունն ամփոփվում է Թիֆլիսի Խոջիվանքի գերեզմանատանը: Անխոս, Գ. Վանցյանի մահով հայ դպրոցը կորցնում է իր մեծագույն նվիրյալին, կրթական կյանքի ամենաառաջադեմ կազմակերպչին, լուսավորու-

---

64. Նույն տեղում, էջ 235: Խոսքը «Տրտունջք» բանաստեղծության մեկ տողի մասին է:

65. Հարցախույզով պարզեցինք, որ «Նե» իգական դերանունը որպես հատուկ անվանում օգտագործելիս մարդիկ գլխավորապես հիմնվել են Պ. Դուրյանի գործերի մեջ իգական սեռի համար գործածվող նե (նա) դերանվան և հատկապես նրա «Նե» վերնագրով բանաստեղծության վրա: Իրականում, ինչպես նկատում է Գ. Վանցյանը, այս դերանունը հիշատակվում է դեռ V դարից (Դավիթ Անհաղթ) և հասնում մինչ XIX–XX դարեր (Պ. Դուրյան, Ս. Մալխասյան, Մ. Աբեղյան, Գ. Վանցյան և այլք):

66. Յոլակ Խանզադյանին ուղղված նամակում Վահան Տերյանը հայտնում է. «Երեկ ինքնասպանություն է գործել Գրիգոր Վանցյանը» (***Վ. Տերյան***, Երկերի ժողովածու, հ. 3, Երևան, 1963, էջ 208, հմմտ.՝ ***Վ. Տերյան***. Երկերի ժողովածու, հ. 3, Երևան, 1975, էջ 258): Գ. Վանցյանի ինքնասպան լինելու բոթը տեղ է գտել նաև «Մշակում». «Սրտի կսկիծով մի անսպասելի և ցավալի լուր ենք հաղորդում: Մայիսի լույս 5-ի գիշերը ինքնասպանություն գործեց գրագետ և Թիֆլիսի առևտրական դպրոցի ուսուցիչ Գրիգոր Վանցյանը: Հանգուցյալը մի նամակ է թողել, որով խնդրում է ոչ ոքի չմեղադրել» («Մշակ», 1908, 97): Տե՛ս նաև «Արարատ», 1908, մայիս-հունիս, Ե.–Զ., էջ 600:

թյան բնագավառի կարկառուն գործչին: «Հանդես ամսօրյայում» զետեղված նրա մահախոսականում կարդում ենք. «Այս կորովի ուժը պարտված կյանքի դառնության անհայտ հոսանք է մը: Մայիս 5-ին յուր և կյանքի մեջ եղած հարաբերությունը կըխզե 40 տարեկան (ըստ երևույթին պետք է լինի՝ 38 տարեկան – Վ. Ս.) հասուն հասակին մեջ: Գ. Վանցյան ազգային կրթված դեմքերեն էր. Ներսիսյան վարժարանը ավարտելով հաջողած էր Եվրոպա յուր ուսումը կատարելագործելու անցնիլ, ուսկից դառնալով՝ Տփղիսի առևտրական դպրոցի մեջ հայերեն լեզվի դասատուություն կ՛ըներ: Հայ ուսուցչության առաջադիմության բարեխիղճ մարդիկներեն էր, որուն կորուստը նոր կազմակերպիլ սկսած միության զգալի վնաս մըն էր: Գ. Վանցյան հայ գրականության մեջ ալ ձեռնհաս ուժ մըն էր…»[67]:

Գ. Վանցյանի ինքնասպանության հանգամանքները մինչ օրս անհայտ են: Եղած վարկածները (Գ. Վանցյանի գաղափարական հայացքները[68], ցարական ռեժիմը, անձնական կամ ընտանեկան հարաբերությունները և այլն), որոնց պատճառով նա կարող էր գնալ նման ծայրահեղ քայլի, ավելի շատ ենթադրություններ են, դրանցից որևէ մեկի վրա դժվար է կենտրոնանալ:

***

Երկհատորյակում Գ. Վանցյանի գործերը զետեղել ենք ժամանակագրական կարգով՝ ելնելով հրատարակման թվականներից: Լեզվաբանությանն առնչվող գործերը, որոնք հիշատակեցինք վերևում, չենք զետեղել՝ նաև նկատի ունենալով, որ դրանք հիմնականում ներառված են սույն գրքերում տեղ գտած «Պատմական քերականություն արեւելահայ լեզուի» գրքում: Փաստորեն, երկհատորյակը ներառում է Գ. Վանցյանի հիմնական 6 գիրք-գրքույկները (ինչպես նշեցինք, այս գործերը վերահրատարակվել են մի քանի անգամ, և մենք ընտրել ենք դրանցից առավել ամբողջական տարբերակները), ինչ-

67. «Հանդես ամսօրյա», 1908, թիվ 7, էջ 224:

68. «Հայկական սովետական հանրագիտարանը», տալով Գ. Վանցյանի կարճառոտ կենսագրականը, հայտնում է, որ նա «գաղափարապես հակված է եղել դեպի դեմոկրատիզմն ու մարքսիզմը» (հ. 11, Երևան, 1985, էջ 279):

պես նաև մամուլում հրատարակված աշխատանքները՝ հոդվածներ, գրախոսականներ, ակնարկներ, նամակներ, թարգմանություններ, որոնք դասավորված են առանձին բաժիններով, յուրաքանչյուր բաժնի նյութերը կրկին դասավորված են ժամանակագրական կարգով:

Բոլոր գործերը վերահրատարակվում են անփոփոխ կերպով: Նախկինում հրատարակված գիրք-գրքույկները վերահրատարակվում են լուսապատճենման եղանակով, որոնց տիտղոսային էջին, բնականաբար, երևում են հեղինակի, առանձին դեպքերում նաև հրատարակչի անուն ազգանունը, գրքի վերնագիրը, հրատարակման վայրն ու թվականը: Մամուլից վերցված գործերի պարագայում, որոնցում ևս միջամտություններ չեն կատարված, նշյալ տեղեկությունները զետեղված են նյութի վերջում: Երկհատորյակի վերջնամասում խորհրդանշական ձևով զետեղել ենք Գ. Վանցյանի բոլոր գրքերի (ներառյալ բոլոր վերահրատարակումները) շապիկների կամ տիտղոսաթերթերի լուսանկարները: Ինչպես վերևում նշեցինք, Գ. Վանցյանն իր մի շարք գրքերի վերջում հավելվածատիպ ձևով զետեղել է իր նախորդ գրքերի վերաբերյալ մամուլում հնչեցված գրախոսականները կամ կարծիքները: Այդպիսի գրքերի վերահրատարակման հետ միաժամանակ անփոփոխ կերպով բերված են նաև այդ կարծիք գրախոսականները: Երկու վերահրատարակության («Դպրոցական քերականութիւն (Բարեփոխուած՝ երկրորդ տպագրութիւն)» և «Գրքանի ուղղագրութիւն» (Բ. տպագրութիւն), որոնց այլ տարբերակներն են ներառված ժողովածուներում, այդպիսի հավելվածները բերված են երկրորդ հատորի վերջնամասում (տե՛ս «Հավելված 1»):

Սույն երկհատորյակը Գրիգոր Վանցյանի գործերի հավաքագրման առաջին փորձն է: Իհարկե, հատկապես ժամանակի մամուլի էջերում հնարավոր է լինեն վերջինիս հեղինակությամբ տպագրված և մեր աչքից վրիպած որոշ հոդվածներ կամ հրապարակումներ, որոնց ամբողջացումը սույն գործերի հետ հետագայի խնդիր է:

Հուսով ենք, որ այսուհետ հատկապես ջավախահայ նորօրյա սերունդն առավել մոտիկից կծանոթանա իր լեռնաշխարհի մեծերից մեկի՝ Գ. Վանցյանի կյանքին և ստեղծագործական շառաչուն գործունեությանը, մի լայնահուն ընթացք, որը, ցավոք, ընդհատվեց անժամանակ մահով:

1994 թվականից հայրենի Ջավախքի Բեժանո գյուղի դպրոցը կրում է իր արժանավոր զավակ Գրիգոր Վանցյանի անունը: Սույն ձեռնարկը թող դառնա երկրորդ պատվանդանը, որի վրա հավերժանալու է Վանցյանների փառահեղ գերդաստանի ներկայացուցիչներից մեկի՝ Գրիգոր Վանցյանի անմահ անունը:

Ջավախքի Բեժանո գյուղից սերված Վանցյանների տոհմածառի անվանի մարդկանց թիվը եզակի չէ. և, Ջավախքում, և, ՀՀում, և, նախկին միութենական մի շարք հանրապետություններում հայտնի են ավիատոր-օդաչուներ, գիտնականներ, ժողովրդական տնտեսության, արտադրության և այլ ոլորտների անվանի ներկայացուցիչներ, որոնք կրում են Վանցյանների տոհմի փառահեղ ազգանունը:

***ՎԱՀԵ ՍԱՐԳՍՅԱՆ***

**Պատմական գիտությունների թեկնածու**

**1 մայիսի 2014 թ.**

**ք. Երևան**

## ԵՐԿՈՒ ԽՕՍՔ ՄԵՐ ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆՆԵՐԻ ԵՒ ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐԻ ԱՊԱՀՈՎՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

Ամեն մի անհատի, հասարակութեան և թէ հիմնարկութեան բարեկեցութիւնը պայմանաւորուում է նորա տնտեսական ապահովութեան չափով,- ուր չկայ տնտեսական ապահովութիւն, այնտեղ չի կարող լինել և յարատև, կանոնաւոր և օգտաւէտ գործունէութիւն. մասնաւոր անհատների եռանդն ու գործունէութիւնը, որով բարձրանում է մի հիմնարկութեան անունը, դադարելուց յետոյ՝ ընկնում է և հիմնարկութիւնը, եթէ նա նիւթական միջոց չունի մշտապէս իր մէջ պահելու այնպիսի ոյժեր, որոնք միշտ բարձր կարողանային պահել հիմնարկութեան անունը:- Այս տեսակէտից նայելով, մեր ուսումնարանների ամենախոշոր պակասութիւններից մինը պէտք է համարել նոցա տնտեսական անապահովութիւնը - աղքատութիւնը. նոքա ըստ մեծի մասին զուրկ են եկամուտի կանոնաւոր աղբիւրներից: Ուսումնարանների հետ անխզելի տնտեսական և բարոյական կապերով կապուած են ուսուցիչները, ուստի ուսումնարանի այս կամ այն դրութիւնը ազդում է նաև ուսուցիչների վերայ անմիջապէս: Անապահով ուսումնարանի ուսուցիչը շատ քիչ ռոճիկ է ստանում և այն էլ ամիսներ սպասելուց յետոյ. այդպիսի դէպքեր չեն կարող պատահել ապահոված ուսումնարաններում և եղածներն էլ պէտք է անհատական կամայականութեան վերագրել: Այսպէս ուրեմն, ապահովելով ուսումնարանը - կը նշանակէ ապահովել ուսուցչին - իսկ ուսուցչին ապահովելով, մենք կապահովենք մեր սերնդի դաստիարակութեան գործը, պահանջելով, որ նա նւիրի իր կոչմանը, թողնելով մեզ հոգալ նորա նիւթական պահանջները կանոնաւոր և մարդավարի վարձատրութիւնով:

Մեր ուսումնարանական գործը գեղեցիկ հիմունք ունի, նա կառավարւում է (մանաւանդ առաջ) ժողովրդի ընտրեալների ձեռքով. այդ ընտրեալները, հոգաբարձուները, յանձնառու են լինում հոգալ ուսումնարանի տնտեսական կարիքները:

Բայց հոգո՞ւմ են այդ կարիքները - ի հարկէ ո՛չ:

Բացառութիւնների մասին չէ՛ մեր խօսքը:

Մեր ուսումնարանների հէնց հիմքը խախուտ է, յուսալ թէ հոգաբարձութիւնը կը հոգայ ուսումնարանի նիւթականը, կը նշանակէ ամրոց կառուցանել օդում. դա ցոյց է տուել մեզ տարիների փորձը:

Եւ շատ բնական է: Մեր հասարակութիւնը դեռ այնքան ստոր աստիճանի վերայ է կանգնած, նա դեռ այնքան տհաս է, որ բացի բացառիկ անձնաւորութիւններից, հասարակական խնդիրները անձնականից վեր դասող, հասարակութեան ցաւերով հետաքրքրւող անձնաւորութիւններ մշտապէս դեռ եւ չի կարող տալ. դա նորա ուժերից վեր է: Մենք գանգատւում ենք, որ առհասարակ չունենք լաւ հոգաբարձուներ, բայց մոռանում ենք, որ լաւ հոգաբարձու կարող է տալ միայն լաւ հասարակութիւնը: Մենք ունենք ժողովուրդ, ունենք ամբոխ, խուժան - ինչ ուզում էք անուանեցէ՛ք, բայց հասարակութիւն, այդ բառի լայն մտքով, մենք դեռ եւ չունենք:

Բարեխիղճ հոգաբարձու կունենանք այն ժամանակ, երբ կունենանք լաւ եւ կրթւած հասարակութիւն.- դա ժամանակի եւ քաղաքակրթութեան է կարօտ: Այսպիսով մեր ծխական ուսումնարանները ի դէմս հոգաբարձութեան (նոյն եւ ժողովրդի) կորցնում են մի զօրեղ գործօն-ֆակտոր, որ կարող էր նորա նիւթականի հայթայթողներից ամենահիմնաւորը դառնալ:

Սորանով մենք չենք ուզում ասել, թէ դէմ ենք հոգաբարձութեան. ընդհակառակը մենք յարգում ենք սկզբունքով նորա գոյութիւնը. որպէս ժողովրդի իրաւունքի ներկայացուցիչ՝ նա անհրաժեշտ է. սակայն նա համապատասխան չլինելով իր կոչմանը, պէտք է ուսումնարանների ապահովութեան մասին մտածէ նաեւ մի այլ մարմին - Ուսումնարանական մասնաժողովը: Նա պիտի ունենայ մի դրամագլուխ, մի հիմնական ֆոնդ, որով նպաստ հասցնել կարողանայ աղքատ ուսումնարաններին եւ բոլոր ուսումնարանների նիւթականը մի ընդհանուր հաւասար բիւջէտով պահպանէ: Թէ ի՞նչպէս կարելի է կազմել այդ ֆոնդը, մենք մատնանիշ կանենք հետեւեալ աղբիւրները:

Ա. Էջմիածինը եկամուտի աղբիւրներ շատ ունի, թէեւ նոքա բոլորը անկանոն եւ անարդիւնք են մնում:

Այդ աղբիւրներից մինը սակայն շատ կանոնաւոր է և ապահով. դա պսակներից առնող «աքոռահաս» կոչւող տուրքն է: Թէ ո՞ւր է ծախսւում այդ արդիւնքը, հաստատ չգիտենք (կարծեմ կոնսիստորի ծառայողներին է տրւում), սակայն չենք կարծում, թէ դա աւելի կարևոր տեղ ծախսւէր, քան ուսումնարանները: Մեր ցանկութիւնն է այդ մշտատև, ժողովրդի աճելութեան հետ աճող տուրքը յատկացրած տեսնել մեր ուսումնարանների նիւթական ապահովութեանը: Եւ ի՞նչ գեղեցիկ գաղափար. ամեն մի անհատ պարտաւոր է լինում իր ամուսնութեան օրից մի չնչին տուրք վճարել իր ապագայ որդոց ուսման համար: Այդպիսով՝ օրինակ միայն Ախալքալաքի վիճակը ուսումնարանական ֆոնդին կը տայ 2000 ռուբլի (տարեկան 400 պսակ միջին հաշւով ամեն մինը 5 ռուբլի):

Բ. Կանոնաւոր եկամուտի մի երկրորդ, բայց ոչ այնքան դիւրին ձեռք բերելի, միջոց պէտք է համարել մեր եկեղեցական գումարները: Եկեղեցիների ամենամեծ մասը սեպհական դրամ ունի, որ երբեմն տասնեակ հազարների է հասնում. դժբախտաբար այդ փողերի ամենափոքր մասը միայն ապահով տեղ է. մեծ մասը կորստի է մատնւում: Եթէ հնարաւոր լինէր այդ փողերը հաւաքել և մի հիմնական դրամագլուխ կազմել, դա անտարակոյս, մեր ուսումնարանների ապահովութեան հիմքը կը դառնար: Էջմիածինը, սակայն, եթէ ո՛չ դրամագլուխը, գէթ այդ դրամների %-ի մի մասը կանոնաւորապէս միշտ կարող է պահանջել յօգուտ ֆոնդի, մանաւանդ այն եկեղեցիներից, որոնք ոչ մի ուսումնարանի չեն նպաստում: Ախալքալաքի վիճակի եկեղեցիները միայն 35000 ռ. ունին (դա պաշտօնականն է, որ երևի իսկականից շատ քիչ է): Եթէ այդ փողերից առնւի տարեկան միայն 3 %, կանէ 1050 ռուբլի:

Գ. Երրորդ աղբիւրը պէտք է համարել մոմավաճառութիւնը, որի արդիւնքը թէև վաղուց, Ներսէս Ե-ի ժամանակից, յատկացրած է ուսումնարաններին, բայց հսկողութեան թուլութեան պատճառով շատ չնչին է, որովհետև եկեղեցիների ամենամեծ մասը գործ է ածում աննկնիք-չթոյլատրած մոմ: Ըստ իս, դորա առաջը կարելի է առնել այսպէս. սահմանել, որ ամեն մի երեցփոխ ամեն տարի պարտաւորւի առնւազը մի փութ թոյլատրած մոմ գործ ածել և արդիւնքի կէսը յատկացնել ֆոնդին. այդպիսով Ախալքալաքի վիճակի 72 եկեղեցիները ամեն տարի պարտաւոր կը լինեն ֆոնդին վճարել 1440 ռ., հաշւելով, որ մի փութ մոմը առնւում է 20 ռ., ծախսւում է միջին թւով 60 ռ. (40-80), զուտ արդիւնք մնում է 40 ռ., որի կէսը 20x72 (եկեղեցով) կանի 1440 ռուբլի:

Դ. Բացի դորանից յօգուտ նոյն ֆոնդի կարելի է ամեն մի եկեղեցուց մի որոշեալ տուրք ստանալ 3-7 ռ., որ տարեկան միջին հաշւով կանի 5 ռուբլի: Այդ հաշւով Ախալքալաքի վիճակը դարձեալ կը տայ 350 ռ. տարեկան: (Մեր օրինակները վերցնում ենք Ախալքալաքից, որովհետև միայն այդ վիճակի պաշտօնական վիճակագրութեանը ծանօթ ենք):

Կան ի հարկէ և ուրիշ շատ աղբիւրներ, բայց առայժմ նոցանից օգտւելը դժւար է: Առանց դորան էլ, մենք հաւատացած ենք, վերոյիշեալ եկամուտները այնքան նիւթ կարող են տալ, որ ուսումնարանների մեծ մասը կապահովւեն: Տեսնում ենք, որ միայն Ախալքալաքի վիճակը այդ հաշւով ֆոնդին պիտի տայ տարեկան 2840 ռ.: Եթէ դորանից 1840-ը իբրև նպաստ տայ այդտեղ եղած կամ բացւելի ուսումնարաններին, ամեն տարի ֆոնդին կը մնայ զուտ 1000 ռուբլի:

Երբ այսպիսով Էջմիածինը միջոց կունենայ աղքատ ուսումնարաններին օգնելու, այն ժամանակ հնարաւոր կը լինի «երկրորդ կոպար» անւանեալը ոչնչացնել, որը ծագում է հէնց ուսումնարանների աղքատութիւնից: «Առաջին կոպարը» կը լինի այն ժամանակ ուսուցիչների վարձատրութեան հիմքը, որով զգալի կերպով նորա ռոճիկը կը բարձրանայ (ամեն մի դասին 5-10 ռ.):

Դա ի հարկէ չի կարող արգելք լինել, որ ապահովւած ուսումնարանները աւելի լաւ վարձատրեն ուսուցիչներին:

Ի դէպ՝ առաջնակարգ և երկրորդական առարկաների մասին. որքան անիրաւացի է որ ներկայ կոպարների կարգով նոյն աշխատանքը տարբեր գներով է վարձատրւում, նոյնքան օրինաւոր է առարկաների ա. և բ. կարգի բաժանումը և նոցա տարբեր վարձատրութիւնը, որ առաջնորդւած է աշխատանքի համեմատ վարձատրելու սկզբունքով (թէև ոչ լիակատար): Այսպէս՝ լեզւի ուսուցիչը ամբողջ օրը ուսումնարանում չարչարւելուց, կոկորդն ու կեանքը մաշելուց յետոյ, մի քանի ժամ էլ շարունակ տանը պիտի զբաղւի տետրակներ ուղղելով, մինչ, օրինակ, գծագրութեան ուսուցիչը թէ դասին մի մեծ աշխատանք չունի, որքան էլ նա բարեխիղճ լինի, և թէ տանը նա բոլորովին ազատ է հոգսերից: Ի հարկէ չի կարելի այդ երկուսին էլ միատեսակ վարձատրել մանաւանդ մեր ուսումնարաններում, ուր տիրապետում է առարկայական սիստեմը: Դա գուցէ հնարաւոր լինէր, եթէ մենք գործադրել կարողա-

նայինք դասարանական սիստեմը, որ ներկայ հանգամանքներում անիրագործելի է, հէնց օրինակ շատերի ցենզ չունենալու պատճառով:

Ներկայ հանգամանքներում առարկաները հաւասար վարժատրել՝ կը նշանակէ խրախուսել գրութիւնը, գծագրութիւնը և այլն ի վնաս լեզուների:

Դորա առաջը կարելի է առնել նորանով միայն, որ ամեն ուսուցիչ առաջնակարգ դասերի հետ պարտաւոր լինի մի որոշ չափով երկրորդական դասեր ունենալ: Այդ դիւրին իրականանալի կը լինի մեր առաջարկութեամբ, որովհետև միմիայն գրութիւնն ու գծագրութիւնն են մնում երկրորդական, որոնց դասերի թիւը քիչ է և հեշտութեամբ կարելի է միացնել առաջնակարգ առարկաներին:

Երկրորդական դասերը, մանաւանդ իբրև աւելի դիւրին, կարելի է տալ նորաւարտներին, որոնք մի երկու տարի ծառայելուց և փորձութիւն ձեռք բերելուց յետոյ միայն լաւ է որ իրաւունք ստանան առաջնակարգ դասեր աւանդելու:

Չմոռանանք ասել, որ կանոնադրութեան մէջ առարկաները բարեխղճաբար չեն բաժանուած կարգերի: Ախալքալաքի մանկավարժական ժողովը (իմն հոգի) միաձայն ցանկութիւն յայտնեց առաջնակարգ համարել հետևեալները, աչքի առաջ ունենալով լոկ աշխատանքի ըստ արժանոյն գնահատութիւնը. հայերէն, ռուսերէն, թուաբանութիւն, ձեռագործ, բնագիտութիւն. երկրորդական՝ գծագրութիւն և գրութիւն:

Երգեցողութեան մասին ձայները բաժանուեցան - ոմանք համարում են առաջին, ոմանք երկրորդ. մենք մեծամասնութեան հետ վերջինների կողմն ենք:

Իսկ կրօնի մասին խօսք էլ չի կարող լինել:

Այս ցանկով երկու նոր դասեր են մտնում առաջնակարգ առարկաների շարքը (երգեցողութիւնով կը լինի երեք), որով բնականաբար երկու (կամ երեք) ուսուցչի ռոճիկ աւելանում է սովորականից:

«Երկրորդ կոպարի» վերջանալը, այլ և մի քանի առարկաների առաջնակարգ դառնալը, կարծեմ, քիչ թէ շատ կը նպաստեն ուսուցչի նիւթական ապահովութեանը: Սակայն ուսուցիչը իրան երբէք ապահով չի կարող համարել, քանի որ շարունակում է գոյութիւն ունենալ

այժմեան նորա ստորացուցիչ, վարձկան դրութիւնը: Ուսուցչի այժմեան դրութեամբ, այս հանգամանքներում, մենք նորան պաշտօնեայ չենք կարող համարել, այլ ժամանակաւոր վարձկան միայն: Ինչքան էլ մի ուսուցիչ լաւ տեղ ունենայ և լաւ ռոճիկ ստանայ, նա չի կարող իւր անձը ապահով համարել, քանի որ ծառայում է վարձկանի պայմաններով, նա գիտէ, որ ոչ իւր ներկան է ապահով, ոչ ապագան: Թէկուզ տասնեակ տարիներ ծառայէր, մէկ էլ տեսար, իբրև մի հասարակ վարձկան, մի ծառայ, քեզ դուրս արին ուսումնարանից, շատ անգամ առանց որ և է հիմնաւոր պատճառի: Այդ վիճակին ենթակայ են մեր բոլոր ուսուցիչները՝ ամենայետինից մինչև ամենաառաջինը:- Օրինակները սակաւաթիւ չեն:

Ուսուցիչների հետ հասարակութիւնը վարւում է որպէս առարկայի հետ, որպէս ծառայի հետ: Այսօր պիտանի ես կամ յարմարւել կարող ես, ծառայի՛ր. վաղը ծերացար կամ ուզեցիր քո մարդկային իրաւունքները պաշտպանել, եալլա՛ փողոց: Այդպիսի անապահով կեանքը ի հարկէ շատ էլ գրաւիչ չէ. ուստի իւրաքանչիւր ուսուցիչ, առաջին յարմար րոպէին, աշխատում է թողնել ուսուցչութիւնը և մի այլ աւելի ապահով պաշտօն գտնել: Այդ իսկ պատճառով մեզանում հազւագիւտ են հին ու փորձւած ուսուցիչներ:

Թէ ուսուցիչների թափառականութեան և թէ ուսուցչութեան ընկած անունը բարձրացնելու և ապահովելու միակ հիմնական միջոցը մենք համարում ենք ուսուցիչներին պաշտօնեայ և ո՛չ վարձկան ճանաչելը: Ուսուցիչների վիճակը խաղալիք չլինելու համար թեմական տեսուչների և հոգաբարձուների ձեռքում, նոցա պիտի նշանակէ «Ուսումնարանական մասնաժողովը», և այն օրից, երբ նա նշանակւեց ուսուցիչ, պիտի ճանաչւի հայոց ուսումնարանների մշտական պաշտօնեայ. նորա դիրքը անխախտելի պիտի լինի, նորա տեղը ոչ ոք իրաւունք պիտի չունենայ բռնելու. նորան հրաժարեցնելու կամ տեղափոխելու իրաւունքը պիտի պատկանի միմիայն մասնաժողովին: Թափառում է հայ ուսուցիչը, որովհետև երբ ամառը եկաւ, որպէս ժամանակաւոր վարձկան-բանւոր, նա իւր ծառայութիւնը վերջացած է համարում և որոնում է մի այլ տեղ: Այդպիսի բան չէր լինի, եթէ նշանակւած լինէր մշտապէս, որպէս այդ լինում է բոլոր լուսաւոր աշխարհի ուսումնա-

րաններում: Նա մի անգամ նշանակւեց, պիտի միշտ ճանաչւի պաշտօնի մէջ և անպաշտօն չպիտի մնայ, քանի որ նա չի արձակւել ապացուցած յանցանքի համար և կամ չի հրաժարւել անձնական ցանկութեամբ: Մեզանում բոլոր ուսուցիչները ամառը արձակւում են և հրաւիրւում ըստ բարի կամեցողութեան թեմական տեսուչների և հոգաբարձուների: Վա՜յ նորա հալին, ով որ եօլա գնալու ընդունակութիւն չի ունեցել. նոցանից շատերը մնում են անպաշտօն, շատերը զզւած հեռանում են, շատերի տեղն էլ նորերն են բռնում:

Երբ այդպիսով ուսուցիչը կը ճանաչւի մշտական, անփոփոխելի պաշտօնեայ, նորերին տեղ կը տրւի այն դէպքում, երբ ազատ տեղ կը լինի. նոքա պիտի հաշւեն կանդիտատներ բացւելի տեղերի համար:

Դորա փոխարէն ուսուցիչն էլ կապւած պիտի լինի իր պաշտօնատեղի հետ մշտապէս, առանց Ուսումնարանական մասնաժողովի թոյլատրութեան նա տեղափոխւելու իրաւունք չպիտի ունենայ: Հէնց այդ պատճառով հարկաւոր է, որ ուսուցիչներին նշանակէ միայն մի մարմին - Ուսումնարանական մասնաժողովը. եթէ ոչ, այժմս գոյութիւն ունեցող եղանակով մի թեմում յանցաւոր ճանաչւած և արձակւածը մի այլ թեմում աւելի պատւաւոր տեղ է գտնում: Ուսուցիչների տեղափոխութիւնն էլ պիտի Ուսումնարանական մասնաժողովի միջոցով լինի:

Մեր այս առաջարկութիւնը, բացի կողմնակի բազմաթիւ լաւ հետևանքներից՝ կունենայ նաև այս հետևանքները:

Ա. Հասարակութիւնից, հոգաբարձութիւնից և թեմականներից ուսուցչի անկախ դառնալը նորա դրութիւնը հաստատ հիմքերի վերայ կը դնէ հասարակութեան մէջ և կը բարձրացնէ նորա նշանակութիւնը. ուսուցիչը կը դառնայ հասարակութեան իսկական, հաւասար անդամներից մինը, նա կախումն չունենալով ոչ ոքից, ստիպւած չի լինի դաւաճանելու իր համոզմունքներին - նա միջոց կունենայ իր մարդկային պահանջները, առանց երկիւղ կրելու, առաջ տանել կեանքի մէջ:

Բ. Աչքի առաջ ունենալով, որ ծառայութեան տեղը դիւրութեամբ չի կարող փոխել, նա պիտի աշխատի այնպիսի վարմունք ունենալ, որ առիթ չտայ ժողովրդի և պաշտօնակիցների դժգոհութեան: Ներկայիս կռիւները և ուսուցիչների ընկած պատիւը մենք վերագրում ենք ուսուցիչների թափառականութեան. «Բան չունիս, հօ եկող տարի այստեղ մնալու չեմ, ինչ ուզում են թող ասեն», յաճախ ենք լսել պաշտօնակիցներիցս:

Գ. Մի խումբ, շարունակ կամ սակաւ փոփոխութեամբ մի տեղ մնալով, ի մօտոյ ճանաչելով թէ ուսումնարանների և թէ հասարակութեան կարիքները, դիւրութեամբ կարող է հոգալ այդ կարիքները. չենք ասում այլ ևս այն, որ ուսուցիչների փոփոխութիւններից առաջացած ցաւալի ազդեցութիւնը ուսման գործի վերայ՝ կը վերանայ միանգամայն:

Դ. Թէև մեզանում վաղուց արծարծուած է ուսուցչական կասսաների խնդիրը, բայց մնացել է անգործադրելի դարձեալ ուսուցիչների վարձկանութեան, թափառականութեան շնորհիւ, որ իսկոյն կարող է իրականանալ, երբ մի խումբ երկար կը մնայ միևնոյն տեղը:

Ե. Այժմեան ուսուցիչների սովորական ծախսերից մի քանիսը իսպառ կը վերանար, որպիսիք են պաշտօնի համար եղած հեռագիրների և ճանապարհների ծախսերը: Ես ահա չորրորդ տարին է ուսուցիչ եմ և միայն ճանապարհածախս ունեցել եմ մօտ 300 ռուբլի: Կողմնակի ընթերցողի համար գուցէ դա անհաւատալի երևայ, բայց պաշտօնակիցներիցս ոմանք թերևս զարմանան էլ խնայողութեանս վերայ, որ այդքան քիչ եմ ծախսել:

Ուսուցչին մշտական, անփոփոխելի պաշտօնեայ ընդունելուց յետոյ նորա դիրքը ապահովւում է, բայց ապագան մնում է դարձեալ անորոշ. նա էլ մարդ է, ի հարկէ չէ կարող մինչև մահուան օրը իւր պաշտօնը շարունակել, ուստի հարկաւոր է մտածել և նորա ապագան ապահովելու՝ կենսաթոշակի մասին: Եթէ Ուսումնարանական մասնաժողովը ընդունէ այն միջոցը, որ մենք առաջարկում ենք, այսինքն վերոյիշեալ եկամուտներից կազմի ուսումնարանական ֆոնդ, այն ժամանակ այդ ֆոնդի գուցէ և խոշոր մասը հնարաւոր լինի յատկացնել ուսուցիչներին որպէս կենսաթոշակ: Այդ ֆոնդի աղբիւրների վերայ կարելի է աւելացնել նաև որոշ % ուսուցիչների ռոճիկներից: Ամեն մի ուսուցիչ ուրախութեամբ կը վճարէ այդ %-ը, որ իւր ապագայի ապահովութեան միակ յոյսը պիտի լինի:

Ուսուցիչների ապահովութեան երկրորդ կարևոր կէտն էլ նոցա որդոց կրթութեան գործն է: Նկատուած է, որ ամեն մի ամուսնացած ուսուցիչ, մանաւանդ եթէ նորա կինը վարժուհի չէ, աշխատում է թողնել ուսուցչութիւնը, որոնելով այնպիսի պաշտօն, որով ծածկել կարողանայ իւր մեծացած ծախսերը. կամ եթէ նա չի ուզում թողնել ուսուցչութիւնը՝

դժւարանում է ամուսնանալ, աչքի առաջ ունենալով, որ իր ապագայ որդոց կրթութիւն տալու միջոցներից զուրկ է ինքը: Դա մեր ամենապակասաւոր կողմն է: Ուսուցիչը, ուսման կարապետը, միջոց չունի իր որդոց դաստիարակութեան ծախսը հոգալու: Հասկանալի է, որ ուսուցիչների որդոց կրթութեան գործը ապահովել՝ կը նշանակէ նպաստել նոցա ամուսնանալուն: Այդ կարելի է այսպէս. օրէնք դնել, որ ուսուցիչների որդոց Ներսիսեան դպրոց կամ Ճեմարան ընդունեն ձրի որդեգիր և եթէ հնարաւոր է, աւարտելուց յետոյ էլ միջոց տան ուսումը շարունակելու:

Ուսուցիչների կենսաթոշակի մի աղբիւր էլ պէտք է ընդունել ուսումնարանների բիւջէտը. հարկաւոր է պարտաւորեցնել, որ ամեն մի ուսումնարան իր բիւջէտից գէթ 1 % յատկացնէ ուսուցիչների պենսիային: Այդպիսով օրինակ Ախալքալաքի ուսումնարանները իրանց տարեկան 5000 ռ. բիւջէտից մի՞թէ չեն կարող որպէս նպաստ 50 ռ. (1 %) դորան յատկացնել ամեն տարի: Ապահովւած ուսումնարաններից ի հարկէ միշտ աւելի շատ % կարելի է ստանալ: Գլխաւորն այն է, որ հիմքը դրւի. աղբիւրներ ժամանակի ընթացքում շատ կը գտնւին: Մեր քահանաները (Թիֆլիզի) արդէն ունին մի փոքրիկ դրամագլուխ և ամեն տարի համարեա կտակներ են լինում նորա օգտին. ուսուցիչների ապահովութիւնը կարծեմ աւելի կը հետաքրքրի հասարակութեան և կողմնակի մուտքեր շատ կ՛ունենայ կտակներից, ընկերութիւններից և այլն:

Ուսուցիչների ներկան և ապագան այդպէս ըստ կարելոյն ապահովելուց յետոյ, հասկանալի է, որ իրաւունք կ՛ունենանք նոցա կողմից էլ պահանջելու բարեխղճութիւն, անձնւիրութիւն և իր պարապմունքի մասնագիտութիւն: Դժբաղդաբար այժմս մենք չունինք թէ Ներսիսեան դպրոցում և թէ Ճեմարանում ոչ մի մանկավարժական դասարան, ուր մեր ուսուցչացուները, նախքան պաշտօնի մտնելը, քիչ թէ շատ ծանօթանային իրանց մասնագիտութեանը:

Այդ կարիքը չափազանց զգալի է:

Ներսիսեան դպրոցը փակել է 7-րդ մանկավարժական դասարանը այն պատճառով, որ իբր թէ մանկավարժ չկայ. բայց իր ահագին միջոցներով, եթէ նա կամենար, փակման օրից մինչև այսօր տասնեակ մանկավարժներ կարող էր տալ: Ներսիսեան դպրոցը աւելի դիւրութեամբ կարող է բաց անել այդ դասարանը, որ բացառապէս պիտի նւիր-

ւի մանկավարժութեան: Այդ մանաւանդ անհրաժեշտ է այն պատճառով, որ դեռ ևս Ճեմարանը հարկաւոր ռեպուտացիան չունի, և Ներսիսեան դպրոցը աւարտողներից հազիւ է պատահում, որ Ճեմարանում շարունակեն իրանց ուսումը: Դա ի հարկէ չի խանգարի, որ Ճեմարանն էլ մանկավարժական դասընթաց ունենայ լսարաններում:

Երբ կը բացուեն այդ դասարանները, կարելի է որոշել, որ միմիայն այդ դասարաններից աւարտածները ուսուցիչ ընդունուեն: Ով որ ուսուցչութեամբ չպիտի պարապի, ի հարկէ այդ դասարանում կարող է չմնալ: Նոյնը պէտք է ասել և վարժուհիների մասին. մենք չունենք ոչ միայն հայոց լեզւի, այլ նոյն իսկ կանոնաւոր հայերէն գիտցող վարժուհիներ: Խիստ կարևոր է ունենալ նաև գէթ մի հատ միջնակարգ ուսման ծրագրով օրիորդաց ուսումնարան, եթէ միայն դա հնարաւոր է, որտեղից դուրս գային հայ վարժուհիներ: Այս խնդիրը խորին ուշադրութեան է արժանի:

Վերև շօշափած խնդիրները մենք համարում ենք մեր ուսումնարանական գործի հիմքը. միւս երկրորդական խնդիրների վրայ կանգ չենք առնի. թեմական տեսուչների և աւագ ուսուցիչների սահմանը, որպէս նաև հոգաբարձութեան այս կամ այն դիրքը պիտի դրուի այլ հիմունքի վրայ:

Մեզ թերևս պատասխանեն, որ շատ մեծ ուշադրութիւն ենք դարձրել ուսուցիչների ապահովութեան վերայ: Բայց առանց այդ ապահովութեան երբէք իր կոչմանը համապատասխանող ուսուցիչներ չենք ունենայ: Հաւատացած ենք, որ այդ ապահովութիւնը գրաւական կը լինի բարձրագոյն կրթութեամբ անձերի համար էլ, որ սոքա ուսուցչութեան նւիրեն իրանց, մինչ ներկայ պայմաններում դա անհրականանալի է: Մեր յօդւածի երկրորդ պակասաւոր կողմն էլ թերևս համարւի այն, որ Ուսումնարանական մասնաժողովին մեծ դեր ենք յատկացնում, այսինքն մեծ իշխանութիւն ենք կենդրոնացնում նորա ձեռքում: Բայց ուրիշ կերպ, առանց կենդրոնացման անհնարին են այս բարենորոգումները: Մեր ուսումնարանները այս խառնակ դրութիւնից կարող է ազատել միմիայն հաստատ կազմակերպւած մի մարմին, որպիսին պիտի լինի Ուսումնարանական մասնաժողովը:

**«Մուրճ», 1894, N 1, էջ 133-141**

## ՕՐԷՆՔ ԵՒ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆ
## (Քահանայական խնդրի առթիւ)

Սկսած Լուսաւորչի օրերից՝ մինչև մեր ժամանակները, դարերի այս երկար շարքում մեր հոգևոր գործերը կառավարուել են և ըստ մեծի մասին դեռ կառավարուում են միմիայն տրադիցիայով - աւանդական սովորութիւնով, եթէ յիշելու չլինինք սուրբ հարց և հայրապետների զանազան ժամանակներում և պարագաներում տւած կանոնները, որոնք համարեա երբէք իրական և ընդհանուր գործադրութիւն չեն ունեցել շնորհիւ այն հանգամանքի, որ ժամանակի դարաւոր կնիքը և հնութեան փոշին նրանց մատնել են մոռացութեան... իսկ շատերն էլ արդէն անպէտք, նոյն իսկ վնասակար են ներկայիս պահանջներին...

Պատմական աղէտալի ժամանակները, հայոց հայրապետութեան անհաստատ ու վտանգալից կացութիւնը, հայերի բռնադատած վիճակը, մասամբ նաև հայ հոգևորականութեան թուլութիւնը ժամանակ և նպաստամատոյց պայմաններ չտուին նրան ի մի կազմակերպելու՝ մեր հոգևոր գործերը կանոնաւորապէս վարելու համար և վերոյիշեալ կանոնները ամփոփելով հրատարակելու իբրև մի օրինագիրք, կոդէկս, որով պիտի ղեկավարուէին թէ իրանք և թէ իրանց յաջորդները:

Ի հարկէ, այդ ուղղութեամբ եղել են փորձեր. Ս. Գրքի պատուէրները միացրած եկեղեցու ս. հարց կանոնների և ժողովրդի աւանդական սովորութիւնների հետ ի մի ամփոփելով տալ ժողովրդին իբրև օրինագիրք, որպիսին է Մխիթար Գօշի և այլոց միջնադարեան օրինագրքերը. բայց դրանք ընդհանուր ընդունելութիւն և գործադրութիւն, եթէ չենք սխալւում, երբէք չեն գտել. նրանք աւելի ազդեցութիւն և իրական գործադրութիւն են ունեցել Հայաստանից դուրս հայկական գաղթավայրերում՝ Լեհաստանում, Ռուսաստանում, նոյն իսկ Վրաստանում, քան բուն Հայաստանում:

Այսպէս ուրեմն, դարերից ի վեր մեր ներքին հոգևոր գործերը կառավարելու համար իսկապէս մենք մի օրինագիրք չենք ունեցել այդ բառի իսկական իմաստով:- Այստեղ չենք յիշում յայտնի «Պոլոժենիան»[1],

1. Сводъ законовъ. Изданіе 1857 года. т. I. часть I. книга третія. О управленіи духовныхъ делъ христіанъ Армяно-Грегоріанскаго исповеданія.

որովհետև դա վերաբերում է միմիայն Ռուսաստանի հայերին և այն էլ որոշ սահմաններով միայն: Մեզանում իշխել է ըստ մեծի մասին միայն կամայականութիւնը, հաճոյքը, քմահաճութիւնը, ինչ ուզում էք անուանեցէք: Իբրև ասիական ժողովրդի իսկական տիպար, մեր գործերի կառավարութիւնը ըստ մեծի մասին եղել է և է անկանոն, հակառակ և ամեն տեսակ պատահականութեան արդիւնք, քանի որ նրա հիմքը խախուտ է եղել, քանի որ չկայ խիստ սահմաններով որոշուած օրէնքը: Մենք չունենք յարատև, անեղծանելի և սրբացած օրէնք, այլ միայն կամայականութիւն... Ուր չկայ օրէնք, հարկաւ չի կարող լինել և դիսցիպլինա, գործերի յաջորդական հետևողականութիւն, հրահանգների և վճիռների միատեսակութիւն, պարտականութիւնների իրաւունքների փոխադարձ յարաբերութեան սահման: Այսօրուայ զօրեղ, քաղաքակիրթ և յառաջադեմ ազգերի կազմը անխախտ է մնում միմիայն կանոնաւոր օրէնքի և լաւ կազմակերպութեան շնորհիւ:

Օրէնքն է, որ մեղաւորին պատժում է, զրպարտուածին արդարացնում, ճշմարտութիւնը պաշտպանում, պարտաճանաչութիւնը խրախուսում, պարտազանցութիւնը դատապարտում և առհասարակ մարդկային փոխադարձ յարաբերութիւնների արթուն ղեկավար հանդիսանում: Չի կարելի երևակայել մի լաւ, կազմակերպուած և կանոնաւոր հաստատութիւն կամ հիմնարկութիւն, որ յարատևել կարողանար առանց օրէնքի, կանոնի և լաւ կազմակերպութեան:

Սուրբերը միայն անցեալումն են գոյութիւն ունեցել. ներկայումս, երբ մարդկային հասարակութիւն, ուրեմն և ազատ կամքի վրայ հիմնուած փոխադարձ յարաբերութիւն կայ, պիտի լինի և օրէնք, իրաւունքների, պարտականութիւնների և փոխադարձ յարաբերութեան պարզ ու որոշ սահման: Չկայ այդ սահմանը,- ամեն ոք ազատ է ուրեմն ըստ իւր քմահաճութեան գործել, և այդ քմահաճութիւնն է, որ խեղդել է շատ գեղեցիկ հիմնարկութիւններ և խեղդում է մեզանում ամեն բան:

Ոչ միայն այդ. վերջին դարերում մեր հոգևորականութիւնը այնքան է ընկել, նրա կազմակերպութիւնը, փոխադարձ կապն ու յարաբերութիւնը այնքան թուլացել են, որ նա երբէք չի ունեցել միաբանութիւններ այդ բառի իսկական մտքով, այն ձևով, օրինակ, որպիսին գոյութիւն ունի մեր կաթոլիկ եղբայրակիցների՝ Վենետիկի և Վիեննայի

Մխիթարեանների մէջ... Հայ հոգևորականը իրան երբէք չի համարել միաբանութեան անբաժանելի անդամ. միաբանութեան և առհասարակ հայ հոգևորականութեան շահերը նա համարել է իբրև մի օտար, խորթ, իրան չվերաբերեալ, իւր անձնականին հակառակ շահեր, ուստի և նա մտածել և գործել է ըստ մեծի մասին ոչ թէ յօգուտ, այլ ի վնաս այն եղբայրութեան, այն դասակարգին - միաբանութեան, որին խոստմամբ և երդումով յաւիտենական անդամ է գրւած: Դրանից է ծագում ահա այն տխրալի երևոյթը, որ մեր վարդապետների, եպիսկոպոսների և, ցաւ է ասել, նոյն իսկ կաթողիկոսների երբեմն մեծամեծ կարողութիւնները, արժէքաւոր թղթերն ու թանկագին գոյքերը բաժին են դառնում զանազան հաջիների, խնամիների... և ազգականների, ո՛չ միայն կենդանութեան ժամանակ, այլ և մահուանից յետոյ:

Մենք չունենք առհասարակ օրէնք մեր նեքին գործերին վերաբերեալ, չունենք նաև, չեմ ասում խիստ, զինւորական մի կազմակերպութիւն մեր հոգևորականութեան մէջ, այլ նոյն իսկ հասարակ, սովորական մի կազմակերպութիւն, որի անդամները հասկանալ կարողանային իրանց եղբայրութեան շահերի ընդհանրութիւնը, այն եկեղեցու շահերի միութիւնը, որին ծառայելու նրանք պարտաւորւել են կամաւոր ուխտով և երդումով...

Ի՞նչ կարող է լինել այդպիսի մի հիմնարկութեան, մարմնի կամ ամբողջ հոգևորականութեան գործունէութեան հետևանքը, երբ նա տոգորւած չէ մի ընդհանուր գաղափարով, երբ նա միացած չէ շահերի ընդհանրութեամբ. երբ նա չունի մի որոշ և յարգելի կազմակերպութիւն, երբ այդ անկազմ մարմինը, բացի այդ բոլոր պակասութիւններից, չունի նաև իւր գործունէութեան սահմանները որոշող օրէնք, կանոն. երբ նրա բազմաթիւ, ցան ու ցիր անդամները տգէտ են, ողորմելի և կաշառակեր...

Չունենք օրէնք, չունենք նաև կազմակերպութիւն, կամ չունենք կազմակերպութիւն, չունենք նաև օրէնք. առանց կազմակերպութեան օրէնքը կը մնայ միայն մեռեալ տառ, իսկ առանց օրէնքի չի կարող գոյութիւն ունենալ յարատև կազմակերպութիւն: Այդ երկու գաղափարներից որն էլ վերցնէք, առանց միւսին՝ ապարդիւն, անօգուտ և անպէտք են, իսկ առանց այդ երկուսի գոյութեան՝ չի կարող գոյութիւն ու-

նենալ ո՛չ մի բարեկեցիկ հիմնարկութիւն, մանաւանդ երբ նա բարդ պարտականութիւնների և իրաւունքների ղեկավար է, որպիսին է մեր հոգևորականութիւնը:

Այս տեսակէտից նայելով, մեր հոգևոր գործերը ամբողջովին գտնւում են խաօսի մէջ. օրէնք չլինելուցն է քահանայական խնդրի, հաս ու չհասի, ընտրական գործի, ուսումնարանական կազմակերպութեան, հոգևոր կառավարութեանց տնտեսական և առհասարակ միւս մասերի ներկայիս կարկամ-խառնաշփոթ և հակասական դրութիւնը:

Այս կամ այն անհատն, ի հարկէ, շատ բան կարող է շինել շնորհիւ այն հանգամանքի, որ նա պատահաբար լուսամիտ, խոհուն, հեռատես և ժողովրդի ու եկեղեցու շահերին նւիրուած անձնաւորութիւն է. բայց, չմոռանանք, որ այդպիսի անհատները բացառութիւն են. նրանք, որպէս և նրանց գործունէութիւնը, ժամանակաւոր են միայն. այդ գործունէութիւնը յարատև, արդիւնաւէտ չի կարող լինել, երբ նա պաշտպանւած ու խրախուսւած չէ օրէնքով:

Տգէտ քահանաների խնդիրն, օրինակ, անցեալ տարի Սինոդի մի գեղեցիկ կարգադրութեամբ արխիւ տրւեց այլ ևս երևան չգալու յոյսով, բայց այսօր մեր ամբողջ մամուլն ու հասարակութիւնը կրկին ստիպւած է նոյն հին երգը երգելու, ինչ որ երեսուն տարիներից ի վեր հազար ու մի ձևերով քննւած ու դատապարտւած էր: Այդ մեռած խնդիրը չէր կարող երևան գալ, եթէ մեր հոգևորականութիւնը մի քիչ միայն հետևողականութիւն, մի փոքր յարգանք ունենար հէնց դէպի իր որոշմունքը, մի փոքր յաջորդական և հեռատես լինէր իր գործողութիւնների մէջ... Սկզբունքով էլ, կարգադրութիւնով էլ որոշւած էր տգէտ քահանայ չձեռնադրել. պրծաւ գնաց... Սոփեստութիւնները աւելորդ են. հիմա հարցը շինել են մի գորդեան հանգոյց, թէ ի՞նչ կը նշանակէ կրթւած քահանայ (!!??):- Կարդացէ՛ք մեր հոգևոր սեմինարիաների ծրագիրը և կը հասկանաք, որ նրանք կազմւած են կրթւած քահանաներ տալու համար. խնդիրը պարզ է. եթէ նրանց ծրագիրը մի քիչ հին և պակասաւոր է, պէտք է փոփոխել և լրացնել և ով որ այդ ծրագիրը, անցած կը լինի, նրան մենք կանւանենք կրթւած քահանայ, համեմատաբար միայն ի հարկէ:

Մեզանից շատերը քահանայական խնդրին այնպէս են վերաբերւում, որ կարծես աշխարհիս երեսին մի չեղած, չտեսնուած և տիեզերական նշանակութիւն ունեցող խնդիր պիտի լուծեն: Նայեցէ՛ք ձեր շուրջը, պարոններ, եթէ ընդունակ էք լաւ օրինակի հետևելու, այդպիսի օրինակներ շատ կան. վերցրէք կաթոլիկ, յոյն, ռուս, վրացի հոգևորականութիւնը, հետևեցէ՛ք միմիայն նրանց, որովհետև այդ կողմից մենք բոլորից յետ ենք:

Վրաց սեմինարիան, որ ուսման ծրագրով համապատասխան է մեր ճեմարանին, բացառապէս միայն քահանաներ է տալիս վրաց. ի՞նչն է պատճառը, որ նրա սաները գնում են գիւղ, իսկ մեր սեմինարիստները կամ ճեմարանականները՝ ոչ. հարկաւ օրէնքի և կրթական ցենզի պահանջը, որ վրաց մէջ կայ, իսկ մեզանում՝ չկայ: Այստեղ խօսք չի կարող լինել fin de siecle-ի նիւթապաշտ ուղղութեան մասին, որի պատճառով որպէս թէ մեր շրջանաւարտները հրաժարւում են քահանայութիւնից. հապա ինչո՞ւ վրացի շրջանաւարտները չեն հրաժարւում, քանի որ նրանց սեմինարիան Թիֆլիսի նման մի շռայլ քաղաքումն է գտնւում, իսկ մեր ճեմարանը Էջմիածնի նման մի համեստ վանքի բակերում...

Թողնենք վրացոց. հոգևորականութիւնով մենք յետ ենք նոյն իսկ մեր հայ կաթոլիկ եղբայրակիցներից, որոնք Կովկասում մինչև վերջին տարիներս չունեն ինքնուրոյն անկախ հոգևոր կառավարութիւն. չունեն հոգևոր սեմինարիաներ, բայց ունին մի զօրեղ հոգևորականութիւն: Համեմատեցէ՛ք այդ մեր տգէտ եղբայրակիցների գիւղական հոգևորականներին մերայինների հետ, դիտեցէք նրանց գործունէութիւնը, ուղղութիւնը և կը տեսնէք, որ նրանք անչափ բարձր են մերոնցից. թէև սակաւաթիւ, ցանուցիր, առանց մօտաւոր իշխանութեան հսկողութեան, սակայն մի ոգով, մի ուղղութեամբ տոգորուած, մի սերտ կազմակերպութեամբ միացած նրանք կարող են միայն զարմանք յարուցանել:

Վերցրէք, օրինակ, Ախալքալաքի գաւառը, ուր ապրում են բազմաթիւ հայեր, հայ կաթոլիկներ և վրացիներ. համեմատեցէք և տեսէք. վրաց գիւղերում կան ճեմարանական լիակատար կրթութեամբ քահանաներ. կաթոլիկներն ունին միջնակարգ կրթութեամբ իրանց գործին հմուտ և բանիբուն քահանաներ, իսկ այդ գաւառի ազգաբնակութեան գերակշռող տարրը - Լուսաւորչականները՝ յիսուն և ինը քահա-

նաների մէջ չունին և ո՛չ մի քահանայ, որ դպրոցի երես տեսած լինէր: Երևակայեցէք, որ քահանան, ըստ բանաստեղծի ասութեան, պիտի լինի «հովիւ անխոնջ Քրիստոսի հօտի. երկնաբեր գանձին արթուն դէտ. միջնորդ Աստուծոյ, մարդկան ազգի հետ»...

Կրկնում ենք, վրաց մէջ կրթուած անձերն են ձեռնադրւում քահանայ, որովհետև արգելք կայ տգէտների առաջ և պահանջ կրթական ցենզի, իսկ մեզանում չեն ձեռնադրւում, որովհետև չկայ թէ այդ արգելքը և թէ օրէնքի նշանակութիւն ստացած խիստ պահանջը. խտրութիւնն ու պահանջը իրանք կը ստեղծեն կրթուած քահանայացուներ:

Այդ դէպքը մեզանում նոր չէ. երբ եղել է խիստ պահանջ, նա ունեցել է հետևանք, միայն տևական չլինելով կորցրել է իր նշանակութիւնը: Այսպէս օրինակ, Գէորգ Դ-ի ժամանակ գիւղական քահանայացուներից պահանջւում էր ձայնագրութիւն, և մենք յիշում ենք տասնեակ տիրացուներ, որոնք մի տարի շարունակ ձայնագրութեամբ էին պարապում քահանայ դառնալու համար և իրօք դարձան էլ: Եթէ դորա հետ լինէր նաև կրթական ցենզի պահանջը, ապա նրանցից շատերը դրանից էլ կը պատրաստուէին: Մենք ժամանակին հետևելու, նրա պահանջները յարգելու և, մի բան որոշելուց յետոյ՝ հետևանքին սպասելու ընդունակութիւն քիչ ունենք: Սինոդը կրթական ցենզ նշանակեց քահանաների համար, և մի տարի չանցած, արդէն մենք հրաշքներ ենք սպասում: Սպասեցէ՛ք, պարոններ, համբերութիւն ունեցէք մի քիչ և կը տեսնէք նրա բարերար հետևանքները: Մենք անձամբ տեսանք չորս տիրացուներ, որ յոյսերը կտրելուց յետոյ անցեալ տարի որոշեցին սեպտեմբեր ամսից պատրաստուել մի խումբ ուսուցիչների մօտ Ներսիսեան դպրոցի չորրորդ դասատան քննութիւն տալու համար. բայց եկաւ սեպտեմբերը, նոր քամի փչեց և նրանք տեսնելով՝ որ առանց պատրաստուելու էլ քահանայ կարող են լինել, թողին իրանց մտադրութիւնը:

Հասկանալի է, եթէ Սինոդի որոշմունքը անփոփոխելի մնար, փորձի համար գէթ մի հինգ վեց տարի, այնուհետև միայն կարելի կը լինէր նրա օգտի կամ վնասի մասին խօսել. այդ որոշմունքի շնորհիւ, անտարակոյս, ընդունակ և պատրաստի տիրացուներից շատերը ուղղակի քննութեամբ կարող էին քահանայ դառնալ: Ուր ջոկողութիւն, ընտ-

րութիւն չկայ, այնտեղ չի կարող առաջ գալ ո՛չ մի լաւ բան, դա բնական օրէնք է. օրինակը աչքերիս առաջն է, մի քանի տարուայ ընթացքում խալիֆա վարժապետներն ու խալիֆայութիւնը պատմութեան նիւթ դարձան, շնորհիւ օրէնքի պահանջման. մի տասն-քսան տարուց յետոյ կարող ենք և այս քահանայական ծեծուած խնդիրն էլ պատմութեան արխիւին յանձնել, եթէ յարգել կարողանանք ժամանակի պահանջը և հետևենք հարևաններիս գեղեցիկ օրինակին:

Մենք ակամայ կանգ առանք այսքան երկար քահանայական խնդրի վրայ. այս ամենը բերում ենք իբրև պատահական օրինակներ հասարակութեանը զբաղեցնող խնդրի առթիւ: Մեր յօդուածի նպատակը միայն քահանայական խնդիրը չէ, այլ մեր բոլոր հոգևոր գործերի կանոնաւորման խնդիրը, որոնք անխզելի կերպով կապուած են իրար հետ, ինչպէս մի ամբողջ մարմնի օրգանական մասերը, լինի դա քահանայական, ուսումնարանական, հաս ու չհասի, տնտեսական և այլն:

Այդ խնդիրներից շատերն իսկապէս եղել են շատ վաղուց, քրիստոնէութեան առաջին օրերից, որպիսին էր քահանայականը, հաս ու չհասը և այլն. քահանաներին և հոգևորականներին ողբում է իւր աննզուգական երկի մէջ դեռ հայկական Հերոդոտը - Խորենացին:

Դարերը չեն կարողացել լուծել այդ խնդիրները և ահա, շնորհիւ կեանքի միանգամայն նոր պայմանների, եւրոպական քաղաքակրթութեան նոր և զօրեղ ազդեցութեան, այդ խնդիրները երևան են գալիս առաւել բարդուած, կնճռուած և անյետաձգելի լուծումն են սպասում: Հների վրայ աւելացել են նորանոր խնդիրներ, կեանքի նոր պայմանները պահանջում են հնումը չնախատեսնուած օրէնքներ: Այդ բոլորը կենդրոնանում է մեր հոգևորականութեան և Էջմիածնի ձեռքը, որ շնորհիւ իւր ներկայ կազմակերպութեան՝ չի կարողանում ո՛չ միայն այդ բոլոր խնդիրների առաջն առնել, լուծումն, ուղղութիւն տալ ու ղեկավարել, այլ շատ և շատ յետ է մնում այդ պահանջներն հասկանալուց... Իրողութիւնն այն է, որ մեր հոգևոր դասը թէ իւր կրթութեամբ, թէ հասկացողութիւնով և թէ աշխարհայեցողութեամբ աշխարհականներից շատ յետ է մնացել, այնպէս որ այն, ինչ հոգևորականութեան անմիջական պարտականութիւնն է կատարելը, նա մոռանում է այդ, որ ժողովրդի լուսամիտ դասին առիթ է տալիս թէ բողոքելու և թէ յիշեցնելու, պահանջելու նրա պարտաճանաչութիւնը:

Ձեզ պարզ օրինակ. մեր թէ առաջնորդների և թէ Սինոդի անդամների մէջ, չենք ասում բարձրագոյն, միջնակարգ կրթութեան տէր անձեր էլ չկան...

«Մուրճ»-ի (N 3) մէջ գեղեցիկ է նկատում պ. Արասխանեանցը, թէ միայն կրթուած քահանաներով չի՛ նորոգուի մեր հոգևորականութիւնը, այլ այդ նորոգութիւնը անհրաժեշտ է և կուսակրօն հոգևորականութեան համար: Եւ նա պնդում է որ քահանայական դասի վերանորոգումը նոյն իսկ հոգևոր կառավարչական մարմնից, վարդապետներից ու եպիսկոպոսներից պէտք է սկսել:

Երբ ծառի արմատը անառողջ պայմանների մէջ է, նրա եզների և պտուղների առողջութիւնը ժամանակաւոր և պատահական միայն կարող է լինել... Նորոգութիւնը հիմքից է հարկաւոր, այլապէս նոր կարկատանը կարող է պատառել հին տիկը:

Այս ամենից յետոյ մենք այն կ՛ասենք, որ հարկաւոր է ժամանակի պահանջը յարգել և մեր բոլոր գործերում մտցնել առհասարակ նորոգութեան, կանոնի և սահմանադրութեան ոգի:

Մեր եկեղեցին ժողովրդական եկեղեցի է. առանց ժողովրդի հեղինակաւոր մասի ձայնին կարգադրութիւն անելը հակառակ կը լինի այդ ժողովրդի աւանդական սովորութեանը և եկեղեցու ոգուն: Ուստի այս ամեն խնդիրների վերաբերեալ պէտք է մշակուեն որոշ կանոններ, հրատարակուեն՝ մամուլի և ժողովրդի հասկացող մասի թեր և դէմ կարծիքն իմանալու համար և ապա այդպէս քննադատութեան բովից անցնելուց յետոյ՝ հրատարակուեն իբրև օրէնք:

Ի հարկէ այդ օրէնքը այն ժամանակ միայն պատկառանք կ՛ազդէ և արդիւնք կ՛ունենայ, երբ նա կը համապատասխանէ ժողովրդի և ժամանակի պահանջին և բարձր կանգնած կը լինի կուսակցական շատ անգամ կորստաբեր միտումներից: Մեր հոգևորականութիւնը չի ուզում կարծես մի քիչ բարձր կանգնել կուսակցութիւններից և օգտուել այդ կուսակցութիւնների մշակած խնդիրներից ժողովրդի կարիքն ու հոգսը լրացնելու համար, այլ նա ինքը յաճախ զոհ է դառնում այդպիսի կուսակցական միտումների...

Օրէնքի հետ անհրաժեշտ է խիստ կազմակերպութիւն, առանց որին օրէնքը կը մնայ միայն տառ, երբ նա չի գործադրուի մարդկային

յարաբերութեանց ժամանակ. կազմակերպութեան համար գեղեցիկ օրինակ են եւրոպական հիմնարկութիւնները. մեր հոգևոր գործերն այսօր այնքան բարդուած են, որ նրանց կանոնաւորելու համար անհրաժեշտ են առանձին վարիչ մարմիններ:

Այս ամենը, ի հարկէ, դիւրին իրականանալի չեն, մանաւանդ այն պատճառով, որ Էջմիածինը դեռ առաջնորդներ չի գտնում թեմերը թափուր չթողնելու համար. բայց չպիտի մոռանանք, որ այդ մարմիններից և պաշտօններից շատերը, որպիսի են տնտեսականը, ուսումնարանականը և այլն, կարելի է յանձնել դրա համար ժողովրդից ընտրած աշխարհականներին, որոնք այդ մասերում հաւանականօրէն աւելի ձեռնհաս են, քան նոյն իսկ հոգևորականները[1]:

Միայն հիմնաւոր-էական նորոգութիւնը առհասարակ մեր բոլոր ներքին գործերում կարող է բարձրացնել մեր հոգևորականութեան ընկած պատիւը, միայն հետևողական, արդարամիտ և օրինաւոր գործունէութիւնը կը կապէ ժողովրդին իր եկեղեցական կարգերի հետ, այլապէս ներկայիս խառնաշփոթ դրութիւնը, բացի զզւանքից ու արհամարհանքից, ոչինչ չի կարող ներշնչել ժողովրդին:

Այսօր խլանում, խեղդւում է ժողովրդի արդարացի ձայնը հոգևոր դասի բազմաթիւ ապօրինութեանց առթիւ: Կարդացէք առաջնորդների, յաջորդների և քահանաների վրայ ուղղած բազմաթիւ խնդիրները, որոնք ըստ մեծի մասին մնում են անպատասխան. հետևեցէք հաս ու չհասի կենսական և գայթակղեցուցիչ խնդրին իր բազմաթիւ ապօրինի հետևանքներով... «Ոչ յօրինակ այլոց»... Քննեցէք եկեղեցական գումարների, վանական կալւածների անկոնտրոլ, անհաշիւ դրութիւնը. դիտեցէք առհասարակ մեր բոլոր ներքին գործերի անգոյն, ողորմելի և կորստաբեր ընթացքը, և կը գաք մի տխրալի, յուսահատական եզրակացութեան. արդարը հալածւում, գործը խափանւում, դրամը յափշտակութեան և աւարի նիւթ դառնում, մի խօսքով այստեղ տիրապետում են բուն ասիական կարգերը... սիմոնականութիւն, կաշառակերութիւն, խնամիութիւն, եօլայականութիւն...

1. Տես «Մուրճ», պ. Ա. Արասխանեանցի յօդւածը. Դպրոցական-վարչական ռեֆորմ, ուր այդպիսի մի առաջարկութիւն արւած է ուսումնարանների ուսումնական մասի կառավարութեան համար:- Ծան. Հեղ.

Եւ ասացէք խնդրեմ, այս խառնաշփոթ դրութեան մէջ, երբ անհատի պատիւը, իրաւունքը, դիրքը և անունը անաղարտ մի որոշ դիրքի և սահմանի մէջ պահելու համար ո՛չ մի գրաւական չկայ, երբ անհատը կախումն ունի ո՛չ թէ օրէնքից, այլ կամայականութիւնից և խնամիութիւնից. երբ անհատի ստորաքարշ պաշտօնակիցը մի րոպէում կարող է տապալել նրան և չունի օրէնք, որով արդարանալ կարողանայ,- այդպիսի հանգամանքներում առհասարակ ո՞վ է գժուել իր «սաղ գլուխը աւետարանի տակ դնել», ո՞վ կը տայ հոգևորականութեան անունը, երբ մի լիրբ լրագրական սուտ[1] կարող է թէկուզ ժամանակաւորապէս խախտել անհատի դիրքն ու պատիւը, երբ ապացուցած յանցաւոր քահանան, Սևանի փոխանակ, պարգևով է վերադառնում իր տեղը. երբ դատը չքննուած՝ քահանան բանտարկւում է և առաջնորդը զլանում է բողոքելու այդ մասին. երբ նոյն առաջնորդը քահանայ է ձեռնադրում քրէական յանցաւորին... Այս է ահա մեր ներքին գործերի պատկերը:

Յիշենք դարձեալ մի խնդիր, որ անցեալ տարիները ուղղած էր հոգևոր կառավարութեան. դա խնդիր չէր, այլ կատարեալ մի յանդիմանութիւն, բողոք՝ մեզանում տիրապետող կարգերի դէմ: Խնդրատուն կարծեմ հինգերորդ աստիճանի չհասութիւն ունէր, որին չէին թոյլ տալիս ամուսնանալու: Նա հաւաքել էր այդպիսի դէպքերի 89 օրինակ այդպիսի ամուսնութիւնների, իսկ իրան մերժում էին. ուստի նա մօտաւորապէս այս էր գրում. «եթէ դա օրէնք է, ուրեմն թոյլ տուէք ինձ ևս օգտուելու այդ օրէնքից, իսկ եթէ կամայականութիւն, ապա ես չեմ ցանկանալ զոհ լինել կամայականութեան և ո՛չ էլ դրա համար նպաստ կը տամ ճեմարանին»: Թոյլատուութեան համար կարծեմ 100 ռ. էր պահանջւում յօգուտ ճեմարանի: Յիրաւի ժամանակի խիստ պահանջը չէ, մանաւանդ գիւղական դասի համար, որ հաս ու չհասը կենսական խնդիր է դարձրել, այլ այդ ապօրինի թոյլատուութիւններն ու մի որոշ կանոնի չհետևելը, որոնք, իբրև գայթակղեցուցիչ օրինակ, հիմք են դառնում ժողովրդի մոլորութեան և ապա արդարացի տրտունջին: Այն որ թոյլ է տրուած հարևանին չորրորդ աստիճանում, չի թոյլատրւում իրան հինգերորդում, ի՞նչ պիտի մտածէ այդ մասին ժողովուրդը:

1. Յիշեցէ՛ք Արսէն աբեղ. Ղլտճեանի դէպքը, որին սպանութեան մէջ էին զրպարտում:

Վերևն էլ ասացինք, որ մեր խօսքը միայն քահանայութեան չի վերաբերում, որի մասին ճեռնհաս անձերն արծարծեցին իրանց կարծիքը. սորա մէջ շօշափած մի քանի կէտերը մինչև անգամ դուրս եկան մամուլի մէջ, երբ մենք այս յօդուածը բարեկամներիս շրջանում կարդալուց յետոյ արդէն արտագրում էինք. այո՛, միայն քահանայութեան մասին չէ մեր խօսքը. այլ առհասարակ բոլոր մեր հոգևոր գործերի վարչական կանոնաւորութեան, իրաւունքների և պարտականութիւնների սահմանադրութեան, ընդհանուր օրէնսդրութեան է վերաբերում: Խնդիրը առհասարակ պէտք է աւելի լայն մտքով հասկանալ. դա մեր հոգևոր գործերի վարումն է, լինի դա քահանայական, տնտեսական, ուսումնական և այլն... Մէկը առանց միւսի անկախօրէն մշակել չի լինի, մարմինը անդամալոյծ կը լինի, երբ նորա օրգանները իրանց զարգացմամբ համապատասխան չեն իրար...

Այսօր մենք ահագին գործեր, խնդիրներ և հասուն պահանջներ ունենք, որոնք սպասում են շուտափոյթ լուծման, որոնց և ո՛չ մինը իր ներկայութեամբ չի համապատասխանում կեանքի պահանջներին. ընտրական գործը, ուսումնարանական խնդիրը, հաս ու չհասը, տնտեսականը, քահանայականը, կուսակրօն հոգևորականութեան խնդիրը և այլն և այլն... Բոլորը հասունացած պտուղներ են, որոնց եթէ քաղող չլինի, ոտնատակ կը գնան:

Ժամանակը և ժողովրդի պահանջը անչափ առաջ են գնացել, կեանքի պայմանները հիմնովին փոփոխուել են, շատ հին կարգեր և սովորութիւններ անդառնալի կերպով կորցրել են իրանց նշանակութիւնը: Տրադիցիան - սովորութիւնը - այլ ևս չի կարող բաւարարութիւն տալ ժողովրդի ներկայ կացութեանը. ժամանակը դրել է իր անխուսափելի պահանջը, որին պէտք է բաւարարութիւն տալ, ապա թէ ոչ, նա իր առաջն եկած արգելքը խորտակելով կ՚անցնի. պէտք է յարգել կեանքի նորանոր պայմանների պահանջը, այլապէս ժողովուրդը երես կը դարձնէ այն հիմնարկութիւնից, որ իր պահանջները յարգել չգիտէ:

Մենք չենք ուզում գրչի մի հարուածով լուծել այդ բարդ խնդիրները, այլ մատնանիշ լինել այդ խնդիրների մեծութեան, ամբողջութեան նոցա փոխադարձ կապի վրայ, որոնց լուծումը պէտք է որոնել օրէնքի և կազմակերպութեան մէջ, որ մեզանում չկայ: Տւէք օրէնք, տւէք կազ-

մակերպութիւն և ժամանակն ու կեանքը կը լուծեն այդ խնդիրները, ի հարկէ, քանի շուտ, այնքան լաւ. մանաւանդ այդ խնդիրներից մի քանիները գէթ տեսականապէս բաւականաչափ արծարծել է մամուլը, ինչպէս օրինակ ծխականների և եկեղեցու յարաբերութիւնը («Արձագանք»), դպրոցական-վարչականը («Մուրճ»), ընտրողականը («Մուրճ», «Մշակ»), քահանայականը (ամբողջ մամուլը):

**«Մուրճ», 1894, N 5, էջ 780-791**

# ՀՈՒՄ ՆԻՒԹԵՐ ՀԱՅ ՀԱՄԱՅՆՔԻ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԵԱՆ

Անտարակոյս հայոց մէջ չափազանց զարգացած է անհատականութիւնը. նոյն իսկ աւելի, քան պէտք էր: Հայի պատմական անմիաբանութիւնը նորա խիստ զարգացած անհատականութեան հետևանք պէտք է համարել: Որքան դա կորստաբեր և վնասակար է եղել մեր անցեալի վերաբերութեամբ, սակայն չի կարելի չխոստովանել, որ դա ապացոյց է հայ անհատական ինքնուրոյնութեանը, խելքին և ընդունակութեանը: Դա ցոյց է տալիս, որ հայը իբրև անհատ ոչխար չէ, ոչ էլ մրջիւն, այլ նա ապրել ու գործել է իբրև բանական արարած, այնպէս, ինչպէս իր խելքն ու բանականութիւնն են թելադրել: Նա, անհատականութիւնը կորցրած, չէ՛ հետևել հասարակութեան երամական ընթացքին... Այդ նորա բոլոր առաւելութիւնն է իբրև անհատ և նորա ամենամեծ պակասութիւնը իբրև հասարակութեան անդամ: Նորա անհատական զարգացումն է, որ հային դասում է աշխարհիս ամենաընդունակ ազգերի շարքը:

Սակայն, մի ազգ, որ դարերով զուրկ է եղել ինքնուրոյնութիւնից, ճնշուել, հալածուել ու կոտորուել է, չէր կարող իր գոյութիւնը պահպանել, եթէ նորա մէջ իսպառ մեռած լինէր հասարակական-համայնական ոգին:

Եւ իրօք, մի քիչ խորը դիտելով հայ կեանքը, խնդրին մի քիչ բազմակողմանի նայելով՝ այն եզրակացութեանն ենք գալիս, որ հայը մարդկութեան մի բացառիկ անդամը չէ, որ ամեն մի հայ, ինչքան էլ նա ինքնուրոյն լինի, կապուած է իր համայնքի հետ պարտականութիւնների և իրաւունքի մի ամբողջ ցանցով, որից ազատուել նա չի կարող, որին նա պարտական է հնազանդելու հէնց իր գոյութեան համար: Այդ ամենից լաւ պահպանուել է և անմիջապէս աչքի է ընկնում հայ ազգի ստուար մեծամասնութեան և նորա ամենաընտիր ներկայացուցչի - հայ գիւղացու մէջ:

Նրա տնտեսական կեանքը և բարեկեցութիւնը արդիւնք են մի շարք բուն համայնական և ասսոցիացիական ընտիր սովորութիւնների, որոնք հայ գիւղացու գոյութեան և տոկունութեան խնդրում ամե-

նաառաջնակարգ դեր են խաղացել և դեռ խաղում են: Հայ համայնքը և նորա գոյութեան էական պայմանները դժբաղդաբար շատ քիչ են ուսումնասիրւած, այն էլ միմիայն ռուսաց Հայաստանում.- հողի տիրապետութիւնը, օրինակ, որ կէս համայնական բնաւորութիւն ունի, ջրի, ախպենի, այգու և բանջարանոցի իրաւունքը, անհատի իրաւունքը դէպի իր համայնքը և ընդհակառակը, համայնքների փոխադարձ իրաւունքները և պարտականութիւնները մնում են իրանց ամբողջութեամբ դեռ ևս առանց ուսումնասիրութեան. եղածն էլ պարտական ենք ռուս կառավարութեան պաշտօնապէս կատարած ուսումնասիրութիւններին: Մինչդեռ հայ բանահիւսութիւնը այսօր ահագին գրականութիւն ունի, ուսումնասիրւած և բաւական նիւթեր են հաւաքւած զանազան գաւառներից,- հայ համայնքի մասին ինձ յայտնի չէ և ո՛չ մի առանձին տպած հայերէն աշխատութիւն, որ ի հարկէ բաւական ցաւալի երևոյթ է: Հայի բազմանդամ ընտանիքը, օրինակ, որ այնքան գովասանքի նիւթ է դարձել, մինչև օրս դեռ չի ուսումնասիրւած գիտականօրէն[1]:

Այս յօդւածի նպատակն է մեր ձեռքում եղած հում նիւթերը հայ գիւղացու համայնական սովորութիւնների մասին լոյս հանել, յուսալով, նախ՝ մասամբ նիւթ մատակարարել մասնագէտ բանասէրներին, մասամբ մատնանիշ լինել և ճանապարհ բանալ այսպիսի նոր նիւթեր հաւաքելու համար: Մեր ունեցածը իր տեսակով այնքան քիչ և կցկտուր է, որ կարող է լոյս տեսնել միմիայն իբրև հում նիւթ և ոչ իբրև որոշ ուսումնասիրութիւն: Մի որոշ սիստեմի բերելով նոցա՝ կարելի է բաժանել երկու մասի. ա) բուն համայնական սովորութիւններ. երբ համայնքը միանում է ֆիզիքական ուժով-աշխատանքով և կամ փողով՝ նիւթապէս օգնելու իր մի անհատին և բ) երբ համայնքի անհատները միանում են մի ընդհանուր գործ գլուխ բերելու (կապակցութիւն, ասսոցիացիա):

Միացած աշխատանքը առաջ է գալիս այն ժամանակ, երբ համայնքի մի անդամը միայնակ անկարող է մի որ և է գործ գլուխ բերել. ուստի և հասարակութիւնը - հարևանութիւնը - անմիջապէս օգնութեան է հասնում իր անդամին նորա կարիքը հոգալու, սկսածը գլուխ

1. Մասամբ, սակայն, այդ կատարւած է պ. Յակոբ Մեղաւորեանի գեղեցիկ աշխատութեամբ. Etude ethnographique et juridique sur la famille et le mariage armeniens. Lausane. 1894.- Ծան. Խմբ.

բերելու և ձեռնարկածը վերջացնելու. օրինակ. Բարձր-Հայոց ժողովուրդը ապրում է ահագին հողէծածկ տներում. որպէս զի դա դիմանայ անձրևներին և ահագին քանակութեամբ եկող ձիւնին, հարկաւոր է կտուրը մի երկու արշին բարձրութեամբ հողով ծածկել, որ մի ընտանիքի անդամների ուժերից վեր է, եթէ աչքի առաջ ունենանք, որ դա հարկաւոր է քթոցներով-ուսերով կրել տանիք և այն՝ մի կամ երկու օրուայ մէջ, որպէս զի քամին և անձրևը չցրուեն քիչ հաւաքած հողը. ուստի և երբ որ տունը կազմ ու պատրաստ է և միայն մնում է հողը վրայ տալ, տան տէրը հաւաքում է հարևան երիտասարդներին, որոնք միացած ընդհանուր ոյժերով մի օրուայ ընթացքում ամբողջ տունը ծածկում են հողով և կոխոտելով պնդացնում[1]:

Նոյնը բայց առաւել հանդիսաւոր և մեծ չափերով կատարւում է ջրաղաց շինելիս, որի քարերը (ջաղացաքար, և ոչ պատերի) բերելուն մասնակցում են հարևանները իրանց սայլերով, եզներով և մարդկանցով: Իգդիրում, որ ջուրը Արաքսից է ստանում, ջաղացների հունը շատ շուտ տիղմ է բռնում, որի մաքրողը նոյնպէս համայնքն է (թէև ջաղացները հայոց մէջ մասնաւոր սեփականութիւն են լինում). տեղի բարբառով դա կոչւում է «փուշտա» և կատարւում է մեծ հանդիսով, զուռնայի նւագածութեամբ: Ջիթահանքի քարը բերելու ժամանակն էլ, որ իւր մեծութեամբ ու ծանրութեամբ ահագին ոյժ է պահանջում, տեղի է ունենում համայնքի անհրաժեշտ աջակցութիւնը մարդով, սայլով և լծկանով: Սեղրիում, ուր ճանապարհները վատ են և սայլ չի բանում, տան գերանները, ջաղացի և գերեզմանի քարերը գիւղացիք իրանց ուսերով են կրում 30-40 մարդ միաժամանակ, որոնց նոյնպէս նւագածութիւն է առաջնորդում:

Արտը պարարելիս, երբ հաւաքւած աղբը պէտք է արտը կրել, Ղարաբաղում և Ուդիների մէջ (Վարդաշէն) նոյնպէս օգնութեան է գալիս համայնքը սայլ-եզնով: Պռօշեանի նկարագրութեամբ Աշտարակում այգու մատը կտրելը կատարւում է համայնքի օժանդակութեամբ, որի վերջին՝ աշխատողները ճաշից զատ ընտիր մրգեղէններից պատրաստած խոնչա են ստանում, որ «խէչ-փունջ» է կոչւում: Շատ գիւղե-

1. Ասում են, որ Զանգեզուրում տան ամբողջ շինութիւնը հիմն ի վեր համայնքն է կատարում:

րում գերեզման փորելն ևս համայնական է, մանաւանդ ձմեռուայ ցրտերին, երբ մի ժամկոչը դժւարութեամբ կարող է գլուխ բերել գործը: Այդպիսի համայնական աշխատանքի պայմաններն այն են, որ ըստ մեծի մասին նոքա կատարւում են զուռնայի նւագածութեամբ, եթէ իհարկէ, յարմարութին կայ. դա նպաստում է աշխատողների զւարթութեանը և գործի յաջող ու եռանդուն առաջ գնալուն. շատ անգամ լծած եզների կամ գոմէշների պոզերից ու ճակատներից և կամ ձիթահանքի ու ջաղացի քարի վրայից կարմիր թաշկինակներ են կախում իբրև դրօշակներ, և եթէ աշխատանքին մասնակցողների մէջ լաւ խաղ ասող կամ սրախօս մէկը կայ, որ գիւղերում հազւագիւտ չեն, աշխատանքը ընդունում է մի կատարեալ խնջոյքի բնաւորութիւն: Ինչ կարծիք, որ այդպիսի օրերում գործատիրոջ պարտքն է աշխատողներին սովորականից մի քիչ աւելի փարթամ ճաշ տալ. տեղ-տեղ, ուր գինի կայ, խմիչքն ևս ճաշի վերայ աւելի նպաստում է աշխատողների զւարթութեանը:

Կան **աշխատութիւններ**, որ բուն ընտանեկան բնաւորութիւն են կրում և իրանց թեթևութեամբ յատկացրած են կանանց. բայց երբ դա այնքան մեծ է, որ մի ընտանիքի կանայք անկարող են միանգամից այդ բոլորը կատարել, իսկոյն առաջ է գալիս մէճի կամ միչի կանչելու սովորութիւնը: Բարձր-Հայոց բարբառով այդպէս է կոչւում համայնական աշխատանքի այն ձևը, ուր մասնակցում են միմիայն կանայք և աղջիկներ: Համայնութիւնը հայ գիւղացու մէջ արտայայտւում է այդպիսով ո՛չ միայն տղամարդկանց մէջ, դրսում, այլ և կանանց մէջ, ընտանիքում: Օրինակ երբ ոչխարի բուրդը խուզած պատրաստ է մանելու և գզելու, ապա տանտիրուհին աղջկանցից մէճի է անում, որ գզում, մանում են: Գզելը սովորաբար կանանց է պատկանում իբրև առաւել փորձառութիւն պահանջող, իսկ մանելը աղջկանց: Այդպիսի դէպքերում աշխատում են առհասարակ այնքան հոգի կանչել, որ հնար լինի բոլոր գործը մի օրում վերջացնել. ինչ կարծիք, որ նախաճաշն ու ճաշը այն տանն են անում, ուր հաւաքւած են աշխատելու: Աղջկանց «մէճիները» բացի գործատիրոջ օգուտից այն առաւելութիւնն ունեն, որ նախ մրցութիւն, ապա փորձառութիւն ու վարժութիւն են տալիս անփորձ աղջկանց. նոցանից շատերը իրանց տանը մնալով շատ անգամ զուրկ պիտի մնային այն վարժութիւններից, որոնք անհրա-

ժեշտ են ամեն մի գյուղացու կեանքում, որպիսին է գզելն ու մանելը: Եւ որովհետև դոքա այնպիսի աշխատանք են, որ չեն կաշկանդում լեզուն ու միտքը, ուստի մէճիները այն պայմաններն են, որոնցով ծաղկում է գիւղացի աղջկայ սրախօսութիւնը, հանաքը, հանելուկը և դիտողութիւնը, երբեմն նաև նորա անպաճոյճ, պարզ երգը:

Հաւաքական աշխատանքը այնտեղ չի՛ ճնշում, չի՛ բթացնում, այլ զւարթացնում է հոգին, զարգացնում միտքը, սրում դիտողութիւնը, մրցութեան շնորհիւ զարգացնում ընդունակութիւնները, ուստի և զարմանալի չէ, որ մէճին աղջկանց համար կատարեալ հարսանիք է:

Ախալքալաքի գիւղերում (Էրզրումից գաղթած) աշնանը կամ գարնանը սովորութիւն կայ մեծ քանակութեամբ էրիշտա պատրաստելու, որ նոյնպէս առանց մէճիի չի կարող գլուխ գալ: Երեկոյեան տան տիրուհին հաւաքում է մի խումբ աղջիկներ, որոնք խմորն են հունցելու: Առաջ ալիւրը «քաղաղ» են անում, ապա երբ քիչ ջուրը առած է լինում, հանում են տաշտից և դնում յատկապէս դորա համար պատրաստած տաւարճուղների մէջ, որ այծի մորթուց է լինում պատրաստած: Ապա աղջիկները երկու-երկու բարձրանում են այդ կաշեայ տոպրակների վերայ, սկսում են ոտներով հարւածել մինչև խմորի կանոնաւոր հունցելը: Ոտերի հարւածները առանձին տակտ ու վարժութիւն ունին և շատ կենդանի բնաւորութիւն են կրում. դա և՛ պար է, և մարմնամարզական վարժութիւն, որ գործին անծանօթ մարդը չի կարող կատարել: Այդ «մէճին» լինում է գիշերը, որ խմորը առաւօտ վաղ պատրաստ լինի. աղջկերքը գործը և ընթրիքը վերջացնելուց յետոյ գիշերում են գործատիրոջ տանը: Առաւօտ վաղ նոքա ցրւում և նոցա փոխանակ հաւաքւում են կանայք, որոնք էրիշտա կտրել գիտեն: Կանանցից ոմանք պատրաստի խմորը գնդում, ոմանք բաց են անում, ոմանք էլ բաց արած խմորը մի քանի ծալ անելով սկսում են էրիշտա կտրել (ճիշտ ինչպէս ծխախոտն են կտրում). մի քանիսը կտրածը տանում են արևի տակ չորացնելու և ապա բովելու: Էրիշտան հայկական մակարոնն է, որ գործ են ածում միմիայն փլաւ եփելու, բրնձի կամ բլղուրի հետ խառն կամ առանձին:

Վերևը մենք տեսանք համայնական աշխատանքի այնպիսի ձևը, ուր միմիայն տղամարդիկ են մասնակցում, որը Ղարաբաղի բարբա-

ռով հարաքաշ է կոչւում: Դորա մի այլ ձևը որ արտայայտւում է միմիայն կանանց և աղջկանց մասնակցութեամբ, Բարձր-Հայոց բարբառով «մէճի» է կոչւում. այժմ կը տեսնենք նորա երրորդ ձևը, ուր մասնակցում են ամեն սեռի և հասակի անձինք և որը, որքան մեզ է յայտնի, գոյութիւն չունի Բարձր Հայքում, այլ Երևանեան նահանգում և, եթէ չենք սխալւում, կոչւում է միչի. Մեղրիում օրինակ, գարնանը երբ բամբակի արտը վարում են, կանանց և երեխանց են հաւաքում, որոնք հետևելով արօրի ընթացքին, հողը մաքրում են «խոզանից»: Դա տեղի բարբառով կոչւում է «խզնահան»: Բամբակը քաղհան անելիս էլ հարևան կանանցից մէճի են անում, գործին օգնելու, ինչպէս նաև «հատաղունի» և «շաղաքաղի» ժամանակ, որ կատարում են կանայք ու երեխայք: Վերջերս երբեմն դա վարձով էլ է լինում: Բամբակը «կուկուճ»-ից հանելիս՝ որ տանն է կատարւում.- աշնանը, մրգերի ժամանակ՝ մէճի հաւաքած մեծ ու փոքրին հասուն միրգ են բաժանում, և մինչև ուշ գիշերը նստած աշխատում են, ոմանք հէքիաթ և այլ հետաքրքրաշարժ բաներ են պատմում, որ քուները չտանի և զւարթ աշխատեն: Նոյնպիսի խառն և ուրախ մէճի է լինում այգեկութին, մանաւանդ «բոժոժաքաղին», որ տօնախմբութեան նման մի բան է: Մեղրեցին այդ օրը անպատճառ մի ուլ պիտի մորթէ մէճին հիւրասիրելու, որ առաջուց յատուկ այդ օրւայ համար ջոկւում և պահւում է անդրանիկներից. դա կոչւում է «բոժոժի մատաղ»[1]:

Այսպէս մի շարք օրինակներից մենք տեսնում ենք, որ բուն անհատական-մասնաւոր գործերը, որոնք կարճ ժամանակի բայց բազմաթիւ ձեռքերի են կարօտ, գլուխ են գալիս բուն կոմմունական ձևով, համայնքի ազատ աջակցութեամբ: Այդ համայնքի անդամը գիտէ, որ իր տունը անծածկ պիտի չմնայ, երբ սկսում է նորա շինութիւնը. կամ ջաղացի քարերը պիտի բերւին և տեղը դրւին երբ ձեռնարկում է ջաղաց հիմնել. անհատը որոշ պայմաններում, որոշ հանգամանքներում իր յետևը զգում է մի խոշոր ոյժ, մի հիմնաւոր նեցուկ, որ նորան չի թողնում ցած գլորելու, որ ձեռք է մեկնում նորան օգնելու, երբ անհրա-

1. Այս յօդւածի մէջ Մեղրիի մասին յիշածներս բոլորը ինձ հաղորդել է պ. Ա. Վաչեանը:

ժեշտ է ճանաչում այդ: Ինչ կարծիք, որ համայնքի աջակցութիւնը հնումը աւելի շատ, աւելի ներգործական և ընդարձակ էր քան թէ այժմ. ինչ կարծիք, որ առաջ ոչ միայն համայնքը պարտական էր անհատի տունը հողով ծածկել, այլ և տուն շինել նորան, ո՛չ միայն ջաղացի քարը բերելուն օգնել, այլ և ջաղաց կառուցանել ընդհանուր համայնքի համար, ինչպիսին գոյութիւն ունի ռուսաց մէջ և որպէս այժմ կատարւում է Իգդիրում, ուր, երբ Արաքսը յորդանալով կտրում է այգիները հոսող առուն, համայնքը ամբողջովին, տանուտիրոջ առաջնորդութեամբ գնում է այգիների ջուրը նորից բերելու. «Արազ է գնում», ինչպէս ասում են տեղացիք, ընդհանուրի գործը ընդհանուրն է հոգում միացած ուժերով: Համայնքը իր լրութեամբ այժմ պահպանել է իր նախկին կոմմունական կազմակերպութեան հետքերը միայն եկեղեցիների, ճանապարհների, ջուր բերելու և ուսումնարան շինելու վերաբերութեամբ, որոնք գլուխ են գալիս ընդհանուր միացած ուժերով և ծառայում են ընդհանրութեանը: Մնացեալ մասերում, ինչպէս վերևը տեսանք, նորա դերը բաւական սահմանափակ է, սակայն օգնում է իր անդամին նաև նիւթապէս, երբ նա մեծ ծախսի մէջ է, աշխատելով գէթ մասամբ թեթևացնել իր հարևանի ծախսերը, լինի դա հարսանիք, ծնունդ և կամ մահ:

Հարսանիքը գիւղացու վերայ ահագին ծախսեր է բարդում շնորհիւ շատ անպէտք սովորութիւնների և հարսանիքի երկար տևելուն, երբ նա պարտաւոր է ահագին քանակութեամբ գինի և արաղ գնել կամ իր ունեցածից գործածել, մի քանի կով ու եզ մորթել և մեծ քանակութեամբ իւղ, պանիր ու հաց բանացնել: Ախալքալաքի գաւառի գիւղացիների ամենամեծ մասը եթէ պարտքի և վաշխառուների ճանկն է ընկնում՝ դորա պատճառը հէնց այդ հարսանիքի, նշանդրեքի և խնամութեան կորստաբեր սովորութիւններն են. այդ գաւառում ընդհանրապէս ամեն մի ամուսնութիւն՝ ինչպէս մեզ անձամբ բազմաթիւ օրինակներ են յայտնի, իր յետևից բերում է մի քանի հարիւր ռուբլի պարտք: Դեռ լաւ է, որ կան մի շարք ընտիր համայնական սովորութիւններ, որոնք մեղմացնում և նպաստում են այդ ծախսերը հոգալուն, այլապէս հարսանիքը անփող գիւղացու համար տնտեսական անկումն կը նշանակի: Այսպէս օրինակ, հարսանիքի սկզբի օրը հարևան կանայք հրաւ-

իրւում են գաքաւոր, և ամեն մի կին այդ օրը իր հետը բաւական կարագ է բերում, որով հարսանիքի գաքան է պատրաստւում:

Այդպէս նաև մաղար իջեցնելու սովորութիւնը ահագին օգնութիւն է աղջկայ հօր համար: Մաղարը (մակա՞ր) մի խումբ ձիաւոր երիտասարդներ են, կամաւոր կերպով գիւղից հաւաքուած, որոնք ուղևորւում են հարսը պսակի բերելու, եթէ նա մի ուրիշ գիւղումն է: Ինչ կարծիք, որ աղջկայ տիրոջ համար շատ դժւար է այդքան հիւր միաժամանակ իջեցնել և կերակրել թէ՛ նոցա և թէ մանաւանդ նոցա ձիերին: Աւանդական սովորութեամբ աղջկայ տէրը առհասարակ ազատ է ծախսերից և հարսանիքի բոլոր ծախսը ընկնում է տղայի վերայ: Այստեղ ահա համայնքի անդամներից շատերը վաղօրօք պատրաստութիւն են տեսնում «մաղար իջեցնելու» և նոցա գալուն պէս ամեն մինը մի չորս հինգ ձիաւոր հիւր հրաւիրում է իւր տունը, ուր ընթրում և ուրախութիւն են անում. այդպէս մաղարը բաժանւում է հինգ-տասը տուն խումբ-խումբ, մինչ առաւօտ զուռնայի հրաւէրը, երբ նոքա կրկին միացած հարսին առաջնորդում են դէպի իրանց գիւղը: Բայց հարսանիքի մէջ ամենից արժանին ուշադրութեան՝ սաչու-ի կամ կանչ-ի սովորութիւնն է: Դա մի տուրք է, որ սովորաբար պսակից յետոյ ճաշի սեղանի վերայ հարսանիք հրաւիրածները տալիս են հարսանքատիրոջ. պատահում է, որ այդ կանչը հարիւրների է հասնում և բաւական թեթևացնում է հարսանքատիրոջ ծախսերը: Առաջին ընծայաբերը լինում է միշտ կնքահայրը կամ խաչեղբայրը, որ սովորաբար 3-10 ռուբլի է տալիս. ապա հերթով, ըստ աւագութեան և պատւի՝ նաև միւսները: Կանչի հետ միասին հարսնևորները պարտաւոր են նաև քահանային ու զուռնաչուն ևս նպաստներ տալ, որ կրկին թեթևացնում են տանտիրոջ ծախսը. այլապէս թէ նւագախումբը և թէ քահանան եթէ այդ կողմնակի եկամուտը աչքի առաջ չունենային, ահագին վարձատրութիւն պիտի պահանջէին տան տիրոջից: Այդ սովորութեան մնացորդները պահպանել են նաև քաղաքներում: Ախալքալաքում, օրինակ, հարսի հագուստը օրհնելուց յետոյ, որպէս նաև եկեղեցում, պսակից յետոյ քահանան խաչ-համբոյր է ստանում անխտիր բոլոր հրաւիրեալներից: Նւագածուներին ու խոհարարին վարձատրելը հօ պարտաւորութիւն է: Հարսանիքը առհասարակ ամենից լաւ է պահ-

պանել հայ ժողովրդի նախկին կոմմունական կեանքի հետքերը. տեղ-տեղ նա պատկանում է ամբողջ համայնքին. այդտեղ մասնակցում են ամենքը և իւրաքանչիւրը. Ախալքալաքի գիւղերում, երբ պսակւող զոյգը եկեղեցի է գնում, ճանապարհին շատ անգամ կանգնեցնում են պսակի ամբողջ ընթացքը, որպէս զի հարսանիքի հետ ո՛չ մի կապ չունեցող այս կամ այն օտար փեսացուին, որոնք շատ անգամ այդտեղ ներկայ էլ չեն լինում, իրանց (փեսացուի) բարեկամների կողմից ընծաներ տուին:

Տեսնում ես մի հարս կամ կին, որ հարսանիքումն էլ չէ, տան գործը կիսատ թողած, **լուր օրւայ** հագուստով շտապում է ի լուր հասարակութեան մի նախշուն շապիկ, փուշի, գուլպա կամ գօտի ընծայել իւր այս ինչ ազգականի փեսային և վերադառնալ իւր գործին: Դադարում է զուռնան, կանգ է առնում ընթացքը, լռում են հանդիսականները, և տղամարդկանցից մինը, ընծայած առարկան ձեռին բռնած ի ցոյց հասարակութեան, հազար ու մի գովասանքով յիշում է, որ այս ինչ հարսը կամ կինը իւր այս ինչ փեսային ահա այս պատւական ընծան է տալիս, «ապատա՛, ապատա՛, չէն է ու շէն մնայ»:

Գիւղում գտնուած բոլոր նշանաւոր զոյգերը այդպիսի հարսանիքներին առհասարակ ընծաներ են ստանում իրանց հեռու կամ մօտիկ ազգականներից և այն՝ ի զիտութիւն համայնքի:

Ուշադրութեան արժանին այն է, որ ծննդկանին կերակրելն ևս համայնական պարտք է համարւում: Ուժասպառ ծննդկանին ինչ կարծիք որ հարկաւոր է սննդարար կերակուր: Ամեն ընտանիք ի հարկէ միջոց չունի այդպիսին պատրաստելու, ուստի և քառասունքի ընթացքում ամեն մի «տղոցկան», հարուստ լինի թէ աղքատ, հարևաններից թարմ պատրաստած կերակուրներ է ստանում: Տատմայրը, որ «դայեկ» է կոչւում, իւր վարձը ստանում է նոյնպէս ծննդկանի այցելուներից: Համայնքը կարծես դորանով ողջունում է իւր նոր անդամի աշխարհ գալը և նորա մօր խնամելը իւր վզին է առնում մինչև կազդուրւիլը. նա դորանով կարծես ուզում է հասկացնել, որ նորածինը միայն իւր ծնողներին չի պատկանում, այլ ամբողջ համայնքին:

Այդ մի կարգ բուն կամ կէս կոմմունական բնաւորութիւն կրող սովորութիւնները արդէն նոր տնտեսական պայմանների շնորհիւ բաւա-

կան թուլացել և նսեմացել են, թէև նոցա պահպանել է ժողովուրդը հազարաւոր տարիներ, իբրև իւր նախկին համայնական կեանքի փայլուն փշրանքներ, որոնք, դժբաղդաբար, իբրև նախապատմական ժամանակի և ստոր կուլտուրայի արդիւնք, տեղի են տալու նորագոյն քաղաքակրթութեան առաջ: Անշուշտ, եթէ հնարաւոր լինէր, եթէ ոչ այդ սովորութիւնները ամբողջովին, գէթ նոցա ոգին, համայնականութեան գաղափարը կենդանի պահպանել մեր ժողովրդի մէջ, որ նորան դիւրին լինէր ըմբռնել ընկերավարական ուսման նորագոյն վարդապետութիւնը, որը իւր հիմունքներով կռթնում է հէնց մարդկութեան նախկին համայնական կենցաղի վերայ, չափազանց ուրախալի կը լինէր. սակայն յուսալ դոցա յարատևութեանը բաւական դժւար է, որովհետև մեր աչքի առաջ, մի 15-20 տարի առաջ գոյութիւն ունեցող համայնական սերտ կապերը այսօր զգալի կերպով թուլացել են: Այն, որ երէկ ամբողջ համայնքն էր անում, այսօր սահմանափակւում է շատ անգամ միայն ազգականների և մօտիկ հարևանների մէջ. իսկ վաղը միւս օրը կասկածելի է նորա գոյութիւնը:

Աւելի յուսալի է այն սովորութիւնների պահպանութիւնը, որոնք աւելի բարձր քաղաքակրթութեան արդիւնք են և կրում են ընկերականասսոցիացիայի բնաւորութիւն. դոքա մասամբ յիշեցնում են ռուսական артель-ը (արտէլը), մասամբ եւրոպական բանւորների միութիւնները, իհարկէ, սաղմային դրութեան մէջ:

Այդպէս է կատարւում խոտ հարելը. ամբողջ մարգագետինը կամ «չայիրը» բաժանւում է ըստ համբայութեան (համբա-չարեք) մի քանի բաժնի, և համբայութեան անդամները խոտը հարում, հաւաքում և դիզում են միասին, ապա վիճակով բաժին անում, համապատասխան համբայութեան աստիճանին. ինչ կարծիք, որ ամեն մի ընտանիք իւր ստանալիք խոտի համաձայն մարդիկ է ներկայացնում. շատ ստացողը շատ, քիչ ստացողը համապատասխան սակաւութեամբ: Խոտհարի ընթացքում նախաճաշ, ճաշ և «էտինք-հաց» աշխատողները բոլորը միասին են անում, ամեն մինը ներկայացնում է իւր ունեցածը. խտիր չկայ, թէ մէկը գարի և ցամաք հաց ունի, միւսը պատուական կերակուր:

Գիւղի սահմաններից դուրս ևս, երբ գիւղացիք տեղ են վերցնում խոտ հարելու, սակաւ է պատահում, որ ջոկ-ջոկ հարեն. սովորաբար

միանում են մի քանի ընտանիք, միաժամանակ փողը վճարում և ամեն մինը իր տուած գնի համեմատ աշխատաւորներ է ներկայացնում մինչև խոտի հարել դիզելը, երբ վիճակով բաժանում՝ ապա ջոկ-ջոկ տուն են կրում: Այդ աշխատանքի ընթացքում ևս նոքա գործում են ինչպէս մի տան անդամներ, նոցա ճաշը միասին է, հարստի և աղքատի խտիր չկայ:

Մարաղա գիւղում (Խոյի գաղթականներ Ղարաբաղում) միանում են մինչև անգամ բոստան (բանջարանոց) ցանելիս: Մի քանի ընտանիք միացած գութան են լծում և վարում համայնական հողի մի մասը և բանջարեղէն ցանում: Այդտեղ ընդհանուր է և՛ հողը, և՛ սերմը, և՛ աշխատանքը. ջրում են մի երկու անգամ հերթով կամ միասին և քաղհան են անում նոյնպէս միասին: Հասած բանջարեղէնը հաւաքում են դարձեալ միասին և բաժանում, եթէ չենք սխալւում, համաձայն գութանում լծած եզների թւին: Այստեղ, ինչպէս տեսնում է ընթերցողը, միութեան հիմքն ու բաժանարարը եզն է:

Նոյնը աւելի բարդ և աւելի կատարելագործուած ձևերով արտայայտւում է գութանի միութեան մէջ Բարձր Հայքում:

Այդտեղ գութանին լծում են 10-12 զոյգ եզ կամ գոմէշ, այնպէս որ շատ քիչ ընտանիք կարող է միայնակ գութան լծել. ուստի սովորաբար գութան լծելու համար միանում են 5-10 ընտանիք: Պատահում է, որ գութանը մի ընտանիքի է պատկանում, իսկ բոլոր լծկանը հարևաններին: Իւրաքանչիւր երկու զոյգ եզին հարկաւոր է և մի հոտաղ, մի մաճկալ, և 8-12 լուծ: Միութեան բաժանարարը (единица) զոյգ եզն է. այսինքն մէկ զոյգ եզ ունեցողը մէկ օր իրաւունք ունի արտը վարելու, երկուսը՝ երկու և այլն. բայց այդտեղ բաժին ունի նաև գութանը, որ հաւասար է երեք բաժանարարի (այս դէպքում երեք օր) և մաճկալը՝ գութան վարողը - երկու բաժանարար: Հոտաղը ոչինչ չի ստանում: Թէև գութանի միութեան մանրամասնութիւնը ես լաւ չեմ յիշում և այս էլ հաղորդում եմ ստուգութիւնը վերապահելով, սակայն ինձ թւում է, որ գութանի տիրոջ օգուտը այդտեղ համեմատաբար մեծ պիտի լինի: Գութանտէրը իր օրւայ հացը ստանում է նրանից, ում արտը վարում է, այսինքն հերթով կերակրում են միութեան անդամները: Վերջին տարիներս պատահում է, որ այդպէս միացած գութանը վար-

ձով-փողով ուրիշի արտերն ևս վարում է, որոնք գութանի մէջ մաս չունին, և փողը բաժանում է իր անդամներին. այդտեղ ևս ի հարկէ, բաժանարարը լուծ եզն է, բայց դորա մանրամասնութիւնները ես չգիտեմ և ստուգելու էլ առ այժմ միջոց չունիմ:

Գիւղական այդպիսի միութիւնների մէջ, եթէ չեմ սխալւում, գութանը առաջին երևոյթն է, որ իբրև գործիք (մեքենայ) վարձ է ստանում.- այդ տեսակէտից նա արժանի է խորին ուշադրութեան: Գիւղացոց մէջ գործիքը վարձով տալու գաղափար անգամ չկայ. ուրագ, կացին, գերանդի, եղան, սայլ, մինչև անգամ եզներ միմեանց փոխ են տալիս առանց որ և է վարձի ակնկալութեան: Շատ բացառիկ դէպքերում կարող է հարևանը դրացուն մերժել մի գործիք փոխ տալու. և չի էլ կարող մերժել, որովհետև մի ժամ յետոյ ինքն է շտապում հարևանից մի բան ուզելու և նոյն մերժումն կ՛ստանար: Տան կարասիքը ևս, պղինձ, ամանեղէն, անկողին, հասեր և խալիչա, անխտիր փոխ են տալիս կանայք:

«Խաք ու խազ»: Բայց ամենից նշանաւորը, ամենից հետաքրքրականն ու կարևորը համայնական միութեան մէջ «խաք»-ի սովորութիւնն է, որ իր տեսակով գուցէ եզակի է ամբողջ աշխարհում. նորա էութիւնն այն է, որ մի խումբ հարևաններ միացնում են իրանց ունեցած կաթը հերթով նորանից իւղ ու պանիր պատրաստելու: «Խաքը» հարցասիրական է և այն տեսակէտից, որ նա, այսպէս ասենք՝ գիւղական միութիւնների ամենազարգացած ձևն է ներկայացնում. նորա հիմքը աշխատանքը, անհատը կամ լծու եզներն ու հողը չեն, ինչպէս վերևի միութիւններինը, այլ եթէ կարելի է այսպէս անւանել՝ գիւղական կապիտալը, գործադրութեան համար պատրաստի արդիւնքը՝ կաթը: Այդ միութիւնը Բարձր Հայքում կոչւում է «խաքուխազ», կամ հասարակօրէն «խաք». Իգդիրում դորան ասում են «կաթ-չափ», որ ըստ իս աւելի լաւ է արտայայտում նորա էութիւնը:

Գարունքը բացւելուն պէս գիւղացի կանայք ժողովւում են խաքը սկսելու. եթէ գիւղը մեծ է, նոքա բաժանւում են մի քանի խմբի, սովորաբար 20-30 տուն, իսկ եթէ փոքր է՝ հէնց ամբողջ գիւղը կազմում է մի խաք:

Առաջին և ամենադժւար խնդիրն այն է, թէ ո՞վ պէտք է «մայր» կամ «խաք-գլուխ» լինի, այսինքն առաջին անգամ ո՞վ պիտի հարևանների կաթը պարտք վերցնի, և ապա հերթով նոցա վճարի: Թէ

սովորութեամբ և թէ յայտնի տնտեսական պատճառներով մայր է դառնում նա, ով շատ կաթ ունի. բայց ի հարկէ շատ յաճախ պատահում են հաւասարաչափ կով ու ոչխար ունեցողներ, որոնցից ամեն մինը խուսափում է մայր դառնալուց, որովհետև կաթը գարնանը ջրալի է լինում, ուրեմն և մայր դարձողի համար վնասակար, քանի որ նա ստացած վատ կաթի քանակութեամբ վերադարձնելու է հարևաններին ապագայում աւելի լաւ և իւղալի կաթ: Այդտեղ, ի հարկէ, քւէարկութիւն չի լինում, բայց երբ մեծամասնութիւնը մէկին ստիպեց մայր դառնալու, նա սովորաբար համաձայնում է, յետագայում մի քանի առաւելութիւններ ունենալու պայմանով: Պէտք է նկատել, որ ոչխարի կաթը առանձին խաք է ունենում, կովինը առանձին և շատ հազիւ է պատահում, որ միևնոյն ընտանիքը «երկու կաթին» էլ մայր դառնայ միաժամանակ:

Երբ մայրը ընտրուեց, հարևանները ամեն առաւօտ և երեկոյ կաթը «խաք են բերում». այսինքն փոխ են տալիս մօրը, որոշ ամանով և չափով: Եթէ, օրինակ, բոլոր մասնակցողները միասին 20 ընտանիք են, մայրը (պարտք վերցնողը) դուրս գալով, կը մնայ 19 պարտատու, որոնցից ամեն մինը ջոկ-ջոկ ճիպոտներ-«խազեր» ունին, որոնց վերայ նշանակում են տուած կաթի քանակը հետևեալ կերպով. հարևան A-ն օրինակ մի որոշ աման ունի, որով ամեն օր կաթ է բերում և մի որոշ ճիպոտ-«խազ», որը կոխում է մի հարթ տեղում դրած իր ամանի մէջ մինչև յատակը. մի երկու անգամ ստուգելուց յետոյ դանակով մի փոքրիկ փոս է փորում խազի այն կէտում, որը ցոյց է տալիս այդ օրւայ կաթի քանակը: Նոյնն են անում B. C. և այլն իրանց ամաններով և խազերով: Պէտք է չմոռանալ, որ խազն էլ ունի (ես այսպէս եմ անւանում) ոտ և գլուխ. չի կարելի մի օր նորան գլուխն ի վայր կոխել կաթի մէջ, մի այլ անգամ ոտն ի վայր, այլ միշտ միևնոյն ոտի կողմից, որ շփոթութիւն չառաջանայ: Այդ խազը համապատասխանում է պարտատիրոջ մուրհակին. նոյն այդ խազով և նոյն ամանով նա իր հերթին յետ է ստանում իր պարտքը:

Կաթնամօր դժւարութիւնն այն է, որ նա բոլոր հարևաններից պարտք է առնում, նա բոլորին զուտ պարտապան է. այժմ, երբ հերթը գալիս է միւս հարևաններին, նա՝ առաջին՝ պիտի աշխատի իր

պարտքը տալ, երկրորդ՝ պարտքի տակ զգել հարևանին, որ մի այլ անգամ նս կարողանայ կաթ առնել:

Երկրորդ կաթ առնողի դրութեան դժւարութիւնը պակաս է առաջինից այն պահանջի չափով, որ նա ունի առաջինից շնորհիւ իր տւած կաթի քանակութեան. այսինքն երկրորդ հերթակալը պարտք է առնում ոչ թէ 19 տանից ինչպէս առաջինը, այլ միայն 18 տանից, իսկ մի տանից (առաջին կաթնամօրից) նա յետ է ստանում իր տւածը: Երրորդ հերթակալը արդէն պարտք է ստանում միայն 17 տանից, իսկ մնացեալ երկուսից միայն իր տւածի վճարը և այլն... Այսպէս ամենավերջին հերթակալը՝ որ և ամենից քիչ կաթ ունեցողն է լինում, ստանում է միմիայն իր տւածը, որովհետև բոլորին շարունակ նա միայն կաթ է տւել և պարտաւորեցրել. այժմ իբրև վերջինը ստանում է վճարը: Երբ նա իր բոլոր տւածը յետ ստացաւ, ապա վերջանում է մեծ խաբը և սկսւում է «փոքր խաբը».- միևնոյն կարգով միայն այն տարբերութեամբ, որ այժմ ժամանակամիջոցը աւելի կարճ և կաթը աւելի քիչ է լինում: Փոքր խաբի էական պայմանն այն է, որ հերթակալները յետ են ստանում միմիայն իրանց պարտքը և նոր պարտքի տակ չեն մտնում, որովհետև այլ նս ժամանակ չկայ վճարելու, քանի որ աշունը հասած է լինում:

Թողնելով խաբի կազմակերպութեան մանրամասնութիւնները առանձին հիմնաւոր ուսումնասիրութեան, այստեղ անցողակի պարտք եմ համարում ուշադրութիւն դարձնել այդ վերին աստիճանի կարևոր և օգտակար սովորութեան էական հիմունքների վերայ, որ ամենալայն եղբայրական-ընկերական բնաւորութիւն ունի. թէև բոլոր անդամները հաւասար ընկերական իրաւունքներ ունին, բայց համայնքի աջակցութիւնը միշտ լինում է չքաւորի կողմը, իսկ չնչին զրկանքներն ու պարտականութիւնները միշտ ընկնում են ունևորների վերայ: Խաբի հիմքը ո՛չ թէ անհատի շահախնդրութիւնը, այլ ընդհանուրի օգուտն է. նա չի ծառայում տապալելու, այլ օգնելու և պահպանելու:

Խաբւորների մէջ առհասարակ մի ընդհանուր ձգտում կայ՝ ըստ կարելոյն շատ պարտք տալ ուրիշին, իսկ առանձնակի ամեն մի հերթակալի ցանկութիւնն է, ըստ կարելոյն, քիչ պարտքի տակ ընկնել. այդ երկու հակառակ ձգտումներն են խաբի մէջ խուչընդոտ յարուցանողները, և որովհետև համայնքի բոլոր անդամները հաւասար կաթի

տէր չեն, բնականաբար այն բարդութիւնն է առաջ գալիս, որ շատ կաթ ունեցողները կարող են մի քանիսին այնպիսի պարտքի տակ գցել, որի վճարելը հերթակալի ուժերից վեր է: Նա պահանջում է, որ կաթի հերթը իրանից վերացնեն, բայց մեծամասնութեան կարծիքով նա դեռևս պարտական է և կարող է կաթ վերցնել, եթէ չլինին մի երկու շատ կաթ ունեցողները. ուստի և «խաբը» պարտաւորեցնում է ունևորին մի երկու օր կաթը տունը պահել, պարտք չտալ, մինչև հերթը մի ուրիշին կը գայ: Կաթը տանը պահելը զրկանք է տան տիրոջ համար. դա այնքան շատ չի կարող լինել, որից իսկոյն իւղ կամ պանիր պատրաստել կարողանայ, ուստի և տանը մնացածը առձեռն գործածութեան մէջ կորչում է անհետ: Այդ զրկանքը խաբի շնորհիւ պարտաւոր է կրել ունևորը իր աւելի չքաւոր հարևանի և ընդհանրութեան դիւրութեան համար:

Խաբի հիմնական էութիւնն և օգուտն այն է, որ մասնաւոր տների կաթը քիչ-քիչ գործածւելով չփչանայ, չկորչի, որ այդ փոքրիկ քանակութիւնը բազմաթիւ ձեռքեր, ժամանակ և ծախս իզուր չգործածէ: Բարձր Հայքի ժողովուրդը թէև մեծ մասամբ ունի ոչխար ու կով, բայց առանձինն դորա այնքան քիչ են լինում, որ նոցա կաթից ջոկ-ջոկ առած դժւար է միաժամանակ իւղ և պանիր պատրաստել. եթէ կաթը տանը մնայ՝ ամեն գնացող եկող կ՚ուտի և անհնար կը լինի ի մի հաւաքել ձմեռւայ պաշար պատրաստելու, որ այնքան կարևոր է այդ ժողովրդի համար, որի երկիրը ամբողջ վեց եօթը ամիս ձիւնով է լինում ծածկւած. այդ միջոցին նա առանց այն էլ՝ զուրկ մսեղէնից՝ մեծ կարիք ունի իւղեղէն կերակրի, որը և նորա սննդեան առաջին միջոցն է:

Փրկարար խաբը վերացնում է բոլոր այդ արգելքները. մէկ կով և մի քանի ոչխար ունեցողն անգամ այդ պատւական սովորութեան շնորհիւ կարողանում է բաւականաչափ «մասխուլ» (պաշարի իւղ-պանիր) պատրաստել ձմեռւայ համար: Ամեն մի ընտանիք իր ամենօրեայ կաթը քիչ-քիչ հարևաններին տալով՝ իր հերթին միաժամանակ այնքան կաթ է ստանում, որ մի քանի օրւայ մէջ պատրաստում և պաշարում է և՛ իր տարեկան իւղը, և՛ պանիրն ու վազնատը (լսա):

Այս էլ պէտք է ասենք, որ խաբը մազաչափ չի անցնում անհատի ազատութեան սահմանը և չի բռնանում նորա ազատ կամքի վերայ.

նա չի՛ պահանջում որ անհատը ամեն օր և ամեն անգամ իւր բոլոր կաթը բերի. ամեն ոք ազատ է տանել այնքան, ո՛րքան կամենում է և ե՛րբ կամենում է, որովհետև խաբը այդտեղ ո՛չ մի վնաս չունի, այլ նա, ով քիչ է մասնակցում: Դա մի խնայողական ընկերութիւն է, որի անդամները օգուտ ունեն շարունակ, բայց զրկանք և գործողութեան սահմանափակումն երբէք կամ խիստ հազիւ. այն էլ զրկանքը միշտ ունևորի վզին է ընկնում, ուրեմն այնքան զգալի չի կարող լինել, մանաւանդ դա չափազանց կարճատև է լինում:

Խաբի տւած օգուտը աւելի շօշափելի անելու համար վերցնենք մի գիւղական թաղ կամ մի ամբողջ գիւղ, որ, օրինակ, բաղկացած է 25 տանից և միացել է խաբ անելու. այսինքն ամեն մի ընտանիք ապահով է, որ ձմեռւայ համար մի քանակ պաշար է ունենալու, որը առանց խաբի երևակայել անգամ չէր կարող: Այդ բաւական չէ՛. եթէ խաբը գոյութիւն չունենար, 25 տուն ամեն օր թոնիր պիտի վառէր նորան տաքացնելու, 25 հոգի պիտի զբաղւէր կաթնից իւղ, մածուն կամ պանիր պատրաստելու. 25 խնոցի պիտի ծառայէր կաթը հարելու, պիտի բազմաթիւ մանր-մունր ամանների մէջ լցնէր. դատարկելուց՝ քամելու, տաքացնելու կամ սեր քաշելու համար՝ նա կաթիլ-կաթիլ թափելով պիտի պակասէր, շատ անգամ և փճանար, ամեն օր գործ ածող ամանները պիտի մաշւէին, փճանային և պէտք ունենային շուտ շուտ կլայէկի, և այլն և այլն... այսինքն այդտեղ երևան են գալիս բոլոր այն վնասներն ու պակասութիւնները, որ յատուկ են մանր արդիւնաբերութեան, մինչդեռ խաբը զուրկ լինելով բոլոր այդ վնասներից՝ ներկայացնում է ահագին առաւելութիւններ, այն բոլորը, ինչ որ խկապէս յատուկ է մեծ արդիւնաբերութեան. 25 հոգու փոխանակ, խաբի շնորհիւ՝ կաթնով զբաղւում է միայն մէկը. 25-ի թոնրի փոխանակ վառւում է միայն մէկը. և այդպէս բոլոր մնացած ծախսերն ու պակասութիւնները կրճատւում են 25 անգամ: Եթէ գիւղացի կնոջ գործ ածած վառելիքը (եթէ նա խաբին չմասնակցէր) օրական հաշւենք միայն 5 կոպէկ առաւօտ և երեկոյ կաթը տաքացնելու, նորա աշխատանքը պանիր, իւղ պատրաստելու, և տեղաւորելու, ամանի կլէկը և մաշւիլը, սապոնը, ջուրը և այլն հաշւենք նոյնպէս 5 կոպ., երկուսը միասին ուրեմն 10 կոպ., կ՛ստանանք, որ 25 տունը օրական խնայում է 2 ռ. 50 կոպէկ.

բայց խաբը տևում է չորս ամսից աւելի, այսինքն 120 օր. ուրեմն ամբողջ կաթնային սեզոնում խաբը շահում է 300 ռուբլի: Բայց գոյութիւն ունի սովորաբար երկու խաբ՝ կովի և ոչխարի կաթի համար ջոկ-ջոկ. գցենք որ մի 150 ռուբլի էլ ոչխարի խաբից է խնայւում. 300+150=450 ռուբլի. եթէ դա բաժանենք մեր վերցրած 25 տան վերայ, կ՛ստանանք, որ ամեն մի տուն միջին հաշւով խաբի շնորհիւ շահում է 18 ռուբլի. գիւղացու համար դա մի ահագին գումար է, որը նա վաստակում է առանց արեան քրտինքի, լոկ ընկերավարական միութեան շնորհիւ: Այդ հաշիւները՝ իհարկէ, գիւղացին չի՛ անում և չի՛ էլ նկատում այդ օգուտը, քանի որ դա շօշափելի չէ նորա համար. շօշափելին այն է, որ նա վերջ ի վերջոյ ձմեռւայ համար կարգին պաշար է ունենում:

Խաբը մի առանձին ուշադրութեան է արժանի և այն տեսակէտից, որ նա հայ կնոջ ստեղծագործութիւնն է. տղամարդը այդտեղ մազաչափ անգամ մասնակցութիւն չունի. դա իր ծագմամբ, զարգացմամբ և տևականութեամբ հետևանք է միմիայն հայ կնոջ տնտեսագիտական հմտութեան: Վերին աստիճանի հետաքրքրական է տեսնել խաբւոր կանանց վէճը, ժողովները և գործողութիւնը, որի նմանը ինձ թւում է, որ ամբողջ աշխարհում գոյութիւն պիտի չունենայ: Ով հաւատ չունի կնոջ ինքնուրոյն գործունէութեան, նորա հասարակական և ընկերական բնազդի վերայ, թող գնայ Բարձր Հայքի գիւղերը և ուսումնասիրէ այնտեղ հայ կնոջը:

Հայ համայնքը ուսումնասիրելիս առհասարակ ո՛չ միայն մոռացութեան չպէտք է տալ հայ կնոջը, այլ աշխատելու է ըստ կարելւոյն լա՛ւ որոշել նորա տեղն ու դերը, որ անշուշտ, ինչպէս խաբի պատմութիւնն է ցոյց տալիս, մեր կարծածից շատ աւելի նշանաւոր է, մանաւանդ որ նոյն կինը Հայաստանի մեծ մասում տղամարդու հաւասար մասնակցում է դաշտային աշխատանքներին: Եւ ըստ իս, դա ո՛չ միայն բարձրացնում է հայ կնոջը մեր աչքում իբրև մի ֆակտորի, որը հայ ազգի տնտեսական կեանքում առաջնակարգ դեր է խաղացել և դեռ խաղում է, այլ և հիմնաւոր գրաւական է տալիս, որ նա ընդունակ է՝ ընտանեկան նեղ շրջանից դուրս նաև՝ բուն հասարակական գործունէութեան:

**«Մուրճ», 1896, N 1, էջ 88-106**

# ԱՐԵՒՈՐԴՈՑ ԽՆԴԻՐԸ

Ժ-ԺԲ դարերի մի երկու համարեա պատահական հատուածներում մեր մատենագիրների մէջ յիշւում է մի ժողովուրդ «Արևորդիք» անունով, որ յետոյ Շնորհալին դասում է հին Հայոց կարգը՝ իբրև նոցա հեթանոս մնացորդներ:

Ի՞նչպէս նոքա հեթանոս մնացին, ի՞նչպէս յանկարծակի երևան եկաւ հայ ազգի այդ մնացորդը Արևորդի անունով, պատմութիւնը մեզ ոչինչ չի ասում: Ի՞նչ աղբիւրներ հիմք եղան Շնորհալուն նոցա հայ անուանելու, որպիսի՞ պայմաններ նպաստեցին նոցա այնքան երկար ժամանակ հեթանոս մնալու և մի միայն ԺԲ դարում քրիստոնէութեան դիմելու. այդ ևս մնում է մթին ու խաւար: Մենք լիովին անտեղեակ էինք մնալու այդ ժողովրդի էութեան մասին, եթէ բաց ի Շնորհալու յայտնի թղթից ուրիշ մի քանի թէև հատուկտոր՝ բայց ըստ իս աւելի հաւաստի և ծանրակշիռ վկայութիւններ չունենայինք մեր մատենագիրների մէջ:

Արևորդոց մասին մեզ առաջին պատմական տեղեկութիւն տուողը Մագիստրոսն է Ժ-ԺԱ դարում: Նա «Պատասխանի թղթոյն կաթող. Ասորոց» գրութեան մէջ մի խումբ աղանդների մասին յիշելուց յետոյ հետևեալն է ասում. «Աւադիկ Պոլիկեանքդ, որք ի Պօղոսէ Սամոսատացւոյ դեղեալ, յորժամ ձեռնարկեալ հարցանեմք՝ ասեն թէ քրիստոնեայք եմք՝ և զաւետարանն և զառաքեալն սաղմոսեն յամենայն ժամ. եւ յորժամ հարցանեմք եթէ ընդէ՞ր ո՛չ մկրտիք՝ զոր հրամայեաց Քրիստոս եւ առաքեալքն. ասեն ո՛չ գիտէք դուք զխորհուրդս մկրտութեան. մեզ ո՛չ է փոյթ մկրտիլ քանզի մկրտելն մահն է. եւ Յիսուս ոչ ասաց յընթրիսն վասն պատարագի, այլ վասն ամենայն սեղանոյ: Եւ ասեն զՊօղոս սիրեմք եւ զՊետրոս անիծեմք. եւ Մովսէս զԱստուած ո՛չ ետես, այլ զՍատանայ, եւ ասեն արարիչ երկնի եւ երկրի զսատանայ եւ ամենայն մարդկային սեռի եւ ամենայն ստեղծուածոց, եւ ինքեանք զինքեանս անուանեն քրիստոնեայս. ահա եւ այլ ոմանք ի Ջրադաշտ մոգէ, մոգք պարսկականք եւ այժմ՝ ի նոցունց դեղեալք Արեգակնապաշտք, զոր Արեւորդիսն անուանեն եւ ահա են յայդմ գաւառի (ի Մի-

ջագետս) բազումք, եւ ինքեանք քրիստոնեայք զինքեանս յայտնապէս կոչեն. բայց թէ որպիսի մոլութեամբ եւ անառակութեամբ վարին, գիտեմք՝ զի ոչ ես անտեղեակ: Են ոմանք յանիծեալ ազգէդ Թոնդրակեցւոց, որք անուանեն զինքեանս Կաշեցիք եւ այն են չարութեան արմատ»[1]:

Այստեղ դիտմամբ բերի Արևորդիներից առաջ և յետոյ գրուած հատուածները, որ ինչպէս կը տեսնենք, մեծ շփոթութեան առիթ են եղել հետագայ մատենագիրների համար: Եթէ բաց ի Մագիստրոսի այս թղթից մեզ որևէ ուրիշ տեղեկութիւն չհասնէր Արևորդոց մասին, ինչ կարծիք, որ մենք նոցա բոլորովին իրաւունք չէինք ունենայ հայ անուանելու, ինչպէս որ դա այժմ սովորաբար ընդունուած է իբրև հետևանք Շնորհալու թղթի, մինչ Մագիստրոսը պարզապէս խօսում է մի ժողովրդի մասին, որին Արևորդի են անուանում առանց յիշելու նոցա ծագումը, ազգութիւնը կամ առաջուց ինչ կրօնի պատկանիլը: Մի բան միայն խիստ բացորոշ է. Արևորդիք ո՛չ Պայլիկեան աղանդաւորներին են պատկանում և ո՛չ էլ Թոնդրակեան-Կաշեցիներին: Սոքա քրիստոնեայ հերձուածողներ են. սոցա վէճը վերաբերում է քրիստոնէութեան այս կամ այն դաւանաբանութեանը. մինչ Արևորդոց կրօնը հիմնովին տարբեր է. նոցա չի կարելի աղանդաւոր կամ հերձուածող անուանել.- նոքա արևապաշտներ են:- Միակ կապն ու նմանութիւնը, որ կայ Արևորդոց և քրիստոնեայ աղանդաւորների մէջ, դա նա է, որ Արևորդիք ևս երևի արտաքուստ միմիայն «իրանց անուանում են քրիստոնեայ»: Թէ որքան ստոյգ է Արևորդոց զրադաշտեան մոգերից դեղուիլը, այդ ա՛յլ խնդիր է, միայն նոցա կրօնը անշուշտ շատ նման էր Զրադաշտականութեան, պաշտաման առաջին առարկայ արևն ունենալով: Նոյն իսկ խիստ տարակուսելի է Մագիստրոսի «եւ այժմ ի նոցունց (ի մոգուց) դեղեալ» խօսքերը. միթէ մինչև ԺԱ դարը գոյութիւն ունէ՞ր Զրադաշտականութիւնը և ա՛յն ուժով ու ծաւալով, որ ազդել կարողանար ուրիշ ժողովրդների վերայ...: Այս «այժմ» խօսքը եթէ պատահական չէ, առիթ է տալիս մտածելու, որ Արևորդիք դորանից առաջ մի այլ կրօն ևս պիտի ունեցած լինէին, որ անշուշտ քիչ թէ շատ տարբերում էր Զրադաշտականից. անտարակոյս դա բոյսերի կուլտն

1. Այս հատուածը հանել ենք հանգ. Էմինի ձեռագրից Պ. Խալաթեանի սիրալիր թոյլտուութեամբ՝ Մոսկուայում:

էր, որ ինչպէս յետոյ կը տեսնենք, նոքա շարունակում էին մինչև ԺԴ դարը: Այսքանը պէտք է Մագիստրոսի հետ ընդունել, որ Արևորդոց կրօնը շատ նման էր հին Պարսից դենին. բայց զարմանալին այն է, որ Արևորդոց նա չի նոյնացնում նաև Պարսից հետ. նա նոցա չի անուանում նաև զրադաշտեան, այլ պարզ «Արեգակնապաշտք»: Թէ՛ իբրև արևապաշտ և թէ՛ իբրև քրիստոնեայ Արևորդիք մնում են Մագիստրոսի որոշմամբ՝ ինքնագոյ, ինքնուրոյն մի ժողովուրդ. այդ չենք տեսնում յաջորդ մատենագիրների մէջ: Մագիստրոսից անմիջապէս յետոյ երկրորդ վկայութիւնը պատկանում է Ալաւկայ որդի Դաւթին, որ Շնորհալուց քիչ մի առաջ (ԺԲ դար) յայտնապէս կ՛ըսէ, թէ «Պայլիկեանք կամ Մծղնեայքլ Արուիորդոց ազգն է»[1]:

Վերևը մենք դրինք Մագիստրոսի բանիբուն բացատրութիւնը Պայլիկեանց մասին և այն տարբերութիւնը, որ կար նոցա և Արևորդոց մէջ. Դաւիթ վարդապետը ո՛չ մի խտիր չի տեսնում այդ երկուսի մէջ, և պարզապէս նոյնացնում է նոցա: Անշուշտ նա Մագիստրոսի գրածը կից և միաժամանակ Պայլիկեանների և Արևորդոց մասին կարդացել և շփոթել է մոռացմամբ.- Եթէ Արևորդիք յար և նման էին Պայլիկեանց, հապա ի՞նչ պատճառով գոյութիւն ունէր երկու տարբեր անուն. անշուշտ, դա ծագում էր Պայլիկեանց և Արևորդոց էական զանազանութիւնից, որ շփոթել է Դաւիթ վարդապետը. ըստ Մագիստրոսի Պայլիկեանք դեղուած էին Պօղոս Սամոստացուց, իսկ Արևորդիք զրադաշտեան մոգերից, այդ մոռանում է Դաւիթը: Սակայն, թերևս Արևորդիներից նոքա, որոնք ծանօթ էին Պայլիկեանց, հետևէին նաև վերջիններիս, քանի որ ինչպէս վարը կը տեսնենք, նոցա համար մի մեծ նշանակութիւն չի ունեցել անունով այս կամ այն կրօնին հետևիլը: Չնայելով այդպիսի շփոթութեան, Դաւիթն ևս Արևորդոց հայ չի կոչում. նա ընդհակառակը աւելի է որոշում՝ նոցա ճանաչելով իբրև մի ինքնուրոյն ազգութիւն.- «Արուիորդոց ազգ»:

Սխալի և շփոթութեան առաջին քայլը պատկանում է Դաւիթ վարդապետին, երկրորդ և աւելի մեծը Շնորհալուն, որ ժամանակի կարգով երրորդ յիշատակողն է Արևորդոց: Հետաքրքրական է, որ դեռ ևս

1. «Բազմավէպ», 1894, հտ. ԾԲ. Հին հաւատք Հայոց յօդուածից ենք առնում այս և հետագայ մի երկու հատուածները:

Մագիստրոսի ժամանակ իրանց քրիստոնեայ կոչող Արևորդիք մի դար յետոյ գալիս են Շնորհալու մօտ Հայոց եկեղեցին ընդունելու, որոնց մկրտութեան և բարոյական կրթութեան մասին նա գեղեցիկ պատուէրներ է տալիս Սամոսատի քորեպիսկոպոսին իր «յաղագս Արեւորդեացն դարձի» թղթին մէջ: ...«Գիտելի է ձեզ, զի վաղ ուրեմն եհաս ի ձէնջ գիր առ մեզ յաղագս Արեւորդեացդ որ ի քաղաքի ձերում բնակեն, եթէ կամին և աղաչեն ի հօտն Քրիստոսի խառնել զնոսա. զի որպէս ազգաւ եւ լեզուաւ ի տոհմէ Հայոց են, յօժարին եւ հաւատով եւ հոգւով ի նոյն միաբանութիւն հաւասարեսցին ընդ նոսա: Եկին և առաջի մեր ի նոցանէ. եւ զնոյն բանս աղաչանաց խօսեցան ընդ մեզ. եւ մեք ծանուցաք նոցա զոր ընթերցեալ էաք ի գրոց վասն դիւապաշտ աղանդոյ նոցին եւ զոր լուեալ էաք ի համբաւէ յընդելակցաց նոցին զզանազան չարիս բանիւ եւ գործով զնոցանէ... այսպէս եւ Արևորդիքդ յազգս մեր ի մասին սատանայական խաւարին մնացեալք, ոչ կամցեան լուսաւորիլ աստուածային լուսովն ի ձեռն լուսաւորչին մերոյ սրբոյն Գրիգորի, այլ սիրեցին զխաւար եւ ոչ զլոյս մինչեւ ցայսօր ժամանակի: ...Որպէս եւ դոքա որ առ մեզ եկին, յուրաստ եղեն երդմամբ մեծաւ ի չար աղանդոց անտի, եւ նզովեցին բերանօք իւրեանց որ զայնպիսի ծածուկ անաստուածութիւն ունիցի յինքեան. եւ զոր ինչ սահման եդաք նոցունց յանձն առին կատարել զամենայն: ...Իսկ եթէ ստութեամբ լինիցի դարձ նոցա, որպէս եւ կարծեն բազումք զնոցանէն, դարձեալ անդրէն ի փոխանակ իւրեանց դառնան, մեզ եւ ո՛չ մի ինչ վնասէ»:

Այստեղ Արևորդիք երևում են մի բոլորովին նոր դերի մէջ. Շնորհալին նոցա «ազգաւ և լեզուաւ ի տոհմէ Հայոց» է անուանում, որոնք Լուսաւորչի ժամանակ որպէս թէ խուսափել էին մկրտութիւնից և մինչև Շնորհալու օրերը մնացել հեթանոս: Այս վերջին կարծիքը ակներև սխալ է. որովհետև դեռ Շնորհալուց շատ առաջ Մագիստրոսի վկայածով Արևորդիք գէթ արտաքուստ «ինքեանք քրիստոնեայք զինքեանս յայտնապէս կոչեն»: Դաւիթ վարդապետն ևս նոցա շփոթում է քրիստոնեայ աղանդաւորների հետ:- Գալով Արևորդոց հայութեան խնդրին, որի առաջին արծարծողը Շնորհալին է հանդիսանում, պիտի ասենք, որ նա դորա համար՝ որքան մեզ յայտնի է մատենագրութիւնից՝ ո՛չ մի հիմք չունէր:- Նա մատնանիշ է անում ինչ որ մի գրութե-

ան վերայ, «զոր ընթերցեալ էաք ի գրոց վասն դիւապաշտ աղանդոյ նոցին», որ անշուշտ Մագիստրոսի թուղթն է լինելու. որովհետև Արևորդոց աղանդին նուիրած առանձնակի գիրք գէթ անունով յայտնի չէ մեր մատենագրութեանը, չենք էլ կարծում, որ դա գոյութիւն ունեցած և կորած լինի: Նորա կարդացած աղբիւրները ուրեմն լինելու էին Մագիստրոսի և Դաւթի թողած հատուածները, ուր սակայն խօսք անգամ չկայ Արևորդոց հայութեան մասին, ուր նոքա ճանաչւում են իբրև մի առանձին ժողովուրդ «ազգ»: Պարզ է, որ Շնորհալին կարդացել է այդ թղթերը և մոռացել. որովհետև՝ թողնենք ազգութիւնն ու լեզուն՝ կրօնի վերաբերեալ ևս նա հակասում է և՛ Մագիստրոսին, և՛ Դաւթին, նա Արևորդոց առանց այլևայլութեան համարում է հայեր, որոնք «ոչ կամեցան լուսաւորիլ... ի ձեռն սրբոյն Գրիգորի»... ո՞ր տեղից է քաղում նա այս տեղեկութիւնները, որոնք լի են տարակուսանքով, մեզ յայտնի չէ, սակայն դժուար չէ բացատրել նորա սխալը: Դեռ Շնորհալուց մի դար առաջ Արևորդիք իրանց քրիստոնեայ են անուանում, այդ մի դարու ընթացքում նոքա անտարակոյս աւելի ընտելացան քրիստոնէութեան և հայութեան, այնպէս որ նոքա ինքնին պատգամաւորներ են ուղարկում Շնորհալու մօտ հայերի հետ միանալու համար. և ի՞նչ տարակոյս, որ իրանք իրանց հայ պիտի անուանէին իբրև առաւել նպաստաւոր և պատուաւոր անուն: Այդ մեզ չպիտի զարմացնէ, որովհետև կաթոլիկ հայերի մէջ կային՝ որ իրանց ֆրանկ էին անուանում, մինչ Ուտիք - թէև ծագմամբ և լեզուով օտար,- իրանց հայ են կոչում: Այդ հանգամանքը բնականօրէն կարող էր Շնորհալու սխալի պատճառներից մինը լինել. մանաւանդ երևի պատգամաւորները լաւ էլ հայերէն էին խօսում (ինչպէս այսօր Ուտիների մեծամասնութիւնը), որի համար ևս նոցա «ազգաւ և լեզուաւ ի տոհմէ հայոց են» ասում է: Կարևորն այն է, որ Շնորհալին փաստերը չի՛ յեղաշրջում, նա չի՛ ասում որ իւր կարդացածը Արևորդոց լեզուի կամ ազգի մասին է, այլ նոցա «դիւապաշտ աղանդի», և իրաւ, վերևը մեր բերած վկայութիւնները վերաբերում են միմիայն Արևորդոց աղանդին և ոչ նոցա ծագմանը. մնում է կարծել, որ մնացեալը Շնորհալու անհատական կարծիքներն են, թէ Արևորդիք հայ են կամ հայ-հեթանոս: ...Սակայն, նա մի երկրորդ հիմք ևս ունէր Արևորդոց հայ համարելու. նորան յայտնի էր հին Հայոց արևապաշտ

լինելը. յայտնի էր և այն, որ նոցա մէջ յարգի էր նաև սօսի ծառը իբրև պաշտաման առարկայ. այժմ նոյն երևոյթները տեսնում է Արևորդոց մէջ, ուստի և այդ արտաքին նմանութիւնը աւելի ևս համոզում է նորան, որ Արևորդիք հին հեթանոս հայերի մնացորդն են:

Մի ուրիշ, զուտ քաղաքագիտական հանգամանք ևս կարող էր Շնորհալուն առիթ տուած լինել Արևորդոց հայ անուանելու. ոչ թէ սխալով, այլ գիտակցօրէն: Ինչպէս երևում է պատմական վկայութիւններից՝ այդ ժողովուրդը կասկածելի վարք ու բարքի տէր է եղել. թեթևամիտ, անխտիր արևապաշտութեան և քրիստոնէութեան հետևող, կէս կնքուած, կէս անկնունք.- մանրամասնութիւնները ստորև:- Դոցա չէին կարող Հայերը սիրել. այդ երկուսի մէջ մեծ խտիր կար, թէկուզ ըստ Շնորհալու նոքա հայախօս լինէին: Ահա այդ խտիրը վերացնելու, նոցա ընդ միշտ հայերի հետ եղբայրացնելու, նոցա քրիստոնէութեանը և հայութեանը աւելի ևս հաստատացնելու համար Շնորհալին հայերին գրում է, որ նոքա ևս մեր ազգից են, որ մեր երկուսի մէջ խորթութիւն չկայ: Այդ բանը ի հարկէ Արևորդոց շատ դուր կը գար, Հայերն ևս չէին կարող հաւատ չընծայել այնպիսի մի հեղինակաւոր անձի վկայութեանը, որպիսին էր Շնորհալին: Դա պարզ երևում է հէնց Շնորհալու խօսքերից. «Եւ ի վերայ ամենայնի եւ զանունն զոր ունին ի նախնեաց իւրեանց Արեւորդիք կոչելով, յայսմ հետէ փոխեսցեն եւ ի Քրիստոսի մեծ եւ սքանչելի անունն անուանեսցին՝ քրիստոնեայք»: Եթէ խնդրին նայենք մի այլ կողմից, կը տեսնենք որ ո՛չ մի հաւանականութիւն չկար մինչև Շնորհալու օրերը հայ-հեթանոս մնալու. հայ-հեթանոսութեանը մենք վերջին անգամ պատահում ենք Ե դարում, Մեսրոպի ժամանակ, որը և նա խեղդեց տալով նորան մահուան վերջին հարուածը: Իսկ Վարդանանց պատերազմը քրիստոնէութեան յաղթանակի կատարեալ արտայայտութիւնն էր քաղաքական և կրօնական տեսակէտից: Գրիգորների, Ներսէսների, Սահակ-Մեսրոպների ջանքերից յետոյ ի՞նչպէս կարող էին հայ-արևապաշտներ մնացած լինել մինչև ԺԲ դարը. միանգամայն երկմտելի և տարակուսական է:

Չմոռանանք, որ հայ-հեթանոսութիւնը ունէր զօրեղ և կազմակերպած հոգևորականութիւն, մինչդեռ Արևորդի-հայերի մէջ նորա հետքն

անգամ չի երևում: Շնորհալին իր մանրազնին, հեռատես և կարևոր թղթին մէջ այդ տարրը չէր կարող մոռացութեան տալ, որ ամենից զօրեղ հակառակորդը պիտի լինէր նոր կրօնին: Նա մէկ-մէկ յիշում է Արևորդի կանանց վարքն ու բարքը, նախատեսում է, որ Արևորդիք կարող են գայթակղիլ հնգ վատ քահանաների վարմունքից, մանրամասն հրահանգներ է տալիս նոցա բարոյական դաստիարակութեան համար, տղամարդոց, կանանց և երեխայից ջոկ-ջոկ, բայց ոչ մի խօսք չի ասում քուրմերի կամ մոգերի մասին, որ Արևորդիք չէին կարող չունենալ եթէ հայեր էին: Ընդհակառակն, մենք ԺԴ դարուց վկայութիւն ունինք, որ նոքա քրմութիւն չունէին, այլ «աւանդութեամբ ուսուցանեն հարքն զորդիսն իւրեանց, զոր նախնիք նոցա ուսեալք էին ի Զրադաշտ մոգէ»:...

Շնորհալու վկայութեան հաւաստիութիւնը հիմնաւորապէս թուլանում է և այն պատճառով, որ նա ծանօթ չէ Արևորդի ժողովրդին և նորա կացութեանը անմիջապէս, այլ նոցա պատգամաւորներին միայն: Նա ասում է. «Ընթերցեալ էաք ի գրոց վասն դիւապաշտ աղանդոյ նոցին և զոր լուեալ էաք ի համբաւէ յընդելակցաց նոցին զզանազան չարիս բանիւ և գործով զնոցանէ»:...

Նորա գրաւոր աղբիւրները շատ աղքատ էին, ինչպէս տեսանք վերևը: Իսկ ընդելակցաց (ծանօթների) հաղորդածները վերաբերում էին «զանազան չարիքների» և ոչ Արևորդից ազգութեանը կամ ծագմանը:

Այսպէս թէ այնպէս՝ Արևորդոց առաջին անգամ հայ անուանողը միայն Շնորհալին է առանց որևէ պատմական հիմունքի, առանց անձնական ծանօթութեան բուն ժողովրդի և նորա կացութեան հետ, որը և հիմք է դառնում հետագաներին, որոնք ծանօթ էին Շնորհալու թղթին՝ նոյնը կրկնելու աւանդաբար, մինչ մեծամասնութիւնը դարձեալ լռում է այդ մասին:

Չորրորդ վկայութիւնը պատկանում է Մխիթար կաթողիկոսին, որ գրում է Պապին, թէ «այն ատեն (ԺԴ-ի կիսում) Մանազկերտում Արեւորդիք կային»... Նոյն ԺԴ դարում Մխիթար Ապարանեցին գրում է. «Են ոմանք Հայկազեանք եւ հա(յ) լեզուաւ[1] Արեւապաշտք եւ կոչին

1. «Զի ազգաւ եւ լեզուաւ ի տոհմէ հայոց են», Շնորհալի:

Արեւորդիք. սոքա չունին ոչ գիր եւ դպրութիւն (եթէ հայ են ինչո՞ւ չունին). այլ աւանդութեամբ ուսուցանեն հարքն զորդիսն իւրեանց, զոր նախնիք նոցա ուսեալք էին ի Զրադաշտ մոգէ՝ անդրուշանին պետէ[1] եւ ընդ որ (կողմն) երթայ արեգակն՝ ընդ այնմ երկրպագեն, եւ պատուեն զծառն Բարտի եւ զՇուշան ծաղիկն եւ զԲամբակին եւ զայլսն, որ զդէմսն իւրեանց շրջեցուցանեն ընդդէմ արեգականն. եւ նմանեցուցանեն զինքեանս նոցա՝ (ծաղկանց) հաւատով եւ գործով բարձր եւ անուշահոտ եւ առնեն մատաղ ննջեցելոց եւ տան զամենայն հասս Հա(յ) երիցու: Սոցա առաջնորդն կոչի Հազրպետ և իւրաքանչիւր ամի երկու անգամ կամ աւելի՝ ամենեքեան այր եւ կին ուստր եւ դուստր, ժողովին ի գուբ մի յոյժ խաւարին եւ (երևի ուզում է ասել)...» (խառնակին):

Արևորդոց մասին մեզ հասած տեղեկութիւններից ամենաթանկագինը պատկանում է այս անձնաւորութեանը, որ վերին աստիճանի կարևոր մանրամասնութիւններ է հաղորդում նոցա կրօնի և սովորութիւնների մասին: Ինչպէս երևում է պատմուածքի ոճից՝ նա ի մօտոյ ծանօթ պիտի լինի Արևորդոց, որով և առաւել բարձրանում է նորա արժէքը, սակայն ոչ ամէն հաղորդածի վերաբերեալ: Այն ամէնը՝ ի հարկէ, որ նա կարող էր աչքով տեսած լինել և գրած, անշուշտ չեն կարող ենթարկուիլ ո՛չ մի կասկածանքի, որոնք մանաւանդ հաստատւում են և այլ աղբիւրներից. բայց ինչ որ չի կարող դիմանալ քննադատութեան, դա այն է՝ որ նա չի բաւականանում տեսածը պատմելով, այլ մտնում է պատմական բացատրութիւնների մէջ ևս. այսպէս՝ նորա ասելով գոյութիւն են ունեցել հայեր-Արևորդիք, որոնց նախնիքը ուսած են եղել իրանց կրօնը բուն Զրադաշտից «ի Զրադաշտ մոգէ անդրուշանին պետէ» (??):

Վերևը դրած ծանօթութիւնից երևում է, որ Ապարանեցին ծանօթ է եղել թէ՛ Շնորհալու և թէ՛ Մագիստրոսի թղթերին և ամենաբարեխիղճ կերպով միացնում, ամբողջացնում է նոցա հաղորդածը. Շնորհալու հետ նա ընդունում է, որ Արևորդիք հայ են, իսկ Մագիստրոսի հետ, թէ նոքա Զրադաշտական են: Միայն նա մոռանում է, որ ըստ Մագիստ-

1. «Աիա եւ այլ ոմանք ի Զրադաշտ մոգէ՝ մոգք պարսկականք եւ այժմ ի նոցունց դեղեալք Արեգակնապաշտք՝ զոր Արեւորդիսն անուանեն», Մագիստրոս:

րոսի՝ Արևորդիք ղեղուած են ո՛չ Զրադաշտից իրանից, այլ նորա յաջորդ մոգերից, մինչ Ապարանեցին վերագրում է դորան բուն Զրադաշտին: Բայց գալով իրողութեանը, ինչ որ նա աչքով տեսածն է գրում, հերքում է առաջին գրածը, ասելով որ Արևորդիք գիր ու դպրութիւն չունին: Երկուսից մէկը. եթէ Արևորդիք իսկական հայ են, ապա չէին կարող գիր ու դպրութիւն չունենալ. իսկ եթէ խորշում էին քրիստոնէական գրերից ու դպրութիւնից և առաւելապէս հետևում էին Զրադաշտականութեան, ապա նոյնպէս պիտի ունենային գիր ու դպրութիւն, քանի որ այդ կրօնն ևս առանց գրի ու դպրութեան չէր: Այսպէս տեսնում ենք, որ քանի գնում Արևորդոց ծագման խնդիրը առաւել կնճռւում է և բարդւում, թէև բոլոր սխալ կամ ստոյգ տեղեկութիւնները բղխում են միևնոյն աղբիւրից, Մագիստրոսից կամ Շնորհալուց, թէև ինչպէս կը տեսնենք, մեծամասնութիւնը Արևորդոց հայ լինելը չի պնդում, ճանաչելով նորան մի ուրոյն ժողովուրդ: Բայց հէնց այդ «հայ» անունը որ գտնում ենք միմիայն Շնորհալու և Ապարանեցու վկայութիւնների մէջ՝ կից Արևորդի կոչման հետ, ցոյց է տալիս, որ այդտեղ մի ինչ կայ, մի կասկածելի կէտ, որ հարկաւոր է պարզել: Իսկական հայը կարիք չունի վկայութիւնների իւր ազգութեան մասին. այն ինչ, երևի՝ Արևորդիք և հայ հոգևորականներից ոմանք կարիք էին զգում այդ ապացուցանելու և կասկածը փարատելու: Խորթ կամ ապօրինի ժառանգը միայն կարիք ունի իւր ծագումն ապացուցանելու և ոչ հարազատը: Այսօր նոյն երևոյթը կրկնւում է և ուտիացի ու բօշա ժողովրդների վերաբերեալ, որոնք յաճախ կոչւում են «ուտիացի-հայք» «հայ-բօշաներ», իսկ «մաղագործ հայք» ևն պաշտօնական անուն է դարձել. այդպէս կրօնական և լեզուի միութեան շնորհիւ երկու բոլորովին տարբեր ծագում ունեցող ժողովրդներ՝ ինչպիսի են Բօշաներն և Ուտիք, հայ են կոչւում:

Եւ անհասկանալի է մնում թէ ինչո՞ւ իսկական հայը պիտի Արևորդի կոչէր իրան. միթէ այն պատճառով որ նա արևապա՞շտ էր. հապա ինչո՞ւ նախնի արևապաշտ հայերն ևս այդպէս չէին կոչւում քրիստոնէութիւնից առաջ, մինչ նոցա կարծեցեալ յաջորդները ԺԲ դարուց յայտնւում են այդ նորատարազ անունով: Արևորդի անունը, ինչպէս երևում է, յատուկ ազգութեան անուն է և ոչ կրօնի, որովհետև այդ անուան հետ միասին մենք համարեա՛ բոլոր վկայութիւնների մէջ

պատահում ենք և նոցա կրօնի անուանը, որ նշան է թէ Արևորդի բառը չէր կարող և նոցա կրօնը նշանակել: Այդ կոչումը եթէ նոցա կրօնի անունն էր, քրիստոնէութիւն ընդունելուց յետոյ պիտի կորչէր վերանար, մինչ Արևորդոց քրիստոնեայ դառնալուց մի քանի դար յետոյ մատենագիրները նոցա յիշում են այդ անունով միայն իբրև ուրոյն ժողովուրդ և համեմատում են թուրքի, հայի հետ.

«Կինն՝ ոչ պժգայ յԱրեւորդւոյ,

«Ոչ ի թուրքէ, ոչ ի հայէ,

«Զով որ սիրէ՝ հաւատն այն է»,-

ասում է «Թըլկուրանցի Յովհաննէս պուէտն ու հայրապետը» (ԺԴ դար): Այս տողերի մէջ հայը, թուրքը և Արևորդին դրուած են իբրև վերին աստիճանի տարբեր առանձնայատուկ ազգութիւններ, իբրև համեմատական ամենախոշոր կոնտրաստ:

Նոյն ԺԴ դարու վերջերը Թոմաս Մեծոփեցին հետևեալն է գրում Լէնկ-Թէմուրի մասին. «Եկն ի Մէրտին (Միջագետք) աւերեաց զքաղաքն եւ չորս գեղ Արևորդի կռապաշտ զԾօլն, զԾըմըղախ, զՍաֆարի, զՄարաղի[1] ի սպառ կործանեաց: Եւ յետոյ դարձեալ սատանայի հնարիւք բազմացան ի Մէրտին և յԱմիթ»: «Յորոց գտանին մինչեւ ցայժմ ի սահմանս երկուց գաւառացս որք են ի Միջագետս» աւելացնում է հայր Ինճիճեանը իրանից (Հնախօսութիւն, հտր. Գ, 161 եր.):

Ապարանեցու վկայութիւնը Արևորդոց պաշտած բոյսերի մասին՝ լրացնում է «ծաղկաբան երգիչ» Դաւիթ Սալաձորցին հետևեալ հետաքրքրական տողերով. «Սինձն, Իրիցուկն ու Եղըրդակն կու սպասեն Արեւորդուն. Նոցա երամն ուրիշ է, կու շրջին զօրն հետ արեւուն»:

Արևորդոց մասին մեզ հասած տեղեկութիւնները ահա այս հատուկտոր հատուածներն են միմիայն, որոնք ի մի ամփոփելով աշխատենք պարզել նոցա ազգութեան խնդիրը:

Սակայն, նախ քան այդ՝ մատնանիշ լինինք մի ծանրակշիռ կէտի վերայ, որ մենք մոռացանք վերևը շեշտելու: Դա հայերի զարմանալի սառը վերաբերմունքն է դէպ ի Արևորդիքն ու նոցա կրօնը, որ անբացատրելի կը մնայ, եթէ իրօք Արևորդիք հա՞յ էին:

1. Հետաքրքրական է այս անուանց բացատրութիւնը, որոնք հայկական չեն երևում և որոնցից մի քանիսը Պարսկաստանում կան:

Մի յայտնի ճշմարտութիւն է, որ կրօնական բաժանումը մի ազգի անդամների մէջ միշտ կատաղի հալածանքի և ճնշման է ենթարկւում, մինչդեռ մի օտար ազգութեան տարբեր կրօն ունենալը ո՛չ մի հալածանք կամ շատ քիչ հալածանք է յարուցանում. այսպէս մինչդեռ հայ հոգևորականութիւնը աշխատում է թոնդրակեցութիւնը խեղդել իր սաղմի մէջ, չի կարող նորա մասին սառն ու հանգիստ խօսել. նզովք, բանադրանք և հալածանք է յարուցանում հայ-աղանդաւորների դէմ, նոցա գիւղերը աւերում տակն ու վրայ է անել տալիս, Արևորդոց վերաբերւում է մի սառն անտարբերութեամբ: Արդ եթէ թէ՛ Թոնդրակեցիք և թէ՛ Արևորդիք հայ են և երկուսն էլ խոտոր ճանապարհի վերայ, բնականօրէն երկուսն էլ ենթակայ պիտի լինին միևնոյն վիճակին, որ սակայն չենք տեսնում: Մագիստրոսը միևնոյն թղթի մէջ մինչ խօսում է Արևորդոց մասին, սառն է և անտարբեր. բայց երբ գալիս է Թոնդրակեցոց, իսկոյն փոխում է արտայայտութեան ոճը անուանելով նոցա անիծեալ, չարութեան արմատ և այլն (տես վերևի հատուածը): Շնորհալու վերաբերմունքը մինչև անգամ հասնում է անտարբերութեան. «իսկ եթէ ստութեամբ լինիցի դարձ նոցա (Արևորդոց ի քրիստոնէութիւն)... եւ դարձեալ անդրէն ի փսխածն իւրեանց դառնան, մեզ եւ ոչ մի ինչ վնաս է»: Այս հանգամանքը, ըստ իս, ամէնից պարզ ցոյց է տալիս, որ Արևորդիք հայ չէին, և իբրև օտարական, վարակիչ կամ վտանգաւոր չէին կարող լինել բնիկ Հայերի համար, չնայելով որ նոքա բաւական էլ բազմաթիւ էին. Մէրտին, նորա մօտի չորս գիւղերը, Սամոսատ, մինչև անգամ Մանազկերտ Արևորդիք կային. բայց իբրև քրիստոնէութեան և ազգային ամբողջութեան անվտանգ օտարականներ՝ ապրում էին առանց հալածուելու, մինչ բնիկ հայ աղանդաւորները, հայ-կաթոլիկները, վերջերս նաև հայ-բողոքականները զերծ չեն մնացել խիստ հալածանքից: Հէնց այդ պատճառով էլ Դաւիթ Ալաւկայ որդու վկայութիւնը՝ թէ «Պայլիկեանքն կամ Մծղնեայք Արուիորդոց ազգն է»՝ լիովին անհիմն պէտք է համարել: Ի վերջոյ ութ անձանց վկայութիւնները ԺԱ-ԺԴ դարերից՝ մեզ հետևեալ եզրակացութեանն է բերում:

ա. Նոցանից վեցը Արևորդոց մասին խօսում են՝ իբրև ինքնուրոյն ժողովրդի մասին. բ. Միայն Շնորհալին է նոցա հայ անուանում առանց որևէ հիմունքի, պատճառ դառնալով և Ապարանեցու սխա-

լին. գ. Արևորդոց վարքուբարքի, կրօնի և սովորութիւնների նկարագրից երևում է, որ նոքա հայ չէին և չէին կարող մինչև ԺԴ դարը հայհեթանոսներ գոյութիւն ունենալ:

Ուսումնասիրելով մեզ հասած տեղեկութիւնները Արևորդոց մասին, այն եզրակացութեան ենք գալիս, որ նոքա մի օտար նորամուտ ժողովուրդ են: Նոցա Արևորդի անունը, որ խորին արևելեան կնիք է կրում, այն հանգամանքը, որ մատենագիրները նոցա դեղուած են համարում Ջրադաշտականներից, ցոյց է տալիս, որ Արևորդիք Միջագետք և Հայաստան գաղթել են արևելքից - Պարսկաստանից: Նոքա ունեցել են «առաջնորդ», որ կոչւում էր «Հազրպետ»: Դա անշուշտ նոցա ցեղապետն է եղել. այսինքն ունեցել են ցեղական կազմակերպութիւն:

Զարմանալի են նոցա կրօնի մանրամասնութիւնները. հոգևորականութիւն չեն ունեցել. պաշտում են արևը և այն ծաղիկները որոնք «զդէմս իւրեանց շրջեցուցանեն ընդդէմ արեգականն». ուրեմն ամէնից առաջ արևածաղիկը, արևահատը. նաև՝ ինչպէս վկայութիւն ունինք՝ շուշանը, բամբակը, սինձն, եղրդակն, իրիցուկը, նաև բարտի ծառը:

Դորա հետ միասին նոքա իրենց անուանում են քրիստոնեայ, տալիս են հայ քահանայի հասոյթը: Յամենայն դէպս երևում է, որ խիստ ճաշակով ժողովուրդ են եղել Արևորդիք՝ պաշտելով արևն ու յիշեալ ծաղիկները, ինչպէս վկայում է Ապարանեցին. նոքա «նմանեցուցանեն զինքեանս նոցա (ծաղկանց) հաւատով եւ գործով բարձր եւ անուշահոտ»:

Բաց ի դորանից՝ նոքա բոլորի զարմանքն են յարուցանում իրանց վարքուբարքով: Շնորհալին նոցա պատուիրում է «ի բաց կալ ի սպանութենէ, ի շնութենէ, ի պոռնկութենէ, ի գողութենէ, ի նենգութենէ ընկերաց, ի յարբեցութենէ, ...եւ ոչ միայն զայլոց իրս ոչ գողանալ, այլ եւ իւր յարդար ստացուածոցն տալ կարօտելոյն...: Նոյնպէս եւ կանանց պատուէր տուք ի կախարդութենէ եւ ի դեղատուութենէ եւ յամենայն դիւական աղանդաւորութենէ ի բաց կալ... նոյնպէս եւ որ զպիղծ եւ զաղտեղի իրս ի կերակուրս կամ յըմպելիս խառնեալ՝ տայ ուտել քրիստոնէի վասն դիւական սիրոյն... եւ զգուշացուցէք զնոսա յամենայն այսպիսի բժժագործութենէ»[1]:

1. Ընդհանրական թուղթք Ս. Ներսիսի Շնորհալւոյ, Երուսաղէմ, 1871, էջ 223-227:

Մագիստրոսի և Ապարանեցու հաղորդածները աւելի ևս պարզում են Շնորհալու ասածները: Ի մէջ այլոց, եթէ հաւատանք Մխիթարին, նոքա սովորութիւն են ունեցել տարին մի քանի անգամ խառնակուելու, ինչպէս այսօր մի քանի ռուս աղանդաւորներ: Սակայն, Արևորդոց կրօնն, որ մօտենում է ֆէտիշութեան, նոցա ցեղական կազմակերպութիւնը և վարքուբարքի նկարագիրը ցոյց են տալիս, որ նոքա կանգնած են քաղաքակրթութեան նախնական աստիճանների վերայ. նոքա դեռ ևս չունին գիր, դպրութիւն և հոգևորականութիւն. իսկ քաղաքակրթութեան այդ աստիճանում հասարակական խառնակեցութիւնը՝ եթէ իրօք գոյութիւն է ունեցել՝ հետևանք չէ վարքուբարքի ապականութեան, այլ էնդօգամիայի հեռաւոր մնացորդն է, որը գոյութիւն է ունեցել բոլոր ազգերի նախապատմական շրջաններում: Արևորդիք ԺԱ-ԺԴ դարերի մէջ գտնւում էին իրանց քաղաքակրթութեան այն շրջաններում, որի մէջ այժմ գտնւում են Ամերիկայի, Աֆրիկէի և նոյն իսկ Հնդկաստանի շատ վայրենիներ:

Այս հանգամանքն ևս յենարան է տալիս հաստատելու, որ Արևորդիք հայ չէին. դա հակասում է հայի քաղաքակրթութեան պատմութեանը. ԺԱ-ԺԴ դարերում Հայոց մէջ չէր կարող ցեղական կազմակերպութեան և էնդօգամիայի հետքեր մնացած լինել, ինչպիսին տեսնում ենք Արևորդոց մէջ: Հայերը անյիշատակ ժամանակներից հաստատաբնակ էին, իսկ Արևորդիք եթէ բռնազբօսիկ չէ մեր այս բացատրութիւնը, թափառական. «Նոցա երամն ուրիշ է, կու շրջին զօրն հետ արևուն», ասում է Դաւիթ Սալաձորցին Արևորդոց մասին, որով աւելի ևս հաստատւում է նոցա ցեղական կազմակերպութիւն ունենալը:

Զարմանալին այն է, որ Արևորդիք կրակապաշտ չեն, որ Պարսից ու Հայոց հին կրօնի հիմքն էր. և առ հասարակ եղած վկայութիւնների հիման վերայ շատ դժուար է Արևորդոց պաշտամունքը նոյնացնել հին Հայոց կամ Պարսից կրօնի՝ զրադաշտականութեան հետ: Չունենալով հոգևորականութիւն, գիր և դպրութիւն, լինելով թափառական, նոքա անշուշտ չունէին և չէին կարող ունենալ մեհեաններ, բարդ կրօնական ծիսակատարութիւն, որ կապուած է որոշ քաղաքակրթական պայմանների հետ, ուստի և շատ դէպքերում նոքա դիմում են հայ քահանային և տալիս են նորա հասոյթը:

Դասակարգային միակ անունը, որ պատահում ենք նոցա մէջ, «Հազրպետն» է, նոցա «առաջնորդը» կամ ցեղապետն, ինչպէս քրդական կամ եզիդական շէյխը:

Ամփոփելով այս ամէնը, հետևում է, որ ա. Արևորդիք հայ չեն, բ. Նոքա քրիստոնեայ աղանդաւոր ևս չեն. գ. Նոցա կրօնը զրադաշտականութեան հետ ևս նոյնացնել չէ կարելի. դ. որ մեր ունեցած ներկայ նիւթերով առ այժմ դժուար է պարզել նոցա ծագումը:

Բերլին, 1895 թ., Նոյեմբեր 10

**«Հանդէս ամսօրեայ», 1896, Յունուար, թիւ 1, էջ 12-19**

# ԿԵԱՆՔԻ ԾԱԳՈՒՄԸ

Ըստ պրոֆեսոր Ֆեռուորնի (Verworn) (Allgemeine Physiologie. Jena. II Auflage)

Կար ժամանակ, որ մեր երկիրը մի տաք մարմին էր, իւր մօր - արևի նման, որ մինչև հիմա էլ իւր բոցավառ ճառագայթներով տաքացնում և լոյս է տալիս մեզ: Ամենապինդ քարերը, ամենաամուր մետալները, որ հիմա մեր երկրի սառած կեղևի մասերն են, այն ժամանակ հրահալ դրութեան մէջ էին՝ և բոցավառ գազերի մթնոլորտը բոլորում էր երկրի հալած միջուկը: Այդ բոցավառ զանգւածի տաքութիւնը հասնում էր հազարաւոր աստիճանների:

Թէ իրաւ, երկրագունդը զարգացման մի այդպիսի շրջան է անցել, այսօր ընդունում են բնական գիտութիւնների բոլոր ճիւղերը. աստղաբանութիւնը և ֆիզիկան, երկրաբանութիւնը և էւոլիւցիան, հանքաբանութիւնը և քիմիան համաձայն են այդ կէտին:

Եւ իրաւ, ժամանակիս հետազօտութիւնը հեռադիտակի և սպեկտրալ անալիզի միջոցով ուղղակի մեր աչքի առաջ դրեց այն, որ հիմա էլ տիեզերքում ամեն տեղ զարգացման նոյն ընթացքն է կատարւում, ինչ որ մեր երկիրն է մի անգամ կատարել, և հիմա էլ ամեն տեղ հանդիպում ենք ուրիշ երկնային մարմինների վերայ երկրիս կատարած զարգացման բոլոր աստիճաններին:

Այս հանգամանքը ահա, որ մեր երկիրը մի ժամանակ այնպիսի դրութեան մէջ էր, ուր կեանքը գոյութիւն ունենալ չէր կարող, որովհետև այն ժամանակ երկրի տաքութիւնը անասելի մեծ էր, երկրի երեսին ո՛չ մի կաթիլ ջուր գոյութիւն չունէր և կեանքի-ապրուստի պայմանները լիովին բացակայ էին, այս հանգամանքը, կրկնում ենք, կեանքի ծագման մասին մտածելիս, պէտք է հաշւի առնել և աչքից երբէք բաց չթողնել:

Արդ՝ դիտենք այն տարբեր կարծիքները, որոնք գիտական հիմունքներով զանազան գիտնականներ արտայայտել են կեանքի ծագման մասին:

ա. Նախածագման հիպօթէզ (Urzeugung, Archigonie, Abiogenesis, Generatio Spontanea):

Նախածագման հիպօթէզը իւր էական գծերով հետևեալն է: Որովհետև մեր երկրի զարգացման մէջ մի ժամանակ կար, որ կենդանի նիւթը նորա վերայ գոյութիւն ունենալ չէր կարող, ապա, կենդանի նիւթը, երկրի զարգացման մի աւելի ուշ ժամանակ, երբ երկրի կեղևը արդէն պաղել էր և կեանքի ապրելու պայմանները կային, անկենդան նիւթից պիտի առաջանար ինքնածին կերպով:

Այդտեղից ծագում է հետևեալ հարցը. ի՞նչ յատկութեան տէր էին առաջին օրգանիզմները (կենդանութիւն ստացած նիւթը) և ո՞րպիսի պայմանների մէջ նոքա առաջացան:

Հին դարերը, նոյն իսկ Արիստոտելի նման բազմահմուտ հանճարը, կարծում էին, որ որդերը, միջատները, նոյն իսկ գորտերը առաջ են գալիս տլից (տղմից): Ուշ, Ռեդի և Սւամմերդամի հետազօտութիւնները միջատների զարգացման մասին ցոյց տուին այդ կոպիտ կարծիքի սխալ և հիմնազուրկ լինելը: Նախածագման թէօրիան սակայն մի նոր յենակէտ առաւ մանրադիտակի գիւտով, որը գիտնականների առաջ մի բոլորովին նոր աշխարհ բաց արաւ:

Նորա շնորհիւ մարդ առիթ ունեցաւ տեսնելու, որ անկենդան նիւթի վերայ մի բուռ ջուր ածելուց յետոյ բազմաթիւ մանր կենդանիներ էին առաջանում, որոնք այդ պատճառով մինչև հիմա էլ ջրի որդ (ինֆուզորիաներ) են կոչւում: Եւ դոքա նախածագման կամ ինքնածնութեան թէօրիայի լաւագոյն ապացոյցներն էին մանաւանդ իրանց ամենապարզ և հասարակ կազմութեամբ, պատկանելով մինչև այդ գիտութեանը յայտնի եղած կենդանիների ամենաստորին կարգին:

Սակայն, այս անգամ էլ դուրս եկաւ, որ այդ ստորին կարգի օրգանիզմները նախածագմամբ կամ ինքնածնութեամբ չէին առաջանում, այլ զարգանում էին այն սերմերից, որ առաջուց մեր թափած ջրի մէջ էին ընկել կա՛մ օդից, կա՛մ ամանից և կամ մեր ձեռներից: Միլնէ, Շւան, Շուլցէ, Հելմհոլց և այլ գիտնականներ ցոյց տուին, որ երբ մարդ ձեռի նիւթերը եփելով կենդանի սերմերից ազատէ, չթողնէ որ օդի միջից թափած ջրի տեղը նոր սերմեր ընկնեն, այն ժամանակ ինֆուզո-

րիաներ (ջրի որդեր) չեն առաջանում: Երբ վերջապէս մեր օրերում մանր օրգանիզմներից ամենամանրը - բաքտէրիաները - գրաւեցին գիտնականների ուշքը, բաքտէրիօլօգների հիմնադիր հանճարեղ Պաստէօրը և ապա Ռոբերտ Կոխը հիանալի մեթոդներով ցոյց տուին, որ այդ կենդանիներն էլ երբէ՛ք իրանք իրանց անկենդան նիւթից չեն ծագում, այլ միշտ առաջ են գալիս կենդանի սերմերից. ուր նոցա սերմերը մահացրած կամ ոչնչացրած են, այնտեղ չի՛ կարող առաջ գալ ո՛չ մի կենդանի օրգանիզմ, թէկուզ կեանքի գոյութեան պայմանները գտնուէին իրանց լրութեամբ և կատարելութեամբ:

Այս վիճաբանութեան հետ, թէ արդեօք անկենդան նիւթից կարո՞ղ է ինքնիրան կենդանի օրգանիզմ առաջանալ, մինչև վերջին ժամանակները շարունակուում էին լաբորատորիաներում արհեստաբար կենդանիներ առաջացնելու փորձերը: Մեր օրերում այդ փորձերը կապուած են Պուշէի անուան հետ, որը պնդում էր, թէ անկենդան նիւթից արհեստաբար կարելի է միավանդակ (միաբջիջ, einzellig) օրգանիզմ - ստորին կարգի սունկեր կամ բաքտէրիաներ առաջացնել, եթէ կարևոր նիւթերը յարմար պայմանների մէջ դրուեն: Այդ պնդումը հիմնովին ջրւեց Պաստէօրի և Կոխի անհերքելի փորձերով: Այդ կարծիքը քիմերական է մանաւանդ այն պատճառով, որ օրգանիզմի քիմիական կազմութիւնը, յատկապէս կենդանի սպիտակուցի կազմութիւնը առժամանակ գիտութեանը լիովին անծանօթ է:

Նախածագման թէօրիան գիտական հիմքի վերայ դրեց Հէկկէլը: Նորան չի՛ հետաքրքրում այն հարցը, թէ այսօր արդեօք նախածագումը գոյութիւն ունի՞ թէ ոչ. նա դեռ 30 տարի առաջ պնդում էր, որ կենդանի նիւթը երկրի ծագման մի որոշ ժամանակում մի անգամ անկենդան նիւթից պիտի առաջ գար, որովհետև կար մի ժամանակ, երբ երկիրը մի այնպիսի դրութեան մէջ էր, որ կեանքը չէ՛ր կարող գոյութիւն ունենալ: Եւ այդ ժամանակը, երբ կեանքը սկիզբն առաւ, ըստ Հէկկէլի՝ մթնոլորտում պատող գոլորշիների թանձրանալուց կաթիլ և անձրև գոյանալուց առաջ չէ՛ր կարող լինել: Ինքնիրան առաջացած օրգանիզմն էլ, ըստ Հէկկէլի, դեռ վանդակ (բջիջ, Zelle) չէր, այլ ամենաստորին, ամենապարզ մի օրգանիզմ, ինչ որ միայն երևակայել կարելի է, «միանգամայն համասեռ (հոմոգէն) կազմազերծ (structurlos) և անձև

մի սպիտակուց»: Թէ ինչպէս առաջացաւ այդ նախնական օրգանիզմը, այդ թողնում է Հէկկէլը մի կողմ, շեշտելով այն հանգամանքը, որ երկրի զարգացման այն շրջանը, երբ կեանքն առաջացաւ, և այն ժամանակւայ մթնոլորտի, ծովի և ցամաքի պայմանները որպէս նաև նոցա փոխազդը (Wechselwirkung) մենք իսկի երևակայել անգամ անկարող ենք: Իւր այդ նախնական, ամենապարզ, ամենատարրական և հասարակ կենդանի օրգանիզմը Հէկկէլը անւանում է «մոնէր», որից ապա ծագած պիտի լինեն վանդակաւոր օրգանիզմները, որոնցից, ապա, էւոլիւցիայի շնորհիւ, ամբողջ կենդանի աշխարհը:

Այս տեսութիւնը չնայելով իւր պարզութեանն ու հասարակ լինելուն, շա՛տ կողմերից յարձակման ենթարկւեց և առիթ տւաւ նորանոր թէօրիաների:

բ. Կեանքի տիեզերական լինելու թէօրիան (Kosmozoen-Theorie)

Վերջին ժամանակները նախածագման դէմ դուրս եկաւ այն կարծիքը, թէ ամբողջ տիեզերքում ցրւած են կենդանի սաղմեր (սերմ, Keim), որ յայտնի գիտնական Պրէյերը կոսմոզօէն-տիեզերասաղմ, տիեզերական կենդանի է անւանում: Այդ թէօրիայի հիմնադիրը Հ. Ն. Ռիխտերն է: Նորա ելակէտը (Ausgangspunkt) այն յայտնի երևոյթն է, որ ամբողջ տիեզերքում ցրւած են անթիւ մանր մարմիններ, որոնք իրանց ճանապարհին հանդիպած մեծ մարմիններին քսւելով անցնում են և կամ, եթէ ձգողութիւնը մեծ է, ընկնում են այդ մարմինների վերայ: Արդ՝ այդ փոքրիկ պինդ մարմինները կարող են կենդանի սաղմեր տեղափոխել երկնային մի մարմնից, ուր կեանքը գոյութիւն ունի, դէպի մի այլ մարմին, ուր նա գոյութիւն չունի. տեղափոխել, ասենք օրինակ, երկրից դէպի լուսինը, ուր եթէ այդ սաղմերը նպաստաւոր պայմաններ գտնեն, մասնաւորապէս չափաւոր տաքութիւն և խոնաւութիւն, կարող են աճել, և ելակէտ դառնալ մի ամբողջ երկնային մարմնի կենդանիներով բնակւելուն:

Տիեզերքի այս կամ այն մարմնի վերայ, ըստ Ռիխտերի, շարունակ գոյութիւն է ունեցել կեանքը բջիջների մէջ. կենդանի բջիջի գոյութիւնը տիեզերքում յաւիտենական է նիւթի պէս. «Omne vivum ab aeternitate e cellula»,- ասում է Ռիխտերը: Օրգանաւոր կեանքը այդպիսով սկիզբ չունի, այլ շարունակ մի երկնային մարմնից անցել է միւսը:

Երկրի վերաբերմամբ Ռիխտերը չի՛ ուզում լուծել այն հարցը, թէ ինչպէս այնտեղ կեանքը առաջացաւ, այլ թէ նա ինչպէս մի ուրիշ երկնային մարմնից մեր երկիրը հասաւ: Դորա պատասխանն էլ մենք տեսանք, որ նա լուծում է տիեզերքում թափառող փոքրիկ մարմինների (ընկնող աստղերի) միջոցով, որոնք կենդանի տարրը հասցրած պիտի լինեն երկիր, ուր նպաստաւոր պայմանների մէջ աճելով նա սկիզբն է եղել երկրի կենդանիներով ու բոյսերով լցւելուն:

Թէ կենդանի սաղմը մթնոլորտի միջոցով կարող էր անվնաս երկիր հասնել և շփումից առաջացած հսկայական տաքութիւնից չայրւել, Ռիխտերը ապացուցանում է նորանով, որ երկրի վրայ ընկնող փոքրիկ մարմինների - մէտէօրների - վրայ նկատւած են ածուխի, փտած մարմինների (humus) և նոյն իսկ նաւթային նիւթերի հետքեր, որոնք առանց այրւելու հասել են երկիր, հասկանալի է ուրեմն, որ կենդանի սաղմերն էլ կարող էին անվնաս մնալ:

Իսկ տարակոյսի ենթակայ չի կարող լինել այն երևոյթը, որ կենդանի սաղմը առանց իրան վնասելու կարող է երկար ճամբորդել տիեզերքում. դորան վկայ են կեղծ-մահու (scheintod) երևոյթները և մանրէների (միկրոբների) սերմերը, որոնք շա՛տ երկար ժամանակ պահպանում են իրենց կեանքի գոյութիւնը անվնաս կեղծ-մահու մէջ, առանց ջրի և առանց կերակրի:

Մի քանի տարի յետոյ, Ռիխտերից անկախ, Հելմհոլց և Վիլիամ Թոմսոնը քննում էին նոյն հարցը, թէ արդեօք չէ՞ր կարող կեանքը մի ուրիշ երկնային մարմնից մեր երկիրը հասած լինել. և երկուսն էլ գտնում են, որ դա մի ֆանտազիայի խաղալիք չէ, այլ բուն գիտական հարց է:

Հելմհոլցը ասում է. «Մէտէօրները երբեմն պարունակում են ածխաջրածնի միութիւններ. ածխածինը կենդանի սաղմի բնորոշ տարրն է. ո՞վ գիտէ, գուցէ այդ մարմինները (մէտէօրները), որ լի են ամբողջ տիեզերքում, տարածում են կենդանի սաղմ այնտեղ, ուր մի որևէ երկնային մարմին արդէն յարմար պայմաններ ունի նոցա պահպանելու: Եւ այդ կեանքը իր սաղմով մեր կեանքին ազգակից պիտի համարենք, որքան էլ նա իր ձևով մերինից տարբեր լինի, շնորհիւ տարբեր պայմանների գոյութեան»: Հելմհոլցը չի ժխտում այն, որ մէտէօրները կարող են սաղմի տեղափոխող հանդիսանալ, քանի որ

շարժումից առաջացած սաստիկ շփումից տաքանում է միայն նոցա արտաքինը, իսկ ներքին մասը մնում է պաղ: Կոսմոզօէն - տիեզերասաղմի - թէօրիայի մասին Հելմհոլցն աւելացնում է. «Ես չեմ ուզում վիճել նորա դէմ, ով այս թէօրիան անհաւանական, այո, մինչև անգամ շա՛տ անհաւանական է գտնում. բայց երբ մեր բոլոր փորձերը զուր են անցնում անկենդան նիւթից արհեստաբար կենդանի օրգանիզմ առաջացնելու, ապա մի լիովին ուղիղ-գիտական միջոց է, երբ մենք հարց ենք տալիս՝ արդեօք կեանքը երբ և իցէ սկի՞զբն է ունեցել, արդեօք նիւթի պէս յաւիտենական չէ՞ նա, և թէ արդեօք նորա սաղմերը մի երկնային մարմնից դէպի միւսը չե՞ն տեղափոխւել և այնտեղ զարգացել, երբ նպաստաւոր պայմաններ են գտել: Իսկական ալտերնատիւը յայտնապէս հետևեալն է. օրգանական (բոյս, կենդանի) կեանքը կա՛մ մի որևէ ժամանակում սկիզբն է առել և կամ գոյութիւն ունի յաւիտեանս յաւիտենից»:

գ. Պրէյերի թէօրիան կեանքի յաւիտենականութեան մասին

Պրէյերը հակառակ է թէ՛ նախածնութեան և թէ տիեզերասաղմի թէօրիաներին. և հետևեալ պատճառներով: Նախածնութեան թէօրիայի դէմ նա ասում է. եթէ մարդ ընդունում է, որ էւոլիւցիայի (զարգացման) մի որոշ ժամանակում մի անգամ կենդանի սուբստանցը (նիւթը) անկենդան նիւթից առաջացաւ, ապա մարդ կարող է պահանջել, որ նոյնը այսօր էլ տեղի ունենար: Այդ նպատակով կատարուած բազմաթիւ փորձերը սակայն միշտ պսակւել են անաջողութեամբ: Եթէ նախածնութեան թէօրիան ընդունում է, որ կեանքի առաջանալը կարելի էր ամենահին ժամանակում, իսկ հիմա ոչ, դա էլ միանգամայն անհաւանական է, որովհետև «նոյն պայմանները, որոնք կեանքի պահպանութեան համար կարևոր և հիմա իրական են, պէտք է կենդանու առաջին անգամ ծագելու ժամանակ էլ իրապէս գոյութիւն ունենային. այլապէս նախածնութեան արդիւնքը չէր կարող ապրել»: Մարդ չի՛ հասկանում իսկապէս, թէ հիմա ի՞նչ բան է պակաս, որ նախածնութիւնը դադարել է մեր օրերում տեղի ունենալուց:

Պրէյերը տիեզերասաղմի թէօրիան էլ չի ընդունում, որովհետև նորա կարծիքով դա հարցը չի լուծում, այլ միայն յետաձգում է. այն է՝ կեանքի ծագումը այդ թէօրիան մեր երկրից տեղափոխում է մի որ և է

այլ երկնային մարմնի վերայ, ուր սակայն դրուած հարցը մնում է նոյն դրութեան մէջ անլուծելի:

Ի նկատի ունենալով ամենօրեայ փորձը, որ բոլոր օրգանիզմները շարունակ առաջ են գալիս իրանց նման օրգանիզմներից և մինչև օրս դեռ չի հաստատուել, որ մի օրգանիզմ առաջանար ինքն իրան - առանց ծնողների, Պրէյերը մի հարց է առաջարկում. թէ արդեօք նախածննդեան թէօրիան հարցի սխալ դնելու արդիւնք չէ՞, երբ նա պահանջում է, որ կենդանի սուբստանցը (նիւթը) մի անգամ անկենդան նիւթից պիտի ծագած լինի. և թէ արդեօք ուղիղ չէ՞ր լինիլ եթէ հարցը բոլորովին դորա հակառակը դրուէր:

«Գուցէ անկենդան նիւթն է առաջացել կենդանականից»: Բոլոր օրգանիզմները առաջանում են միայն կենդանի օրգանիզմներից. անօրգան, անկենդան նիւթը (հող, մետալներ) որպէս մենք ամեն օր տեսնում ենք, առաջանում է ո՛չ միայն անկենդան, այլ և կենդանի նիւթից, որից նա բաժանւում է ինչպէս մեռած տարր, կամ որի մահից յետոյ նա մնում է որպէս մեռած անիւն: Այդ նախաբանով Պրէյերը այն կարծիքն է յայտնում նախածնութեան թէօրիայի դէմ, որ ժամանակով կենդանի նիւթն է առաջինը. իսկ անկենդանը ծագել է նորա զատանքից (Ausscheidung): Նա ընդունում է, որ կեանքը յաւիտենական է. Omne vivum e vivo.- Այս երևոյթը երբէք բացառութիւն չի՛ ունեցել:

Այս թէօրիայի հետևանքները շա՜տ հարցասիրական են: Եթէ կեանքը երբէ՛ք անօրգան նիւթից չի ծագել, այլ մի՛շտ առաջացել է կենդանի սուբստանցից, ապա նա պիտի գոյութիւն ունենար և այն ժամանակ, երբ երկիրը մի հրահալ և բոցավառ մարմին էր: Այդպէս էլ կարծում է Պրէյերը. ուստի և նա «կեանք» գաղափարը սովորականից շա՛տ ընդարձակ ըմբռնելով, ո՛չ միայն այսօրուայ կենդանի սուբստանցն է կենդանի համարում, այլ և այն բոցավառ կրակը, որ պրոտոպլազմ-օրգանիզմներից շա՛տ առաջ գոյութիւն ունէր: «Եթէ մարդ իրան ազատում է, ասում է Պրէյերը, այն սխալ և անիրական մտքից, թէ ներկայ պրոտոպլազմայի յատկութեամբ միայն կեանքը կարող էր գոյութիւն ունենալ և այն հին՝ միայն յարմարութեան համար հնարած կարծիքից, թէ նախօրօք լոկ անօրգան (անկենդան) նիւթը կարող էր գոյութիւն ունենալ, ապա դժւար չէ մի քայլ աւելի հեռու գնալ և կեան-

քի անսկիզբ լինելը ճանաչել. «omne vivum e vivo»: Այս դիտողութիւններով Պրէյերը հետեւեալ պատկերն է տալիս կեանքի մասին: Երկրի ամբողջ բոցավառ մասսան նախօրօք մի հսկայական օրգանիզմ էր: Այն ահագին շարժումը, որի մէջ նա գտնւում էր, նորա կեանքն էր: Իսկ երբ երկիրը սկսեց պաղիլ, ապա սկսեցին զատիլ այն նիւթերը, որոնք այլ ևս հեղուկ դրութեան մէջ չէին կարող մնալ, որպէս, օրինակ, մետալները, որոնք ամբողջ օրգանիզմի կենդանի շարժմանը չէին կարող մասնակցել, որից և կազմւեցաւ առաջին անօրգան (անկենդան) մասսան: Այսպիսով երկրի բոցավառ-հեղուկ նիւթը նորա կենդանի տարրն էր. իսկ սառած մասը - անկենդան: Այս երևոյթը շարունակւեց, մինչև որ երկրի մասերը պաղելով-սառելով հետզհետէ լիովին մահացան և ապա առաջացան գազային և կաթիլային տարրերի միութիւնները (Verbindung), որոնք հետզհետէ նմանում էին նախասաղմին (պրոտոպլազմա), որը մեզ ծանօթ կեանքի հիմն է կազմում:

«Երկրի տաքութեան պակասելու հետ աւելի և աւելի բարդ կապակցութիւններ, քիմիական միաւորումներ, աւելի ու աւելի բարդ մարմիններ, խառնաշփոթութիւններ, ցանցակերպ մէկից-միւսին անցնող երևոյթներ առաջանալով, այն էլ միշտ բազմացող բաժանումներով ու զատումներով, հիմք տւին բոյսերի և կենդանիների նախնական ձևերին:

«Այսպիսով մենք չենք ասում, թէ նախասաղմը ինքնին երկրի կազմութեան սկզբից գոյութիւն ունէր, ոչ էլ այն, թէ անսկիզբն մի որ և է երկնային մարմնից երկիր ընկաւ, և ոչ էլ այն, թէ նա պլանետների վրայ անօրգան նիւթից է ծագել, այլ մենք պնդում ենք, որ տիեզերքի անսկիզբն շարժումը կեանք է, և պրոտոպլամայի ծագումը - այդ կեանքի մի մնացորդը՝ փոփոխւած պայմանների մէջ: Ծանր մետալները, որ մի ժամանակ այդ հսկայ կեանքի մասերն էին, սառելուց յետոյ է՛լ չհալեցան, չմտան այս նոր փոքրիկ (սաղմային) կեանքի շրջանակը: Նոքա հին, բոցավառ կեանքի վաղաժամ մահւան մնացորդներն են, ա՛յն կեանքի, որի շունչը գուցէ լուսավառ երկաթի գոլորշի էր, որի արիւնը հեղուկ մետալն էր, որի կերակուրը գուցէ մոլորակներն էին»:

դ. Պֆլիւգէրի թէօրիան

Պֆլիւգէրն էլ մի բազմահմուտ աշխատութեան մէջ[1] մանրօրէն ուսումնասիրելով կեանքի ծագման հարցը, այն կարծիքն է յայտնում, որ կենդանի սուբստանցը (նիւթը) երկրիս վերայ ինքնիրան առաջացել է անկենդան սուբստանցից:

Այս գիտնականի թէօրիան այն առաւելութիւնն ունի, որ նա միայն սպեկուլացիօններով չի զբաղւում, այլ հարցը պնդօրէն կապում է ֆիզիօլօգիական (բնախօսական) և քիմիական յայտնի իրողութիւնների հետ և խիստ գիտականօրէն լուսաբանում է իր բոլոր մասերով: Ցաւում եմ, որ նորա թէօրիան չեմ կարող այստեղ ներկայացնել «Մուրճ»-ի ընթերցողների համար, որովհետև այն հասկանալու համար պէտք է քիմիայից որոշ աստիճանի պատրաստութիւն ունենալ. ուստի նոքա թող բաւանան միայն Պֆլիւգէրի հանած եզրակացութիւններով: Կեանքի հիմքը նա գտնում է մի քիմիական մարմնի մէջ, որ ցիան (cyan) է կոչւում. իսկ այդ մարմինը՝ յայտնի է քիմիայից, որ առաջ կարող է գալ միայն ամենախիստ տաքութեան մէջ: Ուստի Պֆլիւգէրը բնական է գտնում, որ կեանքի հիմքը սկիզբն պիտի առնէր դեռ այն ժամանակ, երբ մեր երկիրը տաք-հալած դրութեան մէջ էր:

1. Pfluger: "Ueber die physiologische Verbrennung in den lebendigen Organismen" - Ґflugerischer Archiv, Bd. 10. 1875.

## ՔՆՆԱԿԱՆ

Կեանքը յաւիտենակա՞ն է արդեօք, թէ սկիզբն ունի:

Կեանքի ծագման մասին երկրի վերայ՝ յիշեալ թէօրիաների մէջ երկու միմեանց հիմնովին հակառակ կարծիք կայ, որ գեղեցիկ կերպով արտայայտւում է Հելմհոլցի դրած ալտերնատիւի մէջ. «օրգանական կեանքը կա՛մ մի որևէ ժամանակ սկիզբն է առել և կամ յաւիտենական է»: Մի երրորդ՝ միջին ճանապարհ չկայ. ով կեանքի ծագումն ունենալն է ընդունում, չի կարող նորա յաւիտեան լինելն ընդունել. ով կեանքի յաւիտենութեանն է կողմնակից, հակառակ պիտի լինի նորա սկիզբ ունենալուն:

Քննենք կեանքի յաւիտենութեան թէօրիան:

Այդ թէօրիան ասում է, որ կեանքը անսկիզբն է և մի մոլորակից անցնում է դէպի միւսը, անվերջ շարունակելով իւր գոյութիւնը: Այս կարծիքը ուղղակի հերքել համարեա՛ անկարելի է, քանի որ մենք դեռ ևս չենք ապացուցել, թէ իրօք սաղմերի փոխանցումը մի երկնային մարմնից դէպի մի ուրիշը անկարելի է. թէև անուղղակի կարելի էր պնդել, որ շա՛տ անհաւանական է կեանքի յաւիտեան լինելը, քանի որ օրգանաւոր և անօրգան մարմինների համեմատութիւնը ցոյց է տալիս, որ առաջինները բաղկացած են նոյն քիմիական նիւթերից, ինչ որ անօրգանները, և տարբերւում են միմեանցից միայն իրանց քիմիական կապակցութիւններով: Կենդանի սուբստանցի կարևորագոյն կապակցութիւնները.- սպիտակուցաւոր մարմինները - սկզբունքով՝ հակադիր չեն անօրգաններին և տարբեր են նոցանից նոյնքան, որքան անօրգանների զանազան քիմիական կապակցութիւնները միմեանցից: Եւ եթէ օրգանաւոր մարմինները յաւիտենական են, ապա, հետևօրէն մտածելով, յաւիտենական պիտի լինէին նաև շա՛տ հանքային կապակցութիւններ (Verbindung), որպէս որձաքարը, ֆելդսպատը (Feldspat) և այլն. եթէ այդ տեսակէտով մի քիչ հեռուն գնայինք, պիտի այն անմիտ եզրակացութեանը գայինք, որ առհասարակ բոլոր քիմիական կապակցութիւնները յաւիտենից գոյութիւն ունին. կա-

պակցութիւններ, որոնք ամեն օր հարիւրներով և հազարներով կատարւում են մարդկանց ձեռքով քիմիական լաբորատորիաներում: Քանի որ օրգանաւոր և անօրգան մարմինների քիմիական կապակցութիւնների մէջ սկզբունքի տարբերութիւն չկայ, նոցա ծագման մասին էլ բնականօրէն սկզբունքով տարբեր թէօրիաներ պիտի չառաջանան. կա՛մ երկուսն էլ յաւիտենական են, և կամ երկո՛ւսն էլ սկիզբ ունին. որովհետև մենք հաստատ գիտենք անօրգանների ծագում ունենալը, բնական է ուրեմն, որ օրգանաւորներն էլ մի որևէ ժամանակ պիտի առաջացած լինեն:

Բոյսերի ֆիզիօլօգիայից յայտնի մի հիմնական երևոյթ էլ լիովին հակառակ է այն ենթադրութեանը, թէ կեանքը անօրգաններից չի ծագել. մի յայտնի իրողութիւն է, որ այսօր էլ բոյսը շարունակ սննդւում է անօրգան նիւթերից (ածխաթթու, ջուր, ծծումբ և այլն). երբ մարդ գարնանը փոքրիկ հունտը գետնի մէջ է թաղում և ամառը նորանից առաջացած ահագին բոյսն է դիտում, նորա համար ակներև է, որ բոյսը իր այդ ահագին մարմնի կենդանի տարրը առել և կենդանացրել է իրան բոլորող անօրգան (անկենդան) նիւթերից: Եւ երբ ձմեռը վրայ է հասնում, նոյն կենդանի բոյսը համարեա՛ ամբողջովին մեռնելով՝ դառնում է մի անօրգան (անկենդան) մարմին:

Այստեղ աշկարա տեսնում ենք օրգանաւոր և անօրգան մարմինների անբաժան կապը, ուր կենդանի նիւթը ծագում է անկենդան նիւթից և կրկին մեռնելով, լուծւում, դառնում է անկենդան: Իրաւացի է յայտնի բուսաբան Նէգելիի (Nageli) նկատողութիւնը, թէ «մեր հաստատ գիտեցածն այն է, որ անօրգանը (անկենդան) օրգանաւորի (կենդանի) մէջ դառնում է օրգանաւոր սուբստանց. և օրգանաւոր սուբստանցը դառնում է լիովին անօրգան կապակցութիւն,- այսքանը բաւական է, որ պատճառականութեան օրէնքով հետևցնենք օրգանաւորի ծագումը անօրգանից»:- «Նախածնութիւնը հերքել, նշանակում է հրաշք ընդունել»:

Կեանքի յաւիտենութիւնն է ընդունում և Պրէյերը, միայն բոլորովին այլ մտքով. նորա թէօրիան, սակայն, շատ հետևողներ չունեցաւ:

Նա ասում է, որ կենդանի սուբստանցը առանց ընդհարման ծագում է այն սուբստանցից, որ մի ժամանակ հրահալ դրութեան մէջ էր.

մենք իրաւունք չունենք այդ վերջինը մեռեալ անուանելու, որովհետև իրօք կեանքի և մահուան մէջ, որպէս անօրգան և օրգանաւոր մարմինների մէջ, մի բաժանարար սուր գիծ չկայ, և առհասարակ այդ բաժանումը կամայական է:

Եւ որովհետև այդ սուբստանցը տիեզերական նիւթի մի մասն է, որը յաւիտենական շարժման մէջ է, ապա ուրեմն կեանքը, որ շարժման մի բարդ երևոյթ է միայն, նոյնպէս յաւիտենական է, որպէս մատերիան (նիւթը):

Պարզ է, որ նախածագման և Պրէյերի թէօրիաների տարբերութիւնը նոցա տարբեր հասկացողութիւնն է կեանքի մասին: Առաջինը սովորական ձևով կենդանի է անուանում միայն օրգանաւոր նիւթը՝ անօրգանի յանդիման, իսկ Պրէյերը «կեանք»ը խիստ ընդարձակ է ըմբռնում և տիեզերքի բոցահալ նիւթն էլ կենդանի է համարում: Եթէ կեանք գաղափարը այդպիսի ընդարձակ մտքով ըմբռնենք, ապա մնացեալ հետևութիւնները, որ հանում է Պրէյերը, հասկանալի կը լինին: Սակայն դա իր անյարմարութիւններն ունի:

Այն գաղափարը, որ մենք արտայայտում ենք կենդանի բառով, ծագել է ներկայի կենդանի օրգանիզմների և անկենդան մարմինների ճիշտ, գիտական և համեմատական դիտողութիւնից: Այդ բաժանումը ունի միայն մի՛ արմատական կէտ. դա սպիտակուցաւոր մարմինների նիւթի փոխանակութիւնն է: Այն է, սպիտակուցաւոր մարմինները, որ նաև կենդանի օրգանիզմ են կոչւում, ընդունակ են սննդելու, սննդածը մարսելու և աւելորդութիւնները իրանցից զատելու: Ո՛չ մի անօրգան (անկենդան, օր. մետալներ) մարմին սպիտակուց չունի: Ընդհակառակը ամեն մի օրգանիզմ սպիտակուց ունի, և այդ սպիտակուցի կերակրւիլն է (Stoffwechsel), որով նա տարբերւում է անկենդան մարմիններից:

Այս միջոցը թէև տարրական, պրինցիպական չէ, բայց միակ հաստատուն միջոցն է, որով մենք բաժանել ենք կարողանում անկենդան նիւթը կենդանականից:

Եթէ այս կէտը բաց թողնենք աչքից և Պրէյերի պէս այն մարմիններն էլ կենդանի անուանենք, որոնք սպիտակուց չունին, որպէս հրահալ մարմինները, ապա մեր գտած որոշումը լիովին կորցնում է իր

նշանակութիւնը, և օրգանաւոր ու անօրգան մարմինների բաժանումը դառնում է անկարելի:

Պրէյերը մի լռիկ ենթադրութիւն էլ է անում, թէ հրահալ նիւթերը նիւթի փոխանակութիւն ունէին, որ ո՛չ մի դիտողութեան վրայ չի հիմնւած. թէև մի կողմից այն էլ անտարակուսելի է, որ այդ հրահալ նիւթերը մի ներքին՝ և այն էլ շա՛տ զօրեղ շարժման ընդունակութիւն ունէին, միւս կողմից կեանքն էլ ինքնին մի բարդ շարժումն է, որին ամեն մի մոլեկուլային շարժում սկզբունքով ազգակից է: Եւ սակայն, այն շարժումը, որ արտայայտւում է կեանքի մէջ նիւթի փոխանակութեամբ, մի շատ բնորո՛շ երևոյթ է: Այդ այն է, որ կենդանի սուբստանցը շարունակ մաշւում է, զատում (ausscheinden) կամ հեռացնում է իրանից սեփական մարմնի հնացած մասերը, նորա տեղը ընդունելով նոր մասեր, որոնցով շարունակ նորոգում է իւր մարմինը, կազմելով ատոմների նոր խմբեր: Բոլոր կենդանի սուբստանցի ամենաբնորոշ յատկութիւնն է այս մաշւիլն ու նորոգւիլը, կամ զատելն ու ընդունելը (ausscheiden-aufnehmen): Թէ նոյն շարժումը, այն է մաշւիլն ու նորոգւիլը գոյութիւն է ունեցել նաև հրահալ նիւթերի մէջ և անընդհատ շարունակելով եկել հասել է մինչև մեր օրերը կենդանի օրգանիզմների մէջ, շա՛տ տարակուսելի է: Այսօր էլ երկրի մէջ կան հրահալ նիւթեր, որոնք երբեմն երևան են գալիս հրաբուխների մէջ, թէև այդ նիւթերը երբեմն ջրի նման հոսելով հրաբուխից առաջ են սողում երկրի երեսին և ցոյց են տալիս շարժման մեծ ընդունակութիւն, բայց նոքա չունին նիւթի փոխանակութիւն, ուստի և մենք իրաւունք չունինք այդ նիւթերը կենդանի անւանելու: Որքան էլ ոգեհարուստ, ուշագրաւ և ազդու է Պրէյերի թէօրիան, սառը դատելուց յետոյ չենք կարող համաձայնիլ նորան, մեր երկրի նախկին հրահալ նիւթերը ամբողջովին կենդանի համարելու նկատմամբ: Այստեղ ուրեմն գալիս ենք այն եզրակացութեան, որ կենդանի սուբստանցը մի անգամ առաջացած պիտի լինի այն սուբստանցից, որ մենք սովորաբար կեանքից զուրկ ենք համարում:

ե. Կենդանի սուբստանցի ծագումն ու էւոլիւցիան ըստ Ֆեռւորնի

Վերևի թէօրիաները դնելուց և քննադատելուց յետոյ, պրոֆ. Ֆեռւորնը տալիս է իւր թէօրիան կեանքի ծագման մասին, որ Պֆլիւգէրի

ու Հէկկէլի թէօրիաների նորաձևութիւնը կարելի է անուանել, ուր նա հետևեալ մտքերն է զարգացնում:

Պֆլիւգէրի արտայայտած կարծիքի համեմատ մենք կարող ենք խոշոր գծերով մի մօտաւոր գաղափար տալ կեանքի ծագման մասին երկրի վրայ: Կեանքի արմատներն հասնում են այն հնագոյն ժամանակներին, երբ երկրի կեղևը դեռ հրահալ դրութեան մէջ էր: Այն ժամանակ առաջացած ցիանի կապակցութիւնները այն հիմնական նիւթերն էին, որոնցից սկիզբն առաւ կեանքը: Լինելով դիւրին լուծւող, նոքա յարաբերութեան մէջ պիտի մտնէին ածխածինի բազմատեսակ կապակցութիւնների հետ, որոնք նոյնպէս կրակին են պարտական իրանց ծագումը: Երբ երկիրը պատող գոլորշիները խտանալով և պաղելով սկսեցին հեղուկ-անձրևի պէս ցած գալ արդէն բաւականաչափ պաղած երկրի վրայ, կրակից ծագած յիշեալ կապակցութիւնները քիմիական տարբերութեան մէջ մտան ջրի և նրա մէջ լուծւած աղերի ու գազերի հետ, որից և առաջ եկաւ կենդանի սպիտակուցը:

Այս առաջին կենդանի սուբստանցը, որը ինքնածին կերպով անկենդան սուբստանցից առաջացաւ, դեռ շատ պարզ էր և տարբերութիւններ չունէր: Շատ հաւանական է, որ նա դեռ բջիջի ձև չունէր, այսինքն նորա գումարը դեռ չէր բաժանւած միջուկի (Kern) և պրոտոպլազմայի (նախասաղմ), այլ իւր բոլոր մասերով համասեռ (gleichartig-homogen) էր, ինչպէս այդ Հէկկէլն էր ընդունում իւր մոնէրի համար:

Այս է ահա այն հաւանական դրութիւնը, որ այսօր կարելի է անել կենդանի սուբստանցի ծագման մասին: Այն պայմանները, որոնք նպաստեցին այդ կեանքի առաջանալուն, մեզ համար այնքան անծանօթ և մթին են, որ աւելորդ և անհիմն է այդ մասին երկարաբանելը: Կենդանի սուբստանցի գոյութիւնը իբրև իրողութիւն ընդունելուց յետոյ՝ մենք կանգ ենք առնում այն հաստատ հողի վրայ, որտեղից սկսելով Լամարկն ու Դարւինը հիմք դրին իրանց թէօրիային. իսկ Հէկկէլն ու Վայսմանը իրանց աշակերտների հետ նոյնը շարունակելով հաստատեցին ծագման (Descendenz) թէօրիան, որը բացատրում է մեզ կեանքի կրած էւոլիւցիան մինչև մեր օրերը:

Բացատրենք այդ թէօրիայի էակէտերը երկու խօսքով:

Ներկայումս երկրի վրայ գոյութիւն ունեցող բոլոր կենդանի օրգանիզմները - հազարաւոր կենդանիներն ու բիւրաւոր բոյսերը - ծագում են այն պարզ և հասարակ սաղմից, որի առաջանալը անկենդան նիւթից վերևը նկարագրեցինք: Իրապէս ուրեմն բոլոր կենդանիները արենակից են և մի ծագումն ունին: Պատմական ժամանակի համար այդ երևոյթը բացատրելու առանձին հարկ չկայ, քանի որ ամեն օր աչքով տեսնում ենք այն սովորական իրողութիւնը, որ ամեն մի կենդանի շարունակ ծագում է իր նման կենդանիներից:

Այն ինչ, այն միլիոնաւոր տարիներն ու դարերը, որ անցել են կենդանի սաղմի առաջանալուց մինչև մեր օրերը, մեր աչքով չենք տեսել և նորա մասին պատմութիւն էլ չունինք: Այդ ժամանակի համար ահա հարկաւոր են ապացոյցներ. և բնութիւնը դորա համար պահել է թանկագին վկայութիւններ: Ինչպէս մի հին արձանագրութիւն կամ հին դրամ մեզ տեղեկութիւն է տալիս մի որ և է թագաւորի կամ անցքի մասին, որ պատմութեանը յայտնի չէ, այնպէս էլ քարաբանութիւնը (Versteinerungskunde-Palaeontologie) մեզ անկասկածելի տեղեկութիւններ է տալիս երկրի վրայ ապրած այն կենդանիների և բոյսերի մասին, որոնք մի ժամանակ ապրել են և ներկայիս կենդանիների նախահայրերն են: Երկրաբանութիւնից յայտնի է, որ երկրի կեղևը զանազան շերտերից է կազմուած, որ իր հնութեան համեմատ բաժանւում է հինգ գլխաւոր մասերի, որոնք ըստ հնութեան կոչւում են առաջին - ամենահին շերտ, երկրորդ, երրորդ, չորրորդ և հինգերորդ՝ ամենավերջին շերտը, որի վրայ մենք ենք ապրում: Արդ՝ այդ շերտերի մէջ պահուած-քարացած կենդանիների և բոյսերի մնացորդներն ու կմախքը աշկարա ցոյց են տալիս օրգանաւոր աշխարհի աստիճանական զարգացում. ո՛չ, ի հարկէ, լրապէս և կատարելութեամբ, որովհետև բոլոր կենդանիների հետքերը չեն պահուած և երկրի կեղևը ամբողջովին չի փորուած ու ուսումնասիրուած: Մանաւանդ ստորին կենդանիներից շատերը չունէին այնպիսի ամուր կմախք, որ ազատ մնային փչանալուց և միլիոնաւոր տարիներ դիմանային ժամանակի կործանիչ ուժին: Բայց ով կուրացած չէ գերբնական ուժերի հաւատով, պիտի համոզւի, որ ամբողջ օրգանաւոր աշխարհը, ա՛յն որ մի ժամանակ ապրել և մեռել է, և թէ ա՛յն, որ այսօր ապրում է, մի՛ ծագումն ունի, և մի-

այն դարերի հսկայական շարքն ու արտաքին պայմանների ահագին ազդեցութիւնը նոցա ամեն մինին տուել է մի որոշ տիպային ձև ու ապրուստի եղանակ: Այդ քարացած կենդանիների ցոյց տուած յատկանիշ կողմը այն է, որ երկրի շերտերի դասաւորութեան հետ նկատելի է և կենդանիների ու բոյսերի զարգացումը. ամենահին շերտերի մէջ նկատելի են ստորին կազմութիւն ունեցող կենդանիներ, միջին շերտերում կենդանիների կմախքը ցոյց է տալիս աւելի զարգացած ձևեր, որ աստիճանաբար բարձրանալով ամենավերջին շերտում նկատում ենք կենդանիների ամենազարգացած խմբեր, որոնց թւում և մարդուն:

Համեմատական անդամահատութիւնը (Vergleichende Anatomie) դորա մասին տալիս է երկրորդ հիմնաւոր վկայութիւնը: Նա ցոյց է տալիս որ զանազան կենդանիների նոյն օրգանները որոշ նմանութիւն ունին իրար հետ (օրինակ, մարդու ականջը նման է կապկի ականջին), որ նշան է, թէ նոքա մի ժամանակ արենակից պիտի եղած լինին:

Այդ համեմատութիւնների շնորհիւ գիտնականները այն եզրակացութեանն էին եկել, որ թռչուններն ու սողունները մօտ ազգականներ են:- Ուղղակի ապացոյց չկար դորա համար: Եւ ահա գտնւում է երկրի շերտերում մի քարացած կենդանի, աղաւնու մեծութեամբ (Archaeopteryx macrurus), որը թռչունի և թէ սողունի յատկութիւններն ունի միևնոյն ժամանակ, որովհետև նա ունէր մողէսի բերան, ատամներ և ողնաշար մի երկար ագիով, բայց մարմինը ամբողջովին ծածկւած էր թռչունի փետուրներով: Գիտութեանը այսօր այդպիսի հարիւրաւոր օրինակներ են յայտնի:

Երրորդ կարևոր վկայութիւնը բոլոր կենդանիների արենակցութեան մասին տալիս է էմբրիօլոգիան կամ անհատի սաղմաբանութիւնը: Ամեն մի ձուի սաղմ, մինչև հասունանալը և իւր ցեղին յատուկ տիպային ձև ընդունելը անցնում է զարգացման ահագին աստիճաններ: Այսպէս՝ թիթեռի ձուն դառնում է բոժոժ, թրթուր և ապա թիթեռ, որոնք գործին անտեղեակ մարդոց կարող են բոլորովին այլ կենդանի թւալ, մինչ նոքա միևնոյն կենդանու զարգացման զանազան աստիճաններն են: Յայտնի է, որ որդիքը ժառանգում են ծնողների յատկութիւնները: Դորանից դժւար չէ եզրակացնել, որ կենդանի սաղմն էլ կարճ ժամանակով անցնելու է զարգացման այն աստիճանները, որոնցով անցել են նորա նախնիքը հազարաւոր և բիւրաւոր տարիների ընթացքում:

Այսպիսով ամեն մի կենդանի էակ իր սաղմային զարգացման ժամանակ, օրինակ մարդը մօր արգանդում, անցնելու է այն աստիճանները, որոնցով մարդկութիւնը անցել է իր կեանքի երկարատև դանդաղ ընթացքում, սկսած պրոտոպլազմայից մինչև ինքը մարդը: Այնպէս որ, դիտելով մարդու սաղմի զարգացումը մօր արգանդում, կարող ենք տեսնել այն զարմանալի նմանութիւնը, որ կայ բոլոր ստորին կենդանիների և մարդու սաղմի մէջ: Հէկկէլը իր «Բնական ստեղծագործութիւն» գրքի մէջ պատկերներով ցոյց է տալիս կաթնասուններից ոզնու (Ameisenigel), պարկակենդանու (Beutelthier), եղնիկի, կատուի, կապկի և մարդու նմանութիւնը սաղմային զարգացման երեք աստիճաններում: Առաջին աստիճանում այդ կաթնասունների սաղմերը բոլորը նման են ձկան և միևնոյն ժամանակ միմեանց այնքան, որ մարդու, կատուի և մնացեալ կենդանիների սաղմերը անկարելի է զանազանել միմեանցից: Տարբերութիւն նկատելի է միայն զարգացման աւելի ուշ՝ երկրորդ աստիճանում միայն. երրորդ աստիճանում միայն կարելի է այդ սաղմային կենդանիները զանազանել, թէև նոցա մէջ եղած նմանութիւնը դարձեալ ակներև է... Այս հանգամանքը ցոյց է տալիս, որ բոլոր կաթնասունները ծագում են միևնոյն ընդհանուր նախնիքից և սաղմի զարգացումը (Ontogenie) իր նախորդների անցած զարգացման աստիճանների կրկնութիւնն է: Այնպէս որ, միայն սաղմի զարգացումը դիտելով մենք մօտաւորապէս կարող ենք ասել, թէ մի որևէ կենդանի ինչ ծագումն ունի և կենդանիների ո՛ր ցեղին աւելի մօտ ազգական է: Այսպէս ուրեմն, քարաբանութիւնը, համեմատական անդամահատութիւնը և սաղմաբանութիւնը ձեռք ձեռքի տուած գալիս են հաստատելու այն փակտը, որ բոլոր օրգանիզմները մի՛ ծագումն ունին, և ցոյց են տալիս այն ճանապարհը, որով այդ կենդանիներն անցել են իրանց զարգացման ընթացքում, հասնելով մինչև կենդանիների «թագաւոր» մարդը:

Այդ ուսումնասիրութիւնների հիման վրայ կենդանի օրգանիզմների ցեղաբանութիւնը հետևեալ պատկերն ունի:

Առաջին կենդանի տարրից, որ Հէկկէլը մոնէր է անւանում, առաջացաւ միաբջիջ սուբստանցը, որ բաղկացած էր մի միջուկից և պրոտոպլազմայից - այսպէս անւանեալ՝ պրոտիստները: Պրոտիստնե-

րից առաջացան մի կողմից բոյսերը, միւս կողմից կենդանիները: Այդ բաժանումից առաջացաւ այն մեծ տարբերութիւնը, որ կայ բոյսերի և կենդանիների մէջ. այն է, բոյսերը կերակրւում են անօրգան նիւթերով, իսկ կենդանիները օրգանաւոր:- Այդ ստորին կարգի կենդանիներից առաջացաւ ամբողջ կենդանական աշխարհը աստիճանական զարգացմամբ, որպէս նաև բուսական աշխարհը ստորին կարգի բոյսերից (Protophyten):- Այսպիսով՝ բուսական և կենդանական աշխարհը իւր բիւրաւոր ձևերով ու տեսակներով միմեանց հետ կապւած են նեղ-արենական կապերով:

Թէ որպէս և որտեղից առաջացաւ այն հսկայական տարբերութիւնը կենդանի օրգանիզմների մէջ, թէ ի՞նչպէս Հէկկէլի նախնական պարզ, հասարակ և անձև սաղմը (մոնէրը) զարգացման այնպիսի հսկայական քայլեր կատարեց և ձևերի մի աներևակայելի բազմատեսակութիւն առաւ, բացատրում է մեզ Դարւինի համբաւաւոր թէօրիան, որ բնական ընտրութիւն է կոչւում (Selectionstheorie):

Դարւինի ելակէտը հետևեալն էր. յայտնի է, որ միևնոյն տեսակի կենդանիները - նոյն իսկ միևնոյն ծնողների զաւակները ունենալով միևնոյն տիպային ձևերը, այնուամենայնիւ քիչ թէ շատ տարբերւում են միմեանցից: Պատճառն այն է, որ զաւակը միայն հօ՛ր կամ մօ՛ր սաղմի արդիւնք չէ, այլ նոցա խառնուրդի. նա չի՛ ժառանգում միայն հօր կամ մօր, այլ այդ երկուսի յատկութիւնները այս կամ այն չափով խառնւած: Բնականօրէն, զաւակը չի՛ կարող բացարձակ հօրը կամ մօրը նմանել:

Միւս կողմից նա ենթակայ է արտաքին պայմանների զօրեղ ազդեցութեանը, որոնց շնորհիւ նա իւր ծնողներից և իւր ցեղի միւս կենդանիներից տարբերւելու նոր վայրկեաններ է ստանում: Այսպիսով նման կենդանիները ուզում են ապրել. նման կենդանիները նման էլ կերակուր են ուզում, և այդ կերակրի պատճառով նոցա մէջ ծագում է մրցութիւն, կռիւ, որ հայերէն գոյութեան կռիւ է կոչւում.- կենամարտ (Kamf ums Dasein.- struggle for life): Կռւի մէջ, հարկաւ, յաղթողը, զօրեղը ապրում է, իսկ յաղթւողը մահւան դատապարտւում: Այսպիսով ապրում են նոքա, որոնք մի առաւելութիւն ունին և արտաքին պայմաններին աւելի են յարմարւում. իսկ նոքա, որոնք այդ արտաքին

պայմաններին չեն կարող յարմարուիլ, բնականօրէն մեռնում են:

Զարգանալու, աճելու և իրանց սերունդը շարունակելու մնում են ուրեմն միայն զօրեղները, արտաքին պայմաններին յարմարուողները, աւելի ընտիրները, որոնք և շարունակում են կենդանի օրգանիզմների գոյութիւնը: Այդ ընտրութիւնը թոյլերի և զօրեղների մէջ, արտաքին պայմաններին յարմարուելու և իրանց կեանքը շարունակելու ընդունակութիւնը,- այդ է ահա, որ կոչւում է բնական ընտրութիւն (Naturliche Zuchtwahl.- natural selection): Ակներև է, որ օրգանիզմները ապրելու համար յարմարուած պիտի լինին արտաքին պայմաններին և նորա բիւրաւոր ձևերն ու տարբերութիւնները արդիւնք են միայն այդ պայմաններին յարմարուելուն:

Դիտելով կենդանի օրգանիզմների կատարած փոփոխութիւններն ու զարգացումը մի կողմից մինչև ծաղկաբոյսերը (Bluthenpflanze), միւս կողմից մինչև ողնաւորները, նկատում ենք այն աչքի զարնող երևոյթը, որ կենդանի օրգանիզմը պարզից, հասարակից առաջանալով, միշտ բարդուել և զարգացել է, ամենաչնչին կարիքի համար ստեղծելով առանձին օրգան՝ շարունակ առաջադիմել, կատարելագործւել է:

Շատերը այս հանգամանքի մէջ ուզում են Աստուծոյ մատը տեսնել, այն, որին հէնց է՛ն գլխից Դարւինի թէօրիան հակառակ է եղել: Օրգանիզմների էւոլիւցիան չունի ո՛չ մի նպատակ. նա արդիւնք է բնական երևոյթների համախմբման. նա պիտի առաջանար, երևան գար անհրաժեշտօրէն, քանի որ արտաքին պայմանները իրանց լրութեամբ որպէս մի պատճառական անհրաժեշտութիւն պահանջում են նորա տեղի ունենալը: Մի որ և է նպատակ տեսնել բնական երևոյթների մէջ, դա միայն մարդու գործն է. բնութիւնը չի՛ ճանաչում ո՛չ ծայր, ո՛չ վախճան և ո՛չ որ և է նպատակ. պէտք է միշտ գիտակ լինել, որ այն կարծիքը, «թէ մարդը աւելի կատարեալ է քան ամէօբը» (ամենաստորին կարգի կենդանի), կը մնայ մի՛շտ կամայական, որին երբէ՛ք իրականութիւնը չի՛ համապատասխանում: Եթէ մենք զարգացումը կատարելութիւն ենք անւանում, դա միայն պայմանական արտայայտութիւն է: Աշխարհը չունի ո՛չ մի նպատակ, որին նա ձգտել կարենար.- այնտեղ մի բան կայ միայն. յաւիտենական զարգացում, այսինքն անվերջ փոփոխութիւն»...

Եթէ այս բացատրութիւններից ծագող եզրակացութիւնները հանենք, մեզ համար պարզ և հասկանալի պիտի լինի, որ կեանքը իր ծագման առաջին օրից արդիւնք է երկրիս արտաքին պայմանների:

Կեանքը մեր երկրի զարգացման մի գործօնն է թւաբանական մտքով. կենդանի սուբստանցը, քանի որ մեր երկիրը հրահալ դրութեան մէջ էր առանց պաղած կեղևի, չէր կարող գոյութիւն ունենալ: Բայց պիտի առաջ գար միևնոյն անխուսափելի անհրաժեշտութեամբ, ինչպէս ամեն մի քիմիական կապակցութիւն, եթէ կարևոր պայմանները ներկայ են: Կեանքի ձևն ու կազմութիւնն էլ պիտի ենթարկւին ա՛յն աստիճան փոփոխութեան, որքան արտաքին պայմանները փոխւում են երկրի զարգացման ընթացքում: Կենդանի սուբստանցը երկրի մատերիայի (նիւթի) մի մասն է լոկ: Այդ մատերիայի կենդանի սուբստանց դառնալը երկրի զարգացման մի նոյնպիսի արդիւնք էր, որպէս ջրի առաջանալը. մի երևոյթ, որ անհրաժեշտօրէն առաջ եկաւ երկիրը կազմող մասսայի պաղելուց...

**«Մուրճ», 1898, N 7-8, էջ 1031-1051**

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ ՄԵՐ ԳՐԱԲԱՐԲԱՌՆԵՐԻ ՄԻՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

Այդ հարցը Պոլսի թէ Բուլգարիայի մի հայ թերթ էր յարուցել.- «Հանդէս Ամսօրեան» տեսնելով դորա անկարելիութիւնը՝ մերժել էր. Պ. Աբեղեանը «Արարատի» Թ, Ժ և Է համարներում (1897) շատ հիմնաւոր պատճառներով ցոյց էր տուել մեր գրաբարբառների բաժանումից առաջացած վնասը, նոցա միութեան կարևորութիւնը և մատնանիշ արել այն ճանապարհը, որ արևմտեան լեզուն որոշ զիջումներից յետոյ հասկանալի կ՛դառնար Կովկասեան Հայերին: Պ. Մանդինեանը (Արարատ, 1898, Գ. և Դ.) մի հմտալից յօդուածով ցոյց է տալիս, որ Պ. Աբեղեանը՝ Ա. հարցը միակողմանի է դրել, ի նկատի ունենալով միայն երկու լեզուների ստուգաբանութիւնը, Բ. սխալ, կարծելով, որ Արարատեան լեզուն արևմտեանից աւելի զարգացած է, Դ. կողմնակալ, միայն զիջումներ պահանջելով արևմտեանից: Վերջ ի վերջոյ սակայն, երկուսն էլ գալիս են այն եզրակացութեանը, որ լեզուներն հիմա միացնելն անկարելի է, այլ պէտք է միայն մօտեցնել: Մենք խորհուրդ կ՛տայինք ընթերցողին անպատճառ կարդալ յիշեալ յօդուածները, մանաւանդ Պ. Մանդինեանինը, ուր լաւագոյն կէտը պէտք է նկատել երկու բարբառների համեմատութիւնը, որտեղից ամեն մէկը պարզօրէն պիտի տեսնի արևմտեան բարբառի նրբութիւններն ու առաւելութիւնները:

Ինչքան էլ տարօրինակ երևայ, այսօր մի դառն իրողութիւն է մեր երկու գրաբարբառ ունենալը: Պատմական Հայաստանը այդպիսի բան չի՛ տեսել. հարիւրաւոր իշխաններ, միմեանցից անկախ մի քանի տէրութիւններ ունեցած ժամանակն էլ, նա ունեցել է ազգային միութեան երկու մեծ օղեր, մի՛ գրական լեզու և մի՛ եկեղեցի. եթէ կրօնական բաժանումը շատերին ցաւ է պատճառում, մեր լեզուների բաժանումը, մեզ, նոր սերնդիս համար, թւում է միանգամայն տարօրինակ և մեր լեզուաշէնների անհեռատեսութեան մի ցաւալի ապացոյց:

Պ. Մանդինեան ասում է, որ Նազարեանից ու Նալբանդեանից առաջ արևելեան հայերէնն արդէն խօսւում էր Ներսիսեան դպրոցում

և Լազարեան ճեմարանում:- Դորանով չարդարացան նրանք. Պարսկաստանումն էլ այսօր անշուշտ մի խօսուն հայերէն կայ, դա իրաւունք չի՛ տայ, որ մի նոր Նազարեան կամ Նալբանդեան հիմք դնեն մի Պարսկահայ գրական լեզուի: Եկեղեցին իւր մէջ ծագող աղանդի հետ կռուել է, գրաբարը նոր ծաղկող աշխարհաբարի դէմ կատաղի կռիւ է մղել, բայց սկզբից և ետ մի աշխարհաբար ունենալու հեռատեսութիւնը չեն ունեցել մեր լեզուի հիմնադիրները, և մենք կատարուած իրողութեան առաջ կանգնած, արուեստական միջոցներով ենք ուզում նորա առաջն առնել: Այդ միջոցն էլ լեզուները միմեանց մօտեցնելն է համարւում: Սակայն, երկու առարկայ մօտեցնելուց առաջ, պիտի չափենք նոցա մէջ եղած տարածութիւնը, նոցա ծանրութիւնը, և դորա վերայ կատարուելիք ծախսի քանակը. մի խօսքով մենք պիտի ընտրենք օգտակարն ու հնարաւորը: Եթէ մինը ծանր է և շարժման տեղը անյարմար, իսկ միւսը թեթև ու աւելի շարժուն դիրքի մէջ, հասկանալի է, տարրական խելքն էլ պիտի վերջինը առաջինին մօտեցնէ. առհասարակ դանակն են տանում եզան մօտ և ոչ հակառակը.- Այս տեսակէտը կարևոր է, որ մենք, ամեն մի վճռից առաջ, անկողմնակալ և անաչառ կերպով դիտենք մեր լեզուների դիրքը. մեր եմ ասում, որովհետև այստեղ իմ և քո չկայ. Դուրեանը մեզ նոյնքան սիրելի է, որքան Պատկանեանը արևմտեան հայերին, որովհետև նրանք երկուսն էլ մերն են, նրանց երկուսի լեզուն էլ մեր սրտի, մեր հոգու հարազատ արդիւնքն է. ուստի մենք ամենայն սառնութեամբ պիտի աշխատինք որոշել մեր լեզուների փոխադարձ յարաբերութիւնը. թէ արդեօք իրենի բնական ընթացքը նոցանից 1) որի՞ն է առաւելութիւն տուել, 2) որի՞ դերը աւելի ներգործական է, 3) մեր ազգային գիտակցութիւնն ու մտածութեան ուրոյնութիւնը որի՞ մէջ աւելի է երևան գալիս, և 4) նոցանից ո՞րն աւելի ունի կենդանի լինելու պայմանները: Ինձ թւում է որ սոքա են մեր լեզուների դիրքն ու նոցա կարևորութիւնը բացատրող ծանրագոյն վայրկեանները: Եթէ այս հարցերին ուղիղ պատասխանել կարողացանք, ապա, ըստ իս, մօտիկ ապագայի համար գէթ, մենք մեր ուժերը ներածին չափ պիտի աշխատինք զիջումները թոյլից պահանջելու, թէև մենք հաւատացած ենք, թէ արհեստական զիջումները միշտ էլ պիտի մնան անաջող փորձեր:

Պ. Մանդինեանը ցոյց է տուել արևմտեան լեզուի առաւելութիւնները համոզիչ համեմատութեամբ, սակայն դորանով հարցը չլուծուեցաւ. միթէ մեր աշխարհաբարը համեմատուել կարո՞ղ է իւր փարթամ նախորդի՝ գրաբարի հետ, սակայն գրաբարը տեղի տուաւ. միթէ նոր յունարէնը համեմատուել կարո՞ղ էր իւր փարթամութեամբ և պերճութեամբ յայտնի հին յունարէնի հետ, որին յաղթեց. միթէ ռոմանական նոր լեզուները մի քանի դար առաջ համեմատուել կարո՞ղ էին լատիներէնի հետ, որ նոքա տապալեցին: Յաղթողը լեզուի հարստութիւնն ու ճոխութիւնը չէ: Յաղթողը ժամանակն ու խօսող ժողովուրդն է: Այստեղ, սակայն, պայմաններն արտաքուստ հաւասար են. մեր երկու գրաբարբառներն էլ մանուկ, երկուսն էլ խօսուող, երկուսն էլ փոխադարձ յարաբերութեան որոշ չափով նաև փոխադարձ կռուի մէջ են.- Յաղթութեան մասին առ այժմ խօսք չի կարող լինել. այն էլ է յայտնի, որ արևմտեանը աւելի փարթամ է. ո՞րն է կենսունակ, ո՞րն է ազդող. այս է հարցը.- անտարակոյս արևմտեանը: Կեանքը, որ մասնակի համեմատութիւններից շատ աւելի լաւ ուսուցիչ է, համոզիչ կերպով վճռել է այդ և ամէն օր մեզ ցոյց է տալիս, որ մենք չարունակ տպում և արտատպում ենք արևմտեան լեզուով յօդուածներ ու գրքեր, այնինչ Պոլսեցիք, նոյն իսկ Նոր-Նախիջևանցիք կարիք են զգում մեր գրքերն ու յօդուածները թարգմանելու: Ի՞նչու նրանք իրանց մի այդպիսի նեղութիւն են պատճառում, իսկ մենք ոչ: Պատասխանը մի քանի կարող է լինել. կա՛մ նրանք մեր գրածը չեն հասկանում և կամ մեր լեզուին չեն հաւանում: Իսկ մենք, եթէ չենք թարգմանում, թէ՛ հասկանալ պիտի կարողանանք և թէ հաւանելիս պիտի լինինք:- Կրթուած Ռուսը առհասարակ գիտէ գերմաներէն և օգտւում է նրա գրականութիւնից. կրթուած Գերմանացին ո՛չ ռուսերէն գիտէ, ոչ էլ նրանից օգտուելու կարիք է զգում.- Այդ է իրերի բնական ընթացքը և լեզուների ուժաչափը. հասկանալի է, որ ռուսերէնը անհամեմատ թոյլ է գերմաներէնից. եթէ նոյն համեմատութիւնը նեղ չափերով վերցնելու լինենք, պիտի տեսնենք մեր լեզուի թուլութիւնը արևմտեանի յանդիման իրերի բնական ընթացքով վճռած, և մեր բազմաթիւ փոխառութիւնները յայտնի ապացոյց են դորան. հեռագիր, լրագիր, թղթակից, երկաթուղի, հեռախօս, արտասահման, հեծանիւ և ուրիշ բազմաթիւ ընտիր ուսումնական

բառեր մենք պարտական ենք միմիայն արևմտեան լեզուին. ուր մենք փորձել ենք ուրիշ ինքնուրոյն բարդութիւններ կազմելու, այնտեղ երևում է մեր կատարեալ բոբիկութիւնը:- Իսկ թէ Հայի մտածութիւնը աւելի անարատ է երևում արևմտեան բարբառի մէջ, քիչ թէ շատ լեզուի ճաշակ ունեցողն ու մեր լեզուներով զբաղուողը տարակոյս ունենալ չի՛ կարող: Մենք չենք կարող երկու զոյգ մի կինտ գրողներ հաշուել, որ մաքուր, անարատ հայերէն գրէին, բայց արևմտեան գրողների մեծագոյն մասը հայերէն գրողներ են: Եթէ մեզանում մաքուր հայերէն գրողներն են բացառութիւն, արևմտեանի մէջ ընդհակառակը:- Չմոռանանք, որ մեր ամենամեծ վիպասանը, Րաֆֆին՝ և ամենամեծ հրապարակախօսը՝ Արծրունին, իրանց օտարաբան լեզուով, միմեանց հաւասար էին:- Այստեղ էլ ուրեմն, առաւելութիւնը արևմտեան բարբառի կողմն է: Յետոյ, լեզուի կենդանութեան հարցը:- Լեզուն կենդանի է միայն մարդկանց բերանում. ինչքան էլ մի լեզու հարուստ, փարթամ և պերճ լինի, ինչպէս մի յունարէն, մի լատիներէն կամ մի հին հայերէն, նորա վիճակը մոռացութիւնն է, որովհետև նա խօսող չունի, և մի լեզուի վիճակը կատարելապէս կարելի է որոշել նորա խօսողների թուով: - Ո՞վ և ո՞րքան հոգի են արևելեան գրաբարբառով խօսում,- իմ հաշուով հազիւ մի երկու հազար հոգի[1]: Այսօր ուտիերէն խօսողների թիւը աւելի շատ է, քան արևելեան հայերէն. կարո՞ղ ենք մենք մի այդպիսի լեզու կենդանի անուանել. հազի՜ւ: Հռչակաւոր Ներսիսեան դպրոցի ուսուցիչներից սկսած մինչև վերջին գործակատարը օտար լեզուով են «ծեքախօսում». ծանօթացէք մեր խմբագիր հրատարակիչների հետ, մեր այսպէս անուանեալ «ինտելլիգենցիայի» հետ, մտէք անուանի հայ ընտանիքները, խօսեցէք հայ վարժուհիների, հայ գրագէտների հետ, բոլորը, բոլորը օտարախօս են: Բացառութիւնների մասին չէ, հարկաւ, խօսքը. բացառութիւնը սովորաբար հաստատում է եղած իրողութիւնը: Մենք պիտի չմոռանանք Հրատ. ընկերութեան մի յայտնի նիստը, ուր մի Պռօշեան յանդիմանութիւն էր ստանում օտար լեզու հասկանալ չկարողանալու համար. բնորոշ, շա՛տ բնորոշ են այս երևոյթները, և ոչ ոք աւելի չի արհամարհում իր

1. Մօտաւորապէս նոյն կարծիքն է յայտնում հայերէն խօսողների թուի մասին և Պ. Արասխանեանը «Մուրճ»ում:

լեզուն քան հայ «ինտելլիգենտ»ը.- սա էլ փարիսեցիութեան մի նոր տեսակ է, գրել, քարոզել, խրատել որ ուրիշները սովորեն, բայց իրան միշտ հեռու պահել քարոզածից. Քաթիպայի, Նազարեանի և Սունդուկեանի զաւակները իրանց հօր գործերին միայն ռուսերէն թարգմանութիւնից են ծանօթ:- Երկարելն աւելորդ է:

Պետերբուրգ, Մոսկուա, Խարկով, Բերլին և այլ տեղեր հայ ուսանողների մեծամասնութիւնը հայերէն չի խօսում և շատերն իսկ չեն էլ հասկանում հայերէն: Մայրենի լեզուի տգիտութեամբ փայլում են ի մասնաւորի հայ ուսանողուհիք, մեր ապագայ մայրերը... Մեզանում դեռ մի հայ կին չերևաց, որ հայերէն մի որ և է բան արտադրէր. Տիկին Խատիսեանի և իշխանուհի Արղութեանի գործերի բնագիրը ռուսերէն է:- Մի լեզու, որ կինը չի՛ խօսում, որ մանկանոցի, օրօրոցի և ընտանիքի սեփականութիւնը չի՛ դարձել, նորա գոյութիւնն ու ապագան սաստիկ կասկածելի է: Եւ հայ հասարակութեան հոգեբանութեան հետ մի քիչ ծանօթ անձի համար շատ էլ գրաւիչ չէ՛ այդ ապագան, եթէ իրերը այս ընթացքով շարունակուին:

Հարց է հիմա, արդեօք արևմտեան լեզուն խօսո՞ւմ է: Պոլիս տեսած չունիմ, բայց ինչ որ եզրակացնել կարելի է գրականութիւնից, լեզուի թեթևութիւնից, ձևերի ճկունութիւնից և արտայայտութիւնների կենդանութիւնից, այն է, որ այդ լեզուն կենդանի շրթունքների յայտնի հետքեր է կրում. և մինչև անգամ կնոջ շրթունքների հետքեր:- Անտարակոյս Պոլսումն էլ մի ստուար դասակարգ թրքերէն է խօսում նոյն իսկ ընտանիքում (հայ «բուրժուա»ն միշտ օտարախօս է, ուր էլ որ նա լինի), բայց նոցա քաղաքական և հասարակական պայմանները այնպէս են, որ հայերէնը մի մեռած լեզու չի՛ մնացել ինչպէս մեզանում... Թէ հայերէնը նոցանում ընտանիքի լեզու է, երևում է նրանից, որ նոքա արտադրել են ո՛չ միայն կին վիպագիր ինչպէս տիկին Տիւսաբն է կամ տիկին Սվաճեանը, այլ և այնպիսի տաղանդաւոր հրապարակախօս որպէս Տիկին Սիբիլն է, և բաւական է միայն Թիֆլիզի բեմը տեսնել, համոզուելու համար որ եթէ մի երկու ուղիղ հայերէն խօսող դերասանուհի կան, Պոլսեցի են:

Գանք հիմա ժողովրդին, որ ոչ կարդալ գիտէ, ոչ էլ կատարելապէս հասկանալ է կարողանում մեր հնարած լեզուն:

Մեր ժողովրդի ամենից առողջ, ամենից ընդունակ մասը, անտարակոյս Ղարաբաղցիք են. ձեռնարկող, անձնավստահ, եսական, բայց և մինչև ոսկորների ծուծը օտարամոլ: Դեռ ազին իր մինթանան չի՛ փոխել, դեռ որդիքը չեն մոռացել իրանց հօր փալանը, որով հայրը միլիոններ է դիզել, բայց հայերէնը նոքա վաղուց են մոռացել: Ես մի Ղարաբաղցի չտեսայ, որ հայերէն կարգին խօսել իմանար: Իսկ մեր կրթուածների մէջ Ղարաբաղցիք ամենամեծ տոկոսն են կազմում: Եթէ ի նկատի ունենանք արևելեան բարբառներով խօսող ժողովրդի թիւը, ապա նա 7-8 հարիւր հազարից աւելի պիտի չլինի, մինչ արևմտեան բարբառներով խօսող հայերի թիւը հաւանօրէն միլիոն ու կիսից մինչև երկու միլիոն պիտի հասնի, եթէ նորանց մէջ հաշուենք Ղարս, Ալեքսանդրապոլ, Ախալքալաք նայլն, իրանց բազմահայ գաւառներով, որոնք իբրև Տաճկաստանցի գաղթականներ, բոլորն էլ արևմտեան բարբառով են խօսում, թէ չյիշենք նաև Օլթին, Արտահանը, Խրիմը և Նոր Նախիջևանը նայլն: Ուրեմն, արևմտեան լեզուն, ժողովրդի թուով երկու անգամ գերազանց է արևելեանից: Այս կէտը ծանրակշիռն ու ամենակարևորն է, որովհետև ինչպէս ասացինք, կենդանի լեզուի կարևորութիւնը կախուած է նորա խօսողների թուից: Յետոյ չպիտի մոռանալ արևմտեան հայերի գերազանցութիւնը լեզուի և ճաշակի վերաբերմամբ: Նրանք առ հասարակ խօսելու ընդունակութիւն ունին. «հոս-հոս» ասելով մենք հասկանում ենք նաև շատախօս. դա էլ ընդունակութիւն է, շատախօս լինելու համար լեզու պէտք է ունենալ, իսկ լեզուին տիրելու և իրանց մտքերը լաւ արտայայտելու համար ընդունակութիւն... Մի Խրիմեան, մի Սրուանձտեան, մի Նարբէյ մեզ համար մնում են տիպար խօսողներ, որոնց նմանը մենք ո՛չ ունեցել ենք, ոչ էլ ունենք:

Մոռանալու չէ և այն, որ մեր լեզուի մեծագոյն հիմնադիրները, Նալբանդեան և Քաթիպա, և նորա առաջին քերականութիւն կազմողը՝ Պալասանեան, արևմտեան Հայերից էին. և այսօր մեզանում հայ գրականութեամբ և լեզուով զբաղուողներից յայտնիները դարձեալ արևմտեան հայերից են՝ Խալաթեան, Կոստանեան, Տէր-Մկրտչեան, Մալխասեան և այլն: Մենք տասնեակ բառարաններ ունենք եւրոպական լեզուների համար, և ոչ մի բաւարար բառարան ռուսերէնի հա-

մար. դա մի շա՛տ բնորոշ երևոյթ է. հարիւրաւոր համալսարանական-ների մէջ, մի Յովհաննիսեան և մի Ետղուբեան են փորձել բառարան-ներ կազմելու, թէև երկուսի մասնագիտութիւնն էլ լեզուաբանութիւն չէ՛: Դրանք երկուսն էլ արևմտեան Հայերից են (Ալեքսանդրապոլ և Ախալքալաք). մայրենի լեզուի սէրն ու նրա ուսումնասիրութեան բնազդը անհամեմատ աւելի հին ու զօրեղ է արևմտեանների մէջ. մենք ամեն բանում նրանց աշակերտներն ենք:

Մեր արծարծած անկողմնակալ դիտողութիւններից եզրակացնելը դժուար չէ, որ իրերի բնական ընթացքը բոլոր կարևորագոյն և արմա-տական առաւելութիւնները տուել է արևմտեան բարբառին. արդ՝ հարկ կա՞յ այդ առաւելութիւնների դէմ կռուելու,- երբե՛ք: Երբ հարցը միմեանց մօտենալն է, երբ մենք տեսնում ենք արևմտեան բարբառի առաւելութիւնը, ամենախելացի միջոցն այն է, որ օգտուինք նորա առաւելութիւնից, աշխատինք նմանել նորան, վերցնենք նորանից այն, ինչ որ մեզ հարազատ ու պիտանի է թւում, և ջնջենք մեր լեզուից այն տարրերը, որոնք խորթ, օտար ու անճաշակ են:- Պ. Աբեղեանի մեթոդի սխալն այն է, որ արևմտեաններին խրատ է տալիս այս կամ այն ձևով մեզ մօտենալու. աւելի խելացի կ՛լինէր, եթէ նա մեզ խրատէր արևմտեանի այս կամ այն առաւելութիւնից օգտուելու:

Առանց լեզուների միութիւնն ի նկատի ունենալու, մենք տարիներ շարունակ զբաղած ենք եղել մեր լեզուի մշակութեան խնդրով և զար-մանալին այն է եղել ստացուած արդիւնքներից, որ ինչ որ մեր լեզւում ուղղել, կոկել ու պարզել հնարաւոր է եղել, հետևանքը շա՛տ ու շատ տեղերում նման է դուրս եկել արևմտեան ձևերին:

Բերլին, 10 Օգոստ. 1898

**«Անահիտ», 1899, փետրուար, թիւ 4, էջ 133-136**

# ՆԱԽԱՀԱՅԵՐԷՆԻ ՀԵՏՔԵՐ ԶՕԿԵՐԷՆՈՒՄ

Մեր լեզուի զարգացման հետ հարևանցի ծանօթին էլ յայտնի է, որ գրաբարի այ երկբարբառը կենդանի բարբառներում երևան է գալիս ամփոփուած որպէս ա, է կամ ի, օր. այս, աս, էս, էսիկ, իսիկ, իսի. գայլ, գալ, գէլ (գիլու). սայլ, սալ, սէլ նայլն: Լեզուների զարգացման մի տարրական կանոնն է այս, որ սովորաբար նորը հնից աւելի կարճ և աւելի մաշուած է լինում: Զօկերէնը (Ագուլիսի բարբառ) սակայն, այս ընդհանուր կանոնին տեղ-տեղ կարծես չի ուզում հնազանդիլ[1]: Շատ բառեր, որոնք ա, է կամ ի ունին այլ բարբառներում, նա պահպանել է այ գրաբարի անարատութեամբ. ինչպէս օրինակ, մայր, հայր և այլն: Իսկ մի շարք այլ բառերում, նոյն իսկ գրաբարի կարճ և ամփոփ ձևը նրանում լայնացել, երկարացել է: Օրինակ տէր՝ զօկերէնում դառել է տայր, միս՝ մայս, սպիտակ՝ սպայտակ, սիրել՝ սայրել և այլն:

Այս բառերի վերաբերմամբ վերևի կանոնը դառնում է անկայուն, որովհետև նոր զօկերէնն աւելի երկար ու լայն ձևեր է ներկայացնում, քան հին գրաբարը:

Ի՞նչպէս բացատրել այս երևոյթը: -Ենթադրել, թէ զօկերէնը միւս լեզուներին անծանօթ և հակառակ կանոնով է զարգացել՝ անհաւանական կը լինէր, որովհետև նորա մնացեալ տարրերում ամփոփման կանոնը կատարելապէս պահպանել է իր զօրութիւնն և այն շատ աւելի ազդու կերպով, քան մնացեալ բարբառներից շատերում: Այս պատճառով գնալ՝ զօկերէնում կարճանում է լեզուի զարգացման ընթացքին համեմատ դառնալով նօ՛լ, իսկ քիթ, արդէն ամփոփ ձևը երկարանում է, դառնալով քայնթ, նոյն զարգացման հակառակ: - Սա հակառակ է ո՛չ միայն ամփոփման յայտնի կանոնին, այլև տարրական տրամաբանութեանը: Մեզ անկարելի է թւում, որ շարունակ կիրառութեան մէջ գտնուող մի ձև, փոխանակ մաշուելու, աճէր, լայնանար - դառնալով իր նախորդից աւելի անգործնական և կիրառութեան անյարմար: -Եւ մենք մեր բոլոր բարբառների մէջ չենք կարող գտ-

1. Տես Սարգսեան՝ Զօկերի բարբառը:

նել մի նմանօրինակ երևոյթ, ուր գրաբարի է կամ ի լայնանալով դառնար այ: Սա տրամագծօրէն դէմ է մեր բարբառների զարգացման ընթացքին, ուստի և այս հանգամանքը մեզ իրաւունք է տալիս այլ ենթադրութեան դիմելու: Գուցէ մի նախնական, կորած մի արմատից են ծագում գրաբարի և զօկերէնի այս տարբեր ձևերն և կամ գուցէ հէնց զօկերէնն է, որ պահպանել է այդ բառերի արմատականը, իսկ գրաբարն ենթարկուել է ձևափոխման:- Այս վերջին ենթադրութիւնը մի քիչ համարձակ է գուցէ, լինելով պատմական իրողութեան հակառակ, բայց քանի որ մենք չունինք հին արմատական ձևը, քանի որ զօկերէն ձևը չենք կարող հանել գրաբարից, ներելի է մի բոլորովին հակառակ փորձ անել.- գրաբար ձևերը հանել զօկերէնից:- Այն հանգամանքը, որ զօկերէնը պահպանել է շատ բառեր գրաբարի անարատութեամբ, խօսում է այս ենթադրութեան օգտին, որովհետև դա նշան է այդ երկուսի ժամանակակից լինելուն:

Մենք սակայն, մի քայլ աւելի առաջ ենք ուզում գնալ, ենթադրելով, որ զօկերէն ծայծ բառն է հինը, որ դառնալով ծած, ծա՛ծ, ծէծ, գրաբարում հասել է ծիծ ձևին:- Ճիշդ, գրաբարի այս բառի պէս, որ աս, ա՛ս, էս ապա իսի է դառել բարբառներում:- Եթէ այս ենթադրական ձևերից գէթ մինը գտնենք մեր միւս բարբառներում, ապա մեր ասածն աւելի հաւանական կը դառնայ: Ղարաբաղի բարբառը, բարեբախտաբար պահպանել է այդ ձևերի զարգացման միջին աստիճանը: Ուր զօկերէնը այ ունի, գրաբարը ի, Ղարաբաղի բարբառն ունի է. զօկերէն տայկ. Ղարաբաղ տէկ. գրաբար տիկ. այսպէս նաև՝ մայս-մէս-միս. (սայրտ)-սարտ-սէրտ-սիրտ.- Սրանք արդէն ենթադրական չեն, այլ երեքն էլ իրական, երեքն էլ կենդանի զանազան բարբառներում: Եթէ մենք գրաբար բոլորովին ունեցած չլինէինք, ապա կենդանի բառերի այս համեմատութիւնը մեզ պիտի համոզէր, որ զօկերէն ձևը հնագոյնն է: Որ նոյնն առանց տարակոյսի հաստատել կամենանք նաև գրաբարի վերաբերմամբ, պիտի ջանանք մեր ասածի հետքերը գրաբարի մէջ որոնել:

Տէր բառը գրաբարում զարտուղի-տարականոն հոլովմունք ունի. տե-առն, ի տե-առնէ, տե-արք, և այլն... այս հոլովներից պարզ երևում է, որ այդ բառը կազմուած է տե կամ տի մասնիկից և այր (առն, արք)

բառից, ճիշդ որպէս տի-կին, տի-եզերք բառերը[1]: Արդ՝ այդ հոլովնե-րից դժուար չէ եզրակացնելը, որ տէր-ի նախնական ձևը պիտի լինէր տիայր կամ տայր.- Զօկերէնում հէնց այսօր էլ պահուած է այս վեր-ջինն անարատութեամբ, որից ամփոփուելով ծագել է նորագոյն գրա-բար ձևը՝ Տայր-տար, տէր:

Այստեղ զօկերէնի ճշդութիւնն ու հնութիւնն արդէն հաւանական ենթադրութիւն չէ՛, այլ նոյն իսկ գրաբարից վկայուած մի իրողութիւն:

Այսպէս նաև գրաբար հետևեալ բառերի նախնական ձևերը ներ-կայացնում է զօկերէնն ու Ղարաբաղի բարբառը. մայտք-մէտք-միտք. հայն-հին. ծայծ-ծէծ-ծիծ, մայս-մէս-միս. սպայտակ-սպիտակ. տայկ-տէկ-տիկ. թայն-թի. քայնք-քինք[2]-քիք. կնայկ-կնէգ-կնիկ. կծայկ-կծէկ-կծիկ: Այս վերջին երկու բառից երևում է, որ մեր ակ և իկ փաղաքշա-կան մասնիկը միևնոյն ծագումն ունին և նախնի -այկ մասնիկի ամ-փոփումն են տարբեր աստիճաններով:

Եթէ այս ամէնը ճիշդ է, ապա կարող ենք մի քիչ աւելի հեռաւոր են-թադրութիւնների դիմել: Նախ տեսնում ենք, որ զօկերէն որոշ ձևեր այն-քան հին են գրաբարից, որքան վերջինս մեր մնացեալ բարբառներից:

2. Որ գրաբարի և մեր մնացեալ բարբառների է և ի ունեցող բառե-րից շատերը՝ նախահայերէնում հաւանօրէն այ երկբարբառն ունէին դրանց տեղը:- Օրինակ՝ վերևի բացատրութեան համեմատ՝ գաւառա-կան խէթ-խիթել (խէթ նայել) բառերն ենթադրել են տալիս մի նա-խորդ, որ է, ի հնչիւնների տեղ այ պիտի ունէր.- խայթ-խայթել.- որի գոյութեան տարակոյսը փարատւում է, որովհետև իրօք այդ բառերը պահուած են գրաբարում, միայն մի քիչ տարբեր նշանակութեամբ: Այդպէս էլ ընել, էնել և անել ենթադրում են մի այնել արմատական ձև, որ բարեբախտաբար պահուած է մեր միջնադարեան ռամկօրէնում[3]:- Հոգ չէ, որ դա էլ ծագում է գրաբարի առնել բայից:- Եթէ ռամկօրէնը

1. Այս տի- մասնիկն որպէս երևում է, աւելանալով բառերի վրայ՝ նշանակում էր մեծ, զօրաւոր, ահագին. տէր=մեծ մարդ, իշխան. տիկին=մեծ կին, իշխանուհի. տիեզերք=մեծ եզերք - անեզերք:

2. Թիֆլիզի բարբառը պահել է այս միջին ձևը:

3. Տես *Հ. Յովնանեանի* «Հետազօտութիւնք նախնեաց ռամկ.»:

պահած էլ չլինէր այդ միջին աստիճանը, մենք դեդուկցիայով պիտի ընդունէինք նորա գոյութիւնը:

Ճիշդ նոյն կերպով գրաբարի և զօկերէնի համեմատութեամբ պիտի գտնենք նախահայերէն ձևերը: Տէր ասացինք ծագում է տայր ձևից, իսկ տիրել, անտարակոյս, ենթադրում է մի տայրել - նախորդ, որի աւելի ամփոփ հետքերը տեսնում ենք գաւառական տարել (gagner = gewinnen) բայի մէջ: Զօկերէնի սայրել-ը հարկաւ ենթադրում է սայր գոյականը, որից եկած է սէր:

Հարկաւ, զօկերէնը չէր կարող բոլոր նախահայերէն բառերը միևնոյն անարատութեամբ պահպանել, սակայն այս օրինակները ցոյց են տալիս, որ մենք կարող ենք մի քիչ աւելի առաջ գնալ, համեմատութեամբ գտնելու այնպիսի նախահայերէն ձևեր, որոնց մասին հաստատ վկայութիւն չունինք գրաբարում, օրինակ, միանգամայն հաւանական է, որ գէտ կամ գիտենալ, դէտ կամ դիտել, գայտ-գայտենալ, դայտ-դայտել էին հնումը:

Նոյն պատճառներով զօկերէնի կաղց և աղձ բառերը չէին կարող եկած լինել գրաբար կաթն և օձ բառերից: Ընդհակառակն, հաւանօրէն կաղց կարճանալով դառել է կաց և կաթ. իսկ աղձ-աձ-օձ: Ղ-ի կորուստը տես գաւառական աղջիկ-աղջի-աջի կամ կռեղ-կոճ բառերում, իսկ ա-ի օ դառնալը՝ աքլար-աքլոր, գնալ-նօլ:

Այս տեղից ծագող եզրակացութիւնները շա՜տ հարցասիրական են.- ա. զօկերէնի վերաբերմամբ, որ լինելով մի վերին աստիճանի յառաջադէմ ձևափոխուած բարբառ, եղել է միևնոյն ժամանակ վերին աստիճանի պահպանողական, անարատ պահպանելով այնպիսի ձևեր, որոնք շատ հին են արդէն մեռած գրաբարից:

բ. Գրաբարի վերաբերմամբ, որ իր ժամանակակից բարբառների մէջ ամէնէն զարգացածն ու ամենաշատ ձևափոխման ենթարկուածն է եղել, որովհետև, ինչպէս տեսանք, մի քանի ձևերով նա մեզանից 1500 տարի առաջ աւելի կատարեալ ու մաշուած է, քան այսօրուայ զօկերէնն ու Ղարաբաղի բարբառը:

Ժընև. Մարտ 1899 թ.

**«Հանդէս ամսօրեայ», 1899, Մայիս, թիւ 5, էջ 147-149**

# ԻՄ ՔՆՆԱԴԱՏՆԵՐԻՆ

Այս տարի յունուարին ես մի անտիպ գործ էի ներկայացրել Պոլիս՝ Իզմիրեան մրցանակին, «Հայերէն ուսումնասիրութիւններ» վերնագրով: Դա յանձնուած է եղել Վերապատուելի Մէնէվիշեանի քննութեանը, որ իր եզրակացութիւնները նորերս տպագրել էր Սուրհանդակ՚ի մէջ: Այդ քննադատութիւնը, ահա, հիմք առնելով, Մշակը ներկայ տարւայ 168 N-ում մի հայհոյալից պարսաւ կարդաց մեր հասցէին: Խտացնելով հ. Մէնէվիշեանի քննութեան ամենասուր և ամենակծու կէտերը, այդ լրագիրը համեստութեան և չափը ճանաչելու մի հիանալի դաս է տալիս մեզ... Մշակ լրագիրն է այդ դասը տուողը:

Մենք պատասխանում ենք Վերապատուելու քննութեանը կէտ առ կէտ, ինչ որ բերուած էր Մշակում:

1) Խօսելով հայերէնի նւագայնութեան մասին, մեր գործի առաջին գլխում, ասել էինք, որ նա բարձր է սլաւո-գերմանական լեզուներից նւագային տեսակէտով: «Կոկորդական և քմական բաղաձայներու կուտակում կայ հայ լեզուի մէջ. և այս պատճառաւ քաղցրահնչութիւնը շատ կը կրէ». պատասխանում է Վերապատուելին: Նոյնը չկա՞յ արդեօք սլաւո-գերմանական լեզուների մէջ, և այդ լեզուներից ո՞րն է մերինից բարձրը. գերմաներէ՞նը, հոլլանդերէնը, անգլիերէնը, բուլգարերէնը, լեհերէնը, ռուսերէնը, ո՞րը... թող փաստօրէն խօսի Վերապատուելին: Մերը մի կոնկրէտ առաջադրութիւն է, կոնկրէտ էլ հերքումն է հարկաւոր, և ոչ թէ բառերի զբօսանք: Կարդացե՞լ է արդեօք Պատուելին պ. Աճառեանի յօդուածը, ուր երիտասարդ գիտնականը «թւաբանական հաշւով ցոյց է տալիս հայերէնի ներդաշնակութիւնը»: Այս տողերը գրելու ձանձրոյթը պիտի չ՛ունենայի, եթէ ինձ լա՛ւ հասկանայինւ. խնդիրն այն է, որ հայերէնի դուրեկան լինելու մասին, որպէս խօսուն լեզւի, ես մի վերջնական կարծիք չեմ համարձակւել յայտնելու, ասելով, որ նրա «առոգանութիւնը դեռ կազմակերպւած չէ»:- Այլ բան է նւագայնութիւնը. թող ընթերցողը կարդայ նոյն այդ վերնագրով մեր յօդուածը: **Մուրճ, 1897 թ., N 6:**

2) «Աւելի զարմանալի է ւ և վ գրելու համար ըսածը, մէկը կամ միւսը պէտք է «բոլորովին դադրի գործածելուց»: Ուրեմն պէտք է գրել ւրա (=վրա), ւառել (=վառել) և կամ գավազան, ավարտել: Լեզուն զարգացնել կըլլայ պարզապէս սովրելով, գործածելով և ոչ՝ անկոչ վիրահատութիւններ ընելով»:

«Զարմանալի է» այո, Ձեր տրամաբանական ոստիւնները այս փոքրիկ հատուածի մէջ, ուր սկսում էք խօսել «գրերու» մասին, բայց մի երկտողից յետոյ գիրը դառնում է «լեզու», և գրի կրճատումը Դուք համարում էք լեզւի «անկոչ վիրահատում», որ պէտք է «սովրի՜լ, գործածե՜լ, զարգացնե՜լ»... Մի՞թէ Դուք չէ՛ք զանազանում գիրը հնչիւնից և լեզուն ուղղագրութիւնից. մենք ի՞նչպէս վիճենք Ձեզ հետ:

Սակայն, դա մի ակներև թիւրիմացութիւն, կամ տարօրինակ տրամաբանութեան արդիւնք է. վերագրել մեզ այն, որից խուսափելով խուսափել ենք: Խօսելով ւ և վ հնչիւնների մասին, մենք ասել ենք, որ ւ-իւնը այսօր այլ ևս գոյութիւն չունի իբրև ինքնուրոյն հնչիւն. «նա լիակատար վ է բառերի մէջը և վերջը, իսկ բառերի առաջը նա չի՛ գործածւում»: Ապա՝ յիշելով այդ հնչիւնների առթիւ ծագած վէճը, մենք ասել էինք անցողաբար, այն էլ պայմանական եղանակում, իբրև մի կողմնակի հանդիսատեսի կարծիք, թէ այդ բանակռիւը տրամաբանական կը լինէր այն ժամանակ, եթէ մարդ վերացնէր կորած հնչիւնի նշանն էլ (ւ) ուղղագրութիւնից*:

Եւ դրանից անմիջապէս յետոյ որպէս զի մեզ անհեթեթ եզրակացութիւններ չվերագրեն, աւելացրել էինք:

«Իմ նպատակը չէ՛ այստեղ հայերէնի ուղղագրութիւնը շօշափել և այս կամ այն կուսակցութեանը յարել. ինձ հետաքրքրողը գիրը կամ տառը չէ՛, այլ բուն հնչիւնը ինչպէս որ նա գոյութիւն ունի կենդանի շրթունքներում և ո՛չ գրքերում. մեր յօդւածի համար կարևորն այն է, որ մենք այսօր մի հնչիւն ունինք.- վ. ինչպէս էլ դա գրուի, խնդիրը չի փոխուի, եթէ հնչումն ուղիղ է»:

Այս տողերը կարծեմ հասկանալի լինելու չափ պարզ են: Եթէ ուղղագրական որևէ նորմուծում մեր համոզմունքը լինէր, անմիջապէս կը գործադրէինք:

* ւ-ի ուղղագրութեան մի ծառայութիւնը արդէն այն պիտի համարել, որ նա վերացրել է ու-ն (վ-ի հնչիւնի համար), թողնելով միայն ւ և վ: - Ծան. Խմբ.:

3) Երբ Ձեզ համար, Վերապատուելի, «խաղողը» գերադասելի է հաղող ձևից, չե՛նք վիճի. դա ճաշակի խնդիր է. սակայն, մեր կողմն է կենդանի ժողովրդի միլիոնաւոր բազմութիւնը, որ հաղող է գործածում շարունակ* ու դուք ինքներդ տալիս էք դրա լաւագոյն ապացոյցն ասելով, որ «արևմտեան հայերու մէկ մեծ մասը չի կրնար խ-ն հնչել»:-Նշանակում է այդ հնչիւնը տեղ-տեղ արդէն հոգեվարքի մէջ է. բնական օրէնքին պէտք չէ դիմադրել, այլ ճանաչել և ընդունել... Սակայն, երբ Դուք ասում էք, թէ ես առաջարկում եմ «խաչ»-ի տեղ հաչ ասել կամ գրել, դա առսակաւը անբարեխիղճ վարմունք է Ձեր կողմից. այդպիսի բան մենք չե՛նք ասել: Ի դէպ, խորհուրդ կը տայինք այդ հնչիւնի մասին կարդալ հայերէնի Altmeister Բագրատունու քերականութիւնը, ուր ահա թէ ինչ է ասւած. «խ, հ, ղ, թանձրացուցեալ են յոյժ զբարբառն ի բերան ռամկին. բայց առ կիրթս և գիտունս մեղմելի են ըստ առաջիկայ տեսութեանց»**, ուր և ապա բերւում են օրինակներ: Բագրատունին կարծում է, թէ այդ հնչիւնները խտացած են ռամկի բերանում, որ կրթւածները աւելի մեղմ պիտի հնչեն. մենք ցոյց ենք տալիս, որ դրանք բազմիցս մեղմացել են ռամկի մօտ, որ պիտի ընդունենք: Վերապատուելի Մէնէվիշեանը հակառակ է թէ՛ Բագրատունուն և թէ ռամկին, այսինքն կենդանի արտասանութեանը. և կոպիտ ձևը նրան աւելի դուրեկան է ու սիրելի, քան նորն ու փափուկը... Չե՛նք վիճում:

4) Շա՛տ վշտացել է Վերապատուելին մեր ասածից՝ թէ «բոբիկ գրագէտին մէկը արդէն բարդել է ճարտարախօս, որ ամեն բանով յետ է ճարտասան ձևից»: Մեր տգիտութիւնը ցոյց տալու համար պատուելին յիշում է, որ դա 1400 տարւայ հնութիւն ունի, և մոռանում է դրա կողքին դրւած «արդէն»-ը: Եթէ Վերապատուելի Մէնէվիշեանի չափ հմուտ չենք մեր բառերի տարիքին, առձեռն բառարան գէթ ունինք մեր սեղանի վրայ, որտեղից դժւար չէ՛ իմանալ այս կամ այն բառի գրաբարին պատկանելը: Սակայն, մեր նպատակը չէ՛ եղել բառերի «ծննդական վկայականը» տալ, այլ նրանց համեմատական արժէքը գեղար-

---

* Ժողովրդական հաղող ձևը անցել է արդէն գրականութեան մէջ, թէև դեռ նս ընդհանրացած չէ: - Ծան. Խմբ.:

** ***Հ. Արսէն Բագրատունի***, Հայերէն քերականութիւն ի պէտս զարգացելոց, 1852, եր. 656:

ւեստական և քերականական տեսակէտներով: Մենք ցոյց ենք տուել, որ «ճարտասան» բառը բարդողը ճաշակ և հմտութիւն է ունեցել. իսկ դրա համեմատութեամբ «ճարտարախօս» բարդողը բռբիկին մէկն է եղել. սրա դէմ բան ունի՞ք. սխա՛լ է մեր կարծիքը, հերքեցէ՛ք: Թէ այդ բառը բարդողը այսօր է ապրում կամ հինգերորդ դարումն էր - մեզ համար նա մնում է բռբիկ. իսկ թէ հնութիւնից հասած ամեն մի բան Դուք կատարեալ էք համարում, դա էլ շա՛տ լաւ է բնորոշում Ձեր ճաշակը, որ արդէն վերևն էլ բաղդ ունեցանք տեսնելու...

5) «Կայ աւելի «զարհուրելին». այդ այն է, որ մենք չենք զանազանում դայեակը մանկաբարձից. գրաբարում դրանք տարբեր նշանակութիւն ունին. մենք տգէտ ենք: Չենք ուզում դաս տալ Պատուելուն, յիշեցնելով, որ բառերն էլ ունին իրանց կեանքն ու զարգացումը և ենթակայ են յարատև փոփոխման. դրա շնորհիւ ահա հին դայեակը ռամկի բերանում այսօր նշանակում է մանկաբարձ (Hebamme):

Վերապատուելին չի՛ կարող մի ռամիկ ցոյց տալ, որ հասկանար մանկաբարձ բառը իր հին նշանակութեամբ. ներկայ հայերէնում դա նշանակում է մանկան-բարձ (համեմատի՛ր մանկապարտէզ = մանկան պարտէզ): Այն ինչ ես ցոյց կը տամ հարիւրհազարաւոր ռամիկներ, որոնք գործ են ածում դայեակ կամ տատմէր - նախնի մանկաբարձի մտքով. հարցրէ՛ք Արզրում, Ղարս, Ալեքսանդրապոլ, Ախալցխա, Ախալքալաք և այլուր... մանկաբարձ՝ մեռած բառ է. աշխարհաբարում նախնի նշանակութեամբ գործածելը հիմնովին սխալ է. իսկ դայեակ կամ տատմայր - կարճ, ընտիր և կենդանի են: Եւ այս կէտում մեզ ձայնակից է Հայկազեան բառարանը, որի հեղինակութեան առաջ, յուսով ենք, պիտի խոնարհի Վերապատուելին: Ահա թէ ինչ է գրուած այնտեղ. «Մանկաբարձ - բարձօղ զմանուկ յարգանդէ մօրն, ծնուցիչ, դայեակ, դայեկ». ընդգծումը բնագրինն է:

Ցաւալին այն է, Պատուելի, որ Դուք դիտմամբ թէ անգիտութեամբ շարունակ մոռանում էք մեր ուսումնասիրութեան նիւթը, որ աշխարհաբարն է. Դուք շարունակ մտածում էք 1400 տարի ետ, իսկ ես խօսում եմ ներկայիս, 19 դարու հայերէնի մասին. մի՞թէ այդ երկուսը Դուք չէք զանազանում միմեանցից:

6) Ուրիշի գործն այդպէս դատափետողը, կարծեմ, աւելի համեստ և զգոյշ պիտի լինէր և հայագիտութեան այնպիսի փայլուն օրինակ պիտի չտար, որ ծաղրելի են դարձնում իրան. ծիծաղելով մեր առաջարկի վրայ, Վերապատուելին մի նոր բարդութիւն է տալիս. «ծխավաճառ». հայերէն դա նշանակում է ծուխ-վաճառող. սրամիտներից մինը, իմ հարցին պատասխանելով, նկատեց, որ դա կարող է նշանակել և մի քահանայ, որ վաճառում է իր ծխականին: Վերապատուելի քննադատի կարծիքով դա նշանակում է եղել ծխախոտ վաճառող: Ահա ձեզ հայերէնագիտութեան նմուշներ:

7) Հրատարակ. ընկերութիւնը, Պատուելի, Ձեր ջատագովին պէտք չունի. բաւական է հարցնել Աղայեանին, Պռօշեանին, Շիրւանզադէին, Փափազեանին, Յովհ. Թումանեանին, և այլոց, իմանալու համար թէ այդ ընկերութիւնը ինչ օյիններ է խաղացել նրանց գլխին. սրանցից և ոչ մէկն է գոհ:

8) Ոճը ինքը մարդն է, և բնորոշ է Վերապատուելու ոճը, նրա քաղաքավարի արտայայտութիւնները. զուր չէին նրանք հիւրասիրել Մշակ'ի էջերում. դրանք զուգէ և ներելի են: Բայց ինչ որ դատապարտելի է, որի համար մենք բառ չենք գտնում անուն տալու, այդ այն է, որ մինը իրան թոյլ է տալիս հրապարակօրէն, առանց հեղինակի համաձայնութեան, քննելու մի գործ, որ անյայտ է հասարակութեանը, դեռ անտիպ է: Պատուելի Մէնէվիշեանը, իր բառերով ասենք, «յանդուգն, յախուռն և համարձակ» վճիռներ է կայացնում հասարակութեան առաջ մի գործի մասին, որ հասարակութիւնը չի ճանաչում: Այս է ահա դատապարտելին... Թող համբերութիւն ունենայիք մի քիչ, մինչև գործիս տպագրւելը և ապա գալուստներդ բարի, շնորհ անէիք ամենակծու և ամենասուր քննութեամբ մեզ պատւելու, պիտի հաճութեամբ լսէինք:

**«Մուրճ», 1899, N 9, էջ 1107-1111**

# ՔԱՕՍ

Եթէ ես նկարիչ լինէի, ո՛չ մի տեղ այնքան բազմազան և զբաղիչ նիւթ չըգտնէի իմ վրձինի համար, ինչպէս Բագու, հայոց եկեղեցու բակում: Պայծառ, բնորոշ է այդ բակի պատկերը կիրակի օրերին: Խուռն բազմութիւնը ամբողջովին բռնել է այդ բակն ու հարևան մայթերը: Բանւոր, գործակատար, ուսուցիչ, դերասան, գրագէտ, միլիօնատէր աղա և մուրացիկ կանգնել են խումբ-խումբ իրանց դասի և դիրքի համաձայն: Աղքատների մի ահագին բազմութիւն պատնէշ է բռնել եկեղեցու դրանը, զարդարուն տիկինները սեթևեթ անցուդարձ են անում դէպի եկեղեցի, որի դռներից, մերթ ընդ մերթ դուրս են ցայտում շարականի բեկորներ... և լսում է դղրդալի կառքերի զռզռոց, որ երբեմն կանգ են առնում աղային ցած բերելու Աստծոյ տաճարը, և հիւանդոտ մուրացիկի պաղատանք, որ ձեռը մեկնած հաց է աղերսում... Ֆոնի վրայ երբեմն երևում են հաստ ու բարձր մարմիններ, պինդ ու ամուր վզերի հետ, աղքատ ու եղկելի արարածներ, հիւանդ ու վտիտ մարմնի մէջ... Յափռած ու ինքնագոհ ծոծրակները տեղի են տալիս նւազ ու վհատ աչքերի առաջ և կոշտ ու սևացած բազուկները խառնւում են ձեռնոցների մէջ խնամւած թաթիկների հետ...

Ամեն մարդ և ամեն բան կայ այդտեղ. Հայաստանի բովանդակ գաւառներն ունեն իրանց ներկայացուցիչներն այդտեղ, սկսած համեստ մշեցուց մինչև եսամոլ ղարաբաղցին, մուրացիկ վանեցուց մինչև հոսհոս պոլսեցին, իրանց բարբառներով, տարազներով, քթերով ու ծոծրակներով... Չըգիտես, զբօսարան է սա, եկեղեցի, կլուբ, թէ մի «քաօս»... Մօտենում ես սրան, գործ է որոնում, հարցնում ես միւսին՝ դարձեալ գործ է որոնում, երկրորդը, երրորդը, չորրորդը, գործերի ու միլիօնների աշխարհում այսքան էլ անգո՞րծ...

Եւ ահա, մի ծանօթ կերպարանք, որ ամբոխը ճեղքելով բարձրանում է դէպի եկեղեցի. Քաօսի ճարտար նկարիչն է դա, Շիրվանզադէն, որ ինձ թւում է եկել էր իր գրքի մի պակաս գլուխը լրացնելու, դիտելով հայոց եկեղեցու բակը... Նրա քայլերն շտապ են ու անհաստատ, հայեացքը տարտամ ու երերուն, նա կարծես գոյներ ու մո-

մենտներ է ջոկում, պատկերը կարծես նրան թւում է խառնակ, անորոշ, անկերպարան...

Նա էլ անգործ է, փփսում է ականջիս մի ծանօթ, գործ է որոնում... ամիսներ շարունակ, Բագու ընկած, նա գործ է որոնում... հայ գրականութեան նշանաւոր տաղանդներից մինը, գործ է որոնում... Հապա նրա տաղանդը, նրա գրիչը, նրա տասնեակ հատորներն ու տասնեակ տարիների աշխատանքը մի՞թէ գործեր չեն, և կամ բաւարար գրաւական չե՞ն, որ նրան այստեղ - հարիւր հազարաւոր հայերի մէջ մի գործ հայթայթէին... Սա անհաւատալի է, բայց սա իրողութիւն է, մերկ իրողութիւն... Դրա համար ահա խոնարհւած է նրա հպարտ գլուխը,- տուն, ընտանիք, երեխաներ հաց են ուզում. դրա համար, այն կապոյտ աչքերը, որ այնքան փայլուն ու կրակոտ էին մի ժամանակ, այսօր ինձ հանգած թւացին. դրա համար, թախծալի անորոշութիւնը թագաւորել էր նրա դէմքի վրայ, և ժամանակով փարթամ ու խնամքոտ մազերը խռիւ էին եկել նրա ուսերն ի վայր:

Ես չուզեցայ մօտենալ նրան. այստեղ, Բագւում, հայ գրագէտներս ճիշտ Աղամ-Եւայի դրութեան մէջն ենք մեղսագործութիւնից յետոյ, այն բացառութեամբ, որ մենք թէ՛ դրախտից ենք արտաքսւած և թէ դժոխքից.- Ո՛չ Աստծոյ երեսը նայել կարող ենք, ոչ սաթայէլի, և ոչ էլ մարդկանց: Իմ հանդիպումը պիտի ամաչացնէր ու վրդովէր Շիրվանին, ուստի ես բաւականացայ միայն հեռուից դիտելով նրան... և ծանր ու ճնշող էր այն տպաւորութիւնը, որ ես ստացայ նրանից:

Եկեղեցու երգը սկսեց մարիլ, կառքերը դղրդալով սկսան հեռանալ. ամբոխն սկսեց ցրուիլ, աղքատներն արդէն դադարել էին մուրալուց. եկեղեցու դռները ճռնչալով փակւեցան... Եկեղեցու բակում տիրող քաօսը պարզւեց ու անյայտացաւ...

Ես ակամայ յիշեցի Շիրվանի Քաօսը, որ կարդացել եմ և սաստիկ զոհ մնացել. այսօր միայն, մի տարուց յետոյ, ես զգացի, որ մի կարևոր գլուխ պակաս է այն գրքում, և հեղինակը վաղ թէ ուշ պիտի լրացնէ այն, նկարագրելով հայ եկեղեցու բակը, և անգործ վիպասանին, նկարագրելով տաղանդը, որ գործ է մուրում և ուսումն ու հպարտութիւնը, որ գլուխ է խոնարհում ծռծրակների առաջ:

Ես հաւատացած եմ, որ Շիրվանը, նաւթային ցնցոտիների միջից, պիտի որոտայ և գրիչը իր ճակատի քրտինքի մէջ թաթախելով պիտի մրէ հարուստ-գործատէրերի երեսը. ես համոզւած եմ, որ դագաղի միջից (Աստուած հեռու անէ այդ օրը), զարդարուած պսակներով ու ճառերով, վեր պիտի բարձրանայ մի օր նրա յիշատակը և պիտի թքէ Բագւի հայերի վրայ, որոնք միլիօնների ու պերճանքի մէջ ո՛չ միայն չուզեցան ապահովել մեր աղքատ գրականութեան մի-երկու սպասաւորներին, այլ և մի պախարակելի անտարբերութեամբ դիտում են նրա վիճակը:

Ես երանի տուի սև բանւորին, որ իր ցնցոտիներով հաց է աշխատում. երանի տուի վերջին մուրացկին, որ իր վիճակին հաշտուած ապրուստ է մուրում. երանի տուի և՛ հարուստին ու կրեզոսին, որ միլիօնների մէջ ընկերոջը հոր է դարանում, գողանալու և աւելի փարթամանալու համար, և այդ երանութիւնների մէջ վա՜յ տուի քեզ, Քաօսի հեղինակին, որի տաղանդը ո՛չ հաց ունի, ոչ վա՜րձ...

Գ. Վ.

**«Տարազ», 1900 թ. հուլիսի 9, N 26, էջ 366-367**

# ԼԱՐԵՐ
## (Արձակ բանաստեղծութիւն)

Յաւիտենական խաւարը դալկացել էր նրա ճակատին.- նա կոյր էր, նա լուռ էր. հոգու զոյգ հայելիները չէին փայլում նրա կերպարանքի վրայ:

Նրա մատները դող ելան քնարի լարերի վրայ.- նա երգիչ էր. և լարերը թրթռացին: Ահա նրանք ձայնում են, և հնչիւնների մի աղբիւր, ամպի պէս թեթև, բիւրեղի պէս անարատ, սկսաւ ցոլալ օդի մէջ: Ջիւնի նման վարանում են այդ հնչիւնները, դողդողում և հալւում: Եւ լարերը լեզու առած լաց են լինում և երբեմն նրանք ժպտում են որբի նման արտասուքի միջից և մորմոքում են...

Դիտում եմ քնարը, նայում եմ երգչին և ո՛վ պատրանք, նա այլևս կոյր չէ՛. մի զոյգ մեծ, իմաստալի աչքեր հմայում են ինձ. խոր են այդ աչքերը - ծովի պէս գրաւիչ են, կոյսի նման...

Մենք սկսեցինք իրար նայել և իրար հասկանալ.- կաշկանդիչ էր այդ աչքերի հայեացքը և ազդու, նա գրաւել էր իմ ուշն ու միտքը...

Յանկարծ քնարի վերջին հնչիւնը դողաց, վարանեց և մարաւ. զոյգ աչքերը որ այնքան ահարկու, խոր և կրակոտ էին, յանկարծ անյայտացան: Ես վեր նայեցի երգչի երեսին և դարձեալ սարսափով տեսայ յաւիտենական խաւարի թագաւորութիւնը:

Սարսափով զգացի, որ դա մի պատրանք էր, լարերի խօսող հնչիւնները ես ընդունել էի երգչի աչքերի տեղ:

Գ. Վ.

**«Տարազ», 1901 թ. հունիսի 24, N 23, էջ 254**

# ԱՅՑ ԼԵՄԲԵՐԳԻ ՀԱՅԵՐԻՆ

1899 թ. Եւրոպայի հայ ուսանողական համաժողովը մի գրութիւն ստացաւ Լեմբերգից, ուր մի խումբ հայ ուսանողներ, որոնց գոյութեան մասին ո՛չ մի գաղափար չունէինք, յայտնելով իրանց կացութիւնը (ազգայնութեան մոռանալը, մայրենի լեզւի և եկեղեցու կորուստը, կաթոլիկ կղերի ճնշումը նայլն) աղաչում են հայ ուսանողներին օգնութեան հասնիլ, սովորեցնել իրանց հայերէն, մեր այդ մեծանուն և փարթամ գաղթականութեան գէթ վերջին բեկորները փրկելու նպատակով:

1899 թ. յունիսին Եւրոպայից հայրենիք վերադառնալիս իմ ճանապարհն ընկնում էր Լեմբերգի վրայով, ուստի առիթից օգուտ քաղելով, ուզեցի այցելել տեղական հայերին և դիմեցի Աւգուստ Թէոդորովիչին, որի հասցէն ինձ յայտնի էր:

Թէոդորովիչը հայի պէս ինձ հիւրասիրելուց յետոյ՝ առաջնորդեց պ. Մանուկևիչի մօտ, ուր երկու սենեակում չորս հայ ուսանող միասին են ապրում: Մի ժամից յետոյ տասնից աւելի ուսանողներ արդէն շրջապատել էին ինձ.- Հայեր, այնպիսի վառուած ու տոգորուած հայե՞ր, որոնց նմանը ես երբէ՛ք չեմ տեսել. Նալբանդեան, Աբովեան և Նազարեան կարդալիս, ես զուր եմ որոնել նրանց տիպերն և առհասարակ 50-60 թւականների երիտասարդութիւնը մեր ժամանակներում. տեսնելով Լեմբերգի հայ ուսանողներին, իմ երևակայածը գտայ կենդանի իրականութեան մէջ... սրանց ոգին, միամիտ հաւատը և զարմանալի ոգևորութիւնն ու սէրը ինձ յիշեցնում էր յիսուն թւականների մեր երիտասարդութիւնը...

Մի կողմից նրանք ուշ ու միտք դարձած՝ ուզում են անթիւ հարցերով գաղափար ստանալ մեր կացութեան մասին, նրանք հրճւում են, լսելով որ հայերի մեծամասնութիւնը դեռ հայերէն է խօսում, ժողովրդի մեծ մասը դեռ հողագործ է... որ ունինք մամուլ, դպրոցներ ու կրթւած մարդիկ. որ կաթոլիկութիւնը մեզ համար վտանգաւոր չէ՛... միւս կողմից ամեն ջանք ու ճիգ թափում են ցոյց տալու, որ իրանք էլ դեռ հայեր են, լա՛ւ հայեր, թէև կաթոլիկ ու լեզուն մոռացած: Մարդ ուղարկեցին և բերել տուին «Հայոց դպրոցից» միակ հայ տղան, որ դեռ չէ՛ մո-

ռացել մի քանի հայերէն բառեր, իսկ երբ նա սկսեց հայերէն մէկ-երկու համարել, նրանց հիացմունքը հասաւ հրճւանքի: Խեղճե՜ր, չըգիտեն, թէ քանի-քանի հայ ընտանիքներ դիտմամբ ջանք են թափում մոռանալու հայերէնը... նրանք ուզեցին ինձ հայավարի հիւրասիրել և բերին բուժէն (ածու միս), որ միմիայն տեղացի հայերի կերակուրն է. դա պատրաստւում է այծի մսից և մի տեսակ երշիկ է... Ճաշից յետոյ, երեկոյեան հայերի թիւն հասաւ մօտ 12-ի. կանչեցին միակ հայ զինւորին, որին է յանձնւած տեղական զօրքի պաշարը գնելու և մատակարարելու գործը, շնորհիւ իր աչալըջութեան:

Ինձ ստիպեցին, որ ազգային տաղեր երգեմ, և նոյն երեկոյեան գրի առան ու սովրեցան «Բամբ որոտանը», որ նրանց սաստիկ դուր եկաւ: Նրանց ոգևորութիւնն այն աստիճանի է հասել, որ որոշել են միջոցները ներածին պէս Հայաստան գալ, հայ աղջկայ հետ ամուսնանալ և հայերէն սովորել: Ոմանք ձեռ են քաշել իրանց ընտրած աղջիկներից, հայ աղջիկ ուզելու մտադրութեամբ: Կարծելով թէ ինձ համար անդուրեկան է նրանց կրօնը - կաթոլիկութիւն, օգտւելով կանոնիկոս Թէոդորովիչի բացակայութիւնից, բացատրում էին, որ առաջին յարմար րոպէին նրանք պատրաստ են մայրենի եկեղեցու գիրկը դառնալ:- Ես նրանց հասկացրի, որ անցել են կրօնական մոլեռանդութեան դարերը. թէև ցաւալի է այն, որ հայերից շատերը կաթոլիկ են դարձել, բայց և այնպէս, նրանք մեզ համար նոյնպիսի հարազատ ու սիրելի եղբայրներ են ինչպէս և լուսաւորչականները, միայն իրանց հայ զգան և հայ ճանաչեն...

Այդ երեկոյ, թատրոն չըլինելու պատճառով, ինձ տարան ցիրկ. այնտեղ էլ ընթրիքի և ապա իրանց մօտ ննջելու: Առաւօտ կանուխ ես ինձ հրաւիրողներին թողնելով քնած՝ շտապեցի կանոնիկոս Թէոդորովիչի մօտ, որին գտայ պարապելիս: Երիտասարդ հոգևորականը մի լաւ գրադարան ունի, յատկապէս հայերին վերաբերեալ գրքերի եւրոպական բոլոր լեզուներով. հին լեզուներից զատ նա ազատ խօսում և գրում է ֆրանսերէն, գերմաներէն, իսկ լեհերէնը նրա մայրենի լեզուն է: Չընայելով որ մայրը լեհ է, նա է տեղական հայութեան հոգին ու եռանդը, գրում է լեհական և գերմանական թերթերում և առանձին բրոշիւրներ ունի նւիրած հայոց խնդրին... Ազատ կարդում է հա-

յերէն, միայն շատ քիչ բան է հասկանում. նրա ցանկութիւնն է կարելւոյն չափ շուտով Հայաստան գալ հայերէն սովորելու, որի համար նա ուզում է մինչև անգամ ուսումը կիսատ թողնել: Իմ բարի խորհուրդն էր համոզել, որ նա առաջ վերջացնի ուսումը՝ ապա վերջապէս նւիրւի հայերէնի ուսումնասիրութեան:

Հետևեալ օրը ճաշից առաջ հարկ էր այցելել տեղական մի քանի հայերի. մինին (արձանագործին) տանը չըգտանք, երկրորդը - վաճառական, շատ սիրալիր ու զարմացած ընդունեց «հայի» այցելութիւնը. երրորդը պրոֆեսսոր, Յովհաննէս Բոլոցի ասպետ Անտոնևիչ, պատկանում է տեղական արիստոկրատիային, դասախօսում է գեղարւեստի պատմութիւն և յայտնի գիտնական է:

Նա մեզ ընդունեց վերին աստիճանի սիրալիր, իր գրասենեակում, ուր հաստ գրքերով ծանրաբեռնած սեղանի շուրջը սուրճ հրամցուց: Մի քանի վայրկեանից յետոյ սիրալիր խօսակցութիւնը դարձաւ ընկերական, կարող եմ ասել եղբայրական: Հասկանալի է, խօսակցութեան նիւթն ինչ կը լինէր... ինձ հետաքրքրողը Լեհաստանի հայերն էին, իսկ պրոֆեսսորի ցանկութիւնն էր կարելւոյն չափ շատ տեղեկութիւններ ստանալ մեր մասին:

Իմ խօսակցութիւնն ինչպէս երևում է լաւ տպաւորութիւն թողեց պրոֆեսսորի վրայ, որովհետև երբ ոտքի ելանք մեկնելու, նա համարեա զօրով ստիպեց, որ նոյն երեկոյեան անպատճառ իրան կրկին այցելութեան գնանք և նա մի այնպիսի ընդունելութիւն ցոյց տւաւ, որ ես պէտք է մինչև ականջներս կարմրէի: Մեր մտնելը, նկատելուն պէս՝ նա վերկացաւ տեղից և խորը կերպով գլուխ տւաւ, որի պատճառով ամբողջ լսարանը՝ օրիորդներ ու երիտասարդներ, հայեացքներն ուղղեցին դէպի մեզ: Դասախօսութիւնից յետոյ նա մեզ առաջնորդեց իր աշխատանոցը... և բաց արաւ մի խումբ ստւար կարտոններ, որոնց վրայ գիտնականի հոգածութեամբ ու խնամքով արտահանած էին բոլոր այն արձանագրութիւնները, ծաղկանկարներն ու քանդակները, որ երբ և իցէ ստեղծել են Լեհաստանի հայերը: Մինչ այդ, պրոֆեսսոր Անտոնևիչը մանկական պարզութեամբ խնդրեց լսել իր երգածը և հաւաստիացնել, արդեօք ճիշտ է եղանակը... և յիսունամեայ գիտնականը սկսեց երգել «Մեր հայրենիք թշւառ անտէր»... մի այնպիսի

տենչանքով որ կարելի էր լաց լինել, եթէ մարդ չամաչէր: Այդ երգը նա սովորած է եղել Վենետիկի հայրերից, առանց հայերէն գիտենալու:

Լսելով որ տեղական հայ ուսանողները ուզում են հայերէնի ուսուցիչ հրաւիրել, նա սաստիկ ուրախացաւ աւելացնելով, որ աշակերտներից մինն էլ ինքն ու իր որդին պիտի լինին:

Նա իբրև յիշատակ ինձ տւաւ մի փոքրիկ բրոշիւր Լեհաստանի հայերի մասին, որ իր գրածն է, և քաղւած է «Աւստրօ-Ունգարիան պատկերով ու խօսքով» յայտնի գործից, և պետական հրատարակութիւն է:

Նոյն երեկոյեան ժամը 10-ին, 12-ի չափ երիտասարդ հայերը երկաթուղու կայարանն եկան ուրախ երգերով և յոյսերով ճանապարհ ձգելու «Հայաստանցի բարեկամին», ուղարկելով իրանց լաւագոյն իղձերն ու ցանկութիւններն իրանց հեռաւոր եղբայրներին...

Երկաթուղին սլանում է և առանձնացած օթեակում շարունակ մտածում եմ, երա՞զ էր այս ամենը, թէ իրականութիւն...

Գր. Վանցեան

**«Տարազ», 1901, «Իլլիւստրասիօն», N 22/VI, էջ 44-45**

## ԱՐԵՒՈՐԴՈՑ ՄԱՍԻՆ ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

«Հանդէս Ամսօրեայ»ի մէջ 1896 թուին Թիւ 1. մենք աշխատել էինք ցոյց տալու, որ Արևորդիք Հայեր չեն, ինչպէս սխալմամբ հաղորդում է մեզ Շնորհալին: Մեր այս ենթադրութեան համար մի քանի կտրուկ ու վճռական ապացոյցներ գտանք վերջերս D. Chwalsohn-ի «Die SSabier und der SSabismus», St. Petersburg, 1856 աշխատութեան մէջ, որ ահա բերում ենք թարգմանաբար:

Գարստէն Նիբուրը հետևեալն է պատմում իր ճամբորդութեան մասին, որ կատարել է 1766ին Միջագետքում. «Յակոբիկների համայնքին են պատկանում նաև Արևորդիք («Schemsia»). թւում է՝ թէ դրանք պահպանել են այն կրօնը, որ այս երկրում (Միջագետք) ոչ միայն քրիստոնէական, այլ և մահմետական կրօնից առաջ տիրապետողն էր:

«Մի մարդ ինձ հաւատացնում էր, որ իւր երիտասարդութեան ժամանակ շրջակայ լեռնոտ - երկրի գիւղերից շատերն այդ կրօնն էին դաւանում: Հիմա, ինչպէս կարծում են, գիւղերում այլ ևս Արևորդի չկայ, Մարդինում միայն (Mardin) բնակւում են դեռ հարիւրի չափ գերդաստաններ երկու առանձին թաղերում, որոնք սրանից մի քանի տարի առաջ մի առանձին համայնք էին կազմում. մինչև որ Սուլթան Մուստաֆան (հաւանօրէն Գ.ը մեռած 1773ին) բոլոր քրիստոնեաներն ու Հրէաները բռնի մահմետական դարձնելու միտքն յղացաւ. որին մասամբ բաւականութիւն տալու համար հրամանը այսպէս վերանորոգուեցաւ. Ապագայում ո՛չ մի հպատակ առանց հաւատոյ գրքերի իրաւունք չունի գոյութիւն ունենալու: Այսինքն սուլթանի հպատակը մահմետական, քրիստոնեայ և կամ հրէայ պիտի լինէր, որովհետև վերջիններս էլ Ղուրանից ճանաչուած հաւատոյ գրքեր ունին:

«Եզիդները, Դրուզները, Նասրանիներն և այլ օտարադաւանները, որոնք իրենց շէյխերի և էմիրների իշխանութեան տակ լեռնային երկիրներումն էին բնակւում, այս հրամանին ուշ չդարձրին: Արևորդիք սակայն, սաստիկ թոյլ էին և թոյլ այլ ապրում էին քաղաքներում, ուր շուտով կարող էին մահմետական պաշտօնեաների ուշադրութեանն ենթարկուել:

«Ուստի նրանք ենթարկուեցան Տիարպէքիրի Յակոբիկների պատրիարքին, այդ օրից անուանում են իրենց քրիստոնեայ և հագնում են քրիստոնէի պէս, թէև նրանց քրիստոնէութեանը մէջ իրենց զաւակները մկրտել տալուց աւելի բան չի արտայայտւում:

«Նրանք սովորութիւն չունին բազմութեամբ եկեղեցի յաճախելու. սակայն, մի քանիսը նրանց կողմից հոգածութեամբ յաճախում են եկեղեցի, որ մարդ մեղադրելու իրաւունք չունենայ, թէ իրենց կրօնական պարտքը լաւ չեն կատարում:

«Նրանց մեռելն էլ Յակոբիկներու քահանան է թաղում, որին հրաւիրում են մեռածի դիակը դագաղում ամփոփելուց և պինդ գամելուց յետոյ, որ ապա թաղւում է Արևորդոց գերեզմանատանը: Կարճ, նրանք ապրում են իբրև միջակ կրօնական համայնք և մինչև անգամ Յակոբիկներու հետ երբէք չեն ամուսնանում: Նրանց կրօնի հիմունքների մասին մի հաստատ բան իմանալ չկարացի: Մարդինի քրիստոնեաներն ասում են, որ նրանք իրանց տան ամենալաւ դուռը միշտ արևելեան կողմն են շինում և իրենց երեսները դէպ ի արևն են դարձնում աղօթքի ժամանակ, իրենց մեռելների մազերը փետթում են և մեռելի բերանը մի քանի դուկատ են դնում:

«Հարսանիքը թէև Յակոբիկ հոգևորականի ձեռով է կատարւում, բայց և այնպէս, ամուսնացեալներին ման են ածում փողոցում, ինչպէս կարծւում է նրա համար, որ մի մեծ քարի մօտով անցընեն, որին նրանք մեծ պատիւ են տալիս...»

Մինչև այստեղ Նիբուրը, որի ասելով Տիարպէքիրումն էլ Արևորդիք կան:

Մօտաւորապէս նոյնն է հաղորդում միսսիօնար Սութգատը (Southgate) Շէմսիների մասին 1837ին.- Մօտ մի դար առաջ, ասում է նա, Շէմսիները կամ արևապաշտներն իրանց կրօնն ազատ դաւանելով ապրում էին Միջագետքի գիւղերում, Մարդինի մօտերը (մի 15 ընտանիք էլ Տիարպէքիրում): Մի անգամ, երբ Մարդինի Փաշան 1762ի մօտերը նրանց կրօնի մասին տեղեկութիւն ստացաւ, որ Շէմսի են, յայտարարեց, որ նա բաց ի կօրանից և հին ու նոր կտակարանից այլ կրօն չի ճանաչում և չի կարող թոյլ տալ:

Նրանցից ոմանք մահմետական դարձան, ուրիշներն էլ բերին Մարդին և մահուան երկիւղ տուին, մինչև որ Ասորի եպիսկոպոսը նրանց յայտարարեց իբրև իր Յակոբիկ հօտի մի մասը: Այդպէս էլ համարւում են դրանք մինչև օրս, թէև իսկապէս մի բոլորովին այլ ժողովուրդ են:

Նրանք յաճախում են Յակոբիկ եկեղեցին, պաս ու տօն կատարում են նրանց հետ, երեխաներին մկրտում են և հագնւում են քրիստոնէի պէս, սակայն երբէք նրանց հետ չեն ամուսնանում, այլ միմեանց: Նորերում նրանցից ոմանք ուզեցին ասորա-կաթոլիկ դաւանութեանն յարել, առանց սակայն իրանց առանձնութիւնները թողնելու և Ասորի քրիստոնեաների հետ ամուսնութեան մէջ մտնելու:

Նրանք պնդում են քրիստոնեաներից տարբեր ծագում և տարբեր սովորութիւններ ունենալը:

Թաղման համար թէև կանչում են քրիստ. հոգևորական, բայց նրա հեռանալուց յետոյ, սկսում են իրենց գերդաստանի մէջ գաղտնի ձևականութիւնները կատարել. որ սակայն, իրանք չեն խոստովանում, որպէս նաև իրանց աղօթքն արևին ուղղելը: Տարւոյ մէջ նրանք մի մեծ տօն ունին, երբ մի մեծ անուշահաց են թխում: Այդ հացի չորս կողմը նրանք առ ժամանակ ուրախ պտոյտ են կատարում, ապա յանկարծակի մարելով կրակը, ամէն մինը ջանք է թափում այդ հացից մի կտոր փախցնել: Նրանք խոստովանում են այս տօնի գոյութիւնը, բայց մերժում են նրանց վերագրուած գիշերային սանդարապետական տօներն ու այլևայլ ձևականութիւնները...

Ստորև մենք առիթ պիտի ունենանք հայկական հին և նոր աղբիւրներից մի քանի տեղեկութիւններ բերելու Շէմսիների կամ Արևորդոց մասին, ինչպէս սրանք անուանւում են Հայերից:

Այդ տեղեկութիւններից երևում է, որ Շէմսիները 11 և 12 դարերում բաւական բազմաթիւ էին Միջագետքում և իրանց պաշտամունքի մէջ Փոքր Ասիոյ հնագոյն հեթանոսութեանց հետքերն էին պահել, ինչպէս օրինակ ծառերին պատիւներ տալը:

Սակայն, հէնց այսքանն էլ բաւական է համոզուելու համար, որ Շէմսիները հեթանոսներ էին և միայն առ երեսս քրիստոնէութիւն էին ընդունել, մահմետականների աչքին փոշի փչելու համար:

Մի այլ ճամբորդ Dupre, որ 1807-9 Պարսկաստան և Միջագետք այցելեց, Մարդինի ժողովրդի մասին խօսելով ասում է, որ այնտեղ 800 կռապաշտ կայ, որոնք Շէմսի են կոչւում, այսինքն արևապաշտ. նրանք իրանց Իսմայելի սերունդ են համարում. չունին ո՛չ տաճար, ո՛չ դպրութիւն և նրանց կրօնական պաշտամունքը արտայայտւում է միայն ծնրադրութեամբ արևի առաջ:

Այս տեղեկութիւններին, գրքիս հեղինակը կցում է երես 292-ում հայ աղբիւրներից հանած հատուածներ, որ մենք անկախօրէն քննել ու լուսաբանել ենք «Հանդէս ամսօրեայի» մէջ (1896. Թիւ 1):

Իր բազմահմուտ աշխատութեան վերջում գրքիս հեղինակն ենթադրութիւն է յայտնում, որ Հարրանացոց կամ Սաբեացոց մնացորդները Շէմսիները կամ որ նոյնն է, Արևորդիք են:

Այդ ենթադրութիւնն ապացուցանելու փաստեր չի՛ բերում հեղինակը: Սակայն, ով ծանօթ է Հարրանացոց հէնց Ghwalsohn-ի գրքից, պիտի միանգամայն բացասէ այդ ենթադրութիւնը:- Հարրանացիք մի ծաղկեալ ժողովուրդ են. մեծ պետական մարդիկ, հմուտ բժիշկներ ու գիտնականներ, հարուստ գիր ու դպրութիւն ունեցող:

Նրանց կրօնը, որ մի ինքնուրոյն աղանդ է, կազմուած քաղդէական, պարսկական, հրէական, քրիստոնէական, նոր պղատոնեան և գնոստիկեան ուսմունքներից,- Արևորդոց պարզ արևապաշտութեան հետ բաց ի պատահական նմանութիւններից այլ առնչութիւն ունենալ չէր կարող...

Այս ենթադրութիւնն այնքան անհիմն է, որ մենք մի առանձին կարիք չենք տեսնում այն հերքելու համար փաստեր բերել:

Խնդիրն այն է, որ Արևորդիք մինչև օրս մնում են մի տեսակ հանելուկ.- Ծնորհալին նրանց համարում է հայ. Ghwalsohn-ը՝ Հարրանացի, Հ. Ինճիճեանը՝ Եզիդի. Պրոֆ. Եղիազարեանը, որ հմուտ է Եզիդիների լեզուին, հերքում է այդ կարծիքը. մենք էլ մոլորութիւն էինք ունեցել «Մուրճ»ի մէջ ենթադրելու, որ Արևորդիք բոշաներ են[1]... և դրա համար բաւական նպաստաւոր հանգամանքներ կային:

1. «Մուրճ», 1894, պատմական ակնարկ բոշաների անցեալից:

Այսօր էլ, սակայն, կարելի է կրկնել այն, ինչ որ մենք արտայայտել էինք նոյն խնդրի առթիւ (տարիներ) առաջ նոյն այս «Հանդիսի» մէջ.- Ա. որ Արևորդիք հայ չեն, նոքա քրիստոնեայ աղանդաւոր էլ չեն. ո՛չ զրադաշտական, ո՛չ էլ Հարրանացի (Սաբէացի)։ Բ. Մեր ունեցած ներկայ նիւթերով դժուար է պարզել նոցա ծագումը։

Թիֆլիզ, հոկտ., 1900 թուին

**«Հանդէս ամսօրեայ», 1901, փետրուար, թիւ 2, էջ 42-44**

# ՆԱԽԱՀԱՅԵՐԷՆԻ ՀԵՏՔԵՐ ԶՕԿԵՐԷՆՈՒՄ

Հանդիսիս 1899-ի 5-երորդ թւում (էջ 147-149) մենք փորձ արինք ցոյց տալու, որ զօկերէնի և Ղարաբաղի բարբառի մի քանի ձևերը գրաբարից աւելի հին պիտի լինին: Այն ժամանակ Ս. Սարգսեանցի գեղեցիկ աշխատութիւնը[1] չունէինք մեր ձեռին, ուր ի միջի այլոց մի շարք նոր բառեր ենք գտնում, որոնք նոյնպէս նախահայերէնի հետքեր են կրում. մայրուք-միրուք-մօրուս, մաջին-միջին, իրաքj-հերիք, հանգj-հինգ, մտակj-մտիկ, կռայո-կռիւ, պղայնձ-պղինձ, պայտք-պէտք և այլն...

Այդ ամենի հետ մենք ի նկատի չէինք ունեցել մի շա՛տ կարևոր երևոյթ, որ առաջին անգամ մեր ուշադրութիւնը գրաւեց Երիւանում. դա էական բայի երրորդ դէմքն է: Այնտեղ ասում են. գնում ա. գալիս ա. ասում ա. տալիս ա. լալիս ա. բերում ա. և այլն:

Ստուգելով տեսանք, որ նոյն հնչմունքն ունին Ղարաբաղի և զօկերի բարբառը: Սարգսեանցն իր գրքի մէջ ասում է, որ դա պէտք է գրել այ, որովհետև, ինչպէս յայտնի է, հնդիկ-եւրոպական լեզուներից շատերում բայի 3 դէմքը վերջանում է t-ով, որը Հայոց լեզւում հաւասար է յ-ի. այն էլ է յայտնի, որ միավանկ բայերում այդ յ-ն թէև գրւում է, բայց չի հնչւում. օր. գայ, տայ, կայ, լայ և այլն. ուրեմն վերևի բառերն աւելի ճիշդ կարելի էր գրել. գնում այ, գալիս այ, բերում այ և այլն. ինչպէս որ, իրօք, տեղ տեղ նոյն ձևով գրել է Չրէօտերն իր քերականութեան մէջ:

Մեր նախորդ յօդուածից գիտենք, որ զօկերէնի այ-ը բառերի մէջ աւելի հին և նախնական է, քան գրաբարի է-ն. ուստի և ա՛յս դէպքում, էական բայի երրորդ դէմքն է՝ ծագել է զօկերէնի, կամ որ նոյն է, Արարատեան բարբառի այ-ից. նմանութեան օրինօք կարելի էր ենթադրել, որ դորա յոգնակի երկրորդ դէմքն էլ (էք) նման ծագում պիտի ունենայ: Դորան գրաւոր ապացոյց մենք գտնում ենք «Քնար Հայկականի» մէջ. «Ողբ Ջուղայեցւոց» մի երգում (եր. 134), որ գրուած է 1605 թուին, պարզ ու մաքուր աշխարհիկ լեզւով, ուր հանդիպում ենք

1. Սարգսեանց, «Ագուլեցոց բարբառը (Զօկերի լեզուն)», Մոսկվա, 1883 թ.

հետևեալ ձևերին. գնաման աք (էք), մոռանում աք, ո՞ւմն աք թողման, ողջ աք... և այլն:

Այս տեղից պարզ երևում է որ ներկայի Արարատեան բարբառն էլ (ինչպէս նաև Ղարաբաղի և զօկերի բարբառներն) այլ էր այն լեզուից, որ կոչւում էր Ոստինիկ և խօսւում էր նոյն Արարատեան դաշտում, քանի որ այդ բարբառը դեռ այսօր պարունակում է ձևեր, որոնք հին են գրաբարից:

Այդ հին տարրերից մինն էլ, մեզ թւում է, որ շեշտը պիտի լինի:

Գրաբարի շեշտը, մեր ներկայ արևմտեան բարբառների և գրական լեզուների նման բառի վերջին վանկի վրայ է ընկնում: Այն ինչ, զօկերի, Ղարաբաղի և Արարատեան բարբառներում մի քանի բացառութեամբ շեշտն ընկնում է նախավերջին վանկի վրայ: Քանի որ հարցն համեմատական հնութեան վրայ է, խնդիր է ծագում, ո՞րն է արդեօք հինը: Պէտք է նկատել, որ գոյութեան կռուի մէջ, ներկայում, այս շեշտն երբ ընդհարման է գալիս արևմտեան բարբառների հետ, տեղի է տալիս և հետզհետէ կորչում է: Նոյն իսկ Արարատեան բարբառը, որ կենսամարտի մէջ իւր հարևանների հետ՝ գրեթէ անպարտելի է, շեշտի վերաբերմամբ միշտ տեղի է տալիս արևմտեան բարբառների առաջ: Ապացոյց՝ արևելեան գրական լեզուն, որ հիմք ունենալով Արարատեան բարբառը, գործ է ածում արևմտեանի շեշտը:

Լեզուի զարգացման ընթացքը, պարզ է, որ տանում է դէպ ի վերջավանկ շեշտը, ուստի դժուար է կարծել, թէ արարատեան կամ զօկ բարբառի շեշտն աւելի նոր լինի:

Ի նկատի ունենալով, որ այս բարբառներն հին հնչմունքն ու արտասանութիւնն աւելի անարատ և մաքուր են պահել, ի նկատի ունենալով, որ սոքա գրաբարից էլ աւելի հին տարրեր են պահպանել իրանց մէջ, անհաւանական չի լինի, եթէ կարծենք, որ սորանց շեշտն էլ աւելի հին է, քան գրաբարինը:

Այս յօդուածը պատրաստ էր, երբ կարդացինք Պ. Meillet-ի մի նկատողութիւնը. Une Question (Բանասէր. Հ. Ա. գիրք Դ.), ուր հետևեալ հարցն է տրւում:

1. L´accentuation de l´imperatif sur l´initiale est-elle ordinaire a Tiflis? et l´imperatif se distingue-t-il a cet egard des autres formes du verbe?

2. La meme accentuation est-elle attestee dans d՛autres dialectes?

Այս երկրորդ հարցին կարելի է պատասխանել, որ զօկերէնում «շեշտը դրւում է միշտ վերջից սկսած երկրորդ վանկի վերայ» (Ագուլեցոց բարբառն, եր. 49). բացառութիւններ կան, բայց ո՛չ բայերի մէջ. նոյն կանոնին ենթակայ է և Արարատեան բարբառը: Ուստի՝ զօկերէնն Երևանի և Թիֆլիզի բարբառի հետ պարզում է այն, որ գրաբար հրամայականում շեշտը հաւանօրէն վերջին վանկի վրայ չէր, այլ նախավերջին, ինչպէս ճիշդ դիտել է Պ. Մէյէն իւր նկատողութեան մէջ. որ մի նեցուկ է մեր վերևի ենթադրութեանը շեշտի վերաբերմամբ:

Թիֆլիզ, 1900 թ. Հոկտեմբեր

**«Հանդէս ամսօրեայ», 1901 թ., մայիս-հունիս, թիվ 5-6, էջ 180-181**

# ԵՒԳԻՆԷ
# ԹԱՏԵՐԳՈՒԹԻՒՆ ԵՐԵՔ ԳՈՐԾՈՂՈՒԹԵԱՄԲ
# ՇԻՐՎԱՆԶԱԴԷԻ*

Առաջին տեսարանը իրաւաբան Ալավէրտեանի դահլիճն է, ուր հաւաքուած հիւրերը խօսում են օրուայ չարիքի մասին: Չարիքն էլ այն է, որ մի ոմն Արաբաջեան սաստիկ տանջելով իր կնոջը, նորան հասցրել է ինքնասպանութեան: Ալավէրտեանը, որ գործին լաւ ծանօթ էր, բացատրում է, որ կնոջ տանջանքի պատճառն էր նորա օրիորդ ժամանակ կատարած սխալը. այս պատմութիւնը այնպէս վատ է ազդում նրա կնոջ Եւգինէի վրայ, որ գրեթէ ուշաթափւում է: Հիւրերը ցրւում են. որոնց մէջ, տիկին Կալամքարեանը չարամիտ ժպիտով ցոյց է ուզում տալ, թէ Եւգինէի անցեալն էլ անարատ չի եղել, մինչ այս վերջինը իր ուշաթափուիլը վերագրում էր կայծակին: Ալավէրտեանը բացատրութիւն է պահանջում կնոջ տարօրինակ վարմունքի, տխրութեան, վրդովմունքի և դեղնութեան մասին. կինը լռում է, բայց տանջւում է միաժամանակ և ամուսնու հարցերից խուսափում: Այս հանգամանքը տարակուսանքի մէջ է գցում Ալավէրտեանին, բայց իւր կնոջ սաստիկ սիրելուց նա վանում է ամեն մի կասկած: Այնուհետև Եւգինէի իւր մօր հետ ունեցած խօսակցութիւններից յայտնի է լինում, որ նա իրան անարժան կին է համարում իւր ազնիւ ու մեծահոգի ամուսնուն, նաև տանջւում է իւր ակամայ յանցանքի պատճառով: Այս հանգամանքներում ահա այցելութեան է գալիս Եւգինէի մոլորեցնողը՝ ոմն Գաբօ, և առաջարկում է նորոգել հին կապերը: Այս առաջարկն արդէն բաժակը լցնում է, և նա որոշում է բաց անել ամուսնու առաջ եղելութիւնը: Սարսափահար, Ալավէրտեանը քիչ է մնում ընկնի կնոջ վերայ՝ խորտակելու նորան, և հազիւ զսպել կարողանալով իրան, սկսում է տանջուիլ հոգեպէս: Նա սրտանց ուզում է ներել կնոջը. «Բայց ներել կարելի է, երբ կարողանաս մոռանալ այն,- գոչում է Ալավէրտեանի քոյր Մարթան,- իսկ այդպիսի խայտառակութիւն երբէք չի կարելի մոռանալ»: Ալավէրտեան այդտեղ ո՛չ իրան, ո՛չ էլ կնոջը խայտա-

* Այս յօդուածը պիեսի առաջին ներկայացման առթիւ է գրուած:

ռակուած չի՛ զգում, քանի որ դա մանկութեան մի սխալ է եղած լոկ, այն ինչ նրա քոյրը Մարթան, միակ ելքը ապահարզանն է համարում:- «Ես չեմ կարող ապահարզան պահանջել, քանի որ ուխտած եմ կնոջս. իսկ իմ անցեա՞լը, միթէ ես անարա՞տ եմ, միթէ ես չե՞մ խաբել, ինչո՞ւ ուրեմն նա պիտի ներէ ինձ, իսկ ես ոչ»: Այս խօսակցութեան պահին ներս է մտնում Եւգինէն և յայտարարում է, որ ուզում է հեռանալ մօր մօտ, որպէսզի գէթ դրանով ամոքի ամուսնու ցաւերը: Ալավէրտեանը չի համաձայնում. նոյն րոպէին մանկանոցից լսւում է օրօրոցի երգ, Եւգինէն ուզում է հեռանալ, բայց չի կարողանում և թուլացած ընկնում է վայր: Ուշքի գալով նա իրան գտնում է ամուսնու գրկում, որ ասում է.- «Համոզմամբ ներեցի ես քեզ և սիրելով մոռանում եմ անցեալը»: Ապա դառնալով քրոջը նա աւելացնում է. «Լսո՞ւմ ես, ես այսպէս եմ ցանկանում. այս է ահա իմ համոզմունքը»:- «Ուրեմն մոռացիր և ինձ»,- պատասխանում է մինչ այն «ազատամիտ հայեացքների տէր» ճանաչուած Մարթան և հեռանում եղբօր տանից:

Ինչպէս տեսնում էք, պ. Շիրվանզադէն շօշափում է ըստ երևոյթին մի շա՛տ ժամանակակից հարց և Ալավէրտեանի բերանով պաշտպան է դուրս գալիս մի լիովին մարդասէր և ազատամիտ գաղափարի: Ալավէրտեանի վարմունքն ու տրամաբանութիւնը ինձ թւում է, որ կատարելապէս արժազանք գտան հանդիսականների մեծամասնութեան սրտում, քանի որ պիեսան մեծ աջողութիւն ունեցաւ և անվերջ ծափերու առիթ տուաւ:

Դա, ինչպէս տեսնում էք, կնոջ իրաւունքների հաւասարման խնդիրն է մարդկանց իրաւունքներին: Այդ հարցն անյայտ և անծանօթ չէր մարդկութեան, բայց այն ձևով, ինչպէս մենք տեսանք այս խաղում, կարծեմ մեզանում դեռ ոչ ոք չի՛ շօշափել:

Մենք խնդիրը պարզելու համար ստիպուած ենք մի քիչ շեղուիլ գրական-գեղարուեստական կողմից և ուզում ենք քննադատութեան առնել այս թատերգութեան լոկ գաղափարը՝ գիտական և ընկերական տեսակէտներից, գաղափար, որ այնքան թերուղէմ խօսակցութիւններ առիթ տուաւ հասարակութեան մէջ:

Երբ մենք մարդկութեան երկու սեռի հաւասարութեան հարցն ենք դնում իրաւունքների մէջ, պէտք է, անտարակոյս, միևնոյն հարցը դնենք

և նրանց պարտականութիւնների, և նրանց էութեան ու կոչման մէջ.- եթէ մենք ուզում ենք խնդրին լուրջ վերաբերուել, պէտք է ուսումնասիրենք, թէ ի՞նչ է կինն ըստ էութեան և ի՞նչ է տղամարդն ըստ էութեան, և ապա միայն, դարերի և հազարաւոր դարերի մշակած համայնական կազմը տապալելու ջանանք: Մենք պիտի խորամուխ լինինք պարզելու և հասկանալու, թէ մեր պահանջած իրաւունքներու հաւասարութիւնը բղխո՞ւմ է արդեօք իրերի անհրաժեշտութիւնից, մի պարտք չէ՞ նա արդեօք, մի զոհողութիւն կամ զրկանք չէ՞ մի կամ միւս կողմի համար:

Մենք պէտք է դիմենք բնութեանը, որովհետև չկայ մի աւելի անողոք ու անաչառ դատաւոր քան բնութիւնը, իմանալու համար թէ ի՞նչ է տուել նա մեզ և ի՞նչ կանանց: Այդ ամէնը տեսնելուց և ճանչնալուց յետոյ միայն երբ մենք կանգնած ենք բնական, հաստատուն և յաւիտենական օրէնքների վրայ, հիմնենք մեր շէնքը, որ Աւետարանի ասածի նման, «ոչ հողմից տատանուի, ոչ անձրևից փուլ գայ»:

Հարցն այստեղ բաւական նեղ է դրուած: Շիրվանզադէն շօշափել է միայն խնդրի սեռական մասը, ուստի մենք էլ պիտի աշխատինք դորանից շատ չհեռանալ, կարելոյն չափ կանգնելով գիտական հողին վրայ: Արդ, Դարւինը, որի հեղինակութիւնը այսպիսի խնդիրներում վեր է ամեն կասկածից, ասում է, որ «արուների սեռական ցանկութիւններն, համարեա բոլոր տեսակներում, աւելի զօրեղ, աւելի ուժգին են քան էգերինը». Լօմբրօզօն, կանանց ամենատաղանդաւոր ուսումնասիրողներից մինը, համաձայնելով Դարւինի հետ՝ պնդում է, որ բազմաթիւ կանայք անձնատուր են լինում համարեա առանց հաճոյքի, և սա հաստատւում է թէ՛ փորձառու տղամարդկանց և թէ՛ յայտնի կանանց խոստովանութիւններով: Նա ի միջի այլ բազմաթիւ վկայութիւնների բերում է Սերգիի խօսքերը, թէ «կինը ցանկանում է սիրուիլ տղամարդուց, բայց անձնատուր է լինում ինչպէս մի զոհ. ես ճանաչում եմ շատերին, որոնք զզւում են զուգակցութիւնից, թէև պաշտում են իրանց ամուսիններին, ճանաչում եմ օրիորդների, որոնք բախտ և ուրախութիւն էին որոնում ամուսնութեան մէջ, բայց որոնք միայն ձանձրոյթ գտան այնտեղ...»

Միշլէն ասում է, որ «յիմար են, որոնք կարծում են, թէ կինն անձնատուր է լինում ֆիզիքական սիրուց դրդուած: Փորձառու մարդկանց

շատ լաւ յայտնի է, որ կնոջ յաղթելու առաջին պայմանն է հաճոյակատարութիւնն ու բարութիւնը»:

Մարդը երբէ՛ք նպատակ չէ կնոջ համար, այլ միջոց. կնոջ նպատակն է զաւակը. սա այնքան գեղեցիկ կերպով արտայայտուած է Աստուածաշունչի մէջ, ուր անզաւակ Հռաքելը գոռում է Յակոբ նահապետի երեսին. «Տուր ինձ մի որդի, թէ չէ ես կը մեռնիմ»: «Մարդը կնոջ համար մի հովանաւոր է լոկ և իր զաւակների հայրը», -ասում է Լոմբրոզոն:

Սեռական նուազ հաճոյքն է պատճառ, որ շատ օրիորդներ մի անգամ սխալուելուց յետոյ, հիասթափ՝ երևակայած պատրանքից, դադարում են այնուհետև մոլութիւնից:

Այդ ամենի հետ, կնոջ հոգւոյն մէջ կան գծեր, որ տղամարդու համար միանգամայն անհասկանալի են, ինչպէս օրինակ «կուսութեան զգացումը»: Դա կնոջ համար թագ ու պարծանք է, և այնքան խոր ու արմատական է այդ զգացումը, որ շատեր, ամուսնացած օրիորդներ, հրաժարում են առագաստից իրանց սեփական ամուսինների հետ: Բոլոր ամուսնացած կանայք կարող են հաստատել, որ կանանց մեծամասնութիւնն էլ երկար ժամանակ իրանց ամուսիններին չեն կարողանում ների այն, որ նոքա ամուսնու ձեռքով զրկուել են այնպիսի մի թանկագին գանձից, ինչպիսին է կուսութիւնը: Միայն տարիներն ու զաւակներն են, որ մոռանալ են տալիս կնոջ իր անգնահատելի կորուստը: Այդ է միա պատճառը, որ բոլոր կուլտուրական լեզուները երկու բառ ունին ամուսնացած և ամուրի կանանց համար. դորանք իրանց զգացումներով և էութեամբ միանգամայն տարբեր էակներ են. նորանցից մին «օրիորդ» է, իսկ միւսը «կին»: Ո՛չ մի կուլտուրական լեզու այսպիսի տարբեր բառեր չունի ամուրի և ամուսնացած տղամարդու համար:

Այդ ամենը կարծես շեշտելու և երկու սեռերի մէջ եղած խրամատը հաստատ և անխուսափելի անելու համար, բնութիւնը մի ֆիզիքական պատուար է դրել, որի միւս կողմը յղութեան ուրուականն է կանգնած իր սարսափներով: Այս բոլորը միասին համախմբուած են պաշտպանելու մի թոյլ էակի անարատութիւնը՝ գրեթէ մի անառիկ բերդի նման...

Այդպէ՞ս է արդեօք ինքը՝ տղամարդը:

Նրան միանգամայն խորթ ու անծանօթ են այն ամենը ինչ որ տեսանք կնոջ հոգու և մարմնի մէջ: Կուսական անարատութեան զգացման հետքն անգամ չկայ տղամարդու մէջ, որին ընդհակառակը, բնութիւնը պարգևել է մի տաք ու կրքոտ խառնուածք, նախաձեռնութեան ոգի, վառվռուն և անզուսպ սեռական ցանկութիւն և բուռն վաւաշոտ հաճոյք: Դարւինի կարծիքը այսպիսի խնդիրներում գրեթէ օրէնքի նշանակութիւն ունի. «արուն է միշտ, ասում է նա, որ որոնում է էգին». և ի նկատի ունեցէ՛ք, այդ ուժգին կիրքն ու բուռն ցանկութիւնը բնութեան կողմից չեն սահմանափակուած ո՛չ մի պատուարով, ո՛չ ֆիզիքական նեղութիւն և տանջանք, ո՛չ յղութեան սարսափ, ո՛չ զաւակների հոգս և ո՛չ էլ նոյն իսկ մի մեծ բարոյական զրկանք...

Այսպէս ուրեմն, ինքը, բնութիւնը մի մեծ խրամատ է դրել մեր երազած հաւասարութեան մէջ: Կնոջ ցանկութիւնները նուազ են, կիրքը սահմանափակ, սեռական գրգիռն ու հաճոյքը չափաւոր, օժտուած՝ կուսական զգացումով հոգեպէս, և ապահովուած ֆիզիքապէս,- այնինչ տղամարդունը ամէն բանով բուռն, զօրեղ, գերազանց, անզուսպ՝ առանց որ և է բարոյական կամ ֆիզիքական խոշոր պատասխանատուութեան ու կորուստի:

Ո՞վ ուրեմն այս երկու արարածներից ընդունակ է համբերող ու ժուժկալ լինելու... և եթէ մենք բաց ենք անում համբերութեան ու զգաստութեան սահմանները երկուսի առաջ հաւասարապէս, մի անարդարութիւն չէ՞ դա արդեօք բնութեան օրէնքների կամ հէնց հաւասարութեան դէմ, որպէս սկզբունք. այնպէս որ, մեր կրթուած ու դիպլօմաւոր Ալավէրտեանը, որ մասնագէտ է մարդկային օրէնքներին և ճարտար իրաւաբան, բնութեան օրէնքներին և իրաւունքներին՝ որոնք յաւիտենական են և անխախտելի, միանգամայն անտեղեակ է երևում:

Բայց կարելի է առարկել, որ մարդասիրութիւնն ու ներքին ձայնը մեզ դրդում են իսկի ուշադրութեան չառնել բնութեան բիրտ ու կոպիտ օրէնքները: Իսկ մեր ներքին ձայնը չի կարող չհամաձայնիլ Ալավէրտեանի հետ, որը մեծահոգութեամբ ներում է իր ամուսնու յանցանքը: Մեր դարու լայն ու մարդասէր գաղափարները չեն կարող թոյլ տալ, որ մարդը վայելի ամէն տեսակ ազատութիւն, իսկ կինը ճնշուած ու փակուած մնայ հարեմական կապանքների տակ: Դա դէմ է արդա-

րութեան և հաւասարութեան ամենատարրական հասկացողութեանը, որ եւրոպական լուսաւորութիւնը մտցրել է մեր մէջ:

Ալավէրտեանի խիղճն ու բանականութիւնը պահանջում էին, որ նա սուս ու փուս լռէ, ու ներէ, այն պատճառով, որ ինքն էլ անարատ մէկը չէ եղել. «Ես հաւասարութեան երկրպագու եմ, մտածում է նա, կինս յանցանք և սխալ է գործել, բայց դէ՜ ես էլ մի բարի պտուղ չեմ եղել. հետևաբար մենք քուիտ ենք.- ըստ առածի՝ այծը կտաւէն դուրս»:

Այս գաղափարը կայ օդի, մամուլի և քիչ թէ շատ կրթուած հասարակութեան մէջ, բայց և այնպէս, ամէն մարդ, ինքն իրան, իր սրտի խորքում, մի քիչ այլ կերպ է մտածում: Հեշտ է, իհարկէ, թատրոնում ոգևորուիլ ու ծափահարել ներող և ազատամիտ հերոսին, բայց սոյն «դրաման» ունենալ իր սեփական տանը, տեսնել իր մօրը, կնոջը, հարսին և կամ քրոջը Եւգինէի դերում, կարծեմ մեզանից ոչ ոք չէր ցանկանայ:

Ի՞նչ է պատճառը, միթէ մեր խելքն ու բանականութիւնը, մեր խիղճն ու համոզումները, մեր ուսումն ու կրթութիւնը բաւական չե՞ն խեղդելու մեր մէջ գազանը և թօթափելու դարերով խտացած բնազդը... և եթէ կայ մի այդպիսի կռիւ կամ տարակուսանք, չունի՞ դա արդեօք մի խոր, ընկերական-բարոյական հիմունք, որը մենք չենք կարող ճնշել հակառակ մեր բոլոր ճիգ ու ջանքերին: Չունի՞ն արդեօք Ալավէրտեանի հոգեկան տանջանքները խոր բարոյական պատճառներ: Մի պատրանք չէ՞ արդեօք, որ այդ ամէնը մենք վերագրում ենք գազանի չար բնազդին, որ բղխում է կոյր նախանձից և սնունդ առնում արուի խանդոտ հոգու խորքերում...

Կան գուցէ մեր գիտակցութեան մէջ աղօտ մնացած կայծեր, որոնց գոյութիւնը մենք ուրանալ չենք կարող՝ հակառակ մեր բոլոր համոզումներին:

Արդ, քննենք ու վերլուծենք Ալավէրտեանի տրամաբանութիւնը և տեսնենք, համապատասխանո՞ւմ է դա նրա դաւանած հաւասարութեան և մարդասիրութեան սկզբունքներին:

«Ես կնոջս ներում եմ». ինչո՞ւ. որովհետև ես ինքս արատաւոր եմ,- այն՝ ինչ որ ինձ ներելի է, ներելի է եւ՛ նորան, քանի որ մենք հաւասար ենք»:

Շարունակենք այս տրամաբանութիւնը.- «ես արատաւոր եմ, հետևաբար կինս էլ կարող է արատաւոր լինել. ես աւազակ եմ, իրաւ-

ունք եմ տալիս նոյնը լինելու ե՛ւ կնոջս. անառակ եմ, թող կինս էլ անառակ լինի, հրէշ եմ, կարող է կինս էլ հրէշ դառնալ...»:

Այստեղ անմիջապէս յառաջ է գալիս մի հարց. ես իրաւուք ունի՞մ արդեօք «արատաւոր», «կեղտոտ» և «հրէշ» լինելու.- ո՛չ:- Ինչպէ՞ս հապա իմ չունեցածը ես իրաւունք եմ համարում տալու ուրիշին: Սա մի ակներև անիմաստութիւն է: Եւ ի՞նչ է իմ տուածն ըստ էութեան. իմ արատը, իմ կեղտը և իմ ապականութիւնը: Ես ստոր եմ եղել, ես թերացել եմ վարք ու բարքի մէջ և ես թոյլ եմ տալիս նոյն թերութիւններն իմ կնոջը. ես հաւասարեցնում եմ նրան իմ արատի, կեղտի, թերութեան և ա՛յն ամենի հետ, ինչ որ ինքս իբրև բարոյական մարդ իրաւունք չունիմ անելու: Պարզ ի պարզոյ ես նորան տալիս եմ անբարոյականութիւն: Իմ տուածը մի դրական արժանիք չէ՛, այլ բացասական կողմը: Հետևաբար այստեղ իրաւունքի մասին խօսք անգամ լինել չի՛ կարող. ա՛յն ինչ որ արդիւնք է մեր թուլութեան ու մեղկութեան տալիս ենք վայելելու մեր կնոջը: Բարձրացում, զարգացում չէ դա կնոջ համար, այլ մի կատարեալ անկում:

Կը ներէ՞ր արդեօք Ալավէրտեանը, եթէ ինքն անարատ լինէր, եթէ նա իր մարմնի և հոգու բոլոր գանձերը պահած լինէր մի անարատ ընտանիք կազմելու համար: Այն ինչ որ նա է տրամաբանում, մի կատարեալ ծաղր է հաւասարութեան համար. «Ես մեղաւոր եմ եղել, կարող էր կինս էլ նոյնը լինել».- Կինս ուրեմն արդարանում է իմ մեղքով: Ուրիշ խօսքով, մենք ներում ենք ոչ թէ մեր կնոջը, այլ մեզ միայն: Նորա յանցանքը ես ծածկում եմ իմինով. ներում եմ նորան, որովհետև ինքս ինձ ներել եմ... Այս ամէնը ինչպէս տեսնում էք, բուրում է մի կատարեալ մեղկութիւն, մի ստոր եսամոլութիւն, և մի շնական ծաղր... Հերիք չէ որ ես յանցաւոր եմ, ես համարձակում եմ «ներելու» նաև ուրիշին և այդ ուրիշը դեռ «14 շահի էլ պարտք է մնում ինձ», և այս ամէնը ես ծախում եմ հաւասարութեան, վեհանձնութեան և մարդասիրութեան անուններով...

Սա ինչպէս տեսնում էք, մի շա՛տ ձեռնտու առուտուր է տղամարդու համար. «Ես չեմ կարող քեզ չափ մաքուր լինել, բայց թոյլ եմ տալիս, մինչև անգամ մեծահոգութեամբ ներում եմ, որ դուն ինձ չափ կեղտոտ լինես»:

Ամէն մի անարատ կին պիտի սոսկար այս քարոզից և պիտի բողոքէր մի այդպիսի բարոյականութեան դէմ, որը նորան ուղղակի դէպ ի անկումն է տանում: Իբրև շնորհալի դիտող, պ. Շիրվանզադէի աչքից չէ վրիպել մաքուր կնոջ այդ զգացումը: Երբ Ալավէրտեան «մեծահոգութեամբ ներում է իր կնոջը», նորա քոյրը Մարթան, որ մինչ այդ ատեն «ազատամիտ և լայն հայեացքների տէր մի կին» էր, հեռանում է եղբօր տանից, ասելով. «Մոռանում ես կնոջդ յանցանքը, մոռացիր և ինձ»: Բայց այդ արդարացի, հոգեբանօրէն միանգամայն ճիշդ, հետևաբար և բարձր գեղարուեստական գիծը պիեսայի մէջ ծաղրուած է տաղանդաւոր կերպով, որովհետև դա հեղինակի հիմնական հայեացքին հակառակ է, ուստի իբրև Ալավէրտեանի բարձր բարոյականութեան մի ողորմելի կոնտրաստ ներկայացուած է այնպէս, որ ամբողջ հասարակութեան ծիծաղն է շարժում: Մարթան չէ կարողանում փաստաբանել և ապացուցանել, բայց նա իր հոգու անարատութեամբ շա՛տ աւելի խոր և շա՛տ աւելի հեռուն էր տեսնում քան իւր եղբայրը: Իբրև մաքուր կին, նա ամբողջ էութեամբ զգում էր, որ այդ ներումը եթէ համայնական բնութիւն ընդունէ, պիտի կնոջ ամենասրբազան իրաւունքների հիմը փորէ, լայն ճանապարհ բանալով Գաբօների առջև. տուժողը այդպիսի դէպքերում պիտի լինեն միմիայն ամենաազնիւ անհատները... Ինքը, «ազատամիտ, կրթուած և լայն հայեացքների տէր» Մարթան, շա՛տ լաւ էր զգում, որ դա իրաւունք չէ, այլ պարտազանցութիւն, մինչ նորա իրաւաբան և այսպիսի հարցերում իրաւագէտ եղբայրը դուրս գալիս է ոչ միայն տգէտ, այլ գրեթէ անբարոյական մէկը, որ իր պարտազանցութիւնը ուրիշին տալիս է իբրև իրաւունք:- Այլ կերպ պիտի զգար ու մտածէր մեր վեհանձն պարոնը, եթէ ինքն էլ Մարթայի նման անարատ և անմեղ լինէր...

Պ. Շիրվանզադէն հարցն այստեղ բաւական նեղ է դրել: Նա վերցրել է կնոջ սխալը նորա ամուսնութիւնից առաջ, որ, ինձ թւում է, բաւական հազուադէպ երևոյթ է մեզանում: Բայց հազուադէպ չէ, մինչև անգամ շա՛տ յաճախադէպ է կնոջ սխալը ե՛ւ ամուսնութեան մէջ...

Ռուս հեղինակ Ն. Դանչենկօն այդպէս էլ դնում է հարցը իր «Կեանքի արժէքը» պիեսայում, ուր հերոսուհի տիկինը առանց որ և է հիմնական պատճառների դաւաճանում է ամուսնուն. սիրականը ինք-

նասպան է լինում և ամուսինը ներում է յանցաւոր կնոջը, վախնալով՝ որ նա էլ կարող է անձնասպանութիւն գործել:

Ինձ թւում է, որ պ. Շիրվանզադէն այս խաղը գրել է ռուս կեանքի և գրականութեան ազդեցութեան տակ, ուր, պէտք է ասած, ամենալայն և համբերող հայեացքներ են տիրում այսպիսի հարցերի վերաբերեալ: Այլ կերպ է նայում այդ հարցին ժամանակակից դրամատուրգներից մէկը, Զուդերման: «Հայրենի տան» մէջ (Heumat) ծերունի զինուորականը հարցափորձի է ենթարկում իր դուստր Մագտային և միևնոյն ժամանակ պատրաստւում է սպանել իրան կամ դստեր, սակայն երբ իմանում է նորա արատաւոր լինելը, կաթուածահար մեռնում է: Ի նկատի ունեցէք, որ սա մի հայր է և ոչ մի ամուսին, և չի կարողանում ներել մի աղջկայ, որը ներուելու բոլոր հանգամանքներն ունէր. նա մի դերասանուհի էր, իւր հայեացքներով մի ազատ թռչուն...

Միայն գրականութիւնն ու մամուլը չէ, որ զբաղւում է այս հարցով: Դրա վրայ երկար ժամանակ գլուխ են ջարդել նաև օրէնսդիրներն ու կառավարութիւնները:

Ճիշդ Շիրվանզադէի հաւասարութեան գաղափարից դրդուած, ի նկատի ունենալով մանաւանդ անմեղ մանուկների վիճակը, Գերմանիայում մի 10-15 տարի սրանից առաջ մի օրէնք հրատարակեցին, որով ապօրինի զաւակներու հայրերը պարտաւորում էին հոգալու իրենց որդոց ապրուստը: Սակայն, այդ մարդասէր օրէնքը մի զարմանալի հետևանք ունեցաւ: Դրա հրատարակումից յետոյ ապօրինի ծնունդների թիւը զարմանալի կերպով սկսեց աճել: Մինչ այն ժուժկալ ու համեստ Գերմանուհիք սկսեցին իրանց վրէժն առնել տղամարդկանցից՝ բեռցնելով նրանց վզին բազմաթիւ երեխաներ, որոնց կերակրել էր հարկաւոր:

Հաւասարական այդ դառն փորձից յետոյ, օրէնքն ստիպուած էին փոխելու...

Արդ, պ. Շիրվանզադէի գեղեցիկ ու մարդասիրական թատերգութիւնից յետոյ, որին ա՛յնպիսի ջերմութեամբ ծափահարեցինք ամենքս, պատրա՞ստ ենք արդեօք ընդունելու և այն «սիւրպրիզ»ները, որ Գերմանուհիների նման հայ օրիորդներն էլ պիտի ցանկային անել իրանց սիրականներին...

Մենք հարցը քննեցինք, առաջին՝ բնագիտական տեսակէտով, և գտանք, որ այս խնդրում կնոջ և մարդու հաւասարութեան մասին խօսք լինել չի կարող: Երկրորդ՝ նոյն հարցը մենք քննեցինք բարոյական տեսակէտից, և տեսանք, որ Ալավէրտեանի տուածը իւր կնոջ իւր իրաւունքները չեն այլ իւր պարտազանցութիւնն ու ցոփութիւնը, և այստեղ իրաւունքի կամ արդարութեան մասին խօսք անգամ չի կարող լինել: Երրորդ՝ խնդիրը նկատեցինք իւր հետևանքների գործնական տեսակէտովն և գտանք, որ դա լիովին վտանգաւոր է: Ուրեմն, եզրակացութիւն.- խաղի հիմնական միտքը ոչ միայն սխալ, այլ և վտանգաւոր է ամեն տեսակէտով:- Վերցնելով մի բացառիկ երևոյթ, հեղինակը մեզ մի բարոյականութիւն է քարոզում, որ արդիւնք է թիւրիմացութեան և իրան հետ միասին մեզ էլ այն համոզումն է ներշնչում, թէ Ալավէրտեանի կատարածը մի օրինակելի և վեհանձն գործ էր: Այս սխալը, ինչպէս տեսանք, միայն պ. Շիրվանզադէինը չէ. այդ սխալը կատարել են շատ մեծ ու փոքր եւրոպական հեղինակներ. կատարել է, ինչպէս տեսանք, և գերմանական Րայխստակը, ուր Բիսմարկի նման գլուխներ էին իշխում:

Թիֆլիս

Յ. Գ. Այս թատերգութեան գեղարուեստական մասին մենք չենք խօսում. նրա առաւելութիւններն այնքան շատ են, որ պակասութիւններն ու թերութիւնները կարելի է միանգամայն անտես առնել: Հեղինակը մշակում է իր գործը՝ երկրորդ ներկայացման համար, որից յետոյ, եթէ ուրիշները մեզ չկանխեն, գուցէ կարողանանք մեր համեստ նկատողութիւններն անել: Խաղի աջողութեան ամենաեռանդուն ծափահարողներից մինն էինք մենք, տեսնելով մեր առաջին վիպասանին մէջ և առաջնակարգ թատերգակի շնորհք: Թատրոնից մենք հեռացանք այն հաճելի գիտակցութեամբ, որ Սունդուկեանի տեղը թափուր չի մնալու այսուհետև:

Գ. Վ.

**«Անահիտ», 1902 թ., թիւ 3, էջ 60-61, թիւ 4, էջ 87-89**

## Ղ. ԱՂԱՅԱՆՑ

Հեշտ չէ երկտողով բնորոշել մի դեմք, որ գործել է քառասուն տարի շարունակ մեր կյանքի մտավոր ասպարիզում որպես խոշոր գրական տաղանդ, մանկավարժ, գրող ու մտածող:

Աղայանը մեր նորաշեն լեզվի մեջ մտրել է գյուղի և բնության ծոցում բուսած ծաղիկներից ամենեն հոտավետը, ամենեն գունավորն ու հրապուրիչը:

Նա մի չքնաղ լեզվով թոթովել է հայ մանկան հետ, հեգել ու վանկել, երգել է և նվագել. թափառել է հեքիաթների զառանցական աշխարհում և հրճվել, ցած է եկել այցելելու իր երկրի հովվին ու մաճկալին և նկարագրել: Երգել է հայ գյուղացու ճախարակն ու խնոցին, թանն ու մածնափրթոշը, գութանն ու արորը:

Ծիտ ու կաչաղակը, սոխակն ու աղունակը, հայրենի բնությունը՝ իր բիբլիական վեհության՝ նա նկարագրել է մի անկեղծ, մի բնական այնպիսի հոգեզմայլ հիացմունքով, որպիսին կարող է ունենալ մանկական ջինջ ու մաքուր հոգին…

Ես ողջունում եմ ահա այդ ջինջ, այդ անարատ և մանկական հոգին այս վաթսունամյա ծերունու մեջ և ցանկանում եմ, որ իր դասագրքերի ու երգերի հետ այդ հոգու մաքուր և անարատ թռիչքն հավիտենապես ժառանգություն մնա հայ մանկանը և հայ հասարակությանը: Այսդպիսի հոգիների մենք շատ ենք կարոտ:

1902

Ծանոթագրություն.

*Ինչպես Շիրվանզադեի այս հոդվածը, նույնպես և հետագա մի շարք հոդվածներ (Հովհ. Թումանյանի երկրորդ հոդվածը, այլև Ալ. Արասխանյանի, Գր. Վանցյանի, Սարիբեկ Տեր-Մելիքսեդեկյանի հոդվածները), և Ջիվանու, Հար. Թումանյանի և Ավետիք Համբարձումյանի ոտանավորները՝ գրված են եղել Աղայանի հոբելյանի առիթով ու տպագրվել էին «Տարազ» հանդեսի առանձին հոբելյանական համարում, բայց այդ համարը գրաքնությունն արգելում և թույլ չի տալիս, որ լույս տեսնի հոբելյանի օրերին: «Տարազ»-ի խմբագիր և*

*հրատարակիչ Տ. Նազարյանը պահում է բոլոր այդ նյութերը և նույն հաջորդականությամբ հրատարակում իր հանդեսի 1911 թ. մայիս – հունիսյան միացյալ համարում՝ նվիրված Աղայանի հիշատակին, նրա մահվան առթիվ գրված այլ նյութերի հետ միասին: Տե՛ս «Տարազ»-ի հոբելյանական այդ համարի առաջին էջի լուսանկարը: Այդ էջի վերևի ձախ անկյունում և ներքևում՝ խմբագրությունը տվել է հետևյալ տեղեկանք-ծանոթագրությունը.*

*«Ղ. Աղայանի հոբելյանին, կիրակի, 19 մայիսի, 1902 թ. «Տարազ»-ի համար շարված, բայց լույս չտեսած հոդվածները»:*

*«Ֆանտազիա» այգում մայիսի 19-ին Ղ. Աղայանին ողջունելով, Տ. Նազարյան դափնյա պսակով պճնազարդեց հոբելյարի ալեզարդ գլուխը՝ մատուցանելով նրան այդ օրվա առիթով «Տարազ»-ի N-ի հոդվածները՝ ցենզուրայից ամբողջովին ջնջված և չթույլատրված հրատարակվելու, հոբելյանը (Գալիցինի օրով) արգելված լինելու պատճառով:*

*Իհարկե, ինչպես տեսնում ենք, այդ հոդվածներն իրենց բնույթով ու բովանդակությամբ քաղաքական բնույթ չունեն. դրանց հեղինակները որևէ բացարձակ քննադատական խոսք չեն ասում տիրող ռեակցիոն ռեժիմին, հայ ժողովրդի ու նրա առաջադեմ մտավորականության, հայ մշակույթի նկատմամբ դարերի դաժան ճնշման և այդ նողկալի ռեժիմի դեմ պայքարելու մասին, բայց և այնպես «Տարազ»-ի հիշյալ հոբելյանական համարը, որ այդ հոդվածներից էր կազմված՝ արգելվել է:*

**Ղազարոս Աղայանը ժամանակակիցների հուշերում, Երևան, 1967, էջ 94, 495:**

# ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ԶՐՈՅՑՆԵՐ

Սրանից հազարաւոր տարիներ առաջ, Գանգէսի սրբազան ափերին, հնդիկ փիլիսոփաները խորասուզուած յանդուգն մտածութիւնների մէջ, կեանքի, տիեզերքի, իրերի, Աստուծու և հոգու մասին, մի մեծ-տիեզերական գիւտ արին: Մի գիւտ, որ իր աhռելիութեամբ մեր ամենօրեայ փորձերին արմատօրէն հակասում է: Այդ կրօնաւոր փիլիսոփաները գտան, որ աշխարհը գոյութիւն չունի, այլ միայն հոգին, միայն մարդկային գիտակցութիւնը:

Իրանց մտածման էքստազի մէջ նրանք մոռացան իրանց տեսածը, լսածը, կերածը և շօշափածը, նոքա յայտարարեցին և ուրացան իրերի գոյութիւնը և ամբողջ աշխարհը հրատարակեցին երևակայական:

Մարդկային միտքը այդպիսի մի hսկայական սխալ գուցէ երբէք չէր գործել: Կուլտուրայի ամենաստոր աստիճանի վերայ կանգնած պապուասը և տիեզերքի օրէնքները քննող ու պարզաբանող հանճարը միաժամանակ հակառակ պիտի լինին այդ մոլար մտքին: - Ի՞նչպէս թէ չկա՛յ աշխարհը. հապա արևը, որ ամեն օր մեր աչքերով ենք տեսնում, հապա աստեղազարդ երկինքը, ապա մայիսուայ բնութեան հրաշալիքը կամ ձմեռնային բուքի արհաւիրքը, ապա ձիւն ու կարկուտը, անձրևն ու տարափը, ապա hսկայափառ, ալեզարդ Հիմալայի կատարները և սոսկալի, կիզիչ Սահարայի տապը, վերջապէս մեր անձը, մեր եսը, մեր ուրախութիւնն ու քրքիջը, մեր ահն ու սարսափը, ի՞նչպէս կարող է այս ամենը երևակայական լինել, ի՞նչպէս կարող է սա գոյութիւն չունենալ:

Այդ է մանուկ երևակայութեան հակաճառութիւնը: Տե՛ս քեզ ինչպէս կպատասխանէ գիտունի հանճարը, որ իր գրասենեակում նստած, ապաւինելով լո՛կ արտաքին օրէնքների անշեղ ուսումնասիրութեանը, գուշակում է ապագան. նախօրօք յայտարարում է անծանօթ տարրերի գոյութիւնը, կանխօրէն որոշում է երկնային մարմինների խաւարման օրը, ժամը, տեղը և վայրկեանը... լծում է էլեքտրականութիւնը, կառավարում է բնութեան ուժերը, ճանաչում է այդ ուժերի նիւթն և էութիւնը, հեռադիտակով զինուած, կարդում է երկնային մար-

միոնների ընթացքը և մանրադիտակի մէջ բաց է անում մի ամբողջ նոր աշխարհ, որ անտեսանելի է մեր հասարակ աչքին: Այդ գիտնականը քեզ և հնդիկ փիլիսոփային ապուշ կանուանէ, եթէ մի վայրկեան, մի րոպէ կասկած յայտնես արտաքին իրերի գոյութեան մասին և մոլորուած ինչ որ մի հոգու գոյութեամբ յափշտակուես: Հոգի, որ ոչ ոքին չի՛ երևացել, որին ոչ ոք չի՛ տեսել, չի՛ շօշափել, փորձի և քննութեան ոչ ոք չի ենթարկել, որը ո՛չ քիմիական անալիզների է ենթարկւում, ո՛չ ֆիզիքական չափ ու կշիռների...

Դա մի խելառ միտք է, մարդկային բանականութեան մի ցաւալի սխալը, ուրանալ ակներևը, իրականը, և ենթադրել ինչ որ մի երևակայական գրեթէ զառանցական աշխարհ:

Հնդկաստանի տաք ու բոցավառ կլիման, հարաւի բնութիւնը իւր վայրենի փարթամութեամբ, Հիմալայի հրաշալի կատարները, սրբազան Գանգէսի կապոյտ ալիքները և կրօնական էքստազով վառուած երևակայութիւնը միայն կարող էին մի այդպիսի ցնորալի միտք արտադրել: Մի պաղ ու սառնարիւն միտք, մի ճիշտ և հաստատուն տրամաբանութիւն չի՛ կարող հասկրել մի այդպիսի անկայուն կարծիքի:-

Եւ դորան հակասում է ներկայի գիտութիւնն իւր բոլոր փարթամութեամբ: Բնական գիտութիւնները, որ այսօր առաջադիմութեան հսկայական քայլեր են արել, պարտական են այն հասարակ իրողութեանը, որ կա՛յ արտաքին աշխարհ. այդ աշխարհը կառավարւում է որոշ օրէնքներով և հէնց այդ օրէնքների ուսումնասիրութեանն է նուիրուած մեր իմացականութիւնը: Երբ մենք քննում ենք մի երևոյթ, ճանաչում ենք նրա առաջանալու պայմանները, որոշում, գտնում ենք նորա պատճառական առնչութիւնը մնացեալ երևոյթների մէջ, դորանով մենք գործ ունինք միմիայն արտաքին աշխարհի հետ, ճանաչում ենք միայն արտաքին երևոյթների փոխադարձ յարաբերութիւնը: Այդ է բնական գիտութիւնների ծուծն և էութիւնը:

Գտնել տիեզերական երևոյթների մէջ թագաւորող կապը, ցոյց տալ նրանց պատճառական անհրաժեշտութիւնը, բոլոր երևոյթների բարդութիւնները լուծել, հալել մի արմատական երևոյթի մէջ, որ ծնող ու բղխող է բոլոր մնացեալին, ահա բնական գիտութիւնների նպատակը: Երբ արևը ցոլում է երկնքում և ովկիանոսը մռնչում է կատա-

դութեամբ, երբ մանկան շրթին անմեղ ժպիտն է խաղում և կուսի սիրտը մի անորոշ տենչանք է մրմնջում, այդ բոլորը բնագէտ-փիլիսոփան մի տիեզերական ընդհանուր օրէնքով է ուզում բացատրել. ամեն ինչ նիւթ է, ամեն ինչ ույժ է. և այդ ամենը նիւթի մասնիկների շարժում. թէ՛ մանկան ժպիտը, թէ կոյսի տենչանքը, թէ արևի ճաճանչը կամ ովկիանի մռունչը... արդիւնք են նիւթի շարժման...

Չկայ մի այլ աշխարհ բացի արտաքին աշխարհից, չկայ մի այլ երևոյթ, որ նիւթից անկախ գոյութիւն ունենար: Այս է բնագէտի հայեացքը. սորա յանդիման ամեն մի առարկութիւն թւում է մի անհիմն զառանցանք, որովհետև հէնց այս հիմունքներով զինուած, բնագիտութիւնը վերջին 50 տարիներում այնպիսի առաջադիմութիւն ցոյց տուաւ, այնպիսի հսկայական քայլեր արաւ, որի առաջ ափ ի բերան պիտի մնայ մարդկային հանճարի ամենայանդուգն երևակայութիւնը:

Սակայն, իրերի գոյութիւնը մերժող փիլիսոփան անդրդուելի է. նա փիլիսոփաներին յատուկ երկայնմտութեամբ լսում է մեր առարկութիւնները և միայն սպասում իր հերթին, որ մեր կառուցած շինութիւնը մէկիկ-մէկիկ հիմնատապալ անէ:

Բնագէտը, որ իր դիտողութիւններն ուղղում է դէպի արտաքին աշխարհը և բացատրում է այնտեղ առաջացած երևոյթները, կատարում է մի լռիկ ենթադրութիւն, որպէս թէ բացատրում է երևոյթները:

Վերցրէ՛ք մի երևոյթ, ասենք մարմինների լայնանալը տաքութիւնից, որ յայտնի է բաղանիսում կօշիկները հագնելուն չարչարւող ամեն մի անհատի: Տգէտն այդ երևոյթի վրայ ուղեղ չի՛ մաշում. գիտութիւնը, սակայն, դորանից շինում է մի ահագին հարց. դիտում, փորձում է և գալիս է այն համոզման, որ բոլոր մարմինները մի չնչին բացառութեամբ ենթակայ են այդ երևոյթին և դորանից շինում է մի օրէնք:

Մի ուրիշը, նոյն բաղանիքում, աւազանի մէջ զգալով իր մարմնի թեթևանալը, մանկան հրճուանքով գոռում է էւրիկա, գտայ որ մարմինները ջրում կորցնում են իրանց ծանրութեան մի մասը. մի երևոյթ, որ յայտնի է արար աշխարհին:

Այդ երևոյթներին բնագէտը կապում և բացատրում է բազմաթիւ այլ երևոյթներ և դորանից առաջանում է գիտութիւն:

Երեխան երբ իր գնդակը վերև է նետում, գիտէ, որ նա ցած պիտի ընկնի: Յայտնի է, որ բոլոր առարկաները ցած են ընկնում. բիւրաւոր այգեպաններ այդ երևոյթի շնորհիւ միայն ապրել են կարողանում, քանի որ խնձորները ծառերից դէպի երկինք չեն թռչում, այլ վայր են ընկնում մարդկանց ճաշակին բաւականութիւն տալու համար: Հազարաւոր տարիների ընթացքում այգեպանները չուզեցան օգտուել այդ հանրածանօթ երևոյթից. և մի Նիւթօնի էր վերապահուած դիտել խնձորի անկումը և նրանից ստեղծել մի տիեզերական օրէնք. խնձորը վայր է ընկնում, ուրեմն ցածումը մի ոյժ կայ:- Բոլոր առարկաները ցած են ընկնում, ուրեմն այդ ոյժը գոյութիւն ունի ամբողջ երկրի վրայ: Դորանով չի բաւականանում խնձորի հանճարեղ դիտողը. այլ այդ երևոյթը վերագրում է ամբողջ տիեզերքին. և նորանով բացատրում է բիւրաւոր երևոյթներ: Այն, որ մեր երկիրը ցած չի գլորւում տիեզերական անդունդի մէջ և փշուր կտոր լինում, այն որ մենք ամեն առաւօտ առիթ ունենք արևի ելքով ուրախանալու և ամեն երեկոյ աստղերի ցոլքով հրճուելու, այդ բոլորը խնձորի ճակատագրական անկման հետ համասեռ միևնոյն երևոյթի արդիւնքն է, որ Նիւթօնն անուանում է մարմինների ձգողութեան օրէնք...

Այդ մի հատիկ երևոյթի մէջ իրանց լուծումն են ստանում բիւրաւոր մանրիկ երևոյթներ, մենք գիտենք նոցա առաջանալու պատճառը,- մեր գիտութեան ծարաւը յագեցած է. մենք ճանաչեցինք բնութեան զարկերակը, որ ծնող է բիւրաւոր երևոյթների... այդ մենք անուանում ենք օրէնք...

Ով մի սրամիտ մանկան, կամ մի բոլորովին տգէտ, բայց ընդունակ մարդու հետ գործ է ունեցել, նկատած կլինի, թէ որքան դժուար է բաւարարութիւն տալը նոցա հարցասիրութեան: Փոքրիկ, 6-8 տարեկան մանուկը, որի հարցասիրութիւնն անտակտ միջոցներով չեն բթացրել, երբեմն հարցերի այնպիսի խորութիւն, իրերի պատճառական կապն իմանալու այնպիսի սրութիւն է ցոյց տալիս, որ ամենախելօք մանկավարժն անգամ ձեռնունայն, մի պատասխան ունի միայն տալու.- «մեծանաս, կիմանաս»:

Նա մեծանում է և իմանում է մի ողորմելի բա՛ն, որ իրան հարցասիրող ժամացոյցը, որի մէջ մի կենդանի արարած էր որոնում, որի մե-

քենայական կազմն իր փոքրիկ խելապատակով ըմբռնել անկարող էր, մի բարդ կազմութիւն ունի: Այդ ժամացոյցի մէջ դրուած է մի զսպանակ. զսպանակի մէջ ամփոփուած է մարդկային ձեռքի ոյժ. այդ ոյժը կանոնաւոր կերպով ման է ածում ժամացոյցի անիւները. սրանց վրայ ամրացած սլաքները պտոյտ գալով ժամատախտակի վրայ, ցոյց են տալիս տարածութեան մի որոշ չափ: Այդ տարածութիւնը ուղեղի մի բարդ գործողութեամբ մարդը նոյնացրել, նմանեցրել է ժամանակին: Այդ բարդ, հանճարեղ միջոցներով մենք որոշում ենք ժամանակը:

Եւ հասունացած մանկան ուղեղը գրեթէ բաւականութիւն ստացաւ: Կարելի էր աւելի հեռուն գնալ. կարելի էր ցոյց տալ, որ մեր ձեռքի ոյժը, որ հաղորդում ենք ամեն օր ժամացոյցի զսպանակին լարելիս, ստացել ենք մեր կերակրից - մեր կերակուրը բաղկանում է բոյսերի կամ կենդանիների մարմիններից. իսկ բոյսերը արդիւնք են երկրի տարրերին և արևի գործողութեանը.- արևի, որ շարժիչն ու սնուցիչն է ամեն կենդանական տարրերի, առանց որին չէր կարող գոյութիւն ունենալ ո՛չ մի կենդանի արարած երկրիս երեսին... Մեր այս հանճարեղ ստեղծագործութիւնը, ժամացոյցն, ուրեմն, պատճառական արդիւնք է արևի գոյութեան,- եթէ չուզենք աւելի հեռու գնալ և նախանիւթն ու նախնական ոյժն յիշատակել:

Վերևը, քարի ընկնելը, տիեզերական մարմինների փոխադարձ կանոնաւորութիւնը և առհասարակ բիւրաւոր նման երևոյթներ Նիւթօնը վերագրում էր մի տիեզերական ոյժի գոյութեանը, որ նա կոչում է ձգողութիւն: Այնտեղ, երևոյթները պարզում, մի յայտարարի են բերում. այստեղ, ժամացոյցի կազմը, որ նոյնպէս բնական-մեքենական օրէնքների արդիւնք է, մենք վերլուծեցինք, բարդեցինք, բաց արինք երևոյթների մի շղթայ, որ հասնում է մինչև արևը, մինչև ինքը յաւիտենական նիւթը: Երկուսն էլ մի նպատակով միայն. մարդկային հոգու հարցասէր յատկութեանը բաւականութիւն տալու համար միայն: Այս է ահա ամեն մի գիտութեան ուղն ու ծուծը. սորանով է, որ մարդկութեան մեծամասնութիւնը բաւականութիւն է ստանում իր հետաքրքիր հարցասիրութեանը... Միայն սրամիտ մանուկը դարձեալ չի հասկանում ժամացոյցի շարժման պատճառը և փիլիսոփան սկսում է համոզուիլ, որ մարդկային իմացականութիւնը սահմանափակ, սոսկալի սահմանափակ է:

Եւ տեսէ՛ք, ի՜նչ միամիտ բացատրութիւն. քարը ցած է ընկնում, ես վերագրում էի Աստուծոյ նախասահման որոշման, մի ուրիշը սատանայի, մի երրորդն իսկի չի էլ հասկանում և չի էլ կարողանում բացատրել. Նիւթօնն ասում է որ ո՛չ Աստուած է քարը ցած նետողը, ո՛չ սատանան, այլ մի բնական զօրութիւն, որն ինձ նոյնքան անծանօթ, նոյնչափ խորը և անհարազատ է, որքան Աստուած, որքան սատանան. այն, որ ես վերագրում էի բնութեան կամայականութեանը. այն, որ ինձ թւում էր կոյր պատահականութեան արդիւնք, այն, որ ինձ աննպատակ, անտրամաբան էր երևում, և կամ այն, որ ես վերագրում էի տիեզերական, մի գերբնական հանճարի կանխորոշ մտածմանը. այդ բոլորը հերքում է Նիւթօնը և նորա տեղը տալիս է մի մեծ անյայտութիւն: Մի բնական-տիեզերական ոյժ, որից և ծագում է ներկայ երևոյթը: Բայց ես այդ երևոյթը չեմ հասկանում, ասում է մանուկը և ես այդ չեմ ըմբռնում, առարկում է փիլիսոփան:- Դու չբացատրեցիր, չպարզեցիր երևոյթը. կոյր պատահականութիւնը դու փոխարինեցիր օրինաւորութեամբ, որը ինձ համար նոյնպիսի հանելուկ է, որպէս առաջինը. այո՛, նոյն իսկ աւելի մեծ, աւելի խորհրդաւոր հանելուկ: Ես վերցնում եմ շղթայի մի օղը և հարցնում. ի՞նչ է այս: Դու ինձ ցոյց ես տալիս, որ այդ օղը կապուած է այլ օղերի հետ և միևն արդիւնք է միւսի: Ես հարցնում եմ. ո՞վ է Մարկոսը, ի՞նչ Մարկոսը: Դու պատասխանում ես. Մարկոսը Կիրակոսի թոռն է և Թորոսի որդին և այդ բոլորը Ադամի զաւակներն են: Մի անյայտի տեղ դու ինձ տալիս ես մի այլ անյայտ և այդ ամենը Դու անուանում ես գիտութիւն:

Մի՞թէ այդ է մարդկային գիտութիւնը:

Վերցնենք մի քիմիական երևոյթ: Քիմիան այսօր բնական գիտութիւնների թագուհին է համարւում. նորանով են ուզում կեանքը լուծել, նորանով են բացատրում բոյսերի, կենդանիների, օրգանաւոր և անօրգան մարմինների բիւրաւոր երևոյթները: Քիմիան ապացուցել է, որ մեր երկիրը և գրեթէ ամբողջ տիեզերքը բաղկացած է 70 չափ նիւթերից, որոնք տարրեր են կոչւում: Այն էլ հաւանական է, դորա համար կան յայտնի նշաններ, որ բոլոր այդ տարրերը արդիւնք են միևնոյն հիմնական նիւթի (urstof) մոլեկուլար տարբեր կապակցութեան:

Արդ՝ ի՞նչ է ուսուցանում մեզ քիմիան. շա՜տ բան, ըստ երևոյթին, իրօք ո՛չ մի բան ըստ էութեան: Նա մեզ սովորեցնում է, որ այդ նիւթերից ոմանք իրար սաստիկ սիրում են. երբ միմեանց հանդիպեցան, մեծ եռանդով միանում են իրենց հետ, այնպիսի եռանդով, որից շատ անգամ կրակ ու բոց է առաջանում: Այլ նիւթեր, ընդհակառակը. իրար ատում են. խսկի իրար հետ չեն միանում: Մագնիտի վրայ, դրանցից ոմանք դրական բևեռի մօտ են հաւաքւում, ոմանք բացասական...

Շատ ուսանելի և չափազանց հետաքրքիր են այդ երևոյթները. գործին անտեղեակ մարդը երբ մի պրոֆեսորի փորձերի ժամանակ քիմիական լաբորատորիա մտնի, նրան կարող է մինչև անգամ հրաշագործ համարել. և իրաւ, կատարւում են այդպիսի հրաշքներ լոկ բնական գիտութիւնների ուսումնասիրութեամբ. այսօր աղամանդ և օրգանաւոր նիւթեր են պատրաստւում քիմիայի լաբորատորիաներում: Այսօր, կեանքի հսկայական, առեղծուածային աղբիւրը, արևի լոյսի որի սպառումն ու հանգչելը վաղուց արդէն հաշուել են գիտունները, նոյնպէս մի քիմիական, վերջերս գտնուած մի տարերքի է վերագրւում, որն ընդունակ է անսպառ լոյս արձակելու, ուրեմն արևի սառչելն ու կեանքի մարիլը մեր երկրագնդի վրայ դառնում է մի գիտական զառանցանք: Սակայն, այն նիւթերը, ա՛յն երևոյթները և ա՛յն յատկութիւնները նիւթերի, որոնցով գիտութիւնը հրաշք է գործում առանց դիւական ուժերի աջակցութեան, գիտունի, քիմիկոսի համար մի նոյնպիսի առեղծուած են, ոպէս և մի հասարակ մահկանացուի: Քիմիան հնարել է ատոմների (հիւլէ) և մոլեկիւլների թէօրիա: Ատոմը նիւթի մանրագոյն, անբաժանելի մասն է. այդ (ատոմ նշանակում է անհատ) ատոմների, հիւլէների միութիւնից առաջ է գալիս մոլեկիւլը, ատոմի որոշ խմբակցութիւն,- իսկ մոլեկիւլների տարբեր կապակցութիւններից ու միութիւններից, բոլոր քիմիական ու ֆիզիքական երևոյթները բնութեան մէջ:

Այստեղ էլ, ինչպէս տեսնում ենք, գիտութիւնը իրան տուած հարցերն առօք-փառօք ամփոփում է բնութեան մի կամ մի քանի հիմնական երևոյթների մէջ, որոնց անունը նա տալիս է, որոնցով նա բացատրում է յայտնի իրողութիւններ, բայց այդ որը ինքը մնում է մի անլուծանելի, անհասկանալի մի առեղծուած, մի յաւիտենական հանե-

լուկ... Սատանան, դևը, Աhրիմանն ու Արամազդը, չարն ու բարին, լոյսն ու խաւարը, որոնցով բացատրում էր այդ երևոյթները դեռ մանուկ մարդկութիւնն իրան բոլորող երևոյթները, չքանում, կենդրոնանում են մի յաւիտենական «անյայտի» մէջ, անուանիր այն «նիւթ», «յաւիտենական ոյժ», «տիեզերական բանականութիւն» (Welt-Vernunft) այդ միևնոյն է: Այն, ինչ որ ես եմ որոնում, որի էութիւնն ինձ մահու չափ հետաքրքրում է, որին ես հոգով, մարմնով, իմ բոլոր էութեամբ ձգտում եմ, մնում է դեռ անլուծելի...

Վերցնենք մի այլ օրինակ. Լամարկ-Դարւինի թէօրիան: Հասարակ մահկանացուն ամենևին չի՛ հետաքրքրւում իմանալու, թէ այսքան կենդանիները, որոնցից մենք օգտւում կամ վնասւում ենք, ո՞րտեղից և ի՞նչպէս են առաջ եկել: Ս. Գրքի աւանդութեամբ, Աստուած է այդ բոլորի ստեղծողը. «ասաց և եղև»: Մարդու համար միայն բացառութիւն արաւ Աստուած: Բրուտի պէս, նա վեր է առնում մի բուռ հող, շաղախում, նմանեցնում է իր կերպարանքին, փչում է նրա երեսին, և ահա՛, մեր նախապապը պատրաստ էր.- կինը, որ արևելեան ազգերի մէջ առանձին յարգանքի արժանի չի եղել երբէ՛ք, ստեղծագործութեան մէջ էլ միայն Ադամի ներկայութիւնից յետոյ կարող էր առաջանալ, այն էլ նրա քնած ժամանակ:

Որքան էլ միամիտ համարենք այս երևակայութիւնը, չենք կարող ուրանալ մի խորին փիլիսոփայութիւն այս պատմութեան մէջ: Եթէ մի կողմ թողնենք դիցաբանական վարագոյրը, Մովսիսի կարծիքով՝ մարդն արդիւնք է հողի և օդի: Երկու հիմնական տարրեր, առանց որի, հների երևակայութեամբ և հէնց մեր այսօրուայ հասկացողութեամբ մարդը չի կարող ապրել:

Դարւինի թէօրիան և ներկայ գիտութիւնը բոյսերի և կենդանիների առաջանալը ա՛յլ կերպ է մեկնում: Երկրի զարգացման մի որոշ շրջանում, երբ արդէն նրա կեղևը պատրաստ էր, երկրի նիւթերից առաջացան որոշ քիմիական կապակցութիւններ[1], դրանցից առաջացաւ պրոտոպլազման.- կեանքի նախնական սաղմը. դորա էական կազմիչն է ձուի սպիտակուցը:- Դա առաջին կենդանին էր, որովհետև ունէր բոլոր կենդանիներին յատուկ հիմնական գծերը.- պահպանել իր ձևը իր

1. Տե՛ս մեր յօդուածը. «Կեանքի ծագումը», «Մուրճ»:

սերունդների մէջ, և փոփոխուել տարբեր պայմանների մէջ, այսինքն յարմարուել շրջապատող հանգամանքներին: Այդ, արտաքին պայմաններին յարմարուելն ու փոփոխուելն էր, որ առաջ բերաւ բիւրաւոր բոյսերն ու հազարաւոր կենդանիները: Բնութեան կոյր ոյժն այստեղ էլ փոխարինեց Աստուծուն. սորանով, ահա, մենք բացատրում ենք բիւրաւոր երևոյթները կեանքի մէջ:

Դարուինի, ինչպէս առհասարակ բոլոր հանճարեղ մարդկանց, մեծութիւնն այն էր, որ նա դիտեց ու մատնանիշ արաւ մի շատ հասարակ և հանրածանօթ երևոյթ.- ժառանգականութիւնն ու փոփոխականութիւնը կենդանի օրգանիզմների մէջ. և այդ երևոյթների հետ կապեց մի հսկայական ցանց այլ երևոյթների, որոնցով նա ապացուցեց կենդանական «տեսակների ծագումը»:

Սակայն, բուն այդ հիմնապատճառները, այդ ժառանգայնութիւնն ու փոփոխնակութիւնը Դարուինի թէօրիայի մէջ մնում են անբացատրելի, անլուծանելի առեղծուածներ: Ինչո՞ւ որդին ժառանգում է հօր կամ մօր յատկութիւնները, ինչո՞ւ տարբեր պայմանների մէջ նա ենթարկւում է փոփոխման, այդ մեզ չի բացատրում ո՛չ Դարուինը, ոչ էլ նրա աշակերտներից ո՛ր և է մինը:

Այդ թէօրիան լայնացրեց, ընդարձակեց մեր տեսութեան հորիզոնը, որպէս ուրիշ բազմաթիւ թէօրիաներ. նա բիւրաւոր երևոյթներ կապեց, կաշկանդեց իրար հետ, ցոյց տալով նոցա փոխադարձ կապն ու ազդեցութիւնը. նա ցոյց տուաւ օրգանաւոր աշխարհի զարգացման պատմութիւնն ամենապարզ և ամենահասկանալի կերպով, բայց այդ հիմնական երևոյթների էութիւնը նա էլ մեզ չբացատրեց:

Այստեղ էլ, մարդկային հանճարը կանգ առաւ այն դռան առաջ, որ բնութիւնը փակել է նրա առաջ յաւիտենօրէն:

Եւ հնդիկ փիլիսոփայի նորագոյն հետևողը, որ հարցասիրութեամբ հետևում էր բնագէտ-գիտնականին, առարկում է. բարեկամ, քո ասածները խելացի են ու համոզիչ. դու իմ առաջ բաց արիր մի հսկայական դաշտավայր երևոյթների և օրէնքների. դու ինձ ցոյց տուիր քո հանճարը, այդ երևոյթներից օգտուելու և նրանց կառավարելու մէջ. դո՛ւ, որ առաջ ստրուկ էիր դրանց, այժմ իշխող և կառավարող ես դարձել. բայց այդ ամենի էութիւնը, ինձ համար և անշուշտ, ամեն մի տրամաբան մտածողի համար մնաց փակ, անյայտ, անմեկնելի:

Դու ասում ես, որ կենդանական աշխարհն առաջացաւ ժառանգայնութեան և փոփոխման կանոններով: Ի՞նչ բաներ են այդ կանոնները, ի՞նչպէս է կատարւում այդ յարմարուիլն արտաքին պայմաններին. ի՞նչ ատոմային առաւելութիւն ունի մի մուկ, որ կարողանում է ապրել փոփոխուած պայմանների մէջ, մինչ, մի հսկայական մամոնթ մահուան է դատապարտւում ընդ միշտ...: Այս հարցերի առաջ դու մնում ես լուռ և անպատասխան:

Յետոյ, մենք դիմում ենք գիտութեան այլ ճիւղերին, օրինակ մի այնպիսի ճիշտ և հին գիտութեան, որպիսին երկրաչափութիւնն է:

Բաւական է նորա հիմքից մի քար դուրս քաշենք, որ նա հիմնայատակ լինի: Այդ գիտութիւնը հիմնւում է մի քանի ընդունելութիւնների վրայ, որ ակսիօմաներ են կոչւում. ուղիղ գիծը ամենակարճն է երկու կէտերի մէջ, որ ամբողջը հաւասար է իր մասերին, որ զուգահեռական գծերն իրար չեն հանդիպում և այլն և այլն:

Այդ բաները չեն ապացուցւում, այլ ընդունում են ինչպէս ճշմարտութիւններ: Կասկածեցիք այդ ընդունելութեան վրայ և ահա փուլ եկաւ մի ամբողջ, ճիշտ գիտութիւն:

Մի անյայտ, մի անբացատրելի երևոյթ լռիկ ենթադրւում է իբրև յայտնի և դորա վերայ կառուցւում է մի ամբողջ շէնք. այդ է բոլոր ճիշտ և անճիշտ, բնական և այլ գիտութիւնների էութիւնը:

Բացարձակ գիտութիւն մենք երբևիցէ ո՛չ ունեցել ենք, ոչ էլ ունենալ կարող ենք. գիտութիւնը միշտ յարաբերական է. մի անյայտը մենք վերագրում ենք մի այլ անյայտի, կամ բիւրաւոր անյայտներ մենք հիմնում ենք մի հիմնաւոր անյայտի վրայ, որը ենթադրելով «ակներև» կամ «յայտնի» բացատրում ենք մնացեալը.- նեղ, անբաւարար և ողորմելի է մեր գիտութիւնը:

Երբ գիտութիւնից մենք անցնում ենք դէպի արուեստը, դէպի մարդկութեան մի այլ հանճարեղ մտածողութեան խաղալիքը, այնտեղ արդէն բոլորովին լռում է մեր տրամաբանութիւնը: Մի Լիւզիպի, մի Ռաֆայէլի, մի Անջելօի գործերի առաջ գիտութիւնը ո՛չ մի խօսք չունի ասելու. նոքա հրաշալի են, նոքա կատարելութիւն են, բայց այն պարզել, բացատրել և տարրալուծել անկարող ենք:

Երաժշտութեան մէջ աւելի աջողակ էր գիտութեան դերը. դեռ Պիւթագորոսն հարմոնիան համեմատում էր թուական երևոյթների հետ և որոշ չափով բացատրում նոցա դիւթիչն ազդեցութիւնը: Հելմհոլցն ուզեց ապացուցանել, որ հարմոնիան արդիւնք է որոշ հնչիւնների միմեանց հետ ձուլուելուն:

Դա մեզ յիշեցնում է քիմիական երևոյթների բացատրութիւնը. ինչո՞ւ որոշ ձայներ, քիմիական տարրերի նման ձուլւում են միմեանց հետ, իսկ միւսները ո՛չ. կամ ի՞նչպէս է լինում, որ Բէթհովէնի մի սիմֆոնիա, կամ Լիստի մի ռափսօդիա այնպիսի անասելի բաւականութիւն, աննկարագրելի հրճուանք է պատճառում մեզ, այդ մնում է յաւիտեան անբացատրելի:

Վերջին օրինակն ինձ առիթ է տալիս հարցի մէջ մի քիչ խորը թափանցելու: Իրաւ, այդ ինչ մի ցնորալի բան է. այն հնչիւնները, որոնք իմ հոգու առաջ բաց են անում մի բոլորովին նոր աշխարհ, բնութիւնից մեզ չեն տուած. նոքա արդիւնք են մի Բէթհովէնի, մի Վագների և կամ մի Շօպէնի ցնորքներին:

Նոքա խաղ են անում մի գործիքի հետ, հնչիւնների մի որոշ համակարգ դող է հանում օդը. այդ օդի ալիքներն հասնում են իմ ականջին, գրգռում են իմ լսողութեան նեարդերը, որոնք իրանց գրգիռը մի քիմիական գործողութեան միջոցով հասցնում են ուղեղիս և յանկարծ, ես զգում եմ մի երջանկութիւն, իմ առաջ բաց է լինում մի դիւթական աշխարհ, հնչիւնները կաշկանդում են ինձ, ես զգում եմ, ես մտածում եմ և ես երևակայում եմ... լարերը, օդի տատանը և նեարդերիս գրգիռն ինձ ստիպեցին զգալու, մտածելու, հասկանալու և ըմբռնելու:

Ի՞նչպէս հոգիացան այդ նիւթական երևոյթները, ի՞նչպէս առաջ եկաւ զգալու գործողութիւնն իմ մէջ, ո՞րտեղից, ի՞նչ մի հրաշալիքով մեր ուղեղի նիւթն ինձ առիթ տուաւ արտաքին երևոյթը հասկանալու և ըմբռնելու...

Ի՞նչպէս է պատահում, որ քարը, փայտը, սեղանը և պատը չեն ըմբռնում, չեն հասկանում մի սօնատ. իսկ ես հասկանում եմ. չէ՞ որ նորանց վրայ էլ է ազդում օդի ալիքը, հնչիւնների տատանը...

Եթէ աւելի հեռուն ուզենանք գնալ, այդ հարցը պիտի դնենք իր բոլոր էութեամբ. ի՞նչպէս եմ ես ըմբռնում ամբողջ աշխարհը, երևոյթնե-

րի փոխադարձ կապը, ես ինքս ինձ, իմ անձնաւորութիւնը, ի՞նչպէս եմ կարողանում ես ինձ զանազանել ուրիշից, ինչո՞ւ արտաքին երևոյթները կարող են այդպէս տպաւորութիւն թողնել վրաս, վերջապէս ի՞նչ կերպ, ի՞նչ ձևով է առաջ գալիս ինքը միտքը, մտածմունքը, կամքը, երևակայութիւնը և դատողութիւնը...

Կարլ Ֆօգտն այդ ամենը բացատրում է շատ պարզ և հասարակ կերպով.- «Հոգեկան գործողութիւնները ուղեղի գործօններն (Function) են. եթէ մի քիչ կոպիտ արտայայտենք, մտածութիւնը յարաբերում է ուղեղին այնպէս, ինչպէս մէզը երիկամունքին». Այդպէս էր մտածում անցեալ դարու յիսնական թուերին մի Կարլ Ֆօգտ, և մօտաւորապէս նրա նման մի Մօլեշօտ, մի Բիւխներ, և այլն...

Բայց հարցը դորանով ամենևին չպարզուեց: Այստեղ միանգամայն տարասեռ (հետերոգէն) երևոյթները. մի հոգեկան գործողութիւն և մի մէզ (մի նիւթական երևոյթ) համեմատւում են միմեանց հետ, իսկ տարասեռ երևոյթները համեմատել ո՛չ կարելի է, ոչ հնարաւոր է և ոչ էլ գիտական:

Առանց երիկամունքի, արհեստաբար, մենք այսօր միզանիւթ ենք պատրաստում. բայց քիմիայի լաբորատորիաներում ուղեղ պատրաստել, որը միտք արտաթորէր «մէզի նման», այդպիսի յանդուգն կարծիք ո՛չ մի լուրջ գիտական գլուխ այսօր չի՛ համարձակւում արտայայտելու: Եթէ մի այդպիսի հրաշք պատահելու էլ լինէր, երևոյթը կմնար իր էութեամբ դարձեալ անբացատրելի: Մենք երբէ՛ք չենք կարող ըմբռնել այն, թէ ի՞նչպէս է առաջ գալիս ինքը, ըմբռնելու գործողութիւնը կամ գիտակցութիւնը:

Մի երկու տասնեակ տարի Կարլ Ֆօգտից յետոյ, երբ բնական գիտութիւններով կուրօրէն ոգևորուելը տեղի էր տուել սառն դատողութեան, մի այլ խոշոր բնագէտ ու փիլիսոփայ, Emil Du Bois Reimond իր մի հանճարեղ ճառի մէջ պարտք համարեց հերքելու Ֆօգտի կարծիքը, գտնելով, որ «մտածելն ուղեղի շէնքի մէջ այնպէս պարզ և հասկանալի չէ՛ որպէս զատանքը երիկամունքից»[1]:

1. Du Bois Reimond, "Uber die grenzen des Naturerkennens".

Մեր գիտութիւնն առհասարակ աւելի չէ՝ մի հասարակ ծանօթութիւնից. ինչ որ մեզ համար առօրեայ և սովորական է, այն որին մենք ընտելացած ենք, որի պատճառական կապերը նախորդի և յետնորդի հետ մեզ յայտնի են. մենք ասում ենք, որ գիտենք:

Այդ գիտենալը ո՛չ հիմնական է, ոչ արմատական և իւր էութեամբ հաւասար է մի հասարակ ծանօթութեան: Աւելի չէ՛ մեր գիտեցածը, երբ մենք բնական երևոյթների քաօսի մէջ ճանաչում ենք մի յայտնի երևոյթի տեղն ու դիրքը և անուանում ենք այն գիտութիւն:

Տգէտն ու ռամիկը տեսնում է արտաքին աշխարհում ուժերի մի անթիւ քանակ և իր օգտի ու վնասի տեսակէտից անուանում է բարի կամ չար ուժեր: Մատերիալիստ գիտնականն այդ ուժերն ամփոփում է մի ընդհանուր նիւթի կամ ուժի մէջ, որը ոչ բարի է և ոչ էլ չար. որից նա ո՛չ ահ ունի, ոչ էլ երկիւղ. և շնորհիւ դարերի փորձին ու կուլտուրային, նա այդ ոյժերը կարողանում է կառավարել և նորանցից օգտուել:

Ի՞նչ է Ֆէտիշի պարունակած ոյժը նորա երկրպագուի համար.- մի զօրաւոր անյայտութիւն. ի՞նչ է մատերիալիստի ճանաչած ուժը, նոյնպէս մի անյայտութիւն ըստ էութեան: Տարբերութիւնն այն է միայն, որ մինը ենթակայ և երկրպագու է, միւսն իշխող ու կառավարող: Բայց այդ ոյժն ինքնին և ըստ էութեան երկուսի համար էլ մնում է յաւիտեան անբացատրելի, յաւիտեան անհասկանալի մի յաւիտենական անյայտութիւն...

Պատանի երևակայութեան թափը կորցրած և վառվռուն երազներից յուսախաբ, բնական գիտութիւնն այսօր մտախոհ և լուրջ կանգ է առել հին ու մոռացուած մի ծերուկի առաջ, որ փիլիսոփայութիւն է կոչւում և նրա հետ միասին կրկնում է մի հին, մի շատ հին երգ:- Մենք տեսանք թէ ինչ էր ասում այդ մասին Դիւ Բուա Ռայմոնի պէս մի հռչակաւոր բնագէտ. որը առաջին անգամ բնագէտների մէջ ձայն բարձրացրեց ցոյց տալու մեր գիտակցութեան նեղ, անձուկ և սահմանափակ լինելը. այսօր, մի տասնեակ տարուց աւելի է գրեթէ, որ նորանց բնագէտներից շատերը սառն ու պաղ դատողութեամբ գալիս են ուրանալու նո՛յն իսկ նիւթի գոյութիւնը, կա՛մ առսակաւն ընդունելու, որ նիւթն իւր էութեամբ անմատչելի և անհասկանալի է մեզ. «բոլոր զգայութիւնները, ասում է այդ գիտնականներից մինը, մեր նեարդերի

գործունէութիւնն են, և ո՛չ թէ առարկաների յատկութիւններ, ինչպէս գործ է ածւում սովորական լեզուի մէջ: Լոյսը և գոյնը գոյութիւն ունին մեր աչքի մէջ և ո՛չ թէ արևի կամ ճրագի:

Ձայնը ականջի մէջն է միայն. և առանց ականջի, բնութեան մէջ չկա՛յ որևէ ձայն կամ հնչիւն: Մենք անուանում ենք կոշտ ու ցուրտ, տաք ու փափուկ և սորանով ուզում ենք լոկ ասել, որ մեր կաշուի վրայ զգում ենք տաքի, ցրտի, կոշտի և փափուկի տպաւորութիւններ: Մենք խօսում ենք նարինջի մասին և ասում ենք, որ նա դեղին է, բուրաւէտ, փափուկ, կոլոր և այլն. այսինքն, որոշ հանգամանքներում մենք զգում ենք ա՛յն, ինչ որ կոչւում է դեղին, բուրաւէտ, փափուկ, կոլոր և այլն և ապա, ըստ այնմ, մեր մտածման շնորհիւ եզրակացնում ենք. մի բան պիտի լինի, որից առաջանում են այս տպաւորութիւնները»[1]: Այդ մի բանն ուրեմն իր գոյնով, հոտով ու ձևով ծնունդ առաւ և կազմակերպուեց մեր ուղեղի մէջ. նորա գոյնը, հոտը և ձևը արդիւնք են մեր ուղեղի: Մեր հոգու միջոցով միայն մենք անդրադառնում ենք արտաքին աշխարհը. դուրսը մենք տեսնում ենք այն, ինչ որ մեր մէջն է, մեր զգացածը, մեր իմացածը: Արտաքին աշխարհն ուրեմն ոչ այլ ինչ է, եթէ ոչ մեր ներքին աշխարհը: Արտաքին աշխարհն իր յատկութիւններով ուրեմն գոյութիւն չունի, գոնէ մեզ համար. այլ կայ, և մենք ճանաչում ենք միայն և միմիայն մեր ներքին աշխարհը: Իրերը և երևոյթները լոկ մեր երևակայութեան պատրանքն են, մեր ուղեղի ստեղծագործութիւնը, մեր հոգու զառանցը... մի փառահեղ, մի հրաշալի զառանց... Մեզ համար չկայ մի այլ աշխարհ բացի մեր հոգեկանից: Բէթհովէնի հրաշալի սիմֆօնիաները և Վագների հիանալի օպերաները գոյութիւն ունին մեր աչքերի և ուղեղի մէջ միայն. վերցրէք այդ աչքը և այդ ուղեղը և ամեն ինչ կորած է յաւիտեան:

Այդ իսկ պատճառով ամբողջ աշխարհի մէջ ամենից զարմանալին, ամենից հրաշալին մենք ինքներս ենք. մեր կամքը, մեր երևակայութիւնը և մեր գիտակցութիւնը: Մենք մեր էութիւնից ստեղծել ենք մի ամբողջ աշխարհ և այդ առեղծուածի առաջ ծունկ չոգած ուզում ենք լուծել ա՛յն, ինչ որ անլուծանելի, անհասկանալի և անմատչելի է մեզ ընդ միշտ, որովհետև մեր գիտակցութիւնը սոսկալի սահմանափակ է...

1. Mobius, Das Nervensystem des Menschen.

«Բնագէտները կարծում են, ասում է Mobius, որ ամբողջ աշխարհը բաղկանում է վերին աստիճանի մանր մասնիկներից.- ատոմներից,- որոնք զուրկ են որևէ յատկութիւնից և ազատ շարժւում են տարածութեան մէջ:

Այդ ատոմները խմբակցում-միանում և բաժանւում են իրարից - բազմապիսի շարժում և տատանմունք ունին: Այդպիսի ատոմների խմբակցութեան արդիւնք է ամբողջ աշխարհը, կենդանի թէ անկենդան, որոնց մէջ և մարդը: Այդպիսի ատոմային խմբակցութեան արդիւնք են մեր նեարդներն և ուղեղը, որոնցով մենք զգում ու ճանաչում ենք արտաքին աշխարհը:

Ատոմների մի խմբակցութիւն, բնագէտի կարծիքով, երբ հանդիպում է մեր նեարդերին, բօթելով նրանց, առաջացնում է մի տատանմունք, որոնք մեր նեարդերի մէջ համապատասխանում են մեր տպաւորութիւններին, այն է լոյս, ձայն, հոտ, համ և այլն... Որքան էլ նպատակայարմար է՝ մի այդպիսի տեսութիւն, շարունակում է Mobius, բնական երևոյթները մի ամբողջական դիտողութեան ենթարկելու համար, բայց դա մի բացատրութիւն չէ՛ և չի՛ կարող լինել, թէ ինչպէս առաջացաւ լոյսը կամ ձայնը մի խումբ ատոմների շարժումներից:

Զգալը ո՛չ մի ընդհանուր բան չունի այդ շարժման հետ. չկայ մի կամուրջ, որ մէկից կարելի լինէր անցնել դէպի միւսը. սրանք բոլորովին տարասեռ (heterogen) երևոյթներ են. ստուգիւ իրական միայն մեր տպաւորութիւններն ու զգացածը. բնագէտի կազմակերպած աշխարհը մի մտացածին բան է, մի փոխադրութիւն զգայական տեսութիւնից դէպի մաթեմաթիքականը, ճիշտ գիտական նպատակների համար: Զգայութիւնն ըստ ինքեան մնում է իբրև հիմք ամեն փորձառութեան և երբէք ենթակայ չէ՛ որևէ բացատրութեան»:

Սրանք մի բնագէտի խօսքեր են. այսպէս չէին խօսում մի 20-30 տարի առաջ մի Մօքեշօտ, մի Ֆօգտ, մի Բիւխներ, մի Հէկկէլ, այսպէս են խօսում սակայն այսօր երիտասարդ բնագէտների առաջաւոր ուղեղները. փիլիսոփայութեան և բնագիտութեան մէջ բացուած անդունդը կարծես փակւում է, և ճիշտ գիտական փորձն ու յանդուգն լայնաթռիչ փիլիսոփայա-դեդուկցիան - ուզում են ձեռք ձեռքի տուած առաջ գնալ...

Մենք տեսանք բնագէտի կազմած արտաքին մտացածին աշխարհը - ատոմներ, խմբակցութիւն և բաժանումն ատոմների և տատանմունք,- սա մի տեսութիւն է միայն, մի թէօրիա, մի ենթադրութիւն. մի շա՛տ հաւանական թէօրիա. սա մի ապացուցուած բան չէ՛, և չի էլ կարող երբէ՛ք ապացուցուել. սա է բնագէտի արտաքին աշխարհը, ենթադրական աշխարհը, այս երբէ՛ք պիտի չմոռանանք,- այդ աշխարհից, այսօր գիտութիւնն ընդունում է, ուղիղ գծով մենք ո՛չ մի տեղեկութիւն չենք կարող ստանալ. չկա՛յ մի կամուրջ, մի հեռագրաթել, որ կարելի լինէր կապել մեր գիտակցութիւնն այդ աշխարհի հետ. այդ տեսական, ենթադրական աշխարհի, որի էութիւնն և ինչութիւնը փակ է մեր առաջ ընդ միշտ, յաւիտեան...

Եթերի տատանմունքը գրգռում է մեր տեսողութեան ջեարդը. այդ գրգիռը հասնում է մեր ուղեղին - դա մի գրգիռ է միայն, և մենք տեսնում ենք լոյս. կարելի է առանց եթերի, լոկ աչքին խփելով լոյսի զգայութիւն առաջացնել աչքի մէջ. որևէ գործիքով եթէ շօշափենք ուղեղի որոշ մասերը կարող ենք առաջացնել նոյնպէս լոյս... Այդ լոյսը չկա՛յ արտաքին աշխարհում, դա միմիայն մեր ուղեղի մէջն է, նրա մի յատկանիշը և տևական յատկանիշը. ուստի և առանց արտաքին պայմանների, լոկ կամքի շնորհիւ, մենք կարող ենք վերարտադրել ամեն մի անցեալ տպաւորութիւն: Մենք կարող ենք յիշել ամբողջ պատկերներ, կարող ենք վերարտադրել մեր ուղեղից մեր տեսած ամբողջ աշխարհը. շարադրել ամբողջ պատմութիւններ, մեր մտքով, անգիր. մենք կարող ենք երգել ամբողջ սիմֆօնիաներ և օպերաներ. առանց ճանաչելու արտաքին աշխարհը, հիմնուելով լո՛կ մեր հոգու այս յատկութեան վրայ, որ կոչւում է յիշողութիւն, մենք ստեղծել ենք ամբողջ գիտութիւններ: Այսօրուայ իմ տեսածն ու լսածը, նման չէ իմ երեկուայ տեսածին ու լսածին. ես յիշում եմ և համեմատում, համեմատում եմ և փորձեր եմ անում, և այդ փորձերի արդիւնքից հանում եմ օրէնքներ և եզրակացութիւններ... այս է գիտութիւնը: Չմոռանանք, այդ փորձերի առարկան էլ իմ հոգու դրութիւններն են, այսինքն իմ յիշողութիւնները, որոնք հոգեկան երևոյթներ են, որովհետև, ինչպէս տեսանք, արտաքին երևոյթներն ինձ համար անմատչելի, անճանաչելի են. ձայնի, լոյսի, տաքի և ցրտի երևոյթներն իմ հոգու երևոյթներն են

և նրա յատկանիշները. որովհետև բնութեան մէջ չկան ո՛չ ձայն, ո՛չ լոյս, ոչ որևէ այլ բան բացի մեր գիտակցութիւնից:- Եւ մեր ամբողջ գիտութիւնը ըստ այնմ հիմնւում է երևոյթների վրայ, որոնք իսկապէս և ըստ էութեան գոյութիւն չունին: Մենք մեր ներքին աշխարհից օրէնքներ ենք հրատարակում արտաքին աշխարհի վրայ, որը ո՛չ տեսնել, ո՛չ ճանաչել, ոչ էլ զննել ու քննել ենք կարող: Այն՝ ինչ որ մենք ենք տեսնում ու զգում, այն՝ ինչ որ մենք ենք կազմակերպում և ուսումնասիրում՝ դա լոկ մենք ինքներս ենք, մեր հոգեկան երևոյթները. որից մենք ստեղծում ենք մի հրաշալի աշխարհ վառվռուն, հարուստ ու փարթամ լոկ մեր ուղեղի գործունէութիւնից: Սակայն ես բաց եմ անում մի հանճարեղ մարդու ուղեղը, և ոչինչ - բացարձակօրէն ոչինչ չեմ գտնում այդ ուղեղում ա՛յն ամենից, ինչ որ նա մտածել և ստեղծագործել է: Ո՛չ մի քիմիական և կամ ֆիզիքական փորձ ինձ թոյլ չի տալիս թափանցել այն հսկայական առեղծւածի խորքը, որ զբաղեցրել է ամենայանդուգն մտքերը մարդկային հանճարի, թէ ինչպէս այս ուղեղի մէջ, որ մի սպիտակուցային զանգւած է լոկ, առաջ է գալիս պատկերների այն փարթամութիւնը, որ մենք աշխարհ ենք կոչում, մտքի այն թռիչքը, որ մենք երևակայութիւն ենք անւանում, դեդուկցիայի այն սլաքը, որ մենք հանճարի ստեղծագործութիւն ենք անւանում: Ինձ համար, դրսից, այդ ուղեղի գործունէութիւնը լոկ ատոմների և մոլեկուլների շարժում է այն, ինչ որ իրա համար, այդ ուղեղի մէջ, դա լոյսի կամ գոյների մի շարայարութիւն է հրաշալի ներդաշնակութեամբ. գուցէ Ռափայէլի մի անմահ ստեղծագործութիւնը, Բայրոնի մի ըմբոստ երգը և կամ Լիւզիպի մի հրաշալի կոթողը:- Ինչպէս այս ատոմների շարժումը մի քիմիական կամ ֆիզիքական երևոյթ դառնում է մի միտք, մի պատկեր և մի մտածողութիւն մեր ուղեղի մէջ, դա մնում է յաւիտեան անհասկանալի, յաւիտեան անբացատրելի: Այդ երկուսի մէջ - արտաքին-նիւթական և ներքին-հոգեկան աշխարհների - անհնարին է և աներևակայելի է մի կամուրջ... Ա՛յն՝ ինչ որ մենք գիտենք և մենք ունենք, դա լոկ մեր միտքն է և երևակայութիւնը և ամբողջ աշխարհը կամք է ու երևակայութիւն:

**«Լումայ», 1904 թ., N 1, էջ 94-110**

## ԽԱՉԱՏՈՒՐ ԱԲՈՎԵԱՆԻ ԿՈՐՈՒՍՏԸ
## (Մահուան վաքսունամեակի առիթով)

Այս տարի լրանում է յիսունամեակը «Վէրք Հայաստանիի» տպագրութեան և միևնոյն ժամանակ այսօր, ապրիլի 2-ին, լրանում է վաքսուն տարին այն չարաբաստիկ օրից, երբ Խաչատուր Աբովեանը ընդմիշտ անյայտացաւ: Ինքնասպա՞ն եղաւ արդեօք այդ մարդը, կառավարութի՞ւնն անյայտացրեց նրան, ինչպէս ասում են՝ «սև կարետով», թէ՞ թուրքերը սպանելով թաքցրին մարմինը, ինչպէս ընդունուած է վերջերս կարծել, մնում են առայժմ բաց խնդիրներ: Երեք կարծիքն էլ ունեն իրանց կողմնակիցները...

Առանց հերքել կարենալու մէկը կամ միւսը, մեր պարտքն ենք համարում նորից յիշեցնելու այս տաղանդաւոր, միևնոյն ժամանակ մեծ ու տարօրինակ մարդու մահուան վաքսունամեակը, որ մեր մեծ ու փոքր յօբելեաններ և տօնախմբութիւնների մէջ ամենից հինը, ամենից արժանաւորն ու ամենից աւելի մոռացուածն է բաղդի բերմամբ: Արդարև, ամեն ինչ զարմանալի և տարօրինակ է այս մարդու կեանքի մէջ: Ելևէջներն այդ համեմատաբար կարճատև կեանքում այնքան խոշոր են և հսկայական, վայրն ու վերը այդ կեանքի ալիքներում այնքան տարբեր ու ահագին, որ խտացնելիս մարդ շշմում է: Արարատեան դաշտից մինչև Մասիսի անմատչելի կատարը, Էջմիածնի մնթից մինչև մինիստրներին սեղանակից լինելը, Քանաքեռի շինականից մինչև ժամանակի առաջնակարգ եւրոպական գիտնականներին՝ Պարրօտ, Վագներ, Աբիխ, Հաքստհաուզէն, բանաստեղծ Րօդենշտէտ և այլոց ընկերանալն ու նրանց հրճուանքին արժանանալը: Կուսակրօն սարկաւագութիւնից մինչև գերմանուհու հետ ամուսնանալը և ապա, գրաւոր խնդիրքը, զաւակները թողնելու և նորից վարդապետ ձեռնադրուելու իղձը: Փոխարքաներին, կաթողիկոսներին ու մինչև ռուսաց կայսրուհուն ունկնդրուելուց յետոյ, նահանգական դպրոցից զրկուելով գաւառական ուսուցչի պաշտօնին իջնելը և ապա խպառ արձակուելը պաշտօնից, այս ամենը մի այնպիսի զիգ-զագ է, մի այնպիսի ելևէջ կեանքի ալեկոծութեան, որ վաղ թէ ուշ առաջ պիտի բերէր մի սոսկալի կատաստրօֆա:

Ու պսակուեց այդ կեանքը մի աղէտալի վախճանով, որի նմանը խոշոր տաղանդների համաշխարհային պատմութեան մէջ անգամ հազուագիւտ է... Նա անյայտացաւ՝ այդ բառի իսկական իմաստով:

Միջակ ընդունակութիւնների և հակումների տէր մի անհատ՝ այս հանգամանքներում պիտի դառնար մեծամոլ, հպարտ և ֆրազէօր: Այլ էր սակայն Աբովեանի ներքին աշխարհը, այլ էին նրա իղձերը, ցանկութիւնները և իդէալները, որոնք այրում ու տոչորում էին նրա տարաբաղդ հոգին:

Նա ամբողջ էութեամբ նուիրուել էր մի գաղափարի, որ ծնունդ էր առել ժամանակից առաջ. իսկ ժամանակից առաջ աճող ծաղիկը միշտ զոհ է դառնում ձմրան ցրտերին: Նա մտածում էր հիմնել աշխարհիկ լեզու և գրականութիւն, աշխարհիկ դպրոց և դասագրքեր այն ժամանակ, երբ ամենքն զբաղուած էին գրաբարով և ճանաչում էին նրա անխորտակելի հեղինակութիւնը: Հետևանքն այն եղաւ, որ խոշոր ու հազուագիւտ տաղանդով գրուած պօէման - «Վէրք Հայաստանին» - անտիպ մնաց ամբողջ տասնութ տարի և լոյս տեսաւ միայն այն սերնդի ձեռքով,- Աբովեանի աշակերտների, որոնք, ժամանակի բերմամբ հասունացած, գնահատել և hասկանալ կարող էին այդ երկը:

Աբովեանի միւս մանր ու խոշոր գործերը ցարդ չեն անցած քննութեան բովից և մի քանիսը նոյնիսկ չեն էլ տպագրուած կամ կարդացուած ուշի ուշով: Նորերս, թատրոնի յիսունամեակը տօնելիս, Աբովեանի անունն անգամ չը յիշուեց, այն ինչ նա մեր առաջին թատրերգուն է, որ գրել է «Ֆէօդօրա» աշխարհաբար պիէսը մէկ գործողութեամբ: Դա, որ զուրկ չէ բեմական արժանիքներից, դեռ երբէք չէ արժանացել հայ բեմում խաղացուելու բաղդին, այն ինչ գրուած է սրանից վաթսուն և եօթ տարի՝ ուրեմն մեր թատրոնի գոյանալուց 18 տարի առաջ: Աբովեանը ժամանակով առաջինն է իբրև վիպասան, թատրերգու, բանաստեղծ, առակախօս, մանկավարժ և դասագրքերի յօրինող... այս ամենի աշխարհիկ ըմբռնումով, մանաւանդ որպէս հիմնադիր աշխարհիկ մտածման և աշխարհիկ լեզուի:

Այդ ամեն ասպարէզներում որպէս սկսնակ, նա չէր կարող առաջնակարգ տեղ գրաւել, ներկայ ըմբռնումով: Իր ժամանակ, սակայն, նա եզակի էր և անզուգական: Այսօր, «Վէրք Հայաստանին» գրուե-

լուց ուղիղ վաքսունութ տարի յետոյ, նա՝ իբրև բնութեան նկարագրող և բուռն զգացումների արտայայտիչ, իբրև առաջնակարգ ստիլիստ՝ իր նմանը չունի մեր մէջ և առանց մի երկիւղի համեմատուել կարող է իր ժամանակի առաջնակարգ եւրոպացի գրողների հետ: Այդ տաղանդը աւելի մեծանում և ստուարանում է, երբ ի նկատի ենք ունենում, որ նա առաջինն էր և նախորդ չունէր մեր մէջ:

Այս տաղանդը և այս զգացումների բոցը, մասամբ գրուած թղթի վրայ և մասամբ ներշնչուած աշակերտներին, մեծ մասով մնում էին խեղդուած, անելք և լիովին անբաւարար Աբովեանի կրակոտ, բոցավառ և հայրենասէր հոգու մէջ... Ո՛չ մինն այդ գործերից չարժանացաւ տպագրութեան նրա կենդանի ժամանակ: Տպագրած տեսաւ նա միայն մի այբբենարան, ամենից խղճալին իր գործերի մէջ, որ և արժանացաւ լիակատար անաջողութեան և հալածանքի: Մէկը չունէր այդ մարդը, որի առաջ գոնէ ձեռագիր «Վէրք Հայաստանին» կարդար, որը խնամքով թաքցնում էր այցելուներից որպէս՝ իր խօսքով ասենք՝ «ախմախի» գործ:

Դէպքերի մի տարօրինակ դասաւորութեամբ, մեզ դեռ ևս անյայտ պատճառներով, նրա պաշտօնը ցածրացնելուց յետոյ արձակեցին պաշտօնից:

Որպէսզի մի ռուս չինօվնիկ, Աբովեանի նման մէկը, 40 թուականներին, համալսարանական կրթութեամբ և եւրոպական լեզուների գիտութեամբ, խոշոր և կարևոր ծանօթութիւնների տէր,- արձակուի գաւառական ուսուցչի ողորմելի պաշտօնից, հարկաւոր էին խոշոր, շա՛տ խոշոր պատճառներ, որ ցարդ մնում են միանգամայն խաւար...

Ներսիսեան դպրոցի տեսչութեանը, հակառակ խոստումներին, նա չարժանացաւ: Կուսակրօն հոգևորականների շարքը նրան չընդունեցին... Այսպիսով ներքին սոսկալի անբաւականութիւնները զուգորդուած արտաքին անյաղթելի անաջողութիւնների հետ, պատրաստում էին մօտալուտ կատաստրօֆի պարագաները հետևօրէն և մի անողոք խստութեամբ:

Մանր, գծուծ, մերկանտիլ հայ հասարակութիւնը ներկայիս անգամ ընդունակ չէ ըմբռնելու բացառիկ հոգիների ներքին հրաբուխը. ևս առաւել ա՛յն ժամանակ, մի պաշտօնանկ չինօվնիկի և մի անկեալ մե-

ծութեան առաջ, որպիսին էր Աբովեանը... Ու նրա կորուստը մի անհրաժեշտութիւն էր, որպէս արդիւնք ողբալի հիասթափումների:

Բոլոր կրթուած ազգերը ունեն իրանց սիրելի հեղինակները. իտալացիք Դանտէին ու Պետրարկային, անգլիացիք Շէքսպիրին, գերմանացիք Գէօթէին ու Շիլլերին, ռուսները Պուշկինին, Լերմոնտովին, որոնց շիրիմը երկրպագութեան առարկայ է այդ ազգերի համար: Մենք, հայերս, հողի մի թումբ անգամ չունենք Աբովեանի համար, որի վրայ, չե՛մ ասում տարէնը մէկ, այլ այս վաթսուն տարուայ ընթացքում գէթ մի անգամ հաւաքուած մեր յարգանքն յայտնէինք ի դիմաց այն մեծ ժառանգութեան, որ պետական օրէնքով այս տարուանից դառնում է համազգային սեփականութիւն:

Խօսքս «Վէրք Հայաստանիի» մասին է, որ այս տարուանից դառնում է ազգային սեփականութիւն, քանի որ լրացաւ արդէն 50 տարին նրա տպագրութիւնից յետոյ:

Այս հանգամանքը գոնէ, վերջապէս, առիթ պիտի տայ զարթնելու հայ հասարակութեանը և մի համազգային տօնախմբութեամբ յաւերժացնելու մարմնով ընդմիշտ կորած, բայց տաղանդով յաւիտեան կենդանի Աբովեանի յիշատակը:

**«Մշակ», 1908 թ. ապրիլի 2, N 73**

## ԳՐԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐ

ԼԱԼԱՅԵԱՆՑ, ԵՐՒԱՆԴ.- «Ջաւախքի բուրմունք»: Հրատար. Թիֆլիսի Հրատարակչական Ընկերութեան: Թիֆլիս, 1892 թ., տպ. Արօր, Նազարեանի. մեծ ութածալ, 71 երես, տառ N 10, գինն է 25 կ.:

Մեր ժողովրդագրական գրականութիւնը մի նոր գրքով ևս հարստացաւ. դա յիշեալ «Ջաւախքի բուրմունք»-ն է: Այդ գրքի երևան գալը աչքի է ընկնում առաւել այն պատճառով, որ նորա նիւթը բոլորովին նոր է. դա Բարձր Հայքի, որ մինչև օրս համարեա մնացել էր անուշադիր, ժողովրդեան չափաբերական և արձակ աղօթքների, երգերի և աւանդութիւնների մի հաւաքածու է, քանի որ Ջաւախքի, այսինքն Ախալցխայի ու Ախալքալաքի բնակիչները Բարձր Հայքից գաղթածներն են:

Դժբաղդաբար պ. Լալայեանը ո՛չ մի խօսք, ո՛չ մի բացատրութիւն կամ տեղեկութիւն չի տալիս ո՛չ այն ժողովրդի մասին, որի բանաւոր գրականութիւնը իր աշխատութեան նիւթ է արել, ո՛չ այն աղբիւրների մասին, որոնցից նա օգտուել է՝ և ոչ, որ ամենից գլխաւորն է, այդ բարբառի առանձնայատկութիւնների, արտասանութեան և քերականական կանոնների մասին: Չը կան նոյնպէս բազմաթիւ օտարազգի և բարբառին առանձնայատուկ խօսքերի և դարձուածների բացատրութիւնը, որ անհրաժեշտ է գրքի լեզուն հասկանալու համար:

Թողնենք այն հանգամանքը, որ հաւաքածուն ինքնըստինքեան խիստ անկատար է և լուրջ մշակութեան է կարօտ, պ. հաւաքողը մեղանչում է այնպիսի հասարակ, տարրական կանոնների դէմ, որոնց չը գիտենալը աններելի է ամեն մի անձի, որ պարապում է ժողովրդագրութեամբ: Պր. Լալայեանը չի պահպանել ժողովրդի արտասանութիւնը, անուշադիր է թողել բարբառի շատ քերականական կանոնները, խառնել և աղաւաղել է բառերը, յատկացնելով նոցա այնպիսի նշանակութիւն, որ չունին իսկապէս: Պր. Լալայեանը չը գիտէ, որ Ջաւախքում կան այնպիսի գաւառաբարբառներ, կամ նոյն իսկ այնպիսի ինքնուրոյն բարբառներով խօսող գաղթականներ, որոնց բանաւոր գրականութիւնը նա խառնել, շփոթել է Ջաւախքինի հետ. չը

հասկանալ նոցա միջի ահագին տարբերութիւնը կը նշանակէ չ՛ըմբռնել հաւաքած նիւթի պատմական, լեզւաբանական և ժողովրդագրական ահագին նշանակութիւնը: Այսպէս «Անօրէն մարդկանցից ազատուելու աղօթքը», «Ահա մտայ զանկողին գերեզման», Սիրոյ երգերից առաջին չորս տունը, «Դռնէն անցայ թնդիրն էր ծուխ», «Արիք տեսէք աղջկայ կեսուր», «Առաւօտ գարի պոկենք», նաև Պար-երգերից շատերը, Հարսանեաց երգերից առաջին երկուսը և այլն, և այլն չեն պատկանում Ջաւախքին, այլ կամ գաղթած եկւորներն են հետները բերել և կամ պատահաբար գիտեցել է մի ջաւախեցի:

Հնտի, մնտի լաւ Թէլինկօ,
Ճտռաֆըտէլ լաւ Թէլինկօ,
Արաճի Մուրատ մուրսի վրատ,
Կարգւեցար ո՞ւր է հինատ...

Ի՞նչ նշանակութիւն կամ պարունակութիւն ունին, ի՞նչ լեզւով կամ բարբառով են առաջին երեք տողերը, մենք չը կարողացանք հասկանալ, թէև Ջաւախքի բարբառը մեր մայրենի լեզուն է, և չը կարողացան հասկանալ այդ բառերը ո՛չ մինը ջաւախեցիներից, որոնց մենք դիմեցինք բացատրութիւն խնդրելու: Օրինակի համար համեմատեցէք և տեսէք «Մեր թագւորն է աջ խաչ...» (երես 26), որը ոչինչ առնչութիւն չունի Ջաւախքի (նոյն և Բարձր-Հայոց) բարբառի հետ: Մի քանի տեղեր աւելի աններելի սխալներ են արած: Այսպէս՝ (երես 28)

Կովեր ունինք սև ու կարմիր,
Քեզ կթելու մէկ մասն ընտրիր.
Մէր (սեր) ու կարագ շատ պատրաստիր...

Ընդգծեալ երկու տողերը ժողովրդինը չեն, այլ թխովի, կեղծ ու արհեստական: Դոքա մեր գրականական լեզւով են գրած երևի տան պակասը լրացնելու համար: Նոյնը պէտք է ասել նաև (եր. 36) «Պիւլպիւլ, ի՞նչ ես պառկէ չոխուռ օւայում» երգի առաջին տան մասին, որը թարգմանած է թուրքերէնից կէս գրականական և կէս Ջաւախքի բարբառով:

Գալով բուն նիւթին, որտեղ անթիւ տպագրական սխալներ կան ամեն մի երեսում և այն որ ուշադրութեան չէ առնուած և մատնանիշ չէ արուած բառերի արտասանութիւնը, այլ և աղաւաղուած և շփոթուած են թէ ուղղագրութիւնը և թէ բառերը: Չէ՞ որ հարկաւոր է նախ գրել այնպէս, որպէս արտասանում է ժողովուրդը և երկրորդ, եթէ մեր ունեցած տառերը բաւական չեն բարբառի բոլոր ձայները արտաբերելու, այն ժամանակ տառերի վերայ դրուող սովորական փշիկներով կամ նշաններով աշխատում են պակաս ձայները լրացնել[1]: Անտարակոյս կարդացած կը լինիք պ. Գ. Խալաթեանի «Հայ ազգագրութեան ծրագիրը»: Ժողովուրդը ասում է գլոխ, գրած է գլուխ և գլոխ. ասում են էրկինք, Մայրամ, գրած է երկինք, Մարիամ և Մայրամ. Իսուսը գրած է Յիսուս, սուփ կամ սուրփ, գրած է սուրբ, փե՛ր կամ բե՛, գրած է բեր. ասում են Վէրուսաղո՛մ, կամ Վէրուսաղէմ, Էրուսաղէմ,- գրած է Երուսաղէմ: Հարկաւոր էր գրել քուքար, Սա՛րքիս, ա՛շկե՛րտ, ա՛չք, Աթամ, մարթ, Կիրակո՛ւ, Քրիստո՛ս, Գիրքո՛ր, գրած է Սարգիս, աշկերտ, և այլն. ինչպէս ընդունուած է գրականութեան մէջ: Գրում է՝ քառասուն (պիտի լինի քառսուն), նէաֆաս (նա՛ֆա՛ս), վէվ (վե՛ւ), պութաղ (պուտաղ), թագւոր (թաքւո՛ր), շաղէ (շաղուէ), խազնատար (խա՛զնա՛տար), ճամփնէր (ճամփընե՛ր), գալաւայ (գըլաւա), աննման (անըման), պաքմազ (պա՛քմա՛զ), թանք (թանկ), չը գտնեմ (չը գտնիմ), կամուրջ (կարմունջ), ականջ (անկաճ), մէջ (մէչ), զարկէ (զարնէ), իշտէք (յիշտէկ), ըռանջպար (ըռա՛նչպա՛ր), բարձած (բառցած), դառէ, դարձած (դառցէ, դառցած), իջեցրին (իչեցուցին), ասոնք, իսոնք, ինոնք, մերոնք, մերոնք (հարկաւոր է ասո՛նք, իսո՛նք, ինո՛նք, մերո՛նք, ձերո՛նք)... Մենք սխալների երեսները մատնանիշ չ՛արինք, որովհետև իւրաքանչիւր երեսում տասնեակներով այդպիսի սխալներ կան. օրինակ մենք կը բերենք մի հատուած պարոն Լալայեանի գրած և նորա դիմացը ժողովրդի արտասանածը.

1. Ստորև բերած օրինակներում շեշտի (՛) նշան ենք դնում այն տառերի վերայ, որոնք գրականականից տարբեր կերպով են արտասանւում:

Տպւած է (երես 1)
Թազայ հացի ֆուտ էկաւ,
Ելէք աշեցէք վով էկաւ,
Իրէք, իրէք պոզ ձիաւոր,
Իրէքն ա կանանչ կապաւոր.
Մէկը Յիսուս, մէկը Քրիստոս,
Մէկը մանուկ՝ սուրբ Կիրակոս,
Էկաւ սարով, իջաւ ձորով,
Հրեշտակին դէմը բարով...

Պիտի լինի
Թա՛զա՛ հացի ֆո՛տ (կամ հո՛տ) էկաւ,
Էլէ՛ք աշեցէ՛ք վո՛վ (կամ վե՛ւ) էկաւ,
Իրե՛ք, իրե՛ք պոզ ձիաւո՛ր.
Իրե՛քն ա կանանչ կապաւո՛ր
Մէկը Իսսուս, մէկը Քրիստո՛ս,
Մէկը մանուկ՝ սուրփ Կիրակո՛ս...
Էկաւ (էկա՞ն) սարով, իջան ձորով,
Հըրըշտըկին դէմը բարով...

Արձակ գրւածներից աւելորդ եմ համարում մի նմուշ դնել, թէև այնտեղ ևս անթիւ սխալներ կան: Մեր կարծիքով այս հաւաքածուն իր ներկայ ուղղագրութեամբ համարեա անպէտք է ուսումնասիրութեան համար, քանի որ բարբառի բազմաթիւ հնչիւնները կորւած են նորա մէջ և փոխարինւած խորթ և անհարազատ հնչիւններով: Այս բարբառը ունի բացի սովորական «ա»-ից և մի ուրիշ «ա՛» փափուկ (որպէս ֆրանսերէն la մասնիկում), որպէս նա հնչւում է բառերումս պա՛քմա՛զ, Ախրքա՛լա՛կ, Ա՛րզո՛ւրո՛ւմ: Բացի «ու»-ից և մի փափուկ «ո՛ւ» (ճիշտ համապատասխան ֆրանսիական «u»-ին), որպէս բառումս Ա՛րզո՛ւրո՛ւմ: Մինչդեռ «ե»-ն և «ո»-ն գրականական բառերի մէջ հնչւում են որպէս պարզ «ե» և «օ», այս բարբառի բառերում, երբ շեշտը այդ տառերի վերայ է, հնչւում են «ե»-ն ինչպէս յե, իսկ «ո»-ն որպէս մակարդ-

ւած «ուօ», ինչպէս հո՛ր, ձո՛ր, փո՛ր, սո՛խ, սխտո՛ր, կխտո՛ր, մերո՛նք, ասո՛նք, ատո՛նք, և այլն բառերում. «ե»-ն տես բառերումս՝ բե՛ր, փե՛, կե՛ր, փե՛ս, եզնե՛ր, կովե՛ր, հարսնե՛ր, անե՛ր, հողե՛մ, թաղե՛մ, փոխե՛մ, և այլն: Ջաւախքի բարբառը չունի լիակար բ, գ, դ, ջ, և ձ, այլ դոցա փոխանակ բ-ի և պ-ի միջին ձայնը բ-ի տեղ է գործածւում, երբեմն բ-ն դառնում է պ և փ (պարի, սուրփ, փեր - փոխանակ բարի, սուրբ և բեր). գ-ի տեղ գործ է ածւում թոյլ գ, որ երբեմն դառնում է «կ», և «ք» (գիւղերից մի քանիսում ասում են կարի, փոխ. գարի, քուքամ՝ փոխ. կուգամ): «Դ»-ի տեղ թոյլ դ, որ երբեմն դառնում է «տ» և «թ»: «Ջ»-ն դարձել է փափուկ ջ, երբեմն նաև «ճ» և «չ» (անկաճ, մէչ), «ձ»-ն դարձել է թոյլ ձ, երբեմն նա հնչւում է որպէս «ց» և «ծ»... Մեր մատնանիշ արած բարբառի նրբութիւններից մի քանիսը միայն (ինչպէս ա՛-նէա խօսքում) պահպանել է պ. հաւաքողը, իսկ ամենամեծ մասը ո՛չ միայն չեն պահպանւած, այլ և ո՛չ մի տեղ ուշադրութեան էլ չեն առնւած: Կնքում ենք մեր խօսքը, յայտնելով մեր համեստ կարծիքը, որ այդ գիրքը կարօտ է նոր, կանոնաւոր և ուղիղ տպագրութեան, տեղ-տեղ նաև խմբագրութեան, այսինքն դէն գցելով Ջաւախքին ոչ յատուկ երգերը: Այլապէս այդ ժողովածուն չատ թիւրիմացութիւնների տեղիք կը տայ:

**«Մուրճ», 1892 թ. N 7-8, էջ 1164-1168**

***

ԱՐԻՍՏԱԿԷՍ ԼԱՍՏԻՎԵՐՏՑԻ վարդապետի Հայոց պատմութիւնը. թարգմանեց Մինաս քահանայ Տէր-Պետրոսեանց: Ալեքսանդրապոլ, տպարան Ա. Մ. Մալխասեանի, 1893 թ., 233 էջ, ութածալ, գինն է 60 կոպէկ:

Մեր դասական մատենագրութեան զարկ տուեց Խորենացու աշխարհաբարը, որին յաջորդեց Եղիշէի երկրորդ թարգմանութիւնը և այսօր էլ ահա լոյս է տեսել Լաստիվերտցու թարգմանութիւնը: Անտարակոյս, ցանկալի է, որ մեր բոլոր դասական գրուածների թարգմանութիւնն ունենայինք աշխարհիկ լեզուով, բայց Կորիւնը, Բիւզանդը, Փարպեցին, Սեբէոսը, Ասողիկը և այլն թողած ձեռնամուխ լինել Լաստիվերտցու թարգմանութեան, մեզ օտարոտի է թւում: Թէև սա ԺԱ դարու միակ պատմիչն է, բայց թէ իր նշանակութիւնով և թէ պատմական ոճով շատ երկրորդական տեղ է բռնում մեր հին գրականութեան մէջ, մանաւանդ նա աւելի մի ողբերգու վարդապետ է, քան իսկական պատմիչ, որ ամեն մի երևոյթ բացատրում է ժամանակակիցների մեղքերի շատութեամբ և շարունակ ողբում է Հայաստանի թշուառութիւնը, անհամար, շատ անգամ անկապ և անտեղի վկայութիւններ մէջ բերելով Ս. Գրքից, որին՝ ինչպէս երևում է, շատ է տեղեակ:

Գրքի բովանդակութիւնից ամենահետաքրքրական կտորներն են Բագրատունեաց անկումը և Թոնդրակեցոց աղանդին նւիրւած տեղեկութիւնները:

Լաստիվերտցին առհասարակ նկարագրում է իր ժամանակակից դէպքերը և ըստ երևոյթին ստուգապատում է:

Այս պատմիչը թարգմանւած է նաև ֆրանսերէն:

Աշխարհիկ թարգմանութեանը կցած են 137 ծանօթութիւն և յատուկ անունների մի ցանկ: Վերջինս ամբողջովին քաղւած է Վենետիկեան բնագրից և յարմարեցրած է թարգմանութեան էջերին, որ անշուշտ կարևոր է ուսումնասիրութեան ժամանակ: Ծանօթութիւնները, սակաւ բացառութիւններով, աշխարհագրական անուններին են վերաբերում: Բայց այդ ծանօթութիւնները ցանկալի էր որ աւելի որոշ լինէին. օրինակ՝ բաւական չէ ասել թէ «Խլաթը Բզնունեաց գաւառի քա-

դաքն է» (223 եր.). «Շինին՝ Մանանաղի գաւառի բերդաքաղաք է» (223). «Ապահունի գաւառը Մեծ Հայքի Տուրուբերան աշխարհի գաւառներից մէկն է» (208) (ընդգծումները մերն են), այլ պէտք էր ասել նաև որ Խլաթը գտանւում է Վանայ ծովի ափին և այլն:

Թարգմանիչը նշանակել է Ս. Գրքից քաղած գլուխների և համաւածների տները, որոնք պատահում են բնագրում: Թէև ինքը դրան առանձին արժէք չի տալիս (առաջաբան), բայց իսկապէս դա կարևոր է և մեծ դիւրութիւն կարող է տալ ձեռագիրների համեմատական ուսումնասիրութեան և բնագիրը վերականգնելուն:

Թարգմանութիւնը ընդհանրապէս բաւական աջող է. լեզուն կոկ, պարզ և ընթերցողների մեծամասնութեան համար դիւրամատչելի, այնպէս որ, եթէ յիշելու չլինենք մի քանի չնչին անհարթութիւնները, թարգմանիչը հասել է իւր նպատակին:

Թուղթը և տպագրութիւնը մաքուր են և պարզ. գինը համեմատաբար թանկ չէ: Տպագրական սխալները շատ են:

Գ. Վնց.

**«Մուրճ», 1894, N 3, էջ 438-439**

***

ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ: Կիսամեայ պատկերազարդ. առաջին տարի. Ա գիրք. 1896. Շուշի. քառածալ.

Թէև ազգագրութիւնը նորաբողբոջ և դեռ ևս չկազմւած մի գիտութիւն է, բայց հայերս այդ մասին բաւականին հում նիւթեր ունինք. Սրուանձտեանի դասական երկերից և մի շար այլ անհատների հարուստ հաւաքածուներից յետոյ՝ ահա երևան է գալիս մինչև անգամ առանձին «Ազգագրական Հանդիսի» մի հաստ հատոր՝ և խոստանում է պարբերական հրատարակութիւն լինել:

Մի փոքրիկ ներածութիւնից յետոյ հրատարակիչ պ. Լալայեանը տալիս է «Հայ ազգագրութեան համառօտ տեսութիւնը».- Այն աստիճան թոյլ, սառն և ողորմելի մի կոմպիլացիա է դա, որ նորա վերայ կանգ առնելը ժամանակի կորուստ կ՚նշանակէ. չպարունակելով ո՛չ մի նոր միտք, նա ներկայացնում է օտար ընտիր ուսումնասիրութիւնների մի կարիկատուրան-ծաղրանկարը: Ֆրանսիացոց համար դա կարող էր գուցէ նորութիւնների շարը դասիլ. եւրոպացու ներողամտութիւնը և բռնազբօսիկ համբերութիւնը երբեմն աւելի դառն է քան ամենաաստիկ կրիտիկան:

Միանգամայն թարմ, հետաքրքիր և մեր երկրի անցեալը լուսաբանող յօդւածներ են պ. Բաքայեանի «Մանիացոց տէրութիւնը» կոմպիլացիան, «Խոջալլուի գերեզմանները» - ինքնուրոյն և «Կովկասի տեղը քաղաքակրթութեան պատմութեան մէջ» թարգմանական յօդւածները: Վերջինին կցած է հինգ ընտիր նկարուն տախտակներ, որոնցից պարզ երևում է, թէ մեր նախորդները Կովկասում (հաւանօրէն խալդեր) ո՛ր աստիճանի բարձր կուլտուրա են ունեցել: Դժբաղդաբար յօդւածի մէջ յիշւած թւահամարները չեն յիշւած տախտակների վրայ, այնպէս որ չես իմանում թէ խօսքը ո՛ր տախտակի և ո՛ր պատկերի մասին է: Թարգմանականների թւին են պատկանում նաև Պետրէի «Մարդաբանութեան պատմական զարգացումն» և Շ. Լէտուրնօի «Ամուսնութեան զարգացումն»: Երկու խնդիրներն էլ միանգամայն նոր և հարցասիրական մեր հասարակութեան համար: Մեր գրականութիւնը այնքան աղքատ է, որ դոյնանման որպիսի թարգմանութիւն

էլ տանք ընթերցողին, ուրախալի է, բայց թարգմանիչը պիտի աշխատի ընտիրը և գիտութեան վերջին խօսքը տալ թարգմանօրէն. այդ չենք կարող ասել Լէտուրնօի աշխատութեան մասին, ուր ամուսնութեան վերաբերեալ հարուստ և բազմակողմանի տեղեկութիւններ կան, բայց ո՛չ նորա զարգացման պատմութիւնը. նա միայն թւում է, նկարագրում է, յետոյ էլ աշխատում է մի որոշ եզրակացութեան բերել իր փակտերը, բայց այնպիսի մի մեծ էպօխայի մասին, որպիսին է մայրական իրաւունքը, նա ոչինչ չի յիշում: Թւում է թէ Լէտուրնօին ծանօթ չեն եղել Բախօֆէնի և Մօրգէնի աշխատութիւնները. մանաւանդ վերջինի կլասիքական գործը Հիւսիսային Ամերիկայի վայրենիների մասին, որոնց շնորհիւ միայն ամուսնութեան զարգացումը իր իսկական լուսաբանութիւնն առաւ: Լէտուրնօն առհասարակ կարծես չի՛ ուզում ընդունել ամուսնութեան զարգացումը մայրական իրաւունքից դէպի հայրականը և էնդոգամիայից դէպի էկզոգամիան. նա ճանաչում է միայն խառնակեցութիւն և միակնութիւն:- Դա հնացած գործ է և ուրեմն թարգմանութեան ընտրութիւնը սխալ:

Ինքնուրոյն յօդւածներ են պ. Օհանեանի «Կրակը» և Կրպէի «Խծկոնք»-ը: Սակայն, Հանդէսի ծուծն ու էութիւնն է «Ջաւախք» ինքնուրոյն ժողովրդագրական հաւաքածուն, որը իր առատ և բազմակողմանի նիւթերով մի ահագին գանձ է հայ ազգագրութեան համար: Ազգագրութիւնը մի շատ դժւար և ապերախտ գործ է. նա պահանջում է լուսանկարչի ճշտութիւն մեղուի ժրաջանութեան հետ, բայց և այնպէս շա՛տ անգամ նորա տւած արդիւնքը չի՛ արդարացնում այն ահագին ջանքը, որ թափւել է նորա վերայ, եթէ մանաւանդ բանահաւաքը հմտութիւն ու նրբամտութիւն չունի իր դիտողութիւնը մի քիչ խորն ուղղելու: Ջանասիրութեան կողմից պ. Լալայեանը արժանի է խորին շնորհակալութեան և գովասանքի. նորա օրինակը ցոյց է տալիս, որ ամեն մի կրթւած մարդ՝ եթէ մի քիչ իրան նեղութիւն տայ, կարող է մայրենի գրականութեանը և գիտութեանը իւրովսանն ծառայել. երանի թէ մեր պոռոտախօս ինտելիգէնտները օրինակ առնէին պ. Լալայեանից, որը մի տարի շարունակ ուսուցչութիւնը թողած անցել է ամբողջ Ջաւախքը և մեղուի ժրաջանութեամբ ուսումնասիրել հայ ժողովրդի կեանքը:- Ծաղիկներ չեն եղել նորա հաւաքածները և ո՛չ կա-

նաչազարդ դաշտեր ու ձորեր նորա այցելած տեղերը, այլ Ջաւախեցու խրճիթը, գոմը, օդան: Ով մէկ օր միայն գիշերելու առիթ է ունեցել այդ օդաներում, նա կարող է հիանալ ու զարմանալ պ. Լալայեանի տոկունութեան և կամքի վրայ: Թէ որքան հարուստ և բազմակողմանի են նորա հաւաքած նիւթերը՝ այդ լաւ երևում է նոցա գլուխներից, որ կարևոր ենք համարում այստեղ դնել. ա) Պատմական համառօտ տեսութիւն. բ) Ջաւախքի տեղագրութիւնը. գ) Հնութիւններ. դ) Բնակիչներ. ե) Վիճակագրական տեղեկութիւններ. զ) Ազգաբնակութեան շարժումն. է) Տնտեսական դրութիւն. ը) Ժողովրդի լուսաւորութիւն. թ) Հայ գիւղացիների բնակարանները. ժ) Զգեստ և զարդ. ժա) Ընտանեկան բարք. 1) Ամուսնութիւն. 2) Տղաբերք և կնունք. 3) Մանկանց դաստիարակութիւն. 4) Ընտանեկան կեանք. 5) Գերդաստանի անդամների իրաւաբանական յարաբերութիւնները. 6) Հիւանդութիւն և բժշկութիւն. 7) Ժողովրդական դեղեր. 8) Մահ և թաղումն. ժբ) Հաւատք. 1) Աստուածութիւն, սրբեր և կրօնական գրուածներ. 2) Հրեշտակներ և ոգիներ. 3) Աշխարհածնութիւն. 4) Կերպարանափոխութիւն, կախարդներ և կախարդութիւն. 5) Սնոտիապաշտութիւններ. 6) Բաղդ և ճակատագիր. 7) Պաս, ուխտ և ուխտագնացութիւն:

Նաև երկու ժողովրդական եղանակներ եւրոպական ձայնագրութեամբ պ. Կարա-Մուրզայի:

Այդ գլուխներից վիճակագրական տեղեկութիւնները, ազգաբնակութեան շարժումը և տնտեսական դրութիւնը պ. Լալայեանը քաղել է ուրիշ աղբիւրներից, որոնք արդէն բաւական հին են (1866). մնացեալը ինքնուրոյն գործ է՝ և որոշ տեսակէտից նայելով՝ բաւական լաւ գործ:

Այդ հաւաքածուի մէջ առաջին անգամ պ. Լալայեանը բաց է անում մեր վիպագիրների և գրագէտների գոված «Նահապետական հայ ընտանիքի» ներքին մռայլ պատկերը, նորա մութ և անհամակրելի կողմերը. մի ընտանիք, որի տան անդամները «արնեգնի» հաշւով պիտի հոգան իրանց երեխաների հագուստը (291 եր.). մի ընտանիք, որը կանգնած է լուծման և քայքայման աստիճանի վրայ, որի բարքը ու վարքը ապականուած, ամուսնական սրբութիւնը պղծուած (283-4 եր.), որի անդամների մէջ շահերը այնքան բաժան-բաժան և օտարացած են, որ «գողութիւն» ու խաբեբայութիւն է տիրում (281 եր.):

Այդ բոլորը շա՛տ դառն նորութիւններ, շա՛տ ճշմարիտ, շատ իրական են դժբաղդաբար, բայց և շա՛տ սխալ, շա՛տ միակողմանի և անորոշ՝ շնորհիւ բանահաւաքի թեթև և ծանծաղ ուսումնասիրութեանը: Գերդաստանի անդամների իրաւաբանական յարաբերութիւնը կարդալիս մարդ այն եզրակացութեանն է գալիս, որ մեր ժողովուրդը դէպի քայքայումն է դիմում. այդպէս է գունաւորել պ. Լալայեանը իր աշխատութիւնը և այդպէս է ճանաչում նա իր փակտերը, չկարողանալով հայի ընտանեկան կազմի էութիւնը հասկանալ և ըստ այնմ դատել: Այդտեղ ահա հարկաւոր էր փակտերը մի քիչ խորը տեսնել. չշլանալ երևոյթներով, այլ ճանաչել նոցա արմատը, չբաւականանալ հետևանքով, այլ մատնանիշ լինել նորա պատճառի վրայ. այդտեղ բանահաւաքի ուժերը իրան դաւաճանում են:

Հայ գերդաստանը, մասնաւորապէս բազմանդամ գերդաստանը, որ շլացրել է թէ՛ օտարին և թէ հային՝ դեռ մի չճանաչւած երևոյթ է: Նա գրաւել է օտարի զարմանքն ու հիացմունքը, հայի գովասանութիւնն ու պարծանքը. նա իբրև մի աւելի աչքի ընկնող, աւելի բարդ երևոյթ՝ ծածկել, վարագուրել և յետ է մղել իսկական ընտանիքը: Այժմ քայքայւում է այդ գերդաստանը և ի հարկէ ժողովրդին սիրող մարդը, ազգի ապագայ պայծառութիւնը երազողը չի՛ կարող չցաւել, չափսոսալ:- Սակայն, դա մի բացարձակ սխալ է: Պարզեմ միտքս. ես ժամանակակից հայ ընտանիքի երկու տիպ եմ ճանաչում Ջաւախքում. և կարծեմ դա ընդհանուր է համայն հայ գաւառներին.- իսկական ընտանիք և գերդաստան. առաջինը մասնաւոր է, երկրորդը ընդհանուր, առաջինը բաժանարար (единица) է, երկրորդը միութիւն, կապակցութիւն, որ կարելի է բաժանել, որպէս ամեն մի հաւաքական մարմին: Մարդու, կնոջ և երեխաների միութիւնը, քանի որ վերջինները չեն ամուսնացած, ես անւանում եմ ընտանիք. այդ ընտանիքը գոյութիւն ունի Ջաւախքում իր բոլոր սրբութեամբ, ամենալայն կոմմունական յարաբերութիւններով իր անդամների մէջ. նորանում չկայ «իմ ու քուկ», որպէս ասում է ժողովուրդը, չկայ և չի՛ կարող լինել նաև «գողութիւն», «արնեգին», կամ դոցա նման այլանդակ երևոյթներ. իսկական ընտանիքը դա է:

Մուտք գործեց այդ ընտանիքի մէջ մի օտար անդամ - մի հարս, որը ընտանիքի ծառան է, մարդու ստրուկը, կեսուրի հլու հպատակը,

որը մինչև անգամ խօսելու իրաւունք չունի տան անդամների հետ, բայց իր այդ կրաւորական դերի բոլոր կատարելութեամբ նա յեղափոխում, կերպարանագործում է ընտանիքի պատկերը. այդ իրաւազուրկ արարածը կազմում է մի նոր ընտանիք նախկինի մէջ. և ինչո՞վ, ի՞նչ է նորա իրաւունքը. նա՛ որ իր սիրասուն զաւակին «առանց հրամանի իրաւունք չունի ծիծ տալու», ունի մի քանի անճեռնմխելի ոսկիներ և մի երկու կտոր լաթեղէն իբրև սեփականութիւն. «միակ բանը, որի վրայ չի տարածւում տան մեծի (իմա՛ գերդաստանի) իշխանութիւնը, դա հարսերի փողն է» (291) ասում է պ. Լալայեանը, բայց չի լրացնում, չի հասկանում այդ արմատական երևոյթի ծանրակշիռ նշանակութիւնը. այդ հարսը այնուհետև մի տէրութիւն է տէրութեան մէջ. ջո՛կ է նորա սնդուկը, որ կողպէք է ունենում սովորաբար, ջո՛կ են նորա շահերը, ընտանիքից ջոկում, կտրում և հեռացնում է նա նաև իր մարդուն, նա հիմք է դառնում մի նոր ընտանիքի: Այդ հարսի մուտ գործած օրից նախկին մէկ ընտանիքը դառնում է երկուս. նորա ամբողջութիւնը այժմ գերդաստանն է, այսինքն ընտանիքների ժամանակաւոր միութիւնը՝ հիմնւած մեծ մասամբ տնտեսական և ֆիզիկական մեծ ուժ ունենալու համար հասարակութեան մէջ, որ անաջող պայմաններում կարող է լուծուել, կազմելով մի քանի իսկական ընտանիքներ: Ես գիտեմ գերդաստաններ բաղկացած երկուսից մինչև տասը ընտանիքներից. գերդաստանը այդպիսի ընտանիքների միութիւնն է. նորա կազմութիւնը շա՛տ բարդ է և անդամների յարաբերութիւնը շա՛տ տիպային և բնորոշ. դոցանից, այսինքն գերդաստանի անդամների յարաբերութիւններից, շատերը դիտել և նկարագրել է պ. Լալայեանը, բայց նոցա էութիւնը շա՛տ վատ է հասկացել. և այդ է պատճառը, որ այդպէս ափսոսանքով է նկարագրում նորա քայքայումը, որ ժամանակի անհրաժեշտ պահանջն է: Գերդաստանը ճնշում, հերքում ու սահմանափակում է անհատի իրաւունքները. նա խեղդում է իսկական ընտանիքի զարգացումը. նա զօրեղ է համայնքի և հասարակութեան մէջ իբրև մի խոշոր ուժ, բայց թոյլ և անբաւարար ինքն իր մէջ, իր անդամների համար. անհատական պահանջը, դորա հետ նաև բուն ընտանիքինը, այժմ անհամեմատ աւելի մեծ և զարգացած է քան սորանից մի 30-40 տարի առաջ. անհատը և ընտանիքը այժմ թոթափել են ուզում իրան-

ցից գերդաստանի ճնշումն ու կապանքը և նա կամայ-ակամայ պիտի ընկնի. գերդաստանը ժամանակիս համար ետ մնացած, աննորմալ երևոյթ է. նա ընկնում է տեղի տալով ընտանիքին, ուր անհատի շահերը աւելի են ապահով, ուր նա աւելի քիչ է ճնշւած, ուր չկան գերդաստանական այլանդակութիւնները... Հայ ընտանիքը յետ չի գնում, այլ առաջ... նա զարգանում է... Յետ գնացողը գերդաստանն է:

Մենք համառօտակի պարզեցինք մեր հայեցակէտը. այստեղ տեղը չէ այդ մասին երկարելու, որի լրիւ լուսաբանութեան համար մի ահագին ուսումնասիրութիւն էր պէտք. ով հայի ընտանիքն ու գերդաստանն է ուսումնասիրում, այդ տեսակէտով պիտի առաջնորդուի: Կինը այդտեղ հսկայական դեր է կատարում, իսկ պ. Լ.-ի աշխատութեան մէջ դա համարեա չի երևում. կնոջ իրաւունքի զարգացումը երբ նա հարս է, ապա երեխայ ունի, ապա այրի է և կամ սկեսուր՝ բոլորովին չեն պարզաբանւած հետևօրէն:- Բնորոշ կողմեր ունի մանաւանդ այրի կնոջ իրաւունքը և յարաբերութիւնը դէպի այն գերդաստանը, որից հեռանում է և այն՝ ուր մտնում է նորա իրաւունքը դէպի իր իսկական զաւակները և խորթերը, և այլն և այլն... Հայ ընտանիքի և գերդաստանի մէջ այրի կինը ամենալայն անհատական իրաւունքներն է վայելում իր համասեռ կանանց մէջ... Հայի գերդաստանը քիչ թէ շատ ճանաչում է պ. Լ.-ն, հէնց նորա փաստերը գերդաստանին են վերաբերում. բայց բուն, իսկական ընտանիքը, նա ո՛չ միայն չի ճանաչում, այլ և նորա մասին բոլորովին յիշատակութիւն էլ չկայ հաւաքածուի մէջ:

Որ հայի գերդաստանն էլ լաւ չի ճանաչում պ. Լալայեանը, այդ ցոյց է տալիս նորա սխալ կարծիքը աւագութեան մասին: Նորա ասելով աւագութեան հիմքը երէցութիւնն է, այսինքն տան երէցն է նաև աւագը՝ «իշխանը»: Սակայն, Ղատօ գիւղում Քոչոյենց գերդաստանը, որ բաղկացած է 60 հոգուց և որը հէնց այսօր «նահապետական ընտանիքի» տիպային ներկայացուն կարող է համարւել, որի պատճառով էլ նա վայելում է ամբողջ գաւառի զարմանքն ու յարգանքը, տան աւագ ունի ոչ թէ երէց, այլ երրորդ եղբայր Մաթոս քէհային: Երկու միւս եղբայրները թէև առոյգ ու խելահաս, կառավարութիւնը յանձնել են Մաթոսին (կրտսերին) իբրև աւելի ճարտարին: Ճանճղա գիւղում հօր և մեծ եղբօր ներկայութեամբ Վանցոնց տունը կառավարում է

երկրորդ եղբայր Իսրայէլը. նոյնն էին մի քանի տարի առաջ Ալեքսանենց, Խուդավերդենց և այլոց բազմամարդ գերդաստանները: Պատահում է, որ տան «խօսքը» մինին է պատկանում, իսկ տնտեսական կառավարութիւնը մի ուրիշին. պատահում է, որ երկու եղբայրները միասին են կառավարում. մի խօսքով, այդտեղ դեր ունի երէցութեան հետ նաև ճարտարութիւնը, փորձառութիւնը, խելացիութիւնը, հասարակութեան մէջ ել ու մուտ ունենալու, «ճակատ պարզ անելու» ընդունակութիւնը: Այնպէս որ եթէ փոքր եղբայրը, կամ հօր կենդանութեանը որդին աւելի ճարտար է հօրից ու գործունեայ, ապա երէցութիւնը խոնարհում է խելքի առաջ և աւագութիւնը անցնում է փոքրին: Երէցութիւնը պրինցիպ չէ աւագութեան՝ այլ պայման. ով լաւ և պիտանի կարող է ծառայել գերդաստանին, նա էլ աւագն է կամ «մեծը»:

«Նախնի բարոյականութիւնը դժբաղդաբար այժմ անհետացել է և անբարոյականութիւնը հետզհետէ տարածւում է» (282 եր.) ասում է պ. Լ.-ն: Դեռ շատ տարակուսական և հիմնազուրկ մի հարց է նախնի բարոյականութեան թուլանալ կամ ամրանալը. ո՞րտեղից գիտէ պ. Լ.-ն նախնի բարոյականութեան մասին, և առհասարակ ի՞նչ մի ստոյգ բան գիտենք մենք մեր նախնիների մասին, որոնք հէնց սորանից 50-60 տարի առաջ էին ապրում. մեզ անյայտ է թէ հայ ժողովուրդը առաջ որքան բարոյական էր ներկայի համեմատութեամբ. այդ մասին մենք ո՛չ մի փաստ չունինք և դա միայն պառաւների ու ծերերի մխիթարութիւնն է անցեալը միայն վարդի գոյներով տեսնել. գիտութիւնը փաստ է ուզում, իսկ դուք փաստ չունիք:

Եւ ի՛նչ է այն բարոյականութիւնը, որ դուք դատապարտել էք աշխատում: Դուք չէք որոշում երկու տարրական երևոյթներ - անառակութիւնը, որ մարմինը ծախում է դրամին, և բուրժուաների լեզւով ասենք՝ «ընտանեկան անհաւատարմութիւնը», այն որ ժողովուրդը անւանում է «սիրող անել»: Դոքա տարբեր են միմեանցից որպէս երկինք ու երկիր: Պ. Լալայեան չի՛ յիշատակում անառակութեան ո՛չ մի դէպք, որոնք, այո՛, պատահում են թէև շա՛տ հազիւ. բայց «սիրող անելը» անւանում է նա անբարոյականութիւն:- Յայտնի պիտի լինի, որ ամուսնութիւնը Ջաւախքում կատարւում է ծնողների կամքով, որ ամուսինները շատ անգամ մի-մի զոհ են ծնողական բռնակալութեան.

այն էլ պիտի յայտնի լինի, որ մարդիկ շատ անգամ բնական արատներ են ունենում, անընդունակ են լինում ամուսնական պարտքը կատարելու. այն էլ գիտէք, որ մարդու և կնոջ յարաբերութիւնը մեծ մասամբ տիրապետի և ստրկի յարաբերութիւններ են, ուր ընտանեկան սէր չի՛ կարող գոյանալ. նկատեցէք, որ անզաւակ լինելը մի արատ է կնոջ համար, որի պատճառով նա ստիպւած է լինում «բարձը փոխելու», ինչպէս ժողովուրդն է ասում. և այն ժամանակ հասկանալի կը լինի, որ այդպիսի պայմաններում շա՛տ բնական է, որ կինը դաւաճանէ իւր անընդունակ ամուսնուն կամ ամուսինը իւր ատած կնոջը... Եւ եթէ այդ երևոյթը մի քիչ խորը դիտելու լինէք, կը տեսնէք, որ «սիրող են անում» մեծ մասամբ ընտանեկան դժբաղդները: Ժողովուրդը դա չի անւանում անառակութիւն, այլ «սիրող անել».- սէրը անդատապարտելի է, նա՛ է սերնդի ազնւանալու հիմքը:

Ժողովրդի բարոյականութեան, կամ աւելի և լաւ ասել, նորա կուլտուրայի աստիճանը շատ պարզ կ՛երևար, եթէ պ. Լալայեանը չմոռանար յանցանքների և նորա տեսակների վիճակագրութիւնը տալ. զարմանալի է, որ այդ կարևոր կէտը բոլորովին չի յիշւում այդքան բազմակողմանի աշխատութեան մէջ:

Սակայն այդ աշխատութիւնը բազմակողմանի և հարուստ է ո՛չ թէ որակով, այլ քանակով. սատանաներին վերաբերեալ անցողական սնոտիապաշտութիւններին ահագին տեղ է նւիրւած, իսկ մի այնպիսի էական կողմ, որպիսին է յանցանքների վիճակագրութիւնը կամ ժողովրդի կուլտուրական քարաքտէրը բոլորովին բաց է թողնւած. ի դէպ է նկատել, որ Ջաւախքը Կովկասի ամենահանդարտ գաւառներից մէկն է. երեք տարի սրանից առաջ մի ամիս շարունակ Ախալքալաքի բանտում յանցաւոր, իսկ քննիչի մօտ գործեր չկային քննելու.- մի երևոյթ, որ Եւրոպայումն էլ հազիւ կը պատահի: Այդ բաւական չէ՛, պ. Լ.-նը մոռացութեան է տւել նաև համայնքը. մարդը հասարակային էակ է, ասել է Արիստոտելը. առանց հասարակութեան համայնքի, առանց համայնական միջավայրի չէին կարող առաջ գալ բանահաւաքի նկարագրած երևոյթներից և ոչ մինը... Սակայն պ. Լ.-ի ոտը քարի է դէմ առնում այնտեղ, ուր լռում է պ. Խալաթեանի ծրագիրը, որով նա առաջնորդւել է իւր նիւթերը հաւաքելիս:

Առատ նիւթեր կան գրքի մէջ ժողովրդի հաւատալիքի, հարսանիքի, տղաբերքի, կնունքի և այլոց մասին... Որպէս նաև տեղի բարբառով զրոյցներ զանազան պարունակութեամբ:

Բայց ինչ որ մենք ասել էինք 1892 թ. «Մուրճ»-ի 7-8 N-ում «Ջաւախքի բուրմունք»-ի մասին, նոյնն էլ կրկնում ենք և այժմ, որ բարբառի նրբութիւնները, մանաւանդ հնչիւնաբանութիւնը այլանդակւած է: Օրինակներ աւելորդ ենք համարում բերել մատնանիշ լինելով մեր անցեալ քննադատականի վրայ, որից պ. Լ.-ն չկարողացաւ օգտւել: Պր. Լալայեանը բարբառը չգիտէ և այլանդակում է նորա հնչիւնաբանութիւնը, ինչպէս որ այլանդակել է նաև բոշայերէն երգերինը[1] «Ջաւախքի բուրմունք»-ի սխալները պ. Լ.-ն իւր պատասխանի մէջ[2] փաթաթում էր Հրատարակչ. ընկ. վզին. իսկ ա՞յժմ ինչ կ՛ասէ:

Հաւաքածուի լրջութեանը վնասում են նորա մի քանի լեզւաբանական բացատրութիւնները, որոնք առ սակաւը հաւաքողի բոբիկութիւնն են ցոյց տալիս այդ գիտութեան մէջ. Խըրթըզը նա հանում է վրացերէն Էրթւիս բառից. դա վրաց ազգասիրական բացատրութիւնն է: Աբուլ սարի՝ իբր թէ նշանակում է քրմապետ. ո՞ր լեզւով:

Կուրիօզների թւին է պատկանում և 134-րդ երեսի այս նկարագիրը. ծիւնի և բքի պատճառով «գիւղացիք ամբողջ շաբաթով բանտարկւած են մնում և կերակրւում են այն հացով, որ բարեկամները հերթիկը բանում և վայր են կախում». հապա այդ բարեկամները ի՞նչպէս են դուրս գալիս տանից. կամ եթէ դուրսն են մնացել՝ ի՞նչպէս չեն սառչում ցրտից. ո՞վ կարի է առասպելս:

Ընդհանրապէս վերցրած գիրքը իւր ահագին ծաւալով պատկառելի տպաւորութիւն է թողնում և եթէ աչքի առաջ ունենանք նորա 6 պատկերները, հինգ ահագին նկարների տախտակները՝ տպագրութեան և թղթի մաքրութիւնը, ապա նա չափազանց էժան է. 2 րուբլի:

Ի դէպ՝ պատկերների մասին: Ինչ կարիք կար այդտեղ Վիրխովի և Լէ-Տուրնոի պատկերներին, ես չեմ հասկանում. առաջին՝ Վիրխովի պատկերը աջող չի կարելի համարել. և երկրորդ՝ նա մեծ էտնոգրաֆ

1. «Ջաւախք»-ում բոշաների մասին գրածը թող ընթերցողը համեմատի «Մուրճ», 1892 թ., N 7, 8 և 9. «Հայ բոշաներ» յօդւածի հետ:

2. Տպւած «Մուրճ», 1892, N 10:

կամ էտնոլոգ չէ՛. նա մեծ է այլ ասպարիզում: Այդ երկու պատկերը այս հանդիսին շատ քիչ են յարմարում: Դորա էութիւնն ու ծուծը Ջաւախքն է, և նորա ժողովրդի կեանքից ո՛չ մի պատկեր չկայ. ո՛չ հայ գիւղացին, ո՛չ հայ գեղջկուհին, ոչ արհեստաւորը և ոչ մի ընդհանուր տիպային պատկեր: Մի բուրժուա ոսկէ պաճուճ օրիորդի պատկերը գաղափար չի կարող տալ Ջաւախքի ժողովրդի մասին: Փոխանակ Վիրխովի, Լէ-Տուրնօի՝ կարելի էր ջաւախեցու պատկերներ տալ: Դա թէ՛ ցուցամոլութիւն չէր լինի, թէ՛ նորութիւն կը լինէր և թէ հանդիսի նպատակին յարմար ու պատշաճ կը լինէր: Հայ գիւղացու տունը, գործիքները, տեղական կենդանիները, գութանը, սայլը, կարող էին աւելի կարևոր լինել. նոքա ժողովրդի կուլտուրայի շօշափելի, իրական արտայայտիչներն են... Նոքա փոխւում են ու կորչում. պէտք է նոցա՛ փրկել կորուստից. Վիրխովների պատկերները երբէ՛ք չեն կորչի:

**«Մուրճ», 1896, N 5, էջ 634-641**

***

ՅՈՎՆԱՆԵԱՆ, Վ. Մխիթ. Ուխտէ. Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ. գրեց Հ. Ղևոնդ, Մասն Ա, Վիեննա, 1897 թ., ութծալ, 272 եր.

Մեր դասական անւանեալ մատենագրութիւնը, յատկապէս նորա մի քանի ականաւոր ներկայացուցիչները՝ Խորենացի, Բիւզանդ, Ագաթանգեղոս և այլք իրանց պատմական նիւթի կարևորութեամբ, Եզնիկ, Եղիշէ, Փարպեցի և այլք իրանց պերճ ու փարթամ լեզւով այնքան են գրաւել հայ բանասիրութեան ուշը, որ ստորին դարերի մեր ռամկախառն կամ զուտ ռամիկ գրականութիւնը սակաւ բացառութեամբ մնում է փոշու մէջ թաղւած մի անծանօթ գանձ: Եւ իրաւ, մի սովորական բանասէր, որ մեր ձեռագիրների հաւաքածուներին և նոցա բովանդակութեանը անձամբ ծանօթ չէ, բնաւ տեղեկութիւն անգամ չի կարող ունենալ, որ մենք բացի դասականից ունենք և մի այլ թէև ո՛չ այնպէս փայլուն ու վսեմ գրականութիւն, որ «ոսկի» կամ «արծաթ» անունը վայելել կարողանար, բայց իր պարզութեամբ, իր ձևերի, ոճերի և բազմաթիւ նոր բառերի գանձով, որից զուրկ են գրաբարը և արդի աշխարհաբարը, մանաւանդ իր բնտանութեամբ, իր անմիջական մօտիկութեամբ ներկայի կենդանի բարբառներին, շատ բաներով աւելի օգտակար և պիտանի կարող էր լինել քան ոսկէ դարու երկերը...

Ուստի՝ «Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ» գրքի երևան գալը, ուր նախնի ռամկօրէնի նմուշներ և ուսումնասիրութիւններ կան ժամանակի կարգով, ո՛չ միայն պատմական լուսաբանութեան տեսակէտով, այլ և մեր աղքատիկ աշխարհաբարը հարստացնելու համար գործնական նշանակութիւն կարող է ունենալ, որ և առանձնապէս շեշտում է հեղինակը իր առաջաբանում:

Այդ ռամիկ գրականութիւնը տարբերւում է դասականից ո՛չ միայն իր լեզւով ու ձևով, այլև նիւթով ու պարունակութեամբ. դասական գրականութեան երկերը անհատական երևոյթներ են, նոցա հեղինակները մեծ մասամբ արտասահմանում կրթւած, ժողովրդից մասամբ հեռացած, բարձր նիւթերով զբաղւած անձեր են:

Նոցա լեզուն պալատական մի նեղ և բարձր շրջանի լեզու էր, գրութեան նիւթը պատմութիւն, փիլիսոփայութիւն կամ կրօնական հարցեր: Նորա մէջ ժողովուրդ չկայ...

Ռամիկ գրականութիւնը ընդհակառակը հայ ժողովրդի մտաւոր կացութեան եթէ ոչ իսկական, գէթ նորա ամենամօտ պատկերն է տալիս միջին դարերում. նորա յատկանիշներից մինն էլ այն է, որ հեղինակները մեծ մասամբ աշխարհական անձեր են, որոնց մէջ նոյն իսկ մի սպարապետի անուան ենք հանդիպում (Սմբատ գունդստապլ - թագաւորի եղբայր և զօրապետ): Այդ գրականութեան բովանդակութիւնը առօրեայ կեանքի անմիջական պիտոյքներն են. բուժականութիւն, մեղւապահութիւն, դատաստանագրեր, արտօնագրեր, դիւանական դոկումենտներ, երգեր, հանելուկներ, առակներ, թեթև դիւրահաս պատմութիւններ և այլն: Ի նկատի ունենալով, որ այդ ամեն տեսակէտով հարցասիրական նիւթերից հազիւ մի երկուսը լոյս են տեսել առանձին տպագրութեամբ, հանգուցեալ հայր Յովնանեանի այս գործը արժանի է խորին շնորհակալութեան:

Դեռ երեսուն տարիներ առաջ բազմահմուտ Այտընեանը ցոյց տուաւ նոյն իսկ հինգերորդ դարու հեղինակների մէջ ռամկօրէնի գոյութիւնը, իսկ հայր Յովնանեանը իր բերած նմուշներով ցոյց է տալիս, որ նոյն ռամկօրէնը գէթ 12-երորդ դարում մի հաստատուն և համարեա կազմակերպւած գրական լեզու էր, որի գործածութիւնից չէր խորշում նոյն իսկ մեր արծաթեայ դարու ամենափայլուն աստղը - Շնորհալին... Դա շատ խրատական է, որովհետև մի երեք տասնեակ տարի առաջ տաք բանակռիւ կար թէ արդեօք կարելի է՞ կամ պէ՞տք է աշխարհաբար գրել, մինչ մեր նախնիք առանց աղմուկի դեռ 12-րդ դարում աշխարհաբար էին գրում, որի վերայ սակայն, ժամանակի անաջող պայմանները և Ռուբինեան հարստութեան կարճատև կեանքը մահացու ազդեցութիւն ունեցան և նա թառամեց առանց աճել ու զարգանալ կարենալու... Թէև բերած նիւթերը շատ սակաւ են, բայց հէնց եղածն էլ բաւական է տեսնելու, թէ որպէս գրաբարի բազմաթիւ ձևերը լեզւի աստիճանական զարգացմամբ հասել են այն դրութեանը, որ մենք այսօր գտնում ենք կենդանի բարբառներում: Միջնադարեան ռամկօրէնը հին գրաբարի և մեր նորագոյն աշխարհաբար լեզուների

միջին օղը և մանաւանդ արևմտեան լեզւի (Պոլսի) անմիջական ծնողը կարելի է համարել: Այդ ռամկօրէնը չնայելով իւր հնութեանը շա՛տ բաներով աւելի աշխարհաբար է քան այսօրւայ մեր ու Պոլսի գրական լեզուները. տեղ-տեղ նորա մէջ ցոլում է կենդանի լեզւի պատկերը իւր բոլոր խտակութեամբ, որպէս Արարատեան բարբառը Աբովեանի և Պռոշեանի երկերում, և չունի այն խորթութիւններն ու անհարազատ բարդութիւնները, որոնցով հարուստ է մանաւանդ մեր լեզուն: Ոգու և ոճի կողմից, չնայելով բազմաթիւ օտարազգի բառերի գործածութեան՝ այդ լեզուն բուն հայերէն է:

Եթէ այդ միջնադարեան հայերէնը մեզ այնպէս ծանօթ լինէր որպէս գրաբարը, ապա կարիք չէինք ունենայ շատ նոր և անաջող բարդութիւններ հնարելու կամ սխալ գործածելու, որպէս այսօր. օրինակ 12-րդ դարում հայերը մեղւապահութեան համար ունէին պարամայր (պարսմայր կամ պարուց մայր), մարի և որձ բառերը այն մեղուների համար, որոնց մենք այսօր շինովի և անաջող բառերով անւանում ենք թագուհի, աշխատաւոր մեղու և բոռ. շարժական կայքը նոքա անւանում էին շարժուն իր և այլն... Բանաստեղծը առօրեայ կեանքի, իրաւաբանական, բուժական և դիւանագիտական բազմաթիւ ընտիր և հաստատուն տերմիններ կարող է գտնել այդ գրականութեան մէջ, որոնք մենք մուրածու բառերով ենք արտայայտում:

Այդ գրքի ամենամեծ պակասութիւնն այն է, որ օտարազգի բառերից միայն ֆրանսերէնի թարգմանութիւնը կայ, մինչ արաբերէն, յունարէն և այլ բառերը մնում են առանց բացատրութեան: Յուսանք որ գրքի երկրորդ հատորը այդ պակասութիւնից զերծ հրատարակւի:

Առիթից օգտւում ենք «թարգմանել» բառի միջնադարեան նշանակութեան մասին երկու խօսք ասելու. թարգմանել բառը Շահնազարեան վարդապետին առիթ է տուել կարծելու, իբրև թէ Սմբատ սպարապետը իւր տարեգրութիւնը օտար լեզւով է գրել և ապա հայերէն թարգմանել: Գրքիս հեղինակը աշխատում է հերքել այդ կարծիքը, ջանալով ցոյց տալ, որ Սմբատը չէր կարող օտար լեզւով գրած լինել իւր պատմութիւնը. և սակայն կարևոր թարգմանել բառը մնում է անհերքելի: Մեր կողմից կարող ենք աւելացնել, որ հէնց այսօր Բարձր Հայքի գիւղական ժողովուրդը (Ախալքալաք) թարգմանել կամ «թարդմա-

նել» բառը գործ է ածում յօրինել, շարադրել, հեղինակել, հնարել բառերի նշանակութեամբ. նոյն մտքով է բանեցրել անտարակոյս և Սմբատ զօրապետը:

Այդ հաստատուում է նորանով, որ նոյն Սմբատը մի քանի այլ տեղեր, ուր խօսքը իսկական թարգմանութեան մասին է, բանեցնում է փոխել բառը, այսպէս էջ 201. «Ես բազում աշխատութեամբ փոխեցի զսա ի մեր հեշտալուր բառս». 202. «և ձեռօք իմովք աշխատեցայ և փոխեցի զսա». մի անյայտ անձն ասում է. «զի սա (Սմբատ) ետ մեզ փոխել ի յիւր լուսաւորեալ գրոցն» (202). Ամիրտովլաթը, մի բոլորովին այլ անձնաւորութիւն, 55-րդ երեսում ասում է. «այնոր համար՝ որ այս գիրքս ի յայլ լեզուէ փոխել է»: Սմբատը անսիզների թարգմանութեան մասին ասում է. «և ես աշխատեցայ և փոխեցի ի հայ լեզուս (190)... և հալածեցայ ի փոխելն և երբ փոխեցի ես...»: Բոլորը՝ թարգմ. բառի մտքով:- Ուրեմն հին ռամկօրէնում փոխել նշանակում էր թարգմանել, իսկ թարգմանել՝ հեղինակել, յօրինել:

**«Մուրճ», 1897 թ., N 3, էջ 870-872**

***

ԵԿՄԱԼԵԱՆԻ ներդաշնակած «Պատարագի երգեցողութեանց» առթիւ

Պ. Եկմալեանը գովելի հեռատեսութեամբ իր պատարագի արարողութեան մի օրինակը նւիրել է Բերլինի երաժշտական ճեմարանին: Մենք առիթ ունեցանք այդ մեծահատոր և բազմավաստակ երկը դիտելու և մի քանի անգամ նորանից հատուածներ լսելու: Դա մի նոր նշան է հայի առաջադիմութեան կուլտուրական մի նոր ասպարիզում, ուր մենք միանգամայն օտար ենք և ո՛չ մի նշանաւոր բան չենք արտադրել մինչև օրս:

Իսկ Վեհափառի կոնդակը այդ գործի ճակատին և նորա ընդունելութիւնը հայ եկեղեցու կողմից մի հաստատուն գրաւական է, որ մեր եկեղեցին թէև դանդաղ, բայց հաստատուն քայլերով առաջադիմելու ընդունակութիւնից դեռ զուրկ չէ՛: Երբ ժողովրդի ականջը սովորի աւելի կիրթ երգեցողութեան, երբ նորա գեղարւեստական պահանջներն աւելի զարգանան ու կազմակերպւին, անյուսալի չէ՛, որ դաշնամուրն ու օրգել-ն էլ տեղ գտնեն հայ եկեղեցու մէջ, որովհետև ընտիր երաժշտութիւնը մարդկային զգացման վեհագոյն արտայայտիչն է դէպի երկնայինը, իսկ հայ եկեղեցին սկզբունքով երբէ՛ք հակառակ չի եղել ո՛չ կանոնաւոր հոգևոր երգեցողութեանը, ո՛չ էլ երաժշտութեանը:

Անցնելով մեր նիւթին, թող ներելի լինի մեր համեստ դիտողութիւններն անել Գէորգ կաթողիկոսի ձայնագրել տւած պատարագի երգեցողութեանց մասին ընդհանուր-գեղարւեստական տեսակէտով, որ պարոն Եկմալեանը ներդաշնակել է շա՛տ չնչին փոփոխութիւններով:- Դիտել ենք տալիս, որ մեր խօսքը պ. Եկմալեանի գործի մասին չէ՛ անմիջապէս. այլ նորա առթիւ:

Ամեն մի արւեստագէտ, որ ձեռնարկում է մի գործի, որի վերայ տարիներով քրտինք ու ջանք է թափում, ի նկատի ունի, որ այդ գործից ծագելու է մի գեղարւեստական ամբողջութիւն, որի մասերը օրգանապէս շաղկապւած են միմեանց հետ և ամեն մի մասը տրամաբանական արդիւնք և գեղարւեստական անհրաժեշտութիւն է մնացեալ

ամբողջութեան. այդ է ամեն մի ստեղծագործութեան իդէալը, եթէ նա իրօք ստեղծագործութիւն է ուզում լինել:

Գէորգ Կաթ. ձայնագրել տուած պատարագը ունի՞ այդ օրգանական կապը, արդեօք նա մի հասուն գեղարուեստական գո՞րծ է, կարո՞ղ է նա ստեղծագործութիւն կոչւիլ, մեր կուլտուրական կացութեան մէջ մի՞թէ մենք կարո՞ղ էինք մի այդպիսի գործ ունենալ, որ գէթ չափաւոր կերպով համապատասխանէր գեղարուեստօրէն զարգացած ականջի և մտքի պահանջներին. ո՛չ և դարձեալ ո՛չ, պիտի պատասխանէ անտարակոյս ինքը Պ. Եկմալեանը: Այդ տեսակէտով ուրեմն նորա ընտրած նիւթը չունենալով գեղարուեստական ամբողջութիւն, նորա անփոփոխ ներդաշնակութիւնն էլ զուրկ է բնականօրէն նոյն ամբողջութիւնից: Պ. Եկմալեանից անտարակոյս չէ՛ր կարելի պահանջել, որ ամբողջովին վերակազմէր պատարագի երգեցողութիւնը, քանի որ նա ստեղծագործող հեղինակ չէ՛, այլ միայն եղածը մշակող. սակայն, մշակողի իդէալն էլ այնքան աւելի գնահատելի կը լինի, որքան նա մօտեցած կը լինի վերևը դրած պահանջներին:

Սորանով չենք ուզում ասել, թէ մեր պատարագի երգեցողութիւնը զուրկ է առհասարակ արժանիքից. քա՜ւ լիցի.- ընդհակառակը, նա ունի շա՛տ ընտիր, տեղ-տեղ նոյն իսկ հիանալի կտորներ... Այդ շա՛տ լաւ է զգացել պ. ներդաշնակողը, որ երբեմն չի՛ խնայել իր ջանքը հիանալի կերպով ներդաշնակելու համար, երբեմն էլ բաւականացել է միայն ընդհանուր ձայնապահութեամբ:

Էջմիածնում ձայնագրած պատարագի մի այլ մեծ պակասութիւնն էլ այն է, որ նա շա՛տ մասերով հայերէ՛ն և հայ հոգու արտայայտութիւն չէ՛: Այդ անյայտ չէ պ. Եկմալեանին, որ իր առաջաբանում յիշում է նորա կրած ազդեցութիւնը կուլտուրապէս մեզանից բարձր կանգնած ազգերից: Հայրիկն էլ իր կոնդակի մէջ ցանկութիւն է յայտնում բուն հայկականը գտնելու:

Մենք որպէս հայ ժողովրդի ա՛յն մասի զաւակ, որ դեռ չէ՛ կորցրել հայերէն երգելու, հայերէն ողբալու, ուրախանալու և աղօթելու անհատական յատկութիւնները, կարող ենք պնդել այդ կարծիքը, որ պատարագի երգեցողութիւնը շա՛տ է ենթարկւած օտար ազդեցութեան...: Թող մասնագէտը որոշէ, թէ նորա ո՛ր մասը պարսիկ, արաբական և

կամ յոյն ծագումն ունի և ո՛ր մասը տգէտ ու անճաշակ տիրացուների կամայականութեան արդիւնք է. իրողութիւնն այն է, որ այս տեսակէտով էլ փոքրանում է պ. Եկմալեանի գործի նշանակութիւնը: Երգեցողութիւնը և երաժշտութիւնը արւեստներից ամենա-անհատական և ազգայիններից ամենա-ազգայինն են. նոքա մի ազգի անհատականութեան ցոլապատկերն են (Spiegelbild). մեր պատարագի երգեցողութիւնը շա՛տ մասերով զուրկ է այդ յատկութիւնից, որ անդրադառնում է և պ. ներդաշնակողի գործի վերայ:

Առհասարակ պ. Եկմալեանը իրան կրաւոր դեր է յատկացրել, որ շատ էլ ներելի չէ մի արւեստագէտի համար. ցանկալի էր, որ նա ներգործաբար երևար այն տեղերը, որոնք խորթութեան և օտարութեան ակնյայտնի հետքեր են կրում կամ զուրկ են գեղարւեստական արժանիքից:

Սակայն գուցէ մենք պահանջում ենք անկարելին, այդ գուցէ ապագայի և կուլտուրայի գործ է, երբ մի հայ Վագնէր բիւրեղացնելով իւր մէջ իւր ազգի զգացումները, բովէր այն իւր հանճարի բոցով և անհատական կնիքը ճակատին՝ լոյս աշխարհ հանէր որպէս մարդկային ստեղծագործութեան հրաշալիք... այո՛, այդ ամենը հեռաւոր կուլտուրայի գործ է:

Ո՞րն է ուրեմն այս գործի արժանիքը[1] եղածը, սովորականը քիչ թէ շատ ներդաշնակել, ազատել տիրացուների կամայականութիւնից, մտցնել կրթւած ականջի համար քիչ թէ շատ տանելի տարր. ամեն տեղ առաջացնել միատեսակութիւն և կանոնաւորութիւն:- Ահա դորա արժանիքը:

Ի նկատի ունենալով գործի առաջնութիւնը և նորութիւնը, մեր նկատած պակասութիւնները ներելի մասամբ և հասկանալի են: Պ. Եկմալեանին մենք ցանկանում ենք լիասիրտն աջողութիւն և եռանդ նոր և աւելի լա՛ւ գործերի համար:

Բերլին, 1898 յունւար

**«Մուրճ», 1898, N 4, էջ 533-535**

1. Բերլինում մի հմուտ և ձեռնհաս անձի կողմից պատրաստւում է քննադատութիւն այդ գործի ներքին և արտաքին առաւելութիւնների և պակասութիւնների մասին:

* * *

ԷԲԵՐՍ, Գ.- «Մարդ եմ» (Homo sum). Վէպ. Գերմաներէն բնագրից թարգմանեց Ստ. Մալխասեանց. Թիֆլիս. տպ. Մ. Դ. Ռօտինեանի. 1898, սեփ. Թիֆլիսի Հ. Հրատ. Ընկ., ութածալ. 428 էջ. գինն է 50 կոպ.:

Լոկ «Մուրճ»-ի խմբագրութեան յանձնարարութիւնը, գրախօսելու և համեմատելու այս գիրքը բնագրի հետ, ինձ համբերութեամբ զինեց ծայրէ ծայր կարդալու այն և տեղ-տեղ ստուգելու թարգմանութեան ճշտութիւնը, որովհետև երկու երեք գլուխ կարդալուց յետոյ՝ արդէն երևում է այս գործի նւազ գեղարւեստական արժէքը և հերոսների անբնական տիպերը:- Չուզելով իմ անհատական տպաւորութիւնը իբրև զուտ ոսկի ծախել, ես դիմեցի մի քանի բանիմաց գերմանացիների կարծիքն իմանալու:

Նրանք զարմանում են, որ գերմանական ծով գրականութիւնից մի «Homo sum» է հայերէն թարգմանւում, այն էլ տպւելուց տասնեակ տարիներ յետոյ (առաջին տպագրութիւնը եղել է ուղիղ քսան տարի սորանից առաջ 1878-ին):

«Էբերսը երկրորդ կարգի գրող է. իսկ «Homo sum»-ը նրա երկրորդական գործերից». «տասնիններորդ դարու գերմանացիներին նա ներկայացնել է ուզում չորրորդ դարու փալասների մէջ».- այսպէս կարելի էր ամփոփել գերմանացիների կարծիքը նրա մասին:

Էբերսի նշանակութիւնն ինձ համար աւելի պարզւեց նրա ոչ անակնկալ մահով օգոստ. 7-ին, որովհետև նա վաղուց հիւանդ էր: Նորա գործունէութեանը նւիրւած մի յօդւածում մի յայտնի լրագիր հետևեալն է ասում. «Էբերսը մեր գրականութեան հերոսների թւին չէր պատկանում, թէև իր ժամանակին նա շատ կարդացւած հեղինակներից մինն է եղել»...

Նա ծագում է մի քրիստոնէացած հրէական ընտանիքից, որը լիապէս օժտւած է եղել այդ ազգին յատուկ ընդունակութիւններով և պակասութիւնով:- Ծնւել է Բերլինում 1837-ին. ուսել է Գէօտտինգենի և Բերլինի համալսարաններում. մասնագիտութիւնը եղել է եգիպտաբանութիւնը, որով և մեծ գիտական հռչակ է վայելում: Իր գիտական ուսումնասիրութիւնների արդիւնքը նա աշխատել է վէպերով մատչե-

լի դարձնել նաև ընթերցող հասարակութեանը և ժամանակին մեծ ժողովրդականութիւն է վայելել մանաւանդ «Եգիպտոսի արքայադուստր» վէպով:

Էբերսը, սակայն, այն գրողներից է, որոնք մոդայի շնորհիւ սիրով ընդունելութիւն են գտնում, շատ կարդացւում, շուտ էլ մոռացւում են. և վերջին տասնամեակում նա արդէն մոռացւած տաղանդների թւին էր պատկանում:- Ինձ այն չի զարմացնում, որ մի այսպիսի երկրորդական գործ թարգմանութեան է արժանանում, որովհետև ըստ ռուսական առածի «на вкусъ и цветъ товарища нетъ», այլ այն, որ մի Հրատ. Ընկ. արժան է համարում այդ տպագրելու:

«Մարդ եմ» վէպի բովանդակութիւնն աւելորդ եմ համարում այստեղ դնել. ով ուզում է, կարող է կարդալ, ես միանգամայն կորած եմ համարում այն ժամանակս, որ գործ դրի այդ գիրքը կարդալու:- Գրքի նիւթը չորրորդ դարու անապատականների կեանքից է առնւած և համեմւած է արհեստական էֆէկտներով: Միակ արժանիքը, հարաւի բնութեանը նւիրած գեղեցիկ, կարելի է ասել բանաստեղծական նկարագիրներն են: Թէ որքան աջող է այս գրքի թարգմանութիւնը, ընթերցողը կարող է հետևեալ հատւածների համեմատութիւնից դատել, որ մենք արել ենք զանազան պատահական երեսներ դիտելով:- Առաջին երեսը սովորաբար ամենից խնամքով է թարգմանւում. ահա դորա համեմատութիւնը:

Und doch, in jener Hohlung des Bergeswand regt sich menschliches Leben, und zwei kleine graue Vogel wiegen sich in der reinen, leichten, von der Mittagssonne durchgluhten Wustenluft und verschwinden hinter einer Klippenreihe, die wie eine Mauer von Menschenhand, eine tiefe Schlucht begrenzt»:

Թարգմանւած է.

«Բայց ահա այնտեղ, լեռնային պարսպի մի խորշում, մարդկային կեանքի նշաններ են երևում, և երկու գորշագոյն մանր թռչուններ սաւառնում են կէսօրւայ արևից ջերմացած, անապատի մաքուր ու թեթև օդի մէջ, և անհետանում են քարաժայռի շարքերի ետև, որոնք իբրև մարդկային ձեռքի շինած պարիսպներ՝ խոր ձորի բերանից վեր են ամբառնում»:

Մենք նոյնը այսպէս կը թարգմանէինք.- Սակայն, այնտեղ, լեռնային պարսպի մի խոռոչում, մարդկային կեանք է շարժւում. և երկու փոքրիկ, գորշ թռչուն օրօրւում են անապատի մաքուր, թեթև ու կէսօրւայ արևից տապացած օդի մէջ՝ և աննյայտանում են քարաժայռի շարքի յետևը, որը ճեռակերտ պարսպի պէս սահմանափակում է մի խորին անդունդ:

Հայերէն չի կարելի ասել մանր թռչուն, մանր երեխայ, մանր մարդ. այլ փոքր, փոքրիկ, որ գործ է ածւում սովորաբար շնչաւոր առարկաների համար: Գերմաներէնը չունի այդ նրբութիւնը, որ շփոթեցրել է թարգմանչին:- Hohlung այստեղ չի կարելի խորշ թարգմանել. մեր նոր գրականութեան մէջ այդ բառը շատ փոքրիկ փոսի նշանակութիւն է ստացել. «սրտախորշ», «նախախորշ»... այն ինչ խոռոչ սովորաբար գործ է ածւում գազանների որջը ցոյց տալու համար, ուր և «մարդկային կեանք կարող էր շարժիլ»:- «Երկու թռչուններ», հինգ մարդիկ, վեց կանայք. խորթ է հնչում մեր ականջին. աշխարհաբարի առանձնայատկութիւններից մին է այս, որ թւականի մօտ գոյականը եզակի է դրւում, բայց յոգնակի հասկացւում:

Grau նշանակում է գորշ. ինչ կարիք կայ մի աւելորդ բարդութեան:- «Գորշագոյն» կարելի էր այն ժամանակ թարգմանել, եթէ բնագրում graufarbig լինէր: Wiegen այստեղ նշանակում է օրօրւել, տատանւիլ, ոչ երբէք «սաւառնիլ»:

Klippenreihe և դորան յաջորդող ամբողջ նախադասութիւնը եզակի է, այն ինչ հայերէն յոգնակի է թարգմանւած և այն էլ լիովին սխալ. «eine tiefe Schlucht begrenzt» - բառացի նշանակում է. «մի խոր անդունդ սահմանափակւած». թարգմանւած է. «խոր ձորի բերանից վեր են ամբառնում»: Մենք մի քիչ մանրակրկիտ ենք քննում, որ գերմանէրէնին անծանօթ ընթերցողին գաղափար տանք թարգմանութեան արժէքի մասին:

«Denn ein Quell benetzt ihren steinigen Boden». «Որովհետև մի աղբիւր է բղխում և ոռոգում է քարեղէն գետինը»... Բղխում է, բնագրում չկայ և աւելորդ է. իսկ steinig չի նշանակում քարեղէն, այլ քարոտ. նոյնը մենք կը թարգմանէինք. «Որովհետև մի աղբիւր ոռոգում է իր (կամ նորա) քարոտ գետինը»: Սոյն առաջին երեսում Strauch թարգմանւած

է թուփ. աւելի ուղիղ կը լինէր մացառ թարգմանել. թուփ գերմաներէն Busch է կոչւում: Մոռանալու չէ, որ խօսքը անապատի մասին է, ուր միայն մացառներ են աճում սովորաբար:

Ի բաց առեալ նախադասութիւնները, առանձին բառերը շատ անճիշտ են թարգմանւած: Այսպէս երկրորդ երեսում. vielzweigige Federpalme, թարգմանւած է «սաղարթախիտ փետրատերև արմաւենի».- պիտի լինէր բազմաճիւղ:- «Սաղարթ» մեր լեզւաշէն բանաստեղծը (Քաջիպա) առաջարկել է հասկանալ ծառի տերևների ամբողջութիւնը (Laub, feuillage) և այդ մտքով էլ գործածական է այսօր.

«Աշունը եկաւ թափեցաւ սաղարթ,

«Էլ մի փնտռիլ մանուշակ ու վարդ», իսկ «սաղարթախիտ» նշանակում է տերևաշատ, կամ տերևախիտ:

Dabei biegt die Hirtin die Zehen so zierlich, als wolle sie einen Zuschauer auffordern ihre Feinheit zu bewundern (երես 3). թարգմանւած է. Այս խաղի ժամանակ աղջիկն այնպէս վայելչաբար ծալում է ոտքի մատները, որ կարծես հրաւիրելիս լինէր մի հանդիսատեսի՝ զւարճանալ իւր արւեստով: Պիտի լինէր. «միևնոյն ժամանակ հովւուհին ոտի մատները այնպէս վայելուչ է ծալում, որ կարծես հրաւիրելիս լինէր մի հանդիսատեսի զարմանալու իւր նրբութեան վրայ»: Նկատել ենք ուզում, որ մեր դրած օրինակները ճշտութիւնից զատ մի առաւելութիւն էլ ունին - կարճ և դիւրընթեռնելի բառեր. ի՞նչ կարիք կայ «ձեռքի», «ոտքի», «վայելչաբար» գրելու, քանի որ ձեռի, ոտի, վայելուչ աւելի կարճ և աւելի ընտիր ձևերն ունենք:

Sie aber regte sich nicht bis er sie mit dem Fusse unzart beruhrte (5 երես):

Թարգմանւած է. «բայց նա տեղիցը չշարժւեց, այնպէս որ երիտասարդը վերջապէս նրան ոտքով դրդեց զայրացած»: Պիտի լինէր. բայց նա տեղիցը չշարժւեց, մինչև որ երիտասարդը ոտով կոպիտ դրդեց նորան»:

Und liess sich das blonde Haar von einer alten schwarzen Sklavin ordnen (101). «և սև պառաւ ստրկուհին յարդարում էր նրա խարտեաշ մազերը»:- Պիտի լինէր՝ և սև պառաւ ստրկուհուն յարդարել էր տալիս իւր շէկ մազերը:

Sie seufzte, wahrend die Dienerin mit duftigem Oel auf der flachen Hand bald hier bald dort den glanzenden Hauptschmuck ihrer Herrin beruhrte. «Մինչ սպասուհին, անուշահոտ իւղը ձեռքին առած՝ օծում էր տիրուհու շքեղ փայլուն վարսերը՝ տիրուհին հառաչանք էր արձակում» (101). Աւելի ուղիղ կը լինէր.- Տիրուհին հառաչում էր, մինչ սպասուհին հոտաւէտ իւղն ափին առած շօշափում էր նորա փայլուն վարսերի այս և այն մասերը...

Jetzt fasste die shwarze kraftig in den vollen, lang herabwallenden Strom der goldig schimmerden Faden und theilte ihn mit beiden Handen, um mit dem Flechten der Zopfe zu beginnen, aber Sirona wehrte ihr und sagte»... «Խափշիկ պառաւը պինդ բռնեց նրա խիտ ու երկար, ոսկեփայլ, ալեծածան վարսերը և երկու մասի բաժանեց, որպէս զի հիւսել սկսէ. բայց Սիրօնան թոյլ չտուեց և ասաց» (101 եր.). բնագրի գեղեցկութիւնն այստեղ լիովին կորած է: Մենք նոյնը այսպէս կը թարգմանէինք.- Ահա Սևուկը պինդ բռնեց երկար և ալեծածան հոսանքի ոսկեփայլ թելերը և երկու ձեռով բաժանեց այն, որպէս զի հիւսել սկսէ, բայց Սիրոնան հեռացրեց նորան և ասաց...

Fest vorausbestimmt und scharf abgemessen ist die Bahn jeden Sterns, jede Pflanze tragt Bluten und Fruchte genau in der Form und Farbe ihrer Gattung; in den Grundzugen ihrer Anlagen und Neigungen ihrer gemutlichen und ausseren Bewegungen bleiben auch alle Thiere der namlichen Gattung einander gleich, und der Jager, der das Rothwild in dem Forste seines Vaters kennt, kann in allen Waldern der Erde wissen, wie das Reh sich injedem einzelnen Fall verhalt. Թարգմանւած է. «Խստիւ նախասահմանւած և ճիշտ որոշւած է ամեն մի աստղի ընթացքը. իւրաքանչիւր բոյս՝ ծաղիկ ու պտուղ է տալիս իւր ցեղի բոլորովին համանման գոյնով ու ձևով. բոլոր անասունները իրանց սովորութիւններով ու ցանկութիւններով, ներքին և արտաքին շարժումներով հիմնապէս նմանում են իրանց ցեղի անհատներին, և այն որսորդը, որ իւր հօր պուրակում ծանօթացել է եղջերուներին՝ կարող է աշխարհիս բոլոր անտառներում գիտնալ, թէ քարայծը մի յայտնի դէպքում ինչպէս է պահում իրան»:- Մենք կը թարգմանէինք.- Հաստատ նախասահմանւած և ճիշտ չափւած է ամեն մի աստղի ընթացքը. ամեն մի բոյս իւր

ցեղի գոյնին ու ձևին յատուկ ծաղիկ ու պտուղ է տալիս. միևնոյն ցեղի բոլոր անասունները իրանց ունակութիւնների և հակումների հիմնագծերով իրանց ներքին և արտաքին շարժումներով նման են միմեանց. և այն որսորդը, որ իր հօր պուրակի եղջերուներին ճանաչում է, կարող է աշխարհիս բոլոր անտառներում գիտնալ, թէ եղնիկը ամեն մի դէպքում իրան ինչպէս է պահում:

Ես կը խնդրէի ընդգծեալ բառերի վրայ առանձնապէս ուշ դարձնել. սխալ է Reh «քարայծ» թարգմանել (Steinbock). դա ոչ այծ է, ոչ էլ քարի հետ գործ ունի. ապրում է անտառներում, յայտնի է իր վերին աստիճանի ազնիւ ու նուրբ կազմւածքով ու շարժումներով: Պատկանում է եղջերուների տեսակին, միայն թէ՛ մարմնով և թէ պոզերով անհամեմատ փոքր իսկական եղջերուներից:

Sie War zusammengefahren und hatte... «Մարիամը ինքնիրան ժողովեց և» (369).- Պիտի լինի. Մարիամը սարսռեց, սոսկաց և...:

Und erihr ein frohliches Willkommen zugerufen hatte.- թարգմանւած է. «և նա քաղցրութեամբ բարև տւեց աղջկան» (370).- պիտի լինի՝ ուրախութեամբ բարի գալուստ մաղթեց աղջկան:

Հիմա անցնենք գրքի լեզւին. եթէ սխալ և անճիշտ թարգմանութիւնները մասամբ ներելի են, որովհետև դիւրին չէ թարգմանելիս ամեն անգամ համապատշաճ արտայայտութիւնը կամ բառը գտնել, ապա ամեն մի գրողից և այն էլ մի Հրատ. Ընկ. տպած գրքից պիտի պահանջել կարողանանք, որ նորա լեզուն մաքուր, անարատ հայերէն լինի:

Այս գիրքը այդ կողմից էլ մեծ պակասութիւններ ունի, որոնք մի քանի տեսակի կարելի է բաժանել.

ա. Անորոշ դերբայի սխալ կիրառութիւն.

«Կարծես հրաւիրելիս լինէր մի հանդիսատեսի՝ զւարճանալ իր արւեստով» (3 երես). պիտի լինի՝ զւարճանալու իր արւեստի վրայ:

«Նրա համար միևնոյնն է, որ քո մէջ միտք է ծնեցնում՝ քարերով ինձ այս աղբիւրից հալածել» (12) = հալածելու:- «Որ անասուններին միջոց տայ աղբիւրին մօտենալ» (15 եր.) = մօտենալու: «Մենք քեզ յանձնեցինք այծերն արածեցնել» (66) = արածեցնելու. և այլն. այս սխալը առհասարակ շա՜տ յաճախ է պատահում թարգմանութեան մէջ:

բ. Բառերի սխալ դասաւորութիւն.

«Պատմում է եգիպտական դիցաբանութիւնը» (2 եր.) = Եգիպտական դիցաբանութիւնը պատմում է:- Անտոնիոսը սկսեց բացատրել նկարն այն կամարի, որը մտադիր էր ձգել ձորի վրայ, ամուր և ապահով» (եր. 52) = ...Թարգմանողը այստեղ հետևել է այն օտարաբանութեանը, որ շատ սովորական է արևմտեան հայերէնին. դա կատարուել է այն նպատակով, որ մտքի կարծեցեալ շփոթութեան առաջն առնի, որովհետև եթէ գրէինք «բուն հայերէն» - «Անտոնիոսը սկսեց բացատրել այն կամարի նկարը, որ մտադիր էր ձգել ձորի վրայ, ամուր և ապահով», կարող էինք կարծել, թէ ձգւողը կամուրջը չէ, այլ նկարն է:- Սակայն, այդպէս միայն օտար մտածողն է կարծում. հայի տրամաբանութիւնը թոյլ չի տալիս կարծելու, որ կարելի լինի «ձորի վրայ ամուր և ապահով նկար ձգել», ուստի և այդ նորամուծութիւնը գէթ այստեղ աւելորդ է:

«Փախչող Մարիամը միւն էր այն ուրւականներից, որոնց տեսքից սարսափել էր Պաւլոսը» (206) = Փախչող Մարիամն այն ուրւականներից միւն էր, որոնց տեսքից սարսափել էր Պաւլոսը: - Այստեղ էլ շփոթութիւն չի կարող լինել, քանի որ «ուրւականներ» և յարաբերող դերանունը, «որոնք» - յոգնակի են, իսկ Մարիամ և միւ՝ եզակի...

«Որպէս թէ կամենար հայեացքովը նրան հալեցնել» (136) = Որպէս թէ հայեացքովը նրան հալեցնել կամենար:

գ. Օտարաբանութիւններ.

«Գանգուր մազերը, որ առատութեամբ ծածկել էին նրա գլուխը՝ ինչպէս առիւծի բաշ» (5) = առիւծի բաշի պէս. «ինչպէս փթած փայտը» (21) = փայտի պէս:

Այդ կերպով շներին են զարթեցնում. այդպէս շներին են զարթեցնում. «և ես նորան շնորհակալ եմ» (9). «Շնորհակալ լինո՞ւմ ես Տիրոջը» (10). Շնորհակալ հայերէն բացառականով է խնդիր առնում. պիտի լինի նորանից, Տիրոջից:

«Տարածում էր մի չափաւոր մեծութեան բարձրաւանդակ» (16). պիտի լինի՝ չափաւոր մեծութեամբ:

«Ոչ ոք չէ կարող լինել աւելի քան մարդը» (23) = Ոչ ոք մարդուց աւելի չի կարող լինել:

«Աւելի քան երեսուն արուեստագէտ մրցում էին» (50) = Երեսունից աւելի արուեստագէտ...

«Աւելի քան երեք քառորդը կը ծածկէ» (52) = Երեք քառորդից աւելին... Այս օտարաբանութիւնն էլ ռուսերէնից է:

«Միայն խնդիրը նրանումն է» (52) = խնդիրն այն է:- «Հարցը միայն նրանումն է» (54) = հարցն այն է:- «Բանն ինչո՛ւմն է» (57): «Լաւագոյն գրանիտ, քան որ հայրս հանում է իմ առիւծների համար, ես ոչ մի տեղ չեմ կարող գտնել» = Հօրս հանած գրանիտից աւելի լաւը, իմ առիւծների համար... «Եւ ես ինչո՞ւ համար աշխարհից հեռացայ՝ եթէ ոչ որպէս զի նորան հետևիմ» (206) = Եւ ես ինչո՞ւ աշխարհից հեռացայ, որպէս զի նորան հետևիմ... կամ. ես ինչո՞ւ աշխարհից հեռացայ, չէ՞ որ նորան հետևելու...

«Նրա դէմքը աւելի էլ սիրուն էր՝ քան որչափ գեղեցիկ էր».- Այս նախադասութիւնը ես բոլորովին չեմ հասկանում. տարաբաղդաբար բնագիրն էլ մօտս չէ, որ միտքը ստուգել կարողանամ:

«Նա փափագում էր չարչարանքի՝ ինչպէս տենդով հիւանդը» (131) = Տենդով հիւանդի պէս...

«Ձեռներով փնտռեց մատանին, գտաւ նրան» (136) = գտաւ այն:

«Լայն փողոցը փայլում էր այնպէս՝ որպէս թէ սպիտակ մարմարինով սալայատակած լինէր» (138). պիտի լինի. կարծես: «Ոչ մի դատավճիռ այնքան խիստ չէ լինում՝ քան երբ ստրուկն է ստրուկին դատում» (64):

Գալով բառերի զանազան ձևերին, մենք պատահում ենք նորա և նրա, նորանք և նրանք, նորանցից և նրանցից... մինչև անգամ ներա իգական դերանւան. կուրիօզների թւին է պատկանում հիմա բառի ուղղագրութիւնը, որ ամեն տեղ հիմայ է գրւած...

Այս սխալների և օտարաբանութիւնների թիւը կարելի էր տասնապատկել: Դա, ասենք, մեզանում ներելի երևոյթ է: Ցաւալին այն է, որ մի Հրատարակ. ընկերութիւն, տպագրւող գրքերի քանակը շատացնելու եռանդով մոռանում է նոցա որակը և միևնոյն ժամանակ ինչպէս այս օրինակներից կարելի է եզրակացնել, հայերէնին արջի ծառայութիւն է մատուցանում...

Ի վերջոյ, եթէ անտես առնենք գրքի այս պակասութիւնները, պիտի նկատենք, որ պ. Մալխասեանի լեզուն առհասարակ պարզ և մատչելի է. նա բառերի և ձևերի մեծ պաշար, միևնոյն ժամանակ դրանցից խելացի կերպով օգտւելու ընդունակութիւն ունի, որ մի թարգմանչի համար կարևոր յատկութիւն է: Այդ հանգամանքն ի նկատի ունենալով, մենք մի քիչ խստապահանջ եղանք. ում շատ է տրւած, շատ էլ պահանջւում է: Ներելի չէ, որ մի Մալխասեան այն սխալներն անէ, ինչ որ մի համբակի է յատուկ:- Եթէ նա գրքի նիւթը խնամքով ընտրէ, թարգմանելի լեզուն աւելի խնամքով ուսումնասիրէ, և հայերէնը աւելի հոգածութեամբ մշակէ, ապա նորանից կարող է մի ընտիր թարգմանիչ զարգանալ:- Մենք այդպիսի թարգմանիչների մեծ կարիք ունինք:

**«Մուրճ»,1898, N 10-11, էջ 1540-1547**

***

ՓԱՓԱԶԵԱՆ Վ.- «Հայ բոշաներ» (Ազգագրական ուսումնասիրութիւն): Արտատպ. «Ազգագր. Հանդէս»ից: Ութածալ. 99 երես. Թիֆլիզ, 1899 թ., տպ. Ռօտինեանցի. գինն է 50 կոպ.:

Ուրախութեամբ սկսեցինք այս գրքի ընթերցումը, որովհետև առաջին անգամն է սա, որ մեր լեզւով մի առանձին աշխատութիւն է լոյս տեսնում հայ-բոշաների մասին:

«Մուրճ»-ի մէջ մի ամբողջ գրականութիւն կայ դրանց մասին. Կոլոչչիի յօդւածից յետոյ գնչուների մասին՝ որ լոյս տեսաւ պ. Արասխանեանցի թարգմանութեամբ, քաղւածաբար, տողերիս գրողը մի շարք յօդւածների նիւթ է շինել հայ բոշաների կեանքը, լեզուն և սովորութիւնները, որ մի ամբողջ, դեռ ևս անտիպ աշխատութիւնից են եղել քաղւած (տես «Հայ բոշաներ», «Մուրճ», 1892 թ. N 7-9, «Պատմական ակնարկներ հայ բոշաների անցեալից», 1894 թ., N 7-8, «Բոշա բանաստեղծուհի Գինա Ռայնիչիչ», 1893 թ., N 3, «Բոշա ծագումով հայեր», 1897 թ., N 10): Մեր յոյսերը, սակայն, այս գիրքը լիովին չարդարացան, և ահա ինչու: Ամեն մի հետազօտութիւն, եթէ նա ուզում է արժէք ունենալ, երեք հիմնական յատկութիւն պիտի ունենայ: Տեղեկութիւնների ճշտութիւն, աշխատանքի ինքնուրոյնութիւն և մանաւանդ նիւթի նորութիւն:

Պր. Փափազեանի աշխատութեան մէջ ես չհանդիպեցայ մի կարևոր կէտի, որ նոր լինէր էութեամբ. չտեսայ գիտական հետազօտութեան ճշտութիւն, ոչ էլ հարցի մի նոր լուսաբանութիւն կամ մի նոր ըմբռնումն: Ինչ որ նա ասում է գնչուների կամ հայ բոշաների մասին, ուրիշներն արդէն ասել են նրանից շա՛տ առաջ և, ինձ թւում է, շա՛տ աւելի բարեխիղճ կերպով, առանց այն բազմաթիւ կրկնութիւնների, որ շարունակ հանդիպում ենք այս գրքում: Քանի որ նիւթն անծանօթ և անմշակ չէր, սպասելի էր մի աւելի լուրջ և աւելի խոհուն գործ:

Դիմենք սակայն փաստերին. էջ 34-ում հայ բոշաների թիւը հետևեալն է. «Բոյբաթ 6.000 հոգի, Մարզուան 3.000, Վէզիր-Քէօփրին, Զիլէ, Բաֆրու, ընդամենը 663 տուն, կամ 3.978 հոգի, Էրզրում և շուրջը 300 տ. (1.800 հոգի), Կովկասեան բոշաներն էլ 190 տուն = 1140

հոգի. բոլորը միասին, ուրեմն՝ 15.918 հոգի. այն ինչ, երես 14-ում ասւած է, թէ Փոքր Ասիայում 67.000 գնչուներ կան, որոնցից «50.000 հայ բոշաներ»: Ո՞րն է ճիշտը: Դեռ 1894-ին, տալով հայ բոշաների մարդահամարը «Մուրճ»-ում, մենք ասել էինք, որ նրանց թիւը 15.000-ից աւել չի կարող լինել. պ. Փափազեանը, որ օգտւել է մեր թւերից առանց մեզ յիշելու, մի տեղ գրեթէ համաձայն է մեզ հետ. և այդ համաձայնութիւնը լիակատար կ՚լինէր, եթէ նա մեզպէս ամեն մի ընտանիք 5 հոգի հաշւէր. նրա մարդահամարը 15.000-ից աւել է դուրս եկել, որովհետև ամեն մի ընտանիք նա 6-7 հոգի է հաշւում:

«Բոշա տղամարդի գանգի ձևը ընդհանրապէս կլորագլուխ է. բայց գանգի չափը ներկայացնում է 77.40, որի հիման վրայ կարելի է դասել նրան, ըստ մարդաբանական լեզւի, մէզատօսէֆալների կարգում» (եր. 44): Անյայտ է մեզ մի գործ, ուր հայ բոշաները ուսումնասիրւած լինէին գանգաբանօրէն. այս նորութիւնը պ. Փափազեանն է տալիս, առանց աղբիւրն յիշելու: Մասնաւոր կերպով նա ինձ ասաց, որ ինքն է կատարել անձամբ այդ չափերը... Ցանկալի է որ նա հրատարակէր իր գործը լրութեամբ, դա կ՚լինէր մի իսկական նորութիւն, թէ ե՞րբ, ո՞րտեղ, քանի՞ հոգի են եղել չափւած, որպէս զի գրածը գիտական արժէք ունենար. այլապէս դրանք նւազեցնում են գրքի արժէքը:

Մեզ համար նորութիւն էր և «խաչի-պարը», որ որպէս թէ պարում են հայ բոշաները: Կ՚ուզէինք իմանալ ո՞ր տեղի: Ակներև սխալ է պ. Փափազեանի ասածը, թէ «աթոռակալութիւնը ժառանգական է» (78 եր.): Ախալքալաքում, մեր աչքի առաջ մի քանի աթոռակալներ են փոխւել և զանազան գերդաստաններից...:

Ինձ համար շա՛տ անհաճելի է յիշատակելը, որ այս գրքում բազմաթիւ հատւածներ կան բառացի կերպով նման իմ յօդւածներում գրւածին. չենք ուզում մեղադրել մեր սիրելի վիպասանին պլագիատի մէջ, որովհետև գիտենք, որ ինքն էլ է զբաղւել բոշաների ուսումնասիրութեամբ. սակայն, ինչո՞ւ չ՚յիշել աղբիւրը նաև կարևոր կէտերում, երբ նա քանիցս յիշում է երկրորդական և աննշան տեղերում:

Այդ պատճառով ահա, «Ծաղիկ» թերթի աշխատակիցը վստահ չէ պ. Փափազեանի ասածին, թէ Ալամդարեանն ու Ք. Պատկանեանը բոշաներից են սերում. եթէ յիշւած լինէր աղբիւրը («Մուրճ», 1897, N

10, «Բոշա ծագումով հայեր») այդպիսի թիւրիմացութեանց առիթ չէր լինի... Առհասարակ շատ յաճախ նկատելի է, որ հեղինակը մի փիպասան է: Այսպէս՝ Ակրականտայի եպիսկոպոսի պատմութիւնը (երես 31), որ մի լեգենդայի ձևով է բերուած: Դրա ծագումը մեզ յայտնի է և հազիւ մի 10-15 տարուայ հնութիւն ունենայ: Հողային վէճի պատճառով՝ Ծալկայի Հիւնիա գիւղի հայերը շարունակ հալածում են տեղացի բոշաներին, ջանալով ցոյց տալ, որ նրանք հայ չեն: Ժողովրդին օգնութեան է հասնում Այսմաւուրք կարդացող տիրացուն, որ նոյնպէս իր շահերն ունէր, Ակրականտացու պատմութեամբ և խեղճ բոշաները, անտեղեակ իրենց անցեալին ու պատմութեանը, ինչպէս երևում է, հաւատում են դրան և, ի զարմանս մեր, պ. Փափազեանին պատմում իբրև մի հին աւանդութիւն: Ժամանակին, սակայն, նրանք բողոքել են դրա դէմ. 1894-ին նրանցից ոմանք մինչև անգամ գանգատի են եկել մեզ մօտ Ախալքալաք, հայ տիրացուն հետներն առած, ապացուցանելու, որ իրանք հայեր են: Եւ նրանք գոհ հեռացան մեր վճռից:

Գրքի մէջ ամենագնահատելի և հարցասիրական մասը, մասնագէտի համար, անտարակոյս, բոշայերէն լեզուն, յատկապէս բոշայերէն բառարանն է, որ երբ և իցէ հրատարակուածներից լիակատարն է. թերութիւններ, հարկաւ, անխուսափելի էին. սակայն, այդ մասը «Մուրճ»ի գրախօսականի նիւթ չի կարող լինել. միմիայն գովել կարող ենք պ. Փափազեանի ջանասիրութիւնը: Տարօրինակ է թւում մեզ սակայն հեղինակի ջանքը, որ նա գործ է դրել Պուշկինի «Ոսկէ ձկնիկը» բոշայերէն թարգմանելու: Մի որ և է հէքիաթ, ազատ պատմուած բոշայերէն, աւելի բնորոշ պիտի արտայայտէր այդ լեզուի սակաւիկ ուրոյնութիւնները, քան մի կաշկանդիչ թարգմանութիւն. այն էլ մի լեզւով, որի բառերի թիւը 500-ից աւելի չէ:

Այս ամենը դեռ չի ապացուցանում, թէ գիրքն անպէտք է սովորական ընթերցողի համար, որ մասնագէտի պահանջները չունի, և որը մի գաղափար է ուզում կազմել այս հանելուկ ժողովրդի մասին:

Թուղթը և տպագրութիւնը լաւ է. գինը չափաւոր:

**«Մուրճ», 1899, N 9, էջ 1079-1081**

# ՄԱՏԵՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

«Բանասէրի» վերջին N ամբողջովին նւիրուած է մի հարցի, որին վերջին տարիները լարուած ուշադրութեամբ հետևում էին հայ բանասէրներից շատերը: «Քեթացիք կամ մոռացուած կայսերութեան մը պատմութիւնը» վերնագրի տակ պ. Բասմաջեանը թարգմանօրէն տալիս է այն ազգի պատմութիւնը, որ մեզ աւելի ծանօթ է Հաթ կամ Հիթիթ անունով:

Այս ազգի յայտնագործիւլն ու գիտութեան նիւթը դառնալը հազիւ երկու տասնեակ տարւայ գործ է, ուստի թէ՛ նրանից մնացած զարմանալի հնակերտներն ու յիշատակարանները և թէ՛ մանաւանդ արձանագրութիւնները, որոնք ցարդ մնում են անկարդալի, հիմնովին ուսումնասիրած և լուսաբանւած չե՛ն դեռ ևս:

Այս գործը ներկայացնում է մի սիստեմական հաւաքածու այն ամենի, ինչ որ մինչև հիմա յայտնի է Քեթաց մասին Ս. գրքից, ասորական, եգիպտական և քեթական արձանագրութիւններից ու յիշատակարաններից, որ կազմել է անգլիացի հռչակաւոր հնախոյզ Սէյսը:

Քեթաց բնակութեան կենդրոնը համարւում է Տաւրոսի շղթան. Կապադովկիայից և հիւս. Կիլիկիայից սկսած, նրա տիրապետութեան սահմանները երբեմն հասնում էին գրեթէ մինչև Մեծ Հայաստան, Ասորիք և Պաղեստին: Սա մի պատերազմիկ ու զինւորական ազգ էր, որ դարեր շարունակ ոչ միայն մրցման մէջ է եղել Փարաւոնների և Ասորիքի թագաւորների հետ, այլև շատ անգամ փառքով ու յաղթանակով թելադրել է նրանց այնպիսի հաշտութիւն և դաշինք, որոնք ապացոյց են նրա հզօր պետական կազմակերպութեան: Թէև այս ազգը բարձր կուլտուրայի չէր հասել, բայց նրա գրութեան ինքնուրոյն ձևը, զարմանալի հնակերտները և մօտիկ ծանօթութիւնը հանքագործութեան, բաւարար ապացոյց են ընդունելու, որ «Արևելքից քաղաքակրթութիւնը սա հեռաւոր արևմուտքի վայրենի ժողովրդոց մէջ ընդհանրացուց», այնպէս որ սրանց գրութեան և արւեստի հետքերը Սէյսը մատնանիշ է անում Փիւնիկեան և Յունական կուլտուրաների մէջ:

Այս ազգի կեանքը հայերիս համար առանձնապէս հարցասիրա-

կան է այն պատճառով, որ գիտ. Ենզէն, երեք տարի առաջ հրատարակւած մի ստւար հատորի մէջ ջանք էր թափում ապացուցանելու, որ Հաթերը (ինչպէս նա անւանում է Քեթերին) կամ Հիթիթները նախահայեր են և նրանց արձանագրութիւնները Ենզէն փորձում էր կարդալ հայերէնի միջնորդութեամբ: Սէյսի կարծիքով Քեթերը մոնղոլական տիպար ունէին, ուրեմն չէին կարող հայերը լինել, նրանց լեզուն, որ դեռ մնում է անվերածնելի, հաւանօրէն ո՛չ սեմական է, ոչ արիական, ուրեմն հազիւ թէ կարելի լինի հայերէնով մեկնել: Մի խօսքով հարցը դեռ վիճելի է:

Գ. Վ.

**«Տարազ», 1901 թ. ապրիլի 1, N 12, էջ 133-134**

***

О некоторыхъ названіяхъ древней Арменіи въ связи съ данными ванскихъ надписей Г. Халатьянца.

Յայտնի է, որ մեր երկրի հին-հայկական համարուած աշխարհագրական անուններից շատերի ծագումն ու նշանակութիւնը լեզւաբանօրէն չի բացատրուած. Այրարատ, Վան, Մուշ, Արածանի, Հանձիթ, Արաքս, Ախուրեան և այլն, յայտնի չէ թէ ի՞նչ են նշանակում: Բևեռագրերի ընթերցումը, որ վերջին տասն տարում ահագին առաջադիմութիւն արաւ, մի զարմանալի լոյս է սփռում այս կէտի վրայ: Այս բրոշիւրի մէջ պ. Խալաթեան մի ոչ անաջող փորձ է անում ցոյց տալու, որ այդ և նման անուններից շատերը հայերէն չեն, այլ ուրարտերէն: Մի լեզու, որ խօսւում էր Հայաստանում մինչև VII դ. Ք. ծ. ա., որով գրւած են բևեռագրերը: Այնպէս որ հայերն այդ անունները ժառանգել են Հայաստանում հաստատուելուց յետոյ նրա հին բնիկներից:

***

Этюды по Армянской діалектологіи Левона Мсеріанцъ, Пр.-доц. Имп. Моск. Университета. Ч. I. Сравнительная морфологія мушскаго діалекта въ связи съ морфологіей грабара и среднеармянскаго. Москва. 1901.

Այտընեանի հռչակաւոր Քննական քերականութիւնից յետոյ՝ սա կարծեմ, առաջին աշխատութիւնն է, որ մեր լեզւի այս կամ այն երևոյթը բացատրելու համար ի նկատի է առնւած այդ լեզուն ամբողջապէս. գրաբարը, միջնադարեան ռամկօրէնը և ներկայի բարբառներից շատերը: Այս գիրքը նւիրւած է Մշու բարբառի համեմատական ուսումնասիրութեան և զուտ մասնագիտական մի գործ է, կազմւած Բրուգմանի յայտնի Grundrirs-ի ձևով: Հեղինակն ի նկատի է ունեցել նիւթին վերաբերեալ գրականութիւնն ամբողջովին և մեր բարբառագիտութեան համար իր տեսակի մէջ գրեթէ հազւագիւտ մի աշխատութիւն է:

«Տարազի» խմբագրութիւնը տարաբախտաբար չէ ստացած այդ գրքից:

Գ. Վ.

**«Տարազ», 1901 թ. մայիսի 13, N 17, էջ 190-191**

***

«Գերմանական օգնութեան ընկերութիւնները Տաճկա-Հայաստանի համար»: Գ. Մելիք-Կարագեօզեան: Թիֆլիս, 1901 թ., 35 կոպ.:

Ուզելով պարզել այն հարցը, թէ արդեօք կրօնական դաւանափոխական միտումներ կա՞ն այն օգնութեան մէջ, որ գերմանական ընկերութիւններն անում են հայ որբերին, գրքիս հեղինակը մի լուրջ և հարցասիրական հետազօտութիւն է տալիս օգնութեան գործի մասին առհասարակ: Գրքից տեղեկանում ենք, որ մինչև 1900 թ. գերման. օգնութեան ընկերութիւնը ծախսել է մօտ 2 միլիօն մարկ (800 հազար րուբլի), կերակրելով սովեալներին և պահելով ու դաստիարակելով մօտ 1800 երկսեռ որբեր: Բաւականին թեր և դէմ դիտողութիւններից յետոյ, դաւանափոխական հարցի նկատմամբ հեղինակը հետևեալ եզրակացութեանն է գալիս, որ Hilfsbunde-ը հարկաւոր է համարում «վերանորոգել հայոց եկեղեցին ոչ թէ արտաքին, այլ ներքին ճանապարհով, այսինքն այնպէս դաստիարակել հայ երեխաներին (որբերին), որ նրանք մեծանալով նկատեն իրանց մայր եկեղեցու պակասութիւնները և աշխատեն հեռացնել այդ ամենը, գործելով այդ հարցում աւետարանական ուղղութեամբ»:

Գիրքը, չընայելով լեզւի թերութիւններին, կարդացւում է հետաքրքրութեամբ, և մենք ջերմագին կը յանձնարարէինք նրա ընթերցումը ամենքին:

***

«Դոկտոր Երւանդ Բոշայեան». կոմեդիա չորս գործողութեամբ. Լևոն Մանուէլեանի: Բագու, 1900 թ., քառածալ 84 երես. 50 կոպ.:

Մի խումբ իդէալիստներ ընդդիմադրւած են մի այլ խումբ փողապաշտ և կեանքը վայելել իմացող անհատների: Հակադրութեան օրէնքով այդ երկու խմբի մէջ առաջ պիտի գար մի բարոյական կռիւ: Հայրը, հարուստ Ասատուր Բոշայեան, զրկում է որդուն ժառանգութիւնից, որովհետև սա «շռայլօրէն» հօր տներից մինը նւիրել է աղքատ-ապաստարանի, իսկ իդէալիստ որդին (դոկտոր Երւանդ) թքում և հեռանում է հօր տանից, շարունակելու համար իր իդէալական կեանքը: Ահա երկու խօսքով այս գրքի բովանդակութիւնը, որ առնւած է

Բագւի բարքերից, իբրև մի ինքնուրոյն ու միևնոյն ժամանակ շնորհալի գործ, արժանի խորին ուշադրութեան, ի նկատի ունենալով մեր թատերական գրականութեան բացարձակ ամլութիւնը վերջին տարիներում: Թէև գոյները մի քիչ նւազ են և կոնտուրները ոչ այնքան ռելիէֆ, բայց գիրքը կարդացւում է աճող հետաքրքրութեամբ և ըստ երևոյթին՝ մի բեմական լաւ գրւածքի բոլոր յարմարութիւններն ունի: Ըստ երևոյթին ենք ասում, որովհետև մի պիէսի արժանիքն իմանալու համար պէտք է բեմում տեսնել այն, իսկ մենք այդ բախտը չենք ունեցած: Գրքի բացարձակ արժանիքն է նրա կոկ, մաքուր, թեթև, սահուն և մտածւած լեզուն, խուժ-դուժ բառերից ազատ, դիալոգները կարճ և ամփոփ: Ճիշտ և հակիրճ լինելու համար, որ բեմական լեզւի էական պայմաններից մինն է, պ. Մանուէլեանը մի նորութեան է հետևում, որ իսկապէս թիւրիմացութեամբ մոռացութեան տրւած մի հնութիւն է. իւր, նորա, նորանք, նորանց, նա գործ է ածում իգական անունների տեղ, իսկ իր, նրա, նրանք, նրանց,- արական: Այդ նորութիւնը, որ տեղ-տեղ ուրիշներն էլ են գործադրում, մենք գտնում ենք և՛ անհրաժեշտ, և՛ խելացի: Կարելի էր գրքից տասնեակ երեսներ առաջ բերել այդ ապացուցանելու համար. բաւականանանք միայն այս մի երկու օրինակով:

Երւանդ.- Եթէ դուք կարողանաք դուրս կորզել նորա գլխից իր բոլոր դատարկ մտածմունքն ու սնոտի հոգսերը, արդուզարդի և նման առարկաների մասին, և դրանց փոխարէն դնել նորա ուղեղի մէջ մի՛ հատիկ առողջ գաղափար, և այլն:

...Մի՞թէ դուք կարծում էք, որ շրջանի վատ հակումներն այն աստիճան են արմատացել նորա մէջ, որ անկարելի լինի ուղղելը. բայց նորա տասն և ինը տարին դեռ չէ լրացել: (Երես 11):

Սերգէյ.- Նորա հայրը, խեղճը հազիւ է կարողանում ընտանիքի մերկութիւնը ծածկել... նա իսկի մի օրինաւոր հրաւէր էլ չէ կարող անել իր աղջկայ հարսանիքին... (Երես 73):

Առանց այս նորութեան՝ շատ ու շատ տեղեր միտքը պիտի մնար անորոշ ու մութ, որովհետև այդ դերանուններից ենք իմանում, որ խօսքը մի կնոջ կամ մի պարոնի մասին է:

Գ. Վ.

**«Տարազ», 1901 թ. մայիսի 20, N 18, էջ 205-206**

***

Кавказоведен е. I. Кавказскіе этюды, изследованія и заметки Г. Вейндебаума. Изданіе Центральной княжной торговли. Թիֆլիս, 1901 թ., 320 երես, գինն է 1 ր. 20 կ.

Պ.պ. Աբգար Յովհաննիսեան և Ս. Տէր-Խսրայէլեան, գրքիս հրատարակիչները, նպատակ են դրել հրատարակելու և մոռացութիւնից ազատելու այնպիսի յօդուածներ և ուսումնասիրութիւններ, որոնք վերաբերում են կովկասագիտութեան այս կամ այն ճիւղին. բայց ցրւած լինելով զանազան լրագրների և մասնագիտական թերթերի մէջ, անմատչելի են մեր հասարակութեան: Մի գեղեցիկ և խրախուսանքի արժանի նպատակ, եթէ պ. հրատարակիչները չըսահմանափակւին միայն ռուս մամուլով, այլ օգտւին և հրատարակեն տեղական հայ մամուլի մէջ ցրւած ուսումնասիրութիւնները, ուր ընդարձակ նիւթեր կան պատմական, ազգագրական, ճամբորդական և գրական բովանդակութեամբ: Այդ անհրաժեշտ է մանաւանդ այն պատճառով, որ ռուս հասարակութեան համար մեր կեանքն ու մամուլը մի կատարեալ անծանօթ երկիր է և բնիկ ռուսների կողմից կարծեմ դեռ ևս ոչ մի փորձ չի եղած ուսումնասիրելու մեզ, մե՛ր լեզւի և մե՛ր աղբիւրների միջոցով:

Այս գիրքը պարունակում է միայն պ. Վայդենբաումի ուսումնասիրութիւններն ու նկատողութիւնները, ուր աչքի են ընկնում Մեծ Արարատի վրայ բարձրանալու փորձերը, գրաֆ Տոթլեմբենի պատերազմը Կովկասում 1769-1771 թ., գրաֆ Պաւել Սերգէևիչ Պոտեօմկին և այլն...

Գ. Վ.

**«Տարազ», 1901 թ. հունիսի 3, N 20, էջ 230**

***

Յ. Յովհաննիսեան. «Բանաստեղծութիւններ». Վաղարշապատ, 1908 թ., ութ-ծալ, 240 եր., 1 ր. 75 կ.*

Տողերիս գրողը մեղաւոր է զգում իրան այս շնորհալի և կիսով չափ մոռացուած տաղանդի առաջ երեք պատճառներով: Առաջին, Լայստի համար կատարած գերմաներէն թարգմանութիւններիս մէջ ես միանգամայն մոռացել եմ այս բանաստեղծին՝ մեծագոյն տեղը տալով ի միջի այլոց ուրիշներին: Երկրորդ, «Հայ հեղինակների» մէջ ո՛չ մի շնորհալի բանաստեղծութիւն չեմ դրել սրանից. հիմա եմ տեսնում, որ լաւագոյն տեղերից մինը պատկանում է Յովհաննիսեանին: Եւ երրորդ, գրականութեան պատմութիւն անցնելիս, աշակերտներիս հետ, գրեթէ կանգ չեմ առել Յովհաննիսեանի վրայ, այն ինչ նորագոյն և լաւագոյն լիրիկներից մինը մոռացել եմ անցնելու:

Այս ամենը շնորհիւ բացակայութեան մի կարգին ժողովածուի, ինչպէս և այս խոստովանութիւնը շնորհիւ երևան գալուն վերջապէս այս գրքի, ուր կատարելապէս հանդէս է դրուած մի տաղանդ առաջնակարգ արժանիքներով:

Օղակը, որ ես որոնում էի Ռափայէլ Պատկանեանի և մեր նորագոյն բանաստեղծների մէջ և չէի գտնում, կամուրջը, որով հայ բանաստեղծական միտքը, ազգային հայրենասիրականից պիտի անցնէր լիրիկ անհատական աշխարհը յանձին Աւետիք Իսահակեանի, բաց էր մնում ինձ համար: Այդ օղակը և այդ կամուրջը այժմ լրանում է դարձեալ այս գրքի շնորհիւ, որ քանքարաւոր հեղինակը զլացել է ներկայացնելու հասարակութեանն իր ժամանակին:

Եւ տեսնում ենք այդ երկու աշխարհները՝ հայրենասիրականն ու լիրիկ-զգայականը կողք-կողքի մեր այս բանաստեղծի մէջ: Նա չէր կարող զատուել այն խոշոր մօտիվների ազդեցութիւններից, որոնք երևան էին գալիս նրա անմիջական նախորդների՝ Գամառ Քաթիպայի և Շահազիզի մէջ - ազգային-հասարակականը. ուստի այս

* Ներկայ մատենախօսական յօդուածը հանգուցեալ Գ. Վանցեանը ուղարկել էր խմբագրութեանս մահուանից 2 օր առաջ: - Խմբ.

երգերի մի բաւական ստուար մասը ազգային-հայրենասիրական բնոյթ ունի... Չենք կանգ առնում այդ երգերի վրայ, որոնք մեծ մասամբ թոյլ և անաջող բաներ են, ու աւելի հրապարակախօսի գործեր են, քան բանաստեղծի: Դրանք նախորդ սերնդի ժառանգութիւնն են, որոնք այս կամ այն կերպ, իբրև ժամանակի մի անհրաժեշտ արդիւնք, պիտի երևային անմիջական յաջորդի մէջ: Յովհաննիսեանի բուն տաղանդի հետ դրանք ոչ մի էական առնչութիւն չունեն:

Այդ տաղանդն իր ամբողջ փայլով ու բոցով երևան է գալիս այն երգերի մէջ, ուր զեղում են բանաստեղծի զգացումներն առ կոյսը և առ սիրելին... Դուք այդտեղ տեսնում էք հարաւի տաք զաւակին, որ հաւաքում է իր երկրի բոլոր բոյրերը, բոլոր երևոյթները՝ շլացնելու և գրաւելու համար տարփելի կոյսի աչերը...

Կուզէի լինել կարկաչուն վտակ...
Վճիտ ալիքը, դրախտի բուրմունքով...
Եւ առաւօտեան, ինչպէս ցող յստակ,
Երեսդ ոռոգել գոհար շիթերով:
Կուզէի լինել սոսի հովասուն,
Համարձակ փռուած կանաչ սաղարթով,
Եւ միջօրէին այդ դէմքիդ սիրուն
Հովանի լինել հեզիկ շրշիւնով:
Կուզէի լինել ծաղկոցում բացուած
Քաղցրաբոյր մի վարդ, երկնից արժանի,
Եւ սիրոյ ժամին, խանդիցս արբած,
Զարդարանք լինել կուրծքիդ գեղանի...

Երկրից, դրախտից, բոյրից ու ծաղկից, ցօղից ու շիթերից անբաւական բանաստեղծը թռչում է երկինք, այնտեղի գոհարներն էլ ցած բերելու և իր սիրուհու սպասին դնելու...

Եւ շող դառնալով գարնան արևի՝
Կուզէի պայծառ աչերումդ վառուել,
Կամ ինչպէս քնքուշ ոսկեվառ գօտի
Չքնաղ իրանիդ փաթաթուել, փարել:
Լուսափայլ աստղիկ կուզէի դառնալ,

Քաղցր մանկան պէս ծիծաղն երեսին,
Ինչպէս ադամանդ շողշողել, ցոլալ,
Ո՞վ իմ թագուհի, քո բաց ճակատին:
Կուզէի լինել լուսին ամօթխած,
Արծաթի փայլով մազերըդ շոյել,
Այտերըդ զգուել սիրուց բորբոքուած,
Դողդոջ շրթունքիդ համբոյր դրոշմել:

Երկնքի պերճանքներով էլ անբաւական, բանաստեղծը կրկին ցած է սլանում յաղթահար և շարունակում է.

Կուզէի լինել սիրահար սոխակ
Եւ ձեռիդ գերի, վանդակում փակուած,
Ականջիդ հնչել հրաշալի նըւագ,
Մեղմ օրօր ասել հոգուդ զմայլած...

Այս ամենից յետոյ մնում էր միայն սիրուհուն աստուածացնել. արդարև, բանաստեղծի վառ երևակայութիւնը չէ վարանում ծունկ չոքելու և երկրպագելու...

Եւ կախարդական տաճարում կանգնած,
Կուզէի տեսնել ես քեզ Անահիտ,
Եւ երկրպագել, առաջիդ չոքած,
Սուրբ գեղեցկութեան անմահ տիպարիդ:

Այս մօտիվը նոր չէ և՛ համաշխարհային, և՛ մեր գրականութեան մէջ: Դեռ ևս հեթանոս Անակրէօնը երգում էր. «Թող ես հայելի մը ըլլամ, որպէսզի դուն զիս դիտես: Թող քու շապիկդ ըլլամ, որպէսզի կրես զիս: Թող վճիտ ջուր ըլլամ, որպէսզի մարմինդ լուանամ. անուշահոտ իւղ մը, որպէսզի քեզ խնկեմ... սանտալ մը, որպէսզի ոտքովդ վրաս կոխես»: (Թարգմ. Չօբանեանի):

Նոյնը դարեր առաջ երգել է մեր անզուգական Քուչակը.

Ծիծեռնակի ձագ լինէի, ցերեկը տունդ մտնէի,
Քո բարձր, լայն սրահում ես իմ բունը շինէի,
Հէնց որ մութը մթնար, վայր գայի ծոցդ մտնէի,

Հէնց որ լոյսը լուսանար, ելնէի բունս մտնէի.
Մետաքսի գօտի դառած, ցերեկը մէջքդ գրկէի,
Կամ անուշ նըռան գինի, ամանիդ մէջ ածուէի,
Հէնց առնէիր խմելու, ցածնայի դունչդ պագնէի:

Մօտիվների նոյնութիւնը որքան ակներև, չէ կարելի սակայն կասկածել, որ բոլորն էլ գրուած են միմեանցից անկախ:

Սրանից մի վեց տարի առաջ Քուչակն անտիպ էր և անծանօթ լիովին. չը գիտեմ, ծանօթ էր արդեօք Յովհաննիսեանն Անակրէօնին... Այսպէս կամ այնպէս բանաստեղծի «սէրն և իղձը», որ մենք անուանում ենք այդ բանաստեղծութիւնը, կրում է ինքնուրոյն ներշնչման անկեղծ և ազդու շեշտը, պատկերների հարուստ, ինքնատիպ և բարձր գեղարուեստական կնիքով դրոշմուած:

Արևելքի զաւակ՝ բնութեան բարձրագոյն բարիքները «աչագեղ կոյսին» նուիրելուց և արբենալուց յետոյ, կարիք է զգում հանգստեան, մի հանգստեան՝ վառ, բանաստեղծական, եդեմային, ո՛չ այն հանգիստը՝ որ յատուկ է հարաւի փիլիսոփային, դադրած, յոգնած, ո՛չ յաւիտենական մրափն ինքնամոռացութեան, այլ նրան հարկաւոր է մի քուն, որ «կեանքից հեռու սլանայ, այն աշխարհը՝ ուր խնդութիւն, ուր սէրն է միշտ անթառամ»:

Քնքուշ վարդեր ինձ բարձ լինեն,
Վառ կանաչից իմ վերմակ...
Նոցա բոյրը զուարթագին
Ծծեմ անվերջ ես անյագ.
Եւ խայտալով իմ առաջին
Վտակն անուշ կարկաչէ,
Մի թարմութիւն եդեմային,
Չորս բոլորքս տարածէ...
Եւ աչագեղ կոյսն ականջիս
Իւր մեղեդին մեղմ հնչէ,
Եւ հերարձակ՝ սիրով վըզիս
Փարէ քնքուշ, փաղաքշէ...

Այս քնից յետոյ կը լրանայ պատկերը, եթէ նկարագրենք բանաստեղծի երևակայած մահը.

Իրաւունք տուր ծծեմ մեղրը շրթունքիդ,
Քաղեմ կարմիր այդ վարդերը թըշերիդ,
Ով որ առնի հոտը շամամ ծըծերիդ,
Էլ կարո՞ղ է միթէ գին տալ իր կեանքին:

Թէ Աստուած ինձ պիտի մահ տայ, թող մօտ գամ,
Վզովդ ընկնեմ, քեզ համբուրեմ մի անգամ.
Թող ապրեշում մազերովդ ինձ կախ տամ,
Բնաւ մի կեանք էլ չի՛ հասնի այդ մահին:

Միևնոյն տեմպով և միևնոյն թափով դուք տեսնում էք բանաստեղծի զգացման զեղումը բազմաթիւ այլ երգերի մէջ: Վառ երևակայութիւն, գունագեղ պատկերներ, ներշնչման ուժգին թափ ու թռիչք՝ միացած բնական, անարուեստ զգացման խորին անկեղծութեան հետ, ձեր առաջ բաց են անում տաք ու կրակոտ սիրոյ երևակայոտ ու վառվռուն ելևէջները:

Այս երեք բանաստեղծութիւնների խտացումով մենք ուզեցինք ցոյց տալ երեք խոշոր մօմենտ բանաստեղծի իղձերի, ինչ և ինչպիսի է նրա սէրը, նրա երևակայած քունն ու հանգիստը և ի վերջոյ նրա ցանկացած մահը, ուր բնուրոյն կերպով պատկերանում է բանաստեղծի տեմպն ու տեմպերամենտը, արևելքի և հարաւի զաւակ, զուտարիւն մի լիրիկ:

Այս գրքի երևան գալովը թառամում է ամենագեղեցիկ ծաղիկը Յովհաննէս Թումանեանի բանաստեղծական փնջի մէջ: Նա մի էպիկ է և համեմատելու քիչ տեղ ունի Յովհաննիսեան լիրիկի հետ: Էպիկ բանաստեղծը, քանի որ չունի ներքին զգացման զեղմունք և իր հայեացքն ուղղուած է գլխաւորապէս արտաքին աշխարհի վրայ, մի Leitmotiv է ունենում. ամեն մի բանաստեղծութեան մէջ աշխատում է դնել մի իդէա, որ բանաստեղծական թափ առած պիտի սաւառնի և ազդէ միայն զգացումների վրայ: Աղքատ է սակայն, Թումանեանի երգը իդէաներով. միակ բացառութիւնը «Համերգն» է, ուր, արդարև,

մտքի կորիզ, իղէա կայ: Դուրս է գալիս, սակայն, որ դա մի հետևողութիւն է Յովհաննիսեանի երգին (երես 7).

Որպէս յաղթանդամ, մի ծերուկ հսկայ,
Կախուած է ժայռը ջրերի վրայ.
Ալիքը կայտառ գնում են գալիս
Եւ ժայռին սիրոյ համբոյր են տալիս:

Ի վերջոյ ալիքների բոլոր հրապոյրներին ծեր ժայռը պատասխանում է լռութեամբ.

Ալիքը կայտառ գնում են գալիս,
Սև ժայռը նախկին իւր վիշտն է լալիս,
Խաղում են ալիք, ուրախ կարկաչում -
Նա (ժայռը) անշարժ, նա կրկին տրտում...

Գրեթէ նոյնպէս է վերջանում Թումանեանի «Համերգը», ուր «ժայռը մտախոհ իր մռայլ մտքի ետևից ընկած, լսում է նրան»,- վտակի թռիչքին և անտառի արձագանքին:

Ժողովրդական երգերի ձևն էլ, որ վեր առաւ Աւետիք Իսահակեանը Յովհաննէս Կոստանեանից և աջողութեամբ տարածեց՝ ստեղծելով մի խումբ հետևողներ, իր նախորդն ունի յանձին Յովհաննիսեանի, որի արտայայտութեան ձևը թէ՛ աւելի բնական է և թէ աւելի առողջ և կայտառ է քան Իսահակեանինը, որ արդէն ձանձրալի և խեղդամահ է դառնում հէնց իր ծնողի ձեռքով, որովհետև Աւետիքի մօտ այդ ձևն արդէն դառել է բառախաղի ու մինչև անգամ տառախաղի մի տաղտկալի շարան:

Համեմատեցէք, օրինակ, Իսահակեանի որևէ երգը Յովհաննիսեանի «Արազի» հետ, որ ընդգրկած, տոգորուած է ժողովրդական երգի շունչ ու հոգիով:

Արազ եկաւ լափին տալով,
Ժէռ քարափին, ափին տալով.
Ո՞րտեղ թաղեմ ես իմ դարդը
Չոր գլուխս տափին տալով:
Ա՜յ իմ Արազ, ջուրըդ վարար,

Սիրուն եարիս եարաբ տեսա՞ր,
Ես չը հասայ իմ մուրազին,-
Արազ, եարաբ կարօտս առա՞ր:

Ահա՛ դրա օրիգինալը ժողովրդի բերանով.

Կապուտակ ծին հեծել եմ, եամա՜ն եար,
Արազին մօտեցել եմ, եամա՜ն եար,
Արազ, ինձ մէկ ճամբայ տուր, եամա՜ն եար,
Իմ եարին կարօտցել եմ...

Գիրքը թուականներ չէ պարունակում, ուստի հնարաւոր չէ հետևել տաղանդի զարգացման և բանաստեղծի տրամադրութիւնների ելևէջին: Ինքնուրոյն երգերի վերջին մասը հետզհետէ դառնում է թախծալի և ազգային-հասարակական մօտիվները գերիշխող: Թւում է, որ դրանք գրուած պիտի լինեն 1895 թուականից յետոյ, մեր ազգի աղէտալի և ծանր օրերին, որոնք իրանց իսկական երգչին գտան յանձին Արամ Չարըզի, որ իսկական բանաստեղծի աւիւնով ողբաց ու սգաց իր հայրենիքի սոսկալի օրերը: Յովհաննիսեանի այս գործերը թոյլ են և զուրկ գրական խոշոր արժանիքից:

Այս, ինչ որ գրում եմ, մի ուսոյթ չէ՛, որի համար աւելի մեծ էջեր և աւելի շատ ժամանակ էր հարկաւոր, այլ միայն տպաւորութիւններ՝ մի ուշացած տաղանդի արժանիքները ցոյց տալու, որ գալիս է փարատելու «Արցունքի հովիտի» և «Սև ագռաւների» պատճառած մղձաւանջը: Աւետիք Իսահակեանի միալար ախ ու վաշերից յետոյ մարդ հրապոյր է զգում կարդալով այս երգերը առոյգ և առողջ սիրոյ, որ տեղ-տեղ հասնում է Քուչակի բարձունքներին և Քուչակից յետոյ երկրորդ անգամ համոզում մարդուն, թէ հայ լեզուով էլ կարելի է բանաստեղծել առանց արտասուելու, առանց սգալու և առանց ախ-Հուսէին - վախ-Հուսէին ասելով կուրծքը թակելու:

Չեմ խօսում թարգմանութիւնների մասին, որոնք մեծ մասամբ թոյլ են և իսկի համեմատուել անկարող են Ծատուրեանի ընտիր թարգմանութիւնների հետ:

Յովհաննիսեանի լեզուի վրայ նշմարելի է Լազարեան ճեմարանի դրոշմը թեթևակի, և Շահազիզի ազդեցութիւնը՝ մեղմացած: Նրա չափը, յանգը, ոճը և սահունութիւնը աւելի թոյլ են և աւելի անմշակ քան Յովի. Թումանեանինը, ևս առաւել Շուշանիկ Կուրղինեանի ոճը, որ իր առնական թափով գերազանցելու վրայ է մեր բոլոր տղամարդ բանաստեղծներին, երբ նա չէ հետևում Իսահակեանին և ստեղծագործում է ներազդած իր բնածին տեմպերամենտով:

Շնորհակալ պէտք է լինել Բագուի «Կուլտուրականից», որ կորուստից ազատեց մեր բանաստեղծին: Գրքի գինը, սակայն, քչերին է մատչելի: Խորհուրդ կը տայինք օգտուելու Աւետ. Իսահակեանի խելօք հեռատեսութիւնից, որը 3 կօպէկանոց հրատարակութիւններին է պարտական իր ժողովրդականութեան մի խոշոր բաժնով: Խիստ ցանկալի էր հասարակութեան համար, որ Յովհաննիսեանի երգերից մի էժանագին հատընտիր հրատարակուէր 10-15 կօպէկ արժէքով, որը կը նպաստէր տաղանդաւոր բանաստեղծի ժողովրդականացման:

**«Մշակ», 1908 թ. մայիսի 11, N 102**

# ՆԱՄԱԿՆԵՐ ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆԻՆ

***

16 դեկտեմբերի 1890, Նուխի

Սիրելի Հովհաննես,

Արդյոք գիրքդ տպագրվե՞ց, մի հատ ուղարկեիր ինձ: Իմ բաժանորդաթերթիս վճարը ստացե՞լ ես, թե ոչ, Արամից: Եթե չես ստացել, գրիր, ես կուղարկեմ վճարը: Տպած գրքերը կուղարկես Ախալքալաք բաժանորդների անվանց ցանկի հետ, այս հասցեով՝ Ахалкалаки. учит. Джалалу Тер-Григорянц և կխնդրես, որ նա ցրվե ըստ պատկանելույն: Դավթից տեղեկություն տուր, արդյոք նա Պետերբուրգ գնա՞ց, թե ոչ: Քո գործերդ ինչպե՞ս են: Բանաստեղծություններդ շարունակո՞ւմ ես: Ընդունիր բարևս՝

քո Գրիգոր Վանցյան

Հասցես՝ Нуха. Армянское правление, преслать в Вардашен, Ванцяну.

*«Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ», գիրք 4, Երևան, 1985, էջ 291*

***

Սիրելի Հովհաննես,

Ստացա նամակդ, ուրախ եմ, որ սաղ-սալամաթ ես մնացել տիրահալած կամրջի խորտակումից[1]: Տո՛, ողորմած հոգի Շալամյանը սա՞ղ է, թե մեռավ, ի՞նչ է շինում նա:

Շնորհավորելուդ համար շնորհակալություն: Ես կասկածել էի, թե խմբագրությունը ստացած չի լինի հոդվածը[2], այդ պատճառով վաղո-

1. Խոսքը 1892 թ. հունվարի 6-ի ջրօրհնեքի ծիսակատարության համար պատրաստած ժամանակավոր կամուրջի խորտակման մասին է:

2. Խոսքը Գրիգոր Վանցյանի «Հայ բոշաներ» հոդվածի մասին է, որը տպագրվել է «Մուրճի» 1892, N 7-8 (հուլիս-օգոստոս), էջ 1047-1064 և N 9 (սեպտեմբեր), էջ 1310-1321:

րոք ուզում էի տեղեկանալ, ուստի և քեզ նեղություն տվի: Հոդվածս ինքն ըստ ինքյան մի առանձին բան չէր, եթե ոչ մի խիստ սակավ անծանոթ բոշա ցեղի հարևանցի ուսումնասիրությունը:

Գրքիդ II հատորի այդպիսի շուտափույթ տպագրության հանձնելը ինձ զարմացնում է: Հույս ունե՞ս, որ ծախքդ հանես, կամ առաջին գրքիդ ծախքը հանեցի՞ր...

Մի խոսքով ցանկամ լիուլի հաջողություն:

Բաժանորդաթերթդ շատ անժամանակ հասավ. թատրոններով, հանգանակություններով, բաժանորդագրություններով ժողովրդին կատարյալ ձանձրացրել էինք, ուստի քո թերթիդ բանը մի քիչ դժվար էր, երես չէր մնացել: Ուղարկում եմ, ահա, ութ հոգու բաժանորդագինը՝ չորս ռուբլի: Երբ գիրքը դուրս գա, կուղարկես հետևյալ հասցեով, խնդրելով, որ հասցնի բաժանորդներին, որոնց ազգանունները կգրես՝ Дербенд. Александру Шакиджанянц:

Այն դեպքում իհարկե, եթե ես հեռացած լինիմ Դերբենդից:

Ես էլ մի կերպ ապրում եմ: Մինչև հիմա զբաղված էինք թատրոններով, հիմա մի քիչ ազատ ենք:

Դերբենդի կյանքը, ինչ ասեմ, կա էլի, յոլա կտանի:

Ընդունիր ջերմագին բարև, հաղորդիր Շալամյանին և ծանոթներիս:

Քո Գրիգոր Վանցյան

Դերբենդ, 92 թ.,

18-ն փետրվ.

*«Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ», գիրք 4, Երևան, 1985, էջ 304-305*

***

1892 թ., 25 սեպտ., Ախալքալաք

Սիրելի Հովհաննես,

Կարդացի «Իմ եղբայրները օտարության մեջ ինձ ասում էին»[1]...

1. Խոսքը «Օտարության մեջ» բանաստեղծության մասին է, որն առաջին անգամ, առանց վերնագրի տպագրվել է «Մուրճի» 1892 թ. 7-8-րդ (հուլիս-օգոստոս) համարում, էջ 1045:

և շատ հավանեցա, որովհետև կարծես իմ սրտից էին բխել այդ խոսքերը: Կրկնում եմ՝ չմոռանաս նախկին ուղղությունդ, չմոռանաս այն ժողովուրդը, որ քեզ ծնել է, երգիր ժողովրդի ցավն ու վիշտը, հոգսն ու թշվառությունը, սաքոներին ձեռից բաց չթողնես:

Տո, մեռած, մի քիչ երկար նամակ գրես կամ թե չէ կարգին նորություններ հայտնես, որ մենք գավառների անկյուններում նստածներս էլ ուրախանանք: Օրինակ՝ Հայրիկի հաստատվելը կամ որևէ նշանավոր դեպք, ինչո՞ւ իսկույն չես հայտնում, թեկուզ բաց նամակով:

Այսուհետև նորություններ քեզանից եմ սպասում: Գիրքդ էլ, եթե դուրս է ելել, ուղարկիր մի 15 հատ, եթե ավելի ծախելը հնարավոր լինի, նորից բերել կտամ:

Ինչպե՞ս եղավ Ջալալի հոդվածն, եթե չի տպագրվում հետ ուղարկիր:

Արդյոք օրիորդ Աննա Սահակյանը Թիֆլի՞ս է, կարող ես նորանից իմանալ Խուֆյանի հասցեն և ինձ գրել: Ինձ հարկավոր է նաև Վրթանես Փափազյանի հասցեն, որ պետք է իմանաս և գրես: Օրիորդ Սահակյանին իմ կողմից ողջունիր, եթե այդտեղ է և եթե այդտեղ չէ, նորա հասցեն նս գրիր:

Ի՞նչ են շինում ուսուցիչները, չկարողացա՞ն Գեղամյանին տապալել: Ուրիշ ի՞նչ նորություններ կան տեղդ, ի՞նչ եղավ հայոց թատրոնի բանը, պիտի կայանա՞ թե ոչ:

Ողջույն ինձանից և Ջալալից[1]:

Քո Գրիգոր Վանցյան

Ներփակյալ նամակս հանձնիր «Մուրճի» խմբագրին:

*«Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ», գիրք 4, Երևան, 1985, էջ 311*

1. Ջալալ Տեր-Գրիգորյան (1866-1939) - մանկավարժ, հասարակական գործիչ, թարգմանիչ:

***

8-ն ապրիլի 1893 թ., Ախալքալաք

Սիրելի Հովհաննես,

Ինչպես երևում է նամակս չստացած ուղարկել ես գրքերդ ու նամակդ, այժմ երևի ստացած կլինիս: Որովհետև Մովսես Կաղնկատվացի ուրիշ տեղից հույս ունիմ ստանալու, այդ պատճառով հարկավոր չէ այլևս քո ուղարկելը, եթե չես առել պրծել: Մնացած հանձնարարությունս աշխատիր կատարել: Անցյալ նամակիս հարցերին մանրամասն պատասխան տուր: Ետ ուղարկիր նաև թշվառ «Սենյակս», զարմանում եմ դորա անհաջողության վերա, մի՞թե թարգմանության լեզուն է վատ, բովանդակությունը գեթ անպայման գովելի է: Ինչի ես հարցնում «Մուրճում» տպված նամակիս մասին[1], նա ինձ վրա լավ տպավորություն թողեց: Գրիր հարցմանդ պատճառը: Զատիկի տոներին Ախալցխա էի, որ Արամը ստացավ նամակդ ու գրքերդ: Տոներին գնացել էի այս ճնշող մթնոլորտն մի քիչ փոխարինելու: Սիմոնին, եթե այդտեղ է, բարևիր և ասա, որ սպասում եմ մի կարգին նամակի:

Ստացանք գրքերդ: Շնորհակալություն նվերներիդ համար: Աղասին միայն տասը հատ վերցրեց ծախելու, մնացածից հրաժարվեց: Դժվար թե բոլորը կարողանանք ծախել, մանավանդ գրքերից մի քանիսի թղթերը ներկոտ են և շատ է խանգարում 35-ի վերա թույլ կպցրած 60 կոպեկը, որ շուտով պոկ է գալիս:

Ուզում էի մի քննադատություն գրել, կանգ առնելով մանավանդ «Կանչի» վերա, սակայն Աղայանցը կանխեց[2] և վախեցա ցենզուրան թույլ չտա:

1. «Մուրճի» 1893 թ. N 2-ում, էջ 346, «Զանազան լուրեր» բաժնում տպված է Գ. Վանցյանի հիշյալ նամակից մի հատված, որ բերում ենք ստորև. «Մուրճը» կարդալու և հասկանալու համար հարկավոր է մի որոշ աստիճանի կրթություն և զարգացումն ունենալ, որ ըստ մեծի մասին զուրկ է մեր տնտեսապես ապահով դասակարգը, այդ պատճառով էլ «Մուրճը» նոցա մեջ դժվար է տարածվում, որոնք իրանց ամբողջ մտավոր պաշարը լրագրական թեթև լուրերով են միայն հարստացնում:

Սակայն, ըստ իս, «Մուրճի» ապագան լիովին ապահով պետք է համարել, քանի որ նորա կողմն են մեր բոլոր հասկացող և բանիբուն երիտասարդները, որոնց հույսն ու հավատը օրավուր ավելանում է «Մուրճի» վերաբերությամբ»:

2. Նկատի ունի Ղ. Աղայանի «Անուշից» մի ճաշակ» վերնագրով մատենախոսությունը, որը լույս է տեսել «Մուրճի» 1893 թ. N 3-ում, էջ 457-460:

«Կանչը» ամեն տեղ ֆուրոր է անում. Это действительно высокохудожественное произведение. Եթե, Հովհաննես ջան, ուրիշ ոչ մի բան չգրեիր, այդ ստեղծագործությունդ բավական էր քեզ բանաստեղծի մեծ կոչմանը արժանացնելու: Ունիս, այո՛, ուրիշ գեղեցիկ բաներ, ունիս և շատ թույլ բաներ, բայց «Կանչը», դա գլուխ գործոցդ է, դա մի գոհար է: Այդպես եմ անվանում ես «Կանչդ»՝ գոհար:

Զուտ բանաստեղծական-գրական-գեղարվեստական բաժնում անցյալի հետ համեմատած անտարակույս մեծ առաջադիմություն ես արել, ես քեզանից այդ չէի սպասում, ես և շատերը ինձ հետ քեզանից սպասում էինք ժողովրդական ոգու արտահայտություն գեղարվեստական արվեստով արտաբերված, այդ ուղղությամբ գրածներիցդ այս գրքում ամենահաջողակը «Ախթամարն» է, մնացածներում, ինձ թվում է, թե ոչ թե չես առաջադիմում, այլ մասամբ կանգնած ես մնացել նույն աստիճանի վրա: «Անուշիդ» առաջին մասը շատ է ձգձգված և ըստ իս, շատ էլ աջողակ չէ: «Մերժած օրենքը» գեղեցիկ է: Լիրիկականներդ, ինչպես ասացի, առհասարակ հաջողակ են, թարգմանություններդ, թեև բնագրի հետ չեմ համեմատել, բայց անհաջող են երևում: Թարգմանություններից մի քիչ ձեռը քաշի: Ի վերջո «Գիշերային մտածմունքը», «Խորհրդածությունը» և այլք, ընտիր բաներ են: Եթե առիթ եղավ, գիրքս քեզ կտամ և կկարդաս մանրամասն նկատողություններս:

Անուշավան Աբովյանին, եթե դա իմ ճանաչածս է, ուրիշ բան պետք էր նվիրած[1], համաձա՞յն ես:

Ի վերջո ընդունիր անկեղծ համբույրս: Ջալալը ողջունում է:

Միակ խնդիրս, խորհուրդս և պահանջս քեզանից այն է, որ կարդաս, կարդաս և կարդաս, մի ծուլանար*: Քո Գրիգոր

*«Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ», գիրք 4, Երևան, 1985, էջ 313-314*

1. Թումանյանը Ան. Աբովյանին է նվիրել «Անուշ» պոեմը:

* Վերին լուսանցքում՝ «Նորություններ գրիր «Մշակի», Հայրիկի և այլ գործերի մասին»:

# ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐԻՆ

## Բերլին, 16-ին (4) Մարտի

«Մշակ»-ի 24 N-ում տպած պ. Մալումեանի նամակի առթիւ թոյլ տուէք խնդրեմ երկու խօսք ասել:

Հրէա Դրէյֆուսը մատնել է ֆրանսիական զօրքի գաղտնիքը մի մեծ պետութեան. Զինւորական դատարանը նորան աքսորի է դատապարտել, ճանաչելով մեղաւոր: Զոլան կարծում է, որ նա անմեղ է, պ. Արասխանեանը կարծում է, որ նա մեղաւոր է: Գաղտնի թղթերին, որոնք պահւում են այդ գործի մասին ֆրանսիական զինւորական շտաբում, անծանօթ են և՛ պ. Զոլան, և՛ պ. Արասխանեանը, և՛ ամբողջ աշխարհը: Այդ թղթերին միակ անմիջապէս ծանօթ ատեանը դատապարտել է Դրէյֆուսին: Հարց է. սխալւե՞լ է այդ ատեանը, թէ՞ մեղաւոր է Դրէյֆուսը:

Հեռուից՝ ընթերցողներս մի՛միայն հաւանական ենթադրութիւններով կարող ենք Զոլայի կամ կառավարութեան կողմը հակիլ: Առանց ուրանալու Զոլայի վեհ և գովելի համարձակութիւնը՝ պաշտպանել իր համոզմունքը (աւելի լաւ էր ասել ենթադրութիւնը) հրապարակօրէն, ամեն մի անձի անհատական գործն է՝ ա՛յս կամ ա՛յն կարծիքն ունենալ Դրէյֆուսի մասին: Եթէ առաջները տատանւողներ էլ կային, Զոլայի գործի քննութիւնը 15 օրւայ ընթացքում սրատես և լա՛ւ աղբիւրներից օգտւող ընթերցողի համար ափ-աշկարա բաց արաւ, որ եղած փաստերից առսակաւը 90 % խօսում է ի վնաս Դրէյֆուսի և Զոլայի: Եւ ո՛չ մի խելքը գլխին մարդ չի կարող ենթադրել, որ Ֆրանսիայի նման մի ազատ երկրի դատարանը առանց այլ և այլի դատապարտէր մի անմեղ Դրէյֆուսի և ազատ արձակէր մի մեղաւոր Էստերհազի՛ի:- Այս է գործի էութիւնը երկու խօսքով. հիմա ճաշակի և խելքի բան է մոլեգնօրէն Զոլայի կողմը բռնել և բղաւել, որ Դրէյֆուսը արդար է, ոպէս անում է մեր «Մշակ» լրագիրը, որի համար հիմա Զոլան անսխալական մի պապ է դառել. կամ ի նկատի ունենալով Զոլայի պնդումի անհիմն լինելը, մեղաւոր ճանաչել Դրէյֆուսին, որպէս անում է պ. Արաս-

խանեանը, և կամ սառնասրտութեամբ սպասել գործերի աւելի պարզւելուն, որպէս անում են եւրոպական շա՛տ թերթեր, որոնք առժամանակ բաւանում են լոկ փաստերի անաչառ արձանագրութեամբ[1]:

«Մշակ»-ի հետ վիճելը անկարելի է դառնում այն պատճառով, որ այդ լրագիրը բացի անվայել-անգրական ոճերից, սովորութիւն ունի առանց փաստերի, ամեն բան դոգմայօրէն, ամենաընդհանուր, ամենածայրայեղ բառերով կրկնելու, բղաւելու և մի՛միայն բղաւելու. «մի Ալլա՛հ կայ և նորա մարգարէն Մահամեդն է». մի ճշմարտութիւն կայ աշխարհի երեսին, և նորա քարոզիչը «Մշակը» - ահա այդ լրագրի յօդուածների սքեման. կարդացէք պ. Յովհաննիսեանի անվայել յօդւածը N 24-ում, կամ պ. Մալումեանինը 26-ում, ուր բնորոշ են հետևեալ տողերը. «Երբ Զոլայի դէմ դուրս է գալիս մեր գրականութեան մի օրգան, դա ցոյց է տալիս, որ կա՛մ այդ օրգանը «Մուրճ»-ը մինչև այժմ խաբել է հասարակութիւնը (հասարակութեանը), իրան ցոյց տալով որոշ սկզբունքների հետևող, և կամ այժմ է դաւաճանում այդ սկզբունքներին այլանդակ պատկեր ցոյց տալով մի այնպիսի գործում, ինչպէս է Էմիլ Զոլայի խնդիրը»... գրում է «Մշակը» 26 N-ում: Ապա դիմելով «Մուրճի» աշխատակիցներին, շարունակում է՝ «թող այդ աշխատակից պարոնները բարձր ասեն. համաձա՞յն են արդեօք պ. Արասխանեանին... Դա է պահանջում իրանց պատիւը և թէ այն օրգանի պատիւը, որին իրանք մասնակցում են»...

1. «Մուրճ» ում Զոլայի պնդումների մէջ կշռի ծանրութիւնը չէր նկատւած այն կէտը որ Դրէյֆուսին է վերաբերում, այլ այն, որ վերաբերում է գլխաւոր շտաբի դերին Էստերհազիի քննութեան ժամանակ: Եւ առհասարակ «Մուրճ» N 1-ում այն միտքն էր յայտնւում, որ դատավարութիւնից առաջ չպէտք էր դատավճիռներ կարդալ մէկի մեղաւորութեան, միւսի անմեղութեան մասին: Զոլայի պնդումները այդ մասին մենք անհիմն չէինք յայտնել, այլ (մեր յօդւածը գրւած լինելով դատավարութիւնից առաջ) ասում էինք, թէ այդ խնդիրների համար պէտք է սպասել դատավարութեան վախճանին, իսկ մինչև այդ՝ պէտք է հաւատով վերաբերւել դէպի դատարանների վճիռը: Մինչև Զոլայի դատի սկսւելը թէ ինչ վերաբերմունք պէտք էր ունենալ, մենք արտայայտել էինք մեր յօդւածի այս խօսքերով. «Մենք Ֆրանսիան ճանաչում ենք այնքան ազատ և լուսաւոր երկիր, որ կարող ենք հաւատ ունենալ, որ նորա հաստատութիւնների հովանու ներքոյ սուտն ու արդարութիւնը երևան կը գան նաև անկախ օտար ազգերի ձայների միջամտութեան, ազգերի, որոնցից շատերը դեռ միայն պիտի սովորեն Ֆրանսիայից, թէ ինչ է օրէնք, ինչ է արդարադատութիւն» (Մուրճ, N 1, էջ 150-151): - Ծան. Խմբ.:

Պար. Մալումեանին պատասխանում են զանազան միջոցներով, որոնք ես գտնում եմ սաստիկ խիստ ի նկատի ունենալով այն թշւառ հոգեկան վիճակը, որ ցոլում է նորա գրութեան ամեն մի տողից: Աստ՛ք խնդրեմ, ո՞ր խելքը գլխին մարդը այնպիսի բաներ կը գրէ որպէս Մալումեանը.- «Որովհետև պ. Արասխանեանը Զոլային անսխալական չի համարում, դէ ուրեմն դաւաճանում է իւր սկզբունքներին. և այդ պատճառով, «Մուրճ»-ի պարոն աշխատակիցներ, ասացէ՛ք, համաձա՞յն էք պ. Արասխանեանին. որ դէ, պ. Մալումեանի լոգիկայով դո՛ւք էլ, «Մուրճ»-ն էլ, գուցէ նորա ընթերցողներն և գրաշարն էլ դաւաճան դուրս գան այն սկզբունքին, որ հոգեհիւանդ Մալումեանի համար մի անտարակուսելի դոգմա է դառել».- Այս է պ. Մալումեանի լոգիկան, որ ուղեղի կենդրոնների խանգարման բոլոր նշաններն ունի: Հիւանդ պ. Մալումեանին ես չե՛մ պատասխանում, այլ այդ փոքրիկ անալիզով ուզում եմ ընթերցողներին մի գաղափար տալ նորա հոգեկան ցաւալի վիճակի մասին, որը ինձ, գուցէ և շատերի համար մի հին և ակնյայտնի իրողութիւն է. իմ պատասխանը պ. Մալումեանին՝ ըստ կարելոյն շուտով դիմել մի հոգեբան բժշկի օգնութեանը: Նորա գրած դեղատոմսի մէջ նա կը գտնի «Մուրճ»-ի աշխատակիցներից շատերի պատասխանը[1]:

**«Մուրճ», 1898, N 2-3, էջ 369-371**

1. Տպագրելով մեր աշխատակից պ. Վանցեանի այս նամակը, մենք կը նկատենք մեր կողմից միայն մի բան, այն է որ «Մշակի» ակնարկած յօդւածում այն, ինչ պախարակւում է, մեր կարծիքով միակողմանի կերպով վերագրւում է յօդւածը ստորագրող Խ. Մալումեանին: Մինչդեռ ներկայ դէպքում այդ անձը տիպական ներկայացուցիչ է ամբողջ «Մշակի» ներկայիս ուղղութեան: Նա այդ գրել է լռելեայն համերաշխութեամբ «Մշակի» ոչ միայն բոլոր խմբագրական աշխատակիցների, այլ և «Մշակի» բոլոր կողմնակիցների հետ: Իբր ապացոյց թող ծառայի թէ այն համաձայնութիւնը, որ տւել է այդ թերթի խմբագրութիւնը յօդւածի հրատարակման համար, և թէ այն լռութիւնը որ պահպանում են (և պիտի պահպանեն!) այդ թերթի կողմնակիցները հետևեալ գրականական օյինբազութեան դիմաց: Դատեցէք. այդ Մալումեանը (որին Աստւած լիտերատոր անւանի!) իւր ստորագրութեամբ տպած նոյն յօդւածում, իբր թէ կրկնելով «Մուրճի» յօդւածի խօսքերը, ասում է այլոմբով.

«Հայ գրողը նրա համար չէ գրում Զոլայի գործի մասին, որ ներգործի ֆրանսիական կառավարութեան վրայ, ինչպէս երեխայաբար կարծում է Մուրճի խմբագիրը, այլ նրա համար, որ...» (տե՛ս «Մշակ», N 26):

# ԲԱՑ ՆԱՄԱԿ «ՄՇԱԿ»Ի ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ*

«Մշակ»-ի 200 N-ում Դուք դարձեալ մեծարել էիք իմ անունը, այս անգամ մի պարզ մեղադրանքով, թէ Վանցեանն «անազնիւ գրող» է, որովհետև նա վախել և թաքցրել է Ձեզանից այն, ինչ որ ապա գրել է «Մուրճ»ին:

Դա մի անբարեխիղճ վարմունք է, երբ հաւատացնում էք Ձեր ընթերցողներին թէ մեր հերքումները «Մշակ»ում և Մուրճ՛ում նոյնն են: Վերջինը առաջինի կոպիան չէ՛. գրուած է անհամեմատ աւելի ուշ և աւելի մշակուած է, որովհետև այնտեղ վկայութեան են կանչուած նոր հեղինակներ, շատն ընդարձակած, շատ կէտերն էլ մեղմացրած են: Մտէք «Մուրճ»ի խմբագրատուն բնագիրը կարդալու և պիտի խոստովանիք, որ մեր ասածը ճիշտ է, որովհետև այնտեղ մի փոքրիկ, անտիպ հատուած ևս պիտի գտնէք, որ պիտի ապացուցանէ մեր ասածի ճշտութիւնը[1] և դրանով պիտի հերքւի նաև այն ցնորալի միրաժը, որով Դուք Ձեզ կերակրում էք Ձեր ուժի և դիրքի մասին, որից որպէս թէ «վախենում են»: Մի՛ մոռանաք խնդրեմ այսուհետև, որ մեզ յայտնի է ճանապարհը, տպել տալու մեր հերքումը, Ձեր իսկ կամքի հակառակ և ստիպմամբ, լինէր նա տասնապատիկ աւելի խիստ, քան մեր գրածն

* Մինչդեռ ահա թէ Արասխանեանցը ինչ էր ասել.

«Հարկաւ՝ հայ ընթերցող հասարակութեան համակրութիւնը կամ հակակրութիւնը արդարադատութեան գործում՝ Զոլայի խնդրի վերաբերեալ՝ դրականապէս ոչ մի նշանակութիւն չունին: Նկատեցէք որ (ստորագծումը բնագրումն է!) հայկական մամուլը ոչ մի ճնշում չի կարող գործել ֆրանսիական երդւեալների դատարանի վրայ, և ոչ էլ հայկական հասարակաց կարծիքը կարող է արժանանալ ուշադրութեան նոյն իսկ Զոլայի կողմնակիցների կողմից Ֆրանսիայում: Բայց մի՞թէ խնդիրը դորանումն է» (տես «Մուրճ», N 1, էջ 151): Էլ ի՛նչ խօսէք այսքան պարզ խօսքերը աղաւաղելու ընդունակ գրական գործիչների հետ!... - Ծան. Խմբ.

1. Կարող ենք վկայել որ «Մուրճ»ում անցեալ ամիս տպածը պ. Վանցեանը ղրկել էր մեզ այն պատճառով, որ «Մշակ»ին ղրկածի տպագրութիւնը ուշանում էր, և պ. Վանցեանը կարծել էր, թէ Մշակ՛ում իր պատասխանը չի տպւելու: «Մուրճ»ում տպածը արդէն շարւած էր ամբողջապէս, երբ «Մշակ»ին ղրկածը տպւեց: Այդ դրդեց մեզ «Մուրճ»ին ղրկածից ջնջել մի «յետ գրութեան», ուր խօսքը «Մշակ»ում չտպագրելու մասին էր: - Ծան. Խմբ.

էր: Այսքանը կարծեմ բաւական է Ձեր տարապարտ զրպարտութիւն-ներն հերքելու, սակայն, քանի որ հարցը ազնուութեան մասին է, թոյլ տուէք խնդրեմ մի երկու ոչ հեռաւոր դէպքեր յիշեցնելու Ձեզ:

«Անահիտում» ես մի յօդւած էի հրատարակել մեր գրաբարբառնե-րի միութեան մասին: Դուք քաղւածներ արիք նրանից և այնպիսի ճարպիկութեամբ աղճատեցիք և այլանդակեցիք մեր մտքերը, որ ստիպւած էինք մի բաց նամակով բողոքելու այդ վարմունքի դէմ: Գրական մարդու տարրական պարտքն էր յարգել հակառակորդի արդարացի բողոքը: Սակայն, Դուք չուզեցիք հանել Ձեր ընթերցողնե-րին մոլորութիւնից, Դուք մի անվայել և դատապարտելի ընթացք ցոյց տուիք մամուլի մէջ և չ՛տպագրեցիք մեր կարճ ու քաղաքավարի նամա-կը:- Այս է ահա վախը:

Վերապատուելի Մէնէվիշեան քննադատութիւն էր տպել մեր մի ան-տիպ, ուրեմն հասարակութեանը դեռ անծանօթ գործի մասին, այն էլ առանց իմ գիտութեանն ու թոյլատուութեանը: Խոստովանեցէ՛ք, որ դա, եթէ մեղմ ասենք, մի գրական վարմունք չէ՛ր: Դուք փոխանակ դա-տապարտելու, հրճւեցաք, գովաբանեցիք այդ վարմունքը. ա՛յլ և պարտք համարեցիք արտատպելու նրա ամենախիստ և Ձեզ համար շահաւէտ կէտերը, զարդարեցիք այն վերևից, միջից և տակից փողո-ցային հայհոյանքի մի հրաշալի մոզայիկով, տապալելու համար մի գործ, որ Դուք չէիք ճանաչում, որպէս զի սևացնել ու անւանարկել կա-րողանաք Ձեր հակառակորդի անունը: Եթէ մենք բառ չենք գտնում անուն տալու Պատուելի Մէնէվիշի վարմունքին Ձեր այդպիսի աջակ-ցութեան համար, միայն զգւանք կարող էինք զգալ:

Մենք հերքեցինք արտատպածը, անուշադիր թողնելով Ձեր հայ-հոյանքը: Մի պարտականութիւն կար Ձեր վրայ, նոյնութեամբ և հոգ-ածութեամբ տպագրելու մեր հերքումը: Սակայն, այստեղ էլ ցոյց տուիք, որ Դուք արժանի չէք գրական մարդու կոչմանը: Դուք բաց թո-ղիք մեր նամակից ամբողջ հատւածներ ու նախադասութիւններ, եղածն էլ տպագրեցիք ա՛յնպիսի անհոգութեամբ և սխալներով, որ մի կարևոր կէտում (ւ-իւնի և վ-ի մասին) ո՛չ մի միտք չէր դուրս գալիս:

Ես իրաւունք ունիմ կարծելու, որ դրանք դիտմամբ էին կատար-ւած, որովհետև Դուք օգտւելով մեր մեղմ հեզնութիւնից, այնպէս էիք

մեկնել, իբրև թէ Վանցեանը պատրաստ է «համեստութեան» դասեր առնելու Ձեզանից...

Այդ դեռ բաւական չէ՛. Դուք Ձեզ թոյլ էիք տւել անկարելին և աներևակայելին, որ մենք չէինք սպասում նոյն իսկ «Մշակ»-ից: Դուք նենգել էիք մեր բառերը: «Պատւելի Մէնէվիշեան»ը Դուք շինել էք «գիտնական», իսկ «գիտնական Աճառեան»ը Դուք դարձրել էք «բանասէր»:- Դուք մեր բերանով Ձեր ընթերցողների առաջ բարձրացրել էք մեր հակառակորդին և նւաստացրել մեր վկայի հակառակ մեր գրութեան: Որքան էլ մեղմ ցանկանք լինել, մի բառ կայ այդ վարմունքի համար, խարդախութիւն, և գործը մինչև այդտեղը հասցնելուց յետոյ, Դուք, 27 ամեայ լրագրի խմբագրութիւն, գալիս էք դարձեալ մոլորեցնելու Ձեր ընթերցողներին, իբրև թէ ես «անազնիւ գրող» եմ, որովհետև չորս անմեղ բառերով՝ «Մշակ՛ն է այս դասը տւողը» - բաց եմ արել Ձեր թիւր մեկնութիւնը:

Ասացէ՛ք, ո՞վ է հիմա անազնիւը:

Այս տողերը գրում եմ ամենամեծ դառնութեամբ և զայրոյթով, որովհետև ստիպւած եմ ցոյց տալ թէ ո՛վ էք Դուք: Ձեզ դիւական հաճոյք է պատճառում գտնել և ցոյց տալ երևակայական յանցանք. մեզ անասելի ցա՛ւ է պատճառում, որ մեր գրական ասպարիզում ահա ա՛յդպիսի վարք ու բարքեր են զարգանում: Խաղողն է ուղիղ թէ հաղողը, մանկաբարձը թէ դայեակը, հաւատացէք, մի շատ երկրորդական հարց է այն կրքոտ և յանցաւոր վարմունքի դիմաց, որ Դուք ցոյց տւիք այս վէճի մէջ, գործը հասցնելով մինչև գրանենգութեան, մի՛միայն Ձեր հակառակորդին տապալելու ցանկութեամբ[1]:

Բագու, 5-ն Հոկտեմբերի

1899 թ.

**«Մուրճ», 1899, N 10, էջ 1253-1255**

1. Ներկայ գրւածքից բաց ենք թողնում վերջին տողերը: - Խմբ.

# ԳԻՆԱ ՌԱՆԻՅՉԻՉ - ԲՈՇԱ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒՀԻ

**Վլիսլոցկիից**

**ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑԵԱՆ**

**Aus dem inneren Leben der Zigeuner.
Ethnologische Mittheilungnn, von Dr. Heinrich Wlislocki.**

Գիտնական Վլիսլոցկու այս գիրքը՝ բոշաների դիցաբանութեան, հաւատալիքների և նախապաշարմունքների մի հարուստ հաւաքածու է, որ մասնագիտական նշանակութիւն ունենալով, չենք ուզում քաղւածօրէն այստեղ դնել, մինչ նոյն աշխատութեան վերոյիշեալ բանաստեղծուհուն վերաբերեալ մասը, բերում ենք մանրամասնօրէն:

Այդ բոշա կնոջ տարօրինակ կեանքը մեծ լոյս է սփռում եւրոպական բոշաների իրաւաբանական յարաբերութիւնների վերայ և, ինչպէս կը տեսնէ ընթերցողը, մեզ հայերիս համար մի առանձին հետաքրքրութիւն ունի, քանի որ այդ բոշա Սաֆօն իր սկզբնական կրթութիւնը ստացել է հայի ձեռքով և հայոց ուսումնարանում և թերևս առանց այդ կրթութեան նա կորչէր ինչպէս մի տգէտ և անյայտ անդամ թափառաշրջիկ բոշաների:

Այս տաղանդաւոր և անբաղդ կնոջ կեանքը լի է այնպիսի եղերական դէպքերով, որոնք կարող էին վիպասանին առատ նիւթ մատակարարել:

Գինա Ռանիյչիչը եթէ ուրիշ ազգութեան պատկանէր, եթէ նա ուրիշ պայմանների մէջ ապրէր, նորա գեղեցկութիւնն ու դաստիարակութիւնը իր կեանքի անէծքը չէին դառնայ, և թերևս նորա տաղանդը այդպիսի մեծ համբաւ չը հայթայթէր: Նորա թողած 250 բանաստեղծութիւնների մէջ արտայայտւում է նորա ամբողջ կեանքը իր բոլոր տանջանքներով, անզօր կռւով, դառն հիասթափումով և փշրւած յոյսերով:

Ունգարիայի յեղափոխութեան ժամանակ Գինա Ռանիյչիչը իր ցեղի հետ Խորւատիայից փախչում էր Սերբիա: Մոլորւելով և յետ մնալով իր ազգականներից, որոնք գողութեան համար հալածւում էին թուրք զինւորներից, նա տասներեք տարեկան ժամանակ ընկաւ

հայ վաճառական Օւակիմ Դալենեսի (!?) տունը, որ այն ժամանակ ապրում էր Բէլգրադում, բայց շուտով Գինայի հետ այնտեղից վերաբնակւեց հայրենի Կ. Պոլիս քաղաքը:

Ինչպէս երևում է, Դալենեսը սիրեց բոշա աղջկան: Այդ աղջիկը Կ. Պոլսում սկսեց յաճախել հայոց ուսումնարանը և, բացի դորանից, նորա հայ խնամակալը նորա համար գերմաներէնի ուսուցիչ հրաւիրեց, որը երեք տարի պարապեց նորա հետ:

Գինայի դաստիարակը ամուրի էր և ապրում էր իր ամուրի եղբօր Գաբրիէլի հետ, որը նոյնպէս հասակաւոր էր: Մի անգամ Գաբրիէլը Գինային առաջարկեց, որ իր կինն ու տան ընկերուհին դառնայ: Գինան համաձայնեց, գերմաներէնի ուսուցչին արձակեցին, և Գինան դարձաւ տանտիրուհի: «Մարդս», ինչպէս նա անւանում էր Գաբրիէլին, մարմնացած բարութիւն էր. և նա այս ծերունի մօտ իրան բոլորովին բաղդաւոր էր համարում:

Այս ժամանակ ահա նա սկսեց բանաստեղծութիւններ գրել հայերէն, թուրքերէն և բոշայերէն:

Գինայի ամուսնական բաղդաւորութիւնը խանգարւեց մի երիտասարդ ալբանացու պատճառով, որը սիրահարւեց գեղեցիկ գնչուհու վերայ, որին իր մարդը զուգում և զարդարում էր արևելեան ճոխութեամբ:

Ալբանացին, որի անունը Գրիգոր Կորոշան էր, մի անգամ մտաւ Դալենես եղբայրների տունը, և Գինայի հետ հետևեալ խօսակցութիւնն ունեցաւ. «Քո մարդը քեզ պապ կարող է լինել. եթէ դու ապրել ես ուզում, այժմեանից ինձ հետևիր, որովհետև սուլթանը հրամայել է այսօր կոտորել բոլոր հայերին»: Եւ Գինան հետևեց «Կիպետարին» - ինչպէս ինքն էր անւանում այդ ալբանացուն,- մերժելով այն ճոխութիւնը, որ նա վայելում էր Կ. Պոլսում, և իր կեանքը կապելով մի անծանօթ մարդու հետ, որի ով կամ ինչ լինելը չէր ճանաչում: Կ. Պոլսից փախչելու երկրորդ օրը ալբանացին նորան յայտնեց, որ եթէ վերադառնայ իր մարդու տունը, իսկոյն նորան կը ձերբակալեն և կը տան իշխանութեան, որովհետև երկու Դալենես եղբայրներին էլ գտել են սպանւած այն սենեակում, որտեղ իրանց գանձերն էին պահում և այդ սպանութեան կասկածը ընկնում է Գինայի վերայ:

Իրաւի՛ 1851 թ. Պոլսում սպանել և կողոպտել էր հայ վաճառական Գաբրիէլ Դալենեսը, բայց թէ ո՞վ էր սպանողը, քննութեամբ չի յայտնուած:

Այս հանելուկի վերայ մի քիչ լոյս են սփռում, այդ ժամանակամիջոցի վերաբերեալ, Գինայի մի քանի բանաստեղծութիւնները. բերում ենք նոցանից մինի թարգմանութիւնը, որ կարծել է տալիս, թէ Գինան ճանաչում էր իր մարդու սպանողին[1]: «Թիթեռների պէս, որ սաւառնում են Բալկանի վերայ, սաւառնում են իմ ցանկութիւնները, և ես երբէք չեմ կարող յագեցնել նորանց: Երեխայի պէս իմ ուրախութիւնները վաղանցիկ են և դոքա չեն, որ ժպիտ են առաջացնում: Ո՛չ, իմ ժպիտս առաջանում է վշտից և կարօտից:

«Թիթեռների պէս, որ սաւառնում են Բալկանի վերայ, սաւառնում են մտքերս և թափանցում են ամուսնու արիւնաշաղախ կուրծքը, և այնտեղից, ինչպէս որ որդերն, սողում են իմ սրտի մէջ, և ո՛չ ոք աշխարհիս երեսին չի՛ կարող նոցա հալածել այնտեղից»:

Սիրո՞ւմ էր թէ ոչ բանաստեղծուհին իր առաջին մարդուն, բայց շատ բանաստեղծութիւններից երևում է, որ նորա մասին ունեցած յիշողութիւնները նա իր հետ Ալբանիա էլ տարաւ, ուր նա գնացել էր «Կիպետարի» հետ և որտեղ կատարւում էին նորա ամենաչնչին ցանկութիւնները «Կիպետարի» ձեռքով:

Աղրիանապոլիս գալուց յետոյ ալբանացին վարձեց մի վաճառականական ընկերութիւնից, որի անդամներին նա ձիով պիտի ուղեկցէր Սերբիա, Բոսնիա և ունգարական սահմանը: Գինան միշտ ուղեկցում էր նորան այս դժւարին և վտանգաւոր ճանապարհորդութիւններին, թէև գիտէր, որ իր սիրեկանը ալբանացի աւազակային խմբի հետ սերտ յարաբերութիւն ունի, որ երևում է հետևեալ՝ հաւանականօրէն դառն մտածութեան րոպէներում գրած բանաստեղծութիւնից.

1. Շատ հաւանական է, որ այդ երգի բնագիրը հայերէն լինի. քանի որ, ինչպէս յայտնում է գիտնական Վլիսլոցկին, նա հայերէն էլ գրելիս է եղել բանաստեղծութիւններ: Շատ հետաքրքրական է, թէ մնացե՞լ են արդեօք այդ տաղանդաւոր կնոջ հայերէն բանաստեղծութիւնները: Պոլսեցի հայ գրագէտների վերայ բարոյական պարտք կայ հաւաքել այդ կնոջ բանաստեղծութիւնները, որ անտարակոյս ընտիր բաներ պիտի լինեն, և լուսաբանել նորա կեանքի այն շրջանը որ անց է կացրել հայոց ուսումնարանում և շրջանում:- Ծ.Թ.

«Երբէ՛ք քեզ չեմ պատկանել, ինչպէս որ արևը պատկանում է երկնակամարին. քեզ չեմ սիրել և չեմ սիրում, թէև քեզ արբեցրել եմ երջանկութիւնով:

«Ասա՛, տեսե՞լ ես դու դանակը, արիւնաշաղախ դանակը: Ի՞նչպէս տեսած չը լինիս, քանի որ դու աւազակների հետ ես ընկերանում:

«Սէրը չէ՛ որ կրծում է քո սիրտը և լցնում է նորան տանջանքով ու դողով. նորան կրծում է ամուսնուս արիւնը, որ իւր արևը սևացրեց երկուսիս համար:

«Առաջ դու խաբեբայ էիր, իսկ այժմ մարդասպան դարձար:

«Դանակը ինձ այն մարդկանց ստրուկ դարձրեց, որոնց ձեռները պղծուած են արիւնով»:

Դառն հեգնութիւն են շնչում բանաստեղծուհու մի քանի ոտանաւորները, որոնցից կարելի է եզրակացնել, թէ «մարդը» սպանւել է իւր գիտութեամբ և ալբանացին փախել է նորա հետ կողոպտելով մարդու գանձերը: Ճշմարիտ է, որ «Կիպետարի» ձեռքերը մաքուր չէին: Ինքը Գինան պատմել է Վլիսլոցկուն, որ ալբանացին աւազակների ձեռն էր տալիս այն հարուստ վաճառականներին, որոնց պահպանութիւնը իրան էր յանձնւած:

Նոցա սպանում կամ կապոտած գցում էին ճամբու վերայ, իսկ նոցա փողերն և ապրանքը թաքցնում էին ալբանական լեռներում: Այդպիսի քաջագործութիւններից յետոյ «Կիպետարը» իւր սիրուհուն պարգևատրում էր շռայլ ընծաներով և ինչպէս երևում է, նորան չափազանց սիրում էր:

Այս արկածներով լի կեանքը Գինային, որպէս օտարոտի և բոշա կնոջ, դուր էր գալիս, բայց մշտական վտանգն ու կռիւները դուր չէին գալիս նորա խաղաղասէր բարոյական բնաւորութեանը և նա շատ անգամ խնդրում էր իւր սիրեկանին Պոլիս դառնալ: Ալբանացին, ի հարկէ, նորա ցանկութիւնը չը կատարելու հիմնական պատճառ ունէր:

Երկու տարուց յետոյ Գինան մտադրւեց ծածուկ փախչել նորանից, բայց ալբանացին իմացաւ նորա մտադրութիւնը և ծանր վիրաւորեց Գինայի այտը: Այդ վէրքի սպին նորա վերայ մնաց մինչև մահը:

Այս դէպքից յետոյ նա հաշտւեց այն ժամանակ, երբ ալբանացին խոստացաւ Սերբիա գնալ և բերել իւր սիրուհու ծնողներին: Գնալիս

ալբանացին իր սիրուհուն երեք ամսով ծախեց մի ունգարացու, որ ապրում էր Աղրիանապոլսում: Այս վարմունքը ըստ երևույթին Գինա-յին բոլորովին չը վշտացրեց: Այն ժամանակներում ալբանացիք սովո-րութիւն ունէին առժամանակ ծախել իրանց կանանց ստրկուհիներին:

Բայց «Կիպետարը» Գինային փող էր տալիս նորա ունգարացու մօտ մնացած ժամանակն էլ:

Իւր ժամանակաւոր մարդու տանը անհաստատակամ բոշան սի-րահարւեց մի «սպիտակ մարդու» վերայ, որի անունը նա երբէք մէկին չ՛ասաց: Նորան նւիրւած երգերում նա նորան անւանում է իւր միակ իսկական սէրը, որ սակայն չէր խանգարում վերջերում կրկին անգամ յայտնելու իւր բորբոքուն սէրը «Կիպետարին»:

Կորստից պահւած նորա ոտանաւորները չորեքտողեան են, որոնց մէջ նա երգում է սէրը. բայց երգում է ո՛չ ընտիր և զովասանական մտ-քերով. սիրահարներին նա անւանում է «յիմարներ, որոնք ամեն մի խոզի երամակում սիրուհու պատկերն են տեսնում»: Սորանից յետոյ Գինան երկար ժամանակ բանաստեղծութիւն չէր գրում, որովհետև վրայ հասան մռայլ, դառն հիասթափումով լի օրեր:

Մի խայտառակ դէպք ունգարացուն ստիպեց, որի մօտ կենում էր Գինան, դուրս անելու նորան իւր տանից:

Գինայի պատմելով դորա պատճառը այն հանգամանքն էր, որ մի «պարոն», որ ամեն օր յաճախում էր ունգարացու տունը (պէտք է կարծել, որ դա այն «սպիտակ մարդն է», որին նւիրւած են այն բորբո-քուն բանաստեղծութիւնները), գողացաւ Գինայի փողերն ու շորերը: Մնալով աղքատ և անապաստան, Գինան մի քանի շաբաթ թափա-ռում էր Աղրիանապոլսի փողոցներում և վերջապէս վճռեց որոնել իւր «Կիպետարին»:

Բարեբաղդաբար նորան գտաւ Աղրիանապոլսից ո՛չ հեռու, որ վե-րադառնում էր նորա բոլոր ազգականների հետ, որոնց յետևից նա Գինայի խնդրով գնացել էր Սերբիա:

Հանդիպումը ըստ երևոյթին այնքան էլ սիրալիր չէր. Գինայի ազգ-ականները իրանց անյագ բոշայութիւնով արդէն ձանձրացրել էին ալ-բանացուն:

Բոշաների ցեղը Աղրիանապոլսի մօտ բանակ դրեց և սկսեց ապ-րել «Կիպետարի» հաշւով: Բայց ալբանացին շուտ ձանձրացաւ այդ

պարապ մարդկանց կերակրելուց և սկսեց պահանջել, որ Գինան յետ ուղարկի բոշաներին Սերբիա: Սիրեկանների յարաբերութիւնները վատացան և վերջապէս բոշաները ստիպւեցան հեռանալու: Բայց նրա Գինային բամբասանքներով կուեցնելով ալբանացու հետ, տարան իրանց հետ: Սակայն առաջուց նոքա այնքան փող և թանկագին ընծաներ կարողացան կորզել ալբանացուց, որ հայրենիք վերադառնալով 600 խոզ գնեցին: Գինային նոքա տարան այն հաշւով, թէ «Կիպետարը» կը կարօտի և կը գայ Սերբիա նորա հետ ապրելու, ուր ծնողները կրկին կ՛օգտուեն նորա առատաձեռնութիւնից:

Բայց այդ ենթադրութիւնը սխալ դուրս եկաւ. «Կիպետարը» այլ ևս չը վերադարձաւ իր սիրուհու մօտ: Գինայի կեանքում մեծ փոփոխութիւն առաջացաւ: Նա կատարեալ գերի դարձաւ բոշաների մօտ, որոնք նորան ակներև ծախում էին և աչք չէին հեռացնում նորանից դեռ յուսալով, թէ ալբանացուն կը գրաւեն: Գինան իսկական գերի էր և վերջերը իր կեանքի այդ շրջանի մասին խօսելիս նորան նկարագրում է ամենամութ գոյներով:

Այդ ժամանակները նա մօտ քսան և երեք տարեկան էր. և նորա գեղեցկութիւնը իր կատարելութեանը հասաւ:

Նորա նախընթաց կեանքն էլ լի էր արկածներով, իսկ այժմ սկսւեց անվերջ, ճոխութիւնից աղքատութիւնը, փայլից մթութիւնը տանող, փոփոխութիւնների շարքը, մինչև որ վերջապէս նա սաստիկ աղքատութեան մէջ ընկաւ:

Զարմանալին այն է, որ այդ ժամանակ նա ո՛չ մի բանաստեղծութիւն չի գրել: Երբ նորանից հարցրին դորա պատճառը, նա պատասխանեց. «խոզերի մէջ ապրելով, ես բանաստեղծութիւն յօրինելու կարողութիւն չունէի. միևնոյն ժամանակ մտածում էի միայն, թէ ինչպէս վերադառնամ Ալբանիա»: Բաժանման ժամանակ նորա սէրը դէպի «Կիպետարը» բորբոքւեց նոր ուժով, և նա չարչարւում ու նեղւում էր ազատութեան համար: Սոցա վերայ աւելացաւ նաև հիւանդութիւնը:

Քանի որ բոշաները փող ունէին, նորա հետ բաւականին լաւ էին վարւում. բայց երբ որ «Կիպետարի» փողերը հատան և Գինան չէր կարողանում նոցա համար եկամուտի աղբիւր դառնալ, նորա դրութիւնը անտանելի դարձաւ: Նոքա անամօթաբար իրանց պահանջ-

ներն էին անում. եղբայրները կողոպտեցին նորա թանկագին շորերն ու զարդերը և նա հիւանդացաւ ու բարոյապէս ճնշւած՝ իր արիւնակիցների մօտ ապրում էր աղքատի պէս: Մինչև անգամ նորա մայրը կարծես իր յոյսերը աղջկայ գեղեցկութեան վերայ էր դնում, որովհետև նա վերջապէս գանգատուեց իր ցեղին, որ Գինան գիտէ «Կիպետարի» տեղը, բայց չի ուզում յայտնել, որ ազգականները նորանից ընծաներ չը կորզեն: Բանը հասաւ ցեղի արիւնայեղ երկպառակման. Գինայի կուսակցութիւնը յարձակւեց նորա ազգականների վերայ և խաղաղութիւն կայացաւ այն պայմանով, որ Գինայի հօրեղբօր որդիներից մինը, Պետրոս Ռանիյչիչը (որ սիրահարւած էր Գինայի վերայ) գնար «Կիպետարին» գտնելու և համոզելու, որ վերադառնայ Գինայի մօտ, կամ ստիպէ, որ փող ուղարկէ նորան: Բոշաները դորանով առժամանակ հանդարտւեցան և Պետրոս Ռանիյչիչը գնաց Ալբանիա, որտեղից այլ ևս չը վերադարձաւ: Հաւանականօրէն ալբանացու սուրը վախճան դրեց նորա պահանջներին:

Գինան թէև նախատեսնում էր այդ փորձի անյաջողութիւնը, բայց այնպէս էր ցոյց տալիս, որպէս թէ յոյս ունի իր սիրեկանի դարձին և դորանով այնպէս վարպետութեամբ խաբեց բոշաներին, որ նոքա աւելի ազատ թողին նորան և թոյլ էին տալիս, որ առանց ուղեկիցների բանակից հեռանայ մօտակայ գիւղերը:

Դորա շնորհիւ և իր միւս հօրեղբօր որդու օգնութեամբ նա վերջապէս կարողացաւ փախչել ազգականներից: Հանգամանքները օգնեցին նորա փախուստին և հետամուտ եղողները չը կարողացան հասնել նորան: Նա վերջապէս, կարծես ծանր երազից յետոյ մի քիչ թեթևացած, ինչեց և փախուստի ժամանակ գրած ոտանաւորներում յաւիտեանս հրաժարւում է իր հայրենիքից:

«Թող քեզ աստւած պահպանէ՛, մերժւած, անապատ երկիր, ուր այդքան քիչ ուրախութիւն, իսկ վիշտ, աւա՜ղ, այդքան շատ կայ: Երբէ՛ք, դո՛ւ, բոշա՛ ժողովուրդ, չես գայ իմ գերեզմանին այցելութեան, չես օրհնի ինձ այնտեղ, ուր պիտի գտնեմ յաւերժ հանգիստ», ասում է նա ի միջի այլոց իր բանաստեղծութիւնների մէջ: Այս ժամանակամիջոցում նա մօտ քսան ոտանաւոր է գրել, որոնց մէջ իր ցեղն անւանում

է «սև ագռաւ» և իր սիրելու մօտալուտ տեսութեան առթիւ, Ալբանիայի «սպիտակ լեռների» մէջ, բուռն ցանկութիւն է յայտնում:

Երկար ժամանակ զրկանք ու կարիք կրելով նա թափառում էր Ալբանիայում «Կիպետարին» որոնելով, բայց ո՛չ մի տեղ նորա հետքն անգամ չը գտաւ: Այս ժամանակում գրած նորա բոլոր բանաստեղծութիւններից բղխում է ատելութիւն դէպի մարդիկ և գանգատ բաղդի վերայ: Նորանից մի երկար ոտանաւորի մէջ, որ ուղղուած է «ալբանացիներին», յուսահատութիւնը նորան թելադրում է այս ազգի, մանաւանդ նորա կանանց վերայ, ամենադառն զրպարտութիւն, որոնք հաւանականօրէն գեղեցիկ ալբանացու նախկին սիրուհուն հանդիպում էին ո՛չ այնքան բարեկամաբար: Վերջապէս Գինան մի տեղեկութիւն ստացաւ, որ նորա «Կիպետարը», անտարակոյս աւազակութեան համար հալածելով թուրքաց զինուորներից, փախել է Իտալիա մի նորատի ալբանուհու հետ: Այս լուրը այնպէս ազդեց Գինայի վերայ, որ նա խելագարուած վազում էր փողոցներով և յարձակւում ալբանների վերայ: Նորան ծեծում էին, և մի կռւում, որ ծագել էր նորա խելառութիւններից, կտրեցին նորա ձախ ձեռքի մեծ մատը: Նա խոստովանում էր իր վերջին պատմութիւններում, որ այն ժամանակ ինքը բոլորովին խելագար էր:

Վերջապէս յոգնատանջ, վիրաւոր և հիւանդ նա մի կերպ հասաւ ծովափ, Իտալիա ընկնելով յուսով: Նորա անհաստատակամ, անհանգիստ բնաւորութիւնը, անբաւական ձգտումը մի անհասանելի բանի, արտայայտւում է հետևեալ բանաստեղծութեան մէջ, որ գրել է Իտալիա գնալուց յետոյ:

«Չարագուշակ վիշտը ամբողջ կեանքումս հետևում է ինձ քայլ առ քայլ. և Աստուած ո՛չ մի տեղ չը տուեց ինձ ուրախութիւն ու հանգիստ: Ամեն բան ինձ գրաւում է դէպի հեռուն… դէպի անծայր հեռաւորութիւնը, բայց այն, ինչ որ որոնում եմ, չե՛մ գտնում ո՛չ մի տեղ:

«Թէ սարի վերայ եմ,- ինձ գրաւում է ձորը, թէ մարգերի վերայ եմ,- քարշում է պայծառ աղբիւրի խորքը: Եթէ ես աստղ լինէի, որ փայլում է գիշերային կամարում, անյագ ցանկութիւնս պիտի լինէր պայծառ լուսին դառնալ:

«Եթէ ես Բալկանեան շղթայի վերայ բուսած փարթամ վարդ լինէի, պիտի նախանձէի այն ոսկուն, որ գտանւում է նորա սրտում: Երկա-

րանում են ճանճրալի րոպէները, մինչև քեզ հետ տեսնուելս: Բայց նորա մասին մտածելիս ես ալեկոծւում եմ ուրախութիւնով և երկիւղով:

«Կը գա՞ս դու արդեօք, չե՞ս գալ արդեօք, չը գիտեմ ի՞նչ պիտի պատահի ինձ: Ես էլ չեմ կարողանում հասկանալ ինձ, ուրիշն էլ չի կարող հասկանալ ինձ երբէք: Քեզանից հեռու,- սիրտս պատառւում է քեզ համար. նստած ես դու մօտս,- ես պատրաստ եմ քեզ արհամարհելու»:

«Կիպետարին» որոնելիս՝ հարաւային Իտալիայում շրջելու ժամանակ՝ նա ծանօթացաւ մի հարուստ ռումինացի հրէայի հետ, որի անունն էր Եակօֆ Գորշտէյն. այնուհետև ալբանացու հետ ունեցած կապերը կտրուեցան առ միշտ: Գորշտէյնը սաստիկ սիրեց գեղեցիկ և կրթւած բոշային և մինչև մահ նորան հաւատարիմ մնաց: Դա, Գինայի նկարագրութեամբ, ո՛չ միայն հարուստ վաճառական էր, այլ և կատարեալ կրթութիւն ստացած մի մարդ: Ունենալով հարուստ մատենադարան, նա իր բոլոր ազատ ժամանակը անցնում էր կարդալով: Նա մասնաւորապէս սիրում էր գերմանացոց նորագոյն գրողներին, որից այդ ճաշակը անցաւ Գինային: Այդ մարդու ազդեցութեան տակ Գինան մի քանի բոշայերէն նկարագրութիւններ և պատկերներ գրեց, որոնցից երեքը նորան մեծ հռչակ կարող են լինել:

Յաճախ գործերի պատճառով Գորշտէյնը գնում էր հիւսիսային Աֆրիկա և երբեմն իր հետ վերցնում էր Գինային: Այնտեղ Գինան հանդիպեց Աֆրիկայի բոշաներին, որոնց նա առատ պարգևատրում էր. բոշայի արիւնը խկոյն երևում էր, չը նայելով այն նեղութիւններին, որ նա քաշել էր իւրայիններից:

Գորշտէյնի հետ անցկացրած հինգ տարին նորա փոթորկալի կեանքի միակ բաղդաւոր ժամանակն էր: Բայց բանաստեղծուհու բոշայական բնաւորութեան շնորհիւ այդ պայծառ ժամանակի վերայով էլ մի սև ամպ սահեց: Գորշտէյնը աֆրիկացի բոշաներից գեղեցիկ պատանի Պետրոս Կանդալատարին ծառայ վարձեց, որը իր տիրոջ բացակայութեան ժամանակ վայելում էր իր տիրուհու յատուկ ողորմածութիւնը: Բոշաների բարոյականութեամբ[1] այստեղ ո՛չ մի դատապարտելի բան չը կար, բայց Գորշտէյնը այս բանին ուրիշ կերպ նա-

1. Տես մեր յօդւածը «Հայ բոշաներ»-ի բարոյականութեան մասին. «Մուրճ», N 7, 8, 9. 1892 թ.

յեց: Մի օր, Աֆրիկայից վերադառնալուց յետոյ, արձակեց ծառային լաւ վարձատրելով և առանց որ և է նկատողութեան: Գինան այդ իմանալով, սաստկապէս պահանջեց, որ բոշա ծառային վերադարձնեն: Դա աւելի ևս արմատացրեց Գորշտէյնի կասկածը, որ առիթ տուեց բանաստեղծուհուն անբարոյականութեան համար անարատւելու:

Նոյն գիշերը Գինան անյայտացաւ, իսկ երրորդ օրը նաւաստիները նորան հանեցին ծովից անշնչացած և բերին Գորշտէյնի մօտ: Այդ դէպքից յետոյ Գինան ջերմեց և երբ մի քանի շաբաթից յետոյ նա վեր կացաւ հիւանդութիւնից, «իւր ճակատագրական գեղեցկութեան,- ինչպէս ինքն էր պատմում,- հետքն էլ չը մնաց: Նա անյայտացաւ ինչպէս մի ծանր երազ և հայելու մէջ նա տեսնում էր մի բոլորովին սովորական կնոջ»:

Նորա առաջին զգացմունքը այն վախն էր, թէ Գորշտէյնը այժմ չի սիրի իրան, և այդ զգացմունքը զեղւեցաւ այն բանաստեղծութիւնների մէջ, որոնց տակը նա ստորագրում էր. «Տգեղ Գինա»:

Այդ երկիւղը ըստ երևոյթին զուր էր: Բայց բաղդը նորան ուրիշ աւելի ծանր հարւած էր վիճակել: Մի անգամ Աֆրիկա ճանապարհորդելիս Գորշտէյնը հիւանդացաւ և բժիշկների խորհրդով պիտի բնակւէր Կ. Պոլսում: Այնտեղ ազգականները համոզում էին Գորշտէյնին, որ նա հեռացնէ գնչուհուն, բայց նա լսել անգամ չէր ուզում այդ բանը:

Այնուամենայնիւ Գինային հեռացրին և միայն հիւանդի խիստ խնդիրքի շնորհիւ ամեն օր թոյլ էին տալիս Գինային մտնելու նորա մօտ մի քանի րոպէով:

Գինան զգում էր, որ իւր դրութիւնը անտանելի է այդ տանը: Այդ բաւական չէր. Գորշտէյնի մահից յետոյ նորա ազգականները բացարձակ յայտնում էին իրանց կասկածը, որ Գինան թունաւորել է նորան, որ շուտով օգտւի այն ժառանգութիւնից, որ կտակել էր նորան հանգուցեալը: Կարելի է երևակայել, թէ այս անարդար մեղադրանքը ինչպէս պէտք է ներգործէր գնչուհու կրակոտ հոգու վրայ:

Նա իւր վիշտն ու բարկութիւնը թափեց մի երկար ոտանաւորի մէջ, որտեղ ասում է, թէ նորան «ցեխը կոխեցին, բայց նա ցեխի մէջ էլ չի դադարում մարդկանց արհամարհել և նոցա վերայ ծիծաղել»:

Այսպէս թէ այնպէս Գորշտէյնի մահից յետոյ Գինան մեղադրւելով թունաւորելում՝ բանտարկւեց: Թէև հանգուցեալի մարմնի դատա-

տանական քննութիւնը ապացուցեց նորա անմեղութիւնը, բայց նա այնուամենայնիւ չ՛ազատուեց բանտից, որովհետև Գորշտէյնի ազգականները մեղադրում էին, թէ նա գողացել և պահել է ժառանգութիւնը: Երեք ամիս շարունակ բանաստեղծուհին տանջւում էր բանտում, մինչև որ իր վերայ բարդած բոլոր ամբաստանութիւններից բոլորովին արդարացաւ:

Այնուհետև նորան պաշտօնապէս յանձնեցին Գորշտէյնի կտակած տասը հազար դուկատը և նա այդ փողերը տեղաւորեց մի հայ բանկիրի մօտ:

Դարձեալ Գինան, թէև հարուստ, մենակ մնաց աշխարհում: Շատ անգամ նա պատրաստւում էր հեռանալ Կ. Պոլսից, բայց չէր կարողանում բաժանուել իր սիրեկանի շիրիմից: Այդ ժամանակւայ նորա ոտանաւորները բուրում են մենակութեան կարօտալի զգացմունք և տխրալի հայեացք իր անցեալի վերայ: Իր անբաղդութեան համար նա ինքը մեղադրում է իր «անհանգիստ բոշայական արիւնը, իր թափառաշրջիկ կեանքի սիրահար լինելը, իր մշտական ձգտումը դէպի անորոշ հեռուն, և իրան նմանեցնում է թռչնակին, որ չը գիտէ ո՛չ սահման և ո՛չ վերջ»:

Սակայն Գինան դարձաւ իր հարստութեամբ Կ. Պոլսի «հետաքրքրաշարժ» կանանցից մինը. զանազան արկածախնդիր մարդիկ սկսեցին քարշ գալով նորա ողորմածութիւնը հայցել: Սկզբում Գինան փակ կեանք էր վարում և օրերը անց էր կացնում լացով կամ քնած: Սակայն դա երկար չը տևեց. մէկ ու կէս տարուց յետոյ նա իր փողերը հանեց հայի բանկից և գնաց Սերբիա ազգական բոշաների մօտ:

Բայց «թափիշ և մետաքս հագած կինը» նոցա մօտ երկու օր միայն հիւր մնաց և ազգականներին հազար դուկատ բաժանելով, գնաց Պարիզ: Գորշտէյնը նորան շատ էր պատմել Պարիզի կեանքից և նա ցանկանում էր ճաշակել այդ նոր տպաւորութիւնները:

Պարիզի աղմկալի և բազմատարազ կեանքը օտարոտի բանաստեղծուհու իսկ ճաշակովն էր և նա շուտով մի խումբ կասկածելի անցեալով երկրպագուներ գտաւ: Գինան դոցանից ո՛չ մինի հետ սերտ յարաբերութիւն չունէր և բաւականանում էր նորանով, որ նոցանից սովորում էր, թէ ինչպէս պէտք է կեանքը վայելել: Մէկը միայն, մի

տրանսիլւանացի, գտաւ նորա սրտի բանալին վերջ ի վերջոյ և հեշտացրեց Գինայի Պարիզ բերած ութ հազար դուկատից վերջինը շռայլելը: Թէ դորա հետևանքն ինչ եղաւ, դիւրին է երևակայել: Գինան մի քանի ժամանակ պարտքով էր ապրում Պարիզում: Բայց այնքան պարտք արաւ, որ պարտատէրերը սկսեցին նորան հալածել և բոշաների առաջին բանաստեղծուհին, հռչակւած գեղեցկուհին, դատաստանական կարգով ուղարկւեց իւր հայրենիքը - Սերբիա:

Այդպէս էր ահա Գինա Ռանիյչիչի փայլուն և մրրկալի կեանքը: «Ես խաղացի իմ դերս և իջայ բեմից», իբրև իւր կենսագրութեան վերջաբան ասաց նա Վլիսլոցկուն և արտասուքի երկու խոշոր կաթիլներ ցած գլորւեցան նորա այտերից:

Գինայի բանաստեղծութիւնների մէջ չի լսւում ուրախ ներդաշնակութիւն, նոցա մէջ երգւում է աշխարհային աղէտը, անհամաձայնութիւն ինքն իրա և աշխարհի հետ, յաւիտենական յոյսեր և մշտական հիասթափումն, կրքերի անզուսպ կրակ և խիստ իրականութեան դառն գիտակցութիւն...

Իւր աղքատ մայրենի լեզւին շատ բանաստեղծութիւնների մէջ նա կարողացել է չը տեսնւած ոյժ և նրբութիւն տալ, թէև նա գրում էր խառն բարբառներով, վերցնելով բառերը մասամբ թուրքաց, մասամբ սերբիացոց բոշաներից:

Նորա ոտանաւորները ախորժալուր և ներդաշնակ են: Արտայայտութիւնները, պատկերները, խօսքի դարձւածները ո՛չ մի ճնական արհեստական բան չունին: Նորա բոլոր բանաստեղծութիւնների մէջ նկատելի է գերմանականի ազդեցութիւնը, որի հետ նա շատ լաւ ծանօթ էր:

Թէ ֆիզիկապէս և թէ բարոյապէս խորտակւած, Գինա Ռանիյչիչը իւր կեանքի վերջին քսան տարիները անցկացրեց իւր ցեղի մէջ ծայրայեղ չքաւորութեան մէջ: Իսկ այժմ առաջին բոշա բանաստեղծուհին իւր հանգիստը մի անյայտ շիրմի գրկում գտաւ, որին ճանաչում է միայն նորա վերայ սաւառնող քամին... Նա մեռաւ 1891 թւին:

Թարգմանելով այս յօդւածը ռուսերէնից, մեր նպատակն էր պոլսեցի հայ գրագէտների ուշադրութիւնը գրաւել այս հետաքրքրաշարժ անձնաւորութեան վերայ, որպէս զի օր առաջ հաւաքւէին և լոյս ըն-

ծայլէին նորա հայերէն ստեղծագործութիւնները, եթէ մինչև օրս կորստի չեն մատնւած նոքա, որոնց մասին յիշատակում է գիտնական Վլիսլոցկին:

Հայերս անտարակոյս իրաւունք ունինք այդ եւրոպական հռչակ վայելող գնչուհու տաղանդով պարծենալու, քանի որ նորան կորուստից ազատողը և հիմնաւոր կրթութիւն տւողը մի պոլսեցի հայ է եղել:

**«Մուրճ», 1893, N 3, էջ 408-420**

# ԿԱՐՄԻՐ ՁԱՏԻԿԻ ԳԻՇԵՐԸ

## (Պատկեր В. Короленко-ից)

### Նուէր «Մուրճ»-ի ընթերցողներին
### Ազատ թարգմանութիւն Գրիգոր ՎԱՆՑԵԱՆ

187* աւագ շաբաթ օրն էր:

Երեկոյի մթնշաղը արդէն տարածել էր իր թևերը խաղաղած երկրի վերայ: Ցերեկւանից տաքացած և հիմա՝ գարնանային իրիկնադիմի թեթև շշունչով հովացած երկիրը շնչում էր լիասիրտ: Այդ շշունչից ահա փառահեղ, վառվռուն և աստղալից երկնքի հետ խաղալով, դուրս էին ծորում սպիտակաւուն թուխպեր, ինչպէս բուրվառի ծխի քուլաներ, որոնք բարձրանում էին առաջիկայ տօնին դիմաւորելու:

Հանդարտ էր: Մ. փոքրիկ նահանգական քաղաքը, որ ամբողջովին զովացել էր մթնշաղ երեկոյի հովով, լռել էր, սպասելով այն պանծալի րոպէին, երբ մայր-եկեղեցու զանգակատան բարձունքից պիտի հնչէր առաջին հարւածը: Բայց քաղաքը քնած չէր: Խոնաւ մթութեան հովանու տակ, լռիկ, անմարդի փողոցների ստւերների մէջ նկատելի էր մի ամոք-սպասողական դրութիւն: Երբեմն միայն անցնում էր ուշացած, վաստակաբեկ բանւորներից մինը, որին տօնը հանդիպել էր համարեա՛ ծանր, անհամբոյր աշխատանքի մէջ. երբեմն գռգռում էր կառապանի սայլակը - և դարձեալ տիրում էր անմրմունջ հանդարտութիւն... Կեանքը փողոցից փախուստ էր տւել տները, փարթամ պալատները, համեստ խրճիթները և այնտեղ պահւել:

Թէ քաղաքի, թէ դաշտերի և թէ բոլոր երկրի վրայ լսելի էր վերահաս յարութեան տօնի անտեսանելի շշունչը:

Լուսինը չէր բարձրանում և քաղաքը մնացել էր այն բլրակի ստւերի տակ, որի վրայ նկատւում էր մի մեծ, մռայլ շինութիւն: Այդ շինութեան տարօրինակ, ուղղաձիգ և խիստ գծերը մռայլ նկարւում էին աստղալից երկնի երեսին, մթին դռները լուսին տալով հազիւ հազ որոշւում էին ստւերածածկ պատի միջից և անկիւնի չորս աշտարակները դուրս էին ցցւել երկնքում սրածայր գագաթներով:

Բայց ահա մայր-եկեղեցու զանգակատան բարձունքից դուրս թռաւ մտահոգ գիշերւայ զգայուն օդի մէջ առաջին դողդոջ հարւածը... երկրորդը... երրորդը... Մի րոպէից յետոյ զանազան տեղերում, զանազան ձևերով հնչում, դողդոջում և երգում էին զանգակները և այդ հնչիւնները հիւսելով կազմում էին մի զօրեղ, ինքնուրոյն ներդաշնակութիւն և տատանւում էին հանդարտ, կարծես շրջան էին առնում եթերի ծալքերում:

Այն մթին շինութիւնից, որ սւերով ծածկել էր քաղաքը, նոյնպէս լսեց խռպոտ, կերկերուն մի ղօղանջիւն, որ կարծես խղճալի անզօրութեամբ հև-հևում էր զօրեղ ներդաշնակութեան յետևից հասնելու եթերային բարձրութեան մէջ:

Ձայնը լռեց... Հնչիւնները հալւեցան օդում, իսկ գիշերային հանդարտութիւնը սկսեց աստիճանաբար իր գահը բարձրանալ, միայն դեռ երկար, մթնշողի մէջ նշմարւում էր մի անորոշ, առկայծող արձագանք որպէս անտեսանելի օղածիգ լարի դողդոջ: Տների ճրագները մարում էին, եկեղեցիների պատուհանները վառվում: Աշխարհը 187* դարձեալ պատրաստւում էր համբուելու եղբայրութեան, սիրոյ և խաղաղութեան հին նշանաբանը:

Մռայլ շինութեան մթին դռների ախերը ճռռացին: Զինւորների մի խմբակ մթութեան մէջ հրացանները չխկչխկացնելով դուրս եկաւ գիշերապահներին փոխարինելու: Նա մօտենում էր շինութեան անկիւններին առժամանակ կանգ առնելով պահակատեղերի մօտ: Այդ մթին մարդկային խմբից չափած-կշռած քայլերով դուրս էր գալիս մի կերպարանք, իսկ նախկին պահապանը կարծես խորասուզւում էր այդ անորոշութեամբ մթին տւող խմբակի մէջ: Ապա խումբը դարձեալ առաջ էր շարժւում պտտելով բանտի բարձր պատերի չորս կողմը:

Արևմտեան կողմը կանգնած պահապանին փոխարինելու դուրս եկաւ մի երիտասարդ նորակոչ: Նորա շարժմունքներից դեռ ևս չէր անհետացել գիւղական անտաշութիւնը, մատաղ կերպարանքը դեռ ևս պահպանել էր լարւած ուշադրութեան արտայայտութիւն, որ նկատելի է առաջին անգամ պատասխանատու պաշտօն ստանձնող անձանց դէմքին: Նա երեսը պատին դարձրեց, հրացանը չխկացնելով երկու քայլ արաւ և մի կիսաշրջան կատարելով, կանգնեց ուս-առ-ուս պահապանի մօտ: Հին պահապանը, իր գլուխը թեթևութեամբ նորե-

կի կողմը դարձնելով, սկսեց սովորական կարգով նրան խրատներ կարդալ:

- Անկիւնից անկիւն, լա՛ւ նայիր, չքնես, չնիրհես,- արագ-արագ ասում էր և նրա մոխրագոյն աչքերում թափանցում էր ինչ որ մի տեսակ առանձին տխրութիւն:

- Հասկացա՞ր,- հարցրեց տասնապետը:

- Такъ-точно (այո՛):

- Դէ՛, լա՛ւ նայիր,- ասաց նա խստութեամբ. ապա տոնը փոխելով, շարունակեց աւելի մեղմօրէն:

- Հա՛, ոչինչ, Փաղէն, մի՛ վախիր, հօ կնիկարմատ չես, սատանայից հօ վախենալու չես...

- Ինչո՞ւ միայն սատանայից,- միամտաբար պատասխանեց Փաղէնը և ապա մտազբաղ աւելացրեց,- համա, ախպէր, սիրտս ինչ որ վատ բան է նախագուշակում:

Այս պարզ, միամիտ, համարեա մանկական խոստովանութիւնը ծիծաղ բարձրացրեց զինւորների խմբի մէջ:

- Տես, ահա, բարեկամ, գիւղը շատ հեռու չէ՛,- ասաց տասնապետը մի արհամարհական ցաւակցութեամբ և կտրուկ հրամայեց:

- Ружья вольно! Шагомъ маршъ![1] - պահապան[2] խումբը քայլերի հաւասարաչափ բաղխումով ծածկւեց անկիւնի յետևը և այդ բաղխումը շուտով լռեց: Պահնորդը ուսին դրեց հրացանը և սկսեց հանդարտ ման գալ պատի մօտով:

Բանտի մէջ՝ զանգակի վերջին հարւածի հետ՝ սկսւեց մի շարժմունք: Վաղուց բանտի մռայլ և թախծալի գիշերը այդպիսի շարժումն չէր տեսել: Տօնական շնորհաւորութիւնը կարծես ազատութեան համբաւ լինէր բանտի բնակիչների համար: Արգելարանների սև դռները մինը միւսի յետևից բացւում էին: Մարդիկ մոխրագոյն վերարկուներով, գունաւոր, ճակատագրական կտորը մէջքին, երկար շարքերով գնում էին նրբանցքի միջով զոյգ-զոյգ և մտնում բանտի եկեղեցին, որ վառվռում էր ճրագների լուսով: Նոքա գալիս էին աջ կողմից, ցածրից

1. Հրացանները ազատ, քայլեցէ՛ք:

2. Караулъ - մենք թարգմանում ենք պահապան, իսկ часовой - պահնորդ: - Ծանօթ. թարգմանչի:

բարձրանում էին սանդուխով և բարձրից ցած էին իջնում. խուլ աղմուկի միջից երբեմնապէս լսւում էր հրացանի զրնգոց և կապանքների սահուն չխչխկոց: Մոխրագոյն խաժամուժը մտնելով ընդարձակ եկեղեցին, լցւում էր վանդակով շրջափակւած տեղերը և այնտեղ լռում էր: Եկեղեցու պատուհաններում նոյնպէս նկատելի էին երկաթեայ ամուր վանդակներ:

Բանտը դատարկւել էր: Միայն անկիւնի չորս աշտարակներում չորս մենաւոր բանտարկեալներ մռայլ թափառում էին իրանց խցերի մի անկիւնից միւսը: Երբեմն նոքա ականջները դէմ էին անում դռանը և ագահութեամբ կլանում էին եկեղեցուց դուրս թռչող երգի բեկորները:

Մէկ էլ ընդհանուր արգելարաններից մինում, թախտի վրայ պառկած էր մի հիւանդ: Վերակացուին յայտնեցին այդ յանկարծահաս հիւանդի մասին. նա մօտեցաւ հիւանդին, երբ կալանաւորներին տանում էին եկեղեցի, և խոնարհւելով նայեց նորա աչքերին, որ վառւում էին մի տարօրինակ փայլով և մի անմիտ արտայայտութեամբ ուղղւած էին տարածութեան գիրկը:

- Իւանով, լսի՛ր, Իւանով,- կանչեց վերակացուն հիւանդին:

Կալանաւորը ուշք չդարձրեց. նա մրմնջում էր ինչ որ մի անորոշանհասկանալի բան. ձայնը խռպոտ էր, բորբոք շրթունքները դողդոջում էին ճգնութեամբ:

Վաղը հիւրանոց տանելու կարգադրեց վերակացուն և արգելարանի դռան առաջ թողնելով նրբանցքի պահապաններից մինին, դուրս եկաւ: Պահապանը ուշադրութեամբ նայեց ջերմող հիւանդին և գլուխը շարժեց:

- Էյ փախստական, փախստական, քո հաշիւը վերջացաւ,- ասաց վերակացուն, և տեսնելով, որ այլևս այստեղ անելու բան չ՛ունի, անցաւ նրբանցքով դէպի եկեղեցին և սկսեց լսել ժամերգութիւնը՝ շուտ շուտ գետին կռանալով երկրպագութեան:

Դատարկ արգելարանը երբեմնապէս աղմկում էր հիւանդի անորոշ բացականչութիւններով: Դա մի չափահաս, զօրեղ և ամրակազմ մարդ էր: Նա զառանցում էր մօտիկ անցեալը և նրա կերպարանքը արտայայտում էր մի դառն տանջանք:

Բաղդը այդ փախստականի հետ մի անպիտան խաղ խաղաց: Հայրենիքի վառվռուն կարօտով տոգորուած, նա կտրեց հազարաւոր վերստեր. անցնելով վայրենի լեռների և տայգաների[1] վրայով, կրեց հազարաւոր նեղութիւն և զրկանք, առաջնորդուած այն յուսով, «թէ մէկ տեսնեմ... մի ամիս, մի շաբաթ... ապրեմ մերոնց մօտ... իսկ այնուհետև... թէ կուզ... նոյն օրին ընկնեմ»: Հայրենիքից հարիւր վերստ հեռու, նա ընկաւ այս բանտը...

Բայց ահա լռեց անորոշ զառանցանքը. փախստականի աչքերը լայն բացուեցան, կուրծքը սկսեց շնչել հաւասարաչափ, միաբաբախ... նրա տաք գլխում երևան եկան աւելի բերկրառիթ ցնորքներ...

Սոսափում է տայգան... նրան ծանօթ է այդ հաւասարաչափ, մոգական և ազատ սոսափիւնը. նա սովորել էր որոշել անտառի ձայնը, ամեն մի ծառի խօսակցութիւնը: Մեծափառ սոճիները հնչում են իրանց խիտ, մթին կանաչով բա՜րձր, բա՜րձր... եղևնիները փսփսում են ձգական և խուլ... ուրախ, պայծառ սաղարթը շարժում է ճկուն ճուղը. բարդին դողդոջում և ճքճքում է հրաշալի, երկչոտ տերևներով... Սուլում է ազատ թռչունը. առւակը աշխոյժ շատախօսութեամբ թռչկոտում է քարոտ ձորակի մէջ և տայգայի հետախոյզները[2] - կրկռան կաչաղակների երամը - թռչում են տեղերով, որտեղից խիտ տայգայի միջով անցնում է փախստականը:

Կարծես տայգայի քամու ազատ հոսանքը բուրեց հիւանդի երեսին: Նա բարձրացաւ, խորը հոգոց հանեց: Աչքերը ուշադիր արտայայտութեամբ առաջ են նայում... բայց յանկարծ նոցա մէջ ինչ որ գիտակցութեան նման մի բան ցոլաց... Սովոր փախստականը իւր առաջ մի արտասովոր բան տեսաւ.- բաց դուռ:

Զօրեղ բնազդումը ցնցեց ամբողջ մարմինը, որ խախտուել էր հիւանդութիւնից: Զառանցանքի նշանները արագ անյայտանում կամ խմբում էին այն մտապատկերի շուրջը, որ լուսեղ փայլով թափանցել էր այդ խաօսի մէջ. մենակ եմ... բաց է դուռը...

1. Тайга - այդպէս են կոչւում Սիբիրի խիտ, անմարդակոխ և ճահճուտ անտառները:- Ծան. Թարգմ.

2. Սիբիրի փախստականները պատմում են, որ խուլ տայգայի մէջ կաչաղակները երամով ուղեկցում են խիտ անտառից անցնող փախստականին: Այն ժամանակ՝ երբ օրէնքով այդ փախստականներին սպանելը արգելուած չէր, Բուրիաթ որսորդները նոցա հետևում էին կաչաղակների երամի կրկռոցով:- Ծան. Հեղ.

Մի րոպէից նա կանգնած էր յատակին: Բորբոք գլխի բոլոր ջերմը կարծես թափուեց նրա աչքերը, որոնք նայում էին մի տեսակ հաւասարաչափ, յամառ, սարսափելի...

Ինչ որ մէկը դուրս գալով եկեղեցուց, վայրկենաչափ բաց արաւ նրա դուռը... հեռաւորութիւնից մեղմացած երգի կանոնաւոր ալիքները հասան փախստականի ականջին և դարձեալ խլացան: Նրա դժգոյն կերպարանքի վրայ երևաց մի տեսակ թմրութիւն. աչքերը մթնեցան և մտքին ընկաւ հին, ցնորալի, փայփայած պատկերը. հանդարտ գիշեր... եղևնու սօսափ, որ թուխ ճղներով հովանաւորում է հայրենի գիւղի հին մատուռը... հայրենակիցների խումբը... գետի ափի ճրագները և այս երգը... Նա շտապել, փախել էր հէնց նրա համար, որ այս բոլորը լսէ այնտեղ, իր տանը, հայրենի գիւղում... մինչդեռ, նրբանցքի մէջ, եկեղեցու դռան առաջ դեռ ևս եռանդով աղօթում էր վերակացուն:

Երիտասարդ նորակոչը հրացանն ուսին շրջում է պատի մօտով. նրա առաջ տարածւում է հարթ, ծիւնից նոր բացւած, հեռուն կորչող դաշտավայրը: Թեթև քամին վազում է դաշտի վրայով, խշխշացնում է աղշպանքը, սուլում է հին տարւայ խոտերի միջով և զինւորի հոգու մէջ արթնացնում է հանդարտ, տխուր մտորմունք:

Երիտասարդ պահնորդը կանգ առաւ պատի մօտ, հրացանը ցած դրեց և ձեռքերը դնելով նրա բերանին, իսկ գլուխը ձեռքերի վրայ, խոր մտածմունքի մէջ ընկաւ:

Նա դեռ ևս պարզ չէր կարողանում երևակայել, թէ ինչո՞ւ այստեղ է, տօնի այս հանդիսաւոր գիշերին, հրացանը ձեռին, պատի մօտ, անմարդի դաշտավայրի առաջ:

Առհասարակ նա դեռ իսկական գիւղացի էր - ռամիկ. դեռ շատ բան, որ գիտեն զինւորները, նա չէր հասկանում, ուստի և իզուր չէր, որ նրան «գիւղացի» էին կանչում բարկացնելու համար: Երէկ չէ միւս օրը նա դեռ ազատ էր, տան, արտերի և իւր աշխատանքի տէրը... Իսկ հիմա, անըմբռնելի, անորոշ, անբացատրելի սարսափը հետևելով երիտասարդ, անտաշ գիւղական զաւակին ամեն մի քայլափոխում, ամեն մի շարժմունքին, միշտ յիշեցնում էր նրան ծառայութեան խստութիւնը:

Բայց այդ րոպէին նա մենակ էր... դաշտավայրի դատարկ տեսքը, որ փռւում էր նրա առաջ և աղշպանքի մէջ ծածանուող քամու շշուկը

նրան շշնջում էին մի տեսակ անուշ նիրհ և երիտասարդ նորակոչի առաջ հանդէս են գալիս հայրենի պատկերները: Նա ևս տեսնում է հայրենի գիւղը, որի վրայից վազում է միևնոյն քամին, և ճրագներով լուսաւորուած եկեղեցին, և այն մթին եղևնիները, որ նրա վրայից շարժում են կանաչ կատարները:

Երբեմն նա կարծես թէ ուշքի է գալիս և այն ժամանակ նրա մոխրագոյն աչքերում արտափայլում է տարակուսանք. այս ի՞նչ բան է... դաշտ... հրացան... պատ... Մի վայրկեան նա յիշում է իրականութիւնը, բայց գիշերւայ քամու անորոշ շշնջոցը դարձեալ հանդէս է բերում ծանօթ պատկերներ, և զինուորը հրացանին յենած` դարձեալ նիրհում է:

Պահնորդի կանգնած տեղից ոչ հեռու, պատի ծայրին երևում է մի մթին իր:- Դա մարդու գլուխ է: Փախստականը նայում է դաշտավայրի ծայրում դժւարութեամբ նշմարւող անտառի սահմանագծին: Մայր գիշերւայ ազատ, թարմ շունչը ագահաբար ծծելով, նրա կուրծքը լայնանում է: Նա ձեռքերով ցած է իջնում և հանդարտ սողում է պատի վրայով:

Զանգակների ուրախ հնչիւնը զարթեցնում է գիշերային խաղաղութիւնը: Բանտի եկեղեցու դուռը բացւեց.- դռանը թափօր պիտի լինի: Ներդաշնակ երգեցողութիւնը ալիքներով դուրս հոսեց եկեղեցուց: Զինուորը ցնցւեց, կանգնեց շիմ-շիտակ, ցած առաւ գդակը, որ երեսը խաչ հանէ, և այդ դրութեան մէջ նա պապանձւեց:

Փախստականը գետնին հասնելով, արագութեամբ վազեց աղշորանքի մէջ:

- Կաց, կաց, սիրելի բարեկամ,- կոչում է պահնորդը սարսափահար բարձրացնելով հրացանը... Ահա, հասաւ նրա գլխին այն սարսափը, որից նա սարսռում էր,- անձև, սարսափելի, ի դէմս այդ մոխրագոյն կերպարանքի:

«Ծառայութիւն, պատասխանատւութիւն», վայրկենաբար մտածեց զինուորը և, բռնելով հրացանը, նշան դրեց փախստականին: Հրացանի ոտը քաշելուց առաջ նա մի խղճալի տեսքով պլշեց աչքերը...

Իսկ քաղաքի վրայով դարձեալ սլանում, շրջան է առնում եթերի մէջ ներդաշնակ, երգեցիկ և դայլայլիկ հնչիւնը, և բանտի հին զանգակը դարձեալ զարկւում և ղօղանջում է մի կերկերուն ձայնով որպէս գնդակահար թռչնակի հոգոց: Իսկ պատի տակից ներդաշնակ հոսում

են դէպի հեռու դաշտավայրը հանդիսաւոր շարականի առաջին հնչիւնները. «Քրիստոս յարեաւ ի մեռելոց»:

Եւ յանկարծ ամեն բան խլացնելով պատի տակից որոտաց հրացանի հարւածը, նրան յետևեց թոյլ, անօգնական մի ճիչ դառն կսկիծով, և ապա, մի վայրկեան ամեն ինչ լռեց:

Միայն անմարդի դաշտավայրի հեռաւոր արձագանքը տխուր տրտունջով կրկնում էր հրացանի հարւածի վերջին արձագանքը:

**«Մուրճ», 1894, N 4, էջ 527-534**

# ԵՐԱԶ ԵՒ ԻՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ
## Թարգ. Ֆրանս. Գր. ՎԱՆՑԵԱՆԻ

Ո՛չ մի բան գուցէ այնքան զարմանալի չէ, որքան երազի և իրականութեան նմանութիւնը: Երազում մենք տեսնում ենք առարկաներ, անձեր և երևոյթներ, որոնք յար և նման են իրականութեան: Եւ մեր հաւատը դէպի այդ իրերն ու երևոյթները նոյնքան հաստատ է, որքան իրականութեան մէջ: Չի կարելի մինչև անգամ հաստատել, որ իրականութիւնը երազի չափ ուժգին ու կատարեալ է: Յուզումները երազի մէջ այնքան խորն են լինում, այնչափ կենդանի, ուրախութիւնը շատ անգամ այնքան ազդու, ցաւն ու դառնութիւնը այնքան սաստիկ, որ այդ ամենը երբեմն իրականից էլ աւելի խիստ է թւում: Դրանք, աւելի ծակող, աւելի ուժգին մի բան ունին, որից համարեա միշտ զուրկ է իրական տանջանքը: Ո՞վ չի յիշում կոշմարի պատճառած զառանցալի տանջանքը: Ո՞վ չի փորձել, երազում, այն հսկայական վիշտը, երբ մարդու հոգին կարծես հալւում, ոչնչանում է ամբողջովին: Ո՞վ չի զգացել, երազում մի սիրելի անձից բաժանւելը և դորա պատճառած անսահման տխրութիւնը, որ ապա, զարթնելուց յետոյ այնպէս դուրեկան, այնպէս հաճելի է դարձնում իրականութիւնը:

Յամենայն դէպս, երազի պատճառած երկիւղն և ուրախութիւնը նոյնչափ իրական է, որքան արթնութեանը. երազինը, քնած ժամանակ, մենք համարում ենք նոյնքան հաստատ ու ճիշտ, ինչպէս իրականինը: Մեր բոլոր տեսածի և իմացածի գոյութիւնը երազում նոյնպէս ակներև է ինչպէս արթնութեան մէջ: Դեկարտը իր դիտողութիւնների մէջ այս միտքը ամենահեշտ և ամենակենդանի կերպով է արտայայտել: «Քանի՞-քանի անգամ է պատահել երազում, որ ես այս ինչ տեղն եմ եղել. հագնւած եմ եղել, կրակի առաջ կանգնած, թէև ես բոլորովին մերկ պառկած եմ անկողնում: Այո, թւում է մինչև անգամ ներկայիս, որ այս քնած աչքերով չէ՛, որ ես տեսնում եմ այս թուղթը, որ այս յուզւած գլուխը դեռ քնած, հանդարտած չէ, որ ես, դիտմամբ և հէնց ժամանակին ազատւած, մեկնում եմ ձեռս և շօշափում այն: Եւ ինչ որ կատարւում է երազում, ո՛չ մի բան դորա նման որոշ ու պայծառ

չէ: Բայց հոգածութեամբ դորա մասին մտածելով, ես յիշում եմ, որ յաճախ, քնած ժամանակ, ես խաբուել եմ նման պատրանքներով: Եւ կանգ առնելով այս մտածման վրայ, ինձ համար ակներև է դառնում, որ ոչ մի որոշ կէտ չկայ, որով մարդ երազը պարզապէս զանազանել կարենար իրականից, և իմ զարմանքը այնքան մեծ է, որ համարեա ընդունակ է ինձ համոզելու, որ ես քնած եմ»:

Սակայն, երազն ու իրականութիւնը մենք իրար հակադրում ենք: Արթնութեան աշխարհը մեզ համար իրական, ճշմարիտ և միակն է. երազի աշխարհը մեզ թւում է կատարելապէս «ներքին» քիմերական: Երազների անկապ և անմիտ յաջորդութիւնը մեզ զարմացնում և զւարճացնում է: Մենք մնում ենք ապշած, որ քնած՝ հաւատալ ենք կարողացել նմանօրինակ զառանցանքի: Կարճ՝ երազ, մեզ համար նշանակում է պատրանք-զառանցանք, խաբէութիւն: Այսօր երազի մասին եղած թէօրիաներից տիրողն և պայծառն այն է, որ իրականի մտապատկերները (perception) ճիշտ են, իսկ երազի մէջ տեսածը սխալ: Նա պատասխանում է երեք հիմնական հարցերին, որ կարելի էր տալ երազի մասին. Ուրտի՞ց են գալիս երազները, ինչո՞ւ նրանք անկապ են, և ինչո՞ւ մենք երազում տեսածը իրականի տեղ ենք ընդունում:

Նախ երազի ծագումը բացատրում է շատ հասարակ կերպով. երազները հին զգացումներ են, որ վերարտադրւում են միայն ջոկ կապակցութեամբ.- երազները իրականութեան լոկ շփոթ ցոլացումն են: Երբեմն, սակայն, նրանք առաջանում են, երբ մեր զգայարաններից մինը կիսարթուն դրութեամբ մի որ և է ճնշման է ենթարկւում. մի բանի քսւելը, պառկելու ձևն ու դիրքը, և մեր օրգանների գործունէութեան դրութիւնը նոյնպէս առիթ կամ պատճառ են դառնում երազելու:

Երազների կապ չունենալը այլ ևս խորհրդաւոր չի թւում: Դա բացատրւում է երկու պատճառով. ա) որ դատողութիւնը, խելքը (raison), կամքը, ընտրութիւն անելու և ջոկելու ընդունակութիւնը, մի խօսքով «մտածութեան կենդրոնները» համարւում են քնած, ուրեմն չեն կարողանում կառավարել մեր մտապատկերների ընթացքը և բ) այդ պատճառով իսկ, մտապատկերների և երևակայութեան զուգորդութիւնը հասնում է անսանձ տիրապետութեան, իսկ երազում տեսածին հաւ-

տալը բացատրում է մտապատկերների մեքենական խաղով: Սկզբունքով ընդունված է այն օրէնքը, որ «ամեն մի մտապատկեր, երբ չի հանդիպում մի այլ աւելի զօրեղի դիմադրութեանը, մեզ երևում է իրական»: Դորանով հարցը լուծւում է ինքնին. քանի որ զգայարանները քնած են, մեր ուղեղում արտադրւած մտապատկերները չեն հանդիպում նորմալ զգացումների դիմադրութեանը. ուստի և մենք դրանք ընդունում ենք իբրև իրական: Այլ և մտածութեան կենտրոնները, լինելով քնած, չեն կարող մեր մտապատկերների առաջն առնել, քանի որ դատողութիւնն ու յիշողութիւնը բացակայում են: Ուստի և երազում տեսածին մենք բացարձակ հաւատ ենք ընծայում քնած ժամանակ:

Այսպէս՝ երազի և իրականութեան հակադրութիւնը հաստատ և նւիրագործւած է. մի կողմից պատրանք, մտքերի շփոթ, ցոլմունք, անկապութիւն, միւս կողմից հաստատ և տևական իրականութիւն:

Մենք կ՛ուզէինք ապացուցանել, որ այդ հակադրումը անկայուն է և երազն ու իրականը այդպէս դիւրութեամբ չեն զանազանւում իրարից: Դորանով, ի հարկէ, մենք եզրակացնելու չենք, որ «իրականութիւնը» մի քիմերա է, այլ առ սակաւը ցոյց պիտի տանք, որ նա անցողական և ժամանակաւոր է և որ ամեն րոպէ կարելի է սպասել մի արթնութեան:

I

Արդ՝ տեսնենք այն տարբերութիւնները, որ մարդու ակներև են երևում երազի և իրականութեան մէջ:

Առաջին, ասում են, որ մի անդունդ կայ երազի և արթուն դրութեան մէջ: Արթնութեան մէջ ես համոզւում եմ, որ առարկաներն իրական են. որովհետև իմ զգայարանքներից մինը հսկում և լրացնում է միւսի տարակոյսը: Ես տեսնում եմ մի ծառ. եթէ ես կասկածեցի մօտենում եմ և շօշափում. և իմ կասկածն իսկոյն փարատւում է. ծառը իրական է, և ես չեմ երազում: Ես զգում եմ վարդի հոտ. եթէ տարակոյս ունիմ, որոնում և տեսնում եմ վարդը, բռնում ու շօշափում եմ այն, և իմ համոզումը դառնում է անկասկածելի: Այսպէս, արթուն ժամանակ առարկաների իրական լինելը ապացուցւում է մեր զանազան զգայարանների և զգայութիւնների համաձայնութեամբ: Մինչ, ասում են, երազում, մեր զգայարանները լինելով քնած, մենք չենք կարող ճշտել մեր տեսածի

իրականութիւնը: Ուստի մենք մնում ենք խաբւած, մինչև մեր զգայարանների զարթնելը, երբ իմանում ենք մեր մոլորւելը:

Հասկանալի է, որ այս հակադրութիւնը կատարելապէս երևակայական է: Երազումն էլ, ճիշտ որպէս արթուն պահապան, մեր զգայարանները միմեանց հսկում և միմեանց հետ համաձայնում են:

Ես չեմ երազում միայն մի առարկայ տեսնելով. ես երազում եմ միևնոյն ժամանակ լսելով նորա ձայնը, շօշափելով նորա մարմինը. ես հաւատացած եմ, որ տեսնում եմ նորա ձեռը, լսում եմ նորա խօսակցութիւնը: Երազի և արթնութեան նոյնութիւնը այս կէտում բացարձակօրէն ակներև է: Արթուն թէ երազում, մենք հաւատացած ենք, որ նշմարում ենք մեր բոլոր զգայարանքներով: Երազումս տեսած առարկան «զգայութեան մի ցանց է» (faisceau de sensations), մկանային տեսողութիւն, լսողութիւն, շօշափումն, մինչև անգամ հոտառութիւն, ճիշտ իրական առարկայի պէս:

Ահա և մի երկրորդ, սովորական տարբերութիւն, որ տեսնում են մարդիկ երազի և արթնութեան մէջ:- Արթուն ժամանակ, առարկաների իրական լինելը ապացուցւում է զանազան անձերի համաձայնութեամբ: Ես չեմ միայն որ տեսնում եմ ծառը. բոլոր ներկայ եղողները տեսնում են նոյնը ինձ նման. ես շօշափում եմ. դուք էլ էք շօշափում. ես լսում եմ նորա տերևների սօսափը. դուք էլ էք լսում նոյնը: Եւ այս հանգամանքն է առաւելապէս, որ ինձ համոզում է, թէ ծառը երևակայութեանս արդիւնքը չէ. եթէ դուք նայելով այս կողմը ոչինչ չըտեսնէք, և ուրիշներն էլ ոչինչ չըտեսնեն, կարելի էր եզրակացնել, որ ես զառանցում եմ:- Գործի մէջ, կեանքում, մեր նշմարածը շարունակ հսկւում և ճշտւում է ուրիշների նշմարածով:- Այն ինչ, ասում են, քնած մարդը ենթակայ է միակ իր երևակայութեան խաղին. ուրիշները չե՛ն տեսնում, շօշափում ու լսում այն, ինչ որ նա է տեսնում, շօշափում ու լսում:- Նա փակւած է մի լուսաւոր բայց օտարի համար միանգամայն անմատչելի տարածութեան մէջ.- նա ուրիշների համաձայնութիւնը չի՛ կարող առնել իր տեսածի վերաբերմամբ:

Մինչ արթնութեան ժամանակ նշմարածը հասարակական է, երազում նշմարածը անհատական և անհաղորդակից է օտարին:

Այս առարկութիւնն էլ առաջինի պէս անկայուն և անհիմն է:

Ճիշտ է այն, որ, զարթնելուց յետոյ, մենք փոխում ենք մեր տեսակէտը, և այդ վայրկեանից միայն գիշերային երևոյթը մեզ թւում է զուտ ներքին, անհատական և մեկուսի: Սակայն, ի վնաս հասարակական պատրանքի, երազի ընթացքում իրերն ու անցքերը յար և նման են արթնականին: Ի հարկէ արթուն ժամանակ մեզ հետ գործակից են և ուրիշները, որոնք նշմարում են մեր դիտած առարկաները. սակայն, երազումն էլ մեզ հետ գործակից են ուրիշները, որոնք նշմարում ու դիտում են մեր նշմարածն ու տեսածը:

Միթէ չե՞նք երազում երբեմն որ խմբովին դիտում ենք մի որ և է ներկայացում, կամ խօսում ենք մի բարեկամի հետ. փոխանակում ենք մեր տպաւորութիւնները և միմեանց լսում ու հասկանում ենք կատարելապէս: Այստեղ էլ երազի և արթնութեան մէջ մի տարբերութիւն չկայ. այլ բացարձակ նոյնանման ներքին դրութիւնը, զգացութիւնը, հաւատը կատարելապէս նոյնն է. երազողը տեսնում, հաւատում և իրան հաղորդակից է զգում ուրիշների հետ, ինչպէս արթունը տեսնում և հաւատում է իր նմաններին:- Միայն զարթնելով մենք զգում ենք մեր մոլորութիւնը. ինչ վնաս, դա չէր խանգարում, որ մենք կատարելապէս հաւատայինք մեր տեսածին երազում:- Այս է կարևորը: Որովհետև, այս ամենից յետոյ, մի՞թէ ես վստահ եմ, որ մի քանի օրից յետոյ չեմ վերարթնանայ (reveiler) այն դրութիւնից որ հիմա արթնութիւն եմ կանչում: Եւ դորանից յետոյ, ո՞վ գիտէ, չե՞մ ասի, թէ մեկուսի երազում էի:

Պէտք է նկատել, որ վկաների համաձայնութիւնը երազը իրականից տարբերելու համար, մի վճռական նշան չէ՛: Յայտնի են հաւաքական զառանցանքի դէպքեր:

Գանք հիմա մի աւելի կարևոր տարբերութեան, որը հիմնովին պարունակելով բոլոր մնացեալները, երազը էապէս որոշելու յատկութիւնն ունի. դա նորա անկապութիւնը, խառնակութիւնը, անկարգ և անտևական լինելն է:

Երազում պատկերները միմեանց յաջորդում են առանց կապի, ո՛չ մի օրէնքի չեն ենթարկւում նրանք, երևակայութիւնը սահման և օրէնք չ՛ունի, իրերի բնական կարգը այստեղ խափանուած է լիովին: Մենք սլանում ենք մի երկրից միւսը. մանկութիւնից դառնում ենք ծեր վայրկենապէս. պատճառները ամենաատարօրինակ հետևանքներ են ունենում այստեղ: Մտածութեան ամենակարևոր օրէնքները այստեղ

անընդհատ բռնադատւում են. առաջ են գալիս երևոյթներ առանց որ և է պատճառի, ձևափոխւում աներևոյթանում և կրկին երևում կախարդական կերպով: Ամենաանմիտ բանն անգամ այստեղ իրական է և «ընդդիմակադրութեան» որպէս նաև այլ սկզբունքները այստեղ այլ ևս հաշուի չեն առնւում. մարդ միևնոյն ժամանակ մի՛ և մի այլ տեղումն է. մի անձը միևնոյն ժամանակ ինքն է և մի ուրիշը. մարդ այնպիսի խօսքեր է ասում, այնպիսի բաներ է կարդում, որոնց կապը գտնելը անկարելի է լինում զարթնելուց յետոյ, այնքան նորանք հեռու են տրամաբանութիւնից և զառանցական:

Մի հմուտ հոգեբան, Մ. Դելբէօֆը, կարողացաւ գրի առնել երազում կարդացած գրքի վերջին նախադասութիւնը, որ գեղեցիկ բառերի մի անմիտ հաւաքածու է. «L՛homme eleve par la femme et separe par les aberrations pousse le faits degages par l՛analyse de la nature tertiaire dans la voie duprogres»:

Այս է ակներև արմատական տարբերութիւնը. երազը անկապ է. ընդհակառակը, իրականութիւնը - խելացի-տրամաբանական: Արդեօք այս որոշումը նախորդներից աւելի ճի՞շտ է. մենք կասկածում ենք: Հարկաւոր է յիշել, որ կան երազներ, ի հարկէ բաւական հազւագիւտ, ուր ամեն բան ընթանում է մի բնական և կանոնաւոր հետևականութեամբ. և ընդհակառակը, իրականութիւնն էլ երբեմն անհետևականութիւն ու կապրիզներ ունի: Բայց լաւ է, որ էականից չհեռանանք:

Ինձ թւում է սակայն, որ երազի անկապութիւնը և իրականութեան հետևականութիւնը, որ հակադրում են միմեանց, երևոյթական է միայն. երազը մեզ անկապ, անկարգ է թւում. բայց միայն արթուն ժամանակ. և սա է ամենակարևորը, որ շարունակ անուշադիր է թողնւում: Երազելիս ինչ որ մենք տեսնում ենք, երևում է մեզ պարզ, բնական, կանոնաւոր. մեզ բոլորովին չի՛ զարմացնում մեր տեսածը, մենք գտնում ենք բոլորովին բնական այն, որ մենք միևնոյն ժամանակ թէ՛ այս և թէ մի այլ երկրումն ենք, և մեզ համար միանգամայն հասկանալի է, որ մի անձ կարող է ձևափոխուելով դառնալ մի ուրիշ. մեր խօսած ճառը, որ ամենաանմիտ բանն է արթնութեան ժամանակ, յաճախ մեզ թւում է հիանալի, մենք ինքներս զարմացած ենք մնում մեր ոգևորութեան, մեր ճարտարախօսութեան և հմտութեան վրայ:

Մենք ուրախանում ենք, որ այդպէս ճարտարութեամբ և հմտութե-

ամբ կարողանում ենք շարայարել մեր գաղափարները. մեր խօսածը անսահման համոզիչ է: Գուցէ երազումն է միայն, որ մենք հասնում ենք բարձրագոյն համոզումը զգալու հաւանականութեանը: Վերևի նախադասութիւնը, որ պ. Delboeuf-ը կարողացել էր փրկել, նրան թւում էր արևի պէս պայծառ. երազում, ի հարկէ:

Այս ամենը երազում կատարւում է ճիշտ այնպէս, ինչպէս իրականութեան մէջ: Արթուն ժամանակ երևոյթները, եթէ մի կողմ թողնենք բացառութիւնները, մեզ թւում են պարզ ու կանոնաւոր. երազումն էլ, նրանք մեզ թւում են բնական ու կանոնաւոր: Զարթնելուց յետոյ, ի հարկէ, դրանք մեզ անմիտ են թւում. ի՞նչ անենք. դրանք անմիտ են միայն համեմատութիւնից յետոյ. արթուն մարդու տեսակէտով միայն, որ քնած մարդու տեսակէտը չէ՛: Ո՞վ կ՛ասի թէ մենք մի օր վերստին չենք զարթնի այն դրութիւնից, որ հիմա մենք արթնութիւն ենք կոչում և այն ժամանակ մենք անմիտ չենք համարի այն երևոյթները, որոնք մենք հիմա խելացի և իրական ենք համարում: Ո՞վ կ՛ասի, որ մենք մի օր պիտի չսթափւինք, տեսնելով որ մենք հաւատացել ենք ծիծաղելի ֆանտոմների և միանգամայն անհաւանական ճշմարտութիւնների:

Մնում է, որ քննենք չորրորդ տարբերութիւնը: Իրական կեանքը, ասում են, շարունակ տևական է, մինչ երազը շարունակութիւն չունի. մինը չի կապւում միւսի հետ: Իմ օրերի ընթացքը կազմում է մի կեանք, որ ինքն իրան շարունակում, ինքն իրան ապրում է. այսօրւայ իմ կեանքը երեկւանի շարունակութիւնն է և վաղւանը, այսօրւանի: Ես վաղը առաջ եմ գնում ճիշտ այն կէտից, ուր կանգ էի առել երեկոյեան. ես ինձ վերստին գտնում եմ միևնոյն միջավայրում, զբաղւած նոյն մտքերով, միևնոյն հոգսերին ենթակայ, միևնոյն երևոյթների մէջ. սա միևնոյն թելն է, որ վերանորոգւում է ամեն առաւօտ: Մինչ, ասում են, երազը ինքն իրան շարունակող մի գոյական չէ՛, մի գիշերւայ երազը չի՛ կապւում յաջորդի կամ նախորդի հետ: Այս գիշեր քնելով, ես համարեա հաւատացած եմ, որ տեսնելու չեմ երեկւայ երազած դաշտավայրը, ոչ անձերը, ոչ էլ երեկւայ դէպքերը. դա գուցէ մի դիւական կոշմար կը լինի, որ պիտի յաջորդէ մի գեղեցիկ ռոմանի: Կա՛րճ, պակաս է կապը ոչ միայն մի երազի, այլ և զանազան յաջորդող երազների մէջ: Ի՞նչ կարելի էր ասել այս կէտի մասին. ըստ իս, սա էլ միւսներից

կարևոր չէ՛: Ե՞րբ է, որ մենք մտածում ենք երազների անշարունակ և անկապ լինելու մասին. երազելի՞ս: Ո՛չ երբէ՛ք: Երազի ընթացքում ինձ թւում է, որ ես շարունակում եմ ինքս ինձ, ես մնում եմ շարունակ նոյնը. ես ո՛չ մի տպաւորութիւն չ՛ունիմ, թէ այս երազը իրանից անկախ և իրանից անկապ նախորդներ է ունեցել. ընդհակառակը, ճիշտ իրականի նման, ես այն տպաւորութիւնն եմ ստանում, որ երևոյթները անվերջ շարունակութիւն են իրենք իրենց, նրանք անընդհատ առաջ են գնում, անընդհատ փոփոխւում են: Այստեղ էլ ո՛չ թէ տարբերութիւն, այլ մի նմանութիւն աւելի կայ երազի և իրականութեան մէջ: Այստեղ թէ այնտեղ, միևնոյն տևականութիւն ու միութիւնն է: Զարթնելուց յետոյ, անշուշտ, պատկերը փոխւում է, մեր երազները թւում են մեզ անկախ ու միմեանցից կապ չունեցող: Սակայն, համոզւա՞ծ ենք, արդեօք, որ մի քանի օրից մենք վերստին չենք զարթնի և այսօրւայ արթնութիւնն ու մեր կեանքի երևոյթական կապը չի՛ թւայ մեզ արդեօք անկապ, անտևական և հատուկտոր:

Մնացեալ բոլոր տարբերութիւնները, որոնք պնդում են հոգեբանները, շոգիանում են ինքնին: Մէն դը Բիրոնը, օրինակ, հաւատարիմ մնալով իր սիստեմին, կամքի մէջ է տեսնում արթնութիւնն ու երազը բնորոշող տարրը: Նրա ասելով, երազի բնորոշ կողմը, այն է կամքը, կամ այլ կերպ ասենք, ուշադրութիւնը բացակայ է երազի մէջից: Մենք հաւատում ենք երազում տեսածին, որքան էլ դա արտակարգ լինի, որովհետև կամաւոր ուշադրութիւնը պակաս է այդտեղ: Այդ պատճառով ահա երազի մի մասը մենք չենք կարողանում համեմատել նորա միւս մասի հետ, որ մեզ պիտի ապացուցանէր նորա անկապ և սխալ լինելը: «Քունը հեռու է վանում ուշադրութեան գործունէութիւնը ամբողջովին: Այս է անտարակոյս երազների մեծ մասի տարօրինակութեան պատճառը: Արդ ամեն ինչ խօսում է այն բանի օգտին, որ այդպիսի դրութեան մէջ է, որ կամակոր ուշադրութիւնն ու յիշողութիւնը կատարելապէս բացակայում են տեսածի մասերը համեմատելու միմեանց և իրականութեան հետ»[1]:

1. M. de Biron. Nouvelles considerations sur le sommeil. Ed. Gousin, հատոր II, էջ 239:

Նշանակենք այստեղ արդէն վերևը յիշած պատրանքը:- Այո՛, անտարակոյս, արթուն՝ ես գտնում եմ, որ քնելիս կամքս բացակայ էր: Մինչ հէնց երազում ես այն տպաւորութիւնն ունիմ, որ ես իմ կամքից բղխող գործեր եմ կատարում, որ ես ազատում, վճռում եմ, որ ես ուշադիր, մտածող եմ, որ ես համեմատում եմ: Նոյնը կարելի է ասել երազների անբարոյական լինելու մասին, որ երևան են հանում մի քանի հեղինակներ, մասնաւորապէս Ռադէշտոք[1]: Այո, անշուշտ, արթուն՝ մենք գտնում ենք, որ քնած ժամանակ մենք մի յանդուգն «անբարոյականութեան» մէջ էինք, բայց քնի ընթացքում մեր գաղափարներն ու զգացումները միանգամայն բարոյական էին. մենք ունենք խղճի խայթ, հոգածութիւն, արհամարհանք, արժանաւորութիւն... ճիշտ ինչպէս արթուն ժամանակ, և միայն զարթնելուց յետոյ ենք իմանում այդ զգացումների տարօրինակ դասաւորութիւնը: Նոյնը կ՛ասեմ և «ժամանակի ռիթմի» փոփոխութեան մասին, որ զարմացնում է բոլոր հոգեբաններին: Այո՛, ժամանակի շարունակութեան ռիթմը փոխուած է երևում, մեզ թւում է, որ մի քանի րոպէում, կամ մի քանի ժամում, քնած՝ ապրել ենք երկար տարիներ: Բայց դա էլ, դարձեալ մի այլ չափով, որ մենք կատարում ենք արթուն ժամանակ, համեմատ կեանքի սովորական չափերի, որով մենք որոշում ենք երազում տեսածը իրական անցքերի հետ: Երազի զանազան պատկերների մէջ մենք երևակայում ենք միջին անցքեր, որոնք սովորական կեանքում անհրաժեշտ էին և որոնք պահանջում են երկար ժամանակ[2]: Նոյնը կարելի էր ասել անձի և մասնաւորապէս բնոյթի փոփոխման մասին, որ առաջանում է երազում: Սակայն, այստեղ մի աւելի լաւ բան կայ հաստատելու: Ես կը հարցնէի, երազում արդեօք փոփոխւում է մեր բնոյթը, թէ ընդհակառակը նա երևան է գալիս լրացած հէնց ինքն իրմով. մի քիչ աւելի մերկացած, աւելի խիստ, քան արթուն ժամանակ:

Ես յաճախ զարմացած եմ մնացել, թէ ինչպէս երազը մերկացնում և վերականգնում է մարդու բնոյթը. այն պակասութիւնը, այն թուլու-

1. P. Radestock. Schlaf und Traum. Leipzig, 1879.

2. Երազը կատարելապէս համեմատելի է թատերական ներկայացման հետ, ուր նոյնպէս վերացուած է ժամանակի երկարութիւնը, որը, սակայն, մեզ գործողութեան ընթացքում թւում է բնական և իրական մինչ այն աստիճան, որ մենք ցաւում, կամ լաց ենք լինում սիրած հերոսների հետ:- Ծ. Թ.:

թիւնը, որ մարդ չի խոստովանում արթուն ժամանակ, երևան են գալիս մի զարմանալի պարզութեամբ. մարդ ենթարկւում է այն փորձանքներին, որոնցից նա փախչում է իրականութեան մէջ, որոնք սակայն հաճելի են նրան.- թուլութիւնները, որոնք պարունակւում են մեր հոգու խորքում, լոյս աշխարհ են գալիս, խուլ ցանկութիւնները գլուխ են բարձրացնում, մթին սէրը փայլում է, գաղտնի կիրքը բռնկւում է. և մի դրամայի պէս առաջանում են երևոյթներ, որոնք պատառում են վարագոյրը մեր ներքին էակը ծածկող: Եւ յաճախ, զարթնելով մարդ ասում է ինքն իրան. «ճիշտ է, այդ պարագաներում, այդպէս է, որ կը վարուէի.- ես այդ երբէք չեմ մտածել, դորանով ես չեմ հպարտանում, բայց դա ճիշտ է»:- Ամենք ոք, ով ինքն իր հետ անկեղծ է, ես համոզւած եմ, նոյն տպաւորութիւնը պիտի ունեցած լինի: Մարդ այդպէս չէ՛ եղել, սակայն, մարդ կարող էր այդպէս լինել:

II

Ընդհանրապէս, երազի և արթնութեան մէջ երկու էական կէտ կայ տարբերող, որոնց արժէքն էլ դեռ կարօտ է գնահատութեան: Առաջին՝ արթուն ժամանակ ես գիտեմ, որ կայ և մի դրութիւն, որ ես երազ եմ անւանում: Ընդհակառակը, երազում, ես բոլորովին գաղափար չունեմ, որ կայ նաև մի այլ դրութիւն, որ կոչւում է արթնութիւն: Արթուն ժամանակ ես գիտեմ, որ երազել եմ, որ իմ գլխով, քնած ժամանակ, անց են կացել այն ցնորական դէպքերը, որ ես երազ եմ ասում, որից ես դուրս եմ եկել իրական կեանքը մտնելու համար, որը կատարելապէս որոշւում է երազից և բաժան է նրանից: Ես մի դրութեան մէջ եմ, որ կոչւում է «առաջին». ես գիտեմ, որ գոյութիւն ունի և մի «երկրորդ դրութիւն» և հէնց այս է կարևորը, որ ես այդ դրութիւնները համեմատել եմ կարողանում և մինը գտնում անմիտ միւսի վերաբերմամբ: Երազում, ընդհակառակը, ես «միւս դրութեան» մասին տեղեկութիւն չունիմ, որից ես դուրս եմ եկել և ուր կրկին վերադառնալու եմ. ես չեմ զգում, որ կայ մի այլ գոյութիւն արմատապէս բաժանւած: Ես երբէք չեմ համեմատում երազիս պատկերները իրական աշխարհում տեսածներիս հետ, որովհետև ես երազում մոռանում եմ իրական աշխարհը: Եթէ ես համեմա-

տել կարենայի, զուցէ իրականը զտնէի անմիտ երազի վերաբերմամբ: Բայց ես այդ չեմ անում, ես չգիտեմ, որ զտնւում եմ երկրորդ դրութեան մէջ: Ինձ այնպէս է թւում, որ ես շարունակ ապրել եմ այս կեանքով, որ ինձ այսքան բնական է թւում: Ճիշտ է, երբեմն երազելիս ես հարց եմ տալիս ինձ. չե՞մ երազում արդեօք. բայց դա զուտ բառական է միայն: Այդ խօսքերը ինձ համար դատարկ բառեր են առանց ներքին արժէքի. իրապէս ես չեմ զանազանում երկու դրութիւնը, և շարունակ ինքս ինձ կրկնում եմ, որ տեսածս երազ չէ՛, այլ զուտ իրականութիւն: Արթունը ճանաչում է երազ, երազը չի՛ ճանաչում արթնութիւն:

Ահա և երկրորդ տարբերութիւնը. սա բոլորից պարզը, ամենից աւելի աչքի զարնողը, և ամբողջովին առած միակ ճշմարիտն է, քանի որ նախորդն էլ պարունակւում է սրա մէջ. քնից մարդ զարթնում է, իսկ արթնութիւնից մարդ չի վերարթնանում: Ակներև այս է իսկական պատճառը, որ առհասարակ երազն ու իրականութիւնը իրար հակադրւում են: Այս պատճառով ահա, իրականութիւնը մենք ընդունում ենք լրջօրէն, իսկ երազը ոչ, որովհետև երազից յետոյ մարդ զարթնում է և ապա արթուն, այսինքն մեր տեսակէտը փոխելով, ժպտում ենք երազի վրայ, որից մենք դուրս ենք եկել, մնում ենք զարմացած, որ հաւատալ ենք կարողացել մեր տեսածին, այնքան տանջուել, կամ այնչափ խորապէս ուրախացել ենք: Եւ միայն այս վայրկեանից դատելով արթուն մարդու տեսակէտով, արթուն մարդու բանականութեամբ, արթուն մարդու սկզբունքներով, երազը մեզ անմիտ է թւում: Այս վայրկեանից ահա, մենք երազը համարում ենք անկապ և անհետևական, որ մենք տարբեր երազների մէջ շարունակութիւն և հետևում չենք տեսնում: Ընդհակառակը, իրականապէս և մարդկութեան նորմալ դրութեան մէջ մենք երբէ՛ք վերստին չենք զարթնում այն դրութիւնից, որ կոչւում է արթնութիւն: Մենք երբէք չենք լինում մի այլ դրութեան մէջ, որտեղից կարենայինք դատել իրականութեան մասին, իբրև աւելի հեռուից և աւելի բարձրից, ինչպէս որ ինքն է դատում երազի մասին: Եթէ մի երազ տևէր ամբողջ կեանքի ընթացքում մենք իսկի գաղափար էլ չէինք ունենայ, որ խաբուած ենք. իրականութիւնը ճիշտ այն երազի պէս է, որը պիտի տևէր մեր ամբողջ կեանքի ընթացքում:

Այս երկու տարբերութիւնները իրական են: Բայց արդեօք դրանք կարևոր և արմատակա՞ն են: Դրանք բացատրում են տիրող հասարակ կարծիքը, բայց արդարացի՞ է արդեօք այդ կարծիքը: Արդարև, մենք տեսնում ենք, թէ ի՞նչու են հակադրւում երազն ու իրականութիւնը, բայց արդարացի՞ է այդ հակադրութիւնը: Մինչ երազում ես մոռանում եմ արթնութիւնը, արթուն՝ ես գիտեմ երազի գոյութիւնը: Սա արդեօք այս երկու դրութեան տարասեռութեան[1] մի ակներև նշա՞ն է: Չեմ կարծում: Ակներև սա մի նշան է, որ դրանք զանազանւում են «աստիճանով» (քանակով) բայց ոչ «բնութեամբ» (որակով): Հիպնոզած անձերի հետ այդպիսի դէպքեր յաճախ է պատահում. մարդ նրանց ընկղմում է քնէածութեան մի յայտնի դրութեան մէջ, որ կոչւում է «երկրորդ դրութիւն»[2], ապա վերցնելով այդ «երկրորդ դրութիւնը» նորից հիպնոզում են, որպէս թէ նա արթուն լինէր, և այդպիսով հիպնոզած անձը մտնում է մի նոր քնէած դրութեան մէջ, որ կոչւում է «երրորդ դրութիւն»: Եւ ի՞նչ է առաջանում. այն, որ այդ անձը, 3-րդ դրութեան մէջ յիշում է «երկրորդ դրութիւնը», այն ինչ, այս վերջինի մէջ, գաղափար անգամ չունի «3-րդ դրութեան» մասին: «Լուցիա 3»-ը կատարելապէս յիշում է նոյնպէս նախորդ քնէածութեան դէպքերը և այն ամենը, որ կարող էր Լուցիա 2-ը ասել: Այն ինչ, նոյն Լուցիա 2-ը, չի կարող ինձ ասել այն դէպքերը, որ անցել են Լուցիա 3-ի գլխով:

Այսպէս՝ քնէածութեան միմեանց հետևող երկու դրութեան մէջ նոյն տարբերութիւնը կայ, ինչ որ երազի և արթնութեան մէջ: Երազը մոռանում է իրականութիւնը, որպէս 2 դրութիւնը մոռանում է 3-ը: Արթնութիւնը ճանաչում է երազի գոյութիւնը, որպէս «3 դրութիւնը» ճանաչում է «2-ը». «2 և 3 դրութիւնը» չէ՞ որ միևնոյն անձի երկու դրութիւնն են: Ուրեմն, հաւանական է, որ երազն ու իրականութիւնն էլ միևնոյն անձի երկու դրութիւնը լինեն:

Ի՞նչ արժէք ունի արդեօք երկրորդ տարբերութիւնը: Ասացինք, որ նա շա՛տ հեշտ է, նա միակն է, որ ակներև է և՛ հասարակ մտքի, և՛ ճիշտ մտածողի համար: Մինի կողմը զարթնել կայ, միւսի կողմը ո՛չ: Բայց մի՞-թէ սա մի արմատական և վճռական տարբերութիւն է, թէ վերանցիկ

1. heterogene - տարասեռ, homogene - համասեռ:

2. «l՛etat 2»:

(superficielle) ու ժամանակաւոր: Այո, ճիշտ է, որ «իրականութիւնից» զարթնիլ չի՛ կարելի. չկայ մի երրորդ դրութիւն, որտեղից «իրականութիւնը» երևայ ցնորական և անհետևական. չկայ մի երրորդ դրութիւն, որ իրականութեանը վերաբերւէր այնպէս, ինչպէս վերջինս երազին: Այս ճիշտ է. բայց միմիայն ներկայումս և մարդկութեան սովորական պայմաններում: Այս երկու կէտի վրայ ևս կ՛ուզի մի քիչ երկար կանգ առնել:

Նախ և առաջ, սա ճշմարիտ է միայն ներկայումս: Հարկաւ, կարելի է, որ արթնութիւնից մի նոր արթնութիւն առաջանայ: Կարելի է, որ մի օր մենք դուրս գանք այն դրութիւնից, որ այսօր արթնութիւն ենք անւանում: Կարելի է, որ մենք մտնենք մի նոր դրութեան մէջ, որ արթնութեան համար նոյնը պիտի լինի, ինչ որ վերջինս երազի համար: Հիպնոտիզմի լեզուն խօսելով, կարելի է, որ բացի 1 և 2 դրութիւնից կայ և մի 3 դրութիւն: Կարելի է օրինակ, որ մահը այդ արթնութիւնը լինի և մենք շատ չենք չափազանցում, եթէ աւելացնենք, որ դա է համարեա բոլոր կրօնների հիմքը: Կարելի է, որ այդպէս զարթնելով, միանգամայն զարմանանք, որ մենք կատարելապէս հաւատ ենք ընծայել մեր զգայարանների աշխարհին, անցողականն ընդունելով հաստատ ու որոշ, ցնորականն համարելով եզակի և բացարձակ, ժամանակաւոր գոյութիւնն ընդունելով միակ ճշմարիտ գոյականի տեղ: Եւ վերջապէս կարելի է, որ այդ օրը մեզ թւայ թէ, մեր ամբողջ կեանքը մի երազ էր, չենք ուզում ասել ամբողջովին խաբւած մի քիմերայից, այլ, ինչպէս վարը ցոյց կը տանք, պարզապէս անցողականն ընդունելով իրականի տեղ: Այդ ապագան հաստատ չէ՛, բայց կարելի բան է և հէնց այդ պատճառով մենք իրաւունք չ՛ունինք արմատաբար իրար հակադրել երազն ու արթնութիւնը, համարել մինը սխալ, միւսը ուղիղ, հիմնւելով միմիայն մեր զգայարանների վրայ:

Եւ ապա, այդ ամենը ճիշտ է միայն մարդկութեան միջակ - սովորական մասի համար.- ինձ թւում է, որ հէնց ներկայում, մի կարգ մարդոց համար գոյութիւն ունի մի կիսարթուն դրութիւն, որոշ մարդիկ, եթէ չեն էլ հասնում, գէթ մօտենում են այդ երրորդ դրութեանը, ուր կեանքը քնի պէս է երևում: Այս կիսարթնութիւնը ես գտնում եմ յատկապէս գիտութեան, մետաֆիզիկայի և կրօնի մէջ. և ի՞նչ է գիտութիւնը, չէ՞ որ նա առաջ է բերում մի բոլորովին նոր, զգայարանականից բոլորովին տարբեր աշխարհ:

Այնտեղ, ուր մենք լոյս և գոյն ենք տեսնում, նա հաւատացնում է, որ դա անտեսանելի եթերն է վայրկեանում 4-ից 700 տրիլլիօն տատանում ունեցող: Այնտեղ ուր մենք մի ձայն ենք լսում, բարձր կամ ցածր, սուր կամ բութ, նա պնդում է, որ դա նիւթի շարժումն է միայն, աւելի կամ պակաս արագ: Այնտեղ ուր մենք տեսնում ենք տարբեր, բազմաթիւ և խառնակ երևոյթներ, նա մեզ ցոյց է տալիս մի հատիկ երևոյթ. շարժումը: Արդ՝ այս չի նշանակում, ինչպէս շատերն են կարծում, թէ լոյսը, գոյնը, ձայնը գոյութիւն չունին, բայց նա առսակաւը նշանակում է, որ այլ բաներ էլ կան, որ եթէ մենք ունենայինք նոր զգայարաններ, մեր առաջ կը բացւէր մի նոր տիեզերք, որ մենք կը տեսնէինք ո՛չ միայն կարմիր գոյնը, այլ և 400 տրիլլիօն տատանումը վայրկեանում: Այս չի՞ նշանակում, որ գիտնականը կիսով չափ զարթնել է և կիսով չափ մուտ գործել մի նոր բարձր իրականութեան մէջ, ուր ամեն բան տարբեր է սովորականից[1]: Մետաֆիզիկան է՛լ աւելի մի նոր արթնութիւն է: Մի իսկական «դոգմատիք» մետաֆիզիկոս, որ կատարելապէս հաւատում է իր վարդապետութեանը,- օրինակ Պլատոնը, կամ Սպինոզան, մի նոր աշխարհում ապրող մարդ է, որը հեռու քաշւած, դիտում է կարծեցեալ «իրականութիւնը», որի մէջ մենք մնացել ենք խորասուզւած: Ի՞նչ է իսկապէս մետաֆիզիկայի պնդածը: Մի քանիսի համար իսկապէս գոյութիւն ունեցողը, անվերջ դատարկութեան մէջ ատոմների յաւիտենական անձրևն է. բոլոր մնացեալը երևոյթական է, որովհետև «բոլոր մնացեալը» այն բնութիւնն է, որ մեզ

1. Եւ միայն գիտնականը չէ՛, որ ուղղում է իր զգայարանների սխալը, ամեն մարդ, ամեն օր ուղղում է իր սխալը. մի ուղիղ ալլէյի կամ փողոցի ծայրին կանգնած՝ մենք նկատում ենք որ նրանց ծայրը հետզհետէ մօտենալով միանում դառնում են մի կէտ. սակայն մենք ամենօրեայ փորձից գիտենք, որ զուգահեռ գծերը երբէք չեն միանում. մեր առաջ դրած փոքրիկ լամպը ծածկում է դիմացի ահագին պատը, բայց մենք գիտենք, որ դա պատրանք է միայն: Անդամատութեան կամ մի դժբաղդ դէպքի շնորհիւ կորցրած անդամի տեղը հիւանդը ցաւ է զգում, մրսում է նրա ոտը, կամ քոր է գալիս, այն ոտը, որը վաղուց արդէն գոյութիւն չունի: Այդ պատրանքը հասնում է կատարելութեան վէպերի կամ մանաւանդ թատրոնի մէջ, ուր մենք բաց աչքերով կատարեալ գիտակցութեամբ հաւատում ենք, լաց ենք լինում, բարկանում կամ ուրախանում ենք մեր սիրած հերոսների հետ, շարունակ գիտենալով նրանց արհեստական լինելը: Մեր զգայարաններից դուրս չկայ այլ աշխարհ:- Ծան. Թ.:

ներկայանում է մեր զգայարանների միջոցով: Այլոց համար իրապէս գոյութիւն ունին միայն աննիւթ ուժերը, հոգիներ, կամ գիտակցութիւններ. մնացեալը, մարմինների աշխարհն է, որոնց հետ մենք այսպէս ամուր կապւած ենք: Կարճ, իրականութիւնը երազ էր, որից «spiritualist»-ը մեզ արթնացնում է: Ուրիշների համար էլ վերջապէս, ինչ որ իսկապէս կայ, դա մի էակ է միայն. մնացեալը երևոյթական է, որովհետև բոլոր մնացեալը անհատականների բազմութիւնն է, իրերի և առարկաների յոգնակին: Կարճ, անհատի կեանքը, բազմութեան կեանքը, մի երազ էր, որից մեզ զարթեցնում է «պանթէիստը»: Մի խօսքով բոլոր մետաֆիզիկների, ինչպէս և Պլատոնի համար, ինչ որ հասարակ մահկանացուն համարում է իրական, ստւերների մի շարժում է մի քարանձաւի խորքում: Իսկական իրականը, իսկական արևը, այլ տեղ է. և իմաստունը տեսնում է արդէն այդ արևը կիսով չափ ազատւած. այսինքն կիսով չափ զարթնած:

Կրօնն էլ ի մասնաւորի մի վերարթնացում է (reveil). ի՞նչ է մտածում իսկական հաւատացողը: Որ ներկայի կեանքը ժամանակաւոր է միայն, փորձանքի և նեղութեան կեանք, դա իսկական կեանքի նախերգն է միայն. որ, եթէ այս կեանքը իրական է, այնուամենայնիւ կայ մի աւելի բարձր իրականութիւն, որ ընտրեալները տեսել են և որ մենք կարող ենք նախզգալ: Այն մարդը, որի հաւատը բորբոք և խորն է, համարեա՛ արդէն բարձրացած, վեր է հասարակ կեանքից. նա կտրւած է ժամանակից, նա արդէն մուտ է գործում յաւիտենութեան մէջ. ներկայի տանջանքը նրան թւում է երազի տանջանք. զգայարանների օրանցիկ ուրախութիւնները նրան չեն դիպչում. մեր աչքին երևող տիեզերքը շոգիանում է այն բանի առաջ, որ նա սկսում է տեսնել. նա հետզհետէ դուրս է գալիս այն քնից, որ տեղից դուրս գալու զուր փորձեր են անում մարդիկ դեռ վաղուց, և նա սկսում է ճանաչել իր անձն ու իր շրջակայքը: Ինչ է մի սրբի կամ մի մարտիրոսի հոգին, չէ՞ որ նա երկրային երազանքից որոշապէս վերարթնացած հոգի է:

Մեր անալիզի արդիւնքից անշուշտ, պէտք չէ ետ փախչել: Եթէ մենք «իրականութեան» մէջ ոչինչ չգտանք, որով նա արմատապէս որոշւէր երազից, այդտեղ ո՛չ սարսափելի, ոչ էլ զարմանալի բան կայ: Մենք այդտեղ հանդիպում ենք կրօնական և մետաֆիզիկական ամե-

նամեծ վարդապետութիւններին: Եթէ ոչ թւում է մի որոշ չափով, թէ մենք բաժանւում ենք հասարակ զգայութիւններից (sens) մենք վերստին ուրախանում ենք մեր հաւատի վրայ, որը, նոյն, «հասարակ զգայութիւնն» է, միայն աւելի տաք և աւելի մարգարէական: Բոլոր իմաստունները հաւատում են և բոլոր մտածող մարդիկ յոյս ունին, որ կեանքը երազ է միայն, իսկ մահը նորա վերարթնացումը:

Հիմա ամենամեծ հոգածութեամբ նշանակենք այն եզրակացութիւնների իսկական միտքը, որին մենք հասանք: Ո՛չ մի հիմնական տարբերութիւն չկայ երազի և իրականութեան մէջ: Ի՞նչ է նշանակում այս: Հետևո՞ւմ է արդեօք դրանից, որ իրականութիւնը երազ է, երևոյթական և քիմերիք, «երազի պէս»: Հարկաւ ոչ, այս այն կէտն է, որի վրայ մենք դեռ կանգ չենք առել:

Սովորաբար մարդ հետևեալ ձևով է դատում: Իրականութիւնն ու երազը նման են. ուրեմն իրականութիւնը երազ է: Նոյնքան բռնազբօս, սակայն աւելի խելացի է հետևեալ դատողութիւնը. իրականութիւնն ու երազը նմանում են իրար. ուրեմն երազը իրականութիւն է: Այն պնդումը, թէ արմատական տարբերութիւն չկայ երազի և իրականութեան մէջ, կարելի է բացատրել երկու, միմեանց հակառակ կերպով: Կարելի է եզրակացնել, որ «իրականութիւնը» կեղծ է, բայց նոյն օրինաւորութեամբ, կարելի է եզրափակել, որ երազը ճշմարիտ է և երազի առարկաները նոյնպէս իրական են, ինչպէս արթնութեանը, ի հարկէ, մի այլ ձևով, բայց վերջապէս իրական: Կը մնար գիտենալ, թէ ինչ մտքով առած և ինչ չափով նրանք իրական են, այդ բառի իսկական մտքով: Այն է երազելիս, երբ տեսնում ենք մի բացակայ բարեկամ և կամ մի անծանօթ դաշտավայր, իրաւ, մենք այդ դաշտավայրի կամ մեր բարեկամի դիմացն ենք կանգնած:

Սրանով մենք վերադառնում ենք այն հին հաւատին, որի կարծիքով, հոգին՝ քնած ժամանակ կտրում է տարածութիւնը: Եւ պիտի նկատենք, այս հաւատը մեր կարծածի չափ անմիտ չէ՛. որովհետև, ճիշտ խօսելով, սա մի հրաշք չէ՛, որ հոգին հաղորդակցութեան մէջ է հեռաւոր առարկաների հետ:

Այսպէս գուցէ կարելի լինէր հասկանալ նաև այն կասկածելի, բայց բազմաթիւ դէպքերը, որ «հեռազգայական զառանցք» են կոչ-

տում, նախազգացումը, գուշակութիւնները և այլն[1]: Երազած առարկաների իրական լինելը կարելի էր հասկանալ մի քիչ այլ մտքով: Կարելի էր ասել, որ մենք երազում տեսնում ենք ոչ թէ հէնց առարկաները, բայց գէթ նրանց այն ձևերը, որոնք անտեսանելի են արթուն աչքերին, բայց տեսանելի հոգու համար. յամենայն դէպս, իսկ և իսկ իրական, իսկապէս մեզանից անկախ: Այս կարծիքը համաձայն կը լինէր այն գիւտի (invention) հետ, որի մասին արդէն սկսել են խօսալ որոշ շրջաններում: «Երազների լուսանկարը»: Դա մեզ կը մօտեցնէր spirit-ների և «occulist»-ներին, որոնց վրայ, լաւ կը լինէր, որ շատ թեթևամտութեամբ չծիծաղէինք, քանի որ William Grookes և Russel Wallake-ի նման գիտնականները մեթօտիք փորձերից յետոյ հաստատում են «psychism»-ի տարօրինակ երևոյթները[2]: Վերջապէս յիշատակելու արժանին այն է, որ դա մեզ մօտեցնում է ծերունի Էպիկուրի խիստ հարցասիրական, Phantastike epibole tes dianoias, թէօրիային: Էպիկուրը սովորեցնում է, որ զգայութիւնը մեզ երբէք չի խաբում, երազում լինի մեր տեսածը թէ արթուն, ամեն ինչ իրական է. երբ մի քառակուսի աշտարակ հեռուից մեզ կլոր է երևում, դա պատրանք չէ. անցնելով տարածութիւնը, մեզ անյայտ ձևով նա իրաւ դարձել է կլոր, հեռացող (emane) ատոմները ճանապարհին փոխել են իրանց ձևն ու յարաբերութիւնը և մեր առաջ հասել կլոր դիրքով: Երազի մէջ, զգացութիւնները ու մտապատկերները աւելի ճիշտ են. ես երևակայում եմ մի բացակայ առարկայ, այն է, որ այդ առարկայից հեռացած (emane) ատոմները իրաւ կանգնած են առաջիս: Խելագարների երևակայածն էլ միևնոյն բանն է: Մեր զգայութիւնները մեզ երբէ՛ք չեն խաբում:

Հասկանալի է, այս թէօրիաներից ոչ մինը վճռապէս մենք չենք կարող ընդունել երազների իրական լինելու մասին: Մենք չենք կարծում թէ նրանից որևէ մինը կատարելապէս ճիշտ լինի. նրանք դէմ են մեր առողջ դատողութեան: Իսկ առողջ դատողութիւնը չի՛ կարելի արհամարհել, ինչքան էլ կամայական լինի այն, որ մենք առողջ դատողութիւնը ընդունում ենք բարձրագոյն ճշմարտութեան «կրիտերիում» (որովհետև մի դարու առողջ դատողութիւնը, մի այլ դարու առողջ դա-

1. Gurney, Myers, Podmore. Les hallucination telepathiques. Այդ երևոյթների մասին մենք առիթ կ՚ունենանք խօսելու «Մուրճ»-ի մէջ:

2. W. Grook. Reeherches sur les phenomenes du spiritualism.

տողութիւն չէ՛ այլ ևս), այնուամենայնիւ, մեծ անզգուշութիւն արած կը լինէինք եթէ միանգամայն անտես առնէինք այդ, կամ բռնազբօս կերպով արհամարհէինք, որովհետև նա մարդկային իմաստութեան և փորձառութեան եզրակացութիւնը՝ ամփոփումն է: Եւ դա մի կոպիտ սխալ կը լինէր միայն գերադասել մեր դատողութիւնն ու մեր տեսակէտը: Եւ այսպէս, մենք չենք ընդունում վերևի թէօրիաներից ո՛չ մինը: Մենք ուզում էինք ցոյց տալ, որ երազը այնպէս ակներև «կեղծ» չէ, ինչպէս կարծւում է սովորաբար, որ նա էլ կարող է ունենալ իր իրականութիւնը, որ մարդիկ մի քիչ շա՛տ են առաջ գնում, պնդելով, որ նա զուտ «ներքին» և քիմերական է: Առանց հերքելու «արտաքին աշխարհի գոյութիւնը», մենք հաստատեցինք, որ էական տարբերութիւն չկայ երազի և իրականութեան մէջ: Մենք պիտի ընտրութիւն անենք այս երկու կարծիքի մէջ. կա՛մ երազն է իրականութիւն, և կամ իրականութիւնն է խաբուսիկ երազ: Առաջինը մի յանդուգն եզրակացութիւն է, երկրորդը է՛լ աւելի: Առաջինը զարմացնում է հասարական զգացմունքը, երկրորդը գրգռում է նոյն զգացմունքը:

Այսպէս ուրեմն, իրաւունք ունէինք կուրօրէն չընդունելու տիրող կարծիքը երազի մասին, այն, որ մենք անմիջապէս ամփոփեցինք վերևը: Հաւանական չէ, թէ երազը մի վերարտադրութիւն, մի ցոլմունք լինի արթնութեան զգացութիւնների: Դա կարող էր, եթէ նեղը մնանք ենթադրելու, գուցէ մի տարբեր ձևի երևոյթ լինել մի իրական հանդիպումն առարկաների հետ, որ խուսափում է մեր զգայարաններից: Ես կարծում եմ մինչև անգամ, որ մի քանի տարօրինակ երազները և ֆանտաստիք կօշմարները լաւ չեն բացատրւում յիշողութեան պարզ կօմբինացիայով, այնքան մեր տեսած աշխարհը տարօրինակ և տարբեր է սովորականից:

Եթէ մեզ կասեն, որ մեր երազները անվիճելի կերպով կախուած են մեր անձնական դրութիւնից և մասնաւորապէս մեր օրգանների գործունէութիւնից, ինչպէս օրինակ մարսողութիւնն է, արեան շրջումը և այլն. մենք կը պատասխանենք. պէտք է ի նկատի առնել ինչ որ կապ ունի օրգանական դրութեան հետ, դրանք մեր երազում տեսած առարկաները չեն, դա յուզմունքն է, որ մեզ պատճառում են այդ առարկաները. արթուն, նոյն առարկաները լինելով մեզ տուած, նրանց պատճառած յուզմունքը կախումն ունի մեր ընդհանուր տրամադրութիւնից:

Երազի անկապութիւնն էլ վիճելի է: Առաջին, տեսանք, որ այդ անկապութիւնը կարող էր լոկ երեւութական լինել. նա մեր աչքին է զարնում զարթնելուց յետոյ, և իսկոյն անյայտանում քնած ժամանակ: Այդտեղ գուցէ տեսակէտը փոխելուց աւելի մի բան չկայ: Այլ և, այդ ամենը մտաւոր պարզ «զուգորդութիւնների» մեքանիզմով, կամ «երեւակայութեան» կապրիսով բացատրելու տեղ՝ լաւ չէ՞ր լինի գուցէ, եթէ բացատրէինք անտեսանելի առարկաների իրական բայց հրաշալի խաղով, որ մեզ երեւում է երազում, կամ ինչպէս Էպիկուրն էր ասում, ատոմների տարօրինակ կապակցութեամբ, որոնք շրջան են անում մեր չորս կողմը: Վերջապէս, երազի առարկաների իրական լինելը, որ բացատրում են, մտապատկերների խաղով, մտապատկերների փոխադարձ կենսամարտով, ամեն մի մտապատկերի երեւան գալով, որ չունի հակառակորդ, կարելի էր, առհարկի բացատրել զարմանալի պարզ ձեւով. այն, որ այդ առարկաները ճիշտ և իրական են:

Ահա թէ մեզ ի՞նչ է սովորեցնում մեր համեմատութիւնը երազի մասին: Արդ՝ ի՞նչ է սովորեցնում նա «իրականութեան» զգայական աշխարհի և ներկայ կեանքի մասին:

Նա մեզ սովորեցնում է որ եթէ զգայական աշխարհը իրական է, սակայն նա եզակի և վճռական իրականը չէ՛: Նա կայ, նա մեզանից անկախ է, բայց մենք ըմբռնում ենք, որ նա պիտի վերջանայ և տեղի տայ մի ուրիշին, nons le prenons toujours au serieux, nous le prenons plus au tragique: Մենք մտածում ենք վերարթնութեան մասին:

Նախ և առաջ, զգայական աշխարհը իրական է. գուցէ կարիք զգացւէր մշակել «արտաքին նշմարումի» (perception exterieure) և երազի մասին տիրող թէօրիաները:

Զգայական աշխարհի իրականութեան դէմ միակ և իսկապէս կարեւոր առարկութիւնը, որ երազի առարկութիւնն է, վերացած լինելով, կարելի էր փորձել հիմնելու մի նոր թէօրիա, ամբողջովին իրական, ամբողջովին հաւասարակ զգայութեանը բաւարարութիւն տուող: Սկզբունքով, Էպիկուրի պէս, կարելի էր ընդունել, որ ամեն մի զգայութիւն ճիշտ է, միշտ, ամեն մի դէպքում, կա՛մ նա ծագում է յարաբերութեան մէջ իրականութեան հետ. կամ նա հէնց ինքը իրականութիւնն է, հոգու միջոցով ճանաչուած:

Դրանով վերջ դրուած կը լինէր այն հոգեբանութեանը, որ այնպէս վաղահաս, դարձել է կլասսիք, որի համար զգայութիւնը մի պարզ պատկեր է «մեզանից դուրս դրուած»: Պէտք էր մի քիչ պակաս հաւատ ընծայել այս «զգայութեան յարաբերական» լինելու մասին ընդունած մեծ օրէնքին, որ թւում է բանականօրէն հիմնած, ուր սակայն իշխում է «հեղինակութիւն»-ը, քանի որ ապացոյցի ո՛չ մի լուրջ արգումենտ չունի: Մարդ կը դադարէր «երևոյթների արտաքինի» մասին վիճելուց, նկատելով, որ այդ խօսքերը բոլորովին զուրկ են մտքից և որ, այս արտայայտութիւնը, «առարկաներից դուրս» միտք ունի, «հոգուց դուրս» ո՛չ մի միտք չունի: Մարդ մի քիչ զգոյշ կը լինէր ուսուցանելու, որ գոյները, ձայնը, և ընդդիմադրութիւնը «ես-ի վիճակներն են» (etats du moi), որը բազմաթիւ մարդոց համար համարեա միակ փիլիսոփայութիւնն է: Այնուհետև կարիք չէր լինի զգայութիւնը առարկաների յայտնութիւնը համարելու, որ նրան իրաւունք է տալիս մի «սուբյեկտիւ» էակ լինելու, ծնեցնելով մի անվերջ հակասութիւն: Այնուհետև հարկ չէր լինի յայտարարելու, որ հոգին բաժանուած է առարկաներից գործարանների միջոցով, ինչպէս օրինակ՝ նեարդ, ուղեղ,- որ համարեա մի հրէշաւոր բանաձև է, քանի որ նոյն մարդիկը որ գործ են ածում այս տերմինները, վճռապէս պնդում են, «որ հոգին ո՛չ մի տեղ չի բռնում տարածութեան մէջ» և մի այլ տեղ ապացուցած են համարում, որ օրգանները, ուղեղը և նեարդները զուտ գործիքներ են միայն:

Կարճ, պէտք է նրանք համաձայնեն, որ զգայարանները ամեն բան չեն ճանաչում, բայց և պէտք է յայտարարել, որ ո՛չ մի լուրջ պատճառ չկայ կասկածելու այն քչի մասին, որ նրանք ճանաչում են: Եւ այսպէս՝ զգայարանական աշխարհն իրական է, հաստատ, անկախ մեր իմացականութիւնից: Բայց դա միակ և վերջնական իրականութիւնը չէ՛: Քանի որ արթնութիւնը ամեն բանով նման է երազին, այս կէտումն էլ նա պիտի նմանի նրան, նա էլ պիտի վերարթնութիւն ունենայ:

Մենք թւաբանօրէն չենք կարող ապացուցանել որ տեղի պիտի ունենայ վերարթնութիւն, բայց մենք կատարելապէս իրաւունք ունինք նրան սպասելու:

Ահա թէ մեզ ինչ է ուսուցանում երազի և արթնութեան համեմատութիւնը: Երազը մի իրականութիւն է, միայն թռուցիկ: Միևնոյն ժամանակ, ներկայ կեանքը իրական է, միայն ժամանակաւոր:

**«Մուրճ» «1899, N 10, էջ 1190-1199, N 11-12, էջ 1412-1423**

ԳՐԻԳՈՐ ՎԱՆՑԵԱՆ

# ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ

Մեսրոպ Թաղիադեանց, Աբովեան, Մ. Նալբանդեան, Ալիշան, Պէշիկթաշլեան, Դուրեան, Պարոնեան, Ծերենց, Նալբանդեան, Գամառ-Քաթիպա, Պռօշեան, Սունդուկեան, Րաֆֆի, Շահազիզ, Աղայեան, Շիրվանզադէ, Մուրացան, Լէօ, Աճառեան, Յ. Յովհաննիսեան, Թումանեան, Ծատուրեան, Իսահակեան, Շանթ, Կուրղինեան եւ այլն։

ՉՈՐՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Հրատարակութիւն տիկին Մ. ՎԱՆՑԵԱՆԻ

ԹԻՖԼԻՍ
Էլեքտր. տպարան «ԷՊՕԽԱ» Գանովսկայա փող. № 3.
1910

# ԱՌԱՋԱԲԱՆԻ ՏԵՂ

*Երկրորդ տպագրութեանն ահա յաջորդում է երրորդը. պահելով մի անգամ արդէն բռնած ուղղութիւնն ու ընթացքը, բարեփոխուած ու հարստացրած մենք այս հրատարակութեանն աւելացրինք բազմաթիւ յօդուածներ թէ արևմտեան և թէ մանաւանդ արևելեան գրականութիւնից։*

*Զանց չառանք նաև տալու թարգմանութիւններ, այնպէս որ այս գիրքը միայն «Հայ-հեղինակներ» չէ, այլ նաև «Հայ-թարգմանիչներ»։*

*Կենսագրութիւնների և արևելահայ գրական շարժման էութիւնն ու ամբողջութիւնը լաւ հասկանալու համար, ուսուցիչներին խորհուրդ ենք տալիս դիմել մեր «Պատմաքննական քերականութեանը»։*

*Այդ քերականութիւնը բաղկացած է երկու մասերից, մինը ուսուցիչների համար, ուր մանրօրէն մշակուած ու պարզուած են մեր լեզուի էվօլիւցիան պատմականօրէն. միւսը համառօտ՝ աշակերտների համար, որ ցանկացողը կարող է աշակերտների ձեռը տալ իբրև ձեռնարկ։*

*Արևմտեանի յօդուածներում խիստ անհասկանալի թուրքերէն բառերը փոխարինուած են հայերէն բառերով, և օժանդակ բայի 3-րդ. դէմքը՝ ա, դարձրել ենք է, մի բան, որ արդէն շատ անգամ գործադրուած է ուրիշ դասագրքերում, և կարող ենք վկայել, օգտաշատ կերպով, ինչպէս որ՝ աւելի հասկանալի լինելու համար, Եղիշէի, Ալիշանի, Փարպեցու և մի քանի այլ հատուածներ թարգմանուած են արևելեան գրաբարբառի՝ աշակերտների դիւրութեան և նիւթի հեշտ իւրացման համար։*

Գ. Վանցեան

*1908 թ. յունվ. Թիֆլիս.*

# Ա. ԱՐԵՒԵԼԵԱՆ ԲԱԺԻՆ



## 1. ՄԵՍՐՈՊ ԹԱՂԻԱԴԵԱՆՑ

*Ծնված է Երևան (Կարբի թաղում) 1803 թ. շուտով հօրից որբանալով, տանում են Էջմիածին և Ներսէսի կարգադրութեամբ յանձնում քուրդ անուանեալ Յովհաննէս վարդապետին, որ ուսուցանէ փոքրիկ Մեսրոպին։*

*Սրա աշակերտներից Մեսրոպը սովորում է կարդալ Սաղմոս, Ժամագիրք, Շարական։*

*1816 ին Էջմիածին է գալիս յայտնի հայկաբան Պօղոս վարդապետ Ղարադաղցին, որի մօտ ուրիշ գրքերի և սարկաւագների հետ սկսում է ուսանել Մեսրոպը գրաբար քերականութիւն, որ այն ժամանակ ամենաբարձր գիտութիւնն էր համարւում։ Այնուհետև Մեսրոպը պարապում է կոնդակներ գրելով և հին ձեռագրեր արտագրելով։ 1821-ին Մեսրոպին տալով դպրութեան չորս աստիճան, ձեռնադրում են սարկաւագ։ 1822-ին նա մտադրւում է գնալ Պարիզ բան սովորելու, բայց պարսից պատերազմի պատճառով փոխում է իր ճամբան և ուղևորւում Հնդկաստան, ուր մի առժամանակ ապրում է Դաքա քաղաքում Երուսաղէմի նուիրակ Աբրահամ վարդ. մօտ։ Մեսրոպի խնդիրքով այս վարդապետը միջնորդում է անգլիացի Հէբր եպիսկոպոսի մօտ, որ Մեսրոպին ընդունի իր ճեմարանի մէջ անգլիերէն սովորելու։*

*Եպիսկոպոսը սիրով յանձն է առնում և կրթութեան ծախսն էլ վերցնում է իր վրայ. այնուհետև այդ եպիսկոպոսը կանոն է հաստատում, որ երկու հայ մանուկներ*

ձրի սովորեն անգլիական հոգևոր ճեմարանում, այդ առթիւ ճեմարանի մէջ հայ տպարան էլ է հաստատում։ 1826-ին մտնելով ճեմարան Մեսրոպն այնտեղ մնաց մինչև 1830 թ. և անգլիերէնից հայերէնի թարգմանեց Դիցաբանութիւն և Պաղեստին անունով գրքերը՝ հեղինակութիւն Հիբըր եպիսկոպոսի, մէկ էջը անգլիերէն, միւսը հայերէն և տպեց 1830-ին ճեմարանի տպարանում։

1831-ին Մեսրոպը թողնելով ճեմարանը, գնում է Պարսկաստան և դառնում ուսուցիչ Նոր-Ջուղայի հայոց ուսումնարանում։ 1833 թ. կարգւում է ուսուցիչ Էջմիածնի դպրոցին և քարտուղար Յովհաննէս կաթուղիկոսի։ Սակայն, մի տարի չանցած ջուղայեցոց խնդիրքով կրկին վերադառնում է Նոր-Ջուղայ և կարգւում ուսուցիչ (1834 թ.)։ Այս տարին նա թողնելով հոգևոր կոչումն ամուսնանում է։ 1835-ին մենք նրան տեսնում ենք Թաւրիզում, որպէս ուսուցիչ արքայազն Մելիք-Ղասում Միրզայի, որին նա սովորեցնում էր անգլիերէն։ Թաւրիզում մեռնում է նրա կինը։ 1838-ին Մեսրոպը կրկին վերադառնում է Էջմիածին և այնտեղից էլ անցնում Պոլիս։ Այստեղ էլ իր անհաշտ և անհանգիստ բնոյթի շնորհիւ հազիւ է կարողանում մի տարի դիմանալ։ Որովհետև Մեսրոպը յարաբերութիւն ունէր ամերիկայի միսիոնարների հետը, կասկածուելով իբրև բողոքական նա ենթարկւում է հալածանքի և Պոլսից փախչելով կրկին ուղևորւում է Հնդկաստան. ճանապարհին գերի է ընկնում արաբաց ձեռքը, տարւում է Արվիլայ անապատը, որտեղից մի կերպ ազատուելով, կրկին ընկնում է Հնդկաստան և այստեղ գտնում Կալկաթայի անգլիական ճեմարանում (1840 թ.)։ Այստեղ նա տպում է «Պատմութիւն հին Հնդկաստանի», ամուսնանում է կրկին անգամ և թողնելով գրական զբաղմունքը սկսում է պարապել մանրավաճառութեամբ, որ ի հարկէ իր գործը չէր։ Շուտով հայ վաճառականները Մեսրոպի աջակցութեամբ միանալով հիմնում են «Արարատեան ընկերութիւնը», որի նպատակն էր լրագիր հրատարակելով բարձրացնել տեղա-

ցի հայերի մտաւոր վիճակը և ահա 1845 թ. Մեսրոպի խմբագրութեամբ սկսում է լոյս տեսնել «Ազգասէր» լրագիրը, որ ընդհատումներով տևեց մինչև 1852 թ։ Այս լրագրի լեզուն նախ աշխարհաբար էր, ապա դարձաւ գրաբար, որովհետև Հնդկաստանի հայերը չէին համակրում աշխարհաբարին։—Այսպիսով Թաղիադեանը աշխարհաբարի առաջին հիմնադիրներից մինն է։

Լրագրի դադարումից յետոյ Մեսրոպը տեղափոխւում է Ջեզրա քաղաքը. շուտով մեռնում է նրա երկրորդ կինը և Մեսրոպը կամենալով կրկին վերադառնալ Նոր-Ջուղայ, մեռնում է 1858-իր յունիսի 10-ին Շիրազում, ուր և թաղւում է հայոց եկեղեցու բակում։

Մեսրոպի գլխաւոր գործերն են.

1. Դիցաբանութիւն.
2. Պաղեստին.
3. Պատմութիւն հին Հնդկաստանի.
4. Ազգասէր լրագիր 1845—1852 թ.
5. Պատմութիւն պարսից.
6. Վէպ Վարդգէսի.
7. Վէպ Վարսենկան.
8. Սոս եւ Սօնդիպի և այլն. Նրա գրուածների գրլուխ գործոցն է այս վերջինը, ուր հայ իշխանազուն Սօսը սիրահարւում է հնդիկ իշխանուհի Սօնդիպուն. գրուած է բանաստեղծական մեծ տաղանդով և մի սքանչելի լեզուով։

Նրա գրաբար գործերը կեղծ կլասիկ ուղղութեամբ են գրուած, ուր սովորական հերոսների հետ հանդէս են գալիս աստուածներ և բաղդը, որպէս իրական անձեր, և այս կամ այն կերպ տնօրինում հերոսի վիճակը։ Այդ գործերի մէջ բացի բանաստեղծական խոշոր տաղանդից երևում է նրա խորին հմտութիւնը գրաբարի մէջ, որ այնպէս պերճ ու սահուն դուրս է ցայտում Մեսրոպի գրչից, կարծես կենդանի լեզու լինի։ Այդ գործերի մէջ երևում է նաև խորին հմտութիւնը դիցաբանութեան, արեւելեան ազգերի պատմութեան և նոյնպէս լեզուաբանու-

թեան մէջ։ Այս գիտութիւններն, ինչպէս երևում է, Մեսրոպն ուսել էր անգլիական հոգևոր դպրոցում։

Սակայն, Մեսրոպի գլխաւոր արժանիքը նրա աշխարհաբար հատուկտոր գործերն են, իր ժամանակի համար նշանաւոր լեզուի կողմից՝ որպէս ամենահին և ամենամաքուր աշխարհաբար, միւս կողմից որպէս տաղանդաւոր գործեր մի սուր, անկեղծ և մեր մէջ մի անօրինակ երգիծաբանութեամբ։ Մեսրոպի երգիծաբանութեան գլխաւոր առարկան իր իսկ անձն է, որ քննադատում ու ծաղրում է մի նախանձելի անաչառութեամբ, կարծես մի օտարական լինի։

## 2. ՆԱՄԱԿ ԵՐԵՒԱՆՑԻՆԵՐԻՆ

Աստուածասէր և ազգասէր հասարակութեան հայոց փրկեալ քաղաքին Երևանայ, սրբակրօն քահանայից, բարեծնունդ իշխանաց և համայն բարեպաշտօն ժողովրդոց, ուրախապարտ ողջոյն նուէր։

Աչքներդ լոյս, որ մեր քաղցր աշխարհքն պարսից դառն չարչարանքիցն ազատուեց, Քրիստոնի տէրութեան ներքոյ ընկաւ։ Փառք բարերարին Աստուծոյ, որ այսուհետև աւել նեղութիւն չէք ունենալու, ազատ քաղաքի քաղաքացի պիտի անուանիք, ձեր ազգասիրութեան՝ իմաստութեան լոյսն և արուեստից յառաջադիմութիւնն բոլոր աշխարհ պիտի տարածվին։

Իմ լաւ քաղաքացիք, էսպէս երջանիկ բախտի որ դուք էք պատահել, կարծեմ որ մեր նախնիքն ևս Արշակունի թագաւորութեան ժամանակումն էլ չէին պատահել, գերա թէպէտ և թագաւորութիւնն իւրանցն էր, սակայն բարբարոսութիւն և զուլումն պակաս չէր։ Ուրեմն աղաչեմ, նախ՝ աղօթքս առնէք, որ Աստուած ամենաողորմած Կայսերն Նիկողայոսի աթոռն միշտ հաստատ պահի, սուրն կտրուկ և ամեն թշնամեաց վրայ յաղթող։ Ապա՝ աղաչեցէք, որ նոյն Աստուածն մեր ազգին սէր, միաբա-

նութիւն տայ, երկար կեանք և բարի յաջողութիւն, որ կարենան ճանաչել թէ ինչ է լաւն և հեռևիլ նմին։

Մնաց որ, ես ծառայս ձեր թվին 1823-ումն սրբազնակատար կաթողիկոսի հրամանաւն Հաղբատիցն ելայ, շատ չարչարանքով հասի Հնդստուն, մին տարի պարապ գէս ու գէն ընկայ, երկրորդ տարումն Կալկաթու հայոց վարժարանումն վարպետութիւն արի, յետոյ սուրբ Երուսաղէմի նուիրակ Աբրահամ վարդապետի շնորհովն ծանօթացայ Ինգլիզի եպիսկոպոսին, որոյ անունն էր Ռիջինալդ Հիբըր. մին խիստ լաւ և ողորմած կարգաւոր, որ իւր խարճովն տվեց ինձ իւրեանց մեծ վարժատունն, և ես ներկայ Աստուծոյ ողորմութեամբ սովորում եմ լատինի, ինգլիզի, յունաց և պարսից լեզուն և այլ զանազան արհեստանի։ Վերջապէս երբ որ լսեցի ներկայ մեր աշխարհի ազատութիւնըն, սիրտս ուրախութեամբ վառվեց, փռանգ ազգաց լուսաւորութիւնն տեսնելով և մեր ազգի անլուսաւորութիւն տեսնելով, նախանձ մեծ ընկաւ հոգիս, և թէպէտ ես ոչ շատ փողատէր վարդապետ եմ և ոչ վաճառական, ոչ կարգ ունիմ, ոչ աստիճան, սակայն Աստուած՝ որ միշտ տկարաց ձեռքովն մեծ մեծ բաներ այ կատարել, վստահացնում այ ինձ իմ կարեաց գեօրայ իմ ազգիս, իմ քաղաքիս և իմ ծնող աշխարհիս պիտանի լինեմ ձեր շնորհքովն։ Բայց այս իմ պիտանութիւնս ուրիշ կերպով չէ լինելու, եթէ ոչ վարժատուն հաստատէք և մեր երեխայից միտքն լուսաւորէք։

Եւ մին խնդիր գրեցի Վրաստանու Ներսէս արքեպիսկոպոսին թէ՝ որովհետև Զորագեղի մօտի անապատն քաղաքի մէջտեղն լինելով, այսինքն Շհարի, Կոնդի և Զորագեղի միջումն, հեշտ կլինի մանկանց համար յամէն տեղաց հաւաքուիլ անդ վասն կարդալու և որովհետև բերթին, բազարին ու գետին մօտ այ, շատ յարմար եմ համարում, որ տեղն մին քաղաքական վարժատուն հաստատվի մեր ազգի լուսաւորութեան համար և Երևանայ առաջնորդի աթոռն փոխվի տանվի Կոզեռի մօտ սուրբ Զինաւոր եկեղեցին։ Նաև գրել եմ, որ եթէ սրբազանը

հաճենայ շնորհել մեզ էն տեղն, ուրեմն գրի ինձ, որ ես տեղիցս զանազան ազգի կարդալու գրքեր և տպարան, որքան իմ աղքատ զօրութիւն կը խոստանայ՝ երբեմն և գամ անձամբ աշխատեմ վասն ձեր որդւոց և իմ եղբարց լուսաւորութեան:

Արդ, իմ ազնիւ քաղաքացիք, խնդրեմ, որ գիրս ձեզ հասնելէն ի բաց շնորհ առնէք շհարցիք, կոնդեցիք, կարբեցիք և ձորագետցիքդ հաւաքվիլ նոյն անապատումն, յառաջ սուրբ քահանայիցն խնդրել որ աղօթք առնեն առ Աստուած վասն բարի յաջողութեան գործոյն, ապա էս իմ աղքատ գրութիւնս կարդացէք, խորհեցէք, եթէ ձեզ ընդունելի լինի իմ առաջադրութիւնս, ուրեմն միաբանութեամբ երկու արզի գրեցէք, մինն սրբազնակատար կաթողիկոսն և միւսն Ներսէս սրբազանին: Եւ խնդրեցէք, որ էդ տեղն ազգին ընծայ շնորհեն ձեռագրով, մոհրով և զապալայով: Եւ երբ Աստուած կատարի ձեր խնդիրքն ի բարին, շուտ ինձ մին գիր գրեցէք, կաթուղիկոսին և սրբազանին գրած թղթերի օրինակքն նորանում փակեցէք, ուղարկեցէք Թաւրիզու ինգլիզի դեսպան Մէկդոնալդ հազարապետի ձեռքը, նա շուտով հալկաթա կը հասցնի: Երբ ես ձեր գիրն գտնիմ, կը գամ Աստուծով և էնպէս կը գամ, որ կուրախանաք:

Իմ ազնիւ քաղաքացիք, գիտեմ որ մեր աշխարհի այսքան երկար ժամանակաց գերութեան տակ մնալն գիտութեան յարգն ոչ կարէ ներկայ լաւապէս ցուցանել ձեզ, բայց յուսամ, որ շուտով կարողանէք ճանաչել: Գիտութիւնն էն ազնիւ թագուհին այ, որ հախ այ՝ աղքատ հազուստով բազդաւորաց դռանն կը դեգերի՝ ամմա՝ թագաւորաց թագին պարծանք ու փառք այ: Տէրութիւն չկայ, որ էս անտէր գիտութեամբս կանգնած և պահվում չլինի: Ռուսաց էդ մեծ կայսրութիւնն, թէ յառաջ քան զսուրբն Պետրոս իւրեանց իմաստասէր թագաւորն ի՞նչ էր և ներկայ ի՞նչ, անյայտ է ձեզ: Մին երեխայ եթէ գրել կարդալ գիտենայ, էն արուեստանին, որ բազում չարչարանքով վեց կամ եօթն տարումն այ սովորում, մին երկու տարումն կարէ հեշտ ու հանգիստ սովորել, էն սո-

վորած արուեստն հնարքով հեշտացնել և նոր արուեստանի ես հնարել։

Իրաւի արուեստից անունն յիշելով այնքան եմ ամաչում, որ կարող չեմ ասել, գէրա, մեր խեղճ աշխարհքն ի՞նչ մին լաւ արուեստ ունի, ոչինչ։ Եւ արուեստանին, որ չորս հազար տարով յառաջ աշխարհումն կային, ներկայ էլ էտանք են մեր Հայաստանու արուեստանին և ինչպէս կոպիտ սովրում են, էնպէս էլ կոպիտ սովրցնելով գնում են։ Արուեստ պայծառացնել չեն գիտում, նոր արուեստ գտնել չեն կարում, եթէ լսում են, որ մին տեղ աղջիկ գրել կարդալ այ սովրում, զարմանում են. երբ ինգլիզ կամ ֆռանգ են տեսնում, կարծում են թէ՝ Աստուած է յերկնից իջել տներն ամպաթաթախ։ Եւ ի՞նչ է պատճառն, աղաչեմ, եթէ ոչ գիտութիւնից զուրկ մընալն։ Կարծեմ ինձ վրայ կը ծիծաղէք եթէ ասեմ, որ ինգլիզի և ֆռանգի կնանիք և զաւերքն վեց և եօթն լեզուի կարդալ գրել գիտեն, մեծ մեծ գրքեր են շարադրում, տպում, ասղարարութիւն, ձև, կար, վաճառականութիւն, լաւ սազ ածել, պար գալ և այլն։ Բայց յուսամ երբ որ ազնուութեան հոգին կը նորոգվի ձեր միջումն և դառն գերութեան քաշութիւնն կը մոռանաք, էն վախտը կիմանաք թէ ի՞նչ է իմ լացն։ Ա՜խ, իմ լաւ քաղաքացիք, ա՜խ, հոգիս հարա՜յ այ կանչում, հին խմորն թողէք, նոր ազգի լուսաւորութեան և պայծառութեան հետևեցէք։

Ամօթ չի՞ ձեր իշխանազուն որդւոց համար դատարկ քուչէքումն ման գալ կամ մենակ անտաշ դարբնութիւն, խառատութիւն, կառէպանութիւն (այգեպանութիւն) և թթի դուշ քշել սովրել։ Ամօթ չի՞ ձեր խաթուն դստերաց համար մենակ տուն սրբել սովրել, և մին գնձոտ մինթանայ (շրջազգեստ) ձևելու համար դատարը կռնատակին դռնէ դուռ ընկնել։ Ո՞ւր է ձեր վեհ հոգին, ո՞ւր է ձեր ազնիւ փառքն, ո՞ւր է ձեր աշխարհի ծանօթացած անունն, կորեա՜ն արդեօք, ո՞չ։ Աստուծոյ յատուկ ողորմութիւնն բացվել է ձեր վերայ, իմ ազնիւ քաղաքացիք, մի՛ ասէք թէ ջանք անենք, փող ժողովենք, լա՜ւ ապրենք. մոխիր է

սեր փողն, փուչ է մեր կեանքն, սնոտի է մեր յոյսն, եթէ չենք ջանալու, որ մեր ազգի երեխայիցն էն լուսաւորութեան դուռն բանալ, որ վաղն և միւս օրն կարողանան մարդի միջում մարդ երևիլ։

Պարտ է ուրեմն Աստուծոյ ողորմութիւնն ոտնատակ չտալ, նորա ձեզ տուած ազատութիւնն անմահ փրկութիւն համարել. ջանալ որ ձեր խանդաղայ որդիքն կարողանան իմաստութեամբ թուր բռնել ընդդէմ թշնամեաց Աստուծոյ և բարերար կայսրի ձերոյ և ձեր աղջիկներին՝ գրիչ, նոքա՝ քաջութիւն առնեն և սոքա նորանց քաջութիւնն գրեն, նոքա դառնան քաջ զօրք և զօրականք և սոքա քաջ իմաստուն և լաւ տանտիկնայք. և եթէ կարենայ մեր աշխարհն մին անգամ իւր որդիք և դստերքն էապէս կատարելութեամբ ծաղկած տեսնել, չգիտեմ, ո՞ր մին ֆրանգի աշխարհիցն պակաս կը մնայ, թէ լուսաւորութեամբ, թէ արուեստով, թէ ազնուութեամբ և թէ երջանկութեամբ, և ոչ թէ մինիցն։

Ահա էս ա իմ ցանկութիւնս իմ քաղցր աշխարհիս համար, եթէ որ հաճելի կը լինի վերն գրածիս համաձայնիլ և կատարել, ուրեմն հեշտ է. մենք հիմն կը դնենք և Աստուած կը շինի և ես ուրախ կլինեմ ապրել ձեզ համար՝ և մեռնել ձեզ համար։ Ապա թէ ոչ, էլ ուրիշ չեմ ու չումի պատճառ չունէք, և եթէ զանց կառնէք գլխից ռադ անելու համար, առաջի ատենի Քրիստոսի պարտականն դուք էք և դուք պիտի լինէք. ողջ լերուք, մնամ ազնուութեան ձերոյ խոնարհ ծառայ Մեսրոպ Դաւթեան Թաղիադեանց։

Ի Կալկաթա Նոյ. 1. 1828. Ինգլիզի եպիսկոպոսի ճեմարանում։

## 3. ՏԻԿԻՆ ՍԻՐՎԱՐԴԻՆ

*Սիրելի Սիրվարդ իմ, բարով ողջանաս,*
*Թանգում օրիորդին դիտանի գնաս.*

---

Մեսրոպը նշանուած էր Թանգում օրիորդի հետ, նրանց միջնորդ էր եղած ոմն տիկին Սիրվարդ, որ հիւանդ էր։

Շատ կարօտ բարեւ տաս և հասկանաս,
Թէ ե՞րբ այ իւր կամքն, որ իրար տեսնենք։

Ես քանի օր այ դոր ակար տեսայ,
Սիրտս գնաց հետը, միտքս մոլոր այ,
Թէ Աստուած կըսիրես, երբ տեսնես սաս,
Որ եթէ հաճենայ իրար հետ խօսենք։

Թէ որ ինքը թանգ այ, ես էլ չեմ էժան,
Այլոց չհաւատայ, բոլորն էլ գիժ ան.
Ինքն իմն այ՝ ես իւրն մինչև յաւիտեան,
Եթէ որ կամենայ իրար հետ ապրենք։

Ասա ախտս, որ կարդալ չես գիտում,
Սիրածիդ գրածն սրտում չես գրում.
Քեզ համար պատրաստ է ազնիւ գիտութիւն,
Եթէ շուտ կամենաս իրար գտանենք։

Հայիֆ որ ջահիլ այ, դեռ հասկանում չի,
Միշտ սիրվել ուզում այ, ինքն սիրում չի.
Բայց և լաւ սիրելոյ կերպն կըսովրվի,
Եթէ որ ցանկանայ իրար հետ ըլնենք։

Մ. Թաղիադեանց

1830—31 թ.

դիտանի գնալ—այցելել։ Դոր—դրան։ Հայիֆ—ափսոս։

## 4. ԽԱՉԱՏՈՒՐ ԱԲՈՎԵԱՆ

Խաչատուր Աբովեանը ծնուել է 1804—5 թ. Երևանի մօտ, Քանաքեռ գիւղում։ 10 տարեկան, հայրը նրան տանում է էջմիածին ուսման տալու և յանձնում է Անտոն եպիսկոպոսին։ 1820—21 թ. նա իր հոգաբարձու Անտոն եպիսկոպոսի հետ գալիս է Հաղբատ և ապա Թիֆլիզ, որ Ս. Նազարեանի հետ միասին սովորում էր յայտնի հայկաբան Ղարադաղցի Պօղոս վարդապետի մօտ։ 1823-ին բացւում է Ներսիսեան դպրոցը, ուր և մտնում են Նազարեանն ու Աբովեանը։

Այնուհետև Աբովեանն Էջմիածնումն էր իբրև սարկաւագ և տիրացու։ Երբ 1829 թ. Հայաստան է գալիս պրոֆ. Պարրոտը Մասիսը բարձրանալու, Աբովեանն ընկերանում է Պարրոտին իբրև ուղեկից և թարգման. շատ սիրելի է դառնում պրոֆեսորին։ Լինելով վերին աստիճանի ուսումնասէր, Աբովեանը խնդրում է Պարրոտին, որ իրան տանի հետը Դորպատ ուսումը շարունակելու։ Պարրոտի միջնորդութեամբ ռուս կառավարութիւնը թոշակ է տալիս Աբովեանին Դորպատում ուսանելու և 1830-ին մենք արդէն նրան գտնում ենք Դորպատում։ Վեց տարի Դորպատում մնալուց և ուսանելուց յետոյ. Նա վերադառնում է հայրենիք, բայց աջողութիւն չի ունենում, որովհետև այն ժամանակուայ հայերը կարծում էին, որ բողոքական գերմանացիների մէջ կրթուած Աբովեանը խմորուել է բողոքականութեամբ, ուստի և Յովհաննէս կաթողիկոսը մերժեց նրան տալ թէ կուսակրօնութիւն և թէ ուսուցչութիւն։ Ստիպուած՝ Աբովեանը մտնում է արքունի ծառայութեան և կարգւում է տեսուչ նահանգական դպրոցի։ 1839-ին՝ արդէն հոգևոր կոչումից հրաժարուած, ամուսնանում է մի գերմանուհու հետ։ Նա մի դասագիրք է հրատարակում, բայց աջողութիւն չի գտնում, որովհետև արգելում են աշխարհաբար դասագրքի գործածութիւնը։ 1840 ին Աբովեանը գրում է իր «Վէրք Հայաստանին», որով և դնում է ամենամեծ հիմնաքարը մեր ներկայ գրական լեզուի։ Ինքը, սակայն, չտեսաւ իր այս գործի տպագրութիւնը, ոչ էլ վայելել կարողացաւ գրական մարդու համբաւ։

1843-ին Աբովեանը տեղափոխւում է Երևան աւելի ցածր պաշտօնով, իսկ 1847-ին բոլորովին արձակւում է պաշտօնից. 1848 թ. ապրիլի 2-ին, լուսադէմին, հեռանալով իր տանից, անհետ կորչում է։

Աբովեանի «Վէրք Հայաստանին» շատ ու շատ տեսակէտներով մի վերին աստիճանի նշանաւոր գործ է. դա հայերէն առաջին վիպասանութիւնն էր, գրուած պարզ, հասարակ, նոյնիսկ ռամիկ լեզուով, այնպէս, ինչպէս խօսում էին Քանաքեռ գիւղում։ Այն ժամանակուայ համար,

երբ ամենքը սովոր էին կարդալ ու գրել միմիայն գրաբար, դա մի չտեսնուած քայլ էր, որ կարող էր անել միայն Աբովեանի պէս տաղանդը։

Սկսած նախապատմական ժամանակներից, դուք ոչ մի տեղ հայ ժողովուրդ չէք տեսնում։ Աբովեանն է, որ առաջին անգամ ծանօթացնում է մեզ հայ գիւղացու հետ իր տիպային պարզութեամբ. Նրա կեանքն ու կենցաղը, Նրա ցաւերն ու հոգսերը, ուրախութիւնն ու վիշտը, Նրա կինը, մայրը, զաւակը, ընտանիքը, գիւղը, համայնքը սովորոյթները, լեզուն, մի խօսքով հայ գիւղն իր բոլոր բնորոշ գծերով։ Դա մի հսկայական գիւտ էր, որ մեր գրականութեան մէջ մտցրեց Աբովեանը՝ լոյս աշխարհ հանելով բուն հայ ժողովուրդը դարաւոր անյայտութիւնից. Մի Նազարեան, մի Նալբանդեան, մի Պատկանեան, Րաֆֆի և Պռօշեան կարող էին երևան գալ ու գործել միայն այդ գիւտից յետոյ։ Նոր էին նոյնպէս բնութեան հրաշալի և գունեղ տեսարանները նկարուած մի ճարտար ու զօրեղ վրձինով։ Նոր էր հերոսը, Աղասին, որ դարաւոր ստրկութեան դէմ առաջին բողոքող հերոսն էր մեր մէջ։

Աբովեանը նկարագրում է պարսիկների տուած տանջանքներն ու տառապանքը հայ ազգին. Նրա վէպի հերոսը՝ Աղասին սպանում է պարսիկ զինուորներին, որոնք եկել էին Քանաքեռ՝ մի հայ աղջիկ տանելու պարսիկ Սարդարի համար։ Աղասին իր ընկերների հետ ստիպւում է փախչելու. անցնում է Տաճկա-Հայաստան, ուր նոյն տառապանքն ու թշուառութիւնն է տեսնում։ Ամեն տեղ օգնելով հայերին, Աղասին գնում է Անի, որ նրա վրայ անտանելի տպաւորութիւն է թողնում։ Վերջը միանում է ռուսաց զօրքին՝ հայրենիքի ազատութեան համար մարտընչելու և սպանւում է Երևանն առնելուց յետոյ մի պարսկի ձեռքով։

Գիրքը գրուած է այնպէս զգացուած, այնքան տաք ու կրակոտ, հեղինակի երևակայութիւնն այնպէս բոցավառ ու ջերմ է, լեզուն այնքան հարուստ, պարզ և անպաճոյճ, նկարագիրն այնքան բնական, սրտաբուխ և ոգելից, որի

*Նմանը մեր դրականութեան մէջ առհասարակ քիչ կարելի է պատահել։ Գիրքն ամբողջովին տոգորուած է հայրենիքի, ազգի և ժողովրդի ցաւերի նկարագրութեամբ։ Վէրք Հայաստանին մի կանոնաւոր վէպ չէ, այլ մի հայրենասիրական պօէմա, գրուած ռոմանտիկ ուղղութեամբ. Նկարագրութիւնների ընդարձակութիւնն ու հեղինակի զգացումների անզուսպ զեղումը վնասել են գործի գեղարուեստական ամբողջութեանը դարձնելով նրան «Ողբ հայրենասիրի», ինչպէս գեղեցիկ բնորոշել է ինքը, հեղինակը։ Դա բանաստեղծական պատկերների մի հաւաքածու է, իբրև ամբողջութիւն բաւական թոյլ, բայց իբրև առանձին-առանձին հատուածներ, շքեղ, հրապուրիչ, խորապէս անկեղծ, փարթամ և անզուգական։ Աբովեանի ոճը նման է մի հեղեղի, որ երկարատև երաշտից յետոյ յանկարծակի թափւում է մի այնպիսի յորդութեամբ, այնքան ուժգին և յորդառատ, որ ամէն ինչ տակն ու վրայ անելով առաջ է տանում, յեղափոխելու ժամանակակից մտքերի հօսանքը, նոր ճանապարհ բաց անելու այդ մտքերի համար և նոր ընթացք տալու նրանց... և նա հասաւ իր նպատակին։ Մի հուժկու հարուածով պէտք էր կտրատել գրաբարի կաշկանդիչ կապերը, մի «Հայրենասիրի ողբով» պէտք էր իմաց տալ նորածին լեզուի զարթնելը, մի սրտամորմոք, յուզիչ լեզուով պէտք էր երևան հանել հայ ժողովրդին դարաւոր անյայտութիւնից։ Լեզուով, ձևով, նիւթով և էութեամբ պէտք էր մի նոր գրական կոթող ստեղծել։ Այդ ամենն արաւ Աբովեանը, և անյայտացաւ, այդ բառի իսկական իմաստով,– առանց վայելել կարենալու իր գիւտի և իր գործի մեծութիւնը։—Մինչև իսկ այսօր, 60 տարի յետոյ, մեր հեղինակներից ոչ մինը չի կարող մրցել Աբովեանի հետ զգացմունքների խորութեամբ և ոճի զօրութեամբ։ Անցեալից նրա հետ համեմատել կարելի է միայն Գր. Նարեկացուն։*

Աբովեանի մանր գործերը

*Վէրք-Հայաստանին թէպէտ տպուեց բաւական ուշ, գրուելուց 18 տարի յետոյ, բայց առանց ազդեցութեան չմնաց մեր*

գրականութեան վրայ. մեր լաւագոյն հեղինակները Աբովեանի աշակերտներն եղան.

Մինչև այսօր էլ անյայտ մնացին, չգնահատուեցին և ոչ էլ կարդացուեցին Աբովեանի երկու այլ գրուածքները, որոնք սակայն իրանց ժամանակին մի խոշոր բաց պիտի լրացնէին, եթէ տպուած լինէին։ Դրանցից առաջինն է «Օվսաննայ կամ սիրոյ մի պատմուածք»։ Դա աշխարհաբար առաջին վէպն է, գրած հաւանօրէն 1841-ին. վէպի ամբողջութիւնը, հանգոյցն ու սիրոյ ինտրիգան պատմուած են ճարտար ու շնորհալի կերպով։

Շատ շնորհալի և նոյն իսկ տաղանդաւոր գործ է «Թէօդորոսբայ կամ որդիական սէրը». գրուած 1841-ին. բաղկացած մի գործողութիւնից և ինը տեսարաններից։—Սա մեր առաջին թատերական գրուածքն է աշխարհիկ լեզուով։

Զգացման խորութեան ու անկեղծութեան հետ այս պիէսի մէջ Աբովեանը մեծ աջողութեամբ պահպանել է գեղարուեստական չափ և հանգոյցի լարուող հարցասիրութիւն։ Եթէ այդ պիէսը ինքնուրոյն գործ է, նա Աբովեանի դափնիներին աւելացնում է մի նոր ու թարմ ճիւղ։ Այս երկու գրուածքներում Աբովեանն այլ ևս ռոմանտիկ գրող չէ, այլ ըէալ վիպասան։

Աբովեանը թողել է նաև բազմաթիւ առակներ, գրուած մեծ մասամբ Կռիլովի ազդեցութեան տակ, որոնցից շատերի մէջ, սակայն, պարզ երևում են նրա տաղանդի պայծառ շողերը։

Դրանք Աբովեանի գործերից բացառութեամբ ամենից աւելի տարածուածներն են եղել, որովհետև իր ժամանակին դառել են դասագրքերի նիւթ և սովորուել ու կարդացուել են։

Ոմանք Աբովեանի գլուխ գործոցն են համարում նրա «Զանգին». դա մի հրաբորբոք նկարագրութիւն է հայրենի գետի։ Ներմանաձայն կոշտ բառերի անսահման առատութիւնը սակայն, նսեմացնում է այդ գործի գեղարուեստական արժէքը։ Զանգին սկսւում է բարբառով, դառնում է մաքուր գրական և ապա վերջանում է գրաբարով, ուր պարզ երևում է Նարեկացու ոճի ազդեցութիւնը Աբովեանի վրայ։—Եւ Աբովեանն էլ զգացմունքի ու ոճի կողմից աշխարհաբարի Նարեկացին է, որի կրօնական էքստազը Աբովեանի մօտ փոխուած է հայրենասիրութեան։ Տաղանդի չափը, ոճի յատկանիշները, զգացման խորութիւնն ու անկեղծութիւնը նոյնն են երկուսի մօտ էլ. տարբեր են միայն ժամանակի համեմատ ոգևորութեան նիւթն ու արտայայտութեան եղանակը—լեզուն։

Աբովեանի նշանակութիւնը շատ մեծ է.

ա. Նա է աշխարհաբարի ամենամեծ հիմնադիրը.

բ. Նա է առաջին հայ փիլիսոփան և առաջին թատերագիրը.

գ. Նա էր, որ առաջին անգամ ճանաչել տուաւ մեզ հայ ժողովրդի կեանքն ու կենցաղը։

դ. Նա աշխարհիկ գրականութեան մեծ հիմնադիրներից մինըն է.

ե. Նա մեր առաջին հեղինակն է և առաջին մանկավարժը եւրոպական մտքով։

Գ. Վանցեան

---

## 5. ԱՌԱՋԱԲԱՆ

Քսան-երեսուն տարուց աւելի է, իմ ազիզ հէր՝ իմ սիրելի ազգ, որ սիրտս կրակ է ընկել, էրւում, փոթոթւում է, գիշեր-ցերեկ լացն ու սուգը իմ աչքիցս, ախն ու ուխը իմ բերնիցս չի պակասում, այ իմ արիւնակից բարեկամք, որ մէկ միտքս ու մուրազս ձեզ պատմէի ու յետոյ հողը մտնէի։ Ամեն օր գերեզմանս առաջիս տեսնում էի, ամեն ժամ մահուան հրեղէն սուրը գլխիս պտըտում էր, ամեն րոպէի ձեր սիրտն ու դարդը հոգիս էրում, մաշում էր. լսում էի ձեր քաղցր ձէնը, տեսնում էի ձեր սիրուն երեսը, իմանում էի ազնիւ միտքն ու կամքը, վայելում էի ձեր ազիզ սէրն ու բարեկամութիւնը, մտածում էի ձեր կորցրած փառքն ու մեծութիւնը, մեր առաջին էն հիանալի թագաւորաց, իշխանաց գործքն ու կեանքը, մեր հայրենեաց մեր սուրբ աշխարհքի առաջուան սքանչելիքն ու հրաշքը, մեր ընտիր ազգի աննման բնութիւնն ու արած քաջութիւնները։ Մասիս առաջիս էր կանգնած միշտ, որ մատով ցոյց էր տալիս՝ թէ ինչ աշխարհքի ծնունդ եմ ես։ Դրախտը մտքումս էր կենդանի, որ ինձ երազում, թէ լուրջ՝ միշտ մեր երկրի անունն ու պատուականութիւնը իմ առաջս էր բերում. Հայկ, Վարդան, Տրդատ, Լուսաւորիչ քնած տեղս էլ ինձ ասում էին՝ որ ես իրանց որդին եմ. Եւրոպա թէ Ասիա ինձ անդադար ձէն էին տալիս, թէ Հայկայ զաւակն եմ ես, Նոյեան թոռը, Էջմիածնայ որդին, դրախտի բնակիչը։ Դաշտում թէ ժամում, չօլում թէ տա-

նը էն բարերն էլ ուզում էին, որ սիրտս պոկեն, հանեն, որտեղ որ իմ ազգի ոտը կոխել է, ու էս օր էլ կոխում է. շատ անգամ մէկ հայ տեսնելիս՝ ուզում էի եղած շունչս էլ հանեմ, նրան տամ. բայց ախ, լեզուս փակ էր, աչքս բաց, բերանս բռնած, սիրտս խոր, ձեռս պակաս, լեզուս կարճ։ Գանձ չունէի, որ գործով ցոյց տայի ուզածս, անունս մեծ չէր, որ ասածս տեղ հասնի։ Մեր գրքերն էլ գրաբար, մեր նոր լեզուն էլ անպատիւ, որ սրտիս կարօտը խօսքով յայտնէի. հրամայել չէի կարող, խնդրէի, աղաչէի էլ՝ լեզուս մարդ չէր իմանալ, չունքի ես էլ էի ուզում, որ ինձ վրայ չծիծաղեն, չասեն՝ կոպիտ է, յիմար է...

Էսպէս բաները մտածելով, օրս ու ումըրս մաշուել էր։ Շատ անգամ ուզում էի իմ գլուխս մահու տամ։ Չէի իմանում՝ թէ սրա չարէն ինչ կըլի։ Թող լսողը չհաւատայ, ամա էս ցաւն էնպէս էր սիրտս առել, որ շատ անգամ գժուածի պէս ընկնում էի սար ու ձոր, ման գալիս, մտածում, էլ եդ սիրտս լիքը տուն գալիս...

Մէկ բարիկենդանի՝ աշակերտներս որ բաց թողի, սկսեցի, ինչ որ երեխութիւնիցս լսած, կամ տեսած բան գիտէի, տակ ու գլուխ անել։ Վերջը իմ ջիւան Աղասին միտս ընկաւ. Նրա հետ հարիր քաջ տղէրք էլ իրանց գլուխը բարձրացրին ու ամենն էլ ուզում էին, որ իրանց ոտը գնամ։ Միւսները մեծ-մեծ մարդիկ էին, շատն էլ դեռ սաղ սալամաթ՝ փառք Աստուծոյ, Աղասին աղքատ ու մեռած, Նրա սուրբ գերեզմանին ղուրբան։ Ասեցի՝ կեղծաւորութիւն չանեմ, նրան ընտրեցի։ Սիրտս էկել էր, բերնիս հասել. Տեսնում էի, որ էլ Հայի լեզուն խօսող քիչ է գըտնւում։ Մէկ ազգի պահողն էլ՝ լեզուն է ու հաւատը. թէ սրանց էլ կորցնենք, վայն էկել է մեր օրին։ Հայոց լեզուն առաջիս փախչում էր, երեսուն տարուայ փակ բերանս Աղասին բաց արեց։ Մէկ երես բան դեռ չէի գրել, որ իմ մանկական սիրելի բարեկամ ու ազնիւ հայազգի պարոն դօքտոր Աղաֆօն Սմբատեանը ներս մտաւ։ Ուզում էի թուղթս ծածկեմ, էլ չկարացի. ինձ համար Աստուած էր Նրան էն սհաթին ղրկել, Նրա ջանին մեռնիմ։ Զօռ արեց

որ կարդամ. բարեկամիցն ի՞նչ պէտք է թաքցրած։ Սիրտս դողում էր կարդալիս՝ մտքումս ասում էի՝ թէ հէնց հմիկ որդի որ է, գլուխը կը պտըտի, ունքերը կը կիտի միւսների նման ու իմ ախմախութեան վրայ մտքումն կլ է հօ կը ծիծաղի, որ երեսիս չասի։ Բայց փիսը ես էի, որ Նրա ազնուական հոգին դեռ լաւ չէի ճանաչել։ Վերջացնելիս՝ որ հէնց էն է թուրն էկել էր, ոսկորին դէմ առել, որ չասեց. «Թէ որ էդպէս կը շարունակէք, շատ հիանալի բան կը դառնայ», ուզում էի վրայ թռչեմ, բերանը, էն քաղցր բերանը համբուրեմ։

Նրա սուրբ բարեկամութեանն եմ պարտական, որ մունջ լեզուս բաց արեց։ Նա գնաց թէ չէ՝ կրակը ջանս առաւ։ Սհաթի տասն էր առաւօտի։ Էլ հաց, կերակուր միտքս չեկան։ Ճանճը առաջիս անց կենալիս, ուզում էի սպանեմ, էնպէս էի վառուել։ Ծնող, տուն, երեխայութիւն ասած, լսած բաներ էնպէս էին կենդանացել, որ էլ աշխարհքը միտքս չէր գալիս։ Ինչ խուլ-կորած, մոլորած մտքեր ունէի, բոլորը բացուել, եդ էին եկել։ Նոր էի իմանում, որ գրաբար ու ուրիշ լեզուներ՝ մինչև էն սհաթը միտքս փակել, բռնել էին։ Ինչ որ ասում էի, կամ գրրում էն ժամանակը՝ գողացած կամ հնարած բաներ էին, էնդուր համար հէնց մէկ երես բան գրում էի թէ չէ՝ եմ քունս էր տանում, եմ ձեռս բեզարում։ Գիշերուան մինչև սհաթի հինգը ոչ հացի մօտիկ արի, ոչ չայի, չիբուխն էր իմ կերակուրը, գրիչը իմ հացը։ Տանըցոց խնդրելուն, նեղանալուն, խռովելուն էլ չէի մօտիկ անում։ Երեսուն թաբաղէն էն է լցուելով էր, որ բնութիւնը իր պարտքը պահանջեց՝ աչքերս դնաց։ Սաղ գիշերը ինձ էնպէս էր երեւում՝ թէ նստած գրում եմ. երանի կըլէր ինձ՝ թէ էն մտքերը ցերեկն էին միտս ընկել...

Հայեր, թող ինձ այսուհետև տգէտ կանչեն... Թող տրամաբանութիւն գիտեցողը իրան համքարի համար գրի, ես ձեզ համար։

Խ. Աբովեան

## 6. ՀԱՅՐԵՆԻ ՀՈՂԸ

Հայաստանի հողն էն հողն է, էն հիանալի աշխարհն է, ուր որ դրախտն էր եղեմական, ուր Աստուած բոլոր աշխարհը ջրհեղեղովը երբ որ կործանեց, Հայոց սուրբ Մասսայ սարը միայն արժան տեսաւ, որ Նոյեան տապանը նստի ու հայոց երկրիցը էլի մարդիկ բազմանան ու ուրիշ երկիրներ էլ շինութիւն գցեն. Էն սուրբ հողն է, ուր որ անպարտելին Հայկ իր նիզակը ցցեց ու իր սուրբ անունովը Հայաստան կանչեց. Էն ընտիր հողը շատ ուրախութիւն տեսաւ, շատ գեղեցկութիւններով զարդարուեցաւ, շատ թշնամու նախանձելի դառաւ: Դա էն սուրբ հողն է, ուր Բագրատունեանք, Ռուբինեանք՝ իրանց հազար թշնամու ձեռի անտէր մնացած հայրենիքն էլ եդ գերեզմանից հանեցին, էլ եդ նոր հոգի տուին. Էն օրհնեալ հողն է, ուր Ասորիք, Պարսիկք, Հոնք, Սլանացիք, Մակեդոնացիք, Հռովմայեցիք, Արաբք, Օսմանցիք՝ ջրհեղեղի պէս վրայ եկան, հարիւրաւոր ազգ ու աշխարհ տանակոխ արին, ջնջեցին, սրբեցին, — թրի, կրակի մատաղ արին, որտեղ որ սար չի մնացել՝ որ արին չտեսնի, քար չի մնացել՝ որ մարդ տակով չանի ու հարիր մեր հարևան ազգեր էնպէս են հողի հետ հաւասարուել, կորել՝ որ էս օր ոչ նրանց շունչը կայ, ոչ անունը: — Բայց սուրբ Հայոց ազգը, անյաղթելի Հայկայ որդիքը, իրանց կեանքը թագաւորութիւնը, մեծութիւնը փառքը, իշխանութիւնը, զօրքը կորցնելէն ետև, ու տեսան՝ թէ աշխարհակործան ջրհեղեղին, էս գազան ազգերին չեն կարող դիմանալ, աչքները երկինք գցեցին, գլխները գոգները դրին ու հազար թրի տակից, հազար կրակի միջից, սիրտ սրտի տուած, հոգի հոգու կպցրած, մինչև էս օր էլ՝ իրանց գլուխը, իրանց սուրբ հաւատը, իրանց սուրբ օրէնքը՝ էն վեհանձնութիւնովը պահպանեցին, որի օրինակը աշխարհում ոչ էլել է, ոչ կըլի: Նոյեան դէսը վեց հազար տարի Հայոց խեղճ ազգը հեթանոսի, կռապաշտի, մահմեդականի, անօ-

րէնի ձեռին էր աչք բաց անում, Նրանց հետ քեալլա տալիս ու շատին շատ անգամ իր ոտի տակը գցում... Բայց կարօղ է վարդը ծովի միջում զօրանալ. կարօղ է մանուկը կրակի առաջ դիմանալ, կարօղ է կակաղ ցորենի հասկը էն կայծակին ու կարկտին համբերել. որ մեր ազգը իր թշնամուն համբերել է կամ դիմացրել։

Հայոց ազգ, Հայոց ազգ, ձեր ջանին մեռնիմ. Հայոց ազգ, Հայոց աշխարհ, էն ո՞ր կաթը ծծեցիք, որ դուք էս հոգին ունեցաք, էս սիրտը ձեր միջում պահեցիք, էս հըրաշքը աշխարհքին ցոյց տուիք։ Էն ի՞նչ քարացած սիրտ պէտք է ըլի, որ ձեզ չսիրի, ձեր փառքը չգովի։ Դուք իրար պահեցէք, ձեր հողն ու ազգը պաշտեցէք, ա՛յ Հայ տղէք,—բայց աչքս ճամբի է, ականջս ձէնի՝ ձեր ջանին ղուրբան, չթողաք, որ էս մուրազը հետս գերեզման տանեմ ու հողումը մարմինս քրքըրուի, երկնքումը հոգիս տանջուի. երբ իմանամ՝ թէ ձեր սէրը պակսել է, ձեր բարեկամութիւնը ցամաքել։

Խ. Աբովեան

---

## 7. ԵՐԵՒԱՆԻ ԲԵՐԴԸ

Լեռ քարափի վրայ՝ ցից գլուխը բարձրացնում, թամաշա է անում հանդարտ՝ հազար գլխանի դեւի պէս՝ Երևանու՝ հազար տարեկան քաւթառ, պառաւած, չորս կողմը խանդակով կապած, բրջերով ղայիմացրած, սուր սուր ատամները գլխին շարած, հինգ դազաչափ հաստ պարսպով երկու տակ բռնած, մէկ ոտը Կոնդումը, մէկ ոտը Դամուրբուլաղի գլխին դրած, մէկ բերանը հիւսիս, մէկը հարաւ բաց արած, չորացած գլուխն երկինքը ցցած, լէն փէշերը երկրումը փռած, անամօթ երեսը կոկած, սվաղած, հազար բնով, հազար փանջարայ աչքերը դէս ու դէն չռած, ջուխտ չանգերով Զանգուի քարոտ, զարհուրելի, սեւադէմ ձորը խոտած, դոշին կըպցրած, անմազ, անլեզու, մարդակեր բերդը, ու դեղնած երեսը հեռու տեղից ծածկում,

ագահ աչքերը գետնին քցում, որ միամիտ տեսնողին դնա շուտով, դնա հեշտ իր ծոցը քաշի ու բիրադի, անձէն, անսաս կուլ տայ, փչացնի։

Պարսիկ նրան չինեց, խորամանկ, խաբեբայ, թէ օսմանցի նրա հիմքը դրեց՝ կատաղի, անհաշտ, ոչ գիր կայ, ոչ թարեղ։ Նրա պատմութիւնը խաւարի միջումն է, մարդ ուղիղ չի գիտի, չի լսել, բայց հազարաւոր ժամանակ՝ անահ, անվախ, պինդ երեսը լիրբ դազանի պէս դէմ տուած, որքան թօփի, թօփխանի գիւլլէք էլ նրա կուշտ քամակին, նրա կարող դօշին, նրա բաց գլխին դիպան, ոչինչ չի աղդեց, քեար չարեց։ Կոտրած թեւերն էլ եդ սաղացրած, ջարդած ոսկոռներն էլ եդ պնդացրած՝ գլուխը վեր քաշեց, էլ եդ շունչ առաւ, վեր կացաւ, կանգնեց ուսերը դզեց, ոլորեց, սալքեց ու էլ եդ հարբա [1]) գալով, հաթմթայ տալով [2]). իր գլուխը քորողի, իր շուաքի հետ խաղացողի՝ թուլութեան, փոքրոգութեան, անզօրութեան ու յիմար յանդգնութեան վրայ ծաղր անելով, ծիծաղելով, ծափ տալով, պպլին [3]) կանգնեց. մառը ցցեց էս հողաշէն, այլ ոչ քարաշէն բերդը ու խենէշ դիմօք՝ իր կտրած ոտները Զանգուի բերանը խցկելով, մնաց տեղը նստած, Զանգուի՝ որ գիշեր-ցերեկ, անքուն, անդադար. դժուած. կատաղած նրա բաց դօշին, նրա անիրաւ սրտին՝ իր պլոկած ջրի անբերան թրովը, քարի ուրաքով վէր հատում, զարկում է, բայց տեսնելով՝ թէ չի կարում ջիգրը հանել, վրէժն առնել, նրան քանդել, գոռալով գանգատելով, կական բառնալով, քիչ-քիչ ձէնը փոքր քցում ու մունջ-մունջ երեսը կալնում, Զանգիբասարի ծոցն է մտնում ու յոյսը կտրած, սիրտը կտրած՝ տխուր դէս ու դէն ցրւում, ցրնորւում ու հազար բարի, հազար պտուղ ու արդիւնք տալով, բաշխելով։ ճամբէն մոլորում, կորչում ու չի կարում իր սիրուն քվորն էլայ՝ Արազին մէկ խաբար տանի, չունքի Երեւանու թամարգու, կարօտ բնակիչը, նրա ճամբէն բռնում, նրան սիրով խտտում, իրանց մէջը, իրանց հանդն են

[1]) Յարձակուել [2]) սպառնալ, [3]) յամառել։

տանում, որ նրա սուրբ կաթնահամ ջրովը՝ իրանց էրուած սիրտը հովացնեն, իրանց դառը քրտինքը նրանով լուանան, որ նրա տուած պտղովը իրանց գլուխը պահեն։

Խ. Աբովեան

Ի՞նչ բանի է նմանեցրած բերդը և ի՞նչ բանի Զանգուն. կարելի՞ է արդեօք նկարել Աբովեանի գրածը, այո, դա մի պատկեր է։

---

## 8. ԱՂԱՍՈՒ ՄՕՐ ՆԱՄԱԿԸ

«Աղասի ջան՝ Աղասի. գլխովըդ փարվան ըլիմ՝ Աղասի։ —Ընչի՞ չեմ էս սհաթին կրակ դառնում՝ ինձ էրում, ընչի՞ լեզուս չի չորանում, աչքս խաւարում, ընչի՞ չեմ թող դառնում, որ բալքի թէ քամին բերի, գամ, ոտիդ տակին ցրուիմ, սարէսար ընկնիմ, քարէքար, որ իմ երեսը կոխես, որտեղ որ գլուխդ դնես, որտեղ որ քուն մտնես՝ նանն ըմբրիդ մեռնի, իմ թագաւոր, իմ աղա Աղասի»։

«Տնկած ծառերդ փուշ են դառել՝ ինձ սպանում, պահած ծաղիկներդ կրակ են դառել՝ ինձ էրում, խորովում, ման եկած տեղերդ՝ աչքիս լուսը մգլախի պէս ցցւում, սիրտս դուրս ճոթռում։—Ո՞ւր կորչիմ, որ ձէնս օըմին չիմանայ, ո՜ւր գնամ, որ աչքս՝ քո տեսած բաներն էլ չըտեսնի, միտքս քո ասած խօսքերն էլ չյիշի, ջանս քարանայ, որ էլ անուշդ չտամ, սիրտս ջուր կտրի, որ էլ քո սէրը չզգամ, ումբրս փչանայ, օրս խաւարի, որ երկնքի տակին էլ չասեմ, թէ ես էլ եմ մէր, ես էլ եմ որդի բերել, ինձ էլ մէկ օր աչքալիս տուին, ես էլ մէկ օր որդու, զաւակի արևի ձէնը պէտք է ածէի,—ես էլ որ աչքս խփէի՝ մէկ բուռը հող դո՛ւ պէտք է երեսիս քցէիր, դու իմ նաշը խառէիր, դու իմ լաշը հողին տայիր, դու վրէս սուգ անէիր.—«Հոգիդ լիս դառնայ՝ ա՜յ իմ մէր, ա՜յ իմ մէր, ի՞նչ կըլէր, որ մէկ էլ աչքդ աչքիս, բերանդ բերանիս առնէր ու յետոյ Աստուած հոգիս առնէր»։

«Հոգիս խոր է՝ թէ հանեմ, Աստուծուն տամ. սիրտս ձեռիս չի, որ կրակը քցեմ, էրեմ. երկնքին ձեռս չի հաս-

նում, ականջդ ձէնս չի ընկնում։ Ղուշ է գլխավերևս թըռչում՝ քո անունն եմ տալիս, շունչս է բերնիցս դուրս գալիս՝ քո հասրաթը ջիգեարս էրում, փոթոթում. աչքիս եմ հուփ տալիս՝ սիրտս է տրաքում, բերանս եմ կալնում՝ միտքս է ցնորւում. տունն եմ մտնում՝ պատերն են ինձ դժոխք դառել. դուս եմ գալիս՝ սար ու ձոր սև օրս լաց ըլում. երկնքին եմ նայում՝ մէկ ձէն չի գալիս, երկրին եմ մոտիկ տալիս՝ մէկ խաբար չիմանում։ Բարձին եմ գըլուխս դնում՝ շունչս է ինձ խեղդում, քնած, թէ զարթուն՝ դու ես աչքիս առաջին պտիտ գալիս։ Արտասուքս ծով է դառել՝ Աղասի ջան. ախ ու ոխ քաշելով շունչս կտրուել, հոգիս մաշուել, գլխիս էլ մազ չի մնացել, որ քամուն չտամ, երեսիս էլ տեղ չկայ, որ չըլիմ կտրատել, տան ու դռան էլ քար չկայ, որ չըլիմ դօշիս խփել։ Գլուխս ծեծելուցը ձեռներս բեզարեց. շատ լաց ըլելուցը աչքս խաւարեց, բայց ա՜խ... ա՜խ... հոգիս իմ տուած չի, որ ասեմ՝ դուս դնամ. սաղ սաղ էլ գերեզման մտնեմ, ու՞մ ձէնը լսեմ, ու՞մ երեսը տեսնեմ, ու՞մ հոգիս տամ, ու՞մ ոտի տակին գլուխս դնեմ, ու՞մ էս փէտացած ձեռներովս խառեմ, ու՞մ էս չորացած լեզուովս ասեմ։ Մեռնիմ էլ, Աղասի ջան, հոգիս գլխովդ պտիտ կըգայ, ապրեմ էլ՝ որդի ջան՝ ջանս քո ուղուրին դրած է։ Հոգիս երկնքումն ըլի՝ մարմինս քո առաջին փիանդազ. շունչս վրէս ըլի՝ դու ես իմ սրտի մուրազն։ Հող կըդառնամ, հողս քեզ պտուղ կըտայ, ջուր կըկտրուիմ, քո հանդին, ծաղկի վրայ կըթափեմ, դրախտումն ըլիմ՝ քո ծառի ճըլխկըների վրայ բլբուլի պէս կըկանգնեմ, քեզ անուշ քուն կըդնեմ, աշխարհքումս ապրիմ՝ ջանս քեզ ղուրբան կըտամ, թաք դու ծաղկիս, ծլիս, զօրանաս՝ անունիդ մեռնիմ»։

Խ. Աբովեան

---

## Թ. ԱՂԱՍՈՒ ԿՆՈՋ ՆԱՄԱԿԸ

«Ե՜րանի որ սիրտս հանեմ, էս թղթումը դնեմ, երանի որ բաց անես ու հազար թուր միջումը ցցուած տեսնես, կիմանաս էն ժամանակը՝ թէ Նազլուդ, քո ջրատար Նազ-

լուռ ի՞նչ ցաւ է քաշում, ի՞նչ օրումն է, ի՞նչ հալումն, իմ գլխի տէր, իմ ըմրրի թագաւոր՝ Աղասի։ Ո՞ր սարերն են առաջդ կապել, ո՞ր գետերը ճամբէդ կտրում, ո՞ր ձեռն է թևիցդ բռնում, եդ քաշում՝ ա՜յ իմ թագ ու պարծանք, որ էսպէս ինձ կրակում թողել ես, ինձ դժոխքը ղրկում, դու արքայութիւնը վայելում, ինձ սուրը քաշում, դու ձեռներդ լուանում, ինձ դիւանոցը տալիս, դու հրեշտակների միջին արևից ձէնն ածում, երեսդ էլայ չես դարձնում, որ ինձ հողը դնես։ Աղասի ջան, Աղասի, եարաբ երեսդ մի երկնքին չես գցում, որ տեսնես՝ թէ ի՞նչ մրրած ամպեր են առաջիդ կանգնած, ի՞նչ կրակ է վերևիցը վէր թափւում. չե՞ս իմանում միթէ՝ անիրաւ, անջիգեար՝ թէ էս կրակն ու էս բոցը, էս ծուխն ու էս ամպը իմ բերնիցն են դուրս գալիս, իմ սիրտս է քուլայ քուլայ իրանից հանում, վերևն աստղերը խաւարացնում, բռնում, ներքևը սար ու ձոր պապանձացնում։ անձող շինում։։

«Հարիր անգամ գերեզմանի դուռը հասել՝ էլ եդ եդ եմ էկել, հարիր անգամ արեգակը որ մէր մտաւ, ես էլ իմ հոգիս հետը ճամփու քցեցի. ու ա՜խ՝ էլի ծէգը բացուելիս, հէնց իմանում էի հողումն եմ, չէի ուզում շունչ քաշեմ. հէնց իմանում էի, մեռելների կողքին եմ, չէի կամենում, գլուխ բարձրացնեմ. ու էլի մօրդ՝ ա՜խ, քո ումբրը խաւարած մօրդ ձէնն որ ականջս չէր ընկնում, էլ եդ աչքս բաց էի անում, մազերս նրա ոտի տակին փռում, որ կամ ինձ սպանի, կամ թէ չէ մահի ձեռիցը չխլի, ինձ սաղ սաղ էսպէս չէրի, չխորովի. ամա էլի որ նրա էն խաւարած աչքերը, էն չորացած, մաղ դառած ջանը որ աչքովս էր ընկնում, որ իմանում էի՝ թէ նա էլ քո ցաւն է քաշում, քո դարդովն է էնպէս փոթոթւում, քո՛ քո՛ ջանին մեռնիմ, միտք էի անում. որ թէ ես էլ մեռնիմ, էլ նրան աշխարհքումը պահող չի՛ ըլիլ. որ ես կորչիմ, նա էլ կենդանի հետս պէտք է հողը մտնի, կամ ջուրն ընկնի, խեղդուի. որ միտք էի անում, թէ նրա խորոված սիրտը ինձանով է մի քիչ հովութիւն գտնում, քո կարօտը, քո հոտն ու համը քիչ թէ շատ՝ ինձանից է առնում, ինձ որ չունենայ, կամ սովը

պէտք է նրան սպանի, կամ քարէքար ընկնի, մէկ բուռը հողի, մէկ օրհնած տեղի էլ հասրաթ մնայ։ Ի՞նչ պէտք է անէի, ո՞ր ջուրն ընկնէի, հոգիս խմը չէր՝ որ հանէի, նրան տայի, բալքի նա ապրէր, քեզ տեսնէր, քո արդար ձեռը բռնէր, դար գերեզմանս ու գլխիս կանգնէր, ասէր. «Աղասի ջան, էս է Նապլուիդ հանգստարանը. Էս հողին նա իր ջանը ղուրբան տուեց. հետս խօսում չէր, որ դարդն իմանայի, ես էլ չօփ էի դառել, աշխարհքն աչքիս փուշ կտրել, որ մէկ մօտին նստէի, քթինքը սրբէի, կամ մէկ սառը ջուր տայի։ Ես իմ տեղումն էի կրակի միջումն էրւում, սա իր բարձի վրա. ես իմ գլուխս էի բարձրացնում, որ հոգիս տամ, սրա հրեշտակն էի տեսնում գլխին պտիտ գալիս. եռ ախ էի քաշում, որ ձէնս քո ականջն ընկնի, սրա ականջն էր ընկնում, սրան էրում»։

Խ. Աբովեան

Համեմատեցէք այս երկու նամակը։

---

## 10. ՋՄԵՌ

Ձինն եկել դիզուել, սար ու ձոր բռնել էր։ Պարզըկայ գիշերը այնպէս էր գետինը սառացրել, որ ամեն մի ոտը կոխելիս հազար տեղից տրաքտրաքում, ճըրճըրում, ճըրճըքում էր ու մարդի ջանը սարսռացնում, ձէն տալիս։ Ամեն մէկ ծառի ճղքներից, ամեն մէկ տան կտուրից հազար տեսակ սառցի լուլայ, հազար տեսակ ձնի քուլայ կախ էր ելել ու բիզ-բիզ իրար վրայ սառել։ Հէնց գիտես սար ու ձոր կամ նոր էր ծաղկել, կամ նոր ծերացել, մահուան դուռն ընկել. շունչն էր մնացել, որ տայ ու աշխարհիս «բարով մնաս» ասի։ Թռչուն, գազան, անասուն, սողուն, որը փէտացել էստեղ, էնտեղ վէր էր ընկել, որն էլ վաղուց, ամսով առաջ բունը մտել, ձէնը կտրել, պաշարը վայելում գարնան գալուն սպասում։ Գետերի, առուների երեսները սառիցը մէկ գազ եկել, հաստացել, իրար վրայ դիզուել, էնպէս էր ջրի, աղբրի բերնին հուփ տուել, որ մօտըներին կանգնողը միմիայն նրանց խուլ ձէնն էր լսում,

որ սառցի տակին տխուր տրտում, քլքլում էր ու էլ եդ էստեղ, էնդեղ կամաց կամաց ձէնը կտրում, պապանձւում, սառչում։

Արեգակը էս առաւօտ որ գլուխը քնի տեղիցն ու ադօթարանիցը չի բարձրացրեց ու աչքը աշխարքի վրայ քցեց, շողքը սարերի գագաթին, դաշտերի գլխին, էնպէս էր պէծին տալիս, պսպղում, ծիծաղում կանաչ ու կարմըրին տալիս, որ հէնց իմանաս թէ ալմաս, ղըմրութ, եաղութ ու հազար տեսակ-տեսակ անգին քարեր ըլէին դաշտերի, սարերի գլխին, երեսին, դօշին փռած։ Սարերի սառը բուքը, ձորերի դառնաշունչ քամին էնպէս էր մէյդան բաց արել, դոռում, փչում, հօսան անում, ձնի թեփը իրար գլխով տալիս, որ ճամբորդի քիթ ու պռունգը կպցնում, ճաքացնում, երեսը պատռում, գլխին, երեսին հազար անգամ խփում, աչք ու բերան լցնում, շատին կամ ձորերն էր քցում, խեղդում, կամ ձնումը թաղում. շունչը կըտրում, կամ ոտ ու գլուխ փէտացրած, ճամբից խուկում, սար ու չօլ քցում, խեղդում, կամ քարէքար տալիս»

Խ. Աբովեան

---

## 11. Ա Մ Ա Ռ

Ճաշվայ շոքն անց էր կացել։ Սար ու ձոր գլխներն էլ եդ բարձրացնում էին, որ փոքր շունչ առնին։ Արեգակը Մասսայ քամակիցը՝ հանդարտ աչքը բաց էր արել ու մունջ մունջ Երևանու բերդին մտիկ էր տալիս ու էն է ուզում էր, որ կամաց կամաց մէր մտնի։ Թանձր խաւարը, սև դումանը էկել, բոլոր դաշտերի, ձորերի երեսը բռնել, օդը ծանրացրել կալել էր։ Ղուշը տեղիցը չէր ուզում ժաժ գայ, հաւը բնիցը գլուխը հանի։ Ամեն տեղից ոտքը խաղաղվել, ամէն տեղից ձէնըձոր լռվել, պապանձվել, փասայ փուսէն քաշվել էր։ Ջուր ջրողը առվի վրայ էր թեք ընկել, քնած մնացել, վար ու ցանք անողը հանդումը, բաղմանչին՝ իր ծառի տակին՝ շվաքումը քուն մտել, դինջացել։

Մարդ, խնս, ջինս՝ գեղերումն էլ չէին երևում։ Բաղի կոնդլի (բլուր) ծէրից, բաղի սարի դօշից, բաղի ճամփում, չօլում մէկ սև մաղի չադր ղարալթու[1]) սևին էր տալիս, ձիու քամակիցը դէս ու դէն թեքվում, երեսի, քամակի վրայ շուռ գալիս, էլ եդ գլուխը դգում, օրգանգուն[2]) ու ղանթարղէն[3]) ժաժ տալիս, ձիուն քացի տալիս, եա ղամշով խփում, որ ոտները մի քիչ եգին[4]) փոխի, թէզ տեղ հասնի։ Բաղինն էլ ձեռն անկաջի քօքին դրած՝ տխուր, բարակ ձէնով մէկ բայեաթի էր քօքել, քթի տակին, ձիու ջիլաւը[5]) գլխին գցած՝ ինքն իրան բզզում, գնում էր, որ տուն հասնի ու իր բեզարած, ջարդըված ջանը՝ կամ մէկ շվաքի տակի դինջացնի, եա իր տան դուռը, իր օղլուշաղի երեսը, քանի որ դեռ մութը վրայ չէր հասել, տեսնի ու սիրտը բաց ըլի։

Հօղաղներն (մեխրէ) էլ իրանց գութանի տաւարը բաց էին թողել, լուծը եդ արել ու մէկ քօլգի տակի՝ գութանը մէկ կողմը, եզները միւս՝ ջրերի ղրաղին վէր էին թափել, քաղցը քուն մտել։ Նախիրը մէկ գգում, ոչխարի սուրուն միւս՝ շվաք տեղը՝ նստել չանէն չանին[6]) էին քըսում, փնչացնում, արոճ անում։ Զօրանն էլ գլուխը մէկ քարի վրայ դրած՝ նգղել, աչքը կպցրել էր, որ շոքը քաշվածին պէս վեր կէնայ, սուրուն իրիգնահովին մէկ լաւ խոտաւէտ տեղ տանի, արածացնի։ Օյեաղ չների մէկը էս ցցի վրայ, մէկը միւս թափի ծէրին, եա չոբանի ոտի տակին՝ գլուխը դրել, նօթերը կիտել, մարաղ էր մտել, որ թէ գող, գէլ կամ գազան սիրտ անի, մօտենայ, բիրդանբիր վրայ թռչի, թիքայ թիքայ անի, իր տիրոնչ ոչխարները պահի։ Մէկ կանաչ խոտ, մէկ դալար թուփ, կամ մէկ ծաղիկ, մէկ տեղ էլայ չէր էրևում, որ մարդ հոտն առնի, կամ երեսին մտիկ տայ, սիրտը բացվի ու իր ճամփի երկարութիւնը մոռանայ, կամ շոքի ձեռիցն էրված, խորոված ջանին հովութիւն տայ, էնպէս էր սար ու ձոր, դաշտ ու հանդ չորացել, խանձվել, պապանձվել։ Միմիայն խոտերի չօփերն ու քոլերի սուր սուր ծէրերն էին

էստեղ, էնտեղ՝ ցից ցից գլուխ բարձրացրել, տխուր տըրտում, մոլորված կանգնել, մնացել։

Սև սև ջանդաքակեր [7]) ակռաները, եա վախլուկ տուլաշներն էին հէնց մէնակ մնացել. որ էստեղ, էնտեղ, մէկ քարափի ծէրի, եա մէկ բրջի գլխի եա թէ չէ մէկ ճամփի միջում, իրար գլխի հաւաքվել էին, նստել կամ պտիտ էին գալիս, իրար կոցահարում, իրար թևերից քաշում, որ մէկի գտած որսը ձեռիցը. խլեն, փայ անեն, իրանց ձագերին էլ տան, կամ հետընները տանեն։ Օձ, կարիճ, խլէզ, բզէզ ու ինչ կերպ ջանաւար ասես՝ մորեխ, մժեղ՝ մէյդան էին բաց արել։ Որը մէկ քօլի տակից, որը մէկ քարափի բաշից, որը խոտերի միջին, կամաց կամաց ժաժ գալով, պոչ ու գլուխը իրանց քաշելով, կամ ծլունդ ըլելով, էլ եդ տազ անելով, կամ գետնի ապառաժի վրայ սողալով, փշտացնելով, շլացնելով, փշշացնելով, ծվալով, ծղրտալով՝ ոտն էին էլել, ուզում էին իրանց արևի ձէնն ածեն։ Որն էլ իր բնի առաջին արևկող անելով, գլխըները հանել. մունջ մունջ ականջ էին դրել, սուր սուր ականջները ցցել, պէլացել, շլացել՝ էս կողմն, էն կողմն մտիկ էին տալիս, որ ոտքը խազազվելիս դուս գան, մի քիչ շունչ քաշեն, իրանց քէֆն անեն, իրանց օղըր [8]) ճանկեն, էլ էդ իրանց բունը մտնեն, էլ եդ գնան քնեն, գինջանան։

Բացի պառաւակի արանքից, կամ քարի ծէրից էլ մէկ նաչար բայղուշ (բու) գլուխը խոր վէր թողած, քիթ ու պռունկ կխած, ծանրացած, գետնին նայում էր, իր սև օրը լաց ըլում։ Հաւի թշնամի ուրուրն էլ՝ (ձերէն) թևերը փռած, չանգերը սրելով, բաց ու խուփ անելով կտուցը սրբելով կամ դօշը քուջուջելով, երկնքի տակին գլուխը դօշի տակին քաշ քցած, սուր աչքերը էս դեհն, էն դեհն էր քցում, պտտում, հազրվում, որ բիրդանբիր ական թօթափել վէր վազի, մէկ լըպոր ճտի գլխի, որ իր մօր թևերի տակին, կամ մօր գլուխը քորելով, թևը քաշելով, ծվծըվալով, կտկտալով՝ կամ կտուց կցի տալով, մօր կրխալուն, ծվալուն անկաջ դնելով, սուս փուս նըս-

տում էին իրար հետ, կամ քուչուչ էին անում, կամ մէկ խեղճ, անճար լորի քամակին խփի ու ճվճվացնելով. ծղըրտացնելով՝ վեր քաշի. քըքըրի, թեքռի[9]) ու իր ագահ փորին մատաղ անի։ Անձ գեղեցիկ, անզոյգ օրինակ՝ անսիրտ, բարբարոս Պարսից՝ ժանգ բռնակալաց, մաշողաց ազգի, երկրի Հայկայ զաւակաց։

Ինչպէս մեռել, լռել էր բնութիւնը ու մէկ շփլթու[10]) էլայ մէկ տեղից չէր լսվում։ Միմիայն հեռու տեղից մէկ բարակ քամի՝ բաղի բաղի վախտ փչում. ծառերի տերևները սլացնում, ժաժ էր քցում ու գոլ գոլ՝ մարդի երեսին, բերնին՝ ձեռը նազուք քսում, շուտով անց էր կէնում ու փշերի, խոտերի, քարափների, ձորերի մէջ մըտնում։ Ինչպէս ծխի մէջը խրված՝ հեռու տեղից, դաշտի գեղերը, հանդերը, փոսերը՝ մթնած, լռված՝ ինչպէս սև ամպի կտորներ, կամ էրված, խանձված տեղեր՝ էս տեղից էնտեղից սևին էին տալիս ու խառնիխուռն երևում։ Արագը ինչպէս մէկ նետ օձ, կամ էրծաթի գոտի, արևմտեան կողմիցը. ձորերի միջիցը՝ իր սուր լուսափայլ ճակատն ու գլուխը բաց էր արել, ու մրմռնջ, հանդարտ, լուռ դալիս՝ Մասսայ փէշին մի քիչ թևով խփում էր, շփում ու էլի ծուռն աչքով նայելով, նրան հաթաթայ տալով, ձէնըձոր անելով, գլուխը պտտելով՝ գնում Զանգվին ու Գառնու դեմն իր ծոցն առնում ու խաղալով, խայտալով, վռվռալով՝ հեռանում քվերտանց հետ ու պըռունկ պռնկի, գօշ գօշի, քամակ քամակի տված, իրար գլխի, երեսի ձեռները քսելով, փաղաքշելով, հանաք անելով, աչքները խփում, նզղում ու Շարուրի դուզ ծոցումը՝ ծեծված, ջարդված քուն մտնում։

Խ. Աբովեան

---

## 12. Զ Ա Ն Գ Ի

Ինչպէս մէկ կատաղած վիշապ՝ երկնքիցը թռած, գըլխիվայր կախուած, մէկ տուտը Սևանի հանդարտ ծովումը, մէկ տուտը Արագի քըքըրուած եղերքումը, սար ու ձոր

[1]) Սուսեր, [2]) ասպանդակ, [3]) սանձ, [4]) արագ, [5]) կապը, [6]) ծնօտ, [7]) գիշակեր, [8]) ապրուստ, [9]) փետրել, [10]) շշունջ։

կլխշոր տալով, քանդելով, տապալելով, քափ ու քրտինքը բերանը կոխած, զըզզըզուած, մազերը գագաթին ցցուած, կապը կտրած, գժուած. բերանը աւազով, քարով, աղբով լիքը. այս կողմը փնչացնելով, ճոթռելով, ջարդելով, յատակ ու եզերք ծամելով, բրդելով,—...: այն նեղ, չոր, տխուր Կաքաւասարի տակիցը որ յանկարծ դուրս է պըրծնում, փաղում ու հրով. սրով, բոցով, բրով, փռընչալով, մռընչալով, խռընչալով, քարի, քարափի գլուխը ծեծելով, իր փորը խցկելով, վէմ, ապառաժ իրար խփելով. կայծակին տալով, ճչալով, ճռընչալով, թնդալով, դղրդալով,—ցած ափերը, սահմանը գետինը պոկելով, պոճոկելով, քըրքրելով, քրքըրուելով, կենդանի, անկենդան, մարդ, անասուն գետնին զարկելով, ըամըաչելով, խլացնելով,—վառուած, կրակուած աչքերը արիւնով լիքը, բաշը ցցած, ատամները կրճըտացնելով, դաշտ ու տափ ղըռմբացնելով, ղռընգացնելով ու կայծակի թուրը բերանին՝ վրայ պրծած գալիս է ամենի Զանգին ու Զարագեղ մտնում:

Որ քամին մի կողմից, բուքն ու թըռնաղը միւս կողմից՝ ինչպէս կատաղած դահիճ սըարձակ մտրակում, հըրացանով, նիզակով՝ սարերի գլխներից, ձորերի միջից փոշի, աւազ, հող, աղը առաջն արած՝ փոսերից հանում պատէպատ տալիս, գետնից պոկում. քարափին խփում ու՝ ծառերը ջարդելով, խոտերը ճոթռելով գետինը ճըղելով... մէկ այս քարափին քարով բոընցկում, մէկ այն սարի գլխին խփում ու մէկ կիտուկ հող, աւազ՝ շունչդ քաշելիս կամ աչքդ բանալիս՝ երկու ձեռքով բերանդ ու բաց քիթդ է խցկում, աչքերդ խաւարեցնում ու ականջիդ տակը հրացանի գնդակի պէս, կամ սուր նետի նման՝ վըզվըզալով. ղըղղըղալով յետ դառնում շուտով, երեսիդ այնպէս խփում, որ աչքերդ մթնած՝ կայծակի են տալիս ու դու տեղն ի տեղդ շշմում ես, շուարում, թմրում, սասանում, քար դարձած մնում ու սառած կանգնում:

Ու—այս ժամանակ, այս սարսափելի ժամին՝ որ երբեմն էլ երկինքը իր ալեկոծութիւնն է սկսում, սարերը ջարդում, ամպերը տրաքացնում, կայծակի լախտը աշխար-

հի չորս կողմի գլխին խփում, փշուր փշուր անում. ու Զանգին, սարսափելի Զանգին էլ որ մէկ կողմից գոռում, մռընչում ու թոյլ ձեռքերը, անկազմ ոտքերը քարէքար տալիս, փոշի բարձրացնում, բառաչում է ու քամու վըզվըզոցը, երկնքի տրաքոցը, քարափի ճըռճըռոցը, սարերի ղըմփղըմփոցը, ձորերի ղըռնգըռնգոցը, ծառերի խըշխըշոցը, այրերի խըռնչոցը, ջրաղացների թըխկթըխկոցը, գետնի զըռնգզըռնգոցը, տների թնդալը, պատերի տրաքտրաքոցը. շների, գայլերի, արջերի, աքաղաղների՝ ծղրտալը, ճչալը, ծւալը, բառաչելը, խառանչելը, վընգվընգոցը, կռնձկռնձալը, ճրնգճրնգալը—որ անագին ձայնի հետ խառնում, ոլորում, փորը քաշում...—այս միջոցին՝ որ Աստուած մի արասցէ, մէկ անծանօթ անցւոր Կոնդի ղուզն է գընում կամ Ապարանքափոսիցը վայր իջնում, որ Զանգուի վրայով անց կենայ, աչքը շաղւում է, գլուխը շւարում ու այնպէս է կարծում, թէ մէկ անագին սար վրան փուլ եկաւ։ Բարացած, փէտացած, մնում է տեղն ի տեղը սառած, ցցւած... երբ աչքի առաջին կամ Քանաքեռն է բացւում կամ Նորագեղի դաշտավայրը...

Խ. Աբովեան

Ի՞նչպէս է նկարագրւած Զանգուն. բնակա՞ն է թէ չափազանցած։

---

## 13. ԷՇՆ ՈՒ ԲԼԲՈՒԼԸ

Բացւել էր գարունը, սար ու ձոր ծաղկել,
Անուշ հոտն ու հովը ամէն տեղ բռնել.
Ամէն աշխարհից, հեռաւոր տեղից
Փախած, կորած դշեր[1]) իրանց բներից
Եկան, որ գարնան գալն շնորհաւորեն։
Իսկ պարկեշտ բլբուլն իր էրւած սրտի,
Իր սիրուն վարդի սէրն ու իր մտքի
Հասրաթն[2]) ու էշխը բերան բերելով,

---

1) Թռչուններ. 2) կարօտն։

Խոր ձորում նստած, դարդերը լալով,
Նայում էր ջրին, իր վարդի թփին,
Ուզում էր բացուի, ա՜խ, իր սիրելին։
Բայց վարդն անիրաւ մնացել էր փակ,
Խեղճ բլբուլի սիրտն դառել էր կրակ։
Մէկ չոր քարի վրայ մնաց կուչ էկած,
Աչքն իրա վարդի երեսին քցած։
Լալիս էր, էրւում. «ա՜խ, վա՛րդ իմ կարմիր,
Բացուիր՝ երեսիդ մեռնիմ, ա՛խ՝ բացուիր։
Կա՛մ իմ հոգիս էլ ա՛ռ, քո հետը տա՛ր,
Կամ էրուած սրտիս արա մէկ ճար։
Էս դառն հաղաղին [1]) սատանի քամին
Ո՛րդխանց հանեց մեր կորած իշին.
Քունն էր հատել, թէ փալանը ծռւել.
Խուրակը պակասել, քիթը քամի մտել,
Գէյն էր յետ ածել, թէ ակէրը դնքսել. [2])
Նօխտէն [3]) կտրուել, թէ բեռից փախել։
Ականջները խլշացրած.
Պոչը ցցած, զուռնէն քոքած.
Սարնըվէր ընկած, որ չեկաւ առաջ,
Էն հաստ գլուխը թափ տուեց, զռռաց։
Էն մուռտառ դունչն էլ՝ որ վրայ բերեց,
Անմեղ վարդի թուփն, կոկոնն, որ բռնեց,
Մշրեց ու զռռաց մեր էշ խնամին.
Սար ու ձոր իրանց աչքը փակեցին.
Դշերը թռան՝ ա՜խ, ո՜խ քաշելով.
Ծաղկներն երեսն ծածկեցին լալով։
Էլի բլբուլի էրուած հոգին էր,
Որ միտք անելով իր դարդ ու ցաւեր,
Էկաւ, վարդի վրէն կանգնեց, սուգն սկսեց.
«Աննման իմ վա՛րդ, ողբալով ասեց,
Թագուհի իմ վարդ, հոգուս սիրելի,
Անուշդ յիշելով, սիրտս խորովի.
Երկինքն է տեղդ, ընչի՞ ես մնում,

[1]) Րոպէ։ [2]) Թակել։ [3]) Սանձ։

Իշի կերակուր, էս փշի միջում.
Թանի փուշ ու էշ դեռ կան աշխարհքում,
Կրթնաս անտէր։ Է՛ս եմ միտք անում,
Ու գլխիս տալիս, էրւում, խորովւում։
Նա՛[1]) դու ինձ էրի, մէկ օր պրծնեմ,
Եա թե առ, թոչինք, երեսիդ մեռնիմ» [2])։

—

«Էշն ինչ գիտի նուշն ինչ է»։

(Ժողովրդական առած)։

---

## 14. ԳԻԺՆ ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆՈՒՄ

Հիմիկ էլ զոռ են անում՝ թէ պիտի կարդաս։ Հարամ ըլի էն հացն էլ, էն ապրուստն էլ, որ ինձ տալիս են։ Էլ ոչ աչքս է քուն գալիս, ոչ սիրտս է հանգստանում։ Գիրքը տեսնելիս հէնց իմանում եմ՝ իմ հոգեառըս է։ Վարժատան անունը լսելիս՝ միտս ջանումս հալչում է։ Երանի՝ տասն օր նախիրը ըրկեն, քանց կէս սհաթ վարժատունը։ Ի՞նչ անեմ, մէկ հիւանդութիւն էլայ չի պատահում, տատանի աչքը քոռանայ՝ որ մէկ քանի օր պարկիմ ու իմ գրքի երեսը չըտեսնիմ։ Թէ ասում եմ, առաւօտը տանիցը դուս գամ, գնամ մէկ պատի տակի կուչ գամ ու իրիկունը տուն գամ, փորս է դաղ-բէդատ[1]) անում։ Չէ, ասենք թէ չէքս[2]) էլ հացով լցնում եմ՝ որ փորիս ջուղաբը,[3]) տամ, իմ անաստուած վարժապետն է եղնիցս մարդ ըղրկում, էն ժամանակը վա՜յ իմ օրին, վա՜յ իմ արևին։ Մէկ միկան ծակն էլ, որ հազար թումանով[4]) ուզենամ առնեմ, չըկայ։ Ղորդ է՝ բազի անգամ ասում եմ՝ թէ գլուխս ցա-

---

[1]) Կամ։ [2]) Սա գրուած է յայտնապէս Կռիլովի ազդեցութեան տակ. Оселъ и соловей. Ի՞նչ նմանութիւն և տարբերութիւն գիտէք. Կռիլովինը մի առակ է, սա մի պատմուած. Կռիլովի էշը մի կիսակիրթ մարդու է նման, Աբովեանի էշը մի իսկական էշ է։ Ի՞նչով են նման կամ զանազան միմեանցից Կռիլովի և Աբովեանի բլբուլը։

[1]) Վեց-վեց, [2]) գրպան, [3]) պատասխան, [4]) 10 րուբլի։

ւում էր, եա մաշիկ չունէի ու էստով գլուխս պրծացնում եմ, ամա էս էլ չի օգտում։ Ամեն օր գլուխ չի ցաւիլ, ես էլ լաւ գիտեմ, ուր մնայ վարժապետս՝ որ հազար ինձ նման սատանի ատամին է խփել ու ճամբու դրել։—Այբ, Բեն. գլխիդ գմփեմ. Գիմ, Դա. ջոխին հազիր ա։ Եչ, Զա. կա՛յ ու հազա՛։ Է, Ըթ. խազս մնաց եդ։ Խէ, Ծա. կար-գացողն էծ ա։ Կեն, Հո. եսիր չեմ հօ՞, Ձա, Ղատ. մնացել եմ սախատ [1])։ Ճէ, Մեն. ամէն, քուանայ, ով ձեռք չի վերցնիլ մեզմէն։ Յի, Նու, Շա, Ո, Չա, Պէ, Ջէ, Ռա. սո-ված մեռայ։ Սե, Վեւ, Տիւն, Րէ, ծանր է։ Ցո. Հիւն, Փիւր, Քէ. իշի քուրք է։ Օ, Ֆէ, ովվէհ, գլուխս տրաքե-ցաւ։ Մի քիչ տեղ արա, որ սիրտս հովանայ։ Էնքան ասել եմ էս... էս... էս կորած մոլորած անունները՝ որ ատամ-ներս թուլացել են, գլուխս էլ դուզ [2]) չի մնացել։

Էս պրծար, հիմիկ ասում են՝ ա՛յ տղայ, ասա՛ Այբ, Ժէ, Ճէ, Ռա. ախպէր, զոռա, մեռայ։ Ձեր գլխովը դիպչի ձեր այբբենն էլ, ձեր այբ, ժէ, ճէ, ռան էլ, մեր հոգին հո չէք հանիլ։ Ի՞նչ էք տուել՝ որ մեզանից էլ յետ չէք կարում ուզել։ Չեմ կարդում, չեմ կարդում. հօ զոռի բան չի։— Կարդա՛, կարդա՛. ի՞նչ է։ Տօ՛, ձեր տունը չըքանդուի, ախր էս յիմար կարդալումն ի՞նչ կայ, որ էսպէս մեր ջանը հա-նում են։ Շատ մարդ՝ որ մէկ այբի կտոր էլայ փորումը չունի, ամա՝ չէ, չէ, գլխումը կուզէի ասել, շշկլեցայ, չուն-քի [3]) էս զահրմար կարդալը փորի խարջ [4]) բան չի, ներե-ցէք ինձ՝ էս էլ կարդալու հարարաթը [5]) է, որ էսպէս լե-զուս շաղուեցաւ, օհ. օհ... բերանս ցաւում է, թթու է, կծու է, աչքիս լիսը թռաւ, այրն էլ ջհանդամը [6]) գնա, փէն էլ, էս սհաթս մէկ աման մածուն ըլէր, լաւ կըխփշտէի, իսկ մէկ քոնձոտ այբի անունը տալիս, լեզուս կապւում է։

Ո՛չ աչքդ է մի բան տեսնում, ոչ բերանդ համ է առ-նում։ Շոր չի, որ մէկ օր կարես, տուն չի՝ որ շուտով շինես, հաք [7]) չի՝ որ իսկոյն կուլ տաս, դեղ չի, որ աչքդ

[1]) կաղ-մնասուած, [2]) ուղեղ, [3]) որովհետև, [4]) արժանի, [5]) շնորհք, [6]) դժոխք, [7]) պիլիւլ-դեղ։

խփես՝ ու դիվէր քցես, ինչ կըլի, ըլի, փորը սաղ ըլի։ Չի՞ էլ կարելի՝ որ ինչքան գրեր կան, մէկ անգամ կամ ծամես, կուլ տաս, կամ ջուր անես, խմես, կամ թէ չէ քերես, ջնջես՝ որ քոռանան և աչքիդ չի երեւին։ Հա՛ կա՛ց ու տոխդ արա՛, որ դժոխքի պուճախն) էլ գնաս, էլի քեզ հանում են ու միսդ բերանդ տալով՝ ասում են՝ պիտի կարդաս։ Ի՞նչ կուզես անել, աշխարհքս բոլոր թարսուել[2]) է։ Երկինքն էլ թռչիս, էլի քեզ վէր են բերում, գիրքդ կռնատակդ տալիս ու ճամբու քցում, ո՞ւր, Աստուած ոչ գիտէ իրանց գլուխը։

Մէկ գիրքս կորցնում եմ, միւսն են ձեռս տալիս։ Մէկ ղալամս[3]) կորցնում եմ, ծեծում, թակում, ապանում են՝ թէ գնա՛, միւսը բե՛ր։ Փոքր յեղի եմ գալիս, վա՛յ իմ օրին։ Դասս չըգիտեմ, քանոնը հազիր է։ Ձեռքս չեմ դէմ անում, քամակիս են խփում, քամակս եմ քաշում, ոտիս է դիպչում։ Ի՞նչ անեմ, ո՞ր ջուրը ընկնիմ, ո՞ւր կորչիմ, որ էս դժոխքիցը ազատուիմ։ Սատանի փայ ըլի, աչքը դուս գա՛յ, ով որ էս կարդալը սահմանել է։ Ասում են՝ կարդալով մեծ մարդ կըդառնաս, հաց կըճարես. տօ անաքանդներ՝ էս օր էլ՝ քանի որ մեծանում եմ, էնքան աչքից ընկնում եմ։ Մէկ կտոր հաց են տալիս, քթիցս են հանում։ Էլ ի՞նչ կանեմ ձեր հացն ու մեծութիւնը, երբ օրս ու ումրքս կըխաւարի։ Երանի՜ ղշերին՝[4]) որ էսպէս ցաւ չունին ու իրանց քէֆին թռչում, ման են գալիս։ Բօյս[5]) էլայ շուտով երկարանում չի, որ բալքի թէ ամաչին ու էլ վարժատուն չուղարկեն։ Րիկունն եմ գիրքը ձեռս առնում, քունս է տանում, առաւօտն ուզում եմ դասս սերտեմ, էլ ժամանակ չըկայ։ Աչքս որ բաց եմ անում, հէնց գիտեմ՝ իմ հոգեառ հրեշտակը բարձիս վերևը կանգնած, ուզում է, հոգիս առնի։ Ի՞նչ կըլէր, որ ամեն օր կիրակի էր էլել, որ հէնց մեր քէֆին ման գայինք։

Հիմիկ էլ եկել էք՝ սիրելի ծնողք՝ որ տեսնիք՝ թէ

---

1) Անկիւն, 2) ծռուել, 3) գրիչ, 4) թռչուն, 5) հասակ։

ի՞նչ ենք սովորել։ Շատ բարի՝ տեսէք և իմացէք, բայց Աստծու խաթեր դուք էլայ մեզ խեղճ էկէք և մեր չար ուստի պէս չի ջգրուիք, չի բարկանաք՝ թէ ո՛չինչ չենք սովորել. ինչ Աստուած տուել է՝ նրանով ռազի[1]) կացէք։ Ասացի՝ որ կարդալը կանֆէթ չի, որ բիրաղի[2]) բերանդ քցես և փորդ քաղցրացնես։ Վա՛յ նրան՝ ով որ նրա համը կառնի, կարելի և մինչև մահը էլ չի մոռանայ։

Խ. Աբովեան

Այս նկարագրութիւնը նման է արդեօք ներկայ դպրոցականի կեանքին. համեմատեցէք հին դպրոցը և նրանց կարդալը ներկայիս հետ։

---

## 15. ՍՈԽՆ ՈՒ ՍԽՏՈՐԸ

«Ա՛յ թէ քոռուղուփ[1]), դու հոտած զատ ես,
Ժանգի պարկի պէս լցուել, տզել ես»—
Մէկ օր սխտորը էսպէս խօսք քցեց,
Խեղճ սոխի գլխին թուք ու մուր ածեց։
«Կողքըդ հաստացել, գլուխդ գիրացել,
Ի՞նչ ես դու էդպէս շատ ուռել, փքուել.
Ինչ պտուղ որ ես, քեզ ո՛վ չի գիտի,
Որ ուզում ես՝ թէ հէնց քեզ տեղ ըլի։
Մարդ քեզ ուտելիս, բերանն ես կրծում,
Դանակ դիպչելիս՝ աչքը քոռացնում։
Չեմ գիտում՝ մարդը ախր ի՞նչ լազաթ է[2])
Բեզանից տեսնում, որ քեզ ցանում է։
Էլ մարգ ու բոստան[3]) հէչ չի մընացել,
Բոլոր գէշ հոտովդ բռնել, հոտացրել։
Ընչանք[4]) չեն էփում, քո աչքըդ հանում,
Դու քո փիս հոտը չես պակասցնում»։—
«Տօ, դու քո Աստուածն՝ ով էլ ինչ ասի,
Խօսքը սաղ կը գայ, իրաւունք ունի»։—
Սոխը ջուղաբը[5]) եդ դարձրեց, ասաց։

---

1) գոհ 2) բոլորը։

1) Անընդունակ, 2) համ. 3) բանջարանոց, 4) մինչ, 5) պատասխան։

Է՛դ էր մնացել, փառք քեզ՝ Տէ՛ր Աստուած,
Որ դո՛ւ էլ ըռեխդ [1]) ցրուես ինձ վրայ։
Տօ, ա՛յ անզգամ, հոտած բեհայեայ [2]),
Էփէլիս էլ է, ես հոտս քաշում եմ,
Մարդի բերանը ապականում չեմ,
Քո գլուխը լաւ՝ որ խաշի միջումն
Է՛ն հոտն ես թողնում ուտողի բերնումն,
Որ մօտի կանգնողն իրանից գնում,
Սիրտը խառնըւում ու քեալլէն [3]) ծակւում։
Գիտե՞ս՝ խնամի՝ իմ միտքըս ի՞նչ է,
Ես չեմ ուրանում, իմ հոտըս փիս է։
Արի՛, դու էլ քո չափը ճանաչի՛ր,
Խօսքիս լսի՛ր ու լեզուդ քեզ պահիր։
Երկուսս էլ ունինք էդ պակասութիւնն,
Մենք մերը ծածկենք ու պահենք թաքուն։
Մենք իրար վատն որ ասենք մեր լեզուով,
Խայտառակ կըլինք, կըմնանք ամօթով։—
Էսպէս սոխ, սխտոր հոտած մարդըկերքն
Լաւ կանեն, իրանց այիբն [4]) որ ծածկեն։
Բայց շատ անգամ, որ էսպէս սխտոր մարդ
Բերանը բանում չի ու վախտ բէվախտ [5])
Ուրիշին փուչ դնում, էս ա մեզ էրում,
Է՛ս մեզ խորովում։

Խ. Աբովեան

## 16. ՍՏԵՓԱՆՆՈՍ ՆԱԶԱՐԵԱՆ

Նազարեանը ծնուեց մօտ 1810-ին Թիֆլիզում. Նրա հայրը, Տէր-Եսայի քահանան, մի շատ բարի և ուսումնասէր մարդ էր։ Ստեփաննոսը նախնական ուսումն ստացաւ հէնց իր հօր մօտ, ապա Ղարադաղցի Պօղոս հայկաբան վարդապետի մօտ, ուր և սովորում էր Խ. Աբովեանը.

[1]) Բերան—հայհոյես, [2]) անամօթ, [3]) գլուխ, [4]) պակասութիւն, [5]) ժամանակ անժամանակ։

1824-ին, երբ Ներսէս Ե. բաց արաւ Ներսիսեան դպրոցը, Նազարեանը Աբովեանի հետ միասին մտաւ այդ դպրոցը և աւարտեց 1827-ին։ Նազարեանը իր աշխատասիրութեամբ և ընդունակութեամբ սիրելի էր եղել Ներսէս արքեպիսկոպոսին (ապա կաթողիկոս), ուստի և նրա միջնորդութեամբ բժիշկ Սոլոմոն Տէր-Ղուկասեանն ուղարկում է Ստեփանին Դորպատ ուսանելու։ Այնտեղ էր արդէն Նազարեանի սիրելի ընկեր Խաչատուր Աբովեանը։ Համալսարանն աւարտելուց յետոյ նրանք միմիանցից բաժանուեցին և այլեւս միմեանց չհանդիպեցին, Աբովեանն եկաւ հայրենիք, իսկ Նազարեանը դարձաւ ուսուցիչ արաբ և պարսիկ լեզուների Լազարեան ճեմարանում։ Սակայն ինչպէս նրանց կրթութիւնը, այնպէս էլ ապագայ գործունէութեան գլխաւոր արդիւնքն էր՝ աշխարհաբարի մշակելը։ 1858-ին Նազարեանն սկսում է հրատարակել «Հիւսիսափայլ» ամսագիրը Մոսկուայում, ուր աշխատակցում էին ժամանակի առաջնակարգ ոյժերը—Նալբանդեան, Ռ. Պատկանեան, Յ. Մելիք-Յակոբեան և այլն։ Հիւսիսափայլ փոքրիկ ընդհատումով շարունակուեց մինչև 1865 թ. և իր ութամեայ հրատարակութեամբ մի կատարեալ յեղափոխիչ հանդիսացաւ մեր կեանքի գրեթէ ամեն ասպարիզում։ Մեծ է նրա դերը մանաւանդ մեր նորաստեղծ լեզուի մշակման և տարածման մէջ. ժամանակի լուսաւոր գաղափարների հետ նա նոր լեզուի ամենամեծ մշակողներից ու տարածողներից մինն էր։

1869-ին մենք Նազարեանին տեսնում ենք Թիֆլիզում, իբրև տեսուչ Ներսիսեան դպրոցի, ուր, սակայն, նա երկար չմնաց, այլ կրկին հրաւիրուելով, գնաց եւ նախկին պաշտօնին, Լազարեան ճեմարան։ Նա մեռաւ 1879 թ. ապրիլի 26-ին. Նազարեանը հրապարակախօս էր, նրա գրուածները մեծ մասամբ նուիրուած էին ժամանակակից հարցերին, ուստի որևէ խոշոր գրական գործ չի թողել մեր համար բացի «Հանդէս Նոր հայախօսութեան»ից։

## 17. Ս. ՍԱՀԱԿ

Հինգերորդ դարի ճակատումը՝ որպէս մի նազելի պարագլուխ հայ լուսաւորութեան, որպէս մի յաւիտեան քաղցր պատկեր հայ դպրութեան, պատմագրի հոգու առաջև կանգնած է պարթևացի Սահակ Մեծը, Հայաստանի 10-րդ հայրապետը։ Ծնած Կ. Պօլսի մէջ, Ներսէս Մեծի որդին և ձեռնասունը, 490-ին հասնելով պատրիարքական աթոռի, ամբողջ 50 տարի ամենազգաստ արթնութեամբ կառավարել է նա Հայաստանի եկեղեցին այն բազմապատիկ փոթորիկների տակ, որոնց պէտք է տանէր նա այն միջոցներում։ Հայոց պատմութիւնը և պատմագիրը չի կարող լռել թէ այս մեծ և հոյակապ տղամարդը որպիսի անարժան ապերախտութեամբ հայ նախարարների և մեծատունների կողմից, որպիսի անարգ մատնութեամբ պարսից թագաւորի առաջ հրաժարուել է իր հայրապետական պաշտօնից և 540-ին կնքել է իր ճոխավաստակ կեանքը մի տխուր առանձնութեան մէջ՝ սիրտը կտրած, հոգին լցուած տրտում մարգարէութեամբ ապագայի վրայ։ Նրա գիտնականութիւնը և մեծամեծ վաստակները հայ ազգի կրթութեան ասպարէզի մէջ կարելի է դատել նրա գործերից, որ սրանք են.— աջակցութիւնը տառերի գիւտին, որ նա տուաւ Մաշտոցին, գերազանց թարգմանութիւնը հին կտակարանի՝ եօթանասունի թարգմանիչների հիման վրայ։ Մի ճառ եկեղեցու և հոգևորականների բարեկարգութեան մասին։ Այս աշխատութեան խորհուրդն այն է, որ արտաքին աստուածպաշտութեան տնտեսութիւնն աւելի լաւ համակարգէ, սաղմոսերգութիւններն աւելի պատճաշապէս կանոնաւորէ, այլև տօները սահմանէ մի բարեկարգ տօնացուցի հաստատուն կանոններով։ Բացի սորանից, Մովսէս Խորենացին իր Հայոց պատմութեան երրորդ գրքի մէջ պահպանել է մի քանի նամակ, որ Սահակ Պարթևը գրած է դէպի կայսրը Թէոդոս կրտսերը, դէպի Կ. Պօլսի Ատտիկոս պատրի-

արքը և Անատոլէոս զօրավարը։ Այլև Սահակ Պարթևի անուամբ գտնւում են մի քանի երգեր Հայոց Շարակնոցի մէջ։

«ՀԻՒՍԻՍԱՓԱՅԼ», Ս. Նազարեան

---

## 18. ՆՈՐ ՏԱՐՈՒԱՅ ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ

Սովորութիւն կայ լուսաւոր ազգի մէջ, տարեմուտի երեկոյին, իւրեանց բարեկամների հետ ընտանեբար հաւաքուել միասին և պատշաճաւոր խորհրդածութիւններով հանդէպ գնալ նոր առաւօտին։ Այս նոր տարու խորհրդաւոր երեկոյիս թող ամենայն բանական հայ ձեռքը դնէ իւր սրտի վրայ և արդար խղճմտանքով պատասխան տայ նորա հետ խօսող հայրենիքին։ Հայրենիքը բարձրացնելով իւր ձայնը, հարցնում է իւր մեծատուն զաւակից. ի՞նչ արժանաւոր տուրք ես ձգել դու ազգային շինութեան գանձանակի մէջ, ի՞նչ նուէրք ես արել դու քո հայազգի մարդկութեան թէ մարմնաւոր և թէ հոգևոր կարիքը լցուցանելու համար, դու իմ անդրանիկ որդի. ունի՞ս դու և մի անդրանիկ պարծանք քո ազգի մէջ բացի քո հարստութիւնից, քո բարեկեցութիւնից, քո փառահեղ սարք ու կարգերից։ Այսօր հայրենիքը դարձուցանելով երեսը դէպի իւր գիտնական որդիքը, ծանրութեամբ հարցնում է նոցանից ի՞նչ է ձեր գիտութեան և ուսումնականութեան պտղաբերութիւնը ազգի համար, արդեօ՞ք յայտնագործել էք դուք մի հանրաշահ ճշմարտութիւն և նրան պիտանի՞ էք կացուցել ազգի ներկայ կեանքին. արդեօք հասկացե՞լ էք դուք ձեր ժամանակի և ձեր ազգի հոգեղէն պիտոյքը... արդեօք ձեր ուսումնական վաստակներով փոքր ի շատէ բարւօքացուցե՞լ էք ժողովրդի ընկերական կեանքը...։ Հայրենիքը լեզու առած հարցնում է այսօր ժողովրդի անդամներից... թէ հոգևորից, թէ աշխարհականից, ի՞նչ բարի գործերով կամ խօսքերով յառաջադէմ էք կացուցել ձեր ազգը, ձեր եկեղեցին, ձեր սիրելի զաւակները... արդեօք մի քանի քայլ յառա՞ջ էք գնացել դուք առաքինութեան ասպարէ-

գումը ազնիւ անձնասիրութեամբ, ազգաշէն եղբայրասիրութեամբ, կենդանի հաւատի կենդանի պտուղներով։ Գիտեմ, հայ մարդերի կեանքը, ինչքան եւ չքաւոր լինէր առաքինի գործերով, այնու ամենայնիւ բոլորովին զուրկ չէ դոցանից... Ո՞ւր են մեր հայրենասիրական ընկերութիւնքը, հայկական ուսումնարանները տղաների և աղջիկների կրթութեան, ուստի կարող էին յառաջանալ խելացի հայրեր և դաստիարակիչ մայրեր. ո՞ւր են ազգային լուսաւորութեան գործիքը, բարեկարգ տպարաններ, գրատունք, պատշաճաւոր մատենագրութիւն ազգի և նորա զաւակների համար։ Բոլորը բարձի թողի արած, անհոգ և անտես մնացած թէ հոգևորի և թէ աշխարհականի կողմից, ասես թէ ոչինչ վերաբերութիւն չունէին դէպի հայկական ազգը։ Եւ ինչ որ մինչև այժմ կամայ և ակամայ արած են հայոց ազգասէրքը, հազիւ թէ մի կաթիլ ջուր է ահագին ովկիանոսի մէջ, մի հատ ծաղիկ հայոց կեանքի լայնատարած չոր ու ցամաք, անմխիթար անապատի մէջ...

Ս. Նազարեան

---

## 19. ՄԱՅՐԵՆԻ ԼԵԶՈՒ

Մայրենի լեզու, մայրենի բարբառ,
Ախորժ, ընտանի իմ հոգու համար.
Առաջին դու խօսք ականջիս հասած,
Դու, սիրոյ քաղցրիկ առաջին յօդուած,
Մանկական լեզուիս թոթովանք տկար,
Հնչում ես իմ մէջ դու միշտ, անդադար։

Գեղեցի՛կ լեզու, հրաշալի՛ լեզու.
Այդ ի՜նչպէս քաղցր հնչում ես ինձ դու,
Կամիմ աւելի քաջ ծանօթանալ
Քո ճոխ գանձերին, հոգով հայանալ.
Ասես թէ ահա կանչում էին ինձ
Պապեր և հայրեր խոր գերեզմանից

Հնչիր, դու հնչիր այժմ և յաւիտեան,
Մայրենի լեզու, բարբառ սիրական,
Արի, բարձրացիր հնութեան փոշուց,
Դու իմ հայ լեզու, մոռացուած վաղուց.
Ըզգեցիր նոր կեանք սուրբ գրուածքներով,
Որ ամենայն սիրտ վառուի քո սիրով։
Ս. Նազարեան

Գրեցէք սրա բովանդակութիւնն արձակ շարադրութեամբ։

---

## 20. ԳԱՄԱՌ ՔԱԹԻՊԱ

(Ռափայէլ Պատկանեան 1830—1892)

Մեր ազգի մտաւոր պատմութեան մէջ քիչ տոհմեր կան, որ մի քանի սերունդ շարունակ նշանաւոր մտածողներ տուած լինին։ Այդպիսի երեք տոհմ ունինք մենք. Լուսաւորչինը 4 - 5 դարերում, Պահլաւունիների տոհմը Ռուբինեանց ժամանակ (Շնորհալի, Գրիգոր Մագիստրոս և այլն) և Պատկանեանների տոհմը 17—18 դարերում։

Պատկանեանների շառաւիղ էր Ռափայէլը. նրա պապը, Սերոբէն և հայրը, Գաբրիէլը, քահանաներ էին, հօրեղբայր Միքայէլն ուսուցիչ էր, խմբագիր, թատերագիր և աշխարհաբարի հիմնադիրներից մինը։ Միւս ազգական Քէրոբէնը, յայտնի գիտնական բժիշկ էր, հօրեղբօր որդին, Քերոբէն—քահանայ էր և ապա յայտնի գիտնական ու պրոֆեսոր և այլն...

Ռափայէլն աշխարհ եկաւ 1830-ին Նոր-Նախիջևանում և սկզբնական դաստիարակութիւնն ստացաւ իր հօրից. «Հայրս, գրում է Ռափայէլը, իւր ժամանակին համարւում էր երևելի քարոզիչ, հայկաբան և պատմագէտ... Նա Նոր-Նախիջևանի համար ամբողջ 30 տարի մի տեսակ բարոյական արեգակ էր, որ իւր շուրջը սփռում էր լոյս և ճշմարտութիւն»...

Այդպիսի մի հօր ձեռքի տակ անա Ռափայէլն սկսաւ

իր ուսումը, որ յետոյ նա 10 տարեկանից շարունակեց Լազարեան ճեմարանում։ Այնտեղ նա աշակերտեց յայտնի գիտնական և հայագէտ Էմինին մինչև 1849 թ., երբ կիսատ թողնելով եկաւ Թիֆլիզ Ներսիսեան դպրոցն իբրև ուսուցիչ։ 1850-ին նրա հայրը տեսուչ էր Ներս. դպրոցում և հրատարակում էր «Արարատ» առաջին աշխարհաբար լրագիրը։ Այդ թերթումն է ահա, որ Ռափայէլը տպում է իր անդրանիկ ոտանաւորներն ի միջի այլոց «Մահ Զարմայր Նահապետի» պօէման։

1851-ին նա ուղևորւում է Դորպատ ուսումը շարունակելու։ Այդ ժամանակ Դորպատի հայ ուսանողութեան ոսկէդարն էր. այնտեղ էին և Ռափայէլի ճեմարանական ընկերները. Դոդոխեան՝ «Ծիծեռնակի» հեղինակը, Միրիմանեան, որ գրեց «Հայոց-աղջիկները», Քերոբէն, որ հեղինակեց «Ինձ համար չէ գարնան գալը» և այլն։

Ուսանողական այդ ուխտ-ազգասէր շրջանումն է, որ սկսում է զարգանալ ու կազմակերպուել Ռափայէլի ի ծնէ բանաստեղծական տաղանդն և աշխարհիկ լեզուի ճաշակը։

Աբովեան աշակերտը՝ Գէորգ Աքիմեան Դորպատ էր տարել ձեռագիր «Վէրք·Հայաստանին», որից մեր ուսանողները ծանօթանում էին Երևանի բարբառի հետ։ Մի անգամ խմբովին կարդացին այդ գիրքը, որ նրանց վրայ անջնջելի տպաւորութիւն թողեց թէ լեզուի և թէ նիւթի կողմից։

Ուսանողները պարտաւորաբար խօսում էին միմեանց հետ հայերէն, որով թէ իրանք էին վարժւում և թէ նորաբողբոջ լեզուն հարստացնում էին։ Նրանք հեղինակում կամ թարգմանում էին երգեր և բերան անելով երգում էին։

1852 ին Ռափայէլը տեղափոխւում է Մոսկուա, ուր Գէորգ Քանանեանի և բժիշկ Մինաս Թիմուրեանի հետ կազմում է մի ուխտ-միաբանութիւն, որի նպատակն էր ինքնուրոյն և թարգմանական գրուածքներով զարգացնել աշխարհաբարը և տարածել ժողովրդի մէջ։ Վերցնելով ի-

րանց անունների առաջին տառերը, Գ. Մ. Ռ. մէջերն աւելացրին մի մի ա և ազգանունների առաջին վանկերը Քա,Թի,Պա, և կազմեցին ԳաՄաՌ-ՔաԹիՊա։

Այդ անունով ահա, 1854-ին լոյս տեսաւ մի այբբենարան և մի տաղարան, ուր առաջին անգամ հրատարակուեց «Մայր-Արաքսին». մեր ներկայ լեզուի անդրանիկ գոհարներից մինը, որ խորին ազգասիրութեան հետ, պարունակում է նոր լեզուի բերականութիւնը, ոգին, առաւելութիւններն ու պակասութիւններն ամբողջովին։

Գամառ-Քաթիպան հրատարակեց հինգ տետրակ, ազգային հին ու նոր, ժողովրդական, աշուղային և գրական բանաստեղծութիւններ առանց հեղինակների անունը տալու։ Այդտեղ հաւաքուած էին լաւագոյն երգերը Սայաթ-Նովայի, Աբովեանի (Աղասու երգերը), Աղբար-Աղամի, Քեռոբէ և Ռափայէլ Պատկանեանների, Դողոխեանի, Միրիմանեանի և այլն... Նրանց մէջ ամենից փայլունն ու տաղանդաւորը, ամենից եռանդունն ու ոգի տուողը ինքը, Ռափայէլն էր, ընկերութեան հոգին, հրատարակողը և տարածողը։

Այդ երգերի նիւթը, ժամանակի տրամադրութեան համեմատ մեծ մասամբ ազգասիրական և կամ ուրախ ուսանողական էր։ Այդ երգերն էին, որ անմիջապէս թև առան և քաղցր ու դուրեկան եղանակներով թռան ամեն տեղ, ուր հայեր կային, մասնակցելու նրանց ուրախութեանն ու վշտին, արտայայտելու նրանց իղձերն ու ցանկութիւնները, զարթեցնելու հայրենասիրութիւն և աւետելու մի նոր լեզուի ծնունդը, մի նոր կեանքի սկիզբը։

Այդ երգերն էին, որ առաջին անգամ անցնելով բերնէ բերան, անբռնազբօս ու գրաւիչ, արևելեան հայութեանը տուին նոր-գրական լեզուի համն ու հոտը։ Դրանք միայն կարդացողի համար չէին, նրանք երգւում էին մօր և մանկան բերանում, մեծի և փոքրի մօտ։ Նրանք այլևս անհատական թոթովանք չէին, այլ հասարակութեան սեփական դարձած երգեր, բերան արած երգեր, որոնց լե-

գուն համայնացել և ընդունուել էր առանց որևէ դիմադրութեան ու կռուի։

Քանի որ այդ երգերը չէին կրում ոչ մի հեղինակի անհատական անուն, այլ ի մի փնջած ներկայացնում էին ժամանակակից հայ տաղանդի ամբողջութիւնը (սկսած ժողովրդական և աշուղի երգերից՝ համնելով մինչև խորին և տաղանդաւոր անհատականութիւնները, որպիսի էին Աբովեանն ու Ռափայէլը) մի ընդհանուր Գամառ-Քաթիպա անուան տակ, հէնց դա էլ պէտք է համարել աշխարհաբարի խոշոր հիմնադիրներից մինը։

Գամառ-Քաթիպա ասելով, ուրեմն պէտք է հասկանալ հայ տաղանդի միացեալ ամբողջութիւնը, որի մէջ անհատաբար վերև են խոյանում երկու փառահեղ գլուխ— Խաչատուր Աբովեանն ու Ռափայէլ Պատկանեանը։

Ի մի փնջելով հայ տաղանդների արդիւնքը «Հայոց ազգային երգարանում», Ռափայէլն իր լեզուով էլ մի կատարեալ ծաղկափունջ է ներկայացնում ժամանակակից լեզուի, ուր նա հիւսել, ի մի է ձուլել գրաբար, աշխարհաբար, արևելեան և արևմտեան ձևերն անխտիր. «Արաքսն» այդ խառնակ լեզուի լաւագոյն ներկայիչն է։

Մինչև այսօր էլ, վաթսուն տարիներ յետոյ, չըկայ մեր բանաստեղծների մէջ մինը, որ ժողովրդականութեամբ մրցել կարենայ Ռ.-ի հետ։ Երգուելու պատուին քչերն են արժանացել, այն ինչ Պատկանեանի մեծութեան գաղտնիքն այն է, որ նրա գրածները մեծ մասամբ երգուել են և երգւում են։

Նա հարուածել գիտէր հայ սրտերի ամենաթունդ լարերին, նա արտայայտեց իր ազգի վշտերն ամենից վառահ, ամենից համարձակ։ Նա խօսել տուաւ լուսնին, պատմելով «Վարդանի մահը», նա առաջինն էր, որ դարաւոր շղթաների միջից «Բողոք բարձրացրեց առ Եւրոպա», մի շանթող լեզուով բաց արաւ դարաւոր լռութեան բերանը— «Հիմի էլ լռենք» երգով, նա օրօր երգեց մանկան ականջին և խրախոյս կարդաց հերոսին. ծերունուն մանկութիւն էր քարոզում «պատերազմի գնալու», և կանանց յորդորում

էր «վիրակապ հիւսել իրանց ծամերից եղբօր վէրքերը կապելու համար». Նա ծաղրեց ու ծանակեց մայրաքաղաքում կրթուած թուլամորթ երիտասարդին օրիորդին և գովեց ու դրուատեց հայ գեղջուկին, նրա գոմէշն ու արտը։

Նա դարձաւ ամենասիրելին մեր բանաստեղծներից, իրաւամբ արժանանալով «Ազգային երգիչ» պատուաւոր կոչման։

Ռափայէլը խիստ բազմազան և շնորհալի տաղանդի տէր էր։ Թէև նա ժողովրդականութիւն և հռչակ ստացաւ իբրև բանաստեղծ, բայց նրա արձակ ու երգիծական գրուածներն աւելի միայուն ու նշանաւոր են, քան նրա ոտանաւորների մեծ մասը, որոնք արդէն մեծ մասամբ հնացել են։

«Հիւսիսափայլ»-ի ամենաեռանդուն աշխատակիցն էր Ռափայէլը, ուր զետեղում էր թարգմանական և ինքնուրոյն յօդուածներ։ «Փորձ» ամսագրում նա տպեց «Ես նրշանած էի», «Տիկին և Նաժիշտ», «Փառասէրը» վէպիկները, որոնք յայտնի ապացոյց են նրա լուրջ վիպական տաղանդին։ Տիպերն այդտեղ բնական են այն աստիճան, որ կարծես լուսատիպ լինին. պատմուածքը կենդանի, գրաւիչ և հեռու ամեն արուեստոյթից։ Լեզուն պարզ է, մատչելի և ծայրէ ի ծայր հայերէն։ Անզուգական են Պատկանեանի երգիծական պատկերները Նոր-Նախիջևանի բարբառով, ուր հեղինակը ծաղրում է իր հայրենակիցների ներքին կեանքը, վարքն ու բարքը և պակասութիւնները։ Նոր Նախիջևանցիք խիստ վախում էին երգիծաբանի գրչից, որ երբեմն կրքի ազդեցութեան տակ խիստ սուր կերպարանք էր առնում և շատ անգամ դառնում էր թունաւոր։ Ռ. Պատկանեանը շարունակ ապրում էր Նոր-Նախիջևանում՝ վարելով արհեստագիտական դպրոցի տեսչի պաշտօնը. նա մեռաւ 1892 թ. թոքախտից և թաղուեց ս. Խաչ վանքի գաւթում, իր մանկութեան ընկերակից և գրական ախոյեան Միքայէլ Նալբանդեանի մօտ *)։

---

*) Ռափայէլ Պատկանեանը գործ էր ածում բազմաթիւ կեղծ

Բանաստեղծը կտակել էր ազգին, որ իրան Էջմիածին թաղեն. ազգը չկատարեց նրա կտակը, սակայն հաւաքական հանգանակութեամբ գերեզմանի վրայ կանգնած է արդէն նրա խոհուն կիսարձանը։

Գր. Չանցեան

---

## 21. ԽԵԼՔ ԵՒ ԽՈՐԱՄԱՆԿՈՒԹԻՒՆ

Խելօքը կը փնտրէ աշխատանք, խորամանկը՝ հանգըստութիւն. խելօքը գործ ունի բնութեան տարրերի և զօրութիւնների հետ, խորամանկը՝ մարդկային թուլութիւնների հետ։ Խելօքը կասէ մարդոց՝ «դուք ալ շահուեցէք, ես ալ շահուիմ», խորամանկը կասէ. «ես ձեր կռնակէն շահուիմ, իսկ դուք ինչպէս գիտէք»։ Խելօքը մարդոց առջև ճանապարհ կը բանայ, որ ամենքը ազատօրէն հասնեն օգտի կամ մէկ նպատակի, խորամանկը կը բանայ ճանապարհ, բայց ճանապարհի վրան մէկ փոս ալ կը փորէ, որ անցնողը նրա մէջ ընկնի։ Խելօք մարդոց ճանապարհը կը լուսաւորէ, իսկ խորամանկը ձեռքը բռնած ակնախտիղ լոյսը՝ շիտակ մարդոց աչքին կուղղէ, որ շլանան։ Խելօքը կապացուցանէ. կը համոզէ, կը խրատէ, խորամանկը կ'աշխատէ իր ճարտար լեզուովը զարմացնելու։ Խելօքը որ մէկ ուրիշ խելօք տեսնէ իրեն ընկեր, օգնական կը համարէ. խորամանկը 'կաշխատէ իրան շրջապատել միամիտ, պարզամիտ, խելքիաղքատ մարդկանցով, և ուրիշ խորամանկներու հետ չարաչար կը պատերազմէ։ Խորամանկը կը փնտռէ այնպէս տեղեր, որ մարդիկ շատ են ու մէջերը կը մտնէ, բայց վերջը իր չորսը կողմն անապատ կը դարձնէ. խելօքը կը մտնէ անապատ տեղ. շուրջը մարդիկ կը ժողովէ և անապատը մարդաշատ տեղ կը դարձնէ։ Խելօքը իր գլխու ուղեղը Աստուծոյ ձեռէն է ստացել, խորամանկը ստացել է սատանայէն։

---

անուններ. Միքայէլ Վայելչեան, Ախտամերկեան, Ծիւլիւկ, մանաւանդ իբրև բանաստեղծ նա յայտնի է Գամառ-Քաթիպա կեղծ անուամբ։

Խելօք Արամը կանգնեցուց Հայաստանը, խորամանկ Վասակը կործանեց։ Խելօքի գործը գոհար է՝ կոշտ կճեպով ծածկած, խորամանկի գործը շաքարով փաթթած թոյն է։ Խելօք մարդը սրտանց կը ցանկանայ մարդոց լուսաւորութիւն և կը պատուէ լուսաւորեալներուն. խորամանկը թէև երեսանց կը գովէ լուսաւորութիւն, բայց լուսաւորեալներուն չարաչար կը հալածէ։ Խելօքին երբ Աստուած լեզու տուեց, ասաց. «դրանով սրտիդ խորհուրդները մարդոց պարզէ, յայտնէ», իսկ երբ որ սատանան տուեց խորամանկին լեզու, ասաց. «մտքիդ խորհուրդները շատ խօսելով ծածկէ»։ Խելօքի քիչ խօսքէն շատ բան կը հասկացուի. խորամանկը թէև բոլոր կեանք խօսէ, ոչինչ չի հասկացնիլ։ Խելօքը գինի ու օղի չի սիրել և եթէ խմէ, կը հարբի. խորամանկը խմել կը սիրէ, և որքան ալ խմէ, չի հարբիլ, բայց միշտ սուտ հարբած կը ձևանայ։ Խելօք մարդը քաղցածին, չքաւորին իր տունը կը բերէ, կը կերակրէ, կը կշտացնէ. խորամանկը մեծատուններուն յարգանք կուտայ։

Քանի՛ աւելի է վաճառականի խելքը, նա այնքան հեռուներէն կը ցանկայ ստակ վաստակել ու իր կեցած տեղը բերել. իսկ խորամանկը կ'աշխատէ որքան կարելի է մօտիկէն ստանալ իր շահը, այսինքն քովի մարդոց գրպանէն։ Խելօքն ինքը կը գործէ և ուրիշին ալ կը քարոզէ, որ մարդս ծնած է աշխարհի համար. իսկ խորամանկը համոզուած է, որ աշխարհը ստեղծուած է մենակ իր համար։ Խելօքը կ'ուզէ իրեն չորս կողմը բարեկամներ տեսնել. իսկ խորամանկը՝ ստրուկներ։ Խելօքին երեսը միշտ տըխուր է, բայց հոգին՝ զուարթ. խորամանկի երեսէն ժպիտը երբէք չի հեռանալ. բայց նրա սիրտը տարին տասներկու ամիս թոյն ու լեղիի մէջ թաթախուած է։

Եւրոպայի մէջ կըթագաւորէ խելքը, Ասիայի, Ափրիկայի ու Աւստրիայի մէջ՝ խորամանկութիւնը։ Խորամանկը թէև շատ և շատ-շատ կը կը զարնէ, բայց միշտ ինքը կը յաղթուի. խելօքը առանց զարնելու կը յաղթէ։

Խելքը բարութիւն է, խորամանկութիւնը զօրութիւն։ Խորամանկութենէն յառաջացած առաջին պտուղները թէև

շատ են, բայց նրա վերջը միշտ կորստական է. խելքի արգասիքը ի սկզբան թէև չեն երևիլ, կամ շատ սակաւ կ'երևին, բայց գնալով կը շատանան։ Խորամանկ Թալէյրանի և Նապոլէօնի ոչ մի պտուղները չմնացին, բայց Վաշինգտոնի սխրագործութիւններէն առաւել կը շահուին Հիւսիսային Ամերիկայի Միացեալ-Նահանգները։

Խելքը և խորամանկութիւնը ուղեղի տարբեր ոյժեր են. մինը դէպի բարին ուղղուած, միւսը դէպի չարը, բոլորովին նման այն մարդուն, որ երկու որդի ունի, մինը բարի, շինող, օգտաբեր, իսկ միւսը չար, քանդող, վնասաբեր։ Աշխարհքը և պարագան խելքինն են և ոչ խորամանկութեանը։ Խելքը Աստուծոյ հրեշտակն է, խորամանկութիւնը սատանայի օձը։ Օձի օրհասը կրունկի տակն է։ Խելքի և խորամանկութեան մէջ չափազանց մեծ տարբերութիւն չըտեսնելը նշան է պակասամտութեան։

Ռ. Պատկանյան

## 22. ՄԱՅՐԱՔԱՂԱՔՈՒՄ ԿՐԹՈՒԱԾ ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴ

Տեղը եկաւ՝ Հայ է նա, տեղը եկաւ՝ այլազգի,
Իրօք ոչ այդ և ոչ այն է, այլ ծնունդ մի նոր ազգի,
Հագնվում է նա միշտ en grand, ման է գալիս à la chigue,
Ճաշ է ուտում, ճուր էք կարծում, chez Dussot կամ Dominigue.
Կարդում է նա Morning, Debats. ոչ Բազմավէպ, ah, fi, donc!
Ֆրանսերէն էլ կոտրատում, հայերէնն է movais ton;
Զարթնում է նա ուղիղ մէկին, անկողնի մէջ թէյ խմում։
Նախաճաշիկն է երեքին, գաղղիացի պանդոկում.
Վեցին քառորդ ճաշի ժամ է չնաշխարհիկ մեր հային,
Ոչ թէ ստիպուած է այդ անել, այլ որ վրան շատ խօսեն—
Ուշի ուշով հետևում է Պետերբուրգի լուրերուն,
Դերձակից էլ ճիշտ տեղեակ է новомодный շորերուն.
Թէև զուրկ է մուզիկայից, բայց опера սիրում է,
Бозіо-ի անուշ ձէնից նրա խելքը գնում է։
Պինդ խօսում է, ինչ որ կանխաւ feuilleton-ումն է կարդել,
Խօսքով աշխարհ կործանում է մեր պարոնը անարգել։
Նեպիր, Դունդաս ու այլ անձինք են նիւթ նրա զրոյցին.

Պախարակում է Hugo-ին ու սիրում է Դիկկէնսին։
Նա սիրում է, նա ուտում է ոչ իր բերնի ճաշակով.
Նրա խելքը feuilleton է, прейсъ-курантъ է ճաշակը,
Ու գիտութեանց ճեմարանը է որ ասես պանդոկը։
Թանի տարի քաշ է գալիս Պետերբուրգում այս կերպով,
Ու յետ դառնում իր հայրենիք, դատարկ խելքով ու ջիբով։
Այնուհետև պահանջմունքը նրա մեծ են անհեթեթ,
Միայն ինքն է խելօք, գիտուն, իսկ այլք կոպիտ ու տգէտ։
Այդ ի՞նչ զարմանք, որ յիմար ուզէ պատիւ իր անձին,
Նա յիմար է, որ անարժան տայ պատիւը յիմարին,
Բնութենէն խելագուրկին Պետերբուրգը խելք չի տալ,
Մեծ հունար չէ փողոցներում աննպատակ միշտ ման գալ։

Ռափ. Պատկանեան

## 23. ՄԱՅՐԱՔԱՂԱՔՈՒՄ ԿՐԹՈՒԱԾ ՀԱՅ ԱՂՋԻԿ

Շուշան, շուտով դէմքդ ծածկէ, ձիւն գոյն, թուխ մրոտած,
Տես, սիգաճեմ ման է գալիս հայ աղջիկը մեր կրթուած,
Վարդի գոյնը уже въ модѣ: то-ли дѣло блѣдный ликъ!
Այստեղումը блѣдный-ին դիփ՝ հայ աղջկունք, համ կնանիք,
Ի՞նչ է գաղտնին блѣдный-ութեան—այդ յայտնի չէ ոչ ոքին,
Միայն կասին, որ շուտուց է կաւիճն ունի բարձր գին։
Առաւօտ է, մեր աղջիկը հայելուց չի հեռանում,
Նորա ծնողք այնօր ճաշի гвардеецъ են սպասում.
Гвардеецъ է, լաւ, միտք արէք, հայ չէ անշնորհ ու տգէտ,
Гвардеецъ է՝ փայլուն շորով, ուսին դրած эполетъ.
Տուն կը մտնի. գլուխ կը տայ այնպէս սիրուն, շնորհաշուք,
Որ մեր կրթած հայ աղջկայ սիրտը կանէ тукъ-тукъ-тукъ.
Էնտուր համար նա հայելուց օրն ի բուն չի պուկ գալի.
Гвардеецъ-ին դուր չըգալը խիստ է նրան դգալի։
Ոչ լոկ դէմքով պիտի դուր գայ, այլ և անուշ խօսքերով,
Ի՞նչպէս, ի՞նչ կերպ, դուք կը հարցնէք, այդ էլ չգիտէ ոչով։
Բարձի տակը պահած ունի նա Ceorge Sande-ի roman-ը,
Գիշերները մօրից թաքուն կարդում է մինչ չորս ժամը։
Անհատական այդ աղբիւրից նա քամում է անդադար
Սիրոյ զգացմունք, սիրոյ խօսքեր – կանանց սրտին մխիթար։
Նա գտաւ իր идеалъ ը, այսօր ճաշին կը տեսնէ,
Նա իւր անտես սիրահարին, ում որ սիրտը տուել է։

Հայոց աղջիկ, հայոց աղջիկ՝ գնա առաջ մի վախիլ.
Блѣдный դէմքդ, շինծու խօսքդ ովին առևս չեն խաբիլ։
Гвардеецъ-ին դուրս չես գալի—ի՞նչ ափսոսանք, ի՞նչ վնաս,
Քեզ սիրահար гусаръ, уланъ, артилеристъ կունենաս։
Քու փորձ փորձիր նորից դուր գալ, անուշ ժպտա ու խօսէ,
Քսանմէկդ արդէն մօտ է, տես առաջիդ մեծ փոս է։
Բայց մի թողնիլ դու George Sande-ին, идеалъ-իդ մ'ուրանալ,
Թէ ոչ ջահիլ, գոնէ ծերուկ կառնու քեզ ռուս գեներալ.
Բայց զգուշացիր դու հայերից, գին չեն դնիլ, չեն սիրիլ
Քեզ, ինչպէս ցանկանում ես, դու քեզ հային մի մատնիլ։
Փորձ փորձեցիր ու դուր չեկար ոչ уланъ-ին, гусаръ-ին,
Քսանհինգդ մօտենում է, հա՜յ աղջիկ, վա՜յ քու հալին։
Հա՜յոց աղջիկ, հա՜յոց աղջիկ, գնա առաջ մի վախիլ,
Блѣдный դէմքդ, սիրուն խօսքդ ովին առևս չեն խաբիլ։
Տարիներդ ակօս ձգեց քու շնորհալի երեսին.
Վնաս չկայ,—подругъ-ներդ դորա համար ճար ունին,
Երբ որ տանն ես՝ մի հրամայիլ ոչոք քեզի մօտենալ,
Դուրս գնալիս ликъ-իդ ձգէ դու կրկնածալ հաստ вуаль
Հարցնողներից ուշի ուշով ծածկէ տարիդ ծննդեան,
Ու ամենին հաւատացուր, որ տասնութ ես տարեկան։

Ռափ. Պատկանեան

---

## 24. ՎԱՐԴԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆԻ ԵՐԳԸ

Հիմի է՞լ լռենք, եղբարք, հիմի է՞լ,
Երբ մեր թշնամին իր սուրն է դրել
Իր օրհասական սուրը մեր կրծքին,
Ականջ չի դնում մեր լաց ու կոծին,
Ասացէք, եղբարք հայեր, ի՞նչ անենք,
Հիմի է՞լ լռենք։

Հիմի է՞լ լռենք, երբ մեր թշնամին
Դաւով, հրապուրքով տիրեց մեր երկրին,
Ջնջեց աշխարհքից Հայկայ անունը,
Հիմքից կործանեց Թորգոմայ տունը.
Խլեց մեզանից թագ, և՛ խօսք, և՛ զէնք,
Հիմի է՞լ լռենք։

Հիմի է՞լ լռենք, երբ մեր թշնամին
Խլեց մեր սուրը—պաշտպան մեր անձին,
Մշակի ձեռքիցն էլ խոփը խլեց,
Այդ սուր ու խոփից մեր շղթան կռեց,

Վա՜յ մեզ, շղթայով կապած գերի ենք.
Հիմի է՞լ լռենք.
Հիմի է՞լ լռենք, երբ մեր թշնամին
Սոսկալի զէնքը բռնած մեր գլխին,
Կուլ տալ է տալիս արտասունք առատ.
Մեր գլուխը լալու Եփրատ ո՞ւր պըտրենք,
Հիմի է՞լ լռենք,
Հիմի է՞լ լռենք, երբ մեր թշնամին
Լիրբ պոռոտութեամբ լցրած իր հոգին,
Արդարութեան ձայնը հանած իր սրտից
Արտաքսում է մեզ մեր բնիկ երկրից.
Պանդուխտ, հալածեալ, եղբարք, ո՞ւր դիմենք,
Հիմի է՞լ լռենք.
Հիմի է՞լ լռենք, երբ մեր թշնամին
Անգոհ մեր բերած ծանր զոհերին,
Իւր լիրբ, նզոված ձեռքը կարկառեց,
Ազգութեանս վերջին կապը պատառեց,
Հայի կորուստը մօտ է, ի՞նչ անենք,
Հիմի է՞լ լռենք։
Հիմի է՞լ լռենք, երբ մեր թշնամին
Արհամարհելով մեր խօսքն ազգային,
Մեր եկեղեցուն ձեռնամերձ եղաւ,
Փայլազգեստ զառին մեզ գլուխ դրաւ,
Սուրբ խորան չունենք, արդ ո՞ւր աղօթենք.
Հիմի է՞լ լռենք։
Հիմի է՞լ լռենք՝ մարդիկ ի՞նչ կասեն,
Երբ մեր քարինք, ապառաժք խօսեն,
Ձե՞ն ասիլ որ հայք արժանի էին,
Այդ ստրկական անարգ վիճակին,
Մեր սուրբ քաջ նախնեաց գործերը գիտենք
Մինչև ե՞րբ լռենք.
Թո՛ղ լռէ մունջը, անդամալոյծը
Կամ որոց քաղցր է թշնամու լուծը.
Բայց մենք, որ ունենք հոգի ու սիրտ քաջ,
Եկ անվախ ելնենք թշնամու առաջ,
Գոնէ մեր փառքը մահով յետ խլենք
Ու այնպէս լռենք։

Ռափ. Պատկանեան

## 25. ՔԱՀԱՆԱՅ

Այն ո՞վ է կանգնած ամբիոնի վրայ.
Դողդոջուն ձեռքերն երկինք ամբարձած,
Գըթառատ աչերն լի արտասուքով,
Բազմութեան ուշքը դէպի նա դարձած.
Որին ամենը հայր են անուանում,
Ծանօթ, անծանօթ՝ հաւասար յարգում,
Որի լոկ խօսքը օրէնք է նոցա,
Սրտի գաղտնիքը նորան են յայտնում։
Քահանայ է նա՝ քաւող մեղքերու.
Միջնորդ Աստուծոյ մարդկան ազգի հետ,
Հովիւ է անխոնջ Քրիստոսի հօտին,
Երկնաբեր գանձին նա է արթուն դէտ։
Երբ մենք թաթախուած Ադամայ մեղօք
Եկանք այս աշխարհ լցեալ ցաւերով,
Ո՞վ մեզ սփոփեց իր սուրբ խօսքերով,
Ո՞վ սրբեց, մաքրեց մեր հին մեղքերը,
Կամ՝ երբ ժանտախտած, ընկած մահճումը՝
Մտատանջ, անյոյս մահ էինք խնդրում
Պանդխտի նման ամենից թողած՝
Ո՞վ մեզ առաջին հասաւ օգնութեան.
Կամ՝ երբ մոլորուած գառներու նման
Կոյր վազում էինք դէպի խորխորատ՝
Ո՞վ արդեօք այն օր փրկեց մեզ մահից,
Դիւական գըրքէն հանեց անարատ,
Կամ՝ երբ մեղսալի աչքներըս բընաւ
Ձենք համարձակւում երկինք ամբառնալ՝
Որի՞ն կանչում ենք միջնորդ հաշտութեան,
Ո՞ւմով յոյս ունինք թողութիւն ստանալ,
Եւ կամ՝ ըզբաղած ունայն գործերով,
Մոռցել ենք Աստուած, կրօն, սուրբ հաւատ։
Ո՞վ է մեր տեղը մեր մեղաց համար
Արտասուք թափում աչքէն յորդառատ։
Քահանան է այն, և միշտ քահանան,
Մեր միջնորդ, հովիւ քաջ և աղօթիչ,
Որբոց հայր, եղբայր աղքատ մուրացկին,
Արտասուաց սրբող, յանցանաց քաւիչ։
Եկ պատուենք, եղբարք, այդ սուրբ քահանան,
Սիրենք միշտ նորան մանկական սիրով,

Որ ամբողջ գիշեր իր որդոց վրայ
Պատրաստ է հսկել անքուն աչքերով։
Նա բոլոր կեանքը զոհեց մեզ համար,
Զուզեց փառք, պատիւ, զբօսանք աշխարհի,
Քանց սուրբ քահանան էլ ո՞վ է կարող
Արդեօք մեզ համար լինել հայր բարի։

ԴԱՄԱՌ-ՔԱԹԻՊԱ.—Ռ. Պատկանեան

---

## 26. ԱՐԱՔՍԻ ԱՐՏԱՍՈՒՔԸ

Մայր Արաքսի ափերով
Քայլամոլոր գնում եմ,
Հին-հին դարուց յիշատակ
Ալեաց մէջը պըտրում եմ։

Բայց նորա միշտ յեղյեղուկ,
Պղտոր ջըրով եղերքին,
Դարիւ-դարիւ խփելով,
Փախչում էին լալագին։

—Արաքս, ինչո՞ւ ձկանց հետ
Պար չես բռնում մանկական,
Դու դեռ ծովը չըհասած՝
Սըգաւոր ես ինձ նման։

Ինչո՞ւ արցունք ցայտում են
Քու սէգ, հպարտ աչերից,
Ինչո՞ւ արագ փախչում ես
Այդ հարազատ ափերից։

Մի՛ պըղտորիլ յատակդ,
Հանդարտ հոսէ խայտալով,—
Մանկութիւնը քու կարճ է,
Շուտ կը հասնիս դէպի ծով։

Վարդի թփեր թող ըռնին
Քու հիւրընկալ ափի մօտ,
Սոխակները նոցա մէջ
Երգեն մինչև առաւօտ։

Մշտադալար ուռիներ
Սառ ծոցի մէջ քու ջըրին,
Ճըկուն ոստըն ու տերև
Թո՛ղ թաց անեն տապ օրին։

Ափերիդ մոտ երգելու
Հովիվք թո՛ղ գան համարձակ,
Գառն ու ուլը քու վըճիտ
Ջուրը մտնեն միշտ արձակ։—

Մէջքը ուռցուց Արաքսը,
Փրփուր հանեց իր տակից,
Ամպի նման գոռալով,
Էսպէս խոսեց յատակից.

«Միամի՜տ, անմի՜տ պատանի,
Նիրհըս ինչո՞ւ դարևոր
Վըրդովում ես, նորոգում
Իմ ցաւերը բիւրաւոր։

Սիրելիի մահից յետ
Ե՞րբ ես տեսել, որ այրին
Ոտքից գլուխ պըճնուի
Իր զարդերով թանկագին։

Որի՞ համար զարդարուիմ,
Որի՞ աչքը հրապուրեմ,—
Տատերն ինձ են ատելի,
Տատերին ես օտար եմ...

Կար ժամանակ, որ ես էլ
Շքեղազարդ հարսի պէս
Հազար ու բիւր պըչրանքով
Փախչում էի ափերէս։

Յատակըս պարզ ու վճիտ,
Կոհակներըս ոլորուն,
Լուսաբերը մինչև այգ
Ջըրիս միջին էր լողում։

Ի՜նչըս մնաց այն օրից,
Ո՞ր ջրամօտ գեղերս,
Ո՞րը իմ շէն քաղաքից,
Ո՞ր բերկրալի տեղերըս։

Ա՜խ կենսատու իմ ջրով
Ափերիս մօտ կըկըզած՝
Իր նամազը կատարէ
Թուրք կամ պարսիկը նստած։

Մինչ իմ որդիք, — ո՜վ գիտէ —
Ծարաւ, նօթի, անտէրունչ
Օտար աշխարհ յածում են
Թոյլ ոտքերով կիսաշունչ...

Հեռո՜ւ, հեռո՜ւ, քշեցին
Բռնիկ ազգըն իմ Հայկեան,
Նորա տեղը ինձ տուին
Ազգ անկրօն, մոլեկան։

Դոցա համա՞ր զարդարեմ
Իմ հիւրընկալ ափերը,
Եւ կամ դոցա՞ հրապուրեմ՝
Ծըպրոտ, պըղծած աչերը։

Քանի որ իմ զաւակունք
Այսպէս կու մնան պանդուխտ,
Ինձ միշտ սըգաւոր կըտեսնէք.
Ա՛յս է անխաբ իմ սուրբ ուխտ։»

Էլ չըխօսեց Արաքսը՝
Յորձանք տուեց ահագին,
Օղակ-օղակ օձի պէս
Առաջ սողաց մոլեգին։

Ռ. Պատկանեան

Գրեցէք սրա բովանդակութիւնն արձակ.—Արաքսն ինչպէս է ներկայացուած այստեղ և ինչ է պատմում։ Համեմատեցէք այս Արաքսը Զանգուի հետ, ցոյց տուէք նմանութիւնն ու տարբերոյթը։ Համեմատեցէք նոյնպէս Гоголь-ի Днѣпръ-ի հետ։

## 26.* ՌԱՓԱՅԵԼԻ ԸՆԿԵՐՆԵՐԸ

Ռափայէլի դպրոցական ընկերներից էին իր հօրեղբօր որդին՝ Քերոբէն, Դոդոխեանը և Միրիմանեանը, երեքըն էլ Դորպատի ուսանողներ, որտեղ գրեցին իրանց առաջին երգերը. Քերոբէի գրչին է պատկանում մի քանի ուրախ ուսանողական երգեր, գրուած կամ թարգմանած ընտիր աշխարհաբարով. դրանց մէջ մանաւորապէս յայտնին է «Ինձ համար չէ» երգը։ Քերոբէն վերջը անուն հանեց որպէս հայերէնի յայտնի պրոֆեսոր Պետերբուրգի համալսարանում։

Դորպատեան երգերից ամենից աւելի ժողովրդականն է «Ծիծեռնակը», Դոդոխեանի գրած ընտիր աշխարհա-

բարով և մի դուրեկան ու գողտրիկ եղանակով։ Սրանց ընկերներից էր և Միրխմանեանը, որ գրեց «Հայոց աղջիկները»։ Այս բոլոր երգերն հրատարակուեցան Գամառ-Քաթիպայի «Ազգային երգարանում»։

---

## 27. ԻՆՁ ՀԱՄԱՐ ՉԷ

Ինձ համար չէ գարնան գալը.
Ինձ համար չէ ծառի ծաղկիլը.
Ուրախութեան սրտի գրգիռը,
Ո՛չ մի բերկրանք չեն ինձ համար։

Ինձ համար չէ կենաց բաղդը,
Ինձ համար չէ երջանկութիւնը,
Եւ մրայօն [1]) կուսի աչքերը,
Նոցա արցունք չեն ինձ համար։

Ինձ համար չէ փայլուն լուսնի
Անտառ ու սար լուսաւորելը,
Գարնան վարդի երգչի տաղերը,
Սոխակ ու վարդ չեն ինձ համար։

Ինձ համար չէ ծնողաց լացը.
Ինձ համար չէ՛ աղջկայ տխրելը,
Գերեզմանիս վրայ արտասուելը
Բարեկամաց չէ՛ ինձ համար։

Բայց ինձ համար կուգայ ժամը,
Կ'երթամ թշնամու պատերազմը,
Եւ մահառիթ սպանիչ գնդակը
Անդ պատրաստած է ինձ համար։

Թարգմ. Ք. Պատկանեան

Ի՞նչ գաղափար է քարոզւում այս երգի մէջ, գրեցէք արձակ։

---

[1]) Սև ունք։

## 28. ԵՐԳ ՊԱՆԴՈՒԽՏ ՊԱՏԱՆԵԿԻ

Ծիծեռնակ, ծիծեռնակ,
Դու գարնան սիրուն թռչնակ,
Դէպի ուր, ինձ ասա,
Թռչում ես այդպէս արագ։

Ա՜խ, թըռիր, ծիծեռնակ,
Ծընած տեղըս Աշտարակ,
Անդ շինիր քո բունը
Հայրենի կըտուրի տակ։

Անդ հեռու ալեոր,
Հայր ունիմ սըգաւոր,
Որ միակ իւր որդուն
Սպասում է օրէ օր։

Երբ տեսնես դու նորան
Ինձնից շատ բարև արա,
Ասա, թող նըստի լայ
Իւր անբաղդ որդու վրայ։

Դու պատմէ, թէ ինչպէս
Աստ անտէր ու խեղճ եմ ես,
Միշտ լալով, ողբալով
Կեանքս մաշուել, եղել է կէս։

Ինձ համար ցերեկը
Մութ է շրջում արեգը
Գիշերը թաց աչքիս,
Քունը մօտ չի գալիս։

Ասա որ չի բացուած
Թառամեցայ միացած,
Ես ծաղիկ գեղեցիկ՝
Հայրենի հողից զրկուած։

Դէ՜հ, սիրուն ծիծեռնակ,
Հեռացիր, թռիր արագ
Դէպի հայոց երկիրը
Ծնած տեղս — Աշտարակ։

(Դորպատ. 1854) Դողոխեան

Համեմատեցէք «Կռունկ»-ի հետ. ցոյց տուէք նմանութիւնն ու տարբերութիւնը։

---

## 29. ՄԻՔԱՅԷԼ ՆԱԼԲԱՆԴԵԱՆ

Միքայէլ Նալբանդեանը ծնուեց Նոր-Նախիջևան 1829 թ. նոյեմբերի 2-ին։ Հայրը՝ ուստա Ղազարը, կպրի առուտուր ունէր։ Ծնողները տուին նրան Տէր-Գաբրիէլ Պատկանեանին, որ ուսում տայ Միքայէլին։

Քահանան, որ ժամանակի ամենալուսամիտ անձերիցն էր, տեսնելով իր աշակերտի աշխոյժ բնաւորութիւնը և ընդունակութիւնները՝ առանձին ուշք դարձրեց նրա վրայ։ Մինչև 1840 թիւը մնաց նա իր վարժապետի մօտ և սովորեց հայկաբանութիւն, կրօնագիտութիւն, հայոց պատմութիւն և մասամբ ռուսերէն։ Շատ սիրում էր երգեցողութիւն, լաւ ձայն և նուրբ լսողութիւն ունէր։ Մատթէոս արքեպիսկոպոս Վեհապետեանը, որ առաջնորդ էր Նախիջևանի և Բեսարաբիայի, 1847 թուին եկաւ Նոր-Նախիջևան և տեսնելով Նալբանդեանի ընդունակութիւնը և գրագիտութիւնը՝ առաւ նրան իր մօտ և կարգեց քարտուղար։ Քարտուղարութեան պաշտօնը նա պարզերեսութեամբ կատարեց վեց տարի շարունակ և արդիւնաւոր ծառայութեամբ համակրութիւնը գրաւեց թէ հասարակութեան թէ առաջնորդի։ Գաբրիէլ քահանան 1850-ին հրատարակում էր «Արարատ» թերթը. իր ուսուցչի թերթումն է առաջին անգամ հանդէս գալիս Միքայէլը գրելով նախ գրաբար, ապա աշխարհաբար մի ոտանաւոր, ինչպէս իր մանկութեան ընկեր Ռափայէլը։ 1853 թուին Նալբանդեանը գալիս է Մոսկուա և այնտեղից՝ Ս.-Պետերբուրգ, ուր համալսարանում քննութիւն տալով՝ ստանում է ու-

սուցչութեան վկայագիր և Լազարեան ճեմարանի մէջ կարգւում է ուսուցիչ Հայոց լեզուի։ Սակայն այստեղ ևս հանգստութիւն չի գտնում Նալբանդեանը...։

Զգալով իր թերի կրթութիւնը նա սկսում է կանոնաւորապէս ուսանել եւրոպական լեզուներ և այն գիտութիւնները, որոնք անհրաժեշտ են համալսարան մտնելու համար, այնպէս որ կարողանում է Մոսկուայի համալսարանի բժշկական բաժնում պրօֆեսորի դասախօսութիւնները լսել և հասկանալ։ Բայց չաւարտած և քննութիւն չտուած՝ թողնում է համալսարանը և պարապում է գրականութեամբ։ 1858 թուականին գիտնական և անուանի ուսուցչապետ Նազարեանը հրատարակում է «Հիւսիսափայլ» օրագիրը և Նալբանդեանը լինում է նրա քանքարաւոր գործակիցներից մինը։ Նրա յօդուածները «Հիւսիսափայլի» գլխաւոր զարդն էին և ամեն օրագրի կարող էին պատիւ բերել... Այսպէս երկու երեք տարի շարունակ փառաւորապէս կրեց նա «Հիւսիսափայլ»-ի դրօշը, իր ճարտար գրչի տակ արդի աշխարհաբար լեզուն մշակելով։

1859-ին Նալբանդեանը մասամբ տկարութեան պատճառով և մասամբ բան տեսնելու դիտաւորութեամբ գնաց արտասահման, շրջելով Պօլիս, Վիէննա, Փարիզ և այլ քաղաքներ։ Այս քաղաքներում ծանօթացաւ և բարեկամացաւ հայերի հետ և իր՝ «Հիւսիսափայլին» ուղղած նամակների մէջ նկարագրեց նրանց վիճակն ու գործերը։ 1859 թուականի վերջերին վերադարձաւ Պետերբուրգ և սկսեց կանդիդատի վկայագիր ստանալու համար քննութեան պատրաստուիլ, և իրօք 1860 թ. Պետերբուրգի համալսարանում քննութիւն տալով՝ ստացաւ արևելեան լեզուագիտութեան կանդիդատի աստիճան։

Հնդկաստանի մեծատուն հայերը 90 – 100 տարի սրանից առաջ մեծագումար փողեր էին կտակել զանազան քաղաքների, սրանց կարգում և Նախիջևանի անունով, բայց մինչև 1860 թիւը այս ծանրակշիռ գործը մեր ազգի զանցառութեամբ բարձի թողի էր արուած, այսքան տարուայ միջոցում ոչ ոք յանձնառու չէր եղել այդպիսի

հեռաւոր ճանբորդութիւն անելու և գործն աւարտելու։ Նախիջևանցիք Նալբանդեանին ընտրեցին այդ գործին երեսփոխան և նա անցնելով Պօլիս, Պարիզ, Լոնդոն, և այնտեղից Պարիզի ու Սուէզի ճանապարհով հասնում է վերջապէս Կալկաթա ու մեծամեծ դժուարութեանց ու արգելքների յաղթելով հանում է կտակած փողերի մնացորդը... 1862-ին վերադառնում է Նախիջևան և մինչև պատրաստւում էր հաշիւ ներկայացնելու հասարակութեան՝ ձերբակալւում է և ուղարկւում Պետերբուրգ. երեք տարի նա մնաց բանտարկուած. բանտումն էլ նա պարապում էր գրականութեամբ. թարգմանեց Ղազար Փարպեցու թուղթը և կազմեց աշխարհաբարի քերականութիւնը, 1865 ին ազատուելով բանտից ուղևորուեց Սարատովի նահանգը, Կամիշին քաղաքը կումիսով բուժուելու։

Բայց այդպիսի անխոնջ պարապմունքը և այլ հանգամանքները շատ վնասակար ներգործութիւն ունեցան նրա արդէն խանգարուած առողջութեան վրայ, էլ առաջուայ աշխոյժն ու կենդանութիւնը վրան չէր մնացել. բոլոր բարեկամների ու ծանօթների սիրտը մորմոքւում էր՝ նայելով առաջուայ կրակոտ հայի ուրուականի վրայ։ Զորս ամիս դառն և անմխիթար օրեր անցնելով իբրև աքսորական, վախճանուեց մարտ ամսի 31-ին 1866 թ.։ Նրա մարմինը, իր ցանկութեան համեմատ, բերուեց Նախիջևան և մեծ հանդիսով թաղուեց Ս. Խաչ վանքի գաւթում։

Նալբանդեանը փորձել է գրականութեան բոլոր ճիւղերը, բանաստեղծութիւն, վիպասանութիւն, հրապարակախօսութ և քննադատութիւն. ամենից աւելի նրան առաջ[?]ղւում էր քննադատութիւնն. մանաւանդ հրապարակախօսութիւնը։ Նա մեր առաջին ամենատաղանդաւոր հրապարակախօսն էր։

Բանաստեղծականի մէջ նա թողել է մի հատիկ երգ. «Ազատն Աստուածը», որ համաշխարհային գրականութեան մէջ անգամ պատուաւոր տեղ կարող է բռնել. խիստ տարածուած և սիրուած է նրա «Մեր հայրենիքը», որ շատե-

րի կարծիքով թարգմանութիւն պիտի լինի, այն ինչ դա մի ինքնուրոյն գործ է։

Ինքնուրոյն գործերից ամենանշանաւորն է «Երկրագործութիւնը»։ Դրա մէջ Նալբանդեանն այն կարծիքն է արծարծում, որ մի անհատի, ինչպէս և ազգի բարեկեցութեան հիմքը տնտեսականն է, իսկ տնտեսականի հիմքը երկրագործութիւնն է։

Աշխարհաբար լեզուի հիմնադիրներից ու խոշոր մշակողներից մինն էր։ Նա ստեղծեց հրապարակախօսութիւնն ու քննադատութիւնը մեր մէջ։ «Մեռելահարցուկը», որ ֆէլիետօնի բնաւորութիւն ունի, սուր կերպով քննադատում է ժամանակակից վարք ու բարքերը ծաղրելով։

Համեմատեցէք սրա և Ռափայէլի կեանքը։

Գ. Վանցեան

---

## 30. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՆԴՈՒԽՏԸ

Հայ ազգը օր ըստ օրէ թողնում է իր երկիրները և կենդրոնանում է քաղաքներում։ Աղքատութիւնը ստիպում է նրան թողնել իր տունը, իր ընտանիքը, իր ամուսինը, իր զաւակները և գնալ Պօլիս կամ այլ քաղաք՝ աղքատութիւնից ազատուելու համար։ Բայց այդ տեղերում ևս նրան հանդէպ է դուրս գալիս էապէս նոյն աղքատութիւնը, զուցէ մէ փոքր քաղաքային ամոք կերպարանքով։

Բացի սրանից՝ ընտանեկան կեանքից զրկուիլը, դժոխային աշխատութիւնը՝ որով պիտի շահի նա մի քանի յաւելեալ ղուրուշներ, անտուն, վարատական և անմաքուր կեանքը, որ պիտի անցուցանէ նա զանազան իջևաններում, երբեմն-երբեմն պիտի դայ վաստակեալ, ուժաթափ, շատ անգամ և վիրաւորուած անդամներով, իսկ լաւաբացին նոյն եգիպտական ծառայութիւնը, որ սպասում է նրան։ Չկայ այն ընտանեկան մխիթարութիւնը, ամուսնու և զաւակների մտերմական և անմեղ հայեացքը, որ առանց ձայնի, առանց խօսելու՝ կարող են ամոքել ճակատագրի դառնութիւնը։ Եւ այսպէս, իբրև գրաստ, իբրև մեքենայ ծառայելով արտա-

սուելի օտարութեան մէջ տասն-քսան տարի, կամ մեռնում է այնտեղ, թողնելով իր ընտանիքը ծայրացեալ թշուառութեան մէջ, կամ վերադառնում է դէպի իր երկիրը։ Վերադառնում է... բայց ո՛չ այնպէս առոյգ և զուարթ՝ ինչպէս դուրս էր եկել այն տեղից, այլ հասակն առած, ուժաթափ և թօշնած։ Վերադառնում է իր տունը, երբ կորուսել է աշխատելու ընդունակութիւնը և յարմարութիւը։ Ուրեմն՝ վերադառնում է նա միմիայն իր ներկայութեամբ իր աղքատ և կարօտ ընտանեաց թիւը աւելացնելու համար։

Եւ ահա նրա տասն և ութը կամ քսան տարեկան որդին, որ աճել և զօրացել է իբրև մի ծաղիկ իր սեփական հողի վրայ՝ առնում է ձեռքը իր հօր պանդխտական գաւազանը և գնում է...

—Ո՞ւր բարով։

«Պօլիս, Տրապիզոն, և այլն և այլն»։

—Ինչի՞ համար։

«Աշխատելու և ընտանիքին օգնելու»։

—Աշխատելու և ընտանիքին օգնելու, – կրկնում է խօսակիցը անհնարին տխրութեամբ։

Անցնում է սրա վրայով մի քանի տարի, յանկարծ, այս որբեկը լուր է ստանում, որ իր ծերունի հայրը վախճանուել է, մայրը հիւանդ է։ Մի փոքր ժամանակից, և մայրը մեռնում է։

Պանդխտակիցքը գալիս են նրան մխիթարելու։ Մի երկու բաժակ գինի... մի քահանայ, մի «հոգւոց», պանդուխտի սիրտը պաղում է այն աշխարհից, ուր ծնուել էր... Ի՞նչ բանի համար վերադառնայ։ Նա գտնելու չէ իր տունը, իր ծնողները, նրա աչքին պիտի հանդիպեն երկու գերեզման և մի ամայի բնակարան, եթէ և այն չէ անցել օտարի ձեռքը, նա որոշում է մնալ պանդխտութեան մէջ, և այս որոշումով յօժարում է մինչև տակը խմել թշուառութեան բաժակը. այո, մնում է նա, բայց տունը մարեց։

Արդեօք որքան գերդաստաններ ընկնում են այսպէս։

Մ. Նալբանդյան

## 31. ՎԱՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

Հիմի է՞լ խօսենք, եղբարք, հիմի է՞լ,
Երբ ընտանեկան երկպառակութեամբ
Ուրիշ բան չունենք, բայց իրար դաւել,
Եւ սարսափելի ազգուրացութեամբ
Մեր նախնեաց ուխտը ոտքով կոխել ենք.
Հիմի է՞լ խօսենք։
Հիմի է՞լ խօսենք, երբ քաջն Վարդան
Վաթսուն հազարից հազարով մնաց.
Մինչ մնացել էր պարսից լոկ մատեան
Գունդը, մեր վաթսուն հազարի դիմաց,
Երբ մեր վատութեամբ ողջ կորուսել ենք.
Հիմի է՞լ խօսենք։
Հիմի է՞լ խօսենք, երբ օտարից շատ
Մենք ենք մեր ազգի արիւնը խմում,
Մոխրատնով լցրինք Դուինն, Արտաշատ,
Ծխի մէջ կորաւ խաչն եկեղեցուն,
Երբ այս ամենը մենք կատարել ենք.
Հիմի է՞լ խօսենք։
Հիմի է՞լ խօսենք, երբ հրապարակում
Պարսիկը առակ արել է հային,
«Եթէ ասորու նման աշխարհում
Չկայ մի վատ ազգ, բայց քան ասորին
Էլ վատ է հայը», մենք այս տանում ենք.
Հիմի է՞լ խօսենք։
Հիմի է՞լ խօսենք. երբ իշխանութիւն
Ծախում է անարգ հացկատակներին,
Մինչ ստրուկ մարդիկ նստան մեր գլխին
Եւ մեզ կարծում են հող իրանց ոտքին,
Ու մենք մեզ կոխող ոտքը լիզում ենք.
Հիմի է՞լ խօսենք։
Հիմի է՞լ խօսենք, երբ Լուսաւորչի
Բնիկ ժառանգի թեերը կտրած,
Անարգ պարսիկը՝ այս ու այն թեմի՝
Կարգում է տեսուչ ըստ իւր չար մտաց,
Եւ մենք դեռ «կեցցէ արքին» գոռում ենք.
Հիմի է՞լ խօսենք։
Հիմի է՞լ խօսենք, երբ ձեռք ենք տալիս,
Երբ ողջունում ենք մենք այդ չքերին,

Որ գռան շուն են և մեզ տեսնելիս՝
Սուտ դիմակները դնում երեսին,
Այդպիսիներին դարձյալ պատվում ենք.
Հիմի էլ խոսենք.

Էլ մեր երեսին մնաց մի կաթիլ
Ամոթի սուրբ ջուր, որ բերան բանանք:
Ոչ, թէ չենք ուզում հողից հող կորչել,
Թշնամու արիւնով մեր թրին ջուր տանք,
Ապա թէ խոսենք:

Միքայէլ Նալբանդեան

---

## 32. ԱՂՔԱՏ ԿԻՆ

Ցուրտը փչեց ձմեռ սաստիկ,
Ձիւնը ծածկեց գետինը.
Ամենայն մարդ մըտաւ իր տուն,
Պատըսպարուել ցրտիցը.
Ժամի դուռը դողդողալով,
Կանգնած է մի աղքատ կին,
Նըրա հանդերձ պատառ-պատառ,
Չունի շապիկ իր հագին։
Անհամարձակ նա իր ձեռքը
Պարզում է անցկացողին—
«Ողորմութիւն արէք, պարոն,
Անտուն, անտէր աղքատին»։

Ձեզ, սիրելիք, ասեմ ով էր
Այս խղճալի աղքատը.
Այն ցրտումը ոտաբոբիկ
Կանգնած ժամի դուռը։
Շատ ժամանակ դեռ չէ անցել.
Երբ նա փառքով ու պատւով
Ման էր գալիս փողոցներում
Իր սեփական կառքերով։
Այժմ վախով նա իր ձեռքը
Պարզում է անցկացողին—
«Ողորմութիւն արէք, պարոն,
Անտուն, անտէր աղքատին»։

Ամենայն օր նրա դռանը
Կանգնած էին շատ կառքեր,
Միշտ հացկերոյթ, ընթրիք, գինի,
Նուագարան ու տաղեր.
Ամենայն ոք ցանկանում էր
Լինել նրան բարեկամ։
Այժմ զրկուած ամեն բանից՝
Չունի անգամ հացի գին։
«Ողորմութիւն արէք, պարոն,
Անտուն, անտէր աղքատին»։

Ամենայն օր իր մարմինը
Անուշահոտ ջրերով
Լուանում էր, մազը սանրում
Կըրիայի նուրբ սանրով.
Նա հագնում էր բեհեզ, կերպաս,
Դիպակ, թաւիշ թանկագին.
Նա չըգիտէր ինչ ասել է
Կարօտութիւն արծաթին։
Այժմ անլուայ, մազերն արձակ,
Չունի հագուստ, թէև հին։
«Ողորմութիւն արէք, պարոն,
Անտուն, անտէր աղքատին»։

Ժամի դռան նա կանգնած է,
Աչքերը կոյր, վիզը ծուռ.
Նրա նախկին բարեկամքը
Չեն ասում նրան. «խըղճուկ,
Ե՛կ դու քեզ մօտ, մենք կ'ամոքենք
Քո վիճակի դառնութիւն,
Կը թուլացնենք ճակատագրից
Խիստ հարուածի սաստկութիւն»։
Նա տանում է տառապելով
Այս սոսկալի վըշտերին։
«Ողորմութիւն արէք, պարոն,
Անտուն, անտէր աղքատին»։

Մ. Նալբանդեան

## 33. ՄԵՍՐՈՊ ԹԱՂԻԱԴԵԱՆՑ

Զարմանալի բան է, թէ այս մարդու և Աբովեանի կեանքը ի՜նչքան նման են միմեանց։ Երկուքը ևս դուրս գալով Էջմիածնից գնում են օտար և հեռաւոր աշխարհներ և ուսանելով իսկոյն վերադառնում են Էջմիածին. ի՞նչու համար—մի դպրոց հիմնարկելու, ստացած լոյսը ազգի մէջ տարածելու համար։ Աբովեանը կատարեց երկրորդ անօգուտ փորձը, որի առաջինը կատարել էր Թաղիադեանցը։ Սա վերադարձաւ Էջմիածին Յովհաննէս կաթողիկոսի ժամանակին (1835 – 40) և աղաչելով պաղատելով, սորան միջնորդ և միասին բարեխօս բռնելով կարողացաւ որպէս գլխաւոր ուսուցիչ մտնել Էջմիածնի դպրոցը։ Բայց ի՜նչ ուսուցչութիւն. ի՜նչ եղաւ այս եռանդոտ ջանքի հետևանքը։ Կարճ միջոցում ստացաւ նա, ինչպէս սովորական է հայերի մէջ մի անհագին բազմութիւն թշնամիների, որոնցից գլխաւորք էին սինոդի պրոկուրոր Ղորղանեանցը և ատենադպիր Բարաշեանը։ Ի՜նչ զրպարտութիւնք, ի՜նչ հալածանք բարձրացաւ այնուհետև խեղճ Թաղիադեանցի վրայ։ Ցուրտ սենեակի մէջ փայտ չէր ստանում վառելու, ահա մինչև այս վիճակին հասաւ նորա թշուառութիւնը։ Ոչ ով տաք սրտով արժան չէր համարում նայել դպրոցի և հետևաբար նորա գլխաւոր վարժապետի կամ կառավարչի վրայ... վերջապէս տեսնելով, որ ոչինչ հնար չըկայ մնալու, ստիպուեց վերստին դուրս գնալ աթոռից։

Մի փոքրիկ անցք ճշգրիտ պատկեր է տալիս Թաղիաթեանցի վառ աշխուժի մասին։ Վերջին անգամ գնում է Յովհաննէս կաթողիկոսի մօտ հրաժարական ողջոյն տալու։ Վեհարանում գտնվում են հին ժամանակներից կաթողիկոսին ընծայ ուղարկուած յախճապակեայ թքամաններ։ Սոցանից մի փոքրը և գեղեցիկը կաթողիկոսի սարկաւագը շինել է թանաքաման։ Թաղիադեանցը տեսնելով այս փոխարկութիւնը թքամանի դէպի թանաքաման, անպատրաստից ասում է հետևեալ ոտանաւորը.

«Երբ թքաման, թանաքաման
Դարձեալ ետես այս՝ վեհարան,
Զի՞նչ այլ քեզ յոյս աստէն մնալ
Մեսրոպ Դաւթեան Թաղիադեանց»։

Խեղճ Թաղիադեանց, խաղաղութիւն քու հոգուն, չարչարվեցիր ազգի լուսաւորութեան համար, բայց չյաջողեցաւ քեզ, որպէս և շատերին տեսանել քո մարգարէական ազդու քարոզութեան պտղաբերութիւնը ազգի մէջ։

Մ. Նալբանդեան.

---

## 34. ԱԶԳԱՍԷՐ ՕՐԱԳՐԻ ՄԱՍԻՆ

Ես մինչև այժմ չեմ հասկանում թէ Թաղիադեանցը ի՞նչ խորհուրդով գործնական լեզու չընեց իւր մատենագրութեան հանդիսում հին և մեռած լեզուն։ Ազգասէր օրագիրը ևս հրատարակւում էր այդ լեզուով, Դժուար է հասկանալ այսպիսի անբնական գործը, մանաւանդ Թաղիադեանցի կողմից, որ եւրոպական կրթութիւն ստացած լինելով և այն մի գործնական ազգից, ինչպէս անգլիացիք են, չէ մտածել, թէ խօսելու կամ գրելու խորհուրդն այն է, որ ժողովուրդը կարդայ և բան հասկանայ։ Ինձ շատ ծանր է թւել Թաղիադեանցին այն հայերի կարգում, որ մտածում էին մեռեալը գործիք լինել, ժողովրդի մէջ կեանք ներս բերելու համար։

Մ. Նալբանդեան.

---

## 35. ՎԷՐՔ ՀԱՅԱՍՏԱՆՈՒ ՄԱՍԻՆ

Բարի յիշատակի արժանաւոր Աբովեանի, Վէրք Հայաստանի անունով գործը—է ազգային բանաստեղծութեան մի հարազատ գաղափար։ Ինձ մինչև այժմ չէր յաջողվել մի քանի բառ խօսել այդ աշխատութեան մասին։ Ահա այդ աշխատութեան մէջ մարմին է առել ազգի

հոգին, ազգի ներկայ վիճակը, ազգի հասկացողութիւնը։ Այստեղ, որպէս մի կախարդական հայելու մէջ ցոյց է տալիս բանաստեղծը հայոց ազգի ընտանեկան կեանքի անշուք և անմխիթար պատկերները. այնտեղ տեսնում ենք գիւղերի տանուտեարքը, ծանօթանում ենք նոցա հասկացողութեան հետ։ Բարեխիղճ բանաստեղծը հանդիպեցնում է մեզ հոգևոր մարդերի, խօսեցնում է նոցա իւրեանց հասկացողութեան պէս այս ու այն բանի մասին, պատկերացնում է մեր առաջև ունկնդիրների հասկացողութեան վիճակը, սահմանում է այն տխուր յարաբերութիւնը, որ կար նոցա մէջ։ Մենք տեսնում ենք, այդ ապօլոնեան հայելու մէջ հայկական կեանքի մեռած պատկերը, տեսնում ենք թէ ինչպէս այդ մեռելային դաշտի զանազան կէտերում խլրտում է առաքինութիւնը և հովուական կամ նահապետական ժամանակների հասկացողութեամբ ընդդէմ է գինուորվում այս կամ այն անիրաւութեան, թէ ինչպէս հալածւում է այս առաքինութիւնը և պատճառ է լինում բիւր կաթիլներով արտասուքի։ Նա ցոյց է տալիս Աղասու ընկերներով, թէ ոչ բոլորովին սառել է հայկական արիւնը Հայաստանի գաւառների երակներում, ցոյց է տալիս թէ մի հերոսի հրաւէր, ազգի իրաւունքների, կրօնի և ազատութեան անարգվելու վրէժը մի թշնամուց հանելու համար, դեռ ևս տեղ գտանում է ազգի երիտասարդների սրտի մէջ, ցոյց է տալիս մեզ ազգի ընդհանուրի վհատեալ և յուսահատ դրութիւնից յառաջացած սառնութիւնը դէպի Աղասու ընկերքը, նոցա կիսակիրտ կանացի ցաւակցութիւնը այս կտրիճներին, որով հասկացնում է Աբովեանը թէ Աղասու ընկերների հոգին ընդհանրական չէ բոլոր ազգին, թէ այս ջերմարիւն տղամարդիկը շրջապատված էին սառնարիւն մարդերից, որոնց աչքում ամենայն բարոյական խնդիր կորուսել էր իւր արժանաւորութիւնը և որոնց միակ քաջութիւնը ամփոփվում էր այն բանի մէջ, որ կարող էին լալ, ողբալ և մորմոքվել, առանց որոնելու այդ դրութիւնից դուրս գալու հնարը։ Տեսնում ենք այն հայելու մէջ պարսիկների

բարբարոս վարեցողութիւնը մեր խեղճ ազգի հետ, մեր ազգի հարստահարված վիճակը, այստեղ ցոյց է տալիս բանաստեղծը այն յարաբերութիւնը, որ մի անկիրթ ազգ կարող էր ունենալ դէպի բռնակալ իշխանութիւն։

Վէրք Հայաստանին ոչ թէ ռամկի ոճով ռամկի համար է գրուած, ինչպէս ասում է Արեւմուտք օրագրի խմբագիր Ոսկանեանը, այլ բոլոր ազգի համար, այնտեղ կայ ուսանելիք ոչ միայն շինականի համար, այլ և քաղաքացու, այլ և հայոց կիսատ թերատ ուսումնականների համար ևս։ Հայոց ազգը կորուսած լինելով իւր քաղաքականութիւնը, անհետացած լինելով տոհմական ազնուականութիւնքը տուների, ռամիկը ևս չկայ, որ կարող է լինել այնտեղ միայն, ուր կայ ազնուութիւն։ Ազնուութիւնը հարստութեան վերայ չէ, և ոչ նաև ռամկութիւնը աղքատութեան վրայ. այս բոլէխ մեր ազգի ամեն մի անդամք հաւասար են իւրեանց մէջ։ Ազնուական և ռամիկ չլինելով մեր ազգի մէջ, չունենք և այդ կացութիւնների սեպհական բարբառներ, հին և մեռած գրաբար լեզուն ազնուական չէ և ոչ կենդանի ժողովրդականը ռամկական, ինչպէս մի քանի վայր ի վերոյ մարդիկ ասում են։

Մ. Նալբանդեան

---

## 36. ԵՐԳ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ

Ազատն-Աստուած այն օրից
Երբ հաճեցաւ շունչ փչել.
Իմ հողանիւթ շինուածքին
Կենդանութիւն պարգևել։

Ես անբարբառ մի մանուկ
Երկու ձեռս պարզեցի
Եւ իմ անզօր թևերով
Ազատութիւնը գրկեցի։

Մինչ գիշերը անհանգիստ
Օրօրոցում կապկապած՝
Լալիս էի անդադար
Մօրս քունը խանգարած։

Խնդրում էի նորանից
Բազուկներս արձակել.
Ես այն օրից ուխտեցի
Ազատութիւնը սիրել։

Թոթով լեզուիս մինչ կապերը
Արձակուեցան, բացուեցան,
Մինչ ծնողքս իմ ձայնից
Խնդացին ու բերկրեցան։

Նախկին խօսքն որ ասացի,
Չէր հայր կամ մայր կամ այլ ինչ.
«Ազատութի՛ւն», դուրս թըռաւ
Իմ մանկական բերանից։
«Ազատութի՞ւն», ինձ կրկնեց,
Ճակատագիրը վերևից,
«Ազատութեա՞ն դու զինուոր
Կամիս գրուիլ այս օրից։

Ո՛հ, փշոտ է ճանապարհդ,
Քեզ շատ փորձանք կ՚սպասէ.
Ազատութիւն սիրողին
Այս աշխարհը խիստ նեղ է»։
—Ազատութի՛ւն,—գոչեցի,
Թո՛ղ որոտայ իմ գլխին
Փայլակ, կայծակ, հուր, երկաթ,
Թո՛ղ դաւ դնէ թշնամին։

Ես մինչ ի մահ կախաղան,
Մինչև անարգ մահու սիւն,
Պիտի գոռամ, պիտ կրկնեմ,
Անդադար, ազատութի՛ւն։

Մ. Նալբանդեան

Արդեօք հեղինակի կեանքը համապատասխա՞ն է եղել այն գաղափարներին, որոնք արծարծուած են այստեղ։

Ի՞նչպիսի ազատութեան է ձգտում հեղինակը. հասարակակա՞ն թէ անհատական։

---

## 37. ՊԵՐՃ ՊՌՕՇԵԱՆ

Ծնուել է Աշտարակում 1837-ին. ուսել է Ներսիսեան դպրոցում, ապա եղել է ուսուցիչ գրեթէ մեր բոլոր գաւառական քաղաքներում, ուր թէ դպրոց է հիմնել, թէ թատրոն, և եռանդուն մանկավարժութիւն է ունեցել 40 տարիների ընթացքում մեր բոլոր հասարակական գործերում, աշխատակցելով միևնոյն ժամանակ թերթերին։ Եղել է նաև թեմական տեսուչ, իսկ դպրոցները փակուելուց յետոյ պարապել է լուսանկարչութեամբ և շարունակ կռուել է կարիքի և նեղութեան դէմ, ծանրաբեռնուած մեծ ընտանիքով։ 1899 թ. հասարակութիւնը տօնեց նրա յօբելեանը, Պռօշեանը մեռաւ 1907 թ. նոյեմբ. 27-ին և թաղուեց Խօջիվանքում մեծ յուղարկաւորութեամբ։—Պերճ Պռօշեանը մեր ամենաբեղուն գրողներից է. Նրա վէպերի նիւթըն են հայ գիւղը, մանաւանդ հայրենի Աշտարակը իր նիստ ու կացով, սովորութիւններով, լեզուով, աւանդու-

թիւններով, չարով ու բարիով։ Դրա համար էլ այդ վէպերը պարունակում են հարուստ նիւթ ազգագրութեան և լեզուական հարստութեան։ — Նրա գլխաւոր երկերն են. «Սօս և Վարդիթեր», «Կռուածաղիկ», «Հացի խնդիր», «Շահէն», «Ցեցեր», «Բղդէ», «Յունօն» և այլն.—Նա Աբովեանին հետևելով՝ շատ անգամ գրում է այնպէս, ինչպէս խօսում է ժողովուրդը Աշտարակում՝ անխտիր գործ ածելով թուրք և թաթար բառեր։ Չնայելով դրան, Աբովեանից յետոյ, արարատեան բարբառի նրբութիւններն ու կատարելութիւնները ոչ ոք այնպէս ճիշտ և վարպետօրէն չի ներկայացնում, ինչպէս Պռօշեանը։—Նրա ներկայացրած տիպերը գիւղական կեանքից, կարծես լուսանկարած լինին, այնքան նրանք ճիշտ են և իրական։

Պռօշեանն Աբովեանից մի քայլ առաջ անցաւ նրանով, որ նա աւելի իրական և կենդանի մարդիկ է տալիս. Ագասու նման ռոմանտիկ հերոս նա չունի։ Հացի խնդրի մէջ նա դուրս է բերում Միկիտան Սաքօ-ին, որ իր ճիրանների մէջ առած ամբողջ գիւղը ծծում է նրա արիւնը. դուրս են բերուած կաշառակեր և անարժան դատաւորները ու կառավարիչները, գիւղի տգէտ քահանան, տանուտէրը, գզիրը, եսաուլը.—բարի և հիւրասէր գիւղացիները, չարի և հրէշաւորների հետ։ Աբովեանի հայ հերոսների մէջ վատ հայ չկայ, բոլորն էլ լաւ են. Պռօշեանը տալիս է և՛ լաւը և՛ վատը։ Նրա վէպերը զուրկ են գեղարուեստական ամբողջութիւնից, որովհետև սաստիկ անտեղի և աւելորդ նիւթեր են պարունակում, շնորհիւ միջանկեալ բազմաթիւ շեղումների, որոնք մեծ մասամբ ազգագրական նշանակութիւն ունին։ Գիւղական վաշխառուների տիպը նա աւելի լայն ծաւալով նկարագրել փորձեց «Ցեցեր»-ի և նաև «Բղդէի» մէջ։

Այդ աւելադրութիւնները անշուշտ կապրեն որպէս կենդանի հայ լեզուի և հայ սովորութիւնների ճշմարիտ նկարագրութիւնը. նրա վէպերից մի քանիսը թարգմանուած են ռուսերէն և գերմաներէն։

Հայ թատրոնի և օրիորդաց դպրոցի հիմնադիրներից մինն է եղել Պռօշեանը։ Գր. Վանցեան

## 38. ՁՄԵՌ

Ձիւն ձմեռ։ Երկու կարճ խօսք ասա՝ ու երեք չորս երկար ու ձիգ ամիսներ մտիր տունդ, դուռը պինդ փակիր, տաք բուխարու տակին, կամ տաւարի շնչով տաք բաղնիս դարձած գոմի օդայումը մի կողքի վրայ ձգուիր, արջի նման երեք քառասունք չլայ մտիր։

—Ձիւն ձմեռ. ասում է աշխատանք սիրող երկրագործը և մտքամոլոր տարակուսում։ Ի՞նչ պիտի անենք երեք չորս երկար ամիսներ տխուր տրտում, մտածում է նա, ջանս ցեց է մտել, գործելու սովոր եմ, աշխատել եմ ուզում, գործ չկայ։ Ձիւնն եկել, հողի երեսը պինդ ծածկել է. պարզիկան ու սառնամանիքը կանաչ ու զուարթ ծառերին մերկացրել, շինել են չոր ցախ, ցուրտն ու բուքը իմ աշխատաւոր չորսոտանի ընկեր եզանը, իմ գոմշին իմ ոչխարին, իմ կթան ու լծկանին կապերի մէջ է կոխել ու չի թողում, որ երկնքի երես տեսնեն, կէս գազի հաստութիւնով սառուցը մեր գոչգոչան գետերին, մեր կչկըչան առուներին պապանձացրել է. գործ չի մնացել՝ գործենք, անելիք չկայ՝ անենք, ծոյլերի վրայ ծիծաղում ենք, էն օրի ենք հասել, որ ուզենք, չուզենք՝ պիտի մենք էլ ծուլանանք։

—Է՜յ խելքի պառւկ, էդ ի՞նչ ես ասում, յուսահատութեան դուռը հասած ժրաջան ընկերի երեսը քորում, յանդիմանում է նրանից աւելի աշխարհ տեսած, մարդամիջի զանուած, ծեր պապերի խրատները ականջին գինդ արած մի ուրիշ աշխատաւոր. ախար դու չգիտե՞ս որ աշխարհքիս դիրքն ու կանոնը բոլորը Ստեղծողի կողմից չափած ձևած է. մեռնիմ Ստեղծողի ողորմութիւնին, ի՞նչ կը լինէր շունչ-կենդանու հալը, եթէ ձմեռը չլինէր։ Տարին 12 ամիս եզը կը դիմանա՞ր, եթէ ինն ամիս լծի ու բեռան տակ չարչարուելուց յետոյ՝ մի երեք ամիս չհանգըստանար. Ջրաղացի քարը, որ պինդ քար է, էն է՜լ իրար շատ քսուելուց մաշւում է, միս ու արիւնից շինուած մարդ,

թէ անասուն, եթէ ձմեռը չհանգստանային, երկու տարումը կը մաշուէին, ոյժ ու զօրութիւնից կընկնէին ու էլ պէտք չէին գալ։ Ծառ ու թփի, խոտ ու ծաղկի արմատները հողի տակին են. աշնանացան ցորենն աշնան վերջին մի քիչ կանաչել, փչչել, բարձրացել էր. ցելը գութանած, թողուած է, թէ որ ձիւնը չգար, վերմակի պէս Աստծու ստեղծած էդ բոլոր կանանչեղէն ու արմատեղէնը չծածկէր, ցուրտը սուր ասեղի պէս գետնի սրտումը կը թաղուէր, ողջը ցրտատար կանէր. էս օրուայ համա ձիւնը թէ որ գարունքը չհալուէր, ջուր չկտրուէր, քո ծառ ու տունկի արմատները չխակղացնէր—քո ինն ամսուան աշխատանքդ փուչ կը լինէր։

Դէհ, շտապենք, կրկնում են միմեանց պարզամիտ և աշխատասէր գեղջուկները, քանի տաքութիւնը հողի մէջ չի մտել, քանի ամբարներս չեն դատարկուել, քանի կարասներիս մէջ կատար տաքացնող Քրիստոսի արիւնը՝ վրան նայելուս՝ երեսներիս ծիծաղում է, քանի ալանի կաթը (արաղ) տկերի մէջ վլվլկում է, քանի կրար հետ նստել վեր կենալու, սուփրէն բաց անելու, սուփրէն չէն անելու ժամանակ ունինք, Աստծու տուած ազատ օրերից օգուտ քաղենք, Աստծու անունով եկած չքաւորին ու տնանկին կշտացնենք, հոգևոր և մարմնաւոր աշխատաւորներին շահենք ու սրտերս, ուրախ, խղճմտանքներս հանգիստ՝ ուտենք, խմենք, պարենք, երգենք, ամէն խէթ ու նախանձ մեր ներսից դուրս շպրտենք, որ կարողանանք մեծ պասի երկուշաբթի օրը պարզ սրտով, պարզ երեսով ժամ գնալ, «Լուացարուք, սրբեցարուքը» լսել ու էդ օրուանից սկսել մեր հոգու ճանապարհը մաքրել։ Եւ երբ որ աշխատանքի օրերը կըբացուին, մեր կապած տաւարը դաշտը հանենք, գութանը սարքի քցենք. բահ, հօտոց, կացին, ցաքատ, մանգաղ ու ամէն տեսակ դաշտի ու այգիների գործիքներ սրբենք, սրենք, պատրաստենք, որ ինչ ժամանակ օրը կը գայ բարին հետը՝ երեսներիս խաչ հանենք, մեր հալալ աշխատանքին կենանք։

Եւ ամակտար հողագործն այլևս տխուր չէ. նա ձմեռ-

Նամտին իր ձմռան կատարելիք ծրագիրը կազմեց և մինչև գարնանամուտը անթերի կատարեց։

Հմի, ընթերցող, քեզ եմ հարցնում, մեր նկարագրած եղանակից ի՞նչ դուրս եկաւ։

Քո կարծիքը չգիտեմ, բայց ես եկայ այն հաստատ համոզմանը, որ աշխարհս իր ամբողջութեամբ կեանք է և տարին իր չորս եղանակով կեանքի գործօնն է։

Պերճ Պռոշեան

Համեմատեցէք Աբովեանի «Ձմեռ» յօդուածի հետ, որի՞ նկարագրութիւնն է զօրեղ. որի՞ ոճն է հարուստ, ո՞րն է աւելի ճիշտ և իրական։ Կա՞յ արդեօք նմանութիւն այս երկուսի ոճի մէջ։

---

## 39. ԳԱՐՈՒՆ

Գարուն է։ Օ՜հ, ինչքան սրտեր յանկարծ բաբախեցին այս կախարդիչ անունը լսելիս։ Ի՜նչ ուրախութիւն, որ կողմը կուզես՝ աչքդ դարձրու՝ սար ու ձորեր, դաշտ ու անտառներ, շնչաւոր ու անշունչ—բոլորն այսօր այն չեն, ինչ որ երէկ մէկէլ օրը։ Ո՞ւմ հոգսն է, թէ դեռ մարտի սկզբին ենք, ո՞վ է բանի տեղ դնում, թէ երկնքի սիրելի, երկնքի հետ քաղցր համբոյրներ տուող, երկնքի հետ օր ու գիշեր ասուլխսի բռնուած ոտները՝ սպիտակ պատանում կոլոլուած դեռ խռմփում են ու վախտ-վախտ իրանցից բաց թողած կատաղի քամիներով՝ քիչ է մնում, աշխարհքը տակով անեն։ Ո՞վ է գիժ մարտի փոփոխական բնութիւնից մազաչափ երկիւղ անում։ Թէկուզ դաշտերի երեսին թզաչափ ձիւնը նստած է՝ Աստծու ստեղծած բոլոր արարածների համար՝ ոնց որ զամբարակի ուղտի ականջին մոծակի բզզոցը։

Համեցէք, դուրս արի դաշտը, երեկուան երկաթից պինդ ձիւնը մատով շարժիր, մէկ էլ կը տեսնես մատդ մէջը թաղուեց. խեղճն ալիւրի թեփի պէս փխրցել է ու թէ որ կանգնածդ տեղը քիչ արեկող է, կասկած մի տանիր, ձիւնը յետ տուր։—Ըհը, էս ի՞նչ է, տօ, ձիւնի տակից կանաչ խոտի ծլեր են գլուխները խլուշ-խլուշ դուրս

ցել., Փոքրիկ մեռնիմ, Աստուած խոտի տերևների մէջտեղից ի՞նչ սիրուն դեղին ծաղիկ է կոկոնը պատռել ու բացուել։

—Չեմ հաւատում, ի՞նչ էք ասում, ձիւն ու ծաղի՞կ։

—Այո՛, սիրելիս, պինդ բռնիր, բաց չթողնես, ձեռքով խառնածդ ձիւն է, իսկ տակինը ծաղիկ, իսկական ծաղիկ։ Հապա երկու բառը իրար հետ միացրու, տես, ի՞նչ դուրս կը գայ —ձնծաղիկ—գարունքը մեզ աչքալոյս տուող ծաղիկ—ձնծաղիկ։

Էդպէս է գարունը. էս օր ցուրտ, էգուց՝ տաք, էս օր մրրիկ ու մառախուղ, էգուց արև-արքայութիւնը, գիժ մարտի քամիների շնորքը մեծ է, փչեց թէ չէ, ամպ ու թուխպ սրտաճաք կըլինին, գլուխ կառնեն, կը կորչեն, կապուտ երկնքի միջից Աստծու աչք-պայծառ արևը կը փայլի, ձիւն ու սառուցի հոտն ու հետքը չի թողալ։ Բոլորը կը հալուին, ջուր կը կտրուեն, գետ ու ձորերը կը լցուին, չորս ամսուան մեռած երկիրը չորեքօրեայ թաղուած Ղազարոսի նման յարութիւն կառնի։

Դէհ, հիմի կացէք ու խնդացէք, Աստծու ստեղծուած արարածներ, գութանդ բան քցի՛ր, աշխատասէր ռանչպա՛ր, հողը փափկել է, վարի՛ր ու ցանի՛ր։ Հօտդ դաշտը քշի՛ր, դաշտի սիրահար հովիւ, կանաչը դաշտի երեսին ցնծին է տալիս, արածացրու, հօտերդ գիրացրու, մսակալացրու։ Այգուդ թաղը վե՛ր տուր, խաղողիդ մատները հողի տակից հանի՛ր, ժրաջան այգեպա՛ն, կեռակտուց հօտոցդ սրի՛ր, կուզրակիդ մատերն էտի՛ր, կտրատի՛ր ու պապերի ասած յոյս ներշնչող առածն երգի՝ «Մարտի ինը, մատը կտրի քցի ձիւնը» եղանակով ուրախ-ուրախ երգի՛ր։

Բանջարքաղիներդ բան քցեցէք, ողջ ձմեռը տներում փակուած, ազատ ու սիրուն աղջիկներ, հարիւր տեսակ բանջարեղէններ՝ գառան դմակից փափուկ ու թարմ ձեզ են դաշտերում սպասում, քաղեցէք երգելով ու խնդալով, գոգնոցներումդ պինդ կապեցէք, ցած դրէք, կանաչ խոտի վրայ բոլորվանքի ընկէք, ձեռք ձեռքի, կուռ կուռի տուէք, մի կողմից երգեցէք, մի կողմից եալլի պարեցէք ու իրիկնապահին՝ կչկչալով, հռհռալով, ձեր սիրած տղէքանց ա-

նուններդ ափաշկարայ իրար յայտնելով՝ տուն վերադարձէք։ Մի՛ վախէք, ոչ գայլ ու գազան կըհամարձակուէին ամայի դաշտումը ձեզ մօտ գալու, ո՛չ անիրաւ թուրքերը սիրտ կանեն ձեր շուքին մօտիկ տալու։ Ա՛յ, դուք սատանի եափ ոտնե՛ր, հօ լաւ գիտէք, որ պահապան հրեշտակներդ խանչալները կապած, քարերի տակից, քարափների ճեղքերից, ձորաթմբերի փոսերից ողջ օրը ձեզանից աչք չեն հեռացնում, ձեր գաղտնիքն իմանում են, ձեր երգերով մայիլ եղած՝ ձեզ վրայ հսկում են։ Ի՞նչ ամաչեցիք ու կարմրեցիք, դուք որ սիրտ ունիք, դուք որ սիրում էք, հապա ազապ տղէքը մի՞թէ քար ու պողպատից են, չէ՞ որ նրանց կրծքի տակ ձեր սրտերի պէս մի մի՛ն պստիկ բռնցքաչափ պինդ մսեր ձեր սիրտը տպտըպում, տրոփում են։ Վա՜յ էն գայլ ու գազանին, էն թուրք աւազակին, որ ձեր շուաքիցը եօթն օրէն ճանապարհ հեռու չի փախչիլ. մեր կտրիճ երիտասարդների ձեռից՝ նրանց օրն ու արևը սև կըլինի։

Այո, այո, գարուն է և գարունը տարուան չորս եղանակներից աւելի սիրելի, աւելի կեանք տուողն է։ Ծառ ու ծաղիկ, երգող ու չերգող թռչուններ, ուլ ու գառներ գարնան կեանքի բերքն ու պտուղն են, մարտ, ապրիլ… մայիսը տարուան 12 ամսի անմեղ մանկութիւնն են։ Կիսամեռ ծերունին էլ գարունը դաշտ է դուրս գալիս, լիքը կրծքով անուշ օդ ու անուշ հոտ է ներս շնչում ու երիտասարդանում, կեանք է առնում, որովհետև գարուն է։

Իսկ այս բոլորի առիթը յուսահատեցնող ձմռան սաստկութիւնն է։ Գարունը յոյս է. գարունն էն բժիշկն է, որի դեղով շունչը փչող հիւանդը յոյս ունի, թէ պիտի նորից առողջանայ, նորից կեանք վայելի։ Այդպէս էլ լինում է. հաւատը հրաշքներ է գործում, յոյսը երբէք անհետևանք չի մնում։

Թող ուրեմն ամեն ճնշուած ու հարստահարուած, ամեն խեղճ ու տնանկ յուսով ապրի և յոյս ունենայ, թէ իրան

սեղմող, իրան կուչ ածող, իր կեանքի թշնամի ձմռան դէմ իրան թև ու թիկունք, իրան պաշտպան կը լինի կեանք տուող գարունը։

Պերճ Պռօշեան

---

## 40. Ա Մ Ա Ռ

—Ո՞վքեր են նրանք, որ մի մին սփռոց կապոց են արել, գլխներին դրել ու դաշտի երեսն ընկած՝ գնում են։

—Նրանք մեր գիւղի ջահել ու սիրուն հարսներն են, մեր տների տնարար ու աշխատաւոր տանտիկին-ները։ Նրանք առաւօտը վաղ վեր են կացել, իրանց տա-նու գործը վերջացրել, իրանց սկեսուրների եփած փլաւը մեծ պղնձներով սուփրի մէջ կապել, գլխներին դրել, մի ուրիշ կապոցով էլ թղթից սպիտակ, ջուր ցնցրդած լա-ւաշներ, աղը դրած, Սևանայ ծովի ախորժակ բաց անող կողակ ձկան խոտոցներ (կտոր), մի քանի կտոր պանիր հացերի մէջ փաթաթել, իրանց առջևից վազող 10—12 տա-րեկան երեխաների շալակներն են կապել ու հարևան հա-րևանի հետ քաղցր զրոյց անելով, տժժան շոքը չհարցնե-լով՝ շտապում են արտերը։

Աչքերը լո՜յս հնձուորների. Նրանք հեռուից տեսան ի-րանց համար ճաշ բերողներին, մանգաղ, գերանդի դէն շպրտեցին ու բոլորվանքի շարուեցին արտի ափերի կա-նանչների վրայ։

—Կերէք, ձեզ մատաղ, հալալ ձեր մօր կաթի պէս իմ բէյվանու (տանտիկին) ձեռով եփած բուղալի փլաւը. դա-լար մնա՜յ կռներդ…

Արևը թէպէտ այրում-խանձում է ամեն ինչ, բայց արևի թէժութիւնից վախեցողները կեանքերը հովերում անցկացրած քաղաքացի վաճառականներն են ու աղա մար-դիկը. առուտուրականները հիմի խանութներում թմրած՝ քնի ու աչքերն ուտող ճանճերի հետ են կռիւ տալի և սպասում, թէ որտեղից որտեղ մի կորած մոլորած գիւղա-ցի մուշտարի տուն պիտի ընկնի, որ խաբեն՝ փտած ապ-

բանքները գլուխը կապեն՝ գըպանը դատարկեն. աղա-
գրագիրներն էլ սարերի ու անտառների հով ու զովերումն
են անգործութիւնից օրերը մթնացնում։ Իսկ մեր չարքաշ
մշակն արևի տաքութիւնից երկիւղ անողը չի. հակառակի
պէս՝ քանի արեգակը զոռ է անում, նրանք կրակ են կը-
տրըում ու իրանց ներսը բորբոքուող բոցով սկսած գոր-
ծերը լափում, վերջացնում։

Էստեղ՝ կալ են կասում, էնտեղ՝ խոտ են հնձում, կամ կրում. այգիներում հօ՝ աչքդ բարին տեսնի, սկսել են իրար ետևից հասնիլ թութը, կեռասը, բալը, ծիրանը, շլոր ու դամբուլը, շաքարկենի, մեղրակենի, թթուաշ ու քաղցր դեղին ու կարմիր խնձորները, մալաչի ու քօլի տանձերը. էս բոլորը թափ տալ, քաղուել, ժողովուել են պահանջում. խելքը հացի հետ է կերել ուրեմն գործատէրը, որ շոքից վախենայ, կռները ծալի, պարապ նստի։

Կեանք է, կեանք ամառը՝ էն էլ՝ մի ուրիշ կեանք։

Պերճ Պռոշեան

---

## 41. ԱՇՈՒՆ

Փառք Աստծու, ամարներս բերնէ բերան տըրըզած են, մառանս մինչև շէմքը ձեռիս աշխատանքով լիքն է, կալ ու կուտս հաւաքել—վերջացրել եմ, եկող տարուան ցելերս արած պատրաստ են, քաղցուս կարասներում քաղցրութիւնից սճպճում, եփ է գալիս. մի քանի օրից եփը կը նստի, մաճառ կը դառնայ, կատարներս կը տաքացնի, իւղ ու պանրիս. պաս ու ուտիսուան բռնուածքներիս ու թթուեղէնիս տարեկան պաշարը կապել եմ, ընչի՞ չեմ ուրախանայ։

Ահա այն խօսքերը, որ առատ տարուայ աշնանը լըսւում են ջանասէր գիւղացու բերանից։ Այո, ռանչպարի, այգեգործի, անասնապահի ինն ամսուան քրտինքի կաթիլներն աշնան վերջերքին մարգարտի հատիկներ են. ալմաստ քարի շափաղ տուող ակներ են. գիւղացին իր աշխատանքի

*պտուղը քաղել է, նրա հոգին հանդարտ, նրա սիրտն ուրախ է։*

*Արդարև, ռանչպարի աչքը լի է, ձեռքն առատ, երբ իր աշխատանքն օրհնուել, իր ջանքերը պսակուել են։ Այդպիսի աշնանը՝ գիւղացու քրտինքով ապրուստ անողները բոլորեքեան անխնայ, լի ու լի ստանում են։ Սկսած գեղջուկի հոգու փրկութեան համար աղօթող, վանքերում փակուած անքուն սաղմոս քաղող հայր սուրբերից, ժողովրդի ուրախութեանն ուրախակից, ցաւերին ցաւակից, նրան մկրտող, պսակող, թաղող տանու երիցից, Աստծու անունով երկրագործի դուռն եկած մուրացկանից, ժամհարից, նախրապանից, հորթարածից, գլուխ խուզող, արիւն թողնող դալաքից մինչև թաջագլուխ թուրք դարւիշները, ջինգեանէքը, գրբաց, տիրացու ու մօլլաները, նետ դնող, գարի քցող հմայութիւն անողները, աշուղները ու փահլեւանները, բոլորը, բոլորը, դատարկ ձեռքով ներս են մտնում ռանչպարի մօտ, լիքը ձեռքով դուրս գնում։ Այգետէրերից ժողոված էջմիածնապատկան պտղի կոչուած կամաւոր տուրքի աւելորդ գինին, բացի սուրբ Աթոռը ղրկուածը՝ մնացածը տէրտէրների, ժամհարների ու աչքածակ երեցփոխների կարասներն էլ է լցնում, թէպէտ վերջիններս իրանց բաժինն էլ յատուկ ստանում են։ Վանքին հասանելիք իւղ ու պանիրը վանքի միաբաններին էլ են լիացնում, կոնսիստորի գրագիրներին, հոգևոր կառավարութեան անդամներին ու ծառայողներին, մինչև իսկ ծառային էլ են ձուաձեղով կշտացնում։ Մի տէրտէրի տարած կալավարձը գիւղի առաջին համփայլի ունեցածից շատանում է։ Հոգիները լոյս կարուի վերջին տարուանս մէջ ժամանակի ու անժամանակ մեռնողների. Նրանց իրանցապատկան սուրբ խաչի խորովուն, եօթնի, քառասունի, տարելիցքի ժամ պատարագները, գերեզմանօրհնէքներն ու հոգեհացերը անթերի տանում են։ Գիւղացին կուշտ թէ քաղցած, բերրի թէ անբերրի տարին իր բերանի պատառը կըկիսի, իր նոր վախճանուածի հոգու փրկութեան հոգսը կըքաշի, իսկ առատ տարին՝ 800 տարուան մեռած պապ*

ու տատերն էլ են ժամ պատարագով, հոգեհացերով յիշւում, յիշատակւում։

Վայը կըգայ աշխատաւոր գեղջուկի գլխին, եթէ, բերանիցս թռչի, քամին տանի, երաշտ ու անբերրի տարի լինէր ու մեր չարատանջ գիւղացի եղբօր ցաւերի վրայ հարկ ասուած անտանելի ծանրութիւնն էլ աւելանար։ Բերանս չի զօրում եռման ջրի վրայ կարկտից սառը ջուր լցնել, պակասաւոր տարու դժուարութիւնները մէկ-մէկ մատնահաշուի տակ դնել։ Թշուառ մարդ, հարկերի ու գիւղական արդար ու անարդար ծախսերի համար վերջին շապիկդ, օջախիդ պղինձը, երեխեքանցդ ցրտից պատսպարուելու հասարակ կտաւէ վերմակը քանի՛ ու քանի պակասաւոր աշունքներ գիւղամէջ էքաշ տրուել ու ծախուել։ Այս բոլորը քեզ ցաւ է եղել, բայց քո համբերատար հոգին չէ ընկճուել, դու չես յուսահատուել, ապագայ տարուայ յուսով՝ քեզ և քո ընտանիքին այս խօսքերով ես յուսադրել. —«Աստծու կամքն էր, մեռնիմ Աստծու ողորմութիւնին, մեր սիրտն է նեղ, թէ չէ նրա սիրտը շատ լայն է. ողջ առողջութիւն լինի, եկող տարին էս տարուան վնասներն էլ կը հանենք, մենք էլ ուրախ կապրենք, ուրախ կեանք կը վայելենք»։

Մենք մեղաւոր անարժաններ ենք, խնդրենք գութը շատ Երկնային Թագաւորից, որ արժանաւորաց աղօթքը լսի, Իր քաղցր աչքը աշխատասէր հողագործի վրայ պահի, նրա ձեռքի աշխատանքը կարկտից, խորշակից, մարախից, թրթուրից, մկնից, առնէտից և ամեն ցասում պատահարներից ազատ պահի, մշակի կեանը զօրութիւն, անձին առողջութիւն տայ։

Էն ժամանակ քաղաքացի, գիւղացի, հարուստ, աղքատ, ամենքն էլ կուշտ կը լինին, ամենքն էլ մարդավայել կեանք կունենան։ Որովհետև՞։—Որովհետև տարին առատ է, իսկ առատութիւնը կեանք է։ Ուրեմն, առատ աշունը կեանք է ու կեանք։

Պերճ Պռօշեան

---

## 42. ԳՒՒՂԱԿԱՆ ԴՊՐՈՑ

Տէր Յարութիւնն էլ շատ միտք չարեց, մի քանի օրումը նրա տունը մի ուսումնարան դարձաւ։ Երեխեքանց որի ձեռը մի տախտակի կտոր տուեց, վրէն մի քանի տառեր գրեց փայտէ գրչով, որին մի եզան կամ կովի թիակի ոսկրի վրայ մի ակճորի բերանից յետ արած դագիլ[1]) կապեց, շլինքը քցեց, մի երկու տառ էլ նշանակեց. մէկին մի պապենական հին օճաղից մնացած բոխի կամ պանրի աքաշի[2]) բերանին ծածկած՝ ափները մկան կրծոտած, մխի միջին սևացած՝ ապուխտ դառած «քերական, որ է այբենարան» տուեց։ Մի քանիսն էլ, որոնք որ չորս հինգ տէրտէր—վարժապետ էին փոխել, տարիներով մի ութ կանոն քրքրուած, կազմահան էլած սաղմոս էին կռնատակներին տարել ու բերել, ամառը գնացել իրանց հորթերը հանդումն արածացրել, կամ գութանաւորին հաց տարել, ձմեռն էլ յետ եկել տէրտէրենց տունը զուիր երբել[3]), էգպէսներին էլ Տէր Յարութիւնն է՛լի էն դզզգուած Սաղմոսը տուեց ձեռքները և հրամայեց, որ էլ յետ գլխիցը սկսեն իրանց «Ե—րա—նեալ—է—այր» և այլն։

—Էլ ըստուց յետոյ մեր գեղի օդէն ձմեռները մարդիկ չգան հաւաքուին մասլահաթի. դրա համար Գէորգ խալֆեանց օդէն հերիք ա. հիմի ես մոնթեր պտի կարդացնեմ, կարգադրեց տէր Յարութիւնը։

—Աղջի Սուսամբար, խորհուրդ արեց տէրտէրն իւր տիրուհու հետ, արի մեր աղջկէքին էլ կարդացնենք. Մանուշակն էլ թող երեխեքանց հետ խառնուի։

Տէրտէրի օրինակին մի քանիսն էլ հետևեցան. նրանք էլ ուզեցան իրանց աղջկանցը կոյս շինել։

Ամէն մի երեխայ բերել էր իր համար մի խուզած ոչխարի մորթի, կամ մի կտոր թաղիք, կամ մի հին, մաշուած, քրքրուած, տասը տեղից գիւլբաներով կարկատած փալաս, քցել էին իւրեանց տակը և գեղի օդումը կարգով

1) Այծի մազից բարակ պարան, 2) աման, 3) ձանձրացրել։

շարունակ։ Գիւղի միւս ծայրից կարելի էր լսել մանուկների ձայնը, որոնք բարձր բարձր իրանց դասերը սերտում էին։ —Բե́ն—ա́յբ—բա́, բե́ն—ե́չ—բե́, բե́ն—է́—բէ́, գիլ է մինը,—ա́յբ—շա́—ա́շ, խէ́—ա́յբ—խա́—ա́շխա́, տի́ւն—վո́—տո́, ա́շխա́տո́, դա́—ա́յբ դա́—ա́շխա́տո́ղա́, կե́ն—ա́յբ կա́, ա́շխա́տո́—դա́կա́, նո́ւ—ա́յբ—ցո́—նա́ց, ա́շխա́տո́ղա́կա́նա́ց, ձգում է միւսը։

Տէրտէրն էլ ծանրագոգոթ[1]) մի հաստ մորթի իր տակը ձգած վերին անկիւնումը, հանել է իւր պարսկական լայնաքերան ճամանիքը[2]) բազմել ծալապատիկ ու մի կակուղ սերկևիլի ճիպոտ ձեռքին բռնած՝ դաս է տալիս։ Այս րոպէիս նա իւր վարժապետական վեհ պաշտօնի մէջն է։

Զոռում է հինգ վեց տարեկան տղայ կամ աղջիկ աշակերտը մեր տէր վարժապետի առաջին և բռնելով տէրտէրի իրան ձգած ճիպոտի ծայրը, պատասխան է տալիս հետևեալ հարցերին։

Տէրտէր. Էս որտեղից ա եկել։

Աշակերտ. Դրախտիցը։

Տէրտէր. Ի՞նչ ա բերել։

Աշակերտ. Խելք ու խրատ։

Տէրտէր. Դէ ծէրը պաչիր։

Դողդողալով համբուրում է հլու աշակերտը ճիպոտի ծայրն ու կուչ գալիս։ Նա սպասում է տէրտէրի սովորական խօսքերը լսելու—«Օրհնեալ է փայտն, որով լինի արդարութիւն», ասում է տէր հայրը և մի թեթև հարուած էլ մէջքին խփելով, աւելացնում. «որ ոչ լուիցէ ունկամբ, լուիցէ թիկամբ»։

Այս ամենօրեայ բնաբանն է դաս սկսելու, որից յետոյ երեխան կարդում է իւր դասը։

Վա՜յ նրան, ով իւր համարն անգիր չգիտէր, յանկարծ կը կպչէր նրա մէջքին ճկուն սերկևիլի ճիւղքը և դիպած տեղը կը կապտացնէր։ Այսպէս՝ հետզհետէ, միմեանց քամակից կը փշրուէին մահակները աշակերտի բոլիկ, կամ

---

[1]) Փքուած, [2]) կօշիկները։

թէ ծակ ջորաբներով պաշտպանուած ոտքերի վրայ, մինչև որ տէր հօր կամքը կը լրանար, մի երկու անգամ հօր կողքերն էլ կօրհնէր քաղցր խօսքերով և կասէր.—գնա՛, կորի՛, տեղդ նստի՛ր, էլ յետ էս օրուան դասն եմ թողում, թէ որ էգուց ջրի նման չես կլկլացրել, մենձ թիքէդ անկաջդ կը թողամ։

Կարգով անուշ կանչէին ամէնքն առանց բացառութեան միևնոյն կերակուրը և կսպասէին էգուցուան «մեծ թիքէն ականջը դառնալուն»։ Բայց եթէ մէկը սաստիկ շարժէր տէր հօր բարկութիւնը, մահակների զօրութիւնը նրան զգալ տալուց յետոյ՝ տէր Յարութիւնը կը չոքացնէր նրան բաց ծնկներով խոշոր աւազի վերայ, փէշերքին հող կը լցնէր և կը կնքէր գիւղի ցորեն կնքելու կնքով, որ այս միջոցին միշտ իւր մօտ էր պահում։ Թող արիւնն աչքի առաջն առնի այն աշակերտը, որի փէշերքի կնիքը քանդուել է. ինչ անենք, որ ծնկների վերայ մի քանի նկարներ են կազմուել, պէտք է համբերի, թէ չէ ապագայ պատիժն աւելի խիստ կը լինի։

Հէնց էս երկիւղն էր, որ երբ մի օր մի փէշերքը կնքած երեխայի մօտից տէրտէրենց պոչը ծաղիկ շունը ցած բերեց պատի վերայ կախ արած մի լիտր միսը և քարշ տալով տարաւ մի անկիւնումը երկու թաթերի մէջ բռնած մաքրազարդեց պառոշները լիզելով, նա՝ մեր պատժուած երեխան ոչ միայն տեղիցը չկանգնեց շանն արգելելու, բերանն անգամ չշարժեց և շան վրայ չը բարկացաւ. ինչ անէր ողորմելին, ահը շատ էր՝ քան թէ մահը։ Տէր Յարութիւնը շատ էլ նեղացաւ իւր միջին երեխի վրայ, բայց լեզուն բունը դրեց։ Մեղաւորն ինքն էր։

Սխալ կը լինի կարծել, որ տէրտէրն այնպէս վարւում էր իւր քարասրտութիւնից։ Ընդհակառակը՝ նրա սիրտը ցաւում և լերդը խաշւում էր ամեն մի երեխայի կսկիծը լսելուս. նա պատժուողից աւելի էր մորմոքւում։ Բայց այդ նրա և ընդհանուրի հայեացքն էր ու համոզմունքը, թէ մինչև երեխային չպատժես, նա մարդ չի դառնալ։ Մինչև էս օր էլ եթէ գիւղական բարեխիղճ վարժապետ-

ներից մեկը քաղցր վարուում է իւր սաների հետ, մեղադրանաց առարկայ է դառնում գիւղացիներից. այդ նշանակում է, որ այնպիսի ուսուցիչը գլուխ չի դնում, չի աշխատում, երես է տալիս. էլ այդպիսի վարժապետին ով երեխայք կը յանձնի։

—Միսը քեզ, ոսկորն ինձ, տէր հայր ջան, ջարդիր, սպանիր, հոգին հանիր ու մարդ շինիր սրան. այս առաջին յանձնարարական խօսքերն են ամեն մի իւր որդու կրթութեան համար հոգացող հօր։

—Միամիտ կաց, իմ ճիպոտի զօրութիւնը հէնց էս օր կը փորձի դա, էլ իմ ճանգիցը դուս չի պրծնիլ, հալեմ, մեղրամում չինեմ։ Ա՛յ, տես ինչ լաւ տղայ կը դուս գայ սա

Իբրև ապացոյց իւր խօսքերին՝ առաջին ուսումը հօր մօտ էր տալիս տէրտէրը—ճիպոտի ծայրը համբուրելն ու դրախտից դուրս եկած լինելը հասկացնելը։

Եթէ տէր հայրն իւր կողմից իւր աշակերտների հետ խիստ էր վարւում, նրանք էլ պակաս չէին թողնում, նրա օգտիցը գալիս էին։

—Գասպա՛ր, արի դասդ ասա՛, հրամայում էր տէրտէրը մէկին։

Գասպարը շատ ծանր ու ակամայից է շարժւում։

—Աղա՛ լակոտ, ի՞նչ ես պառի հարսի պէս նազով ժաժ գալիս, ոտներիցդ քրեհ են ուզո՞ւմ, արի էլի։

Գասպարն իբրև թէ չի լսում էս խօսքերը, մինչև մի ոտքը փոխում է, տէրտէրի հոգին դուրս է գալիս։

—Չըլի՞ թէ դաս չես սերտել։

—Գիրք չունիմ, փնթփնթում է Գասպարը՝ այնքան կամաց, որ ես ու դու կողքին եթէ կանգնած լինէինք, չէինք լսիլ, բայց տէր հօր ականջները շատ սուր են։

—Ի՞նչ ես արել գիրքդ։

Երեխայն շատ լաւ գիտէր, որ ինչ փաստ էլ բերէր, դիցուք ստոյգ էլ որ կորցրած լինէր, պէտք է՝ մինչև տէրտէրի քօթակն և եղալի կորկոթները չուտէր, անկարելի էր գործն ուրիշ կերպ փոխել. էդ պատճառաւ էլ

լուռ էր մնում և չէր պատասխանում։ Բայց երբ ականջների արմատները տաքանում էին, ձեռները մղկտում, մի փունջ մազ էլ գլխից տէրտէրի ձեռքին էր մնում, նոր էր զոռալով սկսում արդարանալ ու իւր հնարած ապացոյցները մէջ բերել, որից յետոյ տէր հայրը թոյլ էր տալիս։

Տէրտէրն էլ այդպէս ժամանակը շատ հետը չէր ընկնում։ Պարապ երեխաների համար էլ իւրեանց տանը գործ կար, մանաւանդ՝ եթէ նա շատ հասակաւոր էր։ Տաւարի տակը պէտք է քերուէր, մաքրուէր, նրանց աղբը շալակով կալը պէտք է տարուէր, բասմա[1]) քցուէր, որ մինչև ամառ չորանայ, աշնան դէմը կտրեն, միւս ձմեռուան համար վառելիք շինեն։ Այգուցը շալակով ցախ պէտք է կրուէր, ամեն երեկոյ մարագից խոտ ու դարման պէտք է բերուէր անասունների համար։ Տէրտէրը հասակաւոր որդի չունէր, մի հօտաղն էլ էսքան գործը չէր կարող կատարել. գիրք ունեցող աշակերտներն էլ պարտական էին իւրեանց վարժապետին օգնել, ուր մնաց անգիրքները. նրանք պարապ են ու պարապ։

Ամառը մանաւանդ, ամենքը միասին հերթով վաղ առաւօտեան իրանց դասերն առում էին. գիտեն չգիտեն, գրքերը կռնատակներն էին գնում, գնում տէրտէրենց այգումը քար ժողովելու, խչմար[2]) տալու, խոտ հնձելու. ես ինչ գիտեմ, հազարաւոր գործ կայ կատարելու։ Ծոյլ աշակերտներին մեր տէր հայրը գործը պրծնելից յետոյ՝ տուն էլ չէր թողնում գնալ. իւրեանց հորթի չաթուովը[3]) պինդ կապում էր մի ծառից, որ դաս սովորի ու ինքը գալիս մի ծառի հովում քնում էր իւր համար. երբ որ նա իւր քունը թափեց, կրկին յետ էր անում մեր կալանաւորուածին ու էլի բանացնում։

Միայն տղայքը չէին տէր հօրը պէտք գալիս. աղջ-

---

[1]) Տաւարի աղբը ձմեռը փռում են կալումը, մինչև ամառը չորանում է, յետոյ կտրում են վառելիքի համար։ Այս է բասման։
[2]) Նեցուկ, [3]) պարան։

կանց համար էլ նրանց տանը միշտ գործ կար. Նրանք էլ տներն էին աւելում, ջուր բերում, խմորին օգնում և այլն։

Պերճ Պռօշեան

---

## 43. ԳԱԲՐԻԷԼ ՍՈՒՆԴՈՒԿԵԱՆ

Սունդուկեանը ծնուել է Թիֆլիզում 1825 թ., սովորել է գիմնազիայում և ապա աւարտել Պետերբուրգի համալսարանի պատմա-լեզուաբանական ֆակուլտէտը, որից յետոյ մտել է պետական ծառայութիւն՝ հասնելով գեներալի աստիճանի։

Նա իր գրական գործունէութիւնն սկսում է 1863 թւին, մի վօդըվիլով։ 1871-ին առաջին անգամ ներկայացրին Պէպօն, որ Սունդուկեանի գործերից ամենանշանաւորն է։ Դրանից առաջ նա արդէն գրել էր «Խաթաբալա», «Էլի մէկ զոհ», այնուհետև լոյս տեսան «Քանդուած օջախ», «Օսկան Պետրովիչն էն կինքումը» և «Ամուսիններ»։

Այս բոլոր պիէսները, բացի վերջինից, գրուած են Թիֆլիզի բարբառով, կենդանի և գեղարուեստօրէն ներկայացնում են Թիֆլիզեցու կեանքը, նրա չարն ու բարին, լաւն ու վատը, առաքինութիւններն ու պակասութիւնները։ Դրանց մէջ Թիֆլիզի հին սերունդը՝ վաճառականն ու կինտօն, կինն ու ծառան, ազնիւն ու անազնիւը անմահացած են գեղարուեստօրէն։

Չնայելով մի քիչ նեղ ու գաւառական բնոյթին, այս պիէսները լինելով միակը և ամենայաջողը մեր ինքնուրոյն բեմական գրականութեան մէջ, շարունակ ներկայացւում են գաւառական հայ բեմերում։—1901 թ. հայ հասարակութիւնը նրա հետ միասին ռուս և վրացի բեմերը մեծ հանդիսով տօնեցին Պէպօ-ի երեսնամեակը, որի պատճառով Սունդուկեանն արժանացաւ մեծամեծ պատիւների և ցոյցերի։—Հայերից ոչ պակաս՝ Սունդուկեանի պիէսներն աջողութիւն ունին և խիստ սիրուած են վրաց բեմում, անշուշտ շնորհիւ այդ պիէսների խորին գեղարուեստական արժանիքների, որոնք մշակուած են գերազանցօրէն։

---

# 44. Պ Է Պ Օ

Կատակերգութիւն 3 արարուածով, հեղ. Գ. Սունդուկեանի։

Բովանդակութիւն եւ համառօտ

Արութինն աղան պարտ է Պէպօ-ի հանգուցեալ հօրը 1000 ռուբլի։ Այդ փողը Պէպօն խոստացել է իր քրոջ նըշանածին։ Նշանածը պահանջում է խոստացած փողը, որ պակասի, այլապէս թողնելու է աղջկանը։ Արութին աղան չի ուզում վճարել, մինչեւ անգամ բացարձակ ուրանում է իր պարտքը, գիտենալով, որ տուած մուրհակը կորած է։ Պէպօն բարկացած նրան անպատւում է։ Արութինը նրան իր տանից դուրս է անում եւ մինչեւ անգամ բանտ է քցել տալիս։ Այդ ժամանակ միայն բացւում է նրա խարդախութիւնը, որովհետեւ կորած մուրհակը գտնւում է Պէպօ-ի ազգական Գիքօ-ի մօտ։

Պէպօ, Կակուլի, Շուշան, Գիքօ

ԿԱԿՈՒԼԻ. Բարով, դէդի ջան։

ՇՈՒՇԱՆ. (Կակուլուն) Ապրիս, վուրդի։

ԿԱԿՈՒԼԻ. Օ՜, աղա Գիքօ, բարով 'ես ու դուն (Առաջ գալով եւ Պէպօին ցածր)։ Սրա վրայ լաւ ղօնաղ չըգթար, տօ։

ՊԷՊՕ.Մուլափ... (Շուշանին) Ի՞նչ իմացաք։
(Կակուլին Գիքօի ետեւից նրա նման իրը թէ քթախոտ է քաշում, բայց իսկոյն դադարում է եւ ուշադրութեամբ լսում խօսողներին),

ՇՈՒՇԱՆ. Էլ ինչ իմացայ. դետինը պատռէ ու ինձ դէվեր տանէ։ Թէ էսօր չճարեցինք, Պէպան ջան, էս գիշեր գիփ մէտի մօշլա է ըլում... Այ, երգնքէն առնիս մագիէրն, Արութին։ (Գաթիբան վեր առնելով)։ Նա խօ էսօր չի տայ ու ուրիշ տիղ ով ինչ կու ւտայ միզ։ Էլի հոգուն վրայ համայ էն կապ-կտրած Նաթէլին, թէ չէ էն է վիրջի խօսքն էր տանում նուր ախչկայ տիրուչմէն էն

մըր սուքրես փեսի մօդ։ Սատանէն անէ նրա դիվանը, հրա՜։

ՊԷՊՕ. Տօ, փեսիմէն ի՞նչ իս ուզում. ինչ խոստա-ցիլ ինք պիտի տա՞նք թէ չէ։ Նա էլ մարթ է, գլխին գդակ ունէ ծածկած, միզմէն էլ վօ՞ւրդի խափիլ. աշխարքն ալան թալան խօ չէ՞... Ինդադա ասի, վուր մուլափ, դէդի, ջեր փուղը դուս գայ, իժում էինք նշնի. ամա ձիր օխտէմէնն ա՞վ դու քայ... Ինչ հաջաթ ու, ուր կու կորչի ու, Արու-թինը միր մինկն ինչ կ՛օնէ ու, հաշա խօմ չի ուտի ու... դէ, գնա՛ ու, տեսնիմ վօ՞ւնց իս առնում։

ԳԻՔՕ. (Նստելով սեղանի մոտ և երկար յոգոց հա-նելով)։ Ա՜խ, իմ գօզալ բարա՛թ... եարաբ վօ՞ւնց կօրաւ։

ՊԷՊՕ. Ձէնդ, Գիքօ, թէ չէ, մասաբս գիտենայ, ինչ ջիգրն ունիմ, դիփ քիգ վրայ կու հանիմ էս սահաթիս։ Դուն վուր չէիր խառնըվի էս բանումը, էս խայտառակու-թիւնն էլ չէր գա միր գլուխը. ջհա՛ննդամ փուղի գլուխը, նրա մօզօնօղին էլ ինչ ասիմ...

ԿԱԿՈՒԼԻ. Մուլափ, մէ բան ասիմ ես, Պէպօ. օքմին վկայ չկա՞յ, վուր վրահասու ըլի էտ պարտկի՞ն։

ՊԷՊՕ. Միթամ դու՞ն էլ խելքիդ զօր տվիր. էտով վուր բան էր դառի, խօ էս խաթաբալէն էլ չէր ըլի։

ԳԻՔՕ. Այ, վկայ չի՞մ, բաս ինչ դարհումար իմ... ամա վուր չէ ըլում։

ԿԱԿՈՒԼԻ. Վա՜հ, ինչի՞։

ՊԷՊՕ. (Կակուլուն)։ Էս բանումը վկայ-մկայ չի ըլի, կօսէ, չիս իմանու՞մ։

ԿԱԿՈՒԼԻ. (Առանձին, գլուխը շարժելով)։ Ձէ՛, ես նրան պիտի հարիմ։

ՇՈՒՇԱՆ. Ախար, էն օրը սիւ սրտովս ինչ ջու-ղաբ էրիտ կտրական։

ՊԷՊՕ. Միթամ ջեր չիս իմացի... Ասա՛՝ ես միտս չու-նիմ, կօսէ, դաւթրներումս չէ էրեւում, կօսէ թա բարաթ իմ տվի ձիզ, բերէք ու փուղը տարէք, կօսէ։

ՇՈՒՇԱՆ. Բաս միթամ հա՞շա է ուզում ուտի՞։ Էտ վօ՞ւնց կօնէ, Պէպան. արա քիմէն չիմ աըմընու՞մ. ինէնց հարուստ մարթը լա՞յիղ պիտի անի էտ հանգի բա՞ն։ Նրա

համար հարուր թումանն ինչ—մէ գրօշ, վուր ուզենայ բաշխելով էլ կու բախշէ։

ՊԷՊՕ. Վո՛ւնց չէ. դէմ է բերում։

ՇՈՒՇԱՆ, Ա՛յ, կու տեսնիս թէ չէ... (Լացի ձայնով)։ Կէհամ, առչիւը կու չոքիմ, լաց կուլիմ, իմ վուրթկերանց արիւ սագագա գուզիմ. երթում կուտիմ, վուր թէ միր մէչը բարաթ լուս ննգնի, թիքա,թիքա անէ միզ, բաթըլնամա կու տամ, տասը վկի ձեռք կու քաշիլ տամ. մէ օր հոքի ունէ տալու, իր հոքէմէն ձեռը վո՛ւնց կու վիկալնէ։

ՊԷՊՕ. Մո՛ւլափ, մո՛ւլափ, դէզի, 'ես կէհամ, 'ես, էս սհաթիս յեդ գուքամ, ինչրու դուք նստեցէք։

ՇՈՒՇԱՆ. Ջէր մէ թիքայ հա՛ց կի, մի սահաթ առաջ ըլի, յիդ ըլի, դիփ մէկ է։

ՊԷՊՕ. Չէ, ինչրու չտեսնիմ, բօղազումս հաց չի դէվէր գնա. շուրիրս վո՛ւրթէնն է։

ՇՈՒՇԱՆ. Էրէգ զանգուկը դրի։

ԿԱԿՈՒԼԻ. 'Ես էլ գամ, Պէպօ։

ՊԷՊՕ. Չէ, դուն գնա, բանըդ տես, էս սահաթին գալիս իմ։ (Դուրս է գնում աջ դռնից)։

ԿԱԿՈՒԼԻ. Դուն գիդիս... (Խփելով իր կրծքին)։ Ա՛խ, Արութի՛ն, 'ես թէ քու ճխտէմէն չէկայ ու կու տեսնիս...
(Դուրս է գնում միջի դռնից)։

Շուշան, Գիքօ

ԳԻՔՕ. (Նստած սեղանի մոտ քթախոտ քաշելով), Է՛հ, Աստո՛ւձ, օրհնվի Քու դատաստանը։

ՇՈՒՇԱՆ։ (Նստում է թախտի վրայ եւ ձայնը երկարացնելով)։ «Ա՛խ, Աստո՛ւձ, վա՛խ Աստո՛ւձ, վուրին կու տա՛ս սէլով փէտ, վուրին չիս տա՛ ցախ, Ա՛ստուձ»։

ԳԻՔՕ. Հա՛, հա՛, Շուշան։

ՇՈՒՇԱՆ. Է՛հ, օրհնուի նրա դարգահը. վուրին էնդադա դօվլաթ է տալի, վուր իր դօվլաթը չէ կանացի մարսի, ու վուրիմէն օրւան թիքէն խլում է ու էն էլ դօվլաթաւուրին է տալի... Փա՛ռք Իրան, իր կամքն է. հալբաթ միր ճակտին էս էր գրած։

ԳԻԺՕ. Էլի Աստուծ օղորմած է, Շուշան...

ՇՈՒՇԱՆ. Էլ ինչ օղորմած է, ջուրն էկել է միզ տարել է։ Էն անաստուածը վուր էլի մի բան մօզօնէ ու փուղը չտայ էսօր, եարաբ ի՞նչը կուլի միր չարէն. ճլէրք կու նընգնի խիղճ աղճիկս։ Թավաթ օրն օրվան վրայ հալվում է. էլ ի՞նչը կու ապրեցնէ նրան։ (*Լացով*)։ Խի՞ղճ իմ Կէկէլ, նօրչի արևդ պիտի փչանայ, էլի՛, Թագի մագիէր սև գերեզմանը պիտի մտնիս... (*Լաց է լինում*)։

ԳԻԺՕ. (*Լացի ձայնով*)։ Օ՛հ, օ՛հ, օ՛հ... (*Աչքերը սրբելով դուրս է գնում ձախ դռնից։ Ներս է մտնում Պէպօն զարդի հագուստով*)։

Շուշան, Պեպո

ՇՈՒՇԱՆ. Տօ՛, ախպար, ջեր մէ թիքա հաց կ'ուտէիր։

ՊԷՊՕ. Հաց չէ՛, զահրումար ուտիմ... Ի՞նչ կօնիմ հաց. զանա հացի արժանի իմ... (*Գոտիկը կապելով*)։ Հացը վուր ստիղծած է, զանա ի՞նձ համա է ստիղծած. հացը վուր ես ուտիմ, ապա Արութինը ի՞նչ ուտէ։ Նա՛ էլ հաց ուտէ, ես էլ հաց ուտիմ... (*Դառը ծիծաղով*)։ Հը՛մ, հը՛մ, հը՛մ...

ՇՈՒՇԱՆ. Մխվցիլ էր իմ օրը, անը՛մ։ (*Աչքերը սրբելով դուրս է գնում*)։

ՊԷՊՕ. (*Մենակ արխալուխի կոճակները մէջ գցելով*) Գնա՛. Պէպօ, գէ՛գլին լըզէ, խալխի վուտներուն պա՛չ արա, նրանց վուտի ցխը լըկէ... Ո՞վ իս դուն. ի՞նչ իս դու. ի՞նչ մարդահէսաբումն իս դուն, ի՞նչ անում ունիս դուն... Եփոր գուզի՞ն, վուտի տակը կու գցին քիզ, վրէտ կու մտն գան, գեղնի հիդ կու հաւսրին... ի՞նչ հաջաթ, ջիանճվէլի վրայ ինչո՞վ իս աւել... Դուն խօ մարթ չիս, մարթկերանց համա կերակուր է ստիղծի քիզ Աստուծ... Գի՛շիր չարչըրվի, ցերեկ չարչըրվի, երգնքի տակը լուսացրու, անձրևվի ու քամու հիդ կռիւ տու, ձմեռը ցրտէ՛ մէն կոնկռանա, ամառը արեգակի շուքումն էրվի ու խօրվվի... գնա՛ էնէնց մի թիքա հա՛ց ճարէ ու էն թիքա հացով դէզիտ ու ըվի՛րդ պահէ... Էս ինչ, ի՞նչ մարթութին... էսէնց շունն էլ է ճարում մէ թիքա, վուր տունը պահում է... Միթամ դու էլ շուն իս... քանի աշխըրքիս էրեսին մտն իս գալի, դուն էլ շա՛ն պէս կե-

բակըվլի... Էս ինչ մարթութին է... (Դադար)։ Մարթ էիր ուզում դառնամ. կ'էհէիր մարթիք կու թալնէիր, գուգութին կ'ընէիր, իմ նման խղճերուն կը զընէիր. քանու հինգ հազար տեղ արէն արտըսունք կու թափիլ տէիր, էն արտըսունքնիրը փուզ կու շինէիր ու էն փուզով օսկէ տնիր... մէջը փառաւուր ման գու քէիր... դրօշկա, կալասկա, ձիանիր կու սարքէիր, քանու հինգ ինձպէսին գլխու ղարաւաշ կու կանգնէցնէիր... Ա՜յ, էն չախը կօսէի քիզ՝ մարթ իս, Պէպօ. ինչ մարթուն պիտի... ինչ քէփդ գուգէր, էն սհաթին կու ճարէին... էն չախը դիփունքը քիզ գլուխ կու տէին, կու մեծրէին, պատիւ կու տէին ու մէկս մէկու գլուխ կու կոտրէին, վուր քու աչկը նրանց վրայ քաղցր ըլի...

(Դուրս է գնում՝ սիմացի դռնից)

Կարդալ կամ պատմել Պէպոյի բովանդակութիւնն ամբողջովին. համեմատել տիպերը. Պէպօ, Կակուլի, Գիքօ և Արութին աղա։

---

## 45. ԴԵՒԻ ԵՐԴՈՒՄԸ

Երդւում եմ ահա ստեղծագործութեան
Առաջին օրով,
Երդւում եմ ահա նրա կատարման
Եւ վերջին օրով,
Նշանակութեամբ մեղապարտութեան
Տայիս եմ երդում,
Եւ յաղթանակը սուրբ ճշմարտութեան
Վկայ եմ բերում.
Երդւում եմ անկման դառն կսկիծով
Եւ յաղթանակի կարճատե ցնորքով,
Քո հետ տեսութեամբ երդւում եմ նոյնպէս,
Եւ հրաժեշտով, որ գալոց է մեզ։
Ողջ հոգիների ժողովարանով
Եւ իմ հպատակ միաբանների
Ճակատագրով,
Անաչառ և սուրբ հրեշտակների,
Այն է, իմ արթուն թշնամիների
Սուր սուսերներով։

Երկինք ու դժողք վկայ են խօսքիս,
Երկրի սրբութեամբ երդւում եմ ուտում.
Երդւում եմ և քո վերջին հայեացքով,
Եւ քո առաջին ջերմ հայեացքով,
Շնչառութեամբը անչար բերանիդ,
Եւ մետաքսեղէն քո գանգուրներով.
Երդւում եմ նոյնպէս դառն տանջանքներով,
Վերջապէս և իմ բորբոքուած սիրով.
Հրաժարուեցայ ես հին վրէժից,
Հրաժարուեցայ չար խորհուրդներից.
Այլ այսուհետև թոյնը նենգութեան
Ոչ ոքի միտքը չունի շփոթել,
Այլ այսուհետև ես միանգամայն
Կամիմ երկնի հետ հաշտութիւն կապել,
Կամիմ սիրել, աղօթել կամիմ,
Առաքինութեան հաւատալ կամիմ
Եւ զղջում տալով ես արտասուաթոր,
Ճակատիցդ քեզ արժանաւոր
Երկնային հրոյ հետքը կը սրբեմ.
Եւ թող առանց իմ աշխարհ համօրէն
Ծաղկի իւր խաղաղ անգիտութեան մէջ։
Ո՜հ, հաւատա ինձ, ես միայն ցայսօր
Քեզ ճանաչեցի, գնահատեցի։
Եւ քեզ ընտրելով սրբուհի ինձ նոր,
Իշխանութիւնս ոտից տակ դրի։
Քեզանից պարգև սէրդ եմ սպասում.
Նորա րոպէին կը տամ յաւիտեան։
Հաւատա, որ ես միշտ եմ հաստատուն
Նոյնպէս սիրոյ մէջ, ինչպէս չարութեան։
Ես, որ եթերքի ազատ որդին եմ,
Քեզ աստղերից վեր կը թռուցանեմ,
Այն տեղ աշխարհի կը լինիս թագուհին
Եւ նախամեծար իմ ընկերուհին.
Առանց գթութեան և մասնակցութեան
Կըսկսես նայել դու երկրի վերայ.
Ուր ոչ ճշմարիտ բաղդ կայ կենսական,
Եւ ոչ յարատև գեղեցկութիւն կայ,
Ուր միայն պատիժն ու մեղքն են լիուլի,
Որ կեանքն անցնում է փոքրիկ կիրքերով.
Եւ ուր չգիտեն առանց երկիւղի
Ոչ արհամարհել, ոչ սիրել հոգով։

Գուցէ չգիտես, թէ արդեօք ի՞նչ է
Կարճատեւ կեանքը մարդկային սիրտ,
Միայն արիւնի նա վրդովմունք է,
Օրերը կանցնին եւ այն կը սառի։
Ո՞վ կարէ տանել հրաժարումը,
Հրապուրանքը նոր գեղեցկութեան,
Ծանր վաստակը եւ խիստ ձանձրոյթը,
Կամակորութիւնը երեւակայութեան։
Չէ, իմանաս դու, ընկեր քաղցրունակ,
Ճակատագիրդ չէ սահմանել քեզ,
Որ նախանձաւոր բռնութեանը տակ
Իբրեւ մի ստրուկ, անյայտ թառամես,
Կեղծ ընկերների, թշնամիների,
Կամ թէ փոքրոգի եւ չար մարդոց մէջ,
Ունայն եւ ծանր աշխատանքների,
Անպտուղ յուսոյ եւ երկիւղի մէջ։
Դու չես շիջանի առանց կիրքերի
Բարձր պատի տակ լուռ եւ թախծալից,
Ազօթք անելով մարդկանցից հեռի,
Նոյնպէս եւ հեռի Աստուածութիւնից։
Ո՜հ չէ, աննման արարած սիրուն,
Այն չէ քո համար գրել օրհասը,
Քեզ ուրիշ կիրք է այնտեղ սպասում,
Ուրիշ ցնծութեան խոր զգացմունքը.
Ճակատագրին թող դու ուրեմն
Թշուառ աշխարհը, իղձերդ նախկին,
Ես քեզ կը բանամ, նոցա փոխարէն,
Բարձր գիտութեան անդունդը խորին։
Եւ սպասաւոր իմ հոգիների
Բոլոր ամբոխը ոտքդ կը բերեմ.
Թեթեւ նաժիշտներ եւ սքանչելի,
Ո՛վ իմ գեղեցիկ, քեզ կը պարգեւեմ.
Եւ արեւելեան աստղից կը խլեմ
Քեզ համար շքեղ պսակը ոսկի,
Եւ բոլոր շուրջը նորա կը ցանեմ
Փայլուն ցօղովը թարմ ծաղիկների.
Արեւմուտի կարմիր նշուլով
Ժապաւէնի պէս մէջքդ կը պատեմ,
Քաղցրահոտութեան մաքուր բուրմունքով
Բոլոր շրջակայ օդը կոռոգեմ,
Եւ հիանալի նուագ հնչելով,

Նաւըը լսելիքդ միշտ կը փաղաքշեմ,
Եւ մեծ պալատներ փառաւոր շէնքով
Ադամանդներից կը կառուցանեմ,
Ես մերթ կիջանեմ ծովի յատակը,
Եւ մերթ կը թռչեմ աստղերից վերև,
Ողջը քեզ կը տամ, ողջ երկրայինը,
Միայն սիրիր ինձ... այս է քո պարգև,
«Դև»—Լերմոնտովի, թարգմ. Սաղաթելեան

Պատմեցէք արձակ այն ինչ որ նկարագրուած է այստեղ։

---

## 46. ՍՄԲԱՏ ՇԱՀԱԶԻԶ (1841)

1861-ից «Հիւսիսափայլի» էջերում երևան է գալիս մի երիտասարդ բանաստեղծ, որ կրթուել ու կազմակերպուել էր Նազարեանի և նրա շրջանի անմիջական ազդեցութեան տակ։ Այդ երիտասարդը դեռ այն ժամանակ Լազարեան ճեմարանի ուսանող, Սմբատ Շահազիզեանն էր։

50-ական թուականների սկզբում Շահազիզը դեռ 10 տարեկան երեխայ, իր հայրենի Աշտարակ գիւղից գնում է Մոսկուա, Լազարեան ճեմարանը, ուր աւարտում է 1862-ին։ Դեռ դպրոցական նստարանի վրայ սկսում է գրել ոտանաւորներ։ Սկզբում թունդ գրաբարական էր և նրա առաջին ոտանաւորները, որոնք տպագրուեցին 1859-ին «Ծռաքաղի» մէջ, գրաբար էին։ Բայց նա շուտով թողեց թէ գրաբարը և թէ «Ծռաքաղը»։—1864 թուականը բանաստեղծի գեղեցիկ շնորհքի առատութեան տարին էր, որ աւա՜ղ, այլևս չկրկնուեց։ Այդ տարին Շահազիզը գրեց բազմաթիւ մեծ ու փոքր ոտանաւորներ, ինչպէս նաև «Լևոնի Վիշտը»—պօէման։ Լևոն անունով մի երիտասարդ Մոսկուայից ճանապարհ է ընկնում Կովկաս, տեսնում է Հայաստանը և նկարագրում է իր տեսածն ու զգացածը... Վէպի հիւսուածքը չափազանց պարզ ու անարուեստ է.—մի ուղևոր և նրա մտքերը։—Ժողովուրդը դժբախտ, ենթարկուած բռնութիւնների, չկան դպրոցներ, չկան լուսամիտ առաջնորդներ, կինը ստրուկ, իշխանները հարստա-

հարող, կգերը տգէտ։ Այս է պօէմի բովանդակութիւնը։ Մեռաւ 1907 թ.։

Ինքը, Շահազիզն ամենից լաւ է բացատրում թէ ինչ է ինքը. «Նախ քաղաքացի և ապա պոյէտ»։ Քաղցր մեղկութեան և անգործութեան, գինու և սիրոյ երգիչ չէ նա, այլ «բաժանորդ է ազգի ցաւի հետ»։

Լ. Է. Օ

## 47. ԵՐԱԶ

Ես լըսեցի մի անոյշ ձայն—
Իմ ծերացած մօր մօտ էր.
Փայլեց նըշոյլ ուրախութեան.—
Բայց ափսոս, որ երազ էր։
Կարկաչահոս աղբիւր այնտեղ
Թաւալում էր մարգարիտ.
Նա յըստակ էր որպէս բիւրեղ.
Այն երազ էր ցնորամիտ։
Եւ մեղեդին տխուր մայրենի
Յիշեց մանկութեան օրեր.
Մօրըս համբոյրն ես ըզգացի.—
Ա՜խ, ափսոս, որ երազ էր։
Կուրծքին սեղմեց կարօտագին,
Աչքերս սրբեց—շատ թաց էր,
Բայց արտասուքս գնում էին...
Ա՜խ, այդ ինչո՞ւ երազ էր։

## 48. ԱՇՏԱՐԱԿ

Գեղեցկանիստ Աշտարակ,
Շատ այգիներ նա ունի.
Այնտեղ երկինքն է կապուտակ,
Այնտեղ օդն է քաղցրալի։

Մեծ, ընդարձակ կանաչ դաշտեր
Լի են ծաղկով քաղցրահոտ,
Մարգահասակ, խնկանուէր,
Բարձրանում է այնտեղ խոտ։

Այդ սիրուն գիւղն ունի մի գետ,
Եւ այն լի է ձկներով.
Այնտեղ իշխան և կարմրախէտ
Խաղ են կապում խայտալով։

Եւ հարազատ այգիներից
Տարածւում է քաղցրութիւն,
Եւ Քասախը ուրախալից
Բերում է ձեզ իր ողջոյն։

Բայց այդ բոլորն բարկութեան
Կաշկանդուած է կապանքով.
Ժողովուրդը թշուառական,
Խեղդուած է մեծ խաւարով։

Ինչ մեծ մարդիկ է տուել Աշտարակ գիւղը։

---

## 49. Գ Ի Շ Ե Ր

Սիրուն պատկեր պարզ գիշեր էր.
Եւ օդեղէն ովկիանում
Փայլում էին անթիւ աստղեր,
Եւ ուրախ էր սիրտս զարկում։
Ամբրոսական ծաղիկներ վառ
Անուշութիւն էին բուրում,
Եւ երկնքի ցօղ կենարար
Բնութիւնն էր զովացնում։
Ես անխռով երգում էի,
Իմ երգըս սուրբ, մաքուր էր.
«Ազատութիւն» էի երգում,
Հայրենիքի «պարծանք» ու «սէր»։

Ս. Շահազիզ

Այս երգը համեմատել «Ազատն Աստուածի» հետ։

## 50. ԳԷՈՐԳ ԲԱՐԽՈՒԴԱՐԵԱՆ

Գէորգ Բարխուդարեանը ծնուել է Թիֆլիզում 1836 թ. նոյեմբերի 10-ին. նրա հայրը, Նիկողայոսը, դերձակի արհեստանոց ունէր։ Գէորգը սովորում էր գիմնազիայում. այդտեղ նա աշակերտում էր յայտնի Առաքել վարժապետ Արարատեանին։ Այդ միջոցներին Դորպատի անունը սիրելի էր դարձել Թիֆլիզի հայ երիտասարդների համար Խաչատուր Աբովեանի շնորհիւ. Գէորգն էլ այնքան էր ոգևորւում Դորպատով, որ գիմնազիայի վեցերորդ դասարանից դուրս գալով պատրաստւում է և 1851 թ. սեպտեմբերին փուրգոնով ուղևորւում է դէպի Դորպատ։ Գէորգի հետ է լինում նաև 10 ամեայ Սմբատ Շահազիզը։ այդ ժամանակ Դորպատի հայ ուսանողութեան ամենածաղկեալ շրջանն էր. ուսանողութիւնը ոգևորուած էր վերածնութեան գաղափարով։ Այնտեղ էին՝ Քերոբէ և Ռափայէլ Պատկանեանները, Դոդոխեան, Միքիմանեանը, Աբովեանի աշակերտներից շատերը։ Գէորգն ընկնելով հայրենասէր երիտասարդների մէջ, ինքն էլ ոգևորւում է դրանց քարոզած գաղափարներով և ամեն կերպ աշխատում լաւ հայերէն սովորել, որովհետև Դորպատ գալով՝ նա միայն Թիֆլիզի բարբառով էր կարողանում հայերէն խօսել։ Դորպատում Գէորգը երկար չէ կարողանում մնալ. աչքերի հիւանդութիւնը ստիպում է նրան 1853 թ. աշնանը կրկին Թիֆլիզ վերադառնալ։ Բժշկուելուց յետոյ նա քննութիւն տալով՝ գաւառական ուսուցչի պաշտօն է վարում։ այդ միջոցներին Գէորգը ոտանաւորներ գրելու փորձեր է անում և տպագրում «Մեղու Հայաստանի» լրագրում և յետոյ «Հիւսիսափայլ»-ում և ապա դառնում է «Փորձի» ամենաեռանդուն աշխատակիցը, ուր նա զետեղեց Շիլլէրի Դոն-Կարլոսը։— 1879 թ. Բարխուդարեանը Վրաստանի և Իմերէթի թեմի Հայոց ծխական-եկեղեցական դպրոցները թեմական տեսուչ նշանակուեց և այդ պաշտօնը վարեց մինչև 1883 թ.։ Նրա նախաձեռնութեամբ 1882 թուին տեղի ունեցաւ մեր

առաջին և վերջին ընդհանուր ուսուցչական ժողովը Թիֆլիզում։ «Փորձ» ամսագիրը դադարելուց յետոյ Բարխուդարեանը թէ իր ինքնուրոյն բանաստեղծութիւնները և թէ թարգմանութիւնը տպագրել է «Արձագանքում», «Հանդէս գրականական և պատմականում», «Լումայ», «Թատրոն», «Մուրճ» հանդէսներում

Թէպէտ Բարխուդարեանն իբրև ինքնուրոյն բանաստեղծ աչքի ընկնող տեղ չի գրաւում մեր նորագոյն գրականութեան մէջ, իբրև թարգմանիչ-բանաստեղծ այժմ առաջինն է նա և նրա անունը հայ մատենագրութեան մէջ միշտ շաղկապուած կըմնայ Շիլլէրի ու Գէօթէի անունների հետ։ Բարխուդարեանի թարգմանութիւնների «Գլուխ գործոցը»՝ «Ֆաուստը» մի այնպիսի մատենագրական դանձ է, որ հայ գրականութիւնը երբէք չի մոռանայ նրա առաջին բանաստեղծ-թարգմանչին։

Գէորգ Բարխուդարեանի գրիչը հաւատարիմ մնաց «Դորպատեանների» աւանդական իդէալներին։

Իսահակ Յարութիւնեան

---

## 51. ՁՕՆ

Կրկին յայտնւում էք, պատկերներ աղօտ,
Որ երևեցաք երբեմն իմ աչքին.
Փորձեմ այս անգամ պահել ձեզ ինձ մօտ,
Զգում եմ իմ սիրտը հակուած այն ցնորքին։
Խմբւում էք իմ շուրջ օդում մշուշոտ։
Շատ լաւ, հակառակ չեմ ես ձեր կամքին.
Կուրծքս զգում է ոյժ պատանեկան,
Դիպչելով ինձ ձեր շունչը դիւթական։

Բերում էք ձեզ հետ ուրախ օրերի
Պատկերներ և սիրելի ստուերներ.
Իբր աւանդութիւն անցած դարերի,
Զարթնում է սրտումս առաջին սէր։
Վիշտս նորոգւում, սրտիս լարերի

Հնչիւնը կրկնում է հին գանգատներ,
Եւ անուանում է սիրելիներին.
Որոնք հեռացան, թողին ընկերին։

Նոքա չեն լսում իմ նոր երգերը,
Որոնց երգեցի երգերս առաջին.
Աւա՜ղ, ցրուած են բարեկամները,
Երգս լսում են անծանօթները,
Ուրախ չեմ անգամ, թէ գովել հաճին,
Իսկ որոնք էին երգովս զմայլուած,
Թէև ապրում են, հեռու են ցրուած։

Եւ ինձ քաշում է բուռն ցանկութիւնը
Դէպի կախարդական խաղաղ աշխարհը.
Իմ թոթով երգը արձակում հնչիւն,
Ինչպէս էօլի տաւիղի լարը։
Դողում եմ, լացն է ինձ թեթևութիւն,
Նա հալածում է սրտիս խաւարը.
Այն, ինչ որ ունիմ, հեռու է թւում.
Ինչ որ էլ չկայ, ինձ պարզ երևում։

«ՖԱՈՒՍՏ»—ԳԷՕԹԷ, Թարգմ. Բարխուդարեանի

---

## 52. ԱՐՁԱԳԱՆՔ

Երբ ձորի մէջ գնում եմ ես,
Պարզ գիշեր է աստեղազարդ,
Բնութիւնը քնած է կարծես,
Եւ չորս կողմս լուռ հանդարտ։

Ո՛չ առւակի երգն է լսւում,
Ո՛չ վայ տալիս իւր գլխին բուն,
Ծառերի մէջ հով է խաղում,
Չկայ մի ձայն, չկայ ծպտուն։

Ես ընկղմած մտքերիս մէջ
Առաջ եմ գնում և իմ հոգին

Մտածում.—«Կըլինի՞ վերջ
Հայոց ազգի տառապանքին։

Յանկարծ կուրծքիցս դուրս թռաւ,
«Երնէ՜կ մէկն ինձ տար պատասխան».—
Արձագանքը տարաւ բերաւ
Եւ հնչեցրեց.—«Ա՛ռ պատասխան»։

—Պատգամախօս անտես անյայտ,
Մէկ հարցմունքս լսէ ու դարձրու.
Արձագանքը միայն կիսատ
Կրկնում է ինձ խօսքս.—(Հ)արցրու։

«Ի՞նչ է սպասում խեղճ հայ ազգին,
Միթէ կորուստ, ո՞չ փրկութիւն».
Արձագանքը որոտագին
Պատասխանում է.—«Փրկութիւն»։

Գէորգ Բարխուդարեան

---

## 53. Ր Ա Ֆ Ֆ Ի (1835—1888 Թ.)

Րաֆֆին ծնաւ 1835 թ. Սալմաստ գաւառի Փայաջուկ գիւղում, Պարսկաստան։ Հայրը, Մելիք-Միրզաբէկ Մելիք-Յակոբեան, իր ժամանակի յայտնի վաճառականներից էր և առևտրական յարաբերութիւն ունէր Ռուսաստանի հետ։ Մի անգամ նա իր հետ Թիֆլիզ է բերում մանուկ Յակոբին և տալիս է տեղական գիմնազիա ուսանելու։ Յակոբը գիմնազում հասնում է մինչև հինգերորդ դասարան, բայց 1857-ին կիսատ թողնելով ուսումը, ստիպուած է լինում վերադառնալ Պարսկաստան, հօր առևտրական գործերը վարելու։ Գիմնազից նա մեծ ուսում չտարաւ, բացի այն, որ ազատ հասկանում ու կարդում էր ռուսերէն, իսկ հայերէն նրա կարդալու գրքերը գրաբար էին և նորաբողբոջ աշխարհաբարը։ 1858-ին նա Սալմաստից ուղևորւում է Տաճկա-Հայաստան, Մուշի ս. Կարապետի վանքն ուխտի. ճանապարհին նա անցաւ Վան, տեսաւ Վարագը և Խրիմեան Հայրիկի հիմնած անդրանիկ դպրոցը, այցելեց Աղթամարայ

կզզին տեսաւ պատմական Հայաստանը և նրա աւերակները, յիշեց անցեալի փառքն ու անզօրրութիւնը և այդ ամենը համեմատութեան տաւ ներկայի թշուառութեան հետ. տեսաւ հայի վիշտն ու տառապանքը, ցաւն ու հոգսերը... այն, ինչ որ արդէն տեսել ու դիտել էր իր հայրենի Պարսկաստանում, դիտեց և ուսումնասիրեց նա այդ ամենը քար, աղիւս և աւազ պատրաստելու այն շէնքերի համար, որոնք յետոյ նա լոյս պիտի ընծայէր «Կայծեր», «Ջալալէդդին», «Խենթ», «Խաչագողի Յիշատակարան» և այլն փառաւոր ու հոյակապ ռոմանների մէջ...

Այդ ճամբորդութեան էպիզօդներից մինն էր, որ նա գրեց ու տպեց առաջին անգամ «Հիւսիսափայլում»—«Աղթամարայ կղզի» վերնագրով, ուր նա Վանայ ծովակին ողբակից լինել էր կանչում թշուառին, «Ձայն տուր, ով ծովակ» գեղեցիկ, տխուր ու մելամաղձոտ երգով...

Այդ գաղափարներով տոգորուած, հայրենիքի ցաւերով զբաղուած, նա չէր կարող լաւ վաճառական լինել, ուստի շուտով ամեն բան կորցրած գալիս է Թիֆլիզ մի շորավաճառի մօտ իբրև գործակատար. այստեղ նա ծանօթանում է Գր. Արծրունու հետ, որ նոր էր հիմնել «Մշակը», և դառնում է նրա մշտական աշխատակիցը. Ապա գնում է Թաւրիզ ուսուցիչ, այնտեղից կրկին գալիս է Թիֆլիզ և ուղևորւում Ագուլիս, դարձեալ ուսուցչի պաշտօնով. այդ ժամանակ էր ահա, 1877 թուին, որ ծագեց Ռուս-Թուրքպատերազմը և Հայաստանը նորից դարձաւ արեան, աւերածի, կողոպուտի և գաղթականութեան ասպարէզ.

այդ պատերազմը ահագին կորուստների հետ, հայերի համար բերեց և յուսոյ նշոյլ. Բեռլինի Կօնգրեսը 61 յօդուածով ապահովութիւն խոստացաւ հայերին և երաշխիք Եւրոպայի կողմից. հարկաւոր էր հարցը վառ պահել և իրերի դրութիւնը ներկայացնել ամենքին տալով նաև գործունէութեան ծրագիրներ.

Ոչ ոք Րաֆֆուց լաւ չէր ճանաչում Հայաստանը և ոչ ոք էլ նրանից աւելի տաղանդաւոր, յուզիչ ու գրաւիչ կերպով չէր կարող նկարագրել նրա դրութիւնը.

Եւ ահա մէկը միւսի յետեւից լոյս են տեսնում «Ջալալէդդին», «Խենթ», «Կայծեր»... ուր ներկայի ծանր ու ճնշող դրութեան հետ ծրագրւում են ապագայի վառվռուն, գրաւիչ, յուսալի և խարուսիկ երազները.—բոցավառ պատկերների մի հսկայական կոնտրաստի մէջ նա ներկայացնում էր գժոխքն իր բոլոր սարսափներով. Հայաստանի ներկան, մօտաւոր հորիզոնի յետեւը դրախտի սքանչելիքը ցոյց տալու պատրանքով, Հայաստանի մօտաւոր ապագան. Նորը, երիտասարդը, ապագան (Խենթ, Սմբատ, Կարօ) կռիւ են մղում հնի, փտածի, ներկայի հետ (Թոմաս էֆենդի, քաւոր Պետրոս, Տէր-Թոդիկ)... Նա հայի ցաւերի երգիչն էր, նրա յոյսերի երազողը և նրա ապագայ գործունէութեան ծրագրողը... վէպերի մէջ... այնքան գունագեղ էին այդ վէպերը, այնքան մօտալուտ և յուսալի այն երազները և այնքան կենդանի ու վառվռուն էին դուրս թռչում Րաֆֆու բեղմնաւոր գրչի տակից այդ պատկերները, որ մատաղ սերունդը ուշն և ուրուշը յարած ոչ թէ կարդում, այլ լափում էր այն ամենը, ինչ որ Րաֆֆին էր արտադրում իր վառվռուն երեւակայութեամբ: Ներկայի սարսափները, ապագայի յարաճուն երազների հետ զուգընթաց նա ներկայացնում էր մօտաւոր անցեալից փառաւոր դէպքեր և հիանալի արկածներ. Դաւիթ-Բէգը, որ գրեթէ յաղթանակով պիտի վերականգնէր հին ու մոռացուած հայրենի թագը, Խամսայի—կիսով չափ անկախ հայ-մելիքները, որոնց երազները օդն էին ցնդել և որոնց ժառանգները դեռ կենդանի են... Ղարաբաղի աստղագէտը (Թարգ.), և այլն և այլն... լրացնում էին այն պանորաման, որ բաց էր արել Րաֆֆու վառվռուն երեւակայութիւնը ծարաւի հայութեան առաջ... անապատի մէջ ծարաւից ու տապից այրուող ճամբորդի նման հայ հասարակութիւնը կլանում էր ամեն մի պատկեր, որ օազիսի միրաժների նման ի ցոյց էր հանում Րաֆֆին իր տաք և գունագեղ երեւակայութեամբ...

Նրա վէպերն անցնում էին ձեռքէ ձեռք և կարդացւում էին յափշտակութեամբ ամեն դասակարգից, ուստի 1888 թուի ապրիլին, Րաֆֆու անսպասելի և վաղահաս

ժանը մի սոսկալի հարուած էր ոչ միայն մեր աղքատիկ գրականութեան, այլ ամբողջ հայ հասարակութեան համար, որի բուռն համակրանքն և անկեղծ կսկիծն արտայայտուեց Րաֆֆու այնպիսի թաղմամբ, որին մինչ այն չէր արժանացել և ոչ մի հայ։ Ցարդ, ոչ ոք Րաֆֆու չափ ժողովրդական չէ և ոչ ոք նրա չափ չի կարդացւում. դեռ կենդանութեան ժամանակ նրա գրքերն այնքան էին ծախւում, որ հեղինակին միջոց էին տալիս մի համեստ ապրուստի։ Րաֆֆին առաջին հայ մարդն էր, որ հնարաւոր դարձրեց գրականութեամբ ապրելը, որ լաւագոյն ապացոյց է նրա անսահման ժողովրդականութեան։ Նա ստեղծեց և մշակեց մեր վէպի լեզուն և նա էր, որ այդ լեզուն մատչելի դարձրեց ընթերցող հասարակութեան ամենալայն խաւերում։ Նրա ոճը և պատմելու ձևը ոչ միայն չեն մեռել, այլ հէնց այսօր, երեք-չորսից աւելի հետեակ գրողներ, առանց խոշոր տաղանդի ընթերցող և ժողովրդականութիւն ունեին լոկ Րաֆֆուն նմանուելու պատճառով։

Ռ. Պատկանեանից յետոյ, որ ստեղծեց մեր երգն ու նրա լեզուն, Րաֆֆին ամենամեծ մշակողը, տարածողն ու հարստացողն է մեր լեզուի, որին գոյներ, հոգի, արտայայտութիւն և զգայմունք տուողը իրօք Րաֆֆին է միայն։

Նրա բացասական տիպերը մեծ մասամբ իրական են և բնական, այն ինչ իդէալական տիպերը երեւակայական և անկենդան։ Այդ չէր խանգարում, որ մօտիկ անցեալի մեր շարժումներն սկսուէին և գործադրուէին Րաֆֆու գծած ճանապարհով և իրական մարդիկ կրէին Րաֆֆու երեւակայական հերոսների անունները... Նա բաղդաւոր էր, որ երկնեց այդ ամենը և մեռաւ, առանց հետևանքները տեսնելու։

Րաֆֆին մի ազգասէր գրող է, ինչպէս մեր հեղինակների մեծամասնութիւնը. նրա գրչի տակ Հայաստանը դուրս է գալիս մի դրախտ, հայը միշտ քաջ, թէպէտ անբախտ. նրա անբախտութեան պատճառներն են՝ վանքերը, ագէտ հոգևորականութիւնը և քրիստոնէութիւնը։ Նրա ամենից յայտնի գործը «Սամուէլն» է. դա Փաւստոսի Հայոց

պատմութեան վերարտադրութիւնն է գեղարուեստական ձեւով.—գեղեցիկ, տեղ-տեղ հիանալի պատկերների մի պանորամ է դա՝ կարելոյն չափ պատմական, թէեւ միանգամայն զուրկ գեղարուեստական ամբողջութիւնից։ Իր ունեցած պատմական տեղեկութիւնները Րաֆֆին այնքան շատ է տալիս, որ թէ ծանրացնում է վէպը եւ թէ թուլացնում նրա գեղարուեստական տպաւորութիւնը։ Տիպերը, բացի Որմիզդուխտից եւ Արտաւազդ մանուկից, անկենդան են եւ անաջող։ Ամբողջ վէպը ձգտում է պատկերացնելու Քրիստոնեայ Հայաստանի կռիւը հեթանոս Հայաստանի եւ մանաւանդ հեթանոս Պարսկաստանի հետ, հայ թագաւորների կռիւը նախարարների եւ կաթուղիկոսների հետ։ Լեզուն, միւս վէպերի համեմատութեամբ աւելի հարուստ է եւ աւելի հայերէն, թէպէտ, ըստ սովորութեան լի կրկնաբանութիւններով։ Երեւակայութիւնը վառ, պատկերները գունագեղ ու կենդանի, զգացմունքներն ու բոցւող գաղափարները տաք ու վառվռուն...

Րաֆֆին իր վէպերից շատերում (Կայծեր, Խենթ, Դաւիթ-Բէգ եւ այն) չի սահմանափակւում մի ամփոփ գեղարուեստական սահմանի մէջ, այլ նա ուզում է տալ եւ ամբողջ պատմութիւն, եւ բացատրել դրա պատմական, տնտեսական եւ քաղաքական պատճառները, այդ ամենը կապելով մի վիպական հանգոյցի շուրջը։ Այդ ամենը նա կատարում է խիստ լայն չափերով, ուստի թուլանում է գործի գեղարուեստական ամբողջութիւնը, որից զուրկ են գրեթէ նրա բոլոր մեծ վէպերը։ Խենթի, Կայծերի եւ Խաչ. յիշտ. մէջ նա քարոզիչ-յեղափոխական եւ էտնոգրաֆ է. Սամուէլի եւ Դաւիթ-Բէգի մէջ նա պատմավիպասան է, երբեմն աւելի պատմաբան, քան վիպասան, երբեմն էլ հակառակը։ Հրապարակախօսը, պրոպագանդիստը եւ վիպասանը նրա մէջ նստած են կողք-կողքի, որոնք աւելի միմեանց խանգարում են, քան լրացնում. եւ որոնց միացնում է եւ շաղկապում է Րաֆֆու վառվռուն հայրենասիրութիւնը եւ խորին համոզմունքը քարոզած գաղափարների։

Գ. Վանցեան

## 54. ՄԻ ՊԱՏԿԵՐ ՌՈՒՍ-ԹՈՒՐՔԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՑ

1877 տարւայ մայիս ամիսը մօտենում էր իր վախճանին։ Աղբակայ դաշտերից մէկի վրայ մի բանակ էր երևում՝ բազմաթիւ վրաններից բաղկացած։ Մէջտեղը կար մի ընդարձակ հրապարակ, ուր անբացատրելի խռովութեան մէջ շարժւում էին զինուորուած տղամարդիկ, որոնց երեսները արտայայտում էին կատաղի անհամբերութիւն։ Նոցա ամէն մէկ շարժուածքը ցոյց էր տալիս, թէ դոքա մի սարսափելի պատերազմի են պատրաստւում։ Վերջապէս գլխաւոր վրանի առջև կազմուեցաւ մի ամբիոն՝ թամբերը միմիեանց վրայ դարսելով։ Մի պատկառելի ծերունի բարձրացաւ նրա վրայ, որ իր արտաքին կերպարանքով ներկայացնում էր մի անձնաւորութիւն, որ միևնոյն ժամանակ և՛ բարձր հոգևորական է և՛ հզօր զինուոր։—Նա՝ և Շէյխ էր, և՛ զօրավար։ Նա իր ձեռքում բռնած ունէր կարմիր դրօշակ։ Զինուորած ժողովուրդը այս հրաշալի երևոյթը տեսնելով՝ այնպէս էր երևակայում, իբրև թէ իրանց հզօր պապերը կենդանացել են և ոգելից ճառ պէտք է խօսեն։

Շէյխի քարոզը սկսուեցաւ օրհնութիւններով և փառաբանութիւններով։ Ալլահի, Մուհամմէդի և նրա յաջորդների անունները արտասանւում էին մեծ ջերմեռանդութեամբ։ Յետոյ սկսեց քաջալերել այսպէս.

«Ո՛վ Իսլամի որդիք, մեծ մարգարէն, – փառք իր զօրութեան,—կոչում է ձեզ մի սուրբ գործի համար, կոչում է ձեզ պատերազմել իր կրօնի թշնամիների դէմ, որոնք սկսել են թափել Աստծոյ ծառաների արիւնը։ (Եւ թող նզովեալ լինին նոքա)։

«Վհատութիւնը, երկչոտութիւնը և կասկածը թող հեռու լինեն ձեզանից, որովհետև երկիւղը Աստուծոյ զինուորների համար չէ։ Տէրը ինքը կը տայ ձեր բազուկներին զօրութիւն և թշնամու պարանոցները ձեր սրերի առջև կը կտրատուին, որպէս չորացած հասկը հնձողի մանգաղի առջև։ Դուք ձեր ձեռքով կը բռնէք նրանց գնդակները և դէ-

պի իրանց յետ կը դարձնէք։ Ձեր անձերը պաշտպանուած կը լինեն երկաթեայ պարիսպներով, որոնց ձեր աչքերը չեն տեսնի։ Ձեզ աջակից կը լինեն կատարող հրեշտակների աներևոյթ գունդերը, որոնց մարգարէն ձեզ օգնութեան կուղարկէ։ Մեծ է Իսլամի Աստուածը և բացի նորանից ուրիշը չկայ։

«Բոլոր գեաւուրները պիղծ են Աստուծոյ առջև։ Նրանց կայքը, ընտանիքը և ամեն ինչ, որ պատկանում է անհաւատներին, Աստուած մատնում է ձեր ձեռքը։ Ցափշտակեցէ՛ք, կողոպտեցէ՛ք, այրեցէ՛ք և կոտորեցէ՛ք, որքանով կը լինայ ձեր սիրտը։ Աւարը և իր կրօնի թշնամիների արիւնը՝ Աստուած հալալ է անում սուրբ պատերազմի զինուորներին...

«Սուրբ կրօնի թշնամիների արիւնի հոսումը հաճելի է Տէրի առջև։ Անհաւատների աւերակների ծուխը նա ընդունում է որպէս մի ողջակէզ, որից ծուխը ուղիղ բարձրանում է դէպի Յաւիտենականի աթոռը։ Կողոպտեցէ՛ք, որքան կարող էք դուք։ Եւ ձեր կոտորածների արիւնի իւրաքանչիւր կաթիլի համքարքով՝ դուք կը ստանաք վարձ Աստուծոյ դրախտի մէջ։

Մեծ է ուղղափառների Աստուածը և բացի նրանից չկայ մի ուրիշը։

«Եթէ ձեր վեր առած գերիներից՝ ձեր սրտին հաճելի կը լինի ընտրել կնիկներ կամ աղջիկներ,—եթէ դուք ծառայեցնելու համար կընտրէք պատանի տղուկներ ձեր ձեռքն ընկած գեաւուրներից, – Աստուած չէ արգելում ձեզ, միայն այն ժամանակ, երբ նրանք կընդունեն Իսլամը։ Իսկ եթէ հաստատ մնացին իրանց մոլորութեան մէջ, ձեզ թոյլ է տրւում սպանել։ Իսկ ծերերին խնայել չկայ։ Անհաւատութիւնը նրանց մէջ ամրացած է իրանց ոսկորների նման»...։

Դեռ ևս երկար խօսում էր Շէյխը. նա կանգնած էր ամբիոնի վրայ, որպէս Իսլամի մարմնացած ոգին, որպէս հալածասիրութեան և մոլեռանդութեան մի կենդանի օրինակ։ Նրա ձայնը ազդու էր և սուր, և այն վայրենի ժո-

ղովրդեան կարողացաւ ոգևորել մարդկանց մորթելու համար։ Երբ վերջացրեց նա ճառը, կրկին դարձաւ դէպի բազմութիւնը այս խօսքերով։

«Աստուած ձեզանից ուխտ է պահանջում, և թող ձեզանից ամեն մէկը կատարէ իր երդումը»։

Երբ երդումը կատարեցին և բոլոր արարողութիւնները վերջացան, լսելի եղաւ թմբուկի ձայնը։ Ամեն մարդ վազեց իր ձին նստելու, վրանները հաւաքուեցան, և մի քանի ժամից յետոյ՝ ամբողջ բանակը պատրաստ էր ճանապարհ ընկնելու։ Նա շարժուեցաւ, երբ շէյխը իր ձին նստած՝ կարմիր դրօշակը ձեռին՝ առաջ ընկաւ, Աւելի քան տասն հազար քիւրդեր հետևում էին այդ սարսափելի ծերունուն։

Այսպէս սկսուեցաւ Շէյխ Ջալալէդդինի արշաւանքը դէպի տաճկական Հայաստանը։

Անցաւ մի ամբողջ շաբաթ։

Մի ճանապարհորդ էլ չէր ճանաչում իր ծանօթ լեռները։ Այժմ տեսնում է բոլորովին դատարկ, առաջ այսպէս չէր։ Խոտաւէտ արօտներում արածում էին հօտեր, ձորերի մէջ կազմուած էին խաշնարած հայերի վրանները, և հովիւների սրինգը հեռուից հնչում էր թռչունների առաւօտեան ձայների հետ։ Այն ժամանակ հովիտների և լեռնադաշտերի վրայ հողագործ հայը, իր սովորական երգը երգելով, կամ վարում էր կամ հնձում։ Իսկ այժմ.— Այժմ ամեն գործ դադարել էր, ոչ մի շունչ չէր երևում, էլ անց ու դարձ անող քարաւաններ չէին երևում, այլ միայն գիւղերի ճարակն ու ծուխը երկինքն է բարձրանում։ Աւերակներ և ամայութիւն ամենայն տեղ։

Րաֆֆի

Ի՞նչ տեսարան է նկարագրուած այստեղ. մի քրիստոնեայ վարդապետ կարո՞ղ է այսպիսի քարոզ տալ։

## 55. ՈՒՇՏՈՒՆՑԻ

Չէ կարելի տեսնել և չհիանալ այդ առողջ, կենդանի, մշտազուարթ ժողովրդով։ Նա երբէք չէ թառամում, որպէս իր ծմակների մշտականաչ կիպարիսը։ Նա երբէք չէ ծերանում, որպէս թաւուտների դարևոր-եղևնին։ Հզօր կուրծքը մերկ, զօրաւոր բազուկները հոլանի, գլխին թաղիքեայ կոնաձև քոլոզը գրած և նրա վրայ գոյնզգոյն թաշկինակներ փաթաթած, որոնց ծայրերը, ոսկեգոյն մազերի երկայն գիսակների հետ թափւում են լայն թիկունքի վրայ. հագին մի կարճ քազախայ (բաճկոնակ), որի ամրութիւնը, երկաթեայ զրահի նման, կարող է դիմանալ ամենասուր դաշոյնի առաջև, ներքին հագուստը մազեղէն գօլ-գօլ անդրավարտիքի մէջ հաւաքած,—դուք կը տեսնէք Ուշտունեաց լեռների այս զաւակին, որ երկայն նիզակը ձեռքին, թեթև, վագրի նման, անցնում է մի ապառաժից դէպի միւսը։ Նրա նիզակը, որ երկու ծայրերում սև սուր երկաթներ ունի՝ ծառայում է և՛ իբրև զէնք, և՛ իբրև նեցուկ, որը գետնի մէջ ցցելով՝ յենւում է նրա վրայ և ոստիւններ է գործում սարսափելի վհերի վրայից։ Այդ բոլորը այնպէս արագ է կատարւում, որ դու կարծում ես, թէ նա թռչունի նման թևեր ունի և օդի մէջ սլանում է։

Նրա թաղիքեայ փափուկ տրեխների տակերը ամբողջապէս գամած են սրածայր բևեռներով, որ չսահեն, չայթաքեն ժայռերի վրայ ման գալու ժամանակ։ Գօտու մէջ խրած ունի մի կեռ խենջար, որի կոթը դերձանով կապած է պատեանին. այդ կապանքը նրա համար է, որ մինչև արձակելը նրա բարկութիւնը անցնի. իսկ երբ մերկացրեց սուրը՝ գործողութիւնն արդէն վճռուած է, մինչև արեան մէջ չշողացնէ՝ իր տեղը չի դնի։

Թշնամու հետ անգութ է՝ իբրև գազան, բարեկամի հետ բարի է՝ իբրև հրեշտակ։ Իր հովիտների բարձրահասակ սօսիների նման գեղեցիկ է նա։ Երբ նայում է քո երեսին՝ դու դմայլւում ես։ Նրա կապուտակ աչքերը այն-

պէս լուսափայլ, այնպէս ընդարձակ և այնպէս խոր են, որպէս այն կապուտակ ծովը, որ ծփում է Նրա աշխարհի մօտ։ Նրա այրական դէմքը այնպէս արձակ ու այնպէս պայծառ է, որպէս Աշտունեաց պարզ երկինքը։

Աշտունեաց պարզ երկնքի նման՝ այդ խաղաղ դէմքը յանկարծ մռայլւում է, մթնում է, շանթեր է արձակում՝ երբ եղանակը փոխւում է, և տեղի է ունենում վերահաս փոթորիկը... Այդ միջոցին նա չէ խօսում, այլ որոտում է և այդ որոտման ձայնի մէջ դու լսում ես նախկին հայի ուժեղ բարբառը իր բոլոր կոշտ և անտաշ ձևերով։ Բայց այդ կոշտ հնչիւնները քո հոգուն այնքան ազդու են, քո սրտին այնքան կախարդիչ են, որ որքան էլ ընկած լինես դու հոգով՝ յանկարծ ներշնչւում ես մի անբացատրելի ոգևորութեամբ...

Րաֆֆի

---

## 56. ԼՈՒՍԱՒՈՐՉԻ ՏՈՀՄԸ

Լուսաւորչի տոհմը ունէր իր սրբազան անցեալը, որ նուիրագործուած էր մեծահռչակ և վսեմ աւանդութիւններով, որ ժողովրդի սրտին և հաւատին շատ մօտ էին, որ նրա համար անմոռանալի էին։ Ժողովուրդը պաշտում էր այդ տոհմը և ընդունում էր նրան իբրև ամենաբարձր հոգևոր հեղինակութիւն։ Այդ էր պատճառը, որ Հայաստանը սիրում էր այդ տոհմի մէջ միայն տեսնել իր եկեղեցու ներկայացուցչին, նրան միայն արժան էր համարում հայրապետական աթոռը, և միշտ նրա բարերար ձեռքում էր փափագում տեսնել իր ծայրագոյն հովուապետի գաւազանը։ Այդ զգացմունքներից առաջ եկաւ այն ժառանգական կաթողիկոսութիւնը, որ իջնում էր Լուսաւորչի տոհմի մէջ յորդւոց յորդի։

Եւ այդ հայրապետական տունը, իր գոյութեան ամբողջ ընթացքում, միշտ արդարացրեց ժողովրդի թէ հաւատը և թէ նրա փափագները։ Նա միշտ մնաց անբիծ և

անարատ, և ամենայն անձնուիրութեամբ կատարեց իր յանձն առած բարձր հոգաբարձութիւնը։ Իսկ այդ հոգաբարձութիւնը որքան հաճելի է ժողովրդի համար, նոյնքան ծանր է թագաւորների համար։ Ամենայն անաչառութեամբ սանձահարում էր նա թագաւորների մոլութիւնները և նրանց կամայականութիւններին սահման էր դնում։ Նա, իրաւ, ճնշում էր գործ դնում թագաւորների վրայ. բայց երբէք գահին չէր դաւաճանում։ Հայրենասիրութիւնը և արքայական թագի պաշտպանութեան գաղափարը՝ այդ տոհմի գերագոյն առաքինութիւններից մէկն էր։

Լուսաւորչի հայրապետական տունը, իր վեհափառութեան բարձր դիրքի համեմատ՝ արքայավայել կացութիւն ունէր։ Այդ տունը աւելի փայլ ստացաւ Ներսէս Մեծի օրերում, Թագաւորը այնտեղ մտնելու ժամանակ՝ իրաւունք չունէր նստելու, մինչև հայրապետը տեղ ցոյց չտար։ Բայց հայրապետը թագաւորի արքունիքը մտնելու ժամանակ ազատ էր ամեն տեղ նստելու։ Ծառայողների և զանազան պաշտօնակալների մի ստուար բազմութիւն միշտ ներկայ էր այնտեղ։ Տասն և երկու եպիսկոպոսներ հայրապետի անբաժան գործակիցներն էին և խորհրդակիցները։ Չորս վարդապետ և վաթսուն երէց միշտ անպակաս էին նրա սպասից։ Աշխարհականներից մինչև հինգ հարիւր հոգի ամեն օր սեղան էին նստում։ Բացի դրանցից՝ հայրապետը ունէր իր այլ և այլ պաշտօնեաները, որպիսիք էին՝ սենեկապետ, փակակալ, դռան եպիսկոպոս, դպրապետ, հիւրընկալ, սարկաւագապետ, դռան վարդապետ, դռան երէց և այլն։

Հայրապետական տունը, Լուսաւորչի բոլոր ժառանգների օրերում, փակուած չէր այս կամ այն վանքի առանձնութեան մէջ։ Նա աշխարհից չէր անջատուած և աշխարհի առջև միշտ բաց էր։ Լուսաւորչի ժառանգները՝ Աբրահամի, Իսահակի և Յակոբի նման, միևնոյն ժամանակ թէ ժողովուրդի հայրեր էին և թէ գերդաստանի հայրեր։ Նրանք բնակւում էին իրանց ընտանեկան խաղաղ շրջանում։

Մեծ էր փառքը հայրապետի, երբ նա մի որ և է տեղ

էր գնում։ Մի ամբողջ բանակ շարժւում էր նրա հետ։ Մի քանի հարիւր սպառազինուած ձիաւորներ իր թիկնապահներից՝ ուղեկցում էին նրան։ Մի քանի հարիւր եպիսկոպոս, վարդապետ, երէց և այլ եկեղեցականներ ջորիների վրայ նստած՝ ընթանում էին նրա առջևից և ետևից։ Ինքը հայրապետը նստած էր լինում կամ սպիտակ ջորու վրայ կամ կառքի մէջ, որ նոյնպէս տանում էին երկու սպիտակ ջորիներ, որ միայն թագաւորն իրաւունք ունէր գործ ածելու։ Ջորիների թամբերը և այլ հանդերձանքը զարդարած էին լինում ոսկով։ Հայրապետը սովորաբար երեսը ծածկած էր ունենում սև քօղով։ Առջևից տանում էին հայրապետական գաւազանը, և իբրև սրբազան դրօշ — բարձր խաչվառը։

«ՍԱՄՈՒԷԼ» — Րաֆֆի

---

## 57. Ա Ր Ա Ք Ս

Հին Արաքսը... զարմանալի քմահաճութիւններ ունէր։ Անյիշելի ժամանակներից յամառութեամբ կռւում էր իր անհաւասար եզերքի հետ և կարծես, դժգոհ էր այն նեղ շաւղից, որ գծել էր նրա ընթացքի համար նոյնքան քմահաճ բնութիւնը։ Նա սիրում էր ազատութիւն։ Նեղ շաւիղը վրդովւում էր նրան։

Երբեմն լեռնային երկու զուգահեռ գօտիները միաբանում էին և սեղմում էին նրան իրանց անձուկ և խորին ձորակի մէջ։ Այդ միջոցին նրա կատաղութիւնը չափ չունէր։ Ահռելի յորձանքներով զարկւում էր իր ապառաժոտ ափերին, գոռում էր, գոչում էր, փրփրում էր, և մարդ, կարծես, լսում էր նրա սոսկալի որոտմունքի մէջ այս ճակատագրական խօսքերը. «նեղ է... խեղդւում եմ»...

Երբեմն լեռնային գօտիների միաբանութիւնը խախտւում էր, բաժանւում էին միմեանցից, հեռանում էին միմեանցից և բաց էին անում նրա առջև լայն, ընդարձակ տարածութիւն։

Այդ միջոցին նրա կամայականութիւնը չափ չունէր։ Ազատուելով իր նեղ կիրճից, մի քար վիշապի նման՝ անխնայ ողողում էր, յեղյեղում էր իր հարթ, կանաչազարդ ափերը,—և կամ, մի արբած հսկայի նման, երբեմն դէպի աջ էր թեքւում, երբեմն դէպի ահեակ էր խոտորւում, և երբէք ուղիղ ճանապարհով չէր գնում։

Նա ազատութիւնը խելացի կերպով վայելել չգիտէր։ Յանկարծ վիթխարի թեւերը բաց էր անում, խլում էր ցամաքից մի կտոր հող և, ճնշելով իր զով գրկի մէջ, կլղղխացնում էր նրան։ Առժամանակ երեխայական սիրելութեամբ՝ սկսում էր փայփայել և խնամել իր խաղալիքը։ Կղզին աճում էր, կանաչազարդւում էր, աճում էին թուփերը, վառւում էին ծաղիկները։ Երկնքի թռչունը հիւսում էր այնտեղ իր բոյնը, վայրի անասունը սնուցանում էր այնտեղ իր ձագուկներին։ Կղզին ներկայացնում էր մի գեղեցիկ փունջ, որով զուարճանում էր նա և, պճնասէր երիտասարդի նման, զարդարում էր իր հպարտ կուրծքը։ Բայց յանկարծ կարծես ձանձրանում էր նա. ալիքները փրփրալով բարձրանում էին, կոհակները կատաղաբար մռնչում էին և մի քանի րոպէի մէջ կլանում, ոչնչացնում էին գեղեցիկ զարդը և նրա հետքն անգամ չէր երևում։

«ՍԱՄՈՒԷԼ».—Րաֆֆի

Համեմատեցէք «Մայր-Արաքսի» հետ. Ինչպէս է նկարագրում Րաֆֆին և ինչպէս Գամառ-Քաթիպան. ո՞րն է ճիշտ և համապատասխան իրականին. Ինչ գաղափար է արծարծում Րաֆֆին և ինչ Ռափայէլը։ Մի արբած հսկայ և մի սգաւոր այրի.— Համեմատեցէք Զանգու հետ, Տերեկի (Լերմոնտով) և Днѣпръ-ի (Гоголь) հետ։

---

## 58. ՂԱԶԱՐՈՍ ԱՂԱՅԵԱՆ

Աղայեանը ծնուել է 1840-ին Թիֆլիզից ոչ հեռու գտնուող Բօլնիս գիւղում։ Առաջին ընթերցանութիւնը նա սովորել է Շամշուլդա գիւղի քահանայից։ 1853-ին նա մտնում է Ներսիսեան դպրոցը, այնուհետև մի տպարանա-

կան ձուլարան՝ իբրև աշակերտ, ուր Համբարձում Ընֆիաճեանցի հովանավորությունն ու խրախուսանքը նրան ասպարեզ են տալիս առաջ գնալու։ Ընֆիաճեանցի շնորհիվ Աղայեանն ընկնում է իր ժամանակի առաջավոր մարդկանց՝ Ալավերդեանի, Մարկոս Աղաբէգեանի և այլոց շրջանը։ Այստեղ ահա, տպարանում ծառայելիս, նա տպում է իր անդրանիկ երկը, 1862 թ. «Մեղուի» մէջ։ Աղաբէգեանի խորհրդով, արհեստն և ուսումը կատարելագործելու համար, Աղայեանը թողնում է իր արդէն ապահով պաշտօնը և գրեթէ առանց որևէ միջոցի ուղևորւում Ռուսաստան, Մոսկուայում նա կրկին մտնում է տպարան գրաշարութեամբ ապրելու և միաժամանակ ուսումը կատարելագործելու նպատակով։ Մի քանի տարի շարունակ Մոսկուայում և Պետերբուրգում փախ առ փոխ ապրելուց և արհեստի մէջ կատարելագործուելուց յետոյ, Աղայեանը վերջապէս ընկնում է Եղեանի շրջանը։ Վերջինիս մօտ այդ ժամանակ ժողովներ էին տեղի ունենում, ուր ուսանողները պարտաւոր էին գրաւոր շարադրութիւններ կարդալ թէ անձնական զարգացման և թէ մանուկանդ նորաբոյս լեզուի մշակման համար։ Այդ ժողովների արդիւնքն է ահա Աղայեանի առաջին յայտնի աշխատութիւնը՝ «Արութիւն և Մանուէլ»։ Ինքն Աղայեանը հետևեալ կերպով է որոշում իր գրած վէպի արժէքը.—«Ոմանք այն միտքը տարածեցին ընթերցող հասարակութեան մէջ, որ իբրև թէ իմ աշխատութիւնը մի պամֆլետ է յայտնում հին գաղափարների, հին դաստիարակութեան դէմ, որոնց վրայ չի ողբում, այլ յարձակւում է անխնայ և նրանց տեղը տարածում նորը և լաւագոյնը»։

1870-ին Աղայեանը հրաւիրւում է Ախալցխա՝ ուսուցիչ, այստեղից էլ Ալէքսանդրապոլ, որպէս տեսուչ, ապա նոյն պաշտօնով տեղափոխւում է Երևան և Շուշի։ Այնուհետև նա նշանակւում է Թիֆլիզի Ներսիսեան թեմական տեսուչ։ Ապա հինգ տարի շարունակ նա աշխատակցում էր «Աղբիւր» մանկական թերթին, ուր մի կողմից նա հիանալի լեզուով խօսում էր մանուկների հետ, իսկ մեծերի բաժ-

նում, գրում և տարածում մանկավարժական և լեզուական խնդիրներ։ Աղայեանի գործերից յայտնիներն են. «Արութիւն և Մանուէլ» և «Երկու քոյր»։ Իբրև մանկական գրող նա իր նմանը չունի մեր գրականութեան մէջ. «Անահիտը», «Տորք Անգեղ», «Արեգնազան», «Օձամանուկ» և «Արևահատ», «Արևամանուկ», մեր մանուկների ընթերցանութեան ամենալաւ գրուածքներն են։

Գ. Վանցեան

## 59. ԱՐՈՒԹԻՒՆԻ ԱՂՕԹՔԸ

Ո՜հ, Աստուած իմ, Աստուած, Դու բարի ես, Դու միշտ ողորմած,
Շատ ժամանակ է, որ Քո գթութիւնը երբէք չեմ յիշած.
Ներիր ինձ, ներիր, Հայր իմ Արարիչ, ես մեղաւոր եմ,
Դու ինձ շնորհել ես ուժ ու զօրութիւն, ես մոռացել եմ.
Դու հրամայել ես լինել գործունեայ, ես նոր եմ յիշում,
Ես այսուհետև գործել կըսկսեմ իմ բոլոր կեանքում,
Գործունէութեամբ իմ մէջ կըզգամ ես ինձ բարեբար,
Գործունէութեան դէմ չկայ ոչինչ անհաս և դժուար։
Թող այս ձեռներս, որ այժմ քաջառողջ, պարապ են գործով,
Թող այս ճակատըս, որ այժմ լայնացած, ճոխանայ մտքով,
Թող այս ոտներըս, որ այժմ ամրացած, ուղիղ ընթանան,
Թող այս աչքերըս, որ այժմ բացուած, նոր փայլ ստանան.
Յօժար եմ, յօժար, ամենայն անձամբ գործունեայ լինել,
Հաստատուն յուսով, անվեհեր սրտով միշտ յառաջ դիմել —
Դէպի նպատակ — դէպի կատարեալն և դէպի բարին,
Որին ձգտելը մի անհրաժեշտ պարտք է մարդկային։
Դու մի հաստատուն, ով իմ Արարիչ, կամք տուր ինձ միայն։
Իսկ Քեզ վայել է և՛ փառք և՛ պատիւ այժմ և յաւիտեան։
Պատմեցէք այս արձակ և գրեցէք։

## 60. ՁՄԵՌՆ Է

Ձմեռն է, ձմեռ, սիրուն երեխէք։
Ձմեռն է, և դուք դողում, մրսում էք,
Բայց դուք մենակ չէք, ես էլ եմ մրսում.
Ես էլ եմ ձեզ պէս դողում, սարսռում։

Բայց գիտե՞ք արդեօք ինչ է ձմեռը,
Այդ պատկառելի համարուած ծերը.
Ո՛չ, մի հարցնէք, դուք կըսարսափէք,
Երբ դրա բարքը պատմեմ ձեզ մէկ-մէկ։
Այդ անիրաւը ուր ոտք է դնում,
Առանց խղճալու մահ է տարածում.
Երեսին առած ըսպիտակ դիմակ,
Մեզանից ծածկում է սև դէմքն այլանդակ։

Շատ ժամանակ չէ, ինչ որ դա եկաւ,
Եւ դուք լաւ տեսաք, թէ ինչեր արաւ,
Դըրա երկիւղից ջուրը քար կտրեց,
Բզըզան առուն լռեց, պապանձուեց,
Դալար բոյսերը սառան, փետացան,
Նախշուն հաւքերը թռան, հեռացան,
Բայց էլի չառին իր ճանկը ձըգեց,
Բուք-բորան արաւ, բոլորին խեղդեց,
Սիրուն վարդենու թուփը չորցըրեց,
Սոխակի լեզուն տակիցը կտրեց։

Ո՛վ դու կեղծաւոր, փարխեցի ծեր,
Դու ունիս, գիտենք, շողոքորթներ էլ,
Որոնք բորանըդ, թիփիդ չեն տեսնում,
Ոչ բուք բորեազիդ տակ ցրտահարւում.
Սառցեղէն սրտին ի՞նչ բուք, ի՞նչ բորան
Կարէ ներգործել, կամ ի՞նչ ցուրտ՝ ի՞նչ բան,
Օրը կարճացել, գիշերն երկարել,
Լոյսը նուաճուել, խաւարն է տիրել,
Երկինքն ամպապատ, գետինքը սառած,
Գարունը հեռու, ցուրտը կատաղած.
Այսպէս է ահա սոսկալի ձմրան
Ալիքով ծածկած պատկերը դաժան...

Ցուրտ է, սաստիկ ցուրտ, սիրուն երեխէք.
Եթէ ինձ նման դուք էլ մըրսում էք,

Եկէք միասին մի հնար գտնենք,
Զմռան ճանկերից մեր գլուխն ազատենք։
Դուք ձեր մանկական անարատ մտքով,
Ես իմ հասակիս բազմամեայ փորձով,
Եթէ կամենաք, խելք խելքի կտանք,
Եւ ինչից ասես՝ կրակ կստանանք,—
Կրակ լուսատու, պայծառ, անստուեր,
Որ տաքացնէ սառցեղէն սրտեր,
Որ կենդանացնէ գօսացած ձեռներ,
Որ հալեցնէ սառցապատ լեռներ.—
Օրինակ առնենք մեզ կիզապակին.
Եւ մենք կըհասնենք մեր նպատակին։

Ղ. Աղայեան

Համեմատեցէք այս Աբովեանի և Պռօշեանի «Ձմեռ»-ների հետ։

---

## 61. ԱՇՈՒՂ

Ինչպէս ամեն տեղ, նոյնպէս և մեր երկրում երգերը դարերի ընթացքում ապրել են ժողովրդի բերանում, սերընդից սերունդ անցնելով։ Երգի հետ միասին առաջ է եկել և երաժշտութեան նախնական ձևը՝ սրինգն ու սազը, որ մի տեսակ պահանջ դառնալով ժողովրդի համար, առաջ է բերել երգող երաժիշտների մի ամբողջ բազմութիւն, որ մեզանում աշուղ են անուանում։

Անդրկովկասի ժողովրդական երգիչներ-աշուղները, որոնք բացառապէս նուիրուած են իրանց արհեստին, թափառական կեանք են վարում։ Նրանք տուն չունին, նրանք շրջում են գիւղից գիւղ, գաւառից գաւառ, երգում, ստեղծագործում... Պէտք է ասել, որ ժողովրդական երգիչը մեծ յարգ ունի մեր գաւառներում. Նրա կուրութեան առջև պատկառում է գիւղացին, իսկ նրա ստեղծագործութեան մէջ նախախնամութեան մատը տեսնելով՝ ժողովուրդը երկիւղածութեամբ է վերաբերւում դէպի աշուղը։

Օտար աշուղը գիւղում ամբողջ հասարակութեան հիւրն է. ձմեռը նրան տնից տուն են տանում և մի քանի ընտանիք ժողովուելով մի որ և իցէ զոմում, սաքուի վրայ բոլորուելով երգչի շուրջը, մի խուղէ ճրագի լոյսի տակ, որ մի խորհրդաւոր տեսք է տալիս ժողովին, ականջ են դնում երգչի նուագախառն երգին և սրտի յուզմունքների րոպէներում աշուղին սև կոպէկներ նուիրում։

Պէտք է ասել, որ գիւղերում ձմեռուայ համերգները աւելի ընտանեկան բնաւորութիւն ունին, իսկ ամառը, մանաւանդ լուսընկեայ գիշերները, մի մեծ հրապարակի վրայ գլխաւորապէս կրպակի մօտ՝ ամբողջ գիւղը լցւում է երգչին ականջ դնելու և աւելի հետաքրքրւում է աշուղների մրցութիւնով։

Աշուղների մրցութիւնը, այն էլ յայտնի, արդէն հռչակ ստացած աշուղների մրցութիւնը մի ամբողջ դարագլուխ է կազմում գաւառական կեանքի մտաւոր պատմութեան մէջ։ Երկու նշանաւոր աշուղների մի գիւղ գալը իմացւում է գաւառում մի քանի օր առաջ. հարևան գիւղերից շատերը գալիս են ներկայ գտնուելու երգերի այդ ճակատամարտին, և ամբողջ գաւառը անհամբեր, լարուած հետաքրքրութեամբ սպասում է մրցումի վախճանին, որի մանրամասն պատմութիւնը սկսում է բերանից բերան շրջել գաւառներում և երկար ապրում է սերունդների յիշողութեան մէջ։ Պատմում են, որ աշուղների այնպիսի մրցումներ են եղել, որոնք օրեր ու շաբաթներ են շարունակուել։ Այն երգչի մասին, որ տանում է յաղթանակը, ժողովուրդը ասում է, օրինակ՝ «Աշըղ Օհանը աշըղ Դաւթին կապեց»։

---

## 62. ԱՇՈՒՂՆԵՐԻ ՄՐՑՈՒՄԸ

Գիւղի քեթխուդաները, քահանան և բոլոր կանայք ու երեխայք հաւաքուել էին և աշուղի շուրջը ծալպատիկ նստոտել գետնի վրայ։ Այդ խմբին մօտեցաւ մի ուսում

առած երիտասարդ Յարութիւն անունով։ Սա ոչ ոքի վրայ ուշք չդարձրեց, բացի աշուղի նուագարանից (սազ), որի մեծութիւնն ու զարդարանքը գրաւեց իրան։ Ուստի անվախ ու համարձակ մօտեցաւ աշուղին և գլուխ տուեց նրան, ասելով.

—Է՛շխ օլա, ուստա [1]։

—Էշխն չո՛խ օլա, սաֆա՛ գեալդն [2]), պատասխանեց աշուղը։

Նրանք իրանց խօսքերն ու երգերը շարունակեցին տաճկերէն, որոնց թարգմանութիւնն այս է.

ՅԱՐՈՒԹԻՒՆ. Վա՛րպետ, չի՞ կարելի արդեօք, որ մենք գոտիկ գոտկի խփենք, շնորհք շնորհքի։ Ես լսել եմ քո համբաւաւոր անունը և եկել եմ, որ՝ եթէ կարելի է, մեր շնորհքը իրար հետ համեմատենք։

ԱՇՈՒՂ. Գլխիս վրայ, մեծ ուրախութեամբ, շա՛տ սիրով, շա՛տ բարի, շա՛տ բարի... Բայց, իմ սիրելի, իմ աչքիս լոյս, ես տեսնում եմ, որ դու աշուղ չես, դու նուագարան չունես, նուագարանդ ուրիշի ես տուել, ինձ մօտ առանց նուագարանի եկել... Ոչ։ այդպէս չէ լինում... Ինձ մօտ նուագարանով են գալիս, առանց նուագարանի գնում... Դու մոլորուած ես, քեզ խաբել են, դու երիտասարդ ես... Իմ գիրն այնպիսի գիր չէ, որ ամեն մարդ կարդայ. իմ ջուրն այնպիսի ջուր չէ, որ ամեն մարդ խմի... Ի՞նչ կասես, սա՛ն եախշի (դո՛ւ լաւ ասա՛)։

ՅԱՐՈՒԹԻՒՆ (իր մէջ). այս ի՜նչ ճարտար մարդ է, սրան չի կարելի յաղթել։ Է՜հ, շատ հոգս չէ, ինչ ուզում է՝ լինի, ձու հօ չեմ, որ կոտրուեմ, աշուղ չեմ, որ անունս կոտրուի։ (Ձայնը բարձրացնելով) Գիտե՞ս ինչ կայ, վա՛րպետ, դու ուղիղ ես ասում, ես աշուղ չեմ, ուզում եմ աշուղ դառնալ, բայց նուագարան չունիմ։ Քո նուագարանը ինձ շատ է դիւր գալիս։ Ա՛րի մրցենք (բաս մտնենք), ինչ ուզում է՝ թող լինի։ Եթէ դու յաղթես, ես իմ հրա՛ցանը

---

[1]) Զուարթ կաց, վարպետ. [2]) Շա՛տ զուարթ կաց, բարով եկար։

քեզ կը տամ, որ Ղախմ-բաղչասարայի է, երկու հարիւր ռուբլով է առած։ Թող վկայ լինեն այս բոլոր քեթխուդաները։ Իսկ եթէ ես յաղթեմ, որ յոյս ունիմ Աստուծով, նուագարանը, ինչպէս աշուղների օրէնքն է, մեծահոգութեամբ ինձ կը տաս։

ԱՇՈՒՂ. Շա՜տ բարի, շա՜տ բարի... Բայց դու գոնէ աշուղների օրէնքը գիտե՞ս, որ սկզբի ասելու իրաւունքն իմն է. որովհետև դու ես եկել ինձ մօտ, դու ես ուզում իմ նուագարանը ձեռքիցս առնել, որ երազով էլ չես տեսնի...

ՅԱՐՈՒԹԻՒՆ. Գիտեմ, գիտեմ, բոլոր կանոնը գիտեմ։ Կարող էք սկսել։

Նրանք հարցրին իրար անունը. աշուղն ասեց որ իր անունը Շոհլայի է, Յարութիւնն էլ իր անունը փոխեց, ասեց՝ «Բերովբէ եմ»... Յարութիւնը իր մահակը նուագարանի տեղ բռնեց և ծունկ չոքեց աշուղի դիմացը։ Ամենից առաջ սկսեցին պարծենալ։ Բայց որովհետև սկզբի ասելու իրաւունքը աշուղինն էր, նա առաջ սկսեց։ Յարութիւնը պարտական էր նրա երգի յանգին (ղաֆիա) հետևել։

ՇՈՀԼԱՅԻ (սկսում է երգով պարծենալ).

Ընդունիր ողջոյնս, աշխարհի պատանի,
Համարձակ, քաջի պէս դուրս արի մէյդան,
Թող չելլէ ասպարէզ, ով շնորհք չունի,
Աշուղ անուն տալը նրան չէ արժան։

ԲԵՐՈՎԲԷ.—Ընդունում եմ ողջոյնդ, պատուելի վարպետ,
Ես ունիմ խօսքերիդ մէկ մէկ պատասխան.
Չեմ մնայ քո դիմաց յետադէմ, անպէտ,
Համարձակ կանգնող եմ քո դէմ յանդիման։

ՇՈՀԼԱՅԻ.—Կանչել եմ անունը Մըշու Սուլթանի,
Որ մարդին [1]) նամարդի նա մոհտաջ չանի.
Երևի քաջ լինել դու չես արժանի,
Քեզանից պէտք է խլել քո գէնք հրացան։

ԲԵՐՈՎԲԷ.—Ես այդ չեմ ընդունում, դու սուտ ես խօսում,
Ի զուր ես ինձանից շուտով բամբասում.
Ոսկեզանգ լարերը սազիդ չե՞ն ասում,

Որ յետ երկրպէի ինձ է սեպհական։
ՇՈՀԼԱՑԻ.—Իմ ոսկեթել սազին շատերն են հաւնել,
Շատերը, քեզ պէս մէյդան են ելել.
Բայց նրանք են իրանց սազից զրկուել.
Եւ սարսափած փախել մինչի Հընդստան։
ՔԵՐՈՎԲԷ.—Վա՜յ, վարպետ, վարպետ, դա չես ամաչել,
Որ այդպէս խոր ու մութ երգեր ես կանչել...
Այդ ոչինչ, թէև դու սովոր չես փախչել,
Այժըմ նրանց յետքից կերթաս Խորասան։
ՇՈՀԼԱՑԻ.—Դու որ կաս՝ փետուր ես, ես որ կամ՝ քար եմ,
Կարծում ես թէ ես էլ քեզ պէս անճար եմ.
Սպասիր, քո առջեդ մի թակարդ լարեմ,
Որ դու ընկնես մէջը ճընճղուկի նըման։
ՔԵՐՈՎԲԷ.—Ես այնպէս տըղայ չեմ, որ թակարդ ընկնեմ,
Ինձ ինչ պէտք է ասես, որ ես չըդըմնեմ.
Բայց քո վերադ այնպէս մի քար կը դնեմ,
Որ հէնց մընաս տակը այժմ և յաւիտեան։

—Դրան վերջ չկայ, ձայն տուին քեթխուդաները. դու կասես, նա կասի... Շուտ արէք, թէ բան էք ասելու, ասեցէք, տեսնենք որըդ էք յաղթում, որըդ չէ։

ՇՈՀԼԱՑԻ.—Դուք շատ էք շտապում, թող լինի այդպէս,
Սրա պէս պարծեցողին չեմ անի անտես.
Աշուղ Շոհլային եմ, գիտուն, սըրատես,
Չեմ ուզում լինել ցածհոգի, անբան։
ՔԵՐՈՎԲԷ.—Քո բոլոր գիտութիւնն ինձ վաղուց է յայտ,
Մի նայիր որ սազի տեղ ձեռքումս է փայտ.
Անբաղդ Քերովբէն եմ, աշուղ եմ անյայտ,
Ո՜հ, թէ այսպէս մընամ մինչև օրն իմ մահուան։

Սրան հետևում է հանելուկ թեժլիսը, այսինքն հարց ու պատասխանը։

ՇՈՀԼԱՑԻ.—Լըսիր, թէ գիտուն ես, ով քաջ ձևացող,
Այն ով էր, որ ջուր հանեց ոսկրից,
Այն ինչ պոզաւոր էր, երեսին կար քող,

[1]) «Մարդին» բառի մէջ, որ նշանակում է «ազնիւ», դն բ չպէտք է հնչել։

Ո՞վ է ծնուել երկու անգամ մօրից։
ՔԵՐՈՎԲԷ.—Քո սասծներին կամ պատրաստ լըսող,
Սամփսոնն էր՝ ջուր հանեց ոսկրից,
Պօղաւոր Մովսէսն էր՝ երեսին կար քօղ,
Յովնանը ծընաւ երկու անգամ մօրից։
ՇՈՀԼԱՅԻ.—Ինչ ծառ է, որ անհող, անջուր է բսնում,
Առանց տերևների ճիւղեր արձակում.
Ի՞նչ բան է սուր՝ քան թուր սըրտի մէջ ցցւում,
Այն ի՞նչ արարած է, որ ծընաւ հօրից։
ՔԵՐՈՎԲԷ.—Բախրի եղջիւրները անհող, անջուր ենբսնում,
Առանց տերևների ճիւղեր արձակում.
Դառը խօսքն է սըրտում սըրի պէս ցըցւում,
Քո կարծիքով Եւան ծընել է հօրից։
ՇՈՀԼԱՅԻ.—Այն ո՞վ էր, որ սայլով երկինք վերացաւ,
Սողոմոն իմաստունը ի՞նչ բան չիմացաւ.
Կարմիր ծովը քանի՞ տեղից պատռեցաւ,
Շոհլային եմ՝ շատ լաւ տեղեակ բոլորից։
ՔԵՐՈՎԲԷ.—Եղիան էր՝ սայլով երկինք վերացաւ,
Սողոմոնն ինձպէսի միտքը չիմացաւ.
Կարմիր ծովը տասներկ տեղից պատռեցաւ.
Քերոբէն եմ շատ ու շատ գոհ այս օրից։
Հարցնելու հերթը հասաւ կեղծանուն Քերովբէին.
ուստի սկսեց, բայց ոչ թէ տաճկերէն, այլ հայերէն։
ՔԵՐՈՎԲԷ.—Ես քո սուր հարցերը մէկ մէկ լուծեցի,
Չկամիմ հեռանել քո մոլորութեան.
Հէնց այժմ մի չընչին խօսք մըտածեցի.
Ո՞վ է հիմքը դրել Հայոց ազգութեան։

Աշուղը մնաց լուռ ու գունաթափ. չիմացաւ թէ ինչ պատասխանի։ Բայց քեթխուդաները հարկադրեցին Քերովբէին, որ նա աւարտէր իր երգը, ուստի նա շարունակեց.

Եթէ դու գովէիր Հայոց Քաջերին,
Մի համբոյր կըտայի սազիդ լարերին.
Բայց դու հաւատում ես սուտ սուտ խօսքերին,
Չգիտես՝ ովքեր են Արամ ու Տիգրան։
Քեզ Սուրբ Կարապետը շընորհք է տուել՝

Պարզամիտ հային խաբել, սուտ ասել.
Դու հայերէն անգամ չես ուզում երգել.
Ո՞րտեղից կիմանաս՝ ով էր Գայլ Վահան։

—Է՜ վայլա, ասեց աշուղը՝ սազը տալով Յարութիւնին։ Յարութիւնը սաստիկ ուրախանալով՝ չիմացաւ ինչ ասի։ Յանկարծ միտքն ընկաւ իր սովորական երգը, որ այս էր.

Աշըղ ըմ չալ քչեղմկ,
Մհանի կանչեմ քու տեղմկ.
Աղջիկ չըմ, թա հըմանչիմ,
Տըղայ ըմ, ծիլ ծիլ կը կանչիմ...

Այս մէկ տունը երգեց ու խեղոյն հեռացաւ, որ սազը ձեռքից յետ չխլեն։

Ղ. Աղայեան

---

## 63. Շ Ի Ր Վ Ա Ն Զ Ա Դ Է

Ալէքսանդր Մովսիսեանը (Շիրվանզադէ) ծնուել է Շամախի 1858 թ. ուսել է նախ բողոքական նշանաւոր Սարգիս վարժապետի մօտ, ապա հայոց դպրոցում. այնուհետև ռուսաց գաւառական ուսումնարանում (уѣздное училище)։ 17 տարեկան նա գնում է Բագու, ուր ծառայում է նահանգական ատեանում իբրև գրագիր. ապա եղել է հաշուապահ զանազան առևտրական տներում, մինչև 1887 թիւը։ Բագուից նա արդէն թղթակցութիւններ էր գրում «Մեղու Հայաստանի» և «Մշակ» լրագիրներին։

Շիրվանզադէի առաջին գործը, որ արժանացաւ ուշադրութեան «Հրդեհն» էր, տպուած «Մշակում» 1883 թ. այնուհետև Շիրվանզադէն գալիս է Թիֆլիզ 1884-ից սկսում է աշխատակցել «Արձագանքին» ու պարապել միայն գրականութեամբ։ Նշանաւոր գործերն. «Հրդեհ»-«Գործակատարի յիշատակները», «Նամուս», «Օրիորդ Լիզա», «Նորերից մէկը», «Արամբին», «Արսէն Դիմաքսեան», «Ցաւագար», «Քաոս» և այլն։ Շիրվանզադէի վէպերի նիւթը քաղաքի կեանքն է։ Նա էր, որ առաջին անգամ սկսեց խորը մշակել իր ներկայացրած տի-

պերի հոգեբանական կողմը և միջավայրը, որով հիմք դրեց հոգեբանական վէպին մեր մէջ, միանգամայն հեռու մնալով մինչ այն մեզանում սիրուած ու տարածուած ժողովրդական կամ ազգասիրական վէպերից։ Նա հետևող է Զօլայի և այսպէս անուանած րէալիստ ուղղութեան լաւագոյն ներկայիչն է մեր մէջ։ Վերջերս Շ. փորձեց իր տաղանդը և թատերգութեան մէջ, տալով մեր գրականութեանը Սունդուկեանից յետոյ ամենայաջող պիէսները։ Յայտնիներն են. «Եւգինէ», «Ունէր իրաւունք», «Պատուի համար» և այլն։

---

## 64. ՀՐԴԵՀԸ ՆԱՒԹԱՀԱՆՔՈՒՄ

Հրդեհն արդէն բաւական ընդարձակուել էր։ Այրւում էր ամենաարդիւնաբեր հորերից մինը։ Կրակը, բուրգի ստորին մասից սրընթաց դուրս գալով, շտապում էր ընդգրկել ամբողջ աշտարակը։ Երկնքի հորիզոնի վրայ ձգուել էր մթին ծխի մի լայն ժապաւէն, որ քամու ընթացքով տարածւում էր հեռու և հեռու։

Մշակները շրջապատել էին վիթխարի խարոյկը և կազմել կենդանի օղակ սարսափած դէմքերի, ապշած աչքերի։ Մի խումբ մտել էր ասպարէզ և աշխատում էր դուրս բերել բուրգի տակից մեքենան, միակ բանը, որ կարելի էր կրակից ազատել։

Միքայէլի առաջին միտքն էր, գտնել եղբօր զաւակներին ու կնոջը։ Առանց տատանուելու, վազեց դէպի այն պատշգամբը, ուր այնքան ծանր հառաչանքներ էր արձակել կրծքից, նայելով դիմացի լուսամուտներին։ Կրակը դեռ չէր հասել բնակարանին, բայց արդէն մօտենում էր։ Մշակներն աշխատում էին բուրգի և բնակարանի մէջտեղում գտնուող նաւթային լճակը ապահովել կրակից։ Եթէ նա վառուէր, ամբողջ տունը կորած էր։

—Եկէք ետևիցս, գոչեց Միքայէլը, դառնալով առաջին մշակներին։

Շրջանից բաժանուեցին երեք հոգի՝ Զուպրովը, Ռասուլը

և Գարապետը։ Նրանք հէնց նոր էին հասել հրդեհի տեղը և դեռ չգիտէին վտանգը ո՛ր կողմում է։ Ամենից առաջ վազեց Զուպրովը, հրելով ընկերներին աջ ու ձախ։ Ամբոխը տեսնելով հսկային սանդուղքի վրայ, ոգևորուեց։ Մի քանի վայրկեան կարմիր շապիկը փայփլեց բոսորագոյն լոյսի ներքոյ և չքացաւ։

Ծուխն արդէն շրջապատել էր ամբողջ տունը։ Մի քանի րոպէ ևս. և ամեն ինչ կարող էր ուշ լինել։ Եթէ կրակ էլ չլինէր, ներսում եղողները պիտի ծխից խեղդուէին։ Նաւթային հրդեհը նման չէ սովորական հրդեհներին։ Հանքերում ու գործարաններում կրակը երբեմն տարածւում է հողմի արագութեամբ։ Այստեղ այրւում է ամեն ինչ, նոյն իսկ օդն ու երկիրը՝ ամենուրեք տարածուած նաւթի ու գազի շնորհով։ Շատ անգամ մարդիկ հագիւ լսում են շուխչների սուլոցները և արդէն նրանց կեանքը վտանգի մէջ է։ Դեռ լաւ է, եթէ կրակն սկսում է բուրգից կամ շէնքից։ Իսկ եթէ կրակն սկսուել է նաւթամբարից, վտանգն անխուսափելի է։ Ամբարի ազատ տարածութեան մէջ կուտակուած գազը, ընդհարուելով կրակի հետ, պայթում է հարիւրաւոր թնդանօթների ուժով, և կրակի հեղեղը սփռւում չորս կողմ։

Զուպրովը պատշգամբի վրայ ուժեղ ձեռներով յետ մղեց Միքայէլին, գոռալով

— Այս ձեր տեղը չէ։

Նա վազեց ներս։ Նա հասկացել էր, որ այնտեղ մարդիկ կան, որոնց պէտք է ազատել։ Թէ ովքեր էին այդ մարդիկ, միևնոյնն էր նրա համար։ Արհամարհել ամեն վտանգ և ազատել մարդկանց—այս էր հասարակ մուժիկի պարզ սկզբունքը։

Լծակը բռնկուեց բուրգից թափուող խոշոր կայծերից։ Կրակը մի քանի րոպէում կլանեց կիզանուտ հեղուկը։ Սև ծխի թանձր ամպերը պատեցին չորս կողմ։

Զուպրովը լսեց ամբոխի աղաղակը և բնազդումով գուշակեց, որ վտանգն անցնում է բնակարանի ներսը։ Նա երեսը խաչակնքեց, չմոռանալով գդակը վերցնել, և

վազեց յաջորդ սենյակը։ Այս տագնապալի վայրկեանին նա մի ձեռով խլեց Ալեօշային, միւսով փեշերի պէս բարձրացրեց Վասիային։ Մանուկներն ապշած էին, չըգիտէին ինչ է կատարւում։

— Մամա, գոռաց Վասիան, ամուր գրկելով Զուպրովի պարանոցը։

Մի քանի վայրկեան անցած, ծխերի մէջ երևաց Կարապետը, որ ուսերի վրայ դուրս էր բերում Անտօնինա Իվանովնային։ Տիկինը արձակում էր յուսահատական ճչեր։

Կարապետի ետևից յայտնուեց Ռասուլը, տիկնոջ աղախնին շալակած։

Միքայէլն իջաւ բակը միայն այն ժամանակ, երբ համոզուեց, որ ներսում ոչ ոք չմնաց։

Այժմ բակում տիրում էր բաբելոնեան խառնակութիւն։ Մշակներն աւելի դողդողում էին, քան օգնում։ Միմեանց հրում էին, միմեանցից առաջ վազում, վայր ընկնում, վեր կենում թրջուած, ցեխոտուած։ Ուրախացան, երբ լսեցին, թէ ագայի ընտանիքը այժմ ապահով է։

Կիզանուտ հեղուկով ողողուած փայտաշէն բուրգն այժմ ներկայացնում էր մի հսկայական ջահ, վառուած ծայրէ ի ծայր։ Կրակն արագ լափում էր բուրգի տախտակները, ինչպէս սոված կենդանին լափում է ծառի չոր տերևները։ Բիւրաւոր խոշոր կայծերը, փամփուշտների պէս, բարձրանում էին վեր, ծխի ալիքների մէջ կատաղի պտոյտներ գործում և թափւում ներքև։ Գոյացել էր մի սքանչելի հրեղէն անձրև։ Քամին կայծերը հաւաքում էր ու տանում կիտում պատերի տակ, անկիւններում ու երկրի խոռոչներում այնպէս, ինչպէս կիտում է ձիւնը։

Կային միամիտ մշակներ, որ ճգնում էին ջրով հանգցնել բուրգը, մի բան, որ անհնարին էր։ Կրակը ծիծաղում էր ջրի բազկաչափ հոսանքի վրայ, որ չրթչրթալով դուրս էր գալիս ռետինի խողովակից, ձեռաշարժ ջրմուղի միջոցով։ Ալովի ահռելի լեզուները, ընդհարուելով հակառակ տարրի հետ, արձակում էին դիւական բրքիջներ։

Ջուրը, մի վայրկեան շոգի դառնալով, աւելի ոյժ էր տալիս կրակին, քան կռւում նրա հետ։

Փորձուած բանուորները աշխատում էին նաւթամբարները ազատել հրեղէն անձրևից։ Այրուող բուրգից ոչ այնքան հեռու կար նաւթով լի մի գետնափոր շտեմարան։ Մօտ քառասուն մշակ, մոռանալով ամեն վտանգ, հաւաքուել էին նրա հողային կտուրի վրայ և թրջուած թաղիքներով ծածկում էին բաց տեղերը, ուսկից դուրս էր գալիս նաւթային գազը։ Մի թեթև ընդհարում ալովի հետ, և նաւթամբարը պիտի պայթէր, իր հետ օդը ցնդեցնելով մշակներին։

«ՔԱՈՍ» Շիրվանզադէ

*Ներկայի բանուորներն էլ այդպէս անձնուրաց աշխատում են տէրերի համար։ Ինչո՞ւ բանուորները նկարագրուած են երեք ազգից։ Շարադրութեան նիւթ. Ինչ պարտականութիւն ունի գործատէրը դէպի իր բանուորները։*

---

## 65. ՀՐԴԵՀԱՑ

Տան ընդարձակ բակում խռնուել էր խեղճերի անհագին բազմութիւնը։ Հանգուցեալի գործակատարներն ու սպասաւորները նրանց կերակուր էին բաժանում։ Տիրում էին անասելի աղմուկ և իրարանցում։ Կեղտոտ, կիսամերկ մուրացկանները միմեանց հրում էին, խփում, հայհոյում աշխատելով իրարու առաջել և մօտենալ խոհանոցին։

Պղնձէ կաթսաների հնչիւնները, ծառաների գոռում-գոչիւնները, քաղցած խուժանի կառաչիւնը ընդհանուր առմամբ ներկայացնում էին քաոս, ուր տիրում էին կոպտութիւնը, կեղտը, ցնցոտիներն ու հայհոյանքը։ Մի կոյր հայ փայտով անխնայ հարուածում էր աջ ու ձախ։ Մի պատանի պարսիկ, նրա փէշերից քաշելով, աշխատում էր ինքն առաջ ընկնել։ Մի ռուս անդամալոյծ սայթաքեց, ընկաւ մի ասորի կնոջ վրայ և կատաղութիւնից խածեց ոտը։ Մի կարմրերես լեզգի, որի թևերը մինչև արմունկները կտրած

էին, սրա ու նրա վրայ էր արձակւում, ատամներով խլում մսի կտորները և գրեթէ առանց ծամելու կուլ տալիս։ Շների փոհմակը խառնուել էր մուրացկաններին և մրմռալով կրծոտում էր գետնի վրայ թափուած ոսկորները և լակում կերակուրների կեղտոտ հեղուկը։

Բոլոր ուտելիքները բաժանուեցին, խոհանոցի դռները փակուեցին, բայց խուժանը դեռ չէր հեռանում։ Նրանց շան պէս փայտերով չէին արտաքսում և այս նշանակում էր, որ մի բան կայ։ Ահա սանդուղքի վրայ յայտնուեց Սրափիոն Գասպարիչի հանդիսաւոր կերպարանքը։ Նա հրամայեց ծառաներին—մէկ մէկ մուրացկաններին թոյլ տան իրան մօտենալու։ Ձեռում բռնած էր մի գոյնզգոյն թաշկինակ արծաթի դրամներով լի։ Այրի տիկին Ոսկեհատն էր հրամայել սեպհական փողերից հարիւր ռուբլի բաժանել մուրացկաններին հանգուցեալի յիշատակին։

Սրափիոն Գասպարիչը թաշկինակը շարժեց, դրամները հնչեցին։ Արծաթի ախորժալուր ձայնը, էլեքտրական տօկի պէս անցնելով խուժանի մարմնով, ցնցեց նրան։ Քանի մի վայրկեան անշարժ էր և ապշած նայում էր վաղեմի ատիճանաւորի դիւթական թաշկինակին։ Բայց ահա շարժուեց, դղրդաց և, խուլ աղաղակ բարձրացնելով, արձակուեց թաշկինակի վրայ, որպէս գիշակեր ագռաւների ջոլիր։ Այս ևս ոչ ծառաները ու գործակատարները և ոչ փողոցից եկած ոստիկանները չկարողացան զսպել մերկանդամ բանակը։

Խուժանը շրջապատեց ծերունուն։ Հարիւրաւոր կեղտոտ, առողջ և գօս ձեռներ միաժամանակ ցնցուեցին օդի մէջ. կազմուեց մի շարժուն անտառ։ Կային անդամալուծներ, զուրկ երկու ոտներից։ Ձեռների վրայ սողալով, սրա ու նրա ոտները բռնահարում էին և երբեմն կծոտում, որ իրանց համար ճանապարհ բանան։ Պառաւները արմունկների հարուածներով միմեանց քիթը և ծնօտն էին ջարդում։ Կանայք ճչալով իրարու մազերն էին քաշքշում։ Պարսիկները օրհնում էին հանգուցեալի յիշատակը և աղերսում նրա համար երկնային դրախտ։ Քրիստոնեաները

անգուսպ հայհոյում էին «անհաւատներին» անխնայ ծեծելով նրանց։ Խլացուցիչ ժխորի մէջ լսւում էին ամենակեղտոտ ածականներ, ամենազազրելի յիշոցներ, որ դարերի ընթացքում կազմուել էին ցեխի կոյտերից, այն աղտոտ մթնոլորտում, ուր ապրում ու շնչում է մերկութիւնը։

Տեսարանը հետաքրքրել էր հիւրերից շատերին։ Պատշգամբի վրայ հաւաքուած, նայում էին դէպի ցած և զուարճանում։ Դրանք մեծ մասամբ հարուստ երիտասարդներ էին։

Այստեղ էր նաև բանաստեղծ-հրապարակախօս-թղթակից Արմենակ Մարգպետունին, թուխ—դեղնագոյն դէմքով, մեծ քթով, փոքրիկ մօրուքով մի երիտասարդ, հագին երկայն մահուդեայ սև սիւրտուկ, որի անթիւ ծալերը ցոյց էին տալիս, թէ նոր է սնդուկից դուրս բերուել։ Տեսարանը թելադրում էր նրան մի յօդուած, որ պիտի կրէր «Հակադրութիւն» վերնագիրը։ Նայում էր դէպի ցած —քաղցի ու մերկութեան սոսկալի պատկեր, ուր մարդիկ շներից չէին ջոկւում։ Նայում էր դէպի վեր—կշտութեան ու անհոգութեան կենդանի մարմնացում։ Այնտեղ մերկ մարմիններ, կեղտոտ ու գզգզուած մազերով ողորմելի գլուխների քստմնելի ճահիճ։ Այստեղ վերջին տարազի հագուստներ, ոսկէ շղթաներ՝ թանկագին «բրելոկներով» ադամանդեայ մատանիներ ու փողկապի քորոցներ։ Կարելի էր խղճալ ստորիններին, գրչով համակրել նրան, բայց գրաւիչը վերինն էր։ Ահա ինչու Մարգպետունին աշխատում էր իր վրայ դարձնել հարուստ երիտասարդների ուշադրութիւնը, պտոյտ-պտոյտ անելով նրանց շուրջը։

Մօտեցաւ Սմբատին, հանգուցեալի որդուն, որ դիտում էր իր սեղանի փշրանքների վրայ կռուող խուժանին, և ասաց. —Ես այսօր ևեթ կը նկարագրեմ թաղման հանդէսը և կուղարկեմ լրագրին...

—Լաւ, արտասանեց Սմբատը անտարբեր։

—Մեր պարտքն է ասպարէզ հանել հանգուցեալի օրինակելի բարեգործութիւնը...

—Իմ կարծիքով, կարելի է և չգրել այդ մասին։

—Ոչ, անպատճառ պէտք է գրել, որ ուրիշներին օրինակ լինի...

Սմբատը երեսը շուռ տուեց, հազիւ կարողանալով թագցնել արհամարանքը դէպի Թղթակիցը։

Մօտեցաւ ազատամիտ Տէր-Աշոտը։

—Ցտեսութիւն, Սմբատ Մարկիչ, թոյլ տուէք կրկին ու կրկին ասել, որ ձեր հայրը իրան անմահացրեց...

Մօտեցաւ պահպանողական Տէր-Սիմօնը։

—Պարոն Սմբատը իր հանգուցեալ հօր արածը մեզանից լաւ է հասկանում,—ասաց, հակառակորդին մի կատաղի հայեացք պարզելուց յետոյ, սիրալիր նայելով հարուստ ժառանգին։

Սմբատը քաղաքավարի, բայց սառն սեղմեց մէկի ու միւսի ձեռը և, երեսը դարձնելով, հեռացաւ։

«ՔԱՕՍ». Շիրվանզադէ

Ի՞նչ տիպեր են նկարագրուած այստեղ, իրակա՞ն և բնական են նրանք թէ երեւակայական.—Ի՞նչն է պատճառը այդ աստիճան հարստութեան և աղքատութեան։ Հնար կա՞յ առաջն առնելու այդպիսի ծայրահեղութիւնների։

---

## 66. ՄՈՒՐԱՑԱՆ—ԳՐԻԳՈՐ ՏԷՐ-ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ

Ծնուել է Շուշի 1854 թ., ուսել և աւարտել է տեղի հոգևոր դպրոցում 1874-ին և եղել է ուսուցիչ։ Թիֆլիզ գալուց յետոյ շարունակ զբաղուել է հաշուապահութեամբ։ 1880-ին «Փորձ»-ում լոյս է տեսնում նրա գրած «Բաղդասար միտրապոլիտի կեանքը».—1882-ին գրում է «Ռուզան»-ը, որ իսկոյն ներկայացնում են և այնուհետև դառնում է մեր բեմերի սիրած պատմական պիէսներից մինը։

Մուրացանի միւս նշանաւոր գործերն են. «Հայ. բողոքականի ընտանիքը», «Հասարակաց որդեգիրը», «Իմ կաթոլիկ հարսնացուն», «Անպատճառ իշխանուհին», «Չ'հաս», «Խորհրդաւոր Միանձնուհի», տպուած մեծ մասամբ «Նոր-Դարում»։ 1896-ին «Արձագանքում» լոյս տեսաւ նրա առաջին պատմական վէպը «Գէորգ Մարզպետունին», որ Մուրացանի գլուխ գործոցն է։ Այնուհետև նա գրեց. «Անդրէաս Երէց» և

այն. Նորերս մի հատորի մէջ նա հրատարակեց 1) «Նոյեան ագռաւը», 2) «Առաքեալը» և 3) «Խորհրդաւոր Միանձնուհին»։—Նոյեան ագռաւը ներկայացնում է ծնողների միակ զաւակին, որ գնում է ուսանելու, կլանում է ծնողաց խընամքն ու կարողութիւնն առանց նրանց որևէ օգուտ բերելու և կորչում է ինչպէս «Նոյեան ագռաւ»։ «Առաքեալը» հարուստի զաւակ, աւարտում է մեծամեծ խոստումներով, գաղափարով ներշնչուած վերադառնում է հայրենիք, գնում է գիւղ, ապա Սևան, տեսնում է ժողովրդի կարիքն և ըղձում, որ ինքը պիտանի կարող է լինել, սակայն կօնֆորտի պակասութիւնը նրան ստիպում է քաղաք վերադառնալու և մոռանալու իր խոստումները։

Այս երկուսին հակադրուած է «Խորհրդաւոր Միանձնուհին», մի կոյս, որ գնում է գիւղ, բաց է անում դըպրոց, կրթում է մանուկներին, բարեկարգում է եկեղեցին և օգնութիւն է հասնում խրատներով ու խորհրդով ամեն նեղեալի... Այն ինչ որ չ՛արին պոռոտախօս երիտասարդները, կատարում է մի համեստ հայ-կին։ Մինչդեռ մեր միւս հեղինակները մի գլուխ առաջադիմութիւն և կուլտուրութիւն են քարոզում, Մուրացանը ցոյց է տալիս կուլտուրայի պատճառած վնասակար և քայքայիչ կողմերը։ Մուրացանը բեղմնաւոր հեղինակ է, համարւում է պահպանողական։ Նրա լեզուն, բառերի ընտրութիւնը, ոճի սահունութիւնը ու կոկութիւնը չունի իր նմանը. տարաբաղդաբար ժողովրդին սակաւածանօթ է։ Վերջին տարին ջղային տկարութիւն ստացաւ և մեռաւ հիւանդանոցում 1908 թ. օգոս. 3-ին։

---

## 67. ԵՐԿՈՒ ՃԱՄԲՈՐԴ

Օգոստոսի սիրուն առաւօտներից մինն էր, երբ ես ու ընկերս՝ կանխաւ արած մեր որոշման համաձայն, դուրս եկանք քաղաքից ձիով՝ հայրենի գաւառակի գիւղերը պըտտելու և մի քանի աւերակներ անձամբ տեսնելու։

Մենք պատկանում էինք «տուն վերադարձող» այն նորեկների թւին, որոնք ընտանիքի հացը հայթայթելու հա-

մար ստիպուած են լինում տարիներով ապրել մեծ քաղաքում, ծծել միշտ նոյն անառողջ օդը, սնուել աւելի փոշիով, քան թէ կերակրով և հետեւապէս, կարօտել այնպիսի բարիքների, որ բնութեան մէջ ապրող մարդը վայելում է առատօրէն, առանց սակայն նրանց արժէքը գնահատել կարենալու։

Ի՞նչ բան է, օրինակ, մաքուր օդը, դաշտի կանաչը, հովտի առուակը, անտառի զովը... Մի՞թէ կարելի է կարօտել դրանց, կամ ցանկացած ժամին չվայելել։ Լեռնցի գեղջուկը, որ կարիք բառը հասկանում է միայն նիւթական վերաբերմամբ, անշուշտ կը ծիծաղէր, եթէ իմանար թէ մեր զրկանքը կազմում են այդ չնչին, հազիւ երբեմն իր կարիքը լցուցանող բաները։

Բայց ով տարիներից ի վեր ապրել է մեծ քաղաքում, միշտ միևնոյն նեղ փողոցի վրայ, նոյն ապականուած մթնոլորտի մէջ և գործել շարունակ լոյսից ու օդից զուրկ մի գրասենեակում, որի բոլոր հրապոյրը կազմում են եղել չոր հաշուեմատեանները, երկաթէ պահարանը և անմիտ համարիչը, իրեր, որոնք առնչութիւն ունեն միայն փողի և հաշուի հետ, բայց որոնց անծանօթ է սիրտը և աւելի ևս զգայուն հոգին, իրեր, որոնք մարդու ուղեղը բթացնում, աշխոյժը մարում և հոգին նուաստացնում են... այդպիսին, հարկաւ, կարօտելով կը կարօտի այն ամենին, ինչ որ անարժէք է բնութեան զաւակի համար. կը կարօտի նրա դաշտին ու մարգին, նրա հովտին ու առուակին, նրա անտառի անոյշ հովերին։

Մենք էլ, ահա, այդ կարօտեալներից էինք։ Ընկերս վերադարձել էր Մոսկուայից, իսկ ես Թիֆլիզից։ Երկուս այժմ միացած՝ գնում էինք բնութեան քաղցրութիւններից մեր կարօտն առնելու։

Պետրոս Մինարեանը (այս էր ուղեկցիս անունը), հայոց հոգևոր դպրոցի սան էր. տակաւին երիտասարդ, միջահասակ, փոքր ինչ թուլակազմ, բայց աշխոյժ ու գրաւչադէմ։ Բնաւորութեամբ բաւական անհամբեր և դիւրագրգիռ էր, երբեմն նոյն իսկ յանդուգն ու անքաղաքավար,

բայց սրտով բարի և անկեղծ։ Ունէր տարօրինակ հայեացքներ, որոնք իր խօսակիցներին մերթ զայրոյթ և յաճախ զուարճութիւն էին պատճառում։ Սիրում էր խառնուել ուրիշների գործին, կամ յաճախ՝ ինքնակոչ դատաւոր հանդիսանալ։ Սիրում էր վիճաբանել, ազատ մտքեր յայտնել, բայց երբեմն աւելի հակառակելու, քան մի ճշմարտութիւն տալու համար։ Այսուամենայնիւ, այս բոլոր տարօրինակութիւնների հետ միասին, ճանապարհի լաւ ընկեր էր, որովհետև սրտոտ էր, կամարար և սակաւապէտ։

Բաւական ժամեր էին անցել՝ ինչ ելել էինք քաղաքից և թէպէտ առաւօտը զով էր ու հեշտալի, այսուամենայնիւ, քանի արևը բարձրանում էր, այնքան աւելի օդը ջերմանում և նեղացնում էր մեզ։ Միջօրէի մօտ մենք գտնւում էինք արդէն բաց դաշտի վրայ։ Արևի ճառագայթները այրում էին. չկար ոչ հովի շունչ, ոչ ծառերի շքարան։ Այդ պատճառով աշխատում էինք ժամ առաջ հասնել գիւղը, որ գտնւում էր մեր հանդէպ եղող լեռան գեղալիր լանջի վրայ։

Չնայելով որ քաղաքից ելածներիս միջոցին ընկերս պատմում էր թէ մի օր հիացմունքով էի մտածում այն ժամի ու վայրկեանի մասին, երբ մայրաքաղաքից հեռացած՝ գտնւում կը լինէր հայրենիքում, նրա ազատ օդի ու դաշտերի մէջ՝ և չնայելով որ այդ ժամին նրա փափագն արդէն կատարուած էր այսուամենայնիւ, նկատում էի, որ երիտասարդի համբերութիւնը ենթարկւում է փորձութեան։ Տօթից, ըստ երևոյթին, նա շատ էր նեղանում, ուստի և յաճախ գանգատւում էր։

Երբ մի ձորակի գետակն անցնելով՝ սկսանք դէպի գիւղը տանող առապարը բարձրանալ, միջօրէի տապը աւելի ևս զգալի դարձաւ, որովհետև արևի ճառագայթներից դատ այրել սկսան մեզ նաև կեծացած ժայռերը, որոնք եզերում էին առապարը երկու կողմից։

—Ո՛հ, մի հասնէինք այն սօսիներին, բացականչեց յանկարծ ընկերս այնպիսի մի կարօտով, որ կարծես գըտ-

նըւում էր Սահարայի անապատում և ուր որ է խորշակը շնչասպառ պիտի աներ իրան։

—Համբերութիւն, բարեկամ, սօսինսերին էլ կը հասնենք, նկատեցի ես։

—Համբերութիւն... միշտ համբերութիւն, շշնջաց Պետրոսը, դժգոհ իմ խօսքից և ապա դառնալով ինձ, հարցրեց.

—Ի՞նչ ես կարծում, ովքեր են համբերում։

—Ի՞նչպէս թէ ովքեր. համբերատարները, պատասխանեցի ես։

—Իսկ ես չեմ կամենում համբերատար կոչուել։

—Ինչո՞ւ, հարցրի նրան։

—Որովհետև համբերում են միայն թոյլերն ու տկարները։ այսինքն մարդիկ, որոնք այս կամ այն չարիքը սեփական ուժով իրանցից չհեռացնելով՝ տանում են նրա պատճառած նեղութիւնները տոկաբար։ Եւ որպէս զի այդ անարգանք չհամարուի իրանց, ասում են թէ՝ «համբերում ենք»։

—Էհ, եթէ չհամբերես ի՞նչ պիտի անես. կարո՞ղ ես արևի հրավառ գունդը հեռացնել քո գլխից, կամ այս շիկացած ժայռերը հովանաւոր ծառերի փոխել։

—Չեմ կարող։

—Ինչո՞ւ ուրեմն ի զուր աղմուկ ես հանում։

—Նրա համար, որ ցոյց տամ թէ՝ անզգայ արարածի մէկը չեմ, թէ իմ մէջ կեանք ու կենդանութիւն կայ, թէ հեշտութիւնն ինձ հաճոյք, իսկ նեղութիւնը՝ դժգոհութիւն է պատճառում։

—Իսկ դրա օգո՞ւտը

—Այն, որ մարդիկ ճանաչելով ինձ՝ զգաստ լինեն իմ վերաբերմամբ և զգուշութեամբ վարուեն հետս։ Ինքդ էլ հօ գիտես որ աշխոյժ ու չսանձահարուող ձիուն մօտենում են երկիւղով ու փաղաքշանքով և հազիւ ուրեմն կարողանում հեծնել, մինչդեռ համբերատար իշին ականջներից քաշելով՝ բարձում են միշտ որքան կամենում են, առանց նրա կամքն ու ցանկութիւնը հարցնելու։

Ես ծիծաղեցի։

— Դու այս կարծիքին չե՞ս, հարցրեց ընկերս։

— Ո՛չ, ասացի։

— Ինչո՞ւ։

— Որովհետև համբերել բառը աւելի բարձր նշանակութիւն ունի, քան ինչ որ դու տալիս ես նրան։ Էշերի ու ձիանների ընկերութեան մէջ՝ հաւանական է որ համբերութիւնը համարուի անարգ ունակութիւն, բայց մարդկային հասարակութեան մէջ ճանաչւում է այն իբր առաքինութիւն։

— Միջնադարեան վարդապետների կարծիքով, ընդհատեց Պետրոսը։

— Նոյն իսկ դարեւերջի փիլիսոփաների կարծիքով, յարեցի ես։

— Պատճա՞ռը։

— Որովհետև համբերութիւնը բարիք է արտադրում, մինչդեռ անհամբերութիւնից միայն չարիք է առաջանում։

— Ի՞նչպէս։

— Աշխարհում համբերում են, առհասարակ, կամքի ոյժ, հոգւոյ արիութիւն և սրտի կորով ունեցողները, հետևապէս, մեծ գործերն էլ ստեղծում են նրանք։ Կարդա պատմութիւնը և կը տեսնես, որ աշխարհի բոլոր նշանաւոր գիւտերը, բոլոր մեծամեծ գործերը արդիւնք են եղել դժուարատար նեղութեանց ու հերոսական համբերութեանց։ Անհամբերութիւնն, ընդհակառակը նշան է թուլութեան և անզօրութեան։ Ուստի երբէք չէ տեսնուած, որ անհամբերի մէկը կարողանար մարդկութեան համար ստեղծել մի մեծ բարիք։ Այս է ահա պատճառը, որ համբերութիւնը համարւում է առաքինութիւն, և բարոյախօսներից մինը մինչև անգամ, աւելի մեծ փառք է համարում մարդու համար՝ մեծամեծ նեղութեանց համբերելը, քան մեծ գործեր կատարելը։

— Այդ գուցէ այդպէս է, բայց երբ արևն այրում է, հօ կարելի՞ է նրա դէմ տրտնջալ։ Չէ՞ որ տրտունջը թեթևացնում է մարդու նեղութիւնը։

— Ընդհակառակը, պէտք է սովորել՝ երբէք և ոչ մի

բանի դէմ չտրտընջալ, այլ դրա փոխարէն աշխատել՝ նեղութեան պատճառը մէջտեղից հեռացնել։ Ծոյլ ու անզօր մարդը ճանճի շիթելու դէմ էլ է տրտնջում, փոխանակ քաջութեամբ ձեռքը բարձրացնելու և նրան քշելու։

— Ճանճը կարելի է քշել, արևը ո՞րտեղ քշենք։

— Այդ դէպքում էլ արևը քշելու փոխարէն քո ձին պէտք է քշես և մի կէս ժամ առաջ հասնես տուն. համբերատար և գործունեայ մարդու համար միշտ փրկութեան ճանապարհ կայ։

Ընկերս լուռ էր։ Չգիտեմ համաձայնուեց ինձ հետ, թէ չկամեցաւ անզօր երևալ իմ աչքում։ Այնուամենայնիւ, ոչ մի նոր առարկութիւն չանելով՝ շարունակեց ճանապարհը առանց այլ ևս տրտնջալու արևի դէմ, որ այրում էր մեզ, արդարև, անողորմաբար։

Քիչ ժամանակից յետոյ մենք գիւղը հասանք և ուղղակի դիմեցինք ընկերոջս ազգական գիւղացու տունը։ Վերջինի հովանաւոր սրահը և հիւրընկալի քաղցր ընդունելութիւնը շուտով մոռացրին մեզ ճանապարհի շոգից կրած մեր նեղութիւնը։

Մուրացան

---

## 68. ԽՈՐՀՐԴԱՒՈՐ ՄԻԱՆՁՆՈՒՀԻ

Մութը կոխել էր։ Լուսնի արծաթափայլ սկաւառակը յուշիկ բարձրանում էր լեռների ետևից և աղօտ լուսով սար ու ձոր լուսաւորում։ Շրջակայ դաշտավայրերը հետզհետէ ծածկւում էին արօտից վերադարձող նախիրներով ու հօտերով։ Կովերի բառաչը, մաքիների մայունը, տաւարածի հա՜-հօ՜-ները և հովուական սրինգի մելամաղձիկ երգը, որ հնչում էր մթապատ ձորամիջում, խառնուելով միմեանց, մի հաճելի աններդաշնակութիւն էին կազմում։ Որքան մօտենում էինք գիւղին, այնքան աղմուկն ու շըշուկը աւելանում էր։ Ն. գիւղը հասնելով մենք իջանք տեղական քահանայի տանը։

Հայոց գիւղերում երկու տուն կայ, ուր ճանապարհորդը վստահութեամբ և առանց հարց ու փորձի կարող է իջեւանել։ Առաջինը՝ տանուտէրի տունը, որ աւելի պաշտօնական մարդկանց է հիւրընկալում, երկրորդը՝ քահանայի, ուր ամէն բարի հայ սիրով է ընդունւում։ Թէպէտ հասարակ գիւղացին էլ իւր հիւրասիրութեամբ յետ չէ մնում այդ երկուսից, այսուամենայնիւ, ճանապարհորդը միշտ չէ վստահանում մօտենալ նրան՝ զգուշանալով աւելորդ նեղութիւն պատճառելուց։

Երբ ներս մտանք քահանայի տան բակը, մեզ իսկոյն դիմաւորեց մի բարձրահասակ և բարեկազմ երիտասարդ, որ ուրախ ժպիտով մեզ ողջունելուց յետոյ, մօտեցաւ ինձ օգնելու որ ձիուց իջնեմ։ Ես ի հարկէ նեղութիւն չտուի նրան և իսկոյն իջնելով՝ սեղմեցի ձեռը, որ նա կանխաւ ուղղել էր ինձ առանց սպասելու, որ ուղեկիցս յայտնէ նրան իմ ով լինելը։

Դա, ինչպէս յետոյ իմացայ, քահանայի ամուսնացած որդին էր։

Երիտասարդի հրամանով մի ծառայ սկսաւ մեր ձիերը պտտեցնել մինչև որ նրանց քրտինքը ցամաքէր և ապա ախոռը տանէր։ Իսկ մենք, հիւրընկալի առաջնորդութեամբ մտանք սրահը, ուր երիտասարդի ամուսինը մի ակնթարթում արդէն ընդարձակ թախտի վրայ փռել էր մաքուր գորգ և վրան էլ օթոց։

Քահանան տանը չէր։ Իմ հարցին թէ՝ ո՞ւր է նա, երիտասարդը պատասխանեց թէ՝ դեռ եկեղեցուց չէ վերադարձել։

—Մի՞թէ այստեղ այդպէս ուշ են սկսում ժամերգութիւնը, հարցրի ես։

—Միայն շաբաթ երեկոները, որպէս զի հանդից վերադարձողը կարողանայ եկեղեցի գնալ։

«Գեղեցիկ կարգ է», մտածեցի ես և հէնց պատրաստւում էի հարցնել թէ՝ արդեօք հին սովորութիւն է դա, թէ՞ Տէր-հայրն ինքն է սահմանել, մէկ էլ տեսայ որ վերջինս բակը մտաւ։

Դա բարձրահասակ, առողջակազմ, ալեխառն մօրուքով և քաղցրադէմ մի քահանայ էր, որ առաջին վայրկեանից իսկ ախորժ տպաւորութիւն արաւ ինձ վրայ։ Նրան տեսնելուն պէս ես ոտքի ելայ և յառաջանալով, համաձայն գիւղի սովորութեան, աջը համբուրեցի։

Տէր-հայրը շատ սիրով ընդունեց ինձ և ձեռս բռնած բերաւ իմ տեղը նստացրեց։ Շուտով մենք ծանօթացանք միմեանց։ Ես իմ ով, որտեղացի լինելը և ինչ նպատակով իրենց գիւղը գալս յայտնեցի, իսկ ինքը մանրամասն տեղեկութիւններով, ծանօթացրեց ինձ իւր անձին ու ընտանիքին։

Մենք վայելում էինք ախորժ պատրաստած բալիքը և շարունակ խօսում։

Տէր-հայրը խիստ հետաքրքրում էր ինձ իր խօսակցութեամբ և յայտնած կարծիքներով։ Դրանցից մի քանիսը լսելուց յետոյ, ես եկայ այն եզրակացութեան, որ նա գըռեհիկ քահանաների թւին չէ պատկանում։ Իբրև գիւղական քահանայ նա մինչև անգամ աւելի բան գիտէր, քան սպասելի էր։ Ինձ շատ զարմացրեց մանաւանդ այն՝ որ նոյն իսկ օրուայ խնդրի մասին, որ այդ ժամանակ կաթուղիկոսական ընտրութիւնն էր, նա նորութիւններ գիտէր և յայտնում էր բանաւոր կարծիքներ։ Նա ծանօթ էր ոչ միայն Ներսէս պատրիարքի, Խրիմեան Հայրիկի և Մելքիսեդեկ սրբազանի անուններին, այլ և նրանց գործերին, անձնական արժանիքներին և կենսագրութեանը։ Նա հարցնում էր ինձանից նաև բացատրութիւններ նկատմամբ լրագրական այնպիսի ակնարկութիւնների, որոնք իւր ուշադրութիւնից չէին վրիպել։ Իմ տարակուսանքն ի հարկէ փարատուեց, երբ իմացայ որ Տէր-հայրը ստանում է Թիֆլիզում հրատարակուող հայոց թերթերը։ Հասկանալի է, որ լրագիրը շատ բան կը սովորեցնէր նրան։ Բայց և այնպէս այդ մէկուսացած լեռների մէջ՝ այսպիսի մի քահանայ տեսնելն ինձ համար մի հաճելի անակնկալ էր։

—Ինչպէս տեսնում էք, մենք բոլորովին կտրուած ենք աշխարհից, ասում էր Տէր-հայրը. օրհնուի լրագիր

հնարողը այս հեռու անկիւնում, ուր տարիներով քաղաքացու երես չենք տեսնում, մեր միակ մխիթարութիւնը լրագիրներն են։ Այնքան անձկութեամբ ենք սպասում նրանց, որ եթէ որոշեալ ժամանակից ուշանում են, իսկոյն ձի եմ նստում և նրանց ետևից, կէս օրուայ ճանապարհ, մինչև վանքը գնում։ Քաղաքից կօնսիստօրը վանահօր անունով է ղրկում թերթերը, իսկ հայր-սուրբը շատ անգամ ուշադիր չի լինում ժամանակին հասցնելու։

Իմ հարցին թէ այդ լրագիրներից միայն ինքը տէր-հայրն է օգտւում, թէ ժողովրդին էլ մասն է հանում, նա պատասխանեց.

—Ինքս էլ շատ տարի չէ, ինչ սկսել եմ լրագիր կարդալ։ Օրհնուի մեր կոյսը, նա վաղուց էր թերթ ստանում և յաճախ կարդում ինձ մօտ, աշխատելով սիրելի անել ինձ իւր կարդացածները։ Եւ իրաւ մի տարուց յետոյ՝ ես այնքան սիրեցի լրագիրը, որ կարևոր համարեցի ինքս ստանալ և անձամբ կարդալ, որպէսզի կոյսին միշտ նեղութիւն չպատճառեմ։ Փառք Աստուծոյ, ես նիւթապէս ապահով եմ և հեշտութեամբ էլ վճարում եմ լրագրի գինը։ Երբ լրագիր կարդալն ու հասկանալը ինձ համար հեշտացաւ, մեր կոյսը խորհուրդ տուաւ ինձ՝ հետաքրքրական և հեշտ հասկանալի կտորները կարդալ և հասկացնել նաև իմ ժողովրդին։ Ես հետևեցի նրա խորհրդին և մի կիրակի՝ ճաշից յետոյ, երբ գիւղի գլխաւորները հաւաքուել էին ինձ մօտ, կարդացի նրանց առաջ լրագրի մի քանի կտորներ և բացատրեցի։ Այդ նորութիւններն այնքան դուր եկաւ նրանց, որ այդ օրից սկսած՝ ամեն կիրակի՝ ճաշից յետոյ հաւաքւում է մեր բակը բազմաթիւ ժողովուրդ և սիրով լսում է իմ ընթերցումն ու բացատրութիւնները։

Տէր-հօր հաղորդածները ինձ համար հաճելի նորութիւններ էին։ Այդպիսի քահանայի հովւութեան յանձնուած գիւղում, անկարելի էր, որ նաև դպրոց չլինէր։ Ուստի ցանկացայ իմանալ՝ ունի՞ն թէ ոչ։

—Ի՞նչպէս չէ և ի՜նչ հրաշալի դպրոց, բացականչեց Տէր-հայրը հպարտութեամբ. եթէ տեսնէք, կը հաւանէք։

*Օրհնուլի մեր կոյսը, նա է հիմնողը, ինքն էլ կառավարում է։*

*Այս քանի՞ երրորդ անգամն էր, որ «կոյսի» անունը լսում էի Տէր-հօրից, ուստի հետաքրքրուեցայ իմանալ թէ ո՞վ է այդ կոյսը, արդեօք վարժուհի է, թէ որ և է անապատի հաւատաւոր կին։*

*—Այդ կոյսը քոյր-Աննան է, մի՞թէ չէք ճանաչում, հարցրեց ինձ Տէր-հայրը։*

*—Ոչ, չեմ ճանաչում, պատասխանեցի ես։*

*—Ամբողջ Սիւնիքը ճանաչում է մեր կոյսին, ամենքին յայտնի է նրա անունը, այդ ի՞նչպէս է, որ դուք չէք ճանաչում։*

*—Այդպէս է, Տէր-հայր, չեմ ճանաչում. անունն անգամ չեմ լսել։*

*—Ճշմարի՞տ էք ասում, հարցրեց քահանան զարմանալով։*

*—Ի հարկէ, ճշմարիտ, ի՞նչպէս կարող եմ ստել, նկատեցի ես։*

*Տէր հայրը սկսաւ մտածել. յետոյ ինքն իրեն մի քանի բառ շշնջաց և ապա դառնալով շարունակեց.*

*—Իրաւունք ունիք, որդի, մեր այս կորած անկիւնից ո՞վ է ձեզ համար լուր բերում։ Ասենք թէ շատ էլ բերին, ի՞նչ նշանակութիւն ունին ձեզ համար գիւղի նորութիւնները։*

*Քոյր Աննան և նրա գործերը մեր, գիւղացիներիս աչքումն են մեծ բաներ երևում. ապա թէ ոչ, դուք այնքան նշանաւոր մարդիկ ու գործեր ունիք, որ մեր հակաները թզուկներ կերևան ձեզ։*

*—Ասենք այդտեղ սխալվում էք. մենք ոչ նշանաւոր մարդիկ ունինք, ոչ նշանաւոր գործեր։*

*Բայց թողնենք այդ հարցը։ Կարո՞ղ էք կոյս Աննայի ով լինելն ինձ յայտնել։*

*—Ինչպէս չէ, ասացի, որ նա մեր գիւղական դպրոցի հիմնադիրն է և կառավարողը. այժմ աւելացնեմ՝ որ դաստատուն էլ ինքն է։ Նա մի բարի, ազնիւ և առաքինի կին*

*է. ուղիղ տասն և ինն տարի է, որ գտնւում է մեր գիւղում։ Իմ ձեռնադրութիւնից վեց տարի յետոյ եկաւ այստեղ։ Այդ ժամանակ ո՞վ գիտէր թէ ինչ բան է գիւղական կանոնաւոր դպրոցը։ Ես էի մի քանի տղաներ գլխիս հաւաքել և լաւ, վատ կարդացնում էի։ Բայց երբ կոյս Աննան եկաւ, նա իւր ծախքով և, ի հարկէ, նաև մեր օգնութեամբ շինեց դպրոցական տուն, որ անշուշտ կըտեսնէք։ Նա հաւաքեց իւր մօտ թէ տղայ և թէ աղջիկ երեխաներ և սկսաւ կարդացնել։ Այժմ մեր գեւղում քիչ երիտասարդ կայ, որ հայերէն գրել, կարդալ չիմանայ։ Այս րոպէին էլ դպրոցը մօտ հարիւր յիսուն աշակերտ և աշակերտուհի ունի՝ ժողովուած թէ մեր և թէ շրջակայ գիւղերից։ Դրանք բոլորն էլ կարդում են ձրիաբար։ Եւ դեռ պէտք է գիտենալ թէ՝ կոյսի դպրոցն որքա՜ն գրագէտներ է տուել մեր գաւառին այսքան տարուայ ընթացքում։ Ճշմարիտն ասած՝ այդ կոյսը մեր բարերարուհին է, մենք բոլորս պաշտում ենք նրան։ Իմ ու տանուտէրի խօսքից աւելի՝ նրա խօսքն ունի արժէք գիւղացու համար. բոլորը նրան լսում են ինչպէս իրենց իմաստուն մօրը։ Եւ ի պատիւ նրա՝ պէտք է ասել՝ որ մօր նման էլ խնամք է տանում գիւղացիների վրայ. օգնում է կարօտեալին, այցելում է հիւանդին, պաշտպանում է այրիներին, անզօր որբուկներին, ես ո՞ր մէկն ասեմ։*

*Սկսած այն օրից որ կոյսը մեր գիւղումն է, գրեթէ ոչ մի տան կամ ընտանիքում խռովութիւն ու գժտութիւն չէ պատահել։ Հէնց որ լսում է թէ մի տեղ անհամաձայնութիւն, վէճ կամ կռիւ կայ, իսկոյն դիմում է այնտեղ և խաղաղութեան հրեշտակի պէս ամենին հաշտեցնում, երբեմն խրատելով, երբեմն յանդիմանելով, բայց շատ անգամ էլ քաղցրութեամբ համոզելով։ Իսկ ով համարձակւում է քոյր-Աննային ընդդիմանալ կամ նրա խրատներն արհամարհել, նրա հետ այլ ևս ոչ ոք չէ խօսում, մինչև որ վերջինս համոզուելով թողութիւն չէ խնդրում։ Մեր գիւղական գործերի մէջ նոյնպէս քոյր-Աննան օգնում է մեզ իւր իմաստուն խորհուրդներով և առհասարակ*

այն գործը, որ նրա ցույց տուած ճանապարհով ենք սկսել և շարունակել՝ միշտ յաջողութեամբ է պսակուել։ Բացի այս, դուք մեզ մօտ կը տեսնէք գեղեցիկ կարգեր ու սովորութիւններ, որոնք միւս գիւղերում չկան. դրանք բոլորը նոյնպէս քոյր-Աննային ենք պարտական։ Միով բանիւ, այդ կոյսը մեր բարերարը և խնամակալուհին է, որին կը խնդրեմ Աստծուն՝ պարգևել երկար կեանք և առողջութիւն։

Տէր-հօր պատմածները վերին աստիճանի գրգռեցին իմ հետաքրքրութիւնը։

—Բայց ո՞վ է վերջապէս այդ կինը, ո՞րտեղացի է, ո՞րի աղջիկն է. ո՞րտեղ է սովորել, հարցրի ես շտապով։

—Նա միանձնուհի է, պատասխանեց քահանան միամտաբար։

—Բայց ո՞րտեղից, ո՞ր քաղաքի կուսանոցից։

Տէր- հայրը մնաց կանգնած։ Նա չէր կարողանում որոշ պատասխան տալ, ուստի մի փոքր մտածելուց յետոյ ասաց,

—Ճշմարիտը խոստովանած չգիտեմ։

—Բայց մի՞թէ այսքան տարիների ընթացքում երբէք չհետաքրքրուեցիք իմանալ թէ՝ ո՞րտեղից է նա լոյս ընկել այս լեռների մէջ։

—Ինչ մեղքս ծածկեմ, չեմ հարցրել. այսքանը միայն գիտեմ, որ նա միանձնուհի է և գալով մեր գիւղը, հաւանել է և վճռել՝ ապրել այստեղ և օգտաւէտ լինել մեզ։

—Իսկ նա հասակաւոր է, թէ երիտասարդ։

—Նրա տարիքը քառասունից աւելի է.

—Ուրեմն, այդքա՞ն միայն գիտէք նրա մասին։

— Այո՛, միայն այսքան։

Այժմ ես տեսայ, որ Տէր-Յովսէփս ինքնիրեն բուսած մի ծառ չէ, այլ անշուշտ, այդ խորհրդաւոր կնոջ ստեղծագործածն է։ Տէր-հօր այն խոստովանութիւնը թէ՝ այսքան տարիների ընթացքում չէ հետաքրքրուել այդ կնոջ ո՛վ լինելն իմանալու, ինձ անկեղծ էր թւում, ուստի նրա վարկը որոշ չափով նուազեցաւ իմ աչքում. որովհետև, այդպիսի

մի անտարբերութիւնը յանցանքի չափ ծանր էր թւում իմ աչքում։ Բայց յետոյ մտածեցի թէ՝ գուցէ այդ կինը ինքն է փախուստ տուել քահանայի հետաքրքրութիւնից, առիթ չտալով նրան՝ այդպիսի հարցերի դիմելու։ Թէպէտ այն էլ գիտէի, որ հեշտ չէր գիւղում այսքան տարի ապրել և ազատ մնալ գիւղացիների հարցասիրութիւնից։ Սակայն բոլոր այս մտածութիւններն ուղեղս լարելուց զատ՝ ուրիշ մի եզրակացութեան չէին բերում։ Մնում էր, որ ինքս ծանօթանայի այդ կնոջ և նրա ով և ինչ անձնաւորութիւն լինելը ստուգէի անձամբ։

—Ե՞րբ կարող էք ծանօթացնել ինձ ձեր միանձնուհուն, հարցրի Տէր հօրը։

—Երբ կամենաք, ասաց նա, վաղը կիրակի է, ես պատարագ ունիմ. կը գաք եկեղեցի, ներկայ կը լինիք պատարագին և երբ ժամերգութիւնը կաւարտի, ես ձեզ կը ծանօթացնեմ նրան։

—Շատ լաւ, ասացի ես և որովհետև ընթրիքն արդէն պատրաստ էր, ուստի շուտով սեղան նստանք։

Տէր-հայրը բոլոր ջանքը գործ էր դնում ամենայաւ կերպով ինձ հիւրասիրելու։ Եւ թէպէտ իւր գինին արժանիքով ստոր էր տանուտէր Ակոբի գինուց, այսուամենայնիւ, մենք նրանով էլ մի քանի կենաց բաժակներ դատարկեցինք։

Տէր-հօր հիւրասենեակում ինձ համար քնելու տեղ պատրաստեցին, ուր և առանձնացայ խաղաղութեան հրեշտակին յանձնուելու համար։

Չնայելով որ ամբողջ նախընթաց օրը ճանապարհորդել էի, այսուամենայնիւ, երէկ շատ վաղ զարթեցայ։ Գիւղը, կարծես, ինքն է զարթեցնում քեզ։ Մարդ այստեղ ամաչում է, եթէ չասենք ափսոսում, առաւօտեան զով ժամերը քնին նուիրելու։ Երբ դուրս եկայ բակը, արշալոյսը դեռ նոր էր շառագունում, բայց Տէր-հայրս արդէն գնում էր եկեղեցի։

—Մի՞թէ այսքան վաղ պիտի սկսէք ժամերգութիւնը, հարցրի ես։

— Ոչ, դեռ սաղմոս պիտի քաղեմ. դուք կարող էք կ՚ո ժամով ուշ գալ, պատասխանեց նա։

Ես որովհետև եկեղեցում երկար կանգնել չէի կարողանում, ուստի որոշեցի օգուտ քաղել ժամանակից և բարձրանալով գիւղի վերնակողմը՝ նրա ընդհանուր դիրքը և շրջապատը տեսնել, որպէսզի հաւաստիանամ թէ որքան յարմար ամարանոց եմ ընտրել։

Բակի մի անկիւնում Տիրուհին և իւր հարսը կթում էին կովերը, որպէս գինախիրը արօտ ուղարկեն։ Սարգիսը մօտ կանգնած՝ օգնում էր նրանց՝ առաջ բերելով կովերը։ Որպէս զի նորից տանից դուրս չգայի, մօտեցայ նրանց և մի բաժակ կաթ խնդրեցի։ Հերիքնազն իսկոյն վայր դրեց կովկիթը և վազելով տուն՝ բերաւ մի մեծ բաժակ և իւր ձեռքով կթելով կաթը նրա մէջ, տուաւ ամուսնուն և վերջինս՝ ինձ։ Ես ախորժանօք դատարկեցի անուշահամ ըմպելիքը և խնդրեցի երկրորդը, որը նոյն հոգածութեամբ դարձեալ լցուեցաւ և նոյն ճանապարհով յանձնուեցաւ ինձ։ Իմ նախաճաշը վերջացել էր, որի համար շնորհակալութիւն անելով՝ հարցրի Սարգսից գիւղի վերին կողմերն անցնելու ճանապարհը և հեռացայ։

Ես գնում էի մանուածապատ, նեղ և ղառիվեր փողոցներով, որոնցից շատերը կազմում էին պարտէզների շրջապատ ցանկերը։ Ուրախ էի, որ ոչ մի տեղ շներ չըպատահեցին՝ իրենց աղմուկով ինձ ուղեկցելու համար։ Երբ գիւղի վերին ծայրը հասայ՝ արևի առաջին ճառագայթներն ընկան մօտիկ բլրի վրայ, որ ծածկուած էր գեղեցիկ անտառակով։ Հասնելով այդ բլրին, սկսայ նրա վերին կողմից դիտել գիւղը և նրա շրջապատը։

Ն. գիւղը, որ զուտ հայաբնակ է, գտնւում էր մի գեղեցկադիր և արեգընդդէմ լեռնալանջի վրայ, որի շարունակութիւնը դէպի լեռը՝ ծածկուած էր ամբողջապէս անտառով։ Գիւղի դիրքը մասամբ սարահարթ և մասամբ ղառիվայր էր։ Տները, որոնց թիւը երկու հարիւրից աւելի պիտի լինէին, շինուած էին խառն ի խուռն և, մեծ մասամբ, եռևի կողմից գետնին հաւասար։ Գետնի մակե-

բնոյթից բարձր տներ, առանձնապէս, գտնւում էին գիւղի այն մասում, որի դիրքը սարահարթ էր։ Գիւղն ըստ ամենայնի, նման էր միւս բոլոր հայաբնակ գիւղերին, միայն այն առաւելութեամբ, որ այստեղ ամեն տուն ունէր իւր մեծ կամ փոքր պարտէզը և սարերից իջնող ջրերն այնքան էին առատ, որ գրեթէ ամեն տուն առու ունէր իւր բակում։ Գիւղի վերջին ծայրում, մի կանաչազարդ բարձրավանդակի վրայ, կառուցած էր եկեղեցին, որ հեռուից բաւական կոկիկ և գեղեցիկ էր երևում։ Նրա մօտ կար միայարկ, բայց ընդարձակ և սիրուն ծառերով շրջապատուած մի ուրիշ շինութիւն, որ անշուշտ ուսումնարանը պիտի լինէր։ Գիւղի ընդհանուր պատկերն առաջին անգամ ինձ վրայ տխուր տպաւորութիւն արաւ։ Սակայն աւելի գեղեցիկ էին շրջակայ տեսարանները։ Գիւղի առաջև ընկած էր ընդարձակ և անտառախիտ խորաձոր, որի միջից խոխոջալով անցնում էր մի գետակ։ Նրանից այն կողմը. ինչպէս և գիւղի ետևից բարձրանում էին վիթխարի լեռներ, փառահեղ գագաթներով, որոնցից մի քանիսի վրայ դեռ նշմարւում էին հին դարերում ապրող Սիւնեցիների զօրութեան ու մեծագործութեան հետքեր—կիսաւեր բերդերի մնացորդներ։ Գիւղի աջ կողմից սկսւում էր մի հովտաձև սարահարթ, որ գնալով լայնանում ու դաշտանում էր և որի վրայ տարածւում էին գիւղացիների արտերը։

Այս բոլորը տեսնելուց և զննելուց յետոյ՝ ես կամաց կամաց իջայ գիւղը, բռնելով այնպիսի ուղղութիւն, որ ինձ պիտի տանէր դէպի եկեղեցին։

Զարմանալի շարժում էր տիրում այդ ժամանակ գիւղի փողոցներում։ Կարծես բնակիչները մի հրաշք տեսնելու կամ հրդեհ հանգցնելու համար էին շտապում։ Կին, տղամարդ, ծեր և երիտասարդ աճապարում էին դէպի եկեղեցի. նրանք գնում էին աղօթելու։

Այս տեսարանը որքան ուրախացնում, նոյնքան և զարմացնում էր ինձ և այդ զարմանքը կրկնապատկուեց, երբ ուրիշների հետ ես և եկեղեցին հասնելով՝ տեսայ այդտեղ հաւաքուած ժողովրդի բազմութիւնը։ Ես հայոց

շատ գիւղերում էի եղել, բայց ոչ մի տեղ ժողովրդի մէջ այսքան ջերմեռանդութիւն չէի նկատել։ Սա ինձ յիշեցնում էր Կովկասի գերմանական մի գաղթավայր, ուր յաճախ գտնուել և միշտ հիացել էի գերման ժողովրդի եկեղեցասիրութեան վրայ և դիտել՝ որ մեր գիւղերում, ընդհակառակը, ժողովուրդն օր ըստ օրէ սառչում է եկեղեցուց, առանց սակայն մի ուրիշ հոգեշահ գործի մօտենալու։

Գրեթէ զօրով ներս մտայ եկեղեցին և զօրով էլ առաջ անցայ, որովհետև խռնուած բազմութիւնն իւր միջից անցնելու ճանապարհ չէր թողել։

Եկեղեցում, ամենից առաջ, ուշադրութիւնս գրաւողը բազմախումբ դպիրների երգեցողութիւնն էր, որին ես երբէք չէի սպասում։ Աւելի յառաջանալով՝ աւելի ևս զարմացայ, տեսնելով, որ մօտ 10 հոգուց բաղկացած խմբի մէջ, տղաների հետ միասին կանգնած էին և հասակակից աղջիկներ, որոնց բոլորին դպրապետութիւն էր անում բարձրահասակ, գլուխը սև շղարշով փաթաթած և մթնագոյն շապիկ հագած մի կոյս, յար և նման մեր կուսանոցի միանձնուհիներին։

Իսկոյն յիշեցի Տէր-Յովսէփի կոյս-Աննան և չերկմտեցի, որ իմ առաջ կանգնած դպրապետուհին նա ինքն է։ Բայց նախ քան կուսի անձով հետաքրքրուելս՝ իմ լսելիքը գրաւեց Սրբասացութեան խորհրդաւոր երգը, որ նա հրաշալի ձայնով սկսաւ երգել։ Բայց ինչ երգ, ինչ ձայն էր այն։ Ոչ մի եկեղեցում նմանը չէի լսած։ Մի քանի րոպէ ինձ այնպէս թուաց թէ՝ հնչող ձայնը ոչ թէ մարդկային կրծքից, այլ մի կախարդական սրնգից կամ երգեհոնի միջից է բղխում, այնքան հնչեղ և միևնոյն ժամանակ գողտրիկ ու ախորժալուր էր նա։ Երգչուհու ձայնը, նայելով երգի աստիճաններին, գնալով զօրանում ու զուարթանում էր. եկեղեցու կամարները կարծես ձայնակցում էին նրան դիւթական հնչիւններով։ Ես հիացայ, յափշտակուեցայ և գիւղական եկեղեցում գտնուելս մոռացայ։ Ես ամբողջա-

պէս լսելիք էի դարձել, նոյնն էր և ժողովուրդը. ոչ ձայն, ոչ շշուկ, բոլորն էլ յափշտակուած լսում էին հրաշալի մեղեդին և ջերմեռանդութեամբ աղօթում։ Եւ որքան սէր, որքան հաւատ այդ ծնկաչոք և ձեռնամբարձ պաղատողների մէջ... չգիտեմ ի՞նչպէս, ես էլ արդէն չոքել էի խոնաւ գետնի վրայ (որն ուրիշ տեղ չէի անում) և գիւղացիների հետ միասին աղօթում էի... Եւ իմ երիտասարդական կեանքի մէջ դա առաջին ջերմեռանդ աղօթքն էր...

Շուտով խումբն էլ սկսաւ դաշնակցել դպրապետուհուն։ Երգեցողութիւնը յորդոր, բայց ներդաշնակ կերպարանք առաւ։ Այս բոլորը լսում էի հրճուախառն հիացմունքով և զգում, որ այդ գիւղական եկեղեցում կատարեալ քրիստոնեայ եմ դարձել՝ նման այն բարեպաշտ քրիստոնեաներին, որոնք ապրում էին այդ սրբազան կրօնի հալածանքների դարերում, երբ իշխանն ու ստրուկը, տիկինն ու աղախինը, միևնոյն մթին գետնափորում, միասին պաշտում և աղօթում էին քրիստոնէութեան հիմնադրին և միևնոյն սեղանի վրայ՝ հաղորդւում Նրա կենարար մարմնին և արեանը։

Քաղաքի եկեղեցիներում, խոստովանում եմ, խորշում էի փոքր ի շատէ գծուծ հագնուած մի մարդու մօտ կանգնելուց, վախենալով չորերս կեղտոտել... բայց այստե՜ղ, ո՜հ, ինչպիսի սիրով ողջունեցի ես մի աղքատ, կորաքամակ և կոշտ հագուստներով ծերունի գիւղացու, երբ սարկաւագի «Ողջոյն տուք միմեանց ի համբոյր սրբութեան»... խօսքերը լսեցի։ Ես պատրաստ էի՝ իմ ողջոյնի հետ միասին՝ նոյն իսկ համբուրել ծերուկին...—Ի՞նչ յեղափոխութիւն էր այս, որ կատարւում էր իմ մէջ. չըգիտէի։ Ո՞ւր էին այն թերահաւատ մտածմունքները, որոնք ճնշում էին ուղեղս մեր եկեղեցիներում. չկային, անհետացել էին։ Արդեօ՞ք հրաշալի երգչուհու և նրա խմբի ներդաշնակ ու ոգևորող երգեցողութիւնը չէ՞ր իմ մէջ կատարւող այս յեղափոխութեան պատճառը...

Ամենամեծ հաճութեամբ լսեցի պատարագի մնացորդ երգեցողութիւնը, շարունակ հիանալով դպրապետուհու

դիւթական ձայնի վրայ։ Սակայն քանիցս փորձ փորձեցի տեսնել նաև նրա դէմքը, բայց այդ չյաջողեց ինձ, որովհետև նա իր դէմքը ոչ մի կողմ չէր դարձնում, իսկ իմ կանգնած տեղից առաջ գնալ չէի կարող։ Բոլոր ժողովուրդը սպասեց մինչև վերջին «Օրհնեալ եղերուք»-ը, ես ևս նրանց հետ, առանց մի վայրկեան ձանձրանալու։

Դուրս գալով եկեղեցուց, սկսայ նրա շուրջը պտտել և ապա ուսումնարանի կողմն անցայ՝ բայց աչքս միշտ եկեղեցու դրանը, որպէս զի կուսի ելնելը տեսնէի։

Դեռ զբօսնում էի եկեղեցու բակում, երբ Տէր-հայրն ու կոյս-Աննան եկեղեցուց դուրս գալով՝ ուղղուեցան դէպի ինձ։ Ես ևս իմ կողմից առաջացայ դէպի նրանց։

Բայց Աստուած իմ, այս կինը ինձ հանդիպող հանելուկների մեծագոյնն էր։ Այս յետ ընկած հայ գիւղում, այս վայրենի լեռներում դիմում էր դէպի ինձ Կամոլետտիի «Քոյր Թերեզան»։ Նոյն գեղեցիկ հասակը, նոյն սիգաճեմ գնացքը, նոյն ազնուական տիպարը, որ ես թատրոնի բեմի վրայ, կուսանոցի պատերում քոյր Թերեզայի մէջ էի տեսել՝ այդ բոլորը ճշտութեամբ գտնում էի այստեղ՝ ինձ մօտեցող կնոջ մէջ։ Կարող էի միթէ զարմանքս չափաւորել և ապուշի կերպարանք չառնել։

Իմ բաղդից ժամաւոր կանանցից մինը, հէնց ճանապարհի կիսում, կանգնեցրեց երկուսին և ինչ որ բան էր հարցնում, կամ հաղորդում նրանց։ Ես ժամանակ ունեցայ զգաստանալու և, մինչև անգամ, խօսելու նիւթ ընտրելու։

Երբ իրար մօտեցանք, ողջունեցի Տէր-հօրը և կոյս-Աննային ասելով.

—Այսօր ես այստեղ երկու խիստ ուրախացնող անակընկալների հանդիպեցայ. առաջին՝ ձեր եկեղեցում հրաշալի երգեցողութեանը, որի նմանը, խոստովանում եմ, լսած չէի ոչ մի տեղ և երկրորդ՝ այս գեղեցիկ դպրոցական շէնքին, որի գոյութիւնն այսպիսի մի հեռաւոր գիւղում չէի կարող երևակայել։

—Այդ բոլորը, ահա, մենք այս քրոջն ենք պարտական, նրան պէտք է շնորհակալ լինել։

Այս ասելով Տէր-հայրը ծանօթացրեց ինձ կոյս-Աննային, յայտնելով իմ ծով, ճրտեղացի լինելս և ինչ նպատակով իրենց գիւղն այցելելս։

Մուրացան

Շատ են արդիօք մեզանում այսպիսի կանանց տիպերը։— Եթէ աշակերտները ծանօթ են, այս տիպը համեմատել Ռուզանի հետ։ Ի՞նչ էր Ռուզանի իղէան և ինչ այս կնոջ։

---

## 69. ԼԷՕ (ԱՌԱՔԵԼ ԲԱԲԱԽԱՆԵԱՆ)

1860-ին աշխարհ եկաւ Առաքելը Շուշի քաղաքում. Նրա հայրը մի խեղճ դերձակ էր, որ վերջը դառաւ ժամկոչ։ Լէօն սովորեց նախ թեմական դպրոցում, ապա անցաւ քաղաքային ուսումնարան, ուր և աւարտեց։ Հազիւ աւարտած քաղաքային դպրոցը, կորցնում է իր հօրը առանալով իբրև ժառանգութիւն ամբողջ ընտանիքի պահելու հոգսը։ Նա դառնում է գրագիր, ապա հեռագրատան պաշտօնեայ, յնուհետև տպարանի կառավարիչ Բագու քաղաքում,) մինչև որ 1895 թ. Նրան հրաւիրում են Թիֆլիզ որպէս «Մշակ»-ի մշտական աշխատակից։ Այդ լրագրում էլ դեռ 1884-ին լոյս էր տեսել Լէօ-ի առաջին վէպիկը «Անապաշտութեան քուրմ»։ Այնուհետև Լէօ-ի անունը մեր մամուլի մէջ ամենաառորականներից մինն է դառնում, իբրև վիպասան, պատմա-կենսագիր և մանաւանդ իբրև հրապարակախօս։ Նա գրում է զգացմունքով ու կրքոտ, ուստի ընթերցողների հոծ բազմութիւն ունի, չնայելով նրա միակողմանի և կուսակցական հոգուն։ Յայտնի գործերիցն են. «Ուխտաւորի յիշատակարանը», «Պանդուխտ», «Մայրեր», «Կորածներ», «Մելիքի աղջիկը» և այլն։ Իր վէպերի մէջ նա հետևող, երբեմն գրեթէ ընդօրինակող է Րաֆֆուն։ Պատմական գործերն են. «Հայկական տպագրութիւն» 2 հատոր, «Ստեփաննոս Նազարեան» (2. հ.), «Գրիգոր Արծրունի» 3. հ. «Յովսէփ կաթուղիկոս», «Ս. Մեսրոպ» և այլն...

---

# 70. ԼԷՕԻ ՆՇԱՆԱԿՈՒԹԻՒՆԸ

Թիֆլիսի Խոջիվանքի գերեզմանատանը հանգչում են Լէօի երկու ուսուցիչները, հայ ժողովրդի վերածնութեան առաջին ռահվիրաներից՝ Գրիգոր Արծրունին և մեր ազգային վիպական գրականութեան հիմնադիր — Րաֆֆին։ Հայ ժողովուրդը անուշադրութեան մատնեց նրանց կենդանութեան ժամանակ։

Բայց որպէս երևում է, Լէօն բախտաւոր աստղի տակ է ծնուել։ Հայ ժողովուրդը ապերախտ չը գտնուեց դէպի նա, որ իր երիտասարդ տարիներում զօրավիգ էր հանդիսացել իր անմահ ուսուցիչներին և որ նրանց մահուանից յետոյ էլ չը լքեց այն մեծ գործը, որի համար նրանք այնքան տանջուել, այնքան զրկանքներ և նեղութիւններ էին կրել։ Քսան և հինգ երկար տարիների ընթացքում, երբ մեր գրական ու հասարակական ասպարէզում մարդիկ երևացին և անհետացան։ Լէօն կանգնած մնաց այնտեղ, որպէս գրող և հասարակական գործիչ։ Երկդասեան ուսումնարանի սահմանափակ պաշարով հրապարակ դուրս եկած՝ Լէօն այժմ կանգնած է համալսարանական բարձրութեան վրայ։ Եւ մեծ անարդարութիւն կը լինէր հայ ժողովրդի կողմից, անուշադրութեան մատնել նրան, որ իր մէջ է մարմնացնում հայ ժողովրդի կամքն ու տոկունութիւնը և բուռն աշխատասիրութեան ոգին։

Մեր հասարակական կեանքում Լէօն հրապարակ է գալիս որպէս ժողովրդական գործիչ Արծրունու դպրոցում։ Տարիների ընթացքում նա աւելի լայն մտաւոր պաշարի տիրանալով՝ աստիճանաբար բարձրանում է։ Լէօն ներկայումս մեր գրական ասպարէզում կարևոր տեղ է գրաւում. Նրան կարելի է համարել և՛ հրապարակախօս, և՛ պատմաբան, և՛ վիպասան։

Որպէս հրապարակախօս՝ նրան կարելի է ընդունել Արծրունու աշակերտ։

Որպէս վիպասան՝ նա Րաֆֆու աշակերտն է, խակա-

կան արտայայտիչը Րաֆֆու հայեացքների, ձգտումների։

Լէօն ինքնուրոյն, ստեղծող է իր պատմական գրուածքներում։ Նա այդտեղ չէ պատկանում ոչ մի դպրոցի։ Նա այդտեղ հիմնադիր է մի նոր պատմաբանական դըպրոցի։ Նրա պատմական գրուածքները ոչ զուտ նկարագրական են—իրողութիւններ արձանագրող—և ոչ էլ պատմափիլիսոփայական։ Այդ գրուածքներում Լէօն միմեանց հետ խառնել է իր վիպական, հրապարակախօսական և քննական-պատմական կարողութիւնները, այնպէս որ կարելի է ժամերով կարդալ այդ գրուածքները՝ առանց յոգնութիւն զգալու։ Էլի նա երևան է գալիս որպէս մի գաղափարական, մի տենդենցիօզ գրող։ Ջնջեցէք նրա գըրուածքների տակից իր անունը, բայց նրան կը գտնէք ամեն տեղ, ամեն էջերում. Մի հայ մարդ է գրողը, որոշ ձգտումով, որոշ նպատակով։ Ե՛ւ պայքանում է, և՛ քննադատում, և՛ քարոզում։ Հայեացքների, գաղափարների հետ նա փոխում է նաև խօսելու եղանակը և ոճը։

Վերջապէս, Լէօն ազատ է իր պատմական գրուածքներում. նա ապրում է իր ստեղծած միջավայրում, ազատ և ինքնիշխան...

«Հայրենիք» շաբաթաթերթ.

---

## 71. ԹԱԹԱԽՄԱՆ ԵՐԵԿՈՅ

Երեկոյ է, գարնանային թարմ, անուշ երեկոյ։ Մութը կոխել է ամեն տեղ. Նիրհում է Սիւնիքի հսկայ բնութիւնը, ամեն ինչ հանգիստ է, անվրդով։ Աստղերը հեզ ու մունջ ճաճըլպում են բարձրից Տաթևի վանքի վրայ, ճպճպում են, կարծես ծանր ու ցածր արտասուքի կաթիլներ են մի մի ցած գլորւում այն խեղճերի վրայ, որոնք փռուած են վանքի բակում։

Տաթևի դրսի մեծ դռների վրայ կայ մի փոքրիկ եկեղեցի։ Այդ եկեղեցու առաջ, հրապարակում, թափուած է մեծ եկեղեցուց դուրս արած ամբոխը։ Այդտեղ վանքի աղ-

թիւրը ամեն օրուայ պէս մեղմ ու հանդարտ քչքչում է, իսկ պարապի տակ փափուկ գորգի վրայ նստած է Թուրք խանը։ Վառուած է մի հաստ խարոյկ, որ արդէն մոռացուել է, և նուաղ ու բարակ բոցերը թրթռում են, մի երերուն, գողդող լուսով լուսաւորում են տեսակ-տեսակ դէմքեր և խանի կնճռոտ, մաղձոտ դէմքն ու հինայով ներկած նօսր ու սրածայր միրուքը։

Դեռ նոր էին բեռնած ջորիներ ուղարկել վանքից. իսկ խարոյկի մօտ դեռ կուտուած էր վանքի անօթների, թանկագին զգեստների մի կոյտ։

Խանը բարկացած էր, ուզում էր ինքն իրան ուտել։

Ամեն մէկի գլխագինն էին որոշում։ Կամ այսքան ոսկի տուր, կամ թէ գլուխդ։ Ամենից առաջ Աւթանդիլ տանուտէրի և մէլիք-Միհրանի գլուխներն էին գնահատել, վերջացրել։ Մնում էր գինը տալ և կապանքներից ազատուել։ Սակարկութիւնը դեռ երկար պիտի տևէր. խանը շատ էր գնահատում, իսկ փրկանք տուողները գետնաքարշ աղօթում էին, աղաչում էին պակասացնել գլխագինը։

—Հա՛,—յանկարծ գոռաց խանը,—Ասաղը, Ասաղը... տուէք ինձ իմ ամենալաւ մարդը...

Թիւրքերից միայն մէկն էր սպանուել և դա՝ Ասաղն էր։ Գին էին անում Ասաղի արիւնը. եթէ վճռուած գինը չտային. 12 լաւ տղամարդկանց արիւն պիտի թափուէր, որ խանի սիրտը հովանար։

—Ո՞վ սպանեց նրան, դուէք. տուէք ինձ, ես նրա միսը կտոր-կտոր պիտի վերցնեմ ատամներովս. տուէք, շներ, խոզի ճտեր...

Խանն այնքան բորբոքուած էր, որ տեղից կանգնեց, երկու քայլ առաջ գնաց և ոտը գետնին խփեց։

—Ողորմութիւն արա,—լալահառաչ ձայն արձակեց թափուած ամբոխը։

—Շուտ, հա՛, թէ չէ՝ բոլորիդ, բոլորիդ կը կոտորեմ։ Տղերք,—ասաց նա իր մարդկանց,—սուր պատրաստեցէք։

Բազմութեան մէջ մի խուլ, յուսահատ մրմունջ ան-

ցաւ։ Մութ անկիւնից դուրս եկաւ մէկը, չոքէչոք մօտեցաւ, վիզը ծռեց և ասաց լացի ձայնով.

—Ես տեսայ. Հալիձորցի Թաթոսն սպանեց։

Ամբոխն օրհնեց այդ մարդուն։ Բայց խանը աւելի սաստիկ գոռաց.

—Ո՞րն է, ո՞վ է այդ անպիտան շունը, դուրս բերէք, տուէք տեսնեմ...

—Խեղդուած փսփսոցը մեռաւ ամբոխի մէջ։ Անցնում էին րոպէներ, իւրաքանչիւր կապուած խեղդւում էր, հոգի տալ էր պատրաստւում։ Ո՞րտեղից գտնեն Թաթոսին։ Նա չկայ, և այսքան մարդիկ գլուխ պիտի տան նրա պատճառով։ Դառնութեան ժամը մօտենում է և ամբոխը կծկըւում է անտանելի մորմոքների մէջ։

Բայց կապուած Մէլիք-Միհրանը առաջ է սողում, խօսում է։ Խանը նստում է իր տեղը, կարճատև հանգստութիւնը քաղցրացնում է գետնատարած ամբոխի րոպէները։

—Խա՛ն, գլխիդ ու արևիդ մատաղ,—ասաց Մէլիքը.— խղճա՛ մեզ, խեղճ ենք, ողորմելի ենք, քո ծառաներն ենք։ Նա այստեղ չէ, կորել է, Աստուած վկայ, սուտ չենք ասում։ Եթէ այստեղ լինէր, ինքներս նրան կտոր-կտոր կանէինք։ Հրաման արա՛. էգուց կամ միւս օրը, երբ որ լինի, կը բռնենք նրան, ձեռքերը կապած ոտդ կը բերենք։

—Տուն, տեղ ունի՞,—հարցրեց խանը մի քիչ ցած ձայնով։

Ամբոխի միջից մէկն իսկոյն պատասխանեց սիրտ առած.

—Ունի, կնիկ էլ ունի, մէկ էլ մի երեխայ, տասնուչորս ամսական։

—Էգուց առաւօտ կը բերէք ինձ մօտ.—հրամայեց խանը։—Իւզ Թափալարի մօտ, այնտեղ է մնացել իմ մարկանց մեծ մասը, ոտաբոբիկ. գլխաբաց կը բերէք... Ես գիտեմ, թէ ինչ կանեմ... եթէ չէք ուզում, որ ձեր գիւղերը քարուքանդ անեմ, կը բերէք... Իսկ հիմա արիւնի գինը տուէք, երկու բուռը...

Վերջին խօսքի վրայ խանի ձայնը յանկարծ կտրուեց. վերևից, պարսպի գլխից, մի ահագին քար թռաւ, ընկաւ

*խանի գլխին։ Նա ցած գլորուեց։*

*Թուրքերն իսկոյն վրայ վազեցին, բռնեցին խանին։ Բայց նրա գլուխը բոլորովին ջարդուել էր։*

*Անհնարին սուգ ու շիւան ընկաւ բազմութեան մէջ։ Աղաղակում էին ամենքը, ողբում էին կրծքները ծեծում։*

*—Երկի՜նք, Աստուա՛ծ, պաղատում էր ամբոխը։*

*Մի սոսկալի ահ դողացնում էր ամենքի ծնօտները. կարկամած լեզուները անհասկանալի ձայներ էին հանում։ Խանը սպանուած էր... Բազմութեան սիրտը պատռւում էր...*

*Երկու Թուրք փախան դէպի դռները, բայց այդ ժամանակ հինգ մարդ վազէվազ իջան եկեղեցու քարի սանդուղքներով.*

*—Թաթոսն է, Թաթոսն է.—լեղապատառ գոչեցին մի քանիսը և վազեցին, որ բռնեն նրան։*

*Մնացածները լալով սառում էին.*

*—Քո տունը քանդուի, դու մեր տունը քանդեցիր, կրակ թափի գլխիդ, այս ի՞նչ բերիր մեր գլուխը։*

*Թաթոսը մի մեծ սուր ձեռին ցատկեց, խարոյկի մօտ կանգնեց։ Նրա ընկերներից մէկը մի սարսափելի ձայն, վայրենի աղաղակ հանեց բերանից. ամենքը դողդողացին այդ ձայնից, և ինքը, այդ մարդը, խելագարի պէս սկսեց արագ պտոյտներ գործել, դէս ու դէն թռչկոտալ, նրա ձեռքում էլ կար մի մեծ սուր, որ անդադար շողշողում էր, երբ նա կրակին էր մօտենում։ Դրան իսկոյն ճանաչեցին. ահագին փափախի տակ մտած մի մարդ էր, որ ունէր կարճլիկ հասակ, բայց բաւական հաստ էր, դէմքը փոքր, թուխ, մազ. նրա ոտքուներկի առաջ մարդ չէր կարողանում կանգնել։*

*—Դռները փակած են,—գոռաց Թաթոսը.—ով որ հայ է, քրիստոնեայ է, թող սրանցից մէկին սպանէ։*

*Բազմութիւնը քարացել էր։ «Թող ինքն անէ,—լսուեցան այս ու այն կողմից ձայներ,—թող ինքն անէ, մենք արնատէր չենք, մենք նեղացած, չարչարուած ենք»։*

*Խարոյկի բոցը բարձրացաւ, Թաթոսի հետ եկած մարդիկ փայտ էին դարսում նրա վրայ։ Առաջ գնաց Թաթոսը.*

նա տանում էր մի աւելորդ սուր եւ նա մօտեցաւ Աւթանդիլին։

Խոնարհ ու հանդարտ կերպով նայեց նրան, գլուխը ցածացրեց և սուրը մեկնեց նրան, կոթը դրաւ նրա ձեռքում, որ չուանով կապկապած էր։ Աւթանդիլն ընդդիմացաւ. Թաթոսն ուզում էր արձակել նրա ձեռքը կապանքից, բայց նա թոյլ չտուեց, կռնով դէն հրեց իրան մեկնած սրի կոթը։ Բայց Թաթոսը չէր հեռանում, նա զարմացած նայում էր այդ իշխանին և աշխատում էր նրա տխուր, յուսահատ դէմքի վրայ մի պատասխան կարդալ։ Աւթանդիլը առաջ շարժուեց սողալով, և Թաթոսը պատկառանքով ճանապարհ տուեց նրան։ Աւթանդիլը խօսեց. նրա ձայնը տխուր էր, սգաւորի ձայնի պէս էր.

—Մարդիկ, եթէ գժուել էք, այս գժին լսեցէք. բայց իմացէք, թէ էգուց մեր գլուխն ինչ կը գայ։ Սրա գլուխը ծախուած է, պրծած։ Խանի մարդիկ էգուց կը գան... Էգուց կնիկ ու երեխայ գերի կը գնան Բարկուշատ։ Ես արիւնի տէր չեմ. տեղից չեմ էլ շարժուիլ, կապանքներս չեմ էլ արձակիլ։

Եւ նա գլուխը կախ արած մի կողմն անցաւ, թուրքերին մի ինչ որ բան ասաց։

—Անիծուէ՛ դա,—գոչեց գերիների խումբը։

Թուրքերը սրեր հանած, կանգնած էին։ Նրանց և Թաթոսի հետ եկածների մէջ դեռ միայն հայհոյանքներն էին փոխանակւում։ Բայց Աւթանդիլի խօսքերից յետոյ նրանք առաջ անցան և սուր շողացնելով վրայ թափուեցան։ Թաթոսն իր ընկերների հետ խնայել չգիտէր. սրի հարուածները թափուեցան, թուրքերը յետ ու յետ գնացին։ Թաթոսը սուրը բռնած ընկաւ ամբոխի մէջ։

—Կոտորեցէք դրանց,—գոռում էր նա և ձեռք ընկածին հարուածում էր սրի տափակով։

Էլի բարձրացաւ բազմութեան աղեկտուր հեծեծանքը։

—Խեղճ ենք, մեղք ենք, վա՜յ... գոռգոռում էին այս ու այն կողմից։ Սարսափահար բազմութիւնը այս ու այն կողմ

էր փախչում, վանքի ընդարձակ բակում մի անհնարին խառնակութիւն էր տիրել։

—Կոտորեցէ՛ք,—գոչում էր Թաթոսը սարսափելի ձայնով. նա կրճտացնում էր ատամները, նրա աչքերը արիւնով լցուել էին, տրաքւում էին։

Կարճլիկ ու բրդոտ մարդն այդ միջոցին վերջացրել էր իր գործը։ Թուրքերը զինաթափ էին եղել և հաւաքուած մի անկիւնում՝ լուռ մունջ իրանց դատաստանին էին սպասում, Եւ կարճլիկ մարդը մօտեցաւ Թաթոսին, շարժւում էր նրա հետ միասին. նա ոչինչ չէր խօսում, այլ միայն բարձրացրած սուրը շարժում էր մարդկանց վրայ։

—Քարերո՛վ, քարերով.—լսւում էր Թաթոսի բոլորովին փոխուած ձայնը։

Ամբոխը ահից սարսափած, դողահար ընկաւ քարակոյտի վրայ, որ դիզուած էր այդտեղ։ Եւ ամէն մէկը մի մի քար վերցնելով, վազեց դէպի Թուրքերը։ Սրանցից միքանիսը փախել էին պարսպի գլխով։ Լսեցին, թէ ինչպէս աղաղակում էին նրանք՝ «շուն գեաւուրները կատաղել են»։ Մնացածները դեռ կանգնած էին։

Եւ քարերը կարկտի պէս թափուեցան մնացածների վրայ։ Իսկ կարճլիկ ու հաստ վայրենին խրախուսում էր մարդկանց և իր սրի ծայրով մանր-մանր հարուածներ էր տալիս ընկած Թուրքերին։ Նա, կասես, հանաք էր անում։

Խարոյկը մարել էր. միայն կրակն էր քիչ լոյս տալիս իր չորս կողմին։ Թաթոսը դէս ու դէն էր վազում. նա կրակ էր կտրել։ Նրա ոտը մի ինչ-որ բանի դիպաւ և նա հազիւ պահուեց վայր ընկնելուց։ Նա ցած խոնարհուեց և նայեց։ Իր ոտների տակ դեռ պառկած էր Աւթանդիլը, չուանը դեռ կապկապած էր նրա ձեռքերն ու ոտքերը։ Մի սարսուռ ընկաւ Թաթոսի երակների մէջ, մի ակնթարթում նա խղճաց նրան և կռացաւ, որ նրան բարձրացնէ։ Բայց Աւթանդիլը գոռաց.

—Կորի՛ր, աւազակ. մարդկանց տունը քանդել ես, ինձ է՞լ ես ուզում քանդել...

—Բոլորին կոտորեցին,—ասաց Թաթոսը դողալով։ Նա առաջին անգամն էր մեծ մարդու հետ խօսում։ Եւ աւելացրեց.

—Վեր կաց, իշխան, ընկնելուց ի՞նչ օգուտ։

Աւթանդիլը երեսը շուռ տուեց և լռեց. Թաթոսը դողդողալով հեռացաւ նրանից, բայց էլի յետ դարձաւ։

—Մեռած մարդ, գոչեց նա և իր սուրը բարձրացրեց։ Սուրը սաստիկ թափով իջնել էր ուզում ընկածի ուսի վրայ, բայց Թաթոսի սրտում զարմանալի փոփոխութիւններ էին կատարւում. մի վայրկեանում նա փոշմանեց, դէն տարաւ սուրը, մինչև անգամ մի քայլ հեռացաւ, բայց նորից յետ դարձաւ և խոնարհուելով նրա վրայ, խորին զզուանքով թքեց նրա երեսին. դողոցը այնպէս էր բռնել նրան, որ նա չկարողացաւ պահուել, նրա սրի ծայրը ծակեց իշխանի կողը։

Աւթանդիլը բղաւեց։ Նրա շուրջը հաւաքուեցան մարդիկ։ Բայց Թաթոսը ուշադրութիւն չդարձրեց. նա հեռացաւ, որոնում էր միւս իշխանին։ Բայց չտեսաւ նրան և անցաւ վանքի փոքրիկ բակը։

Քիչ ևս անցաւ, ամէն ինչ վերջացաւ։ Յոգնած, մի կարճ ժամանակում մաշուած մարդիկ հաւաքուեցան միասին, դառնութեամբ խօսում, աղաղակում էին։

Լէօ

---

## 72. ԱՍՏՈՒԱԾՆԵՐԻ ԲՈՂՈՔԸ

Արշալոյսը ոսկեզօծեց Մասիսի ձիւնապատ գագաթները։ Աշխարհն արթնացաւ հայր Արամազդի հետ։

Ազատն Մասիս կեանք առաւ. Արամազդն աչքերը բացաւ, նստեց իւր քարեայ գահի վրայ, աչք ածեց քարեայ քնարանի չորս կողմը։ Յաւերժական ծաղիկները շար ի շար բարձրացրին իրանց չքնաղ գլուխներ, և՛ ժպտացին և՛ ողջունեցին. «Բարի՜ լոյս, մեծ Արամազդ»։ Գեղամայ ծովակի ալիքները խնդալով, խոխոջելով, միմեանց հրհրելով ծառացան, գլուխ իջեցրին առի Արամազդին, գո-

չեցին. «Բո՛ւնդ անոյշ, աստուածների հայր»։ Բացօթեայ թռչնակները հանեցին իրանց փոքրիկ նախշուն գլուխները թևերի տակից, քնաթաթախ աչքերից մէկը բաց, մէկը փակ, բաց արին փոքրիկ մաքուր կտուցներն ու գեղգեղեցին բիւրաւոր դայլայլիկներ։ «Բարի՛ օր, բարի տեսութի՛ւն, հայր», ասացին ամէնքը։

Աստուածների հայրը զուարթ դէմքով ողջունեց բովանդակ աշխարհը, շոյելով իր ալիտակափառ երկայն միրուքը, աւետեց ուրախ օր։ Փափուկ մամուռը, որ թաւիշի պէս բռնել էր գահը, աւելի ևս բարձրացաւ, խտացաւ, փափկացաւ, կաթնորակ աղբիւրը, որ նազով, շնորհքով ծորում էր այրի աջ կողմից, նոր նոր անուշիկ ձայներ հանեց։ Նրա մաքուր ակունքից դուրս եկաւ մի յաւերժահարս ու լցնելով խեցեղէն փոքրիկ գոյլը արշալոյսի կարմրացրած ջրով, մօտեցաւ Արամազդի սպասին։ Հայոց աշխարհի պաշտպանը լուացուեցաւ, սրբուեցաւ յաւերժահարսի մազերով, նստեց։

Մինչ այս, մինչ այն, աղօթարանը բոցավառուեցաւ։ Երկինք և երկիր բռնուեցան ծննդական ցաւերով։ Գեղամայ ծիրանի ծովն էլ տանջվում էր երկնքի ու երկրի ցաւերով, նոյնպէս երկնում էր։ Սար ու ձոր, հովիտ ու անտառ պլշած նայում էին անհեզ ծննդականներին։ Բայց երկար չէին նրանց ցաւերը։ Գեղամայ ծովի վրայ կարմրիկ եղեգնիկն սկսեց ծխախառն բոց ծխել. բոցի միջից վազեց մի խարտեաշ պատանեկիկ։ Նրա մազերը հրեղէն էին։ միրուքը բոցավառ, երկու աչքը երկու արեգակ։ Արարած աշխարհ լուսաւորուեց, տաքացաւ։ Վահագն էր դա, հայր Արամազդի սիրելի որդեակը։ Նա զինավառ և խրոխտապանծ կտրեց, անցաւ օդի տարածութիւնը, մտաւ հայրենական այրը։

Հայր ու որդի փաղաքշանքով գրկախառնուեցան։ Եւ աստուածների օրինակով Մասիսի լանջերում և ստորոտներում որքան եղնիկներ ու տատրակներ կային, բերան բերանի դրին, միմեանց համբուրեցին։

—

Անմահների ընտանիքը հետզհետէ ժողովուեցաւ գեղազարդ այրի մէջ։

Եկաւ Աստղիկ դիցուհին։ Անմահական շուշանները, անթառամ վարդերը շար ի շար թագ կապած նստած էին հրաշագեղ գլխի վրայ։ Հայոց աշխարհի լուսինն էր դիցուհին։ Նա մի գեղեցիկ եղնիկ էր հեծած և երկու յաւերժահարս բամբիռները ձեռքին երգում էին նրա առաջ աստուածային երգեր։ Եկաւ, գուրգուրալով փաթաթուեց Արամազդ հօր և Վահագն ամուսնու վզով։

Ապա եկաւ ոսկեմայր Անահիտը։ Թէև նրան ոսկի արձան էին կանգնացրել Աշտիշատում, բայց նա պարզ, անպաճոյճ կերպարանք ունէր. նման էր մի աշխատասէր և մրագլուխ գեղջկուհու, որ աշխատելիս քրտինք ու վաստակ անտես է անում։ Իմաստութիւնը և զգաստութիւնը, որի հեղինակն էր դիցուհին, այն ժամանակները շրջում էին գծուծ հագուստների մէջ։ Այսպէս և աստուածուհին։ Բայց նրան ողջիական յարգանքով գլուխ էին տալիս Մասիսի քաջերն և բոլոր անմահների պաշտաւորները։

Միմեանց ետևից հասան Նանէ դիցուհին, Միհր աստուածը Բագայառիճն աւանից։ Ամենից յետոյ եկաւ Ամանոր աստուածը, բերելով իւր հետ հայ երկրագործի աշխատութեան պտուղներից պարգև անմահներին։ Այդ տարին երկրագործը, այգեպանը շատ գոհ էին նրանից և նա ուրախ էր։ Նոր էին վերջացել Նաւասարդի տօները, որ հայոց աշխարհը յատկացրել էր իւր առատաձեռն աստուծուն. ուրախ-ուրախ տօնում էր, գոհ և երկրպագութիւն էր անում։ Այդպիսի պատիւ ունէր նա, որ երկիրը դառն քրտինքով հերկել էր տալիս և փշի ու մացառի տեղ ոսկեցորեն էր բուսցնում։

---

Տրտունջ բարձրացաւ անմահների շրջանում առ հայրն Արամազդ։ Տրտունջ Արշակունի Արտաւազդ թագաւորի դէմ։ Քաջ և աշխարհաշէն հօր այդ չար զաւակը ընդհանուր զայրոյթ էր պատճառել։

Այսպէս տրտնջաց Վահագն.

—Արտաշէս մեռաւ և դեռ գերեզմանի մէջ հանգիստ չառած, որդին նախանձելով նրան տրած պատուին և համայնական սուգին, չարախօսեց անմահների վրայ, որոնց սիրելի էր Թագաւորը. դառնութեան լեղի թափելով ասաց, թէ հայրը բոլոր աշխարհն իւր հետ տարաւ և այժմ ինչի՞ վրայ պիտի թագաւորէ ինքը։ Արտաշէսը պատանն ուսին եկաւ ինձ մօտ, դառնապէս անիծում էր որդուն։ Յիշեցրեց թէ ինչե՜ր էր արել Արտաւազդը, քանի ինքը կենդանի էր։ Ի՞նչ կլինէր մանուկն Արտաշէս, եթէ Սմբատ Բագրատունին չխնայէր նրան, վտարանդի լինելով նրա հետ Պարսից երկիրը։ Սմբատը պահեց, մեծացրեց նրան, մտցրեց Հայաստան, տարաւ նրան հօր գահի մօտ։ Բայց անարժան արքայորդին կամենում էր իրանց բարեբարին սպանել։ Բաւական չէր այդ, Մուրացան ցեղին վերջին պատուհասը հասցրեց։ Արքայապատիւ Արգաւանի ապարանքը կործանեց, պատճառ դառաւ նրա և նրա որդու մահուան։ Սակայն Արգաւանը Արտաշէսի սիրելին էր։ Արգաւանն էր, որ թողնելով իւր բարձն ու պատիւը Երուանդի մօտ, գնաց միացաւ մանուկ Արտաշէսի զօրքին, երբ սա գալիս էր Պարսկաստանից վրէժ լուծելու և իւր գահն առնելու։ Բարերար էր Արգաւանը, փառաւոր. բայց Արտաւազդը նախանձեց և ապերախտութիւնից կուրացած՝ կարճեց նրա կեանքը։

Զօրաւոր էր ոսկեմայր Անահիտի տրտունջը։

—Երէկ, ասաց նա թախծալի ձայնով,—ես տեսայ այն սուգն ու վայնասունը, որ ընկել էր Արտաշէս Թագաւորի ընտանիքի մէջ։ Արտաւազդը քշել էր տալիս նրանց, ուղարկում էր հեռու աշխարհ, որպէս զի Արարատեան երկիրը իրան մնայ։ Արքայազուն մանուկները լալիս էին անպաշտպան, կանայք ամօթահար ծածկում էին իրանց դէմքերը խռնուած ամբոխի մէջ. վայրագ զինուորները քշում էին... Նրանց հեռացրին և Արտաւազդ հանգիստ նստեց իւր սովորական մոլութիւնների մէջ։ Օրեր է անցկացնում մոլի Թագաւորը, երկիրը անտէր է մնա-

ցել, մարդկանց ձայնը չեն լսում, հզօրն անզօրի ոտներին է նստած։ Դեռ պատանի էր Արտաւազդը, երբ սկսեց անպատիւ անել իր հարազատ մօրը, չարախօսելով նրա մասին։ Արգաւան Մուրացանին Արտաշէսի աչքում փառաբանելու և նրա պատիւը խլելու համար անպատկառ որդին խօսք բարձրացրեց Սաթենիկ տիկնոջ մասին, իբրև թէ Արգաւանին պատւում է իւր ամուսնուց շատ։

Աստղիկ դիցուհին էլ իւր գանգատն արաւ, ասելով որ Արտաւազդը սպանել է իւր քրմապետին, որ իւր հարազատ եղբայրն էր, որպէս զի մենակ մնայ։ Խօսեցին և միւս աստուածները, ամենից յետոյ առատաձեռն Ամանորը։

—Անմահների հրամանով Արտաշէսը մտաւ մահուան անկողինը։ Ես Թագաւորի մօտն էի, երբ նա տանջուած յուսակտուր յիշեց Նաւասարդի տօները։ Գլուխը բարձրացրեց, անձկութեամբ աչքերը դէս ու դէն դարձրաւ, թառանչ քաշեց։ «Ո՜, ասաց, կըտար ինձ ծխանի ծուխը և Նաւասարդի առաւօտը, եղնիկների վազելը և եղջերուների վազելը. մենք փող էինք ածում և թմբուկ էինք զարնում»։ Արտաւազդ լսում էր այդ խօսքերը, տանջւում, որ հայրը չի մեռնում, որպէս զի ինքը թագաւորէ։ Աստուածների դէմ գանգատւում էր, որ այդքան սիրում են նրան և քառասուն տարի նրա արած թագաւորութիւնը բաւական չեն համարում։

Տիրեց լռութիւն։ Այրի աղբիւրը սկսեց իւր բարակ ու անոյշ կարկաչիւնը. հողմերը դադարեցին, աստուածները լուռ սպասում էին։

Հայր Արամազդը լսեց այդ բոլորը, լսեց լուռ կերպով։ Յօնքերը կիտեց, աչքերից բարկութեան շանթեր հանեց։ Գաւազանը խփեց քարին և Մասիսի հիմունքները օրօրացին։ Ապա ասաց բարկացած։

—Կարճուի Արտաւազդի թագաւորութիւնը, անիծուի նա և նրա պէս զաւակը։ Նա որսի գայ Մասիսի ստորոտները. Մասիսի քաջերը բռնեն ձգեն նրան մի խոր վիհի մէջ։ Այդտեղ չըմեռնի նա, լոյս չըտեսնէ։ Շղթայակապ տանջուի, միշտ տապակուի լոյս աշխարհ տեսնելու տեն-

չանքով։ Դժոխքից երկու շուն սպասաւորեն նրան, որ ուգիշեր լիզեն, կրծեն շղթաները։ Նա կարծէ թէ իւր շղթաները ահա կըկտրատուին։ Բայց դարբինները մուրճով ծեծեն իրանց սալերը, շղթաներն ամրապնդեն։ Յաւիտեան ազատութիւն չըտեսնէ Արտաւազդը. իւր ականջներով լսի դարբնոցների ձայնը, դայլանայ, բայց իզուր...

Աստուածները այս հրամանը հասցրին իրանց քուրմերին։

---

Անցան դարեր։ Հայր Արամազդն իւր փառաւոր ընտանիքի հետ հալածուեցաւ Մասիսի այրից՝ Հայաստանից։ Ազատն Մասիս ձիւներով և սառնամանիքով շղթայուած, մնաց անբնակ, մենակ։ Միայն ալեոր արծիւը պտոյտներ էր անում նրա կողերով։

Մոռացուեցան հեթանոսական աստուածները... Բայց Հայ դարբինը, ուշադիր մնալով պապենական խրատին, չըմոռացաւ իւր գործը։ Ամեն կիրակի օր ձեռքն էր առնում ծանր մուրճը, երկու երեք անգամ ծեծում էր սալը։

Արտաւազդի շղթաները հաստանում են, պնդանում... Մութ աշխարհում է հօր անիծած անառակ որդին...

Լ. Լ. Օ

---

## 73. ԿՈՍՏԱՆԴԻՆ ՄԵԼԻՔ-ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆ

(Տմբլաչի-Խաչան)

Ծնաւ Շուշի 1857-ին. չորս ամեայ զրկուելով հօրից, մեծացել է հօրեղբօր խնամքով. 1874-ին աւարտելով Շուշու թեմական դպրոցը, ուղևորւում է նորաբաց Գէորգեան ճեմարանը։ Այնտեղ նա մնում է մինչև 1878 թ. և մի խումբ ընկերների հետ հեռանում ճեմարանի Ե. դասարանից։ Մի տարի Դերբենդում վարժապետելուց յետոյ ուղևորւում է Մոսկուա և մտնում Լազարեան ճեմարանի

լիցէյն որպէս ազատ ունկնդիր։ Սակայն նիւթական սղութեան պատճառով կրկին դառնում է Դերբենդ և վարժապետում է մինչև 1883 թ, երբ ուղևորւում է Ֆրանսիա։ Այնտեղ ուսանում է գիւղատնտեսութիւն մինչև 1885 թ.։

Նա աշխատակցել է և աշխատակցում է մեր բոլոր պարբերական թերթերին, մանաւորապէս «Նոր-Դարի»-ն և «Աղբիւրին» նրանց հրատարակման օրից սկսած։

Իբրև ֆելիետոնիստ, նա իր նմանը չունի մեր մէջ, Ղարաբաղի բարբառով նա ծաղրում ու պախարակում է իր հայրենակիցների պակասութիւնները Տմբլաչի-Խաչան կեղծ անունով։

Աղայեանից յետոյ նա մեր շնորհալի մանկական գրողներից մէկն է։ Կենդանի և բանաստեղծական լեզու ունի նա։ Ունի հրատարակած գիւղատնտեսական բազմաթիւ գրքեր։

---

## 74. ԻՄ ՊԱՆԱՐԱՄԸ

### Ա.

Ես մի ծեր մարդ եմ, սիրելի մանուկներ, իմ ընթերցողներ. պտըտել եմ շատ գիւղ ու քաղաքներ, անցկացել գետեր ու ծովեր, շատ բաներ տեսել ու շատ բան լսել, երբեմն տրտմել, երբեմն ուրախացել, այժմ ուզում եմ պանարամիս մէջ փոքրիկ պատկերով տեսածս ցուցանել․․

Դէհ, շուտով այստեղ, դուք ժիր մանուկներ,
Մեծ ու պստիկներ, խելօք ու չարեր,
Կարգ-կարգ շարուեցէք, ինչ որ կըլսէք
Եւ կամ կըտեսնէք, ձեր մտքում ամուր,
Ամուր պահեցէք...

Սկսւում է։ Ահա մի պատկեր։ Մի մեծ քաղաք է, մեծ-մեծ տներով, լայն լայն քուչէքով, ուր պտըտում են մարդիկ ոտով ու կառքով, տաք-տաք մուշտակներ ուսերին ձգած, սիգար, պապիրոս բերանները դրած՝ ֆիու, ֆիու, ծծում, փչում են մուխը թանձրացած։

Թո՛ղ ծըծեն, փըչեն, փորերն ուռցնեն,
Ի՞նչ ունին պակաս, որ ինչ հոգս անեն...

Ահա մի պատկեր դարձեալ նոյն տեղից. մի խուլ փողոց է, ցեխոտ ու կեղտոտ. խարխուլ տնակներ աջ ու ձախ շինած, երկու դրկիցներ դրան առաջին զրոյց են անում քիթ քթի տուած։ Եւ հեռուն կանգնած մի աղքատ կնիկ, շորերը պատռած, ոտքերը բոբիկ, մի հիւանդ մանուկ բռնած իր գրկում, եկող գնացողին ձեռք է դէմ անում...

Այժմ ձեզ ցոյց տամ մի այլ տեսարան.
Դարձեալ նոյն քաղաքում մի լայն փողոց է.
Եղևնու ճիւղեր աջ ու ձախ փռած.
Մի մեծ բազմութիւն առաջ է անցնում
Դիակառքի չորս կողմը լցուած։

Առջևից գնում են քահանաները, ծաղկեայ փիլոններ ուսերին ձգած և նրանց հետ էլ շատ տիրացուներ, մոմ ու խաչվառներ ձեռքներին բռնած. իսկ վերջից, տեսէք, ինչքա՜ն կառքեր կան, սևազգեստ կանայք մէջը նստոտած. ա՜խ, ինչպէ՜ս տխուր, ինչպէ՜ս վշտալից, հետևում են սրանք մեռելի ետքից։

Դարձեալ մի պատկեր. քաղաքի ծայրում հինգ վեց մշակներ ուսերի վրայ տանում են անբախտ ընկերի դիակ, որ քանի տարի իր երկրից հեռու, ծանր բեռի տակ մաշել է իր կեանք... չկան յուղարկաւորներ—ո՛չ քոյր, ո՛չ եղբայր, չեն տեսնւում նաև ո՛չ հայր և ո՛չ մայր. լուռ է փողոցը, լուռ են և մարդիկ. տեսնում է այս բոլոր միայն պարզ երկինքը...

Ահա ձեզ մի այլ պատկեր. բարեկենդան է. մի մեծ զարդարուն սենեակ ձեր առաջ. կանթեղ ու լամպա վառած ձախ ու աջ, մեծ-մեծ հայելիք կախած պատերին, աթոռ, բազկաթոռ ամեն տեղ շարած, իսկ մէջտեղ երկայն սեղանը ձգած, տասնեակ մարդ ու կին ընթրիքի նստած. ինչե՜ր նրանց առաջը, ա՜խ, չկան դրած.

Շամպայն ու մադէր, անուշ գինիներ
Թաշած ու խորոված լաւ ձկնեղէններ,

Խաւիար ու պանիր, տապակած հաւեր
Ու քանի՜ տեսակ քաղցրաւենիներ...
Ուտում են, խմում. քա՜հ-քա՜հ ծիծաղում,
Բարեկենդանը լաւ անցկացնում...
Ես էլ մտղթում եմ բարի վայելում։

Ահա նոյն տան կից փոքրիկ խրճիթում, մի թոյլ ու աղօտ ճրագի լուսում, չոր թախտի վրայ մայրը որդոց հետ բարեկենդանի ընթրիքն է անում։ Չկայ ոչ սեղան, ոչ համեղ ընթրիք, չկան գինիներ ու քաղցրաւենիք. այլ մի հին, մաշուած սփռոց առաջները, հացի կտորտանք նրա մէջ դրած ու մի ամանով պանրի փշրանք, ուտում են ան-ձայն, գլուխ քաշ ձգած...

Տխուր է խրճիթը, խոնաւ և անշուք, տխուր են դէմ-քերը մօրն ու որդոց. միայն չար փիսոն նրանց մօտ պը-պըզած՝ շարժում է պոչը, աչքերը պլշած...
Այժմ ծերուկիս թողէք որ գնամ,
Եկող անգամը շատ բան ցոյց կըտամ.
Դէ՜հ, մնաք բարև, դուք, ժիր մանուկներ,
Մեծ ու պստիկներ, խելօք ու չարեր։

Բ

Անցան ամիսներ. բոլորեց տարին, ահա խեղճ ծերուկս կայ ձեր առաջին. եկէք մանուկներ, իմ աչքի լոյսեր, դառնացած սրտիս դուք միակ յոյսեր. դարձեալ բերի ձեզ իս իմ պանորամ, մի քանի պատկեր նորից ձեզ ցոյց տամ.
Պատկեր լաւ ու վատ երբոր կը տեսնէք,
Աղաչում եմ ձեզ, մտքից մի՜ հանէք։
Դէ՜հ, սկսում է։

1

«Ամառը սարում».
Տեսէք այս սարը կանաչով պատած, այստեղ ու այն-տեղ վրաններ թողած, վրանի դիմաց հայ, թուրք գիւղա-կան մի գործ ձեռին բանի է նստած, որը տաշում է, որը

սրում է, որը կար կարում, տղին օրօրում, որը հաց կամ կաթ տաքացնում, կարագ ու պանիր, մածուն պատրաստում։

Ահա քիչ հեռի նրանց տաւարը, ոչխարի հօտեր, ձիանց բօլուկներ, մինչև փորի տակ խոտերում ծածկուած կամ գլգլան ջրի ափը հաւաքուած, տկզած կանգնել են, չեն շարժւում տեղից, ինչու-որ կուշտ են ու գոհ վիճակից։

Եւ գիտէք ով է մոթալ փափախով,
Հաստավիզ մարդը իր դագանակով,
Որ աչքը տնկած սարի լանջերին,
Մի բան է երգում գիլ-գիլ խոտերին.
Դա է նախրապանը—տէրը տաւարի,
Որ սար է գալիս ամենայն տարի։

2

Ահա նոյն նախիր, նոյն հօտն ու ձիեր, բայց ոչ թէ ամառը սարի խոտերում և ոչ քչքչան ջրի ափերին, այլ ցուրտ ձմեռը գիւղի գոմերում։

Հալուել է միսը, ոսկրները ցցուել, տկզած փորերնին մէջքներին կպել, քաղցած է տաւարը՝ խոտ չկայ տալու, սառել են դաշտեր՝ գարունն է հեռու։

Կրծում են սովից մսուրի փայտեր,
Դոփում կճղակով, պլշում աչեր.
Մայում, բառաչում, վիզերնին ծռում,
Թուլացած ընկնում, քաղցից սատակում։
Իսկ մեր գիւղացին, ո՜հ, ինչպէս խղճուկ
Կանգնած նայում է ու թափում արցունք...
Մեծ է նրա վիշտ, մեծ է նրա ցաւ,
Երբ մի անասուն իր ձեռքից անցաւ։

3.

Ահա ձեզ մի ուրիշ պատկեր.
«Գարնան սկզբում գիւղացու յոյսեր»։
Գարուն է, գարո՜ւն, ի՜նչ քաղցրիկ անուն։ Արտերը

կանաչել են, ծառերը ծաղկել, ծաղկունքը բացուել, ջրերը փռուել, գեղջուկ մշակը յոյսերով լցուել։

Կըգայ ամառը՝ կըդեղնի ցորեն, հունձը կըհնձէ կըժողովէ ամբար, կըհասնեն պտուղք՝ թափ կըտայ, կըլցնէ կթոց, կըկախէ շարեր։

Խոտ կայ տուարին, դարման ձիերին,
Ծաղկունք մեղուին, մեղր մանուկներին.
Ո՜հ, մեր գիւղացին ինչպէս երջանիկ
Կանցնէ այդ տարին...

4

Պատկերը փոխուեց.

Ահա նոյն գեղջուկ ամառ ժամանակ, տխուր նստած է իրան կտրի տակ, մութ է նրա լոյս, իր արտն ու այգին, ինչու է ժանգոտ մանգաղ-գերանդին։

Մարախը եկաւ արտերը կերաւ.
Մարախից պրծածը՝ կարկուտը տարաւ.
Թրթուրը խժռեց ծառերի տերև,
Պտուղ չըմնաց՝ ողջ այրեց արև։

Սոված մեղուներ թռան փեթակից,
Ճճիճը մնաց զուրկ ծորան մեղրից.
Դաշտը չորացաւ՝ խոտ չըկայ կովին,
Ամբարն է դատարկ՝ մահ է գեղջուկին.

Ո՜հ, ինչպէս թշուառ, ինչպէս յուսահատ
Կանցնէ այդ տարին...

5

Նայեցէք հովտի փոքրիկ քաղաքին, ուր սև-սև ամպերը սարերի նման կանգնել են գլխին։ Բնութիւնը խաղաղ է. խաղաղ է և գետը, որ սարի կողմից իջնում է քաղաք, ջրում պարտէզներ, պտըտում ջաղացք, վշշալով անցնում, կորչում ձորերում, ամենայն տարի յոյս և կեանք բերում։

Ահա ամբոխը կանգնած գետափին, ուրախ է հոգով, երկնից ամպերին, որ անձրև կըտայ, կըջրէ երկիր, կեանք կտանէ մարդը, դաշտ ու այգին...

Իսկ փոքրիկ տղաք տես ինչպէս անհոգ
Խաղում, վազվզում են, «Անձրևը» երգում,
Որ ցած գայ ջրէ, բանէ կանաչ խոտ,
Աւլէ փոշիներ ու մաքրէ վատ օդ։

6

Ահա նոյն քաղաք, նոյն սև-սև ամպեր, որից թըռչում են կրակէ նետեր, անձրևի փոխանակ կարկուտ է թափւում, որոտում երկինք, երկիր դղրդում։

Մարդիկ հաւաքուած իրանց տները, քարացած նայում են այդ ահեղ պատժին, որ փշրում է, ջարդում, տուն ու տեղ աւրում, այգի ու պարտէզ խլում, հետը տանում։

Լացում է մանուկը մօր վզին փաթթած,
Բառաչում է տաւարը դրսում մնացած,
Գոռում գոչում է գետը կատաղի,
Ահ, սարսափ պատում ամեն սրտերի...
Եւ ահա յանկարծ մի ձայն է լսւում,
Մի ձայն զուժաբեր ամենքին հասնում.
«Հեղեղ, հեղեղ», կանչում են մարդիկ,
Ա՜խ, մեռանք, կորանք, խնայէ, երկինք...

7

Հեղեղը եկաւ, հեղեղը գնաց,
Բայց տեսէք ահա տեղը ինչ մնաց.

Ահա մի ծերուկ խատտած մի դիակ, կիսամեռ ընկել էր իր փլած տան տակ. նրանից հեռի գետնին տարածուել տասնամեայ մանուկ՝ մօր հատիկ զաւակ։

Ահա քոյր, եղբայր միմեանց գրկած, ընկել են իրանց ծնողաց կրծքին, իսկ այնտեղ խեղդուել սկեսուրն ու հարս, օրօրոցում կապած մանուկը կողքին...

Սգում է քաղաքը, սգում են ամենքը, որը իր հայրը,
որը իր որդին, քոյրը իր միակ եղբայր թանկագին։
Որբի լացի ձայն երկինք է հասնում, մեծ ու փոքրի
Սիրտ շարժում, մղկտում...
Ա՜խ, թողէք ծածկեմ այս տխուր պատկեր,
Պատկեր սոսկալի, արիւնով ներկուած,
Որի ժանտ տեսիլ դեռ մինչև այսօր
Սարսափ է ազդում դժբախտ բնակչաց։

Կ. Մ. Ճաննազարեան

Նմա՞ն են արդեօք այս պատկերները.—ինչո՞ւ հեղինակը հակադրում է լաւը վատին, հարուստը աղքատին։ Ճիշտ ու բնակա՞ն են արդեօք այդ պատկերները։ Ի՞նչ ենք սովորում այդ հակադրութիւնից։ Շարադրութեան նիւթ. հարուստի թաղումը։ (Ի նկատի ունենալ Շիրվանզադէի «Հոգեհացը»)։

## 75. ԷՇԸ ԵՒՐՈՊԱՅՈՒՄ ԵՒ ԿՈՎԿԱՍՈՒՄ

### Ա.

Մեզանում էշուկը, քանի որ մէջքին փալան չի դրուել ու կողքերին ճիպոտ չի դիպել, մի շատ ուրախ ու կայտառ կենդանի է. նա մարդից չի քաշւում, ում տեսս մօտենում է, հոտոտում, ականջները խլշում, լոք-լոք անում, աջ ու ձախ թռչկոտում, կապկութիւններ անում, մի խօսքով՝ նա շատ գրաւիչ է իր խաղերով, բայց ոչ մեծերն են ուշադրութիւն դարձնում նրան և ոչ էլ փոքրերը. մի՞թէ արժանի է էշուկը այդ պատուին... Մեր էշուկի տարին դեռ չլրացած, տեսնում ես խեղճի մէջքին մի ծանր փալան դրին, փորքաշով պինդ կապկպեցին ու մի քանի փութ ծանրութիւն բեռնեցին գիւղ կամ քաղաքը տանելու։ Մեր էշուկի ուժը չի պատում այդ բեռանը, նա ճըկլռ-ճըկլռ է անում, մէջքից երկտակւում է, ոտքերը դողդողում են, ուզում է ձխլուել բեռի տակ, մէկ էլ յանկարծ տիրոջ ճիպոտը գաւակին այնպէս է շըրմփում, որ զարմանքից թէ սարսափից երկու գազ առաջ է թռչում։ Էլ կըհամարձա-

կուճ մեր Իշուկը տեղը կանգնել կամ ճըկռել, ճիպոտը ճըմճըմում է ետևից, ինչքան ուզում է թող մեջքը կոտրուի, ով է նրան հարցնողը...

Գնում է տնքալով մեր Իշուկը, քրտինքը ջրի պէս վազում է նրանից, բերանը փրփուր է կապում, աչքերը մթնանում են ու ծուռում է ճանապարհից, ճիպոտն ուղղում է նրա ծուռ քայլը. ուշքը գլուխն է գալիս, տեսնում է որ իր երազած երջանիկ աշխարհը չէ սա, ուր միշտ կարելի է տրտինգներ տալով ապրել. մի րոպէ մտածում է փախչել տիրոջից, սրում է ականջները, խլըշում դէս ու դէն, բայց մի կողմից բեռն է ճնշում, միւս կողմից՝ «չու, թօշ, թօշ» լսում է տիրոջ սպառնալի ձայնը...

Շարունակում է լուռ ու մունջ Իշուկը իր ճանապարհը. ահա յանկարծ տեսնում է քթի տակին գլխները բարձրացրած փափուկ ու գիլ գիլ խոտեր, բանջարներ. ախորժակը բացւում է, գլուխը ծռում է դէպի բոյսը, բերանը լայն բաց անում ու հէնց որ ուզում է հափ—կծել, տիրոջ դագանակը թրը՛խկ, դիպչում է չոր գլխին, աչքերը կրակ են անում ու դատարկ ծնօտները իրար չրխկչխկում...

Գալիս է մի առու, գըլգըլգըլ, քըչքչում է ջուրը, Իշուկը տաքից խաշւում է, լեզուն պապակւում է ուզում է վրայ ընկնել մի լաւ խմել, բայց դեռ մտքիցը չի անցել տիրոջ դագանակի զօրութիւնը, դեռ ևս մրմնջում է խփած տեղը, այս անգամ թողնում անցնում է. Գալիս է երկրորդ առուն, երրորդը, մէկը միւսից աւելի պարզ, աւելի վճիտ. ծարաւը աւելի ևս տանջում է. ճար չկայ, որ մեռնի, պիտի խմէ այս անգամ, և ահա վիզը երկարացնում է, գլուխը կախում կամաց ու դեռ խեղճը հաստ շրթունքները ջրի երեսին չդիպցրած՝ շըը՛մփ, էլի դագանակը հասնում է դնչին...

Աչքերը ճպճպալով ու ներքևի շրթունքը կախ գցած, տխուր հեռանում է առուից. ահա նրան պատահում են իր ծանօթներից ու ազգականներից շատերը, որը իր նման բեռնուած է, որը անբեռ. նկատում է նրանց մէջ և իր հին ընկեր Զալ-էշին, կուրծքը զանգակներով զարդարուած,

մի րոպէ մոռանում է իշուկը իր վիշտը. հեռուից զռիկ-զռիկ անելով նրան բարևում է, քայլերը արագացնում է, որ մի րոպէ շուտ բարեկամի տեսութեանն արժանանայ։ Զալ-էշն էլ պակաս կարօտ չէ նրան, և ահա երկու հին բարեկամները դէմուդէմ են գալիս. քիթ-քթի դնում, մէկ-մէկու հոտոտելով բարևում, և դեռ իրարու ցաւը չըհարցրած, իրարու կարօտ չառած, փայտը՝ թրմխկ՝ դիպչում է երկուսի քթին ու բաժանում...

Վերջապէս հասնում է մեր իշուկը տուն բոլորովին թուլացած, բոլորովին յուսահատ, բեռը վեր են առնում մէջքից, մի քիչ դարման կամ չոր խոտ թափում առաջը որ ուտի։ Ագահութիւնով մի երկու բերան հախռում է կերակուրից ու յետ կանգնում խռոված երեխի պէս. դարմանը խոնաւ կամ փշոտ է լինում, խոտը ժանգալներով, կոծոծներով լիքը, այնպէս որ ուտելիս տաշում է բերանը։ Մի երկու ժամից նրան ջուր են տալիս. նոյն ագահութիւնով խմում, լցնում է դատարկ փորը. այժմ ախորժակը աւելի ես բացւում է, բայց էլի նոյն կերակուրներն են առաջին, ուզի չուզի՝ պիտի ուտէ...

Այսպէս նա մի կերպ փորի հոգսը վերջացնում է թէ չէ, այժմ նրան անհանգիստ են անում մի կողմից իշաճանճերը, միւսը կողմից ականջներում հաւաքուած լուաները, փորին ու ոտներին կպած տիզերն ու ցեխի փշուրտանքը, փալանի հարած տեղերը, մի խօսքով նրա ամբողջ մարմինը քոր է գալիս. ի՞նչ անէ, լեզու չգիտէ, որ իր դրութիւնը մարդկանց հասկացնէ, ձեռներ չունի, որ ինքն իրան քորէ. շատ շատ՝ ատամներով կարողանում է միայն առջևի ոտերն ու գաւակը դիփել և գուդուլ պոչը տատանելով՝ ճանճերին փախցնել, բայց փորը. մէջքը. նա զռում է մի քանի անգամ, բայց չէ, տէրը դաշնը չի բերում. ճարահատեալ նա չոքում է թոմփ՝ ընկնում կողքի վրայ, ոտները օդի մէջ բարձրացնում, պարան-պարան գալիս ու թաւալ տալիս. վա՛յ նրան, եթէ տէրը այդպիսի դրութեան մէջ տեսաւ, դարձեալ անիծած դագանակը փշրում է գլխին... բայց շատ անգամ էլ պատահում է, որ մեր մոխ-

ըաթաւալը տեղից բարձրանալիս, ա՜յ քեզ բան, փալանը շուռ է գալիս, ընկնում փորի տակը, փորքաշը կտրում մէջքի սէջը. ամբողջ ժամերով նա անշարժ մնում է այսպէս և անիծում իր թաւալ տալու ժամը...

Բոլորում է իշուկի չարչարանքի երեք տարին, այժմ նրա հետ հանաք անել չի լինիլ. նա թողել է իր առաջուան խնդիկ-խնդիկ անելը, թռչկոտալը, ուրախ-ուրախ գըռգըռոցը, լաւ քէֆի ժամանակ շանը, կատուին ու չար երեխաներին մի-մի աքացի խփելը. այժմ ճիպոտից էլ չի վախենում, ինչքան ուզում ես՝ հասցրու, նրա համար ոչ մէկ է. կեր ու խումի մէջ էլ նազ ու սազ չկայ, ինչ որ տալիս են, ինչքան բեռնում են, ուր տանում են, նա անտրտունջ հպատակում է. մի խօսքով նա կատարեալ էշէ դարձել...

Եւ ահա մենք այդ էշին տեսնում ենք ինչպէս գլուխը քաշ անելով, չորս հինգ փութ մէջքին, շատ անգամ տէրն էլ վրան նստած, ոտները գետնին քսքսելով, գիւղը կամ քաղաքն է մտնում. նրան տեսնում ենք և մեր հրապարակներում, ուր անձրևի, ցեխի կամ ձիւնի մէջ, փայտի փշի, քարի, հողի, ածուխի կամ մրգեղէնի բեռան տակ, ռված, ծարաւ վեց-եօթը ժամ շարունակ մնում է ականջները կախ կանգնած և մեծ թէ փոքր արհամարհանքով նայում են նրան, թօշ-թօշ ասում ու անցնում...

Տարիներ անցնում են և մեր էշը պառաւում է ու առաջուայ ունեցած յարգանքն էլ կորցնում. նրան այժմ օրերով չեն բռնում, գարի չեն տալիս, առանց դրան էլ նա կարող է ապրել, մտածում է տէրը. բայց թէ փալանը և թէ ծանր բեռը նրանից չի հեռանում, ինչ փոյթ թէ ծերացել է։ Մի բան որ էշի կեանքում փոխուել է՝ այդ ծեծի եղանակն է. նրա կաշին ծնուած օրից սկսած դագանակի հարուածների տակ այնպէս թմրել, անզգայ է դարձել, որ էլ թակը նրան չի ներգործում. այժմ հնարագէտ տէրը բզած փայտ է բանեցնում, որ դըղդըղալով ծակում է խեղճի կաշին ու աչքերից ջրեր թափեցնում. վա՜յ նրան, որ մի քիչ դանդաղ գնայ ու հազար վա՜յ, երբ պա-

ռաւ էշը ցեխի մէջ մնայ կամ սառուցի վրայ գնալուց սահի ընկնի ու չկարողանայ տեղից շարժուել. էլ ոտ, քիթ, բերան, գլուխ, ողջ տեղ չի մնալ, ջարդու-փշուր կըլինի։ Նա ամենայն ուրախութիւնով իր շունչը կըփչէր ընկած տեղը, եթէ մարդիկ պոչից, ոտից, գլխից բռնած՝ ծեծելով չբարձրացնէին ու բզբզելով էլի առաջ չքշէին...

Այսպիսի դառն օրերի մէջ անց է կացնում մեզ մօտ էշը իր կեանքը և տասը տասնհինգ տարին դեռ չհասած, մի օր բեռան տակ ընկնում, ոտքերը մի քանի անգամ գետնին խփում ու յաւիտեանս աչքերը փակում։

Խեղճ անասունի սատկելուց յետոյ էլ հանգիստ չի թողնում տէրը. ագցանով հանում է սմբակներից մեխերն ու պայտը, կաշին մաշկում տրեխների համար, իսկ դիակը՝ մի թոկ կապելով, քաշ տալիս դէպի ձորը... այնտեղ միայն ազատւում է նա իր փալանից ու տիրոջ գազանակից...

Բ

Բայց բոլորովին ուրիշ կեանք է Կովկասի էշերի այն ազգակիցների կեանքը, որոնք բախտի բերմամբ ընկել են Եւրոպայի հողի վրայ։

Ես չեմ խօսիլ մարզուած էշերի մասին, որոնք յայտնի են կրկէսներում իրենց խաղերով, և ոչ էլ այն ուշիմ կաթ բաժանող էշերի մասին, այլ վեր կառնեմ Ֆրանսիայի գիւղացու բեռնակիր էշը, որ նոյն չորքոտանի երկայնականջ արարածն է, ինչ որ մեզանում, միայն այն տարբերութիւնով, որ տէրը կովկասցի չէ, այլ եւրոպացի։

Ես կըսկսեմ էլի իշուկից։

Իշուկին սիրում են ամենքը. նրան տեսնելիս թէ մարդ, թէ կին, թէ գիւղացի, թէ քաղաքացի, թէ հարուստ և թէ աղքատ փաղաքշում է, «օ՜, ինչ ազնիւ է, ինչպէս խելօք է», ասում են փոքրիկները, շփում նրա թաւ ճակատը, ճպռոտ աչքերը, քիթ ու պռունգը. ով մի քաղցր բան ունի, իշուկին է համեցէք անում. նա էլ խունճիկ-

ժուռնջիկ մոտենում է ամենքին, առնում համեղ պարգևները, հոտոտում, լիզում նրանց ձեռքն ու երեսն ու փռընգալով թռչկոտում է նրանց շուրջը։

Քանի մեծանում է իշուկը, տիրոջ խնամքն էլ շատանում է. նրան ամեն օր թիմարում է, տարին մի քանի անգամ լողացնում, անմաս չի թողնում և քաղցր ճակընդեղից, կաղամբի ու խամբարի (եգիպտացորենի) տերևներից, ուտացնում է և տանը մնացած հացի աւելցուկը, այնպէս որ իշուկի աչքը միշտ կուշտ է մնում. նրա գոմը ևս կարգին է, տաք, մաքուր, յատակը խոզանով ծածկած, ջուլ ու փալասը եղանակի համեմատ փոխում է. մի խօսքով՝ իշուկը գոհ է մնում իր վիճակից...

Գալիս է բեռ քաշելու ժամանակը, տէրը գիտէ, որ նա դեռ թոյլ է, ոսկորները չեն ամրապնդուել, նրա ուժի համեմատ մի թեթև սայլակ է կապում ետևից, մի փոքր բան դնում մէջը և ճանապարհ ընկնում ուզած տեղը. իշուկը թռչկոտում է, սայլակի չխչխկոցը նրան զուարճութիւն է պատճառում. տէրը գաւազանի փոխանակ նրան գուրգուրում, աշխոյժ է տալիս ամեն քայլափոխում, ճանապարհին պատահած խոտից կտրում, բերանն է կոխում, և նա տափ տափ անխոնջ միշտ արշավում է։

Հասնում է տուն իշուկը, նրան արձակում են սայլակից, իսկոյն շփում նրա աչքերը, ականջները, կերակուրը առատ թափում նրա առաջը, եթէ եղանակը ցուրտ է՝ ծածկում մէջքը, փորը, որ չմրսի, ժամանակին ջուր տալիս. փոքրիկները մոտենում են նրան, դարձեալ սկսւում է առաջուան փաղաքշանքը երկու կողմից։

Նա մեծ էշ է դառնում, ուժը կրկնապատկուել է. նրան լծում են աւելի մեծ սայլակում, այժմ աւելի մեծ բեռ է քաշում, բայց երբէք չես լսիլ նրա տնքոցը, տիրոջ սպառնալի ձայնը. նա միշտ նոյն աշխոյժ էշն է, ինչ որ առաջ, նրա մէջքը դեռ մտրակի հարուած չի տեսել ու ծեծի մասին գաղափար չունի։ Մօտեցիր նրան ուր որ էլ լինի, ազատ թէ բեռան տակ. նա գլուխը կըծռի դէպի քեզ կը-

հոտոտայ, ականջներն ու պոչը ուրախութիւնից կըշարժէ ու կըփորգայ։

Այդպիսի հարիւրաւոր էշեր ամեն օր կըպատահեն քեզ ճանապարհներում, շատ անգամ առանց տիրոջ, ահա-գին սայլը քաշելիս, և կամ չորս հինգ կնիկ նստած, սան-ձը բերանում գիւղը գնալիս։

Ծերացաւ էշը, պատիւն էլ շատացաւ. Նրա բեռը թեթեւանում է, աշխատութիւնը քչանում. Նա շատ ազատ ժամեր ունի դաշտում արածելու, իր ցանկացած խոտն ուտելու, իր ուզած ջուրը խմելու, ոչ ոք նրան չի արգե-լում, ոչ ոք նրան բէզգամաղ չի անում. առաջուան պէս ամենքը սիրում են նրան, ինքն էլ նրանց է սիրում. սէ-րը՝ սիրոյ փոխարէն...

Մեռնում է Եւրոպայի էշը ոչ թէ բեռան տակ, ոտքը ու կաշին մնացած, այլ հանգստութեան մէջ, խոր ծերու-թեան հասած. Նրա վրայ ցաւում էր տէրը, մանրիկները արտասւում են սև էշի վրայ, յարգանքով թաղում գիւ-ղից մօտիկ մի փոսի մէջ։

Սահում են տարիները, փոքրիկ գիւղացին մեծանա-լով՝ երբ անցնում է այնտեղից, յիշում է հօր սև էշը, նրա արած ծառայութիւնը. մի րոպէ կանգնում է տխրա-դէմ ու հառաչելով անցնում դէպի առաջ...

Ահա այսպէս են վարւում եւրոպացիք, որ յիմար ա-նասուններն էլ խելօք են, իսկ մեզ մօտ մեր խելօքներն էլ յիմարանում են, որովհետև մենք չգիտենք նրանց գործա-ծել, կրթել, խնամել։

Կ. Մ.-Տահնազարեան

Ի՞նչ ենք սովորում այս պատմուածքից։ Ի՞նչպէս պէտք է պահպանել անասուններին։ Ի՞նչ ընկերութիւններ կան, որ պաշտ-պան են կանգնում անասուններին։—Անասունն էլ ցաւ, ուրա-խութիւն, վիշտ զգո՞ւմ է թէ ոչ։ Տարբերութիւնը մարդու և ա-նասունի մէջ։ Ի՞նչ զգայարաններ անասունի մէջ աւելի են զար-գացած քան մարդու. հոտառութիւն, տեսողութիւն և այլն...

Շարադրութեան նիւթ. Էշը անասունն է մարդու ամենալաւ բարեկամը. յիշել կենդանիների վէճը։

## 76. ՅՈՎՀԱՆՆԷՍ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ

Սա ծնուել է 1864 թ. ապրիլի 26-ին Վաղարշապատում, սկզբնական ուսումն առել է տեղական ծխական ուսումնարանում, ապա Վահան վարդապետ Բաստամեանցի մօտ, յետոյ մինչև 1877 թ. Երևանի գիմնազիայում, ուր աւարտելուց յետոյ մտել է Մոսկվայի համալսարանի պատմա-լեզուաբանական բաժինը։ Չորս տարի՝ 1888 թ.-ից ուսուցչութիւն է արել Էջմիածնի Գէորգեան ճեմարանում, ապա մինչև 1895 թ. երեք տարի ուսուցչական պաշտօն է վարել Թիֆլիսի Ներսիսեան դպրոցում, այնուհետև կրկին ստանձնել ուսուցչութիւն Գէորգեան ճեմարանում։ Մի տարի տեսչի պաշտօնով եղել է Թիֆլ. Մարիամեան-Յովնանեան օր. դպրոցում։

Յովհաննիսեանն սկսել է գրել 1882 թ.-ից, բայց նրա բանաստեղծութիւնների լիակատար ժողովածուն լոյս տեսաւ միայն 1908 թ.։ Այդ գրքի մէջ հանդէս է դրուած մեր նորագոյն և լաւագոյն լիրիկը—մի տաղանդ առաջնակարգ արժանիքներով։

Օղակը Ռափայէլ Պատկանեանի և մեր նորագոյն բանաստեղծների մէջ մինչև օրս մեզ անյայտ էր, կամուրջը, որով հայ բանաստեղծական միտքը ազգային հայրենասիրականից պիտի անցնէր լիրիկ անհատական աշխարհը յանձին Աւետիք Իսահակեանի, բաց էր մնում մեզ համար։ Այժմ Յովհաննիսեանի մէջ կողք կողքի տեսնում ենք այդ երկու աշխարհները, հայրենասիրականն ու լիրիկ զգայականը։ Նա չէր կարող զատուել այն խոշոր մոտիվների ազդեցութիւններից, որոնք երևան էին գալիս նրա անմիջական նախորդների՝ Գամառ Քաթիպայի ու Շահազիզի մէջ. այդ պատճառով նրա երգերի մի բաւական ստուար մասը ազգային հասարակական բնոյթ ունի։

Նրա տաղանդն իրա ամբողջ փայլով ու բոցով երևան է գալիս այն երգերի մէջ, ուր գեղում են բանաստեղծի զգացումներն առ կոյսը և առ սիրելին։ Նա կրում է ինք-

նուրբոյն ներշնչման անկեղծ ազդու շեշտ։ Նրա բանաստեղծութիւնները կարդալով տեսնում էք վառ երեւակայութիւն, գունագեղ պատկերներ, ինքնատիպ և բարձր գեղարուեստական կնիքով դրոշմուած։

Ժողովրդական երգերի ձևն էլ, որ վեր առաւ Աւ. Իսահակեանը Յով. Կոստանեանից և աջողութեամբ տարածեց ստեղծելով մի խումբ հետևողներ, իրա նախորդն ունի յանձին Յովհաննիսեանի, որի արտայայտութեան ձևը թէ աւելի բնական է և թէ առողջ ու կայտառ։

Մարդ հրապոյր է զգում կարդալով Յովհաննիսեանի երգերը առոյգ և առողջ սիրոյ, որ տեղ տեղ համնում է Քուչակի բարձունքներին և Քուչակից յետոյ երկրորդ անգամ համոզում է մարդուն, թէ հայ լեզուով էլ կարելի է բանաստեղծել առանց արտասուելու, առանց սրգալու։

Յովհ. Յովհաննիսեանը ունի թարգմանութիւններ էլ. որոնք սակայն թոյլ են և անկարող համեմատուելու Աղ. Ծատուրեանի ընտիր թարգմանութիւնների հետ։

---

## 77. ԲԱՆԱՍՏԵՂԾԻ ՍԷՐԸ ԵՒ ԻՂՁԸ

Կուզէի լինել կարկաչուն վտակ,
Վճիտ ալիքը դրախտի բուրմունքով.
Եւ առաւօտեան, ինչպէս ցօղ յստակ,
Երեսդ ողողել գոհար շիթերով։

Կուզէի լինել սօսի հովասուն,
Համարձակ փռուած կանաչ սաղարթով,
Եւ միջօրէին այդ դէմքիդ սիրուն
Հովանի լինել հեզիկ շրշիւնով։

Կուզէի լինել ծաղկոցում բացուած
Քաղցրաբոյր մի վարդ, երկնից արժանի,

*Եւ սիրոյ ժամին, խանդից սրբած,*
*Զարդարանք լինել կուրծքիդ գեղանի։*

*Եւ շող դառնալով գարնան արևի՝*
*Կուզէի պայծառ աչերումդ վառուել,*
*Կամ ինչպէս քնքոյշ ոսկեվառ գօտի*
*Զքնաղ իրանիդ փաթաթուել, փարել։*

*Լուսափայլ աստղիկ կուզէի դառնալ,*
*Քաղցր մանկան պէս ծիծաղն երեսին,*
*Ինչպէս աղամանդ շողշողել, ցոլալ,*
*Ո՜վ իմ թագուհի, քո բաց ճակատին։*

*Կուզէի լինել լուսին ամօթխած,*
*Արծաթի փայլով մազերըդ շոյել,*
*Այտերըդ գգուել, սիրուց բորբոքուած,*
*Դողդոջ շրթունքիդ համբոյրներ դրոշմել։*

*Կուզէի լինել սիրահար սոխակ*
*Եւ ձեռիդ գերի, վանդակում փակուած,*
*Ականջիդ հնչել հրաշալի նուագ,*
*Մեզմ օրօր ասել հոգուդ գմայլուած։*

*Եւ կախարդական տաճարում կանգնած*
*Կուզէի տեսնել ես քեզ Անահիտ,*
*Եւ երկրպագել, առաջիդ չոքած,*
*Սուրբ գեղեցկութեան անմահ տիպարիդ։*

*Համեմատիր 1) Բուչակի «Ես ձագ ծիծեռնակ պիտէի» 2) Պէշիկթաշլեանի գործերը «Ո՞ւր էր թէ զեփիւռիկ» 3) Աւետիս Իսահակեանի՝ «Կուզե՜մ լինիմ վարդի ցօղեր»։*

---

## 78. ԺԱՅՌ

Որպէս յաղթանդամ մի ծերուկ հսկայ,
Կախուած է ժայռը ջրերի վրայ.
Ալիքը կայտառ գնում են, գալիս
Եւ ժայռին սիրոյ համբոյր են տալիս։

Խաղում են անհոգ ալիքը գետի,
Ցուցնում են գրկած պատկերն արևի,
Եւ, որպէս մանուկ ժպիտն երեսին,
Մեղմիկ շշունչով խօսում են ժայռին.

«Լսիր, ծերունի, ինչու ճակատիդ
Սև կնճիռները չեն տալիս դէմքիդ
Մի օր խնդութեան շողով ցոլանալ—
Ողջը փոխուում է, դու նոյնն ես դարձել։

«Ազատ լեռների ազատ զաւակներ,
Մենք քեզ բերել ենք անթիւ գոհարներ.
Երկնքի դստեր—վարդի լեռնասուն
Կը ցօղենք կուրծքիդ անուշհոտութիւն։

«Մենք հրանաւէտ քնքուշ նուագով
Կը կոչենք խորքից ձկներն երամով
Եւ ոսկէզօծուած գարնան արևից
Քեզ մեր զուարթ պարին կանենք խնդակից։

«Եւ քո ականջին միշտ սիրոյ երգեր
Մենք արշալուսից կասենք մինչ աստղեր.
Եւ քեզ կը փարենք և քո ծեր կուրծքին
Մենք հանգչել կըտանք մեր քաղցր կրքին...»

Ալիքը կայտառ գնում են, գալիս,
Սև ժայռը նախկին իւր վիշտն է լալիս...
Խաղում են ալիք. ուրախ կարկաչում—
Նա կրկին անշարժ, նա կրկին տրտում...

Համեմատել Յ. Թումանեանի «Համերգ»-ի հետ։

## 79. ԲԱՆԱՍՏԵՂԾԻ ԹՈՒՆԸ

Ա՛խ, տուէք ինձ քաղցըր մի բուն,
Կեանքից հեռու սըլանամ—
Այն աշխարհը, ուր խնդութիւն,
Ուր աչքն է միշտ անթառամ

Քնքուշ վարդերն ինձ բարձ լինին,
Վառ կանաչից իմ վերմակ,
Նոցա բոյրը ղուարթագին
Ծծեմ անվերջ ես անյագ։

Եւ խայտալով իմ առաջին
Վտակն անուշ խոխոջէ,
Մի թարմութիւն եդեմային
Չորս բոլորքս տարածէ։

Եւ ինձ ժպտի արշալուսին
Գարնան մատաղ արեգակ,
Եւ գիշերով իմ ճակատին
Խաղայ գողտրիկ վառ լուսնակ։

Եւ աչագեղ կոյսն ականջիս
Իւր մեղեդին մեղմ հնչէ,
Եւ հերարձակ՝ սիրով վըզիս
Փարէ քնքուշ, փաղաքշէ...

Եւ յաւիտեան վայելչութիւն
Գրկէ հոգիս, չ՚յագենամ...
Ա՛խ, տուէք ինձ քաղցըր մի բուն.
Հեռու, հեռու սըլանամ։

---

## 80. ԲԱՆԱՍՏԵՂԾԻ ՄԱՀԸ

Աննման ես, ինչպէս հրեշտակ երկնային,
Ձեմ կշտանում նայելով քո երեսին.
Վառ աչերըդ, ինչպէս արև գարնային,
Ա՜խ, սիրակա՛ն, բորբոքում են իմ հոգին։

Իրաւունք տուր՝ ծծեմ մեղրը շրթունքիդ,
Քաղեմ կարմիր այդ վարդերը թշերիդ.
Ով որ առնի հոտը շամամ ծծերիդ,
Էլ կարօ՞ղ է միթէ գին տալ իւր կեանքին։

Թէ Աստուած ինձ պիտի մահ տայ, թող մօտ գամ,
Վզովդ ընկնեմ, քեզ համբուրեմ մի անգամ.
Թող ապրշում մազերովդ ինձ կախ տամ—
Բընաւ մի կեանք էլ չի հասնի այդ մահին։

---

## 81. ԵՐԳԶԻՆ

«Սովորեցէք բարութիւն անել, որոնեցէք իրաւունք, ուղղութիւն ցուցէք զրկուածին, որբի դատը տեսէք, որբևայրու դատը պաշտպանեցէք»։

Եսայեա մարգարէ, Ա. 17.

Մի թողնիր, երգիչ, քնարըդ կախած,
Որ նորան ժանգով տարիքը պատեն,
Ոսկի լարերին դու ոգևորուած
Զարկիր մատներով, թող դարձեալ հնչեն։

Թող հնչեն նորից հին երգը անմահ
Եւ վառեն սիրով սրտերը մարդկան,
Թող նոքա նորից օրհներգեն անմահ
Գործերը բարւոյ և կարեկցութեան։

Ինչպէս չէ կարող ձմեռն արգելել
Գալուստը շքեղ ծաղկաբոյր գարնան,
Նոյնպէս ճշմարիտ խօսքը խափանել
Չէ կարող ձայնը անմիտ չարութեան։

## 82. ⁂

Ամենայն անգամ, երբ թեթեւամիտ
Դիպչում է մուսաս սրտիս լարերին,
Ինքուշ մատներով խըլում է ժըպիտ
Եւ դընում թախիծն իմ անհոգ ճակտին,—
Անցած պատկերներ խուըրն երամով
Լցուում են սիրտըս, զարթնում է հոգիս,
Եւ միտքըս հեռու թռչում է սիրով
Նազելի աշխարհն մանուկ օրերիս։

Եւ կամենում եմ ուէր երգել միայն
Եւ քաղցրութիւնը մաքուր հասակի.
Անուշ ժամերը անամպ խնդութեան,
Կենդանի հրճուանք կուսական սրտի։
Բայց միշտ ակամայ լարերը բեկբեկ
Տխուր են հնչում օրհներգը սիրոյ,
Էլ չէ երեւում ինձ սէրը երբէք
Իբրեւ վառ գեղմունք երջանիկ հոգւոյ։

Եւ միշտ լսում է մի ձայն լարերից,
Որպէս հառաչանք պապառող սրտի,
Էլ չէ հեռանում նա իմ ականջից,
Այդ ձայնն անմեղին մի խորին վշտի.
«Այնտեղ, ուր արցունք, շղթայ և աւեր,
Ուր լսւում է լոկ հառաչք լալագին,
Քո քընարիցը թող ուրախ ձայներ,
Ո՛վ թշուառ երգիչ, քընաւ չըլսուին»...

---

## 83. ⁂

Դու ծաղկում ես, ինչպէս վարդը հարաւի,
Քեզ փարում է առաւօտեան շողն ոսկի.
Եւ ցօղում է ծաղկանց բոյրը քո կուրծքին
Զեփիւռն անուշ՝ գուրգուրելով հեշտագին.

Եւ աստղերը շողշողալով ճակատիդ
Քեզ ժպտում են գիշերները խնդամիտ.
Թեթևաքայլ եղնիկի պէս նազ տալով,
Հալեցնում ես մատաղ սրտեր աչերով։
Բայց չգիտես դու քո ոյժը, սիրելի,
Միամիտ ես, անփոյթ, իբրև աղաւնի.
Այրող, մաշող սիրոյ բուռըն փոթորիկ
Դեռ չէ յուզել մանուկ կուրծքըդ գեղեցիկ...

Եւ իմ միակ ցանկութիւնն է, որ անբիծ
Սիրտըդ զգար սիրոյ հրճուանք ու թախիծ,
Եւ գուրգուրանքն հասկանայիր զեփիւռի,
Եւ սիրտըդ թունդ զարկել տար բոյրը վարդի,
Եւ ըզգայիր, որ բացի խաղն, անհոգ կեանք,
Կայ ակամայ արցունք, և վիշտ, և տանջանք։

84. ⁂

Դու երևեցար, ինչպէս վառ գարնան
Լուսաշող այգի նշոյլ ոսկէթոյր.
Դու երևեցար—ժպիտդ աննման
Քաղցր էր գերթ սիրոյ առաջին համբոյր։

Ծաղկոցում բացուող քեզ վարդ կարծեցի,
Դըրախտի վայելք տեսայ քո աչքում...
Ո՜հ, այդ աչերից ես զոհ բերեցի
Եւ անհոգ վիճակ և սրտիս խնդում։

Եւ եթէ դու էլ խաբում ես, ով կոյս,
Սէր չէ խոստանում հայեացքըդ չքնաղ,
Թէ այս անգամ էլ ունայն է իմ յոյս,—
Դարձեալ պիտ օրհնեմ հասակը մատաղ.

Պիտ օրհնեմ ես այն, թէպէտ կարճատև,
Բայց վեհ, հոգեզմայլ հրճուանքի համար,
Որ հոգուս բերիր դու, ինչպէս արև,
Ինչպէս խնկաբոյր մայիս կենարար։

85. ⁂

Արագն եկաւ լափին տալով,
Ժէռ քարերին, ափին տալով.
Ո՞րտեղ թաղեմ ես իմ դարդը,
Զոր գլուխս տափին տալով։

Ա՜յ իմ Արագ. ջուրըդ վարար,
Սիրուն եարիս եարաք տեսա՞ր.
Ես չըհասայ իմ մուրազին.—
Արա՛գ, եարաք կարօտս տա՛ր։

Ամպերն ընկան Մասիս սարին,
Կարօտ մնացի ես իմ եարին.
Աստօծ սիրես, էրուած սրտիս
Ջուղաբ բերես էկող տարին։

Գիշերն անքուն գիր կըգրեմ,
Արտասունքս դետ կըշինեմ.
Արա՛գ, ծէգը ջրիդ չառած՝
Իմ սև դարդը քեզ կը բերեմ։

Կասես շողը քարին ընկաւ,
Կըրակըն իմ սրտին ընկաւ.
Կամար ունքից, թուխ աչքիցը
Ցաւն իմ ջիւան ջանին ընկաւ։

Արագն էկաւ լափին տալով,
Ժէռ քարերին, ափին տալով,
Ո՞րտեղ թաղեմ ես իմ դարդը,
Զոր գլուխս տափին տալով...

---

## 86. ԻՄ ԱԶԳԻՆ

Տեսնում եմ ահա—ազգեր են մեռնում,
Ազգեր են ծնւում, և արմաւենին

Սուրբ ազատութեան՝ դողդոջուն ձեռքում՝
Բաղդն է մօտենում մատաղ ազգերին։
Եւ նախնեաց փառքը նոր արշալուսով
Ցոլում է նոցա պայծառ ճակատին,
Եւ ահեղ կռուում արիւն քրտինքով
Վաստակած անմահ աճում է դափնին։

Եւ միայն դու ես, իմ խեղճ հայրենիք,
Որ շղթայակապ հեծում ես դարձեալ,
Եւ պատառ պատառ կուրծքըդ գեղեցիկ—
Ընկած ես որպէս կենդանի մեռեալ...
Եւ անցած փառքիդ աւերակներից
Փրկութեան ոստը դեռ չէ կանաչում,
Կրծքիցըդ հոսած արեան շիթերից
Քո տանջանքների փունջըն է ցօղուում։

Բայց, իմ հայրենիք, դու պիտի չմեռնիս.
Ես հաւատում եմ յարութեան օրիդ.
Մօտ է ժամանակ, զարթիր, սիրելիս,
Փրկութեան աստղը վառում է ճակտիդ։
Ոտքի ել, հոգիս, շղթադ թօթափիր,
Աչքըդ բաց արա այդ մահուան քընից.
Թէև մահամերձ, դու մի ձայն հանիր—
Որդիքդ օգնութեան կըգան չորս կողմից։

---

## 87. Գ Ա Ր Ո Ւ Ն

Մի նոր, հրաշալի կեանքով շունչ առած
Ժպտում է բնութիւն, զերդ մանուկ չքնաղ։
Եւ նոր զօրութեամբ երկիրն է զարթած,
Եւ երկինքն յստակ ու գեղածիծաղ։

Այս խորհրդաւոր պահուն ես մենակ
Ծնկաչոք ահա՛ քեզ եմ աղօթում,
Խաչեցեա՛լ Փրկիչ, Քո հովանու տակ
Ցաւատանջ սրտիս խղձերն եմ բերում։

Թո՛ղ այս բերկրալից գարնան ջերմ արև
Իմ հայրենի տան վերայ էլ փայլի.
Մի օր, գէթ մի օր թող քո առջև
Այնտեղ հէք ծիծռան օրհներգը լսուի,

Թէ անցաւ և մեր ձմեռ ցրտաշունչ,
Թէ անպարտ արիւնն հասցրեց վարդեր,
Եւ տառապելոց որբերն ու տրտունջ
Դարձան գոհութեան խաղաղ մաղթանքներ։

---

88. ***

Ճեմում էի բուրաստանում,
Առաւօտ էր մայիսեան,—
Խնդում էի, զուարճանում,
Ուրախակից բնութեան։

Անհոգ խաղով ես մօտեցայ
Քնքուշ բացուած ալ վարդին.
Անուշ հոտից չկշտացայ,
Զմայլեցայ ալ վարդին։

Մէկ էլ տեսայ՝ մատաղ կուրծքին
Զազիր որդն էր բուն դրել.—
Վա՜յ նազելի իմ ալ վարդին,
Կեանքի թելն էր կտրուել։

---

89. Մ Ա Յ Ր Ս

Հոգեմաշ ցաւով ամենայն գիշեր
Ես քուն եմ մտնում արտասուքն աչքիս,
Եւ խուռն երամով տանջող պատկերներ
Շուտ պաշարում են տառապեալ հոգիս...
Մենակ ապրեցայ կարօտ գգուանքի,
Փորձով ես ուսայ խորհուրդը կեանքի,
Օրըս սևացաւ այրող կրքերից,
Չըգտայ երբէք մի սիրտ կարեկից։

Եւ քուն եմ մտնում ամենայն գիշեր
Արտասուքն աչքիս, հոգեմաշ ցաւով—
Հանգիստ չեն տալիս սև սև պատկերներ,
Որ պաշարում են ինձ խուռն երամով...
Եւ ահա դու ես, որ ինձ այդ պահուն
Երևում ես, մա՛յր, պսակով զարդարուն.
Դու գրկում ես ինձ սիրով կաթոգին,
Գոչում ես՝ «որդի՛» ձայնով անմեղին։

Եւ տեսնում եմ ես քո փշեայ պսակ,
Խոցերով ծածկուած քո սիրուն ճակատ,
Եւ մի թափանցիկ նուրբ շղարշի տակ՝
Կուրծքիցըդ հոսող արիւնը կաթ-կաթ.
Աչքդ աղերսալիր տեսնում եմ վերստ,
Կանչում եմ քեզ «մա՛յր» ես ձայնով նուաղ,
Եւ կրկին ելնում անքուն, վշտահար—
Ա՜խ, մա՛յր, ինչ անէ որդիդ քեզ համար...

## 90. ՔՈՒՆ ԵՂԻՐ ՀՈԳԵԱԿ

Քուն եղիր, հոգեակ, թող քաղցր նիրհով
Աչերըդ փակուին ջերմ կուրծքիս վերայ.
Սիրոյ անուշիկ մեղեդիներով
Թող մինչև նոր այդ ականջդ հեշտանայ։

Քնքուշ վարդերով ես կը զարդարեմ
Քո գլուխն ու կուրծքդ, որրան փափկութեան.
Քնիր, թագուհիս, մինչև լուսադէմ,
Մինչև արտուտներն երկինք սլանան։

Եւ երբ առաջին նշոյլն ոսկէփայլ
Արևը ձըգէ կուսական դէմքիդ,
Թող քեզ զարթեցնէ իմ սիրոյ դայլայլ,
Բոցավառ համբոյրս այդ վարդ շրթունքիդ։

## 91. ՎԱՐԴԱՆԱՆՑ ՕՐԸ

Այս դատարկ կեանքի անմիտ խնջոյքում.
Ուր աննպատակ անցնում են օրեր,
Ուր ամեն վառ կիրք, ամեն սուրբ զգացում
Խեղդում են չնչին առօրեայ հոգսեր,
Ուր բաքոսական գեղխութիւններով
Մաշւում է, թօշնում ծաղիկն հասակի,
Ուր ունայն փառքի սին երազներով
Զոհւում է բերկրանքն ազատ վիճակի.

Երբ ոսկի հորթին տաճարներ կանգնած
Մենք վաճառում ենք և խիղճ և ամօթ,
Եւ նորա համար Աստուած մոռացած՝
Էլ արդարութեան չենք քաշում կարօտ,
Երբ մեր անզգայ կուրծքին կախ տալով
Մի ցընորական պատուոյ բոժոժներ՝
Սիրել ենք տալիս մեզ նենգ գգուանքով
Անարգ ըստրուկի թունոտ շղթաներ.—

Հոգիս դառնացած, արցունքն աչերիս,
Ես սլանում եմ մտքով այլ աշխարհ—
Եւ այլ պատկերներ ահա առաջիս,
Այլ երգի ձայներ ահա ինձ համար.
Ահա բռնութեան կապանք խորտակած՝
Սուրբ ազատութեան մատաղ դիւցուհին
Ժպտում է հայլին մարտից թուլացած,
Ձեռին նոր կեանքի ծաղկող ձիթենին։

Գարնան գալարիքն արեամբ հեղեղած,
Արի կուրծքերից վարդեր են բուսնում.
Փառաւոր մահուան համբոյրն ընդունած
Շրթունքն՝ հայրենի երկիրն են օրհնում։
Դիւցազանց ողին մոռցուած դամբանից
Յարութիւն առած մեզ շունչ է տալիս,

Եւ նոր Աւարայր մեր խորունկ քնից
Զարթած զինւում ենք կռուել ու մեռնել...

Փափկասուն տիկնայք. նազելի կուսան
Շքեղ մազերից վիրակապ հիւսած,
Հեզ ճակատներին վեհ սիրոյ նշան,
Դաշտ են շտապում. պաճուճանք մոռացած.
Եւ մենք մեռնում ենք մեր մահն օրհնելով,
Որ մեծ, սուրբ գործի եղանք նահատակ,
Սուրբ ազատութեան այգը տեսնելով
Եւ անմահութեան անթառամ պսակ.

Եւ ահա զեփիւռն անուշ բուրմունքով
Իմ տանջուած հոգուն հրճուանք է բերում.
Ահա երկնային քաղցր բերկրանքով
Ես դրախտի արժան նոր երգ եմ լսում...
Բայց աւա՜ղ ցնորքիս. դեռ մօտ չէ գարուն,
Ոչ ժանգն է ջնջուել մեր շղթաներից,
Ոչ մեր կուրծքըն է վարդով զարդարուն,
Ոչ այգն է ջոկւում խաւար գիշերից...

---

92. ***

Ալագեազ բարձր սարին
Ձին ա կիտուել կատարին.
Սարի ճամբէք, բաց էլէք.
Էթամ, հասնեմ իմ եարին։

Ա՜խ, իմ ճամբէն քարոտ ա,
Սիրտս էրուած, եարոտ ա,
Ղարիբի օրն ըլնի սև,
Աղիզ եարի կարօտ ա։

Եարիս տեսայ, լալիս էր,
Լալիս, գլխին տալիս էր.
Ճամբայ տուէք, ա՛յ սարեր,
Ձեռով արի՝ գալիս էր։

Էն ի՞նչ դուշ ա էն քարին...
Սիրտս կաթում ա արին,
Ա՛յ իմ թառլան, թև տուր ինձ,
Թռնեմ, հասնեմ իմ եարին։

---

### 93. ***

Ա՛յ վարդ—աղջիկ, մօտ արի,
Քեզ եմ կանչում, մօտ արի,
Նազլու աղջիկ, չէկ աղջիկ,
Քեզ եմ կանչում, մօտ արի։

Վարդերի հետ խաղում ես,
Երեսիս ծիծաղում ես,
Էրուած սիրտըս քաղում ես—
Քեզ եմ կանչում, մօտ արի։

Աչքըդ ծով, ունքըդ կամար,
Աղջի՛, սիրտըս ո՞ւր տարար.
Բիւլբիւլ դառայ քեզ համար—
Քեզ եմ կանչում, մօտ արի։

---

### 94. ԴԱՐՈՒՆ

Քեզ ըսպասող չը մնաց,
Ո՞ւր ես գալի, ա՜յ դարուն,
Գովքըդ ասող չը մնաց,
Զո՞ւր ես գալի, ա՜յ դարուն։

Սև-մութ պատեց աշխարհին,
Սար ու ձոր դառան արիւն,
Մեզ վա՜յ բերեց էս տարին,—
Ո՞ւր ես գալի, ա՜յ դարուն...

Բլբուլն եկաւ՝ վարդ չունի,
Ծաղկոցը կայ՝ զարդ չունի.
Էլ ո՞վ ա որ դարդ չունի—
Ո՞ւր ես գալի, ա՜յ գարուն։
Յ. Յովհաննիսեան

---

## 95. ՀԱՏԻԿ

Լոյսը բացւում է, շուտ արտը գնամ,
Պատռեմ սուր խոփով ես կուրծքը հողի,
Եւ, սիրո՜ւն հատիկ, քեզ նրան պահ տամ
Մինչև օրերը ամրան արևի։

Թաղեմ քեզ, հա՜տիկ, և դարդս քեզ հետ,
Թէ Աստուած ուզեց, դու կանաչեցիր,
Թո՛ղ դարդս մեռնի գետնի տակ անհետ,
Դու ինձ մխիթար, կրկին տուն դարձիր։

Եւ ջերմ աղօթքով Տիրամօր առջև
Ես մոմ կը վառեմ, ես խունկ կը ծխեմ,
Որ քեզ պարգևէ մի առատ անձրև,
Որ քեզ միշտ սիրով նայէ խնդաղէմ։

Բայց թէ այդ շնորհին մեղքերիս համար
Արժանի չը լինեմ, ծով կը դարձնեմ
Ես տաք քրտինքը ճակտիս արևառ,
Որ քեզ, իմ հատիկ, ծարաւ չը թողնեմ։

Ծլի՛ր, կանաչի՛ր, ոսկէ սաւանով
Ծածկի՛ր իմ արտը ողջ ալէծածան,
Նոր այն ժամանակ անուշ շրշիւնով
Տո՛ւր ջարդուած սրտիս մի քուն հանգստեան։
Յ. Յովհաննիսեան

---

## 96. ԵՐԳՉԻ ԱՆԷԾՔԸ

Դարեր առաջ կար բարձրաբերձ պարիսպներով մի դղեակ,—
Հոյակապ էր, փառքն հասել էր մինչև ովկիան կապուտակ.
Շուրջը փռուած ծաղկեպսակ անուշաբոյր պարտէզներ,
Թարմ, զովաշունչ շատրուաններ ցայտում էին վառ շիթեր։
Եւ բազմայաղթ այնտեղ նստած զոռոզ արքան հողաշատ
Բազմած էր իր գահի վրայ մռայլ դէմքով ու գունատ.
Ամէն խորհուրդն արհաւիրք էր, կատաղութիւն աչքերում,
Նրա ամէն խօսքը կորուստ, արիւն էր նա միշտ գրում,
Այս ամրոցը երկու ազնիւ երգիչ գնացին մի անգամ՝
Մէկն ալեզարդ, միւսը մանուկ ոսկեզանգուր ու փարթամ.
Տաւիղն ուսին, մի գեղեցիկ նժոյգ հեծած ծերունին,
Նրա կողքին ընթանում էր ծաղկահասակ պատանին։
Ծերուկն ասաց իր ընկերին. «Պատրաստ եղիր, իմ որդեակ,
Մեր սրտառուչ տաղերն յիշիր, երգիր ազատ, համարձակ,
Երգիր և՛ վիշտ, և՛ խնդութիւն մատաղ ձայնով դու հզօր,
Դոռ արքայի քարէ սիրտը պիտի շարժենք մենք այսօր»։
Արդէն շքեղ սիւնազարդ նրանք սրահումն են կանգնած,
Գահի վրայ թագաւորը և թագուհին են բազմած։
Նա սրգապանձ՝ ինչպէս փայլը արիւնավառ հիւսիսի,
Իսկ թագուհին քնքուշ՝ նման արուսեակին յուսալի։
Զարկեց ծերուկն ոգևորուած նուրբ լարերին մատներով,
Ճոխ արձագանք տուին նրանք լիահնչիւն ձայներով
Եւ գեղեցիկ տաղ երկնարժան չքնաղատես պատանին,
Ինչպէս համերգ ոգիների, և խլաձայն ծերունին։
Նրան երգն էր գարուն և սէր, երանաւէտ ոսկեդար,
Ազատութիւն, խօսք ճշմարիտ, արիութեան գործ արդար,
Եւ հեշտութեան ամէն վայելք, որ յուզում է սիրտ մարդկան,
Եւ այն ամէնն որ կարող է մարդուն տալ տիպ վեհութեան։
Պալատական ապերտներ ծաղրի խօսքեր մոռացան
Եւ անվեհեր զինուորները հզօր երգիցն յաղթուեցան։
Իսկ թագուհին, սիրտը շարժուած, աչքին արցունք բերկրալից,
Ահա հանեց, ձգեց երգչին չքնաղ մի վարդ իր կուրծքից։
«Դայթակղեցիք դուք իմ ազգը,—գոռաց արքան մոլեգին,
Զգեց սուսերն, օդում ցոլաց, մատաղ կուրծքը պատռեց,
Ոսկեհնչիւն երգերի տակ կուրծքիցն արիւն դուրս ցայտեց։
Ասես մրրիկն խոկոյն ցրուեց այն ունկնդիր ամբոխին։
Իր վարպետի գրկումն հոգին փչեց անբաղդ պատանին,
Ծածկեց մարմինն նա թիկնոցով, նստեցրեց երիվար,

Ամուր կապեց և ամրոցից նա հեռացաւ վշտահար։
Եւ դուրս եկաւ, կանգնեց բարձր դարբասի դէմ ծերունին
Եւ ձեռքն առաւ տաւիղն, ամէն տաւիղներից մեծագին.
Զարկեց նրան կճեայ սեանը, փշուր-փշուր խորտակեց,
Դէպի ամրոց ու պարտէզներն սոսկալի ձայն արձակեց.
«Վա՜յ քեզ, խրոխտ դու ապարանք, թող ոչ մի ձայն քաղցրութեան
Լարի հնչիւն, երգ չլսուի քո յարկի տակ յաւիտեան,
Այլ ստրուկների երկչոտ քայլեր և հառաչանք, հեծութիւն,
Մինչ չար ոգին վրէժխնդրութեան քեզ դարձընէ սև աճիւն։
«Վա՜յ ձեզ և դուք անուշաբոյր, գարնանագեղ պարտէզներ,
Տեսէք անհա մանուկ երգչի դէմքին վառուած տանջանքներ.
Թող սրբա տեղ դուք թառամիք, աղբիւրներդ ցամաքեն,
Գալ օրերին թո՛ղ քար կտրած և ամայի ձեզ տեսնեն։
«Վա՜յ քեզ, նզո՛վեալ երգիչների, վա՜յ քեզ, անա՛րգ մարդասպան
Արիւնապատ փառքի համար մարտերդ լինի թո՛ղ ունայն.
Թո՛ղ մոռացուի քո անունը մշտագիշեր խաւարում.
Ինչպէս մահուան վերջին հառաչք, սին ձայն ցնդի թող օդում։
Ծերուկն ասաց, և երկինքը լսեց նրա պաղատանք.
Պարիսպները փոշի դարձած, կործանուած է ապարանք։
Բարձր մի սիւն դեռ վկայ է հին օրերի փառաւոր,
Այն էլ շուտով պիտի լինի մի փլատակ սըգաւոր։
Չը կայ բուրմունքն այգիների, շուրջը միայն անապատ,
Չը կայ վտակ, աղարթախիտ չըկայ մի ծառ ստուերաշատ
Եւ չի յիշում մի տարագիր կամ երգ անունն արքայի.—
Այսպէս անհ կատարուեցաւ անէծքն անհեղ ծեր երգչի։

ՈՒԼԱՆԴ. Յ. Յովհաննիսեան

## 97. ԱՆԳՐԱԳԷՏ

Երբէք մէկին չեմ նախանձում ես աշխարհի երեսին.
Միայն, գրագէտ դուք պարոններ, նախանձում եմ ձեր բաղդին.
Ա՜խ, գթացէք գեղջուկ որբիս, մի լաւութիւն միայն արէք —
Տուէք մի թերթ ինձ ճերմակ թուղթ, մի փետուրէ գրիչ տուէք.
Եւ ինձ գրել սովորցրէք, սովորցրէք լաւ, շուտով,
Որ գրիչըս կայծակից էլ արա՛գ թռչէ գըրելով,
Որ պատմելով թղթի վրայ ես ձեզ ցոյց տամ ամէն բան—
Մեր աշխատանքն, մեր չարչարանքն ու մեր խաչը վկայութեան...
Կը յայտնէի՝ ինչ ցնորքներ ինչ մտքեր կան իմ գլխում,
Մի ողջ աշխարհ ցոյց կը տայի ես աննման պատկերում...
Բայց այժմ անհետ չքանում են բոլորը իմ քաղցր երազներ,
Ես անգրագէտ, ես անուս եմ... Սովորցրէք, պա՛րոններ։

Կը գրէի, ինչպէս ամառն արշալոյսն է փայլփայլում,
Եւ քարերին զարնուելով կայտառ ջուրն է կարկաչում.
Ինչպէս արտում ցորենի հետ զրոյց է անում մեղմ քամին
Եւ աղօթքի հրաւիրում փոքրիկ զանգը մեր ժամին.
Ես աղօթել եմ կամենում, բայց չըգիտեմ աղօթքներ—
Ես անգրագէտ, ես անուս եմ... սովորցրէք, պարոններ։

Այնիւ գործ է, թէ մարդ գրել իր խօսքերը կարենայ.
Բոլորն ինչ որ մտածում է, բոլորն ինչ որ գլուխը գայ,
Գրչով պատմէ այն ամենը, ինչ գիզուել է իր սրտում,
Ճշմարտութիւն միշտ քարոզէ, բարի գործի մեծութիւն.
Ես շատ անգամ ծաղր եմ լսում, բայց իմ ուսեալ թշնամուն՝
Սիրտս այրւում է, պատասխանի չունիմ ոչինչ զօրութիւն.—
Եւ զուր տեղը ես տանջւում եմ և յուզւում եմ և դողում,
Եւ միմիայն թղթի վրայ անմիտ կերպով խաղխզում։
Ինձ ծաղրում են և ամօթու կարմըրում են իմ այտեր...
Ես անգրագէտ, ես անուս եմ... սովորցրէք պարոններ,

Շատ լաւ բան է գիր իմանալ։ Գըրագէտ է վաշխառուն,
Դըրագէտ են դատարանի ծառայողներն անկշտում,
Եռանդով էլ նրանք գրում են, նրանցն է դրախտն աշխարհի,
Իսկ այդ գրերն ինչ փոյթ, որ խեղճ մարդու հոգին պիտ հանի։
Շուտով, շուտով, գըրիչ տուէք, սովորցրէք գործածել,
Կամիմ գրել ազգի համար, նորա համար աշխատել.
Եւ ես նրան կր պաշտպանեմ չարագործից, յիմարից,—
Կ'արտագրեմ Աւետարանն ես բոլորը ըսկզբից...
Ա՜յ, դու սագ իմ, ճերմակթեւիկ, քեզ տուել եմ կերակուր,
Քեզ սիրել եմ—փոխարէնը թեւիցդ ինձ մի գրիչ տուր.
Սիրուն դու սագ, տո՛ւր խնդրում եմ ինձ թռչելու զոյգ թեւեր,
Ուր բոլորը գըրագէտ են.—սովորցրէք, պարոններ։

ԼԵՀԵՐԷՆԻՑ *Թարգմ. Յ. Յովհաննիսեան*

## 98. Մ Ա Յ Ր Ե Ր Ը

Գիւղական փոքրիկ եկեղեցում կիսախաւարի մէջ խնկի ծուխը պալան-պալան բարձրանում էր այն երեկոյ և բակ կապում փոքրիկ լուսամուտների շուրջը։ Կանթեղի աղօտ լոյսի առաջ քահանան մռմռալով քաղում էր աղօթքները և բազմաթիւ ժամաւորները մերթ գետնատարած խոնրնե-

րի վրայ, մերթ ոտքի կանգնած ու բազկատարած՝ մրմըն-ջում էին մի ընդհանուր ու խուլ մռմռոց հանելով։ Կանանց բաժնում սևացած սեան վրայ կախուած էր Աստուածածնի նկարը մի մգլած, դեղնած շրջանակի մէջ և նրա առաջ կանգնած էր մի տարիքաւոր կին՝ Սուսանը։ Այդ կինը և այդ նկարը երկու մայրեր էին, որոնք նայում էին իրար ակնապիշ և կարծես ջանք էին անում հասկանալ միմեանց մտքերը, կարդալ միմեանց սրտերը։ Տիրամայրը վերևումն էր՝ սեան վրայ, Սուսանը ներքևում՝ գետնի վրայ. մէկը սուրբ էր, կարող և հրաշագործ, միւսը խեղճ, վըշտահար, անզօր մի պառաւ, որ եկել էր նրա առաջ լաց լինելու, աղերսելու։

Միածնի փոքրիկ, գանգրահեր գլուխը սղմած իր կուսական կրծքին, Աստուածամայրը խանդաղատանքով ու ժըպիտով նայում էր վար, իր ոտների տակ սողացող, գալարուող բազմութեան, նայում էր նոյն ժպտով նաև Սուսանին, որ եկել էր ցաւոտ կուրծքը նրա առաջ բանալու։

Սուսանն աղօթում էր իր միակ որդու, իր դարիբ Թափառական Սաքօի համար, որ քանի մի օր առաջ թողեց, գնաց մութ անյայտը, դէպի հեռուն...

«Ո՛վ սուրբ Տիրամայր, ասում էր նա, բոլոր ցաւոտ սրտերի, բոլոր վշտացած հոգիների, բոլոր մղկտացող մայրերի դու գթոտ մայր, ձեռքս քո փէշն եմ ձգել, էրուած, մորմոքուած սիրտս բերել եմ քո սուրբ ոտների տակ դնելու. բայց այն, Տիրամէր, տես, արցունքը մի կողմ, կրակը միւս կողմն են բռնել սրտիս և արցունքը վառ կրակը մարել չի կարողանում, բոցերը շատ են. բայց ու նայիր, անճարների մայր. չէ՞ դու սրտերի կրակը հասկանալ, զգալ գիտես, տես ինչե՜ր կան իմ եփուած սրտում ու յետոյ մի ճար, մի դարման արա, ողորմած թագուհի։ Իմ ծով մեղքից էս ծեր օրերիս Փալագը մի դաղ քաշեց սրտիս, մի խոր դաղ և էրուած տեղը դեռ մխում է, մխում. դու հօ տեսար, սուրբ մայր, թէ էն մէկ ջիւանս, սարի պէս տղամարդ, ինչպէս կտոր-կտոր արին անօրէնները. մի ցաւով ծնած, մեծացրած զաւակիս էս կտրած ձեռներովս արիւնոտ գե-

րեզման իջեցրի։ Ի՞նչ անեմ, գուցէ իմ մեղքից, գուցէ Աստուած էր վրաս բարկացել։ Այս մէկն էլ գնաց… մըրգկրտացի, աղաչեցի, լաց եղայ, ձեռքն ու ոտքն ընկայ, որ չըգնայ, բայց գնաց… Թէ ուր, այդ դու ինձանից լաւ գիտես, Տիրամէր… հեռու սարերում, ձորերում. քարը՝ բարձ, ժայռն՝ անկողին, օձերի հետ՝ ջուրը, գազաններին հետ բունը կիսելով՝ նա թափառում է և ես անտէր, անտիրական, ձեռքս չոր գետնին, սիրտս՝ դող, հոգիս՝ ցաւած, օրս սև, թաց աչքս դռանը բռնած գիշեր, ցերեկ մղկտում, վշվշում եմ։ Փրկիր նրան, իմ զաւակին, Տիրամէր, բարեխօս եղիր նրա մօտ, որ այնպէս սիրով գրկել, սղմում ես քո սուրբ կրծքին. տես նա ինչպէս փարում է քո մայրական ստինքներին, ինչպէս ուզում է լսել քո սրտի ձայնը, մա՛յր, մա՛յր, ախր ես էլ եմ մայր, ես էլ սիրտ ունիմ, մայրական կաթովս քանիսի՜ն կերակրեցի, կրծքիս վրայ քանիսի՜ն ջերմացրի և էլ չկա՜ն, չկա՜ն, ոչ մէկը չկայ, ութ ծնունդ նըստեցի, ութ երկունք քաշեցի, և այժմ էն մէկն է»։ Մոմերը մէկիկ-մէկիկ այրուեցին ու մարեցին, Աստուածածնի և Քրիստոսի դէմքերը կամաց-կամաց կորան խաւարի մէջ. քահանայի ձայնը լռեց, աղօթաւորների մրմունջները դադարեցին, եկեղեցին դատարկուեց։ Սուսանն այնտեղ մնաց մենակ և դեռ աղօթում էր, դեռ նա աչքերը վար չէր բերում Տիրամօր պատկերից, դեռ չորացած բազուկները տարածած նա օգնութիւն, գթութիւն էր աղերսում և լալիս էր ու լալիս…

—Սուսան խաթուն, ուշ է. ժամը պրծաւ, որդի։ Կինը գլուխը բարձրացրեց. խօսողը ծերունի քահանան էր։

— Տէրտէր ջան, աջիդ մեռնեմ, աղօթում եմ։

—Հա՛, որդի, գիտեմ, որ աղօթում ես, լաւ ես անում, թող Աստուած լսի. ասում եմ, որ ժամը պրծաւ, էլ մարդ չկայ, տե՛ս։

—Դու գիտես, չէ՞, հայր ջան. էն մէկն էնպէս բեմուրազ եղաւ, մէկէլները գնացին, արեան ծով էր, խեղդեց բոլորին, էս մէկն էլ չոլերն ընկաւ, ես եկել եմ Աստուածածնի փէշերից կախուել։

—Լաւ ես անում, զաւակս, լաւ ես անում, բայց ուշ է արդէն։

—Գիտես, հայր ջան, չեմ թողնի, չեմ թողնի նրա փէշերը. ամեն օր էսպէս կը գամ, ես ի՞նչ եմ արել, որ էսքան սեւ մենակ քաշեմ, որ էսքան ցաւը մենակ ինձ տան, մեղք չե՞մ, էհ, սա էլ մայր է. էս Տիրամէրը տես, տես ինչպէս գրկել է իր զաւակին, տես ինչպէս սղմում է կրծքին, իսկ ես ոչ ոք չունիմ, ոչ ո՛ք։ Դու գիտես չէ՞, տէրտէր ջան, չէ՞ քեզ հետ դրինք հողը արնակոլոլ զաւակներիս։

—Հա՛ հա՛, որդի, դէ հիմա բաւական է, մնացածն էլ էգուց։

Սուսանը խաչակնքեց երկար ու կամաց-կամաց երերալով դուրս գնաց։ Քահանան կանգնած նայում էր նրա յետեւից եւ երբ այդ փոքրիկ, դողդոջուն ստուերն իսպառ ծածկուեց դրսի խաւարի մէջ, նա գլուխն օրօրեց խորհրդաւոր ձեւով։

—Խե՜ղճ կին, ասաց նա կամացուկ, ի՞նչ է լինելու վերջը, խելքն արդէն կարծես տեղը չէ. փառք քեզ, Աստուած, հազար բերան փառք։

Դուրսը մութ էր։

Էլի գարուններ եկան, բոլորեցին Սուսանի գլխով, էլի դաշտ ու ձորեր ծաղիկներով ու կանաչներով ծածկուեցին։ Բակի մի հատիկ խնձորենին մի քանի անգամ ծաղկեց եւ բուրմունք արձակեց իր շուրջը. պատերի նեղ ճեղքերի մէջ ճնճղուկները բուն դրեցին եւ ձագեր հանեցին. հօտերն ու նախիրները դաշտերը կենդանացրին, արագիլներն արդէն քանի անգամ չուեցին հեռու, հեռու եւ կրկին վերադարձան։ Էլի աշուններ եկան իրանց վհատ քամիներով եւ ծառերի տերեւները լիզեցին, թռչուններն ահագին ու տխուր երամներով թողին ու հեռացան դեղնած դաշտերից, կռունկները վշտոտ կղզոցով սեւ ցելերի վրայ հատիկներ մուրալով երկնքի երեսից անցան, բայց Սուսանի որդին չկար ու չկար։

Ամեն երեկոյ գնում էր եկեղեցի, վեց մոմը դողդո-

ջուն ձեռքով կպցնում Տիրամօր պատկերի սևացած, այր-ուած շրջանակի վրայ, ձեռքերը տարածում էր դէպի եր-կինք և աղօթում, աղօթում։ Եւ ամեն երեկոյ աղօթքից յետոյ, երբ բոլոր ժամաւորները դուրս էին գնում, նա դառնում էր տէրտէրին։

—Սաքօն կը գայ, այնպէս չէ՞, տէրտէր։

—Հա՛, որդի, ի հարկէ կը գայ, քո այնքան արցունքը, աղօթքները…

—Բերանդ տաճար է, տէրտէր ջան, տաճար բերնիդ մեռնեմ. ասա՛, ասա՛, այդպէս ասա՛. դու որ ասում ես, Տիրամէրն էլ ժպտում է, յոյսը սրտիս մէջ վարդի պէս բացւում է։

—Հապա, որդի, Տիրամէրը քեզ խնդիրն է թողել ան-կատար. երկնքի դռները նրա բարեխօսութեան առաջ միշտ բաց են։

Եւ Սուսանը հանգստացած տուն էր վերադառնում։

Սուսանը անքուն է դեռ. նա նստած է և մտածում է իր Սաքօի մասին. ո՞ւր է նա այժմ, ո՞ր չոլում, ո՞ր ձո-րում, ո՞ր այրի մէջ, կամ ժայռի տակ կծկուած։ Սարերում այժմ ինչպէս ցուրտ է. նա էլ երևի թրջուած է. կրակ չունի, ինչպէս վառի, նրանք կրակ չեն անում, այն թա-փառականները, որ վառեն, լաւ չէ. ասում են… հիմա ինչ-պէս մրսում է իր Սաքօն, այսպիսի գիշեր…

Բակի դուռն են թակում, Բօղարը հափած նետուեց դէպի այն կողմը։

—Թրը՛խկ, թրը՛խկ…

Սուսանը ցնցուեց ու դողաց բոլոր մարմնով, բայց ինքն էլ չիմանալով ինչու, մի վայրկեան մեխուած մնաց իր տեղում անշարժ և ամբողջապէս լսողութիւն դարձած, բերանաբաց, շնչակտուր. նա լսում էր, թէ ինչպէս շունը կատաղաբար չանգռում է դուռը, - թրը՛խկ, թրը՛խկ խր-փում են դրսից։

—Ո՞վ է… ո՞վ ես դու…

—Ես… ես Աստուծոյ մարդ եմ… անտէրս ու ան-պէտք. դողում եմ ցրտից, թրջուած եմ. հեռուից եմ գա-

լիս… անձրեւի տակ մնացի, մութը վրայ հասաւ սարե-րում, նոր հասայ. ես անպէտք մարդ եմ, Աստուծոյ ա-րարած… Տես, դողում եմ, մի տեղ, մի կրակ, մի ճար, Տիրամօր սիրուն…

—Տիրամօր սիրուն, կրկնեց Սուսանը մեքենայաբար, մի վայրկեան լռեց, յուսահատ զայրոյթով կրծոտեց շըր-թունքները մրմնջալով.

—Նա չի՜, նա չի՜, օ՜, անողորմ մարդ։

—Զար գիշեր է, շարունակեց անծանօթը, խեղճին ո՞վ տեղ կը տայ, քանի՞ դուռ եմ թակել. բացող չկայ, վախե-նում են, ես անպէտք մարդ եմ, էլի վախենում են. դէ ես էլ Աստուծոյ ստեղծածն եմ։

—Ղարիբի տէր եմ, դու էլ ղարիբ ես, ներս արի, ա-սաց նա վերջապէս։

—Տիրամէրը հասնի ղարիբին։

—Հա՛, Տիրամէրը ղարիբին. սուս, Բօղար, սուս, մի զայրացիր, ի՞նչ անենք, Աստուծոյ ստեղծածն է, խեղճ է, անճար է։ Տիրամէր, բոլոր անճարներին, բոլոր տառա-պեալներին հասիր, յետոյ նրան, մրմնջում էր պառաւը ցե-խերի միջից դանդաղութեամբ քայլելով և օտարականը հետեւում էր նրան։

Ներս մտան. ձէթի ճրագը պլպլում էր. պառաւը դար-ձաւ, նայեց օտարականին։ Ծեր մարդ էր, սպիտակ մազե-րով ու միրուքով. խղճուկ զգեստները ողջ թրջուած՝ ծր-լանքներից ջուրը կաթկաթում էր։ Նա դողում էր ցրտից ամբողջ մարմնով։ Նրա մի ուսից կախուած էր մի պարկ, կիսով չափ լի հացով, իսկ միւս ուսից մի երկար բան, որ սազի էր նմանում։ Սուսանը նայում էր ուշադրութեամբ։

—Աշո՞ւղ ես, հարցրեց նա։

—Չէ, մէրիկ, աշուղ չեմ, այլ գզրար, ես թափառում եմ գիւղից գիւղ, դռնից դուռ, գզում եմ բուրդ ու բամ-բակ, ով տալիս է. այս էլ աշուղութիւն է, մէրիկ. տես, ես զարկում եմ այս լարին, նա ցոյց տուեց իր գործիքը, և նրա հաստ լարը լաց է լինում իմ հարուածների տակ, և լալով բուրդ է գզում, այդ լացի գնով, սև օրով ես ապ-

դում եմ. ի՞նչ անեմ. մէրիկ, ջիւանները արնակոլոր եղան մեր վէրան աշխարհում, ես եմ մնացել, ծեր օրերիս, մէրիկ, անպէտք եմ. Աստուած հոգիս չի առնում, որ ազատ, ուեմ։ Օտարականը վար դրեց իր պարկը, ցած բերեց ուսից գործիքները, մօտեցաւ թոնրին, կծկուեց ու մնջեց։ Լուռացաւ. անձրևը դադարեց. բացուեց աշնանային մի ցուրտ ու պայծառ օր։ Մարդիկ դուրս սողացին բնակարաններից։ Սուսանի հիւրը նոյնպէս պատրաստում էր դուրս ընկնելու իր գիշերային ապաստարանից։ Նա դանդաղութեամբ վերցրեց իր պարկը, կախեց ուսից, առաւ նաև բուրդ գզելու գործիքը և դարձաւ Սուսանին.

—Շէն մնաս, մէրիկ. օջաղդ վառ մնայ։

—Գնո՞ւմ ես։

—Հա, գնում եմ ցնցոտիներս ու անպէտք գլուխս երկրէ երկիր, գիւղէ գիւղ, դռնէ դուռ քաշ տալու, մինչև մի տեղ շանսատակ լինեմ ու մաշուած, տրորուած ոսկորներս հանգիստ առնեն։ Եւ մինչ օտարականը խօսում էր, պառաւը մտածում էր, տեսնես ոա չի՞ տեսել նրան, էն սարերի արծուին։

—Լսիր. դու շա՞տ տեղ ես ման եկել։

—Շա՜տ, խիստ շատ։

Պառաւը գլուխը քաշ գցեց ու լռեց։

—Ինչո՞ւ ես հարցնում, մէրիկ։

—Է՜հ, հէնց էնպէս, տեսնում եմ,որ շատ տանջուած ես։

—Հա, մէրիկ, տանջանքը իմ եղբայրն է, մենք միասին ծնուեցինք, իսկ այժմ էլ անբաժան ենք։

—Լսիր, դու սարերում արծիւ տեսե՞լ ես, հարցրեց Սուսանը։ Նրան թուաց, որ այս օտարականն էլ պիտի հասկանայ, որ արծիւը նա է, Սաքօն է։

—Բան չեմ հասկանում, մէրիկ, ասաց նա, ես արծիւ չեմ տեսել, սև օր շատ եմ տեսել, խեղճ ու կրակ գզրար եմ, քո յարկի տակ աղ ու հաց կերայ, թէ բուրդ ունիս, բեր գզեմ, գնամ իմ ցաւը հոգամ։ Պառաւի աչքերը փայլեցին. Նրա գլխով կարծես մի լուսաւոր միտք անցաւ. որդու անկողինը, այդ ինչպէս է, որ նա մոռացել է։

—Բո՛ւրդ, հա բուրդ ունիմ, ինչ լաւ ասացիր, ողորմի հօրդ, գզելու բուրդ, որ փափուկ լինի, էնպէս չէ՞, որ գզեն, բուրդը փափուկ կը լինի, անկողինն էլ լաւ. մատներովս եմ քրքրել, բայց այդ քիչ է։ Եւ նա ծալքից ցած բերեց որդու անկողինը, քանդեց, բուրդը դուրս թափեց գզրարի առաջ։

—Ա՛յ, գզիր, զա՛րկ, լաւ զա՛րկ լարիդ, թող փափկի։ Օտարականը, գործիքը ցած բերեց ուսից, հացի պարկն էլ մի կողմ դրեց, ծունկ չոքեց և սկսեց զարկել իր գործիքի հաստ լարին։ Բուրդը զգւում էր ամպերի պէս՝ քուլա քուլա բարձրանում, իսկ լարն ասես լալիս, հեծում էր նորա հարուածների տակ։

Սուսանը լռութեամբ և հիացմունքով նայում էր։ Գործը շարունակւում էր, գզրարն այս անգամ և զարկում էր, և՛ երգում, կարծես իր լարի հետ մէկ տեղ հեծեծում էր ու լալիս։ Նա ասում էր. «Գարահիսար լերան կրծքին նա էլ ընկաւ վիրաւոր, կուրծքը պատռած, սիրտը խոցուած, չար թշնամու գնդակով. ժէռոտ լեռան լերկ կատարից վար սլացիր, սև արծիւ, թևերդ բաց, լայն թևերդ ու ջիւանին հով արա։

«Խոցուած սրտից մուգ արիւնը կաթիլ կաթիլ կը ծորայ, ա՛խ, ջիւանի կեանքն է հոսում ցաւոտ կրծքի լայն վէրքից. ժէռոտ լերան լերկ կատարից վար սլացիր, սև արծիւ, թևերդ բաց, լայն թևերդ ու ջիւանին հով արա»։

Սուսանը լսում էր սկզբում ուշադրութեամբ, բայց կամաց-կամաց նա կարծես մի մեծ սարսափի առաջ աչքերը չռեց ու գունատուեց։

—Այդ ի՞նչ ես երգում... ա՛յ մարդ։

Օտարականը գլուխը բարձրացրեց, գործը թողեց. նայում էր զարմացած այս կնոջ յուզմունքի վրայ և կարծես խօսք չէր գտնում պատասխանելու։

—Սո՛ւս, սուս, անողորմ, շարունակեց Սուսանը, թող այդ սև արծուի երգը, ես սևը չեմ ուզում։

—Տէր Աստուած, այդ հին բան է, շատ հին, ամենքը գիտեն, հին երգ է, ամենքն են երգում։

*—Հի՞ն է… Սուսանը կարծես մի փոքր հանգստացաւ, որ «բանը» այնպէս հին է։*

*—Հին է, մէրիկ, քանի՜ տարի է, ինչ երգում են ամէն տեղ։*

*—Ո՞վ է, ո՞վ էայն ջիւան վիրաւորը։*

*—Չգիտե՞ս, արար աշխարհ գիտէ Գարահիսարի բանը, եաման բան էր. վէրան մնայ Գարահիսարը. քանի՜սն էին…*

*—Ո՞վ է ջիւանը,քեզ ասում եմ, անողո՜րմ…*

*—Մի՞թէ չգիտես, Սաքօն է։*

*—Սաքօ՜ն… ուո՜ւհ, անաստուած, նզովք քո շրթունքներին, քո եկած ճանապարհի՛ն, քո ծննդին… սուտ է, սուտ է. Տիրամայրը կայ, աղօթքս, մոմերը, սուտ ես խօսում, չար սատանան ես դու, դուրս, դուրս, դուրս… Բայց չէ, կաց, կա՜ց, աղաչում եմ, սուտ էր, այնպէս չէ՞, դու սուտ ասացիր…*

*Սուսանը դեռ վազվզում էր բակում խելագարի պէս, կուրծքը՝ բաց արած, չորացած ստինքները բռնած ցոյց էր տալիս երկնքին։*

*—Նայի՜ր վերից, Կապուտաւոր,[1] նայիր էս չորացած աղբիւրներին, քանիսի՜ն կերակրեցի սրանցով. քանիսին իմ միս ու արիւնը տուի, մեծացրի, էլ չկան, չկան, ոչ մէկը չկայ… Մէկը Սաքօն է, Սաքօ՜ն, էն սարերի արծիւ, էն էլ…, ի՞նչ ասաց անիրաւը… ճիշտ է, դու չտեսա՞ր… Սաքօ՜ն, սարը մթնեց, արծիւը սև կապեց, ճի՞շտ է։ Բա դու ի՞նչ ասիր, ի՞նչ արիր։ Մայր եմ չէ՞, մայր էի, էլ մայր չեմ, ութը ծնունդ, ութը երկունք, հազար ցաւ, հազար խոց սևաւոր սրտիս… ուո՜ւհ…, և նա ջարդուած ընկաւ խնձորենու տակ, ծեր գլուխը կախուեց կրծքին, արցունքը թափուեց, թափուեց. իսկ վերևից ծառի վերջին, դեղնած տերևները մէկիկ մէկիկ մաղւում էին նրա գլխին և ճիւղերը մերկ ու դողդոջուն օրօրւում էին աշնան սառն քամու առաջ։*

*Սուսանը հիւանդ է, Սուսանը մեռնում է. .*

[1] *Աստուած։*

—Հին բան է, որդի, հին բան, ասում էր նրա գլխավերևը նստած ծերունի քահանան, որ եկել էր հիւանդին վերջին մխիթարութիւնն անելու, վերջին հաղորդութիւնը տալու։

—Հի՜ն բան է, կրկնում էր մեռնողը, Տիրամէրն էլ գիտէ՞ր, տէրտէր ջան։

—Աշխարհը գիտէր, որդի, քեզանից բացի ամենքը գիտէին։

—Դո՞ւ էլ գիտէիր։

—Դէ, որդի, թէ քեզ էլ ասէինք, ինչ օգուտ, ցաւդ դրանով չէր թեթևանայ. այնքան մայրեր լաց եղան, այնքան սարեր փշրուեցին, այնքան գլուխներ սև կապեցին. էհ, ի՞նչ անենք, մեր ճակատագիրն է։

—Չէ՛, չէ՛, Տիրամէրը խաբեց, ես խռով եմ ժամից, պատարագից, Տիրամօրից, երկնքից, թող այսուհետև գըժոխքի բոցերին բաժին դառնամ։

—Մի՛ ասիր այդ, որդի, մի՛ ասիր, հոգուդ մեղք մի՛ անիր։

Զատկին քահանան եկաւ տունն օրհնելու, մխիթարութիւն խօսելու, մերժեց. այժմ էլ հիւանդ ընկած, անկողնում, նա մեռնում է, չի ուզում հաղորդուել։

—Չէ, չեմ ուզում, գիտմամբ չեմ ուզում, որ հոգիս սատանայի բաժին դառնայ։ Ես կը կանգնեմ Աստուծոյ դահի առաջ և Տիրամօրից գանգատ կ՚անեմ և յետոյ այնպիսի բաներ կ՚ասեմ, այնպիսի բաներ։ Այ, էս չորացած ստինքներս ցոյց կը տամ ու կասեմ՝ ի՞նչ արիր, Տէր, մեռանք, փոթոթուեցինք, վարամ ճչացինք, աղերսեցինք, ձայներս աստղերին հասաւ և դու մեզ չհասար. հիմա տար ինձ կպրի կարասը, ես ի՞նչ, ես մի կտոր բոց եմ, ձգիր ինձ կրակի մէջ, բոցը բոցին ի՞նչ կանի, հա՛, կպրի կարասը, ես այնտեղ կը պլպլամ ու կը վառուեմ ու կը սպասեմ, որ ինձ նման սևաւոր բոլոր մայրերը բոց դառած հասնեն ինձ և ամենքս միասին հրդեհ կազմենք, այնպիսի հրդեհ, որպիսին վարումն է, վէրան և վաթանում[1]), թող

---

1) Հայրենիք։

*երկինքն էլ վառուի նրա պէս, թող երկինքն էլ մոխիր դառնայ, տա՛ր, տա՛ր ինձ կպրի կարասը, ես բոց եմ, մի կտոր կրակ։ Ա՛յ, այսպէս կասեմ։*

*—Որդի, աղաչում եմ, ասաց լացակամած քահանան, այդ ինչ ես ասում. տես, Ես ծեր տեղովս ես քեզ աղերսում եմ. մի՛ ասիր այդ, քեզ համար ես էլ պատասխանատու եմ Աստուծոյ առաջ։*

*—Պատասխանատո՞ւ ես. դո՞ւ էլ. Տիրամէրը խաբեց, մայր էր, սիրտ պիտի ունենար, բայց խաբեց. ինքը երջանիկ է, ինքը զաւակը կրծքին սղմած ունի, իսկ ուրիշին խաբեց…*

*—Տիրամէ՞րը։*

*—Հա՛, Տիրամէրը։*

*—Նայիր այստեղ։*

*Քահանան ցոյց տուեց իր Աւետարանը, նրա երեսի խաչելութիւնը։ Խաչուած Քրիստոսի ոտների տակ սգում էր Աստուածածինը մի խորը՜ սրեր մխուած սրտում։*

*—Ճանաչո՞ւմ ես, շարունակեց քահանան մատը դնելով Աստուածածնի վրայ. սա էլ է Տիրամէրը։*

*Պառաւը նայում էր աչքերը լայն, բերանը բաց, զարմացած։*

*—Նայիր, նայիր, երկար նայիր, ասում էր քահանան. դու միայն երջանիկ Տիրամէրն ես տեսել, տե՛ս և այս սգաւոր, այս դժբաղդ մայրը։ Պառաւը ձգուեց առաջ շրնչակտուր, դողդոջուն ձեռքերը մեկնեց և բռնեց Աւետարանը, մօտեցրեց աչքերին։*

*—Տե՛ս, քանի՜ սուր է մտել սիրտը, չէ՞ այն էլ նրա որդին է խաչուած վերում։*

*—Հա՛, հա, նրա որդին է խաչուած։*

*—Նա մեռնում է աշխարհի համար, մեր բոլորի համար։*

*—Նա մեռնում է մեր բոլորի համար… Իսկ իմ Սաքօն…*

*—Սաքօն, որդի, էհ, նա էլ մեր սև ու վէրան աշխարհի… Այդպէս է, որդի, մայրերը ծնում են երկունքով, պահում են ցաւերով, մարդակեր աշխարհը տանում է, տանում, ի՞նչ անենք։*

—Մայրերը ծնում են երկունքով, պահում են ցաւերով ու աշխարհը տանում է, հա, հա, տանում է անողորմ աշխարհը։

—Սաքօն էլ գնաց, ուր շատերն են գնացել նրանից առաջ, և ուր շատերն էլ կերթան նրանից յետոյ, ինչ անենք։

—Սաքօն էլ գնաց, ուր սա է գնացել, հա, աէրտէր ջան, էս խաչի վրայ մեռնողը։

—Հա, որդի, նոյն ճանապարհով, աշխարհի համար։

—Մեղայ Աստուծոյ, մեղայ Աստուծոյ, ես մեղաւոր եմ,—պառաւի ձայնը կերկերաց, արցունքները թափուեցին, նա Աւետարանը սղմեց շրթունքներին մրմնջալով.

—Խե՜ղճ մայրե՜ր, խե՜ղճ մայրեր...

Ա. Ահարոնեան

Ի՞նչն է այստեղ բնական և ինչը անբնական։ Հնարաւո՞ր է, որ ութ որդիքն էլ գնացած ու մեռած լինեին։ Ի՞նչ պատկերներ կան, որ կարելի է նկարել։ Սուսանը Տիրամօր առաջ։ Ուրախ գրե՞լ է Ահարոնեանը թէ տխուր։ Ի՞նչ կեանք է նկարագրում հեղինակը։ Համեմատեցէք Սուսանը Տիրամօր հետ և Սաքօին Քրիստոսի հետ։

---

## 99. ՈՂՈՐՄԱ՛Ծ ԵՂԷՔ

Երբ ձեր հոյակապ, շքեղ տներում
Անթիւ զարդարանք ձեզ շրջապատած—
Գոհար, ադամանդ, գիպակ, արբեշում,
Դուք ծիծաղում էք՝ կեանքից լիացած.
Եւ այդքան գանձերն առատ ու անքաւ
Չեն էլ շլացնում ձեր աչքը բնաւ։

Երբ դուք բաղդաւոր, «կենաց բաժակներ»
Ուրախ պարպում էք փարթամ խնջոյքում,
Ասացէք դուք ինձ, ո՛վ մեծատուններ,
Այդ զուարթ ժամին դուրսը, փողոցում
Դուք նկատո՞ւմ էք անճար աղքատին՝
Լալով նայելիս ձեր լուսամուտին։

Խղճուկը քաշուած փողոցի անկիւն,
Թաղցած նայում է նա ձեր խնջոյքին
Եւ խուլ մրմնջում. «Ահա՜ լիութիւն,
Առատ բարիքներ, ահա՜ խնդագին
Ե՛ւ պայծառ օրեր, և՛ վիճակ խաղաղ,
Ահա՜ ամեն ինչ—կեանք, վայելք, ծիծաղ ..

«Իսկ ես... ես թշուառ, ես մերկ, անօթի,
Իմ օթևանը խարխուլ ու մըթին,
Վա՜յ ինձ... ես մի այլ դառն վիճակի
Դատապարտուած եմ երկրիս երեսին.
Կինս թոքախտում, տանս հոգս ու ցաւ,
Խեղճ զաւակներս քաղցած ու ծարաւ...

«Եւ շատ քչերին տուած է կեանքում
Վայելել օրեր լի՛ երջանկութեան.
Անարդար բախտը կեանքի խնջոյքում
«Արբի՛»—ասում է հարուստ մեծատան.
Իսկ ինձ—«դու հեռու՛, դու բախտին օտա՛ր,
Անվերջ երազիր բախտալից աշխարհ»...

Օ՜հ, նա, միայն նա՛ կարող է ըզգալ,
Թէ ի՞նչ ասել են այս դաժան խօսքեր,
Ով ինքն է եղել թշուառ, տառապեալ...
Բայց դուք, դուք բախտի հարուստ ընտրեալներ,
Ձեզ ի՞նչ փոյթ... ձեր կեանքն առատ է, լեցուն,
Ողորմա՛ծ եղէք, Աստուծոյ սիրուն։

Ողորմածութիւնն մա՛յր է որբերին,
Մայր, նոցա, որոնք իրանց սև բախտին
Խորթ մայր են կանչում։ Եւ այնտեղ, ուր միշտ
Տիրում է տանջանք, ցաւ, կարիք ու վիշտ,
Այնտե՛ղ է նա միշտ թռչում, սլանում
Եւ մարդկանց աչքից արտասուք սրբում։

Աղերսում եմ ձեզ յանուն որբերի,
Հալածուած բախտի անողոք վճռով.

Թո՛ղ մարդս բարի, ողորմած լինի.
Թո՛ղ նա գթառատ, սիրաբուխ սրտով
Իր ճոխ գանձերից և՛ հէք թշուառին
Ջերմ կարեկցութեամբ միշտ հանէ բաժին։

Ողորմա՛ծ եղէք. Ահա՛ գործ վսեմ...
Երբ անտէր մի որբ կամ ծեր մուրացկան
Ձեր դըռան առաջ ահով, տխրադէմ,
Լուռ սպասում է ձեր ողորմութեան,
Եւ դուք մընում էք անհոգ, անտարբեր—
Դուք Տիրոջ սիրտն էք խոցում, հարուստներ։

Ողորմա՛ծ եղէք, որ հզօր Աստուած
Ձեզ և ձեր որդոց լինի պահապան,
Որ ձեր ամբարներ ցորենով լցուած՝
Նորա օրհնութեամբ անսպառ մընան.
Ողորմէ՜ք... և ձեզ ամենայն գիշեր
Կայցելեն պայծառ, սիրուն երազներ. .

Ողորմա՛ծ եղէք, որ մահուան ժամին
Որբին, անճարին ձեր տուած տուրքից
Հանդերձեալ աշխարհ դուք տանէք բաժին,
Որ նա՛, ում այստեղ կեանքն էր ողբալից,
Նա՛ կարողանայ ձեր դըռան մօտով
Անցնել աննախանձ և խաղաղ հոգով։

Ողորմա՛ծ եղէք, որ ապրէք գուարթ,
Որ տիրոջ սիրոյն լինէք արժանի,
Ողորմէ՜ք անվերջ, ողորմէ՜ք առատ...
Ջերմ աղօթքները տառապեալների
Թռչում են այնտե՛ղ ո՛ւր սուրբ օթևան,
Ուր աղքատութեամբ հզօր ենք միայն. .

Վ. ՀՈՒԳՕ. Թարգմ. Ալ. Ծատուրեան

---

## 100. ԱՐԾԻԻՆ ՈՒ ՃԻՃՈՒՆ

Հսկայ թևերը լայն-լայն տարածած
Հզօր արծիւն ուղղեց իր թռիչք
Դէպի բարձրաբերձ լեռներ սեպացած,
Դէպի անսահման կապուտակ երկինք։
Երկար սաւառնեց նա խիտ ամպերում,
Քանի ոյժ ունէր զօրեղ թևերում.
Եւ վերջ ի վերջոյ՝ յոգնած ու դադրած,
Նա նստեց հսկայ մի լեռան կրծքին,
Որի գագաթը մինչ երկինք հասած,
Սարսափ էր ազդում վերև նայողին։
Նստեց նա հանդիստ, անվախ, անվրդով,
Եւ շուրջը գոռոզ հայեացք ձգելով,
Իր արքայական ձայնովն անհեղ
Որոտաց ուժգին.—«Մենակ եմ այստեղ,
Մենակ ու ազատ այս լեռան վրայ,
Որպէս քաջայաղթ լիազօր արքայ.
Իմ գահն է անհուն այս երկնակամար,
Որոտ ու ամպեր—ոտքիս պատուանդան.
Ո՞վ կայ աշխարհում փառքիս հաւասար,
Ո՞վ կարէ հասնել գահիս բարձրութեան»...
—Ե՜ս...
Լսուեցաւ յանկարծ մի ձայն թոյլ, բարակ,
Մեծապանծ թռչնի հէնց ոտների տակ.
—Ես՝ անձրևային ճիճուս աննշան։
—«Ի՜նչպէս, դու, այստեղ, իմ դէմ յանդիման.
Ասա ինձ շուտով, ճիճու անպիտան,
Ո՞րտեղից դու այս ամպերին հասար։
Ասա, պատմի՛ր ինձ, ի՞նչպէս, ի՞նչ կերպով»...
—Ի՜նչպէ՞ս.—սողալով, արծիւ, սողալո՛վ...

Թարգմ. Ալ. Ծատուրեան

Ի՞նչ ենք սովորում այս բանաստեղծութիւնից.

## 101. ԹԷ ՇՐՋՈՒՄ ԵՄ

Թէ շրջում եմ աղմկալից փողոցում,
Թէ մտնում եմ ես մարդաշատ սուրբ տաճար,
Թէ նստած եմ ջահիլների շրջանում,—
Միշտ նոյն մտքերն ինձ յուզում են անդադար։

Ես ասում եմ—տարիք կանցնեն ու կը գան,
Եւ ամենքըս, որ կանք այստեղ խըմբովին,
Պէտք ննջենք երկրի խորքում յաւիտեան,
Եւ գուցէ, մէկն արդէն մօտ է իր մահին։

Թէ նայում եմ մենակ կանգնած լուռ կաղնուն,
Ես խորհում եմ—այդ նահապետն անտառի,
Որ վըկայ է իմ պապերիս մեռնելուն,
Ե՛ւ ինձ թողած՝ էլի կապրի շատ տարիս

Թէ սիրասուն մանուկին եմ փայփայում,
Մըտքումս արդէն ես ասում եմ՝ մնաս բարև.
Քեզ եմ տալիս ես իմ տեղն այս աշխարհում,
Ինձ-մահ, իսկ քեզ—դեռ կը ժպտի նոր արև։

Եւ այսպէս միշտ—ամեն օրն ու տարին
Սովորել եմ մտածմունքիս հետ կապել
Եւ նոցա մէջ ըմպասելով օրհասին,
Աշխատել եմ գալիք մահըս գուշակել։

Եւ, ո՜վ գիտէ, ո՞ւր տեղ է մահ պատրաստում
Ինձ օրհասը—ծովում, մարտում թէ ճամբին.
Գուցէ, հանգչեմ հէնց մօտակայ այս հովտում—
Նա ընդունէ իմ ցըրտացած, անշունչ դին։

Թէպէտ մէկ է, ուր էլ հանգչիմ յաւիտեան,
Ո՛ւր էլ փըտի սառն, անզգայ իմ դիակ.
Բայց, ախ, քաղցր էր, թէ գըտնէի գերեզման
Սիրած երկրում—հայրենիքիս հողի տակ,

Եւ թո՛ղ կեանքը, մատաղ կեանքը սիրաւէտ
Շիրմիս ափին զուարճանայ ու խաղայ.
Եւ անտարբեր բընութիւնը իր յաւէտ
Գեղեցկութեամբ շուրջըս փայլէ ու շողայ։

ՊՈՒՇԿԻՆ. Թարգմ. Ա. Ծատուրեան

## 102. ՄԱՐԳԱՐԷ

Յոգնած ու տանջուած, հոգով ծարաւ
Մութ անապատում թափառում էի.
Եւ ահա այնտեղ տեսայ վեցթեւեան
Ելաւ Սերովբէն իմ դէմ—յանդիման.
Եւ նուրբ մատներով թեթև ու քընքոյշ
Շըփեց իմ աչերն, կարծես, նինջ անոյշ.
Եւ զարհուրանքով նոքա բացուեցան,
Ահաբեկ արծուի աչերի նըման.
Եւ նա ականջիս դիպաւ կամացուկ,
Եւ իմ լըսելիքն յուզեց ձայն, աղմուկ.
Անսացի երկնի սասանումն ու դող,
Հրեշտակների թըռիչք լեռներում,
Ծովի յատակին գեռունների լող,
Ողկոյզի աճումն ճոխ հովիտներում։
Եւ նա հըպեցաւ իմ սառ շրթունքին
Եւ պոկեց, հանեց լեզուս մեղսալի՝
Սովոր նենգութեան և նանիր խօսքին.
Եւ այնտեղ դըրեց իմաստուն օձի
Թունաւոր խայթոցն իր արնոտ ձեռով.
Եւ նա պատառեց իմ կուրծքը սըրով
Եւ հանեց սիրտըս դողդոջ, բաբախուն.
Եւ նորա փոխարէն՝ իմ բացուած կրծքում
Նա դըրեց բոցոտ ածուխ վառվռուն.
Եւ ընկած էի ես անապատում,
Որպէս մի դիակ։ Եւ ահա բարձրից
Անսացի Տիրոջ կոչը դէպի ինձ.
«Ե՛ւ, ո՛վ մարգարէ, և լսի՛ր, և հայի՛ր,
Եւ հըզօր կամքիս հը.լու, անձնուէր,
Շըրջիր դու ծովեր, շրջի՛ր դու երկիր,
Եւ խօսքով այրի՛ր մարդկային սըրտեր»։

ՊՈՒՇԿԻՆ. Թարգմ. Ա. Ծատուրեան

## 103. ՀՐԵՇՏԱԿ

Կէս գիշերային անհուն երկնքում
Հրեշտակ էր թռչում մեղմիկ երգում
Եւ լուսին, աստղեր, ամպեր խըմբովին
Սըրբազան այդ երգն լուռ լըսում էին։

Երգում էր նա բախտ և երջանկութիւն
Եդեմում ապրող սուրբ ոգիների.
Երգում էր գովեստ նա Տէր Աստըծուն
Եւ այդ գովեստն էր անկեղծ, սըրտալի՛։

Մատաղ էակ էր նա գըրկին տանում
Երկրային վըշտի, արցունքի համար.
Եւ երգն հրեշտակի այդ մատաղ սըրտում
Մընաց կենդանի՛, թէպէտ անբառբառ։

Եւ՝ երկրիս վերայ, լեցուն փափագով,
Երկա՛ր տառապեց այն մատաղ հոգին.
Բայց նորան երկիրն իւր տխուր երգով
Զըփոխարինեց երգը երկնային։

ԼԵՐՄՈՆՏՈՎ. Թարգմ. Ա. Ծատուրեան

---

## 104. ԵՐԲ ՄԵՂՄ ԾՓՈՒՄ Է

Երբ մեղմ ծըփում է արտը ոսկեշող,
Դալար անտառում սոսափում քամին.
Եւ կարմրիկ սալորն անտես, գաղտագող
Պահւում է այգում, տերևի միջին։

Երբ անուշաբոյր ցօղով թառամած՝
Ճերմակ շուշանը ա՛յնպէս սիրալից,
Վառ արշալոյսին կամ մութը պատած,
Ինձ ողջունում է թփերի միջից։

Երբ սառն աղբիւրի կարկաչը ձորում
Յուղիչ ցընորքով սիրտըս պաշարած,
Ինձ խորհրդաւոր երգ է թոթովում
Այն երկրի մասին, ուր ինքն է ծընած.—

Այնժամ գագաթում է իմ յուզուած հոգին,
Մըռայլ ճակատիս թախիծը ցըրւում.
Եւ ես զգալով բախտը երկրային,
Հոգով տեսնում եմ Աստծուն երկնքում...

ԼԵՐՄՈՆՏՈՎ. Թարգմ. Ա. Ծատուրեան

---

105 Լ Օ Ռ Ի

Այս Լօռու ձորն է, ուր հանդիպակաց
Ժայռերը խորունկ նօթերը կիտած՝
Դէմուդէմ կանգնած, յամառ ու անթարթ
Հայեացքով իրար նայում են հանդարտ։
Նըրանց ոտքերում գազազած գալի
Գալարւում է գիժ Դե-Բեդը մոլի,
Ծելագար թըռչում քարերի գըլխով,
Փըրփուր է թըքում անզուսպ երախով,
Թըքում ու զարկում ժեռուտ ափերին,
Փընտրում է ծաղկած ափերը հին-հին,
Ու գոռում գիժ-գիժ.
—Վա՜շ-վի՜շշ՝ վա՜շ-վի՜շշ...

Մութ անձաւներից, հազար ձևերով,
Քաջքերն անհանգիստ հըրապիտ ձայներով
Դևի հառաչանքին արձագանք տալի,
Ծաղրում են նըրան գոռոցն անհելի
Ու կրկնում գիժ-գիժ.
—Վա՜շ-վի՜շշ, վա՜շ-վի՜շշ...

Գիշերը լուսնի երկչոտ շողերը
Հէնց որ մըտնում են այն խաւար ձորը՝
Ալիքների հետ խաղում գոռալով,
Անյայտ ու մռայլ մի կեանքի գալով՝
Ոգի է առնում ամէն բան այնտեղ,
Շընչում է, ապրում և մութն և ահեղ։

Այս տախտի վըրայ աղօթում մի վանք,
Այն ժայռի գըլխին հսկում է մի բերդ,
Մութ աշտարակից, ինչպէս գարհուրանք,
Բուի կոինչն է տարածւում մերթ-մերթ,
Իսկ քարի գլխից՝ լուռ մարդու նման,
Նայում է ձորին մի հին խաչարձան։

Յովհ. Թումանեան

---

## 106. ԻԳԻԹԻ ՍՊԱՆՈՒԻԼԸ

Ինչպէս մի հեղեղ վէր կենար յանկարծ,
Երկընքի մըթնած ամպերից իջնէր․
Ինչպէս փոթորիկ սաստիկ սըրնթաց,
Գիւղից սըլացան մի խումբ կըտրիճներ։

Ցաւից տաքացած՝ էլ բան չեն հարցնում,
Թըռչում են, ասես անհից հալածուած,
Ու նըրանց առջև ահուելի բացւում,
Թըշշում է ձորը արիւնով լըցուած։

Գիւղը դատարկուեց մի ակընթարթում.
Բարափի գլխին կանգնած անհամբեր,
Լուռ, սըրտատրոփ ականջ են դընում,
Նայում են ներքև... ձայն չի գալի դեռ.
Դեբեդն է միայն անդընդում յուզուած՝
Որլաձայն ողբով սուրում դէպի ցած։

Ու մարդասպանը դուրս եկաւ ձորից,
Դէմքը այլայլած, քալուածքը մոլոր.
Սարսափ է կաթում արնոտ աչքերից,
Եւ կերպարանքը փոխուած է բոլոր։

Առանց նայելու մարդկանց երեսին,
Առանց խօսելու, սևակնած, դաժան,
Մօտեցաւ սրահին, կախ տուաւ սընին
Սև հրացանը, սև օձի նըման։

Պապանձուեց նոյնպէս ամբոխըն մեխուած,
Ոչ ոք ծըպըտալ չի համարձակւում,
Մենակ մի հոգի անգութ կատաղած՝
Հարայ է կանչում, երեսը պոկում։

Մեռած չորանի նանըն է նա՝
Ցաւից խելագար բառաչում, լալիս.
Տարաբախտ ծընող, վազում է ահա,
Ձորիցն է ոլխուր գոռոցը գալիս։

Յովհ. Թումանեան

---

## 107. Հ Ա Մ Ե Ր Գ

Վըտակը ժայռից ներքև է թռչում,
Թափ առած ընկնում քարերի գըլխին,
Զարկում աւազին, շաչում է, ճըչում,
Ճըչում անհանգիստ, փըրփուրը բերնին։

Ինչպէս ծերունին, ձայնով պառաւած,
Ձայնակցում է ժիր թոռնիկի երգին,
Այնպէս է ծերուկ անտառը կամաց
Արձագանք տալի ջըրի աղմուկին։

Սակայն բընութեան գըւարթ համերգի
Ունկընդիրն անխօս, յաւիտենական,
Ժայռը մըտախոհ իր մըռայլ մըտքի
Ետևից ընկած լըսում է նըրան։

Յովհ. Թումանեան

---

## 108. ԱՅՎԱԶՈՎՍԿՈՒ ՆԿԱՐԻ ԱՌՋԵՒ

Ելած՝ ովկիանի անգութ ալիքներ
Ծանըր յորձանքով զարկելով դէպ վեր

Լեռնանում էին գոռալով անեղ.
Ու մըրրիկն ուժգին շընչում էր այնտեղ
Անեզր ու անվերջ
Տարածութեան մէջ.

«Կանգնեցէք», գոչեց վըրձինը ձեռքին
Կախարդ ծերունին յուզուած տարերքին,
Եւ լուռ, հըլուազանդ հանճարի ձայնին,
Մութ ալիքները՝ փոթորկի ժամին
Կըտաւի վըրայ
Կանգնած են ահա։

Յով. Թումանեան

---

## 109. ՄԱՅՐԻԿՍ

Հայրենիքէս հեռացել եմ,
Խեղճ պանդուխտ եմ, տուն չունիմ.
Ազիզ մօրէս բաժանուել եմ,
Տխուր, տրտում, քուն չունիմ։

Սարէն կուգաք նախշուն հաւքեր,
Ա՜խ, իմ մօրը տեսե՞լ էք.
Ծովէն կուգաք մարմանդ հովեր.
Արդեօք բարև բերե՞լ էք։

Հաւք ու հովեր եկան կշտիս,
Անձէն դիպան ու անցա՜ն.
Պապա՜կ սրտիս,—փափաք սրտիս՝
Անխօս դիպան ու անցա՜ն։

Ա՜խ, քու տեսքին, անուշ լեզուին
Կարօտցել եմ, մայրի՜կ ջան,
Երնէ՜կ, երնէ՜կ, երազ լինեմ,
Թըռչիմ մօտդ, մայրի՜կ ջան։

Երբ քունդ գայ, լուռ գիշերով,
Հոգիդ գրկեմ. համբոյր տամ,
Սրտիդ կպնիմ՝ վառ կարօտով,
Լամ ու խնդամ, մայրի՛կ ջան։

Ալ. Իսահակեան

Համեմատեցէք այս և Շահազիզի «Երազը»։

---

## 110. Գ Ի Շ Ե Ր

Շղարշ ամպերն երկինքն առան,
Լուսնակն աղօտ կը շողայ,
Լռիկ ճահճում հարհանդ-մարմանդ,
Նուրբ եղեգնը կը դողայ։
Մռայլ-ափին մենակ նստած
Սիրտս անուշ կը թախծի.
Եւ անուրջում միտքս թաղուած,
Քունն աչքերիս կը հանդչի...

Ալ. Իսահակեան

---

## 111. Ձ Մ Ե Ռ

Պարզըկայ գիշե՛ր...
Աստղերն երկնքում լուռ պսպղում են.
Լուսնի շողերը դիպել են սարի
Ձիւնոտ կողերին,—կողերը ցոլում.
Պէծին են տալիս։

Ցրտաշունչ քամին
Թևերը փռած՝ փնչում է, թռչում,
Սառած երկիրը՝ ճաքում-ճաքճքում.
Ձեան հատիկներով քարափի կուրծքը
Ծեծում ու ծեծկում...

Անծայր ճանապարհ...
Առաջ եմ գնում,—ո՞ւր.—ես չգիտեմ,
Սառո՛յց ու ձմեռ,
Առաջ եմ գնում անյո՛յս, անընկեր,
Քամի ու գիշեր.
—Ա՜խ, եթէ յանկարծ յոյսս շողշողա՛ր,
Նա ինձ ողջունէր...
Ավ. Իսահակյան

## 112. ՄԱՃԿԱԼ

Մաճկալ ես, բեզարած ես,
Առը շո՛ւռ տուր, շո՛ւռ արի.
Ծովի պէս քրտընած ես,
Եզներն արձակի, տո՛ւն արի։

Կաթի սէրը քաշել եմ,
Դրել եմ հովին՝ սառի.
Ալ գոգնոցս փռել եմ,
Արի՛ թառլա՛ն, թը՜ռ արի։

Դադրա՛ծ, բէզարած եա՛ր ջան,
Ամպերն եկան, դէհ, արի՛,
Բէզարած ջանիդ ղուրպա՛ն,
Ծոցիս թև ա՛ռ, թէզ արի։
Ավ. Իսահակյան

## 113.

—Որսկա՛ն աղբէր, սարէն կուգաս,
Սարի մարալ կը փընտռես.
Ասա՛, խարաբ դուն չը տեսա՞ր
Իմ մարալըս, իմ բալէս.

Դարդի ձեռքէն սարերն ընկաւ
Իմ արևըս, իմ բալէս.
Գըլուխն առաւ քարերն ընկաւ
Իմ ծաղիկըս, իմ լալէս...

—«Տեսայ, քոյրի՛կ, Նըշխուն բալէդ
Կարմիր-կանաչ է կապել,
Սիրած եարի համբուրի տեղ
Սըրտին վարդեր են ծըլեր»։

—Որսկան աղբէր, ասա եարար
Ո՞վ է հարսը իմ բալիս,
Ո՞վ է գըրկում չոր գըլուխը
Իմ մարալիս, իմ լալիս։

—Տեսայ, քոյրի՛կ, դարդոտ բալէդ
Քարն է դըրեր բարձի տեղ,
Անուշ քընով տաք գընդակն է
Կըրծքում գըրկեր եարի տեղ.

Սարի մարմանդ հովն է շոյում
Ծակոտի փուշը մարալիդ,
Ծաղիկներն են վըրան սըգում,
Ազիզ բալիդ, խեղճ լալիդ»...

Աւ. Իսահակեան

Համեմատիր «Զարմայր Նահապետի մահը» Պատկանեանի. «Անուշի մահը» Թումանեանի, և «Հերոսի շիրիմը» (մի հոգեհանգիստ) Կուրղինեանի.

---

114.

Նման գայլերի խըմբին ամեհի,
Ձըմրան գիշերին ոռնում է քամին.
Եւ իմ պարտիզում—մռայլ, ամայի,
Խեղճ ուռիներիս ջարդում է քամին։

Ա՜խ, մանկուց լացեց քու սէրը, սիրտ իմ,
Ոչ ոք չհասկացաւ երազըդ աղւոր.

Ձո՜ւր մի՛ որոնիր սիրտ մի մտերիմ,—
Ծնուել է հոգին յաւէրժ մենաւոր։

Հանի՜ր քու սէրը սրտիցըդ անյոյս,
Այդ խորթ, ապօրէն զաւակն աշխարհի.
Քըցի՜ր այս դաժան, մո՜ւթ գիշերին դո՜ւրս՝
Ցուրտ քամու բերան... Թո՜ղ երթայ սառի...

Թո՜ղ լայ, հեծեծայ սէրըս՝ որբ, անմա՛յր։
Եւ քամին լացը նորա թո՜ղ տանի
Ալէկոծ ծովեր, անապատ մի վայր,
Սակայն մարդու մօտ... երբէք չը տանի...

Օռնում է քամին, վայում դժընդակ
Մռայլ գիշերին ձիւն-ձմերային.
Ա՜խ, սէրըս ջարդուած ուռիների տակ
Մեռնում է մենակ.—Թո՜ղ երթայ մեռնի...

---

**115.**

Կուզես լինիմ վշտի ցօղեր
Աչքերիդ մէջ շող-կայծեմ.
Լուռ գիշերուայ անուշ հովեր,
Փունջ-ծամերդ փայփայեմ։

Կ՚ուզես լինիմ ծառ ու ծաղիկ,
Քեզ գրկումըս նինջ սփռեմ.
Թ՚ալուկ ստուեր, թովիչ թռչնիկ,
Օրօր ասեմ, օրօրեմ։

Կ՚ուզես լինիմ վարդ-նազելի
Կըրծքիդ վերայ վառվռիմ,
Արշալոյսի շողեր ոսկի
Դէմքիդ վերայ փայլփլիմ։

Ի՞նչ որ ցանկաս, կ՚ուզես լինիմ,
Լինիմ երկինք ու երկիր.
Լինիմ ծով, ժայռ, արև՝, լուսին,
Միայն, միայն ինձ սիրէ՛ր...

Տես Յովհաննիսեանի. «Կուզէի լինել». Քուչակի «Ես ձագ ծիծեռնակ» և Պեշիկթաշլեանի «Ո՜ւր էր թէ զեփիւռիկ»։

---

## 116. ԻՄ ՍԻՐՏՆ ԱՅՆՏԵՂ Է

Իմ սիրտն այնտեղ է—հայրենի, հզօր
Լեռների գլխին, արծիւների մօտ,
Որ ամպերի պէս՝ խրոխտ, ահաւոր,

Նետում են, շնչում կայծակ ու որոտ։
Դուք, ըմբոստ քաջեր, ռազմիկներ վսեմ,
Անյաղթ իշխողներ մահին ու կեանքին.
Ձեզ հետ է հոգիս, և ներբողում եմ,
Եւ երկրպագում ձեր արնոտ ուղին։
Դուք, հայրենիքի ազատ ոգիներ,
Ձեր սպառազէն, կուռ բռունցքներում
Սուրբ իրաւունքի և ազատութեան
Անշիջանելի հուրն է բռնկւում։
Իջէք, մրրիկներ, դաշտն ի վայր իջէք,
Մարդկութեան մրուր—նողկանքը սրբէք,
Փշրէք շղթաներն, լծերը բոլոր։
Դարերի ծանր խաւարը ցրէք,
Որ կաշկանդել է ազնիւ մեր հոգին
Անմահ մեր մտքի թևերը բացէք,—
Պայթէք, կայծակներ, պայթէք խստագին...

Աւ. Իսահակեան

---

## 117. ՀԵՐՈՍԻ ՇԻՐԻՄԸ

Ո՛չ խաչ, մահարձան... անշուք հողակոյտ
Ամայի դաշտում լուռ առանձնացած
Ընկած է անփոյթ։

Անթիւ վէրքերով վիրաւոր կրծքում՝
Վեհ գաղափարի անյաղթ փոթորիկ
Էլ չի աղմկում։

Յոգնած գլուխը մայր հողի կրծքին
Ցաւոտ աշխարհի լացը չի լսում՝
Քնած է հոգին։

Աստղերը—կանթեղ ցոլքով հրավառ
Շիրմին լոյս տալիս. բոյսը բուրմունքով
Խնկարկում բուրվառ։

Քամին թևերով գգւում է, գողում
Ու մահասարսուռ ձայնով վշտացած
Ողորմ՜ սուլում։

Ո՛չ խաչ, մահարձան... կեանքի խաչը նա
Այնպէս անվեհեր, ամենքի համար
Տարաւ Գողգոթա...

Շուշանիկ Կուրղինեան

---

## 118. Թ Ա Ր Թ Ա Ր

Մռայլ, ահաւոր ձորի անդընդում
Թարթարը անվերջ գոչում է, թնդում.
Հսկայ վիշապի նման կատաղած՝
Առաջ է վազում յուզուած, փրփրած.
Առաջ է վազում նա գալարուելով՝
Գետնի ապառաժ կուրծքը ճղքելով,
Բարձր մռնչում, գոչում է ուժգին,
Իր ահեղ ձայնով տատանում չորսդին.
Շարժում է տեղից լեռնոտ գետափը,
Ծեծում ու քերում ժեռ ու քարափը։

Նեղուած ափերից դաժան, անողոք՝
Գետը զայրացած բառնում է բողոք.
Բայց այնտեղ ահա ծառերը գալար
Երկու ափերից կազմել են կամար
Եւ խոնարհուելով՝ կարդում են յորդոր,
Որ հանգստանայ գետը ահաւոր.
Արևն էլ շողքը կապոյտ երկնքից
Գցել է ներքև ճիւղի արանքից,
Ջուրը փայփայում, հետը խաղ անում...
Սակայն նա դարձեալ աղմուկ է հանում։

Եւ անդնդախոր ձորի եզերքին,
Ուր ամբառնում են ծառերը երկին։

Նեղ, օձապտոյտ շաւղի վըրայով,
Տես, կարաւան է ընթանում ահով։
Ձորը բաց արած ահեղ բերանը՝
Ուզում է կուլ տալ ողջ կարաւանը.
Մի թեթեւ շարժում, անզգո՛յշ մի քայլ —
Նա կը գլորուի անդունդը մռայլ.
Զայրագին, յուզուած Թարթառը այնտեղ
Խեղդամահ կանի իր զոհին անմեղ...

Յով. Թումանեան

---

## 119. Լ Ա Լ Ո Ւ Ա Ր  Ս Ա Ր Ը

Ծագում է մանուկ արեւը գարնան
Կովկաս լեռների ձիւնի պատնէշից,
Զարթում են մէկ-մէկ սարերն աննըման
Զմրան անվրդով քնի մշուշից.
Ահա Լալուարի վիթխարի ուսին
Բազմում է արփին թարմացած ուժով,
Սարեր ու ձորեր իրար երեսին
Նայում են, ժըպտում ամպի մշուշով...
Վերջին ձիւներն էլ ահա հալ ընկան,
Արտասուեց իսկոյն լեռների հսկան.
Ամեն մի ձորից աղբիւր է հոսում,
Ամեն մի թփից բիւլբիւլ է խօսում։
Ե՛ւ զալար հովիտ, և՛ ժայռի կըրծքեր
Արձագանք տալով գարուն են հընչում.
Զըմրան փարախից հովուական երգեր
Զեփիւռի թեւով սարերն են թռչում։
Ծաղկալից աշխարհ անվերջ ձորերի
Բացւում է, ժըպտում կոկոնից զուարթ.
Փարթամ գեղութեան ոգին Գուգարքի
Շընչում է գարնան բոյրով անարատ։
Ամպերն էլ իրար համբոյրներ տալով,
Զըւում են կայտառ, Լալուարը գըրկում,

Առաջին անգամ թունդ որոտալով,
Ցուղարք աշխարհին ողջոյն են երգում.
Եւ հայրենիքում փայլակ կայծակի
Գիշերուայ դրոշմած գաղտնի համբոյրներ,
Երգում են երկրին սէրը երկնքի,
Դողում են սիրուց սարեր ու ձորեր։
Եւ խորհրդաւոր մի թովիչ ձայնով
Խօսում են նրանք, իրար հետ փարւում,
Երգում են, խնդում, հազար բերանով
Լալուարի վիթխարի հասակը գովում։

Վ. Միրաքեան

---

## 120. ՍԱՐ ԳՆԱԼԸ

Ահա գարնան հետ և շարան-շարան
Դաշտավայրերից դէպի զով սարեր
Զգուեց սայլերի, ուղտերի քարւան—
Փախչում են շոգից թէ՛ թուրք, թէ՛ հայեր։
Թնդում են ձորում զանգի հնչիւններ,
Ձիերի խրխինջ, պայտերի դոփիւն,
Մէկ-մէկի կցած անվերջ քարւաններ
Քաշում է նառը, անհեղ մռնչում։
Ո՛րը տանում է ալաչխի քէչան,
Կուժն ու խնոցին, ճիպոտն ու չաթան.
Ո՛րն էլ զարդարուած գիր ու փնջերով
Օրօրւում, անցնում լեռան լանջերով։
Բայց նառն ինքնագոհ քայլում է հանդարտ,
Բոժոժ ու զանգեր վզին ու կրծքին,
Եւ օրօրելով կապերտներ ու զարդ,
Գեղեցիկ հարսն է նա տանում մէջքին.
Մերթ բարկանալով, կանգնում է հպարտ,
Մերթ փրփուր թափում կատաղած բերնով,
Մերթ երկար շուրթը կախելով բարդ-բարդ
Նա պարծենում է գեղեցիկ բեռով։

Բռնել է ճամբէն թունդ իրարանցում,
Դոփում են ձիեր, սանձերը կրծում—
Ազնիւ մետաքսից ոսկեթել գործած,
Աղաջարիններ թամքերին գցած,
    Հուժկու կրծքերից կապած թալիսման,
    Արևելեան ճոխ արծաթն ու ոսկին,
    Ճերմակ ղաթիբան, քողն ամպի նման
    Փրփռում են սիրուն հարսների դէմքին։
Լեռների տօնն է. մարդ և անասուն
Ուրախ երգերով դիմում են սարեր,
Մոռնալով ձմռան քաշած վայնասուն,
Ծաղիկ փնջելով անցնում են ձորեր.
Անցնում են արագ քոչ-քոչի միջով,
Գարնան արևից փայլում են զէնքեր,
Ու թարմ կենսաբոյր թաւիշ կանաչով
Բացւում են, ժպտում սարւորի դէմքեր։
    Փոքրիկ երեխան պլինդ մէջքին կապած՝
    Խեղճ հովուի կինն էլ վազում է ոտքով,
    Օգնում է մարդուն՝ գոհ և սրտաբաց
    Բախտի որոշած ծանր վիճակով։
Մայում են, բայում գառըն ու մաքին,
Թընդում կովերի, հորթերի բառաչ.
Իսկ ոըրընդալով գոմէշը ձագին
Կանչում է՝ դանդաղ վազելով առաջ.
    Վազում են յոգնած շները հոտի,
    Ու լեզուն հանած թանչին են տալիս.
    Լսւում է յանկարծ ձայնը լակոտի,
    Որ քոչից ընկած՝ կլանչ է գալիս։
Քարւանի ծայրը սարերը հասաւ,
Հասաւ ու ձուլուեց թուխ ամպերի հետ,
Վրան-վրանի ետևից բըսաւ
Ծաղիկների մէջ գոյն-գոյն, սիգաւէտ։
    Ալաչուխ, դագա, անվերջ վրաններ
    Շըրջան կազմելով սառն աղբրի ափին,

Ինչպէս ծեր արծուի կարկատած բըներ,
Ցենուեցին մէկ-մէկ բարձըր քարափին։
Դաշտեցի հայն էլ սառ ջըրի կարօտ՝
Եկել է, դըրել բինէն այս ամառ
Լօք, Լալուար, Լեջան աղբիւրների մօտ,
Տօքերից ազատ ապրելու համար։
Գուգարք սարերի սիզաւէտ լանջին
Բազմել են հայի, թուրքի բինաներ,
Բայց դարձեալ խառնուած քոչ-քոչի միջին՝
Դեռ երերում են ուղտի քարւաններ.
Խըրխնջում է ձին, կովը բառաչում,
Բոլորն էլ իրանց իւրտն են ճանաչում.
Բայում է անուշ ամլիկը գառան,
Սարեր ու ձորեր նորից կեանք առան։
Գիշերը հասաւ, մըթին է ճամփան.
Մարում է կամաց աղմուկը քոչի,
Առուակի ափին քարուաններն իջան,
Կանչում են՝ «տըղերք, ապրանք չկորչի»։
Սայլերի ճըռռոց, ոչխար ու տաւար
Գըռնելով ձորում գիշերն իջևան,
Հանգիստ են առնում միւս օրուան համար։
Կըրակի վրայ առուակի ափին.
Մի տեղ ընթրիք են շտապ պատրաստում,
Մի տեղ էլ կորած գառանն ու հորթին
Սար ու ձոր ընկած հովիւն է կանչում.
Մի այլ տեղ ուրախ շըրջան բոլորած,
Ուտում են նըրանք կաթ ու խորոված։
Գիշերն էլ արդէն մնջում է, լըռում.
Յոգնած քոչուորին հանգիստ քուն բերում...
Սարի փէշերը կախած մի ծայրին,
Լալուարն էլ կարծես նոյն վիշտն է զգում,
Ինչպէս վիրաւոր արծիւը ժայռին,
Թևերը փռած քոչուորին հսկում։
Բայց Լօք սարերի կանաչ լանջերում
Մի բինա էլ կայ, որ դեռ չի քընում.

Այնտեղ խարոյկի շուրջը բոլորած՝
Տեսած ու լսած արկածն են պատմում,
Եւ մեծ ու փոքր ականջներ լարած՝
Աշուղ Գիքոյի երգերն են լսում.
Պատմում է, երգում աշուղն անցեալից,
Ձորերում տեսած հին իգիթներից.
Կըրակին գըցած կաղնի մեծ գերան՝
Սարուորն էլ արթուն լսում է նըրան։

Վ. Միրաքեան

---

## 121. ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ԳԻՇԵՐ

Սարերին բազմեց սեւահեր գիշեր
Աստղերը ճակատին
Ու քանդեց-թողեց ծամերը սեւ-սեւ
Ծաղ տուեց չորսդին։
Հէքիաթի նման աղբիւրն է հոսում
Գիշերուայ դիւթիչ շուրթերի վրան,
Կարծես թէ խորքից Աստուած է խօսում,
Եւ աշխարք դիւթուած լսում է նրան։

Այն գիժ Ճորոխի ժայռերն են ահա,
Որ ինչպէս մթնած երկու մռայլ ամպ
Կարծես դիմարգել երկու աժդահայ՝
Իրար են նայում կանգնած պատահմամբ։

Այն գիժ Ճորոխն է, որ ահեղ ձորում
Քարուանի նման չըւում է իր չուն,
Որ մէկ գոռում է, մէկ նուաղ մարում.
Պտրելով ճամբայ խաւարի միջում։

Հանգչում են, հալչում ձայներն աշխարհի,
Հնչում է ժամը խորին պապանձման,
Դիզւում են, կապւում ջրերը երկրի
Եւ ականջ դնում գիշերն Համբարձման։

Սիրուն հարսի պէս զուգուած են ծաղկունք,
Մնում է անտառն ուրախ հարսանիքի,
Մինչև որ երկնից կիջնի սուրբ մի տուրք,
Կը խօսեն բոլոր, փարուին մէկ մէկի.

Դերենիկ Դեմիրճյան

---

## Բ. ՊԱՏՄԱԿԱՆ

### 122. Կառավարությունը հին հայոց մեջ

Կառավարութեան սկիզբը խոր հնութեան մէջ ծածկուած է։ Իւրաքանչիւր ժողովուրդ, երբ միասին հաւաքւում են՝ ընկերութեամբ կեանք վարելու համար, պէտք է կարգաւորեալ կառավարութիւն ունենայ որոշ օրէնքներով։

Բայց կառավարութեան մէկ կամ միւս ձևը կախուած է երկրի դրութիւնից, ժողովրդական կեանքի հանգամանքներից և շրջակայ ազգերի բնաւորութիւնից։ Պատմութիւնից տեսնում ենք որ ժայռոտ, աւազոտ, քարքարոտ տեղերում և ծովային ափերի մօտ բնակող ժողովուրդները իրանց չոր ու ցամաք երկրի պատճառով, շուտով ստիպւում են դաշտային երկիրները ասպատակել՝ կողոպուտ անելու դիտաւորութեամբ։ Այսպիսի ժողովուրդների մէջ բնականաբար գերագոյն իշխանութիւնը անցնում է հէնց սկզբից այն գերդաստանի ձեռքը, որից դուրս են գալիս քաջասիրտ և յաջողակ առաջնորդներ, կազմւում է ժառանգական հարստութիւն և միապետական իշխանութիւնը անզգալի կերպով հաստատութիւն է ստանում։ Ուրիշ բան է պատահում հովուական ու երկրագործական ժողովուրդների մէջ։ Այստեղ առանձին գերդաստաններ են միանում և ցեղական ընկերութիւններ են կազմում առանձին ցեղապետների պաշտպանութեան տակ, որոնց պարտքն է հովուել իրանց ցեղը և պաշտպանել նրա սեփականութիւնը և աշխատանքի պտուղը անիրաւութեան դէմ։ Այստեղ արիւնակից գերդաստաններ կամաց-կամաց ցեղական ընկերութիւններ կազմելով՝ գերդաստանի հօր ի-

բաւունքներն էլ անցնում են ցեղապետին և այսպիսով կազմւում է կալուածական կամ տանուտիրական կառավարութիւն, որ հայոց էլ իբրև հովուական ու երկրագործական ժողովրդի, սեպհական էր սկզբնական ժամանակում։ Մեր առաջին նահապետները, մինչև Արամը, ժողովրդեան համար ոչ այլ ինչ էին, բայց եթէ հայրեր, որոնք խնամում էին իրանց ցեղը այնպէս, ինչպէս որ գերդաստանի հայրը հոգում է իր որդւոց պիտոյքը, կամ ինչպէս այժմեան գիւղական կեանքում տանուտէրը կամ ծերը կառավարում է իր գիւղը։ Զանազանութիւնը միայն նրանումն էր, որ մեր նահապետների մէջ միշտ կար մէկը, որ ժառանգութեամբ ստանում էր ազգի ընդհանուր կառավարութիւնը և որի հովանաւորութեան տակ գտնւում էին միւս բոլոր ցեղապետները։ Այս առաւելութիւնն ունէին Հայկից յետոյ ուղիղ գծով յաջորդող նահապետները, որոնց տանուտիրական իրաւունքների ընդհանրութիւնը հիմնւում էր ժառանգական սեպհականութեան վրայ, որով մէկը, իբրև գլխաւոր նահապետ, իր ուզածին պէս կամ հին սովորութեան համեմատ՝ բաժանում էր կալուածները արիւնակից ցեղերին։ Բայց այս գլխաւորութիւնը այնպէս անզգալի էր, որ երբեմն գլխաւոր տանուտէր նահապետը իր հայրերից իրան ժառանգութեամբ ընկած երկիրը թողնում և ուրիշ տեղեր էր գաղթում։ Այսպէս՝ Ամասիան թողնում է Արմաւիրը և գնում է Մասիսի ստորոտը գաղթում, Գեղամը գաղթում է Սևանայ լճի ափերը և այն կողմերը իրան սեպհականում։ Սրանից երևում է, որ գլխաւոր նահապետի իրաւունքը շատ չէր զանազանւում երկրորդական նահապետների կամ ցեղապետների իրաւունքից։

Այս տանուտիրական խաղաղ ու պարզ կառավարութիւնը տևեց հայոց մէջ մինչև այն ժամանակ, երբ Հայկի սերունդը սկսեց շփուել դրացի ազգերի հետ, որոնց յարձակմունքներից պաշտպանուելու համար՝ հարկ էր բոլոր ցեղերը միացնել և մէկ մարմին կազմել նրանից՝ մէկ անձի հրամանի և իրաւունքների տակ։ Այս բանը կատարեց

Արամը, որ միապետական իշխանութեան սկիզբը դրեց Հայաստանում։ Արամի հաստատած միապետութիւնը ժողովրդական կեանքի հանգամանքներից բղխելով և ոչ իշխանական փառասիրութիւնից՝ արդիւնաւոր հետևանքներ կ'ունենար հայոց համար, եթէ Ասորեստանի տիրապետութիւնը չընդհատէր այդ բնական ու պարզ կառավարութիւնը։ Նինուէի թագաւորները ուրիշ նահանգների պէս Հայաստանն էլ կառավարեցին մինչև ութերորդ դարի սկիզբը և նրանից յետոյ էլ մինչև Պարոյր՝ ընիկ կուսակալների ձեռով, որոնց գլխաւոր պարտքն էր հարկ հաւաքել՝ մէկ մասը թագաւորութեան և միւսը իրանց պիտոյքի համար։ Նրանք իրանց ձեռքի տակ ունէին բազմաթիւ դատաւորներ, որոնք ցրուած էին երկրի բոլոր նահանգներում և փոքրիկ գաւառներում։ Այս վերջինները ունէին իրանց տեղական կառավարիչները, որոնք առանձին խորհրդի միջնորդութեամբ հոգում էին ժողովրդի պիտոյքը։

Տարակոյս չկայ, որ այս վարչական ձևը առանց ազդեցութեան չմնաց հայոց կառավարութեան վրայ Պարոյրի և նրա յաջորդների ժամանակ, որոնց կառավարութեան եղանակի վրայ թէև ոչինչ չենք իմանում, այնուամենայնիւ հաւանական է, որ սրանց կամ աւելի ճիշտ՝ Տիգրանի ժամանակ, մտած լինին հայոց մէջ առաջին կարգաւորեալ կառավարութեան ձևերը՝ բարեկարգ դատաւորներով, գլխաւոր օրէնքներով և դաշնագրութիւններով և այլն, որոնք պարսից և յունաց լեզուով էին գրւում։

Ս. Պալասանեան

---

## 123. ՀՈՂԱԳՈՐԾՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԱՌԵՒՏՈՒՐԸ ՀԱՅՈՑ ՄԷՋ

Հայերը ի բնէ ժիր և աշխատասէր ժողովուրդ լինելով՝ շատ վաղ ժամանակներից իրանց տուին երկրագործութեան և անասնապահութեան։ Հայաստանի բերրի դաշտերն ու ճոխ արօտատեղիքը այն բնական ձգտողութեան զօրաւոր պատճառներն են։ Բացի սրանից՝ զրադաշտական

վարդապետությունը երկրի մշակությունը մարդուս հարկավոր առաքինություններից մինն էր համարում։ Հայաստանի արգավանդ դաշտերը տարէ ցտարի առատությամբ տալիս էին ցորեն, գարի, բրինձ, հովիտներն էլ, որոնք լի էին արօտներով, անուցանում էին անհամար ընտանի կենդանիներ՝ ձի, ջորի, գոմէշ, ոչխար, այծ, էշ ու կով։ Բացի սրանից՝ իւրաքանչիւր նահանգ կամ գաւառ կլիմայի և դրութեան համեմատ՝ տեսակ տեսակ բերքեր ու հանքեր էր տալիս. հիւսիսային արևմտեան կողմերը տալիս էին աղ և բիւրեղ, Աղձնիքը և Տուրուբերանը ունէին պղնձի, երկաթի և կապարի հանքեր, Արարատը և Սպերը ոսկի, Փայտակարանի կողմերը բամբակ, Տուրուբերանը՝ գազպէն ու մեղր, Գողթան գաւառը՝ անուշահոտ ու առատ գինի, Տայքը՝ թուզ, նուռ, սերկեւիլ ու նուշ, Ուտի նահանգը՝ ձիթենի, Այրարատը որդան կարմիր ներկը. Երասխի ափերը և Սիւնեաց, Փայտակարան նահանգների անտառները տալիս էին ամեն տեսակ ազնիւ փայտեր, որոնց գործ էին ածում պալատների շինութեան համար։

Այսպիսի բնական ու արուեստական բերքերով լի երկիրը, ժողովրդեան պիտոյքը լցնելուց յետոյ, բնականաբար ընդարձակ վաճառականութեան ասպարէզ պէտք է բանար հայոց համար։ Եւ յիրաւի, հայերը նշանաւոր էին իրանց վաճառականութեամբ ամենահին ժամանակներում։ Հայաստանը թէև ցամաք երկիր է, բայց իր շուրջը երեք ծով ունի, մէջը չորս երևելի գետ, որոնց միջնորդութեամբ միանում է ծովերի հետ։ Ճորոխ գետով կապւում է Սև ծովի հետ, Երասխ գետով միանում է Կասպից ծովի հետ, Եփրատ ու Տիգրիս գետերով միանում է մէկ կողմից Ովկիանոսի հետ, իսկ Եփրատը Սամոսատի և Մարաշի կողմից մօտենում է Միջերկրական ծովին։ Այսպիսի դիրք ունենալով՝ Հայաստանը դիւրութեամբ կարող էր վաճառականական յարաբերութիւններ ունենալ նոյն ժամանակի բոլոր ծանօթ ազգերի հետ։

Բայց ծովային վաճառականութիւնից առաջ սկսուեց հայոց մէջ ցամաքայինը. այս վերջինն էլ սկզբումը դր-

ցի ազգերի հետ էր լինում, որոնց հետ հայերը փոխանակում էին իրանց բերքերը։ Յետոյ կամաց կամաց սկսեց հեռաւոր երկրներ գնալ և աւազակների յարձակմունքից ազատ մնալու համար՝ կարաւաններով, այսինքն՝ բազմութեամբ էին ճանապարհորդում սովորութեամբ, մինչև որ սկսան գետերի ու ծովերի վրայ գնալ։ Այնուհետև ցամաքային վաճառականութիւնը, որ մեծ նեղութիւններով էր լինում, երկրորդական տեղն է բռնում և ծովայինը ընդարձակութիւն ստանում։ Արևելքում հայ վաճառականները Երասխ և Կուր գետերով գնում էին Կասպից ծովը, այնտեղից էլ Եաքսարտէս և Ոքսոս գետերով բագտրիացոց, սոգդիացոց, պարթեաց և հնդկաց երկրներն էին գնում և այնտեղից իրանց ապրանքները բերելով Սև ծովով Յունաստան և մինչև Իտալիա էին ուղարկում։ Արևմտեան հարաւում կարաւաններով Կապադովկիայից Փիւնիկէ էին հասցնում հայ երկրի բերքերը։ Տիւրոսի և Տարսոնի վաճառանոցներում վաճառւում էին հայոց երկրի բազմաթիւ ձիերն ու ջորիները. որոնց վրայ Սուրբ-Գիրքն էլ յիշատակութիւն է անում, և յետոյ տարածւում էին դրացի երկիրները, մանաւանդ Պաղեստին։ Նրանց տեղ բերւում էին Հայաստանի վաճառանոցները կամ, ինչպէս որ հները ասում էին, «շահաստան քաղաքները» ոսկի, արծաթ, գոհարեղէն, ազնիւ կտաւեղէններ ու ներկեր, ցորեն, իւղ ու մեղր։

Աւելի յաճախ երթևեկութիւն ունէին հայերը Նինուէ ու Բաբելոն, ուր Եփրատ ու Տիգրիս գետերի միջնորդութեամբ մեր վաճառականները տանում էին Հայաստանի գինին, մրգեղէնները, փայտը, տախտակը և ուրիշ վաճառքները, ու նրանց տեղ բերում էին Բաբելոնի գոյնզգոյն թանկագին կտաւեղէնները, կերպասները, գորգերը, որոնց մասին հարևանցի ակնարկում է Մ. Խորենացին։ Հերոդոտոսը այսպէս է նկարագրում Բաբելոն գնացող հայ նաւերի կազմութիւնը. «Հայաստանում, ասում է նա, նաւերի կողերը ուռիներից են շինում և յետոյ դրսից մորթով պատում են. նաւի ո՛չ առաջին կողմը յայտնի է, ո՛չ յե-

տինը, սուր չեն, այլ վահանի նման բոլորակ»։ Այսպիսի նաւերի մէջ ապրանք բարձելով՝ մանաւանդ գինի, երկու մարդ թի քաշելով, ասում է, տանում էին գետի վրայ»։ Յետոյ աւելացնում է. «Այս նաւերի մէջ մեծեր էլ կան, փոքրեր էլ. ամենից մեծերը մինչև 1000 տաղանդ բեռն էին տանում։ Իւրաքանչիւր նաւ ունի իր մէջ մէկ էշ, մեծերը աւելի շատ։ Երբ որ նաւավարները Բաբելոն են հասնում և բեռը թափում, փայտն ու յարդը ծախում են, իսկ մորթիքը էշերի վրայ բարձելով՝ Հայաստան են քշում. որովհետև անկարելի է գետի ընթացքին հակառակ գնալ, այնքան սրընթաց է. հէնց այս պատճառով նաւերը փայտից չեն շինում, այլ մորթուց»։

Ս. Պալյանեան

---

## 124. ՄԵՀՐՈՒԺԱՆ ԱՐԾՐՈՒՆԻ ԵՒ ՍՄԲԱՏ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ

### Ա

Մեհրուժանը Արծրունեաց հայ իշխանական ցեղից էր։ Նա շատ փառասէր էր և մտածում էր մի օր հայոց թագաւոր լինել։

Երբ մեռաւ Արշակ երկրորդը՝ Մեհրուժանը օգտուեց այդ դէպքից, դաւաճանեց իր հայրենիքին, ուրացաւ իր հաւատքը, անցաւ պարսից կողմը և դարձաւ կրակապաշտ։ Պարսից թագաւոր Շապուհը, որ վաղուց ուզում էր վերջացնել Հայաստանում քրիստոնէութիւնը, շատ է ուրախանում Մեհրուժանի հաւատուրացութեանը։ Նա վճռում է, նրա օգնութեամբ նուաճել Հայաստանը և հայերին կրակապաշտ դարձնել։ Մատնիչ նախարարին աւելի գրաւելու համար՝ նա ընծայում է նրան շատ գիւղեր, կնութեան է տալիս իր քոյր Որմիզդուխտին և խոստանում է տալ նրան հայոց թագաւորութիւնը՝ եթէ միայն հնազանդեցնէ իրան հայ իշխաններին և մտցնէ իր մայրենի երկրում կրակապաշտութիւնը։

Փառասէր Մեհրուժանը ուրախութեամբ ընդունում է

Շապուհի առաջարկութիւնը և ստանալով նրանից բազմաթիւ զորք՝ արշաւանք է գործում Հայաստան։ Նա աւերում է շատ գիւղեր և քաղաքներ, առնում է մի քանի բերդեր, գերում է հայ իշխանների կանանց, հաւատացած լինելով, որ դրանով կըստիպէ նրանց ամուսիններին անձնատուր լինել իրան։ Բացի այս՝ նա շղթայակապ ուղարկում է Պարսկաստան հայ եպիսկոպոսներին և քահանաներին, որ ժողովուրդը մնայ առանց հովիւների. այրում է ձեռն ընկած գրքերը, արգելում է հայերէն խօսել և ստիպում է բոլորին պարսկերէն սովորել։

Վշտացած Ներսէս կաթողիկոսը չդիմացաւ Մեհրուժանի այս չարագործութիւններին. նա ուզեց դրանց առաջն առնել և դիմեց յունաց կայսեր օգնութեան։ Քրիստոնեայ կայսրը խղճաց հայերին, տուեց Յունաստանում գտնուող թագաժառանգ Պապին՝ Արշակի որդուն, օգնականութեան զորք և ուղարկեց նրան Հայաստան։

Շքով և հանդիսով եկաւ Պապը հայրենի երկիրը, որ անհամբերութեամբ սպասում էր իր թագաւորին. խորը խոցուեց նրա սիրտը՝ երբ նա տեսաւ, որ ամենքը սգի մէջ են, երկիրը աւերակ է դարձել և նենգաւոր Մեհրուժանը տիրացել է իր թագաւորութեանը։ Ունենալով պատրաստի զորք՝ նա յարձակուեց դաւաճան իշխանի վրայ և կարճ միջոցում քշեց նրան իր երկրից։

Զարասիրտ Մեհրուժանը ուզեց իր պարտութեան վրէժն առնել հայ նախարարներից. նա հրամայեց բերդապահներին՝ պարիսպներից կախել գերած կանանց և թողնել նրանց դիակները գիշակեր թռչուններին, ապա ինքը վախկոտ նապաստակի նման փախաւ Պարսկաստան։

Բ

Պարսից արքայ Շապուհը սաստիկ չարանում է իր սկսած գործի անաջողութեան համար. նա հաւաքում է անթիւ զորք և նոյն Մեհրուժանի առաջնորդութեամբ ուղարկում Հայաստան։ Յունաց կայսրը, իմանալով այս մասին՝ անօգնական չէ թողնում Պապ թագաւորին և տա-

լիս է նրան ընտիր զօրք՝ պաշտպանելու անօրէն թշնամիների դէմ։ Պատերազմը Զիրաւ դաշտումն էր։ Երկու կողմի զօրքերը վստահութեամբ ճակատ ճակատի են տալիս։ Սկսւում է կատաղի կռիւը. զէնքերի շաչիւնը, զինուորների աղաղակները դղրդեցնում են դաշտը։ Հայ իշխանների մանուկները իրանց կամքով նոյնպէս վազում են կռուի դաշտը առաջնորդութեամբ Սմբատ Բագրատունու, որ ասպետական ցեղից էր [1]). Նրանք խրոխտ կերպով ձի նստած, վահաններով զինուորուած՝ յարձակւում են իրանց հակառակորդ պարսիկ մանուկների վրայ և նիզակահար անելով՝ գետին են գլորում նրանց դիակները։

Արիւնահեղ տեսարանին վկայ էր Մեծն Ներսէսը, որ նստած Նպատ լեռան գագաթի վրայ, ձեռքերն երկինք ամբարձած՝ խնդրում էր Ամենակարողի պաշտպանութիւնը քրիստոնեայ զինուորներին։ Ահեղ էր պատերազմը. զինուորները կռւում էին անասելի քաջութեամբ, կարծես ամեն մէկը ուզում էր զարդարել իր գլուխը յաղթութեան պսակով։ Յանկարծ, կռուի ամենաթէժ րոպէին, երկինքը ծածկւում է ամպերով, մութ է պատում չորս կողմը... Բարձրանում է սաստիկ հողմ, որ փչում էր ուղղակի պարսից դէմ։ Ձայն, աղաղակ է լսւում թշնամեաց գնդերի մէջ, պարսից զինուորները շփոթւում են և յուսահատուած սկսում են փախչել։ Բայց Մեհրուժանը յետ է մնում փախուկ պարսիկներից. նրա ձին վիրաւորուել էր։ Սմբատ քաջը շտապով վրայ է հասնում, կալանաւորում է նրան և լաւ է դատում՝ չտանել նրան հայոց բանակը, որովհետև երկիւղ էր կրում, որ Մեծն Ներսէսը կարող էր իր մեծահոգութեամբ խղճալ դաւաճանին և ազատել նրան մահից։ Այս պատճառով նա օգտւում է դէպքից, որ նոյն տեղում կրակի շուրջը նստած են եղել մի խումբ մարդիկ. վերցնում է նրանցից հրաշէկ շամփուրը և պսակաձև բոլորելով այն կալանաւոր մատնիչի գլխով՝ ասում է. «պսակում եմ քեզ, Մեհրուժան, որովհետև դու կամենում էիր լինել հայոց

[1]) Այս ցեղի իշխանները ասպետ էին կոչւում այն պատճառով, որ նրանք էին թագ դնում հայոց թագաւորների գլխին։

թագաւոր. իբրև ապետ դնում եմ այս թագը քո գլխին։ Զլիմացաւ այս տանջանքին Մեհրուժանը. նա պատժուեց իր անթիւ չարագործութիւնների համար այս խայտառակ մահով։

Դ. Դ.

---

## 125. ԱՒԱՐԱՅՐԻ ԿՌԻՒԸ

Բոլոր ուխտապահները որ Ագուանքից եկած և Այրարատում դադարած էին ձմեռ ժամանակ, մեծ զատկի տօնին ուրախութեան աւետիս տուին իրարու կենարար յարութեան պատճառով. մի քանի օրից յետոյ լսեցին, թէ զօրք է եկել Հեր և Զարևանդ գաւառը։

Մեծն Վարդան բոլորովին չթերահաւատեց և չվախեցաւ. սիրտ տուեց ինքն իրեն և քաջալերեց զօրքերին։ Իմաց արաւ ուխտապահներին, որոնք տօն օրերի պատճառով իրենց տներն էին գնացել և ասաց. «Ահա՛ մեծ գունդ է եկել հասել ու բերում է աստուծասէրների համար երկնաւոր պսակներ. դէհ, ով ցանկանում է առնել, թող շտապի. իսկ թէ ուրիշ կերպ մտածող կայ ձեր մէջը, ինչպէս ուրիշները, լաւ է թող դադարի մնայ, ուր որ հաճելի կլինի, որովհետև ոչ ոք պսակ ընդունել չի կարող, եթէ չտանջուի»։

Այս որ լսեցին ճշմարտութիւն և անմահութիւն սիրողները, շտապեցին եկան Վարդանի յետևից. և հրամայեց նոցա ժողովուիլ Արտաշատում, որովհետև դեռ իւր ձեռքն էր բոլոր երկիրը։ Այնտեղից ուղարկեց Վարդան բոլոր մեծամեծների հաւանութեամբ՝ Ամատունեաց ցեղից մէկ իշխանի Առանձար անունով, մօտ երեք հարիւր ձիաւոր զօրք էլ հետը, որ գնան լրտեսեն թէ ի՞նչքան է Պարսից զօրքը։ Առանձարն և այն զօրքը որ նորա հետ էր, տեսան պարսից բանակը, և մի զօրեղ վերջապահ թևի վերայ ընկնելով, շատերին սրերի վերայ հանեցին[1]), ուրիշներին էլ

[1]) Այսինքն կոտորեցին, թրէ անցուցին։

փախցրին Պարսից զօրքի մէջ ձգեցին ու իրենք ողջ առողջ ուրախութեամբ յետ եկան Հայոց բանակը և պատմեցին Աստուծոյ ցոյց տուած զօրութիւնը. զօրագլուխների մասին էլ պատմեցին թէ Մուշկան Նիւսալաւուրտն և Դղոմն են. այն էլ հաղորդեցին, որ թշնամին շուտով կրհանի Հայաստանի միջին գաւառները։

Այս որ լսեց սպարապետը՝ շտապեցան Պարսից դէմ գնալու, գուցէ, ասացին, հէնց այն տեղ Հեր և Զարևանդ գաւառում կարելի լինի վերջ տալ պատերազմին։

Բայց աւելի շտապով գալիս էր Պարսից զօրքը և հասաւ Արտազ գաւառը Աւարայր գիւղի մօտ մի շրջափակուած տեղ Տղմուտ դաշտի վերայ, նորա մէջ և բանակ դրին պարսիկները։

Պենտէկոստէի ուրբաթ օրը եկան հասան նոյն տեղերին մօտ և Հայոց զօրքը։ Եւ բոլոր զօրքին հանդէս արին տեսան, որ վաթսունը վեց հազար մարդ կայ թէ հեծեալ և թէ հետևակ։ Եկել էին նոցա հետ սուրբ Յովսէփն ու Ղևոնդ երէցը և ուրիշ շատ քահանաներ։

Անպատրաստ գտնելով Պարսից զօրքը, թէ կամենային կարող էին մանաւորապէս վնաս տալ նոցա. բայց այն օրը թոյլ թողին ու հանգստացան։ Պարսից բանակի զօրքին մօտիկ՝ իրիկուայ ժամանակ իրենց սովորութեամբ աղօթք և ժամասացութիւն արին և չափաւոր ուրախութեամբ և կերակուրներով սկսեցին զուարճանալ։ Այս ամէնը կատարելուց յետոյ սուրբ քահանաներից հրաման առան, որ բոլոր գիշերը արթուն մնան և աղօթքով անց կացնեն։ Սուրբ երէցն Յովսէփ, որ կաթողիկոսութեան աթոռն էր կառավարում, հրաման տուեց սուրբ Ղևոնդին, որ խրատ տայ ժողովրդին և քաջալերէ։ Սուրբ Ղևոնդն էլ բոլոր գիշերն առանց ձանձրանալու ուսուցանում էր ամէնքին՝ առակներ բացատրելով. նոցա միտքն էր ձգում ամենից առաջ սուրբ Գրիգորի անպատմելի համբերութիւնը, յետոյ բոլոր ուրիշները. «միքանիսը, ասում է, տանջանքով ու մահով, մի քանիսը պահքով ու գետնատարած անկողիններով, ուրիշներն աղքատասիրութեամբ, շատերն

էլ աշխարհաշինութեամբ և արդար դատողութեամբ երևելի են եղել և Աստուծուն ընտրելի. որովհետև ամէնքին էլ մարդասիրութեան վիճակ չի պատահիր, այլ ժամանակին յարմար, ինչոր Աստուած պարգևէ, և առնողները պարտաւոր են արդար վաճառականութեամբ գնել անցաւորի տեղ անանցը։ Թէոր մահը մահով պիտի մեռնի, պէտք է չվախենանք Քրիստոսին մահակից լինելու. որովհետև ում հետ որ մեռնում ենք, նորա հետ և կենդանութիւն կառնինք։ Բոլոր ուրիշները, որ հաւատի համար քաջութիւններ արին զանազան դարերում, մարդիկներից գովեստ առացան և Աստուած էլ նոցա արդարացրեց։ Չէ՞ որ մի և նոյն Տէրն է սկզբից մինչև հիմայ և մինչև յաւիտեան։ Այժմ մեր յոյսը մեզ երկու կերպ է երևում. թէոր մեռնինք, կեանք է. թէոր մնացնենք, դարձեալ նոյն կեանքն է մեր առաջը»։

Ուրիշ շատ խօսքեր ասաց և քաջալերեց մեծամեծներից ամեն մէկին երանելի սուրբ Յովսէփի հետ միասին։ Նոցա վարդապետութեանը ուշադրութեամբ ականջ դնելով երանելի Վարդանը խօսել սկսեց զօրքի հետ և ասում է.

«Շատ պատերազմներ մտած եմ ես, դուք էլ ինձ հետ էք եղել. պատահել է, որ քաջութեամբ յաղթել ենք թշնամիներին, պատահել է, որ նոքա են մեզ յաղթել. բայց այն քաջութիւնները անարգ և անօգուտ եմ համարում և այն շատ պարգևներն էլ ոչինչ բան են. որովհետև այդ բոլորն էլ անցաւոր են, Զլինի թէ հեթանոսների շատութիւնիցը վախենանք և ահ քաշենք. թէոր մեր կեանքի վերջը եկել է, պատերազմի բերած սուրը մահուն ընդունենք նորան ուրախ սրտով, միայն թէ մեր ցոյց տուած քաջութիւնների մէջ վատութիւն չխառնենք։ Ես մոռանալ չեմ կարող, ինչպէս մենք անօրէն իշխանին խաբեցինք, երեսանց նորա չար կամքը կատարեցինք մեր սիրելիների պատճառով, որ մեծ նեղութեան մէջ էին, մենք հնար էինք փնտրում նոցա ազատելու. քանի որ նոցա ընաւ օգնել չկարողացանք, անկարելի բան է, որ մարմնաւոր սի-

րու համար՝ Աստծուն մարդուս հետ փոխենք։ Երբեք կռուի մէջ Աստուած ինքը մեզի օգնեց մեծ հրաշքով. քաջութեան անունը ժառանգեցինք, թագաւորի զօրքերը կոտորեցինք, մոգերին անողորմաբար մեռցրինք, կռապաշտութեան պղծութիւնը զանազան տեղերից սրբեցինք. եթէ ուրիշներին աստուածային օրէնքների անունով կոտորեցինք ու մեր անձերին պարծանք ժառանգեցինք, ի՞նչքան աւելի կըլինի, եթէ մենք մեր տիրոջ Յիսուսի Քրիստոսի անունը վկայելով մեռնինք, որին երկնաւորներն անգամ փափագում են, եթէ հնար լինի։ Այն օրը, երբ մարդիկ մեր չար գործի մասին լուր առան, շատ արտասուք թափեցին թէ եկեղեցիներում և թէ մեր սիրելիների մէջ. մեր ընկերներն անգամ մեզ դառն մահ սպառնացան. մեր ծառաներն անգամ մեզանից հեռու էին փախչում, և որ ամենից գլխաւորն է, ոչ միայն մարդիկ աշխարհքիս վերայ, այլ և հրեշտակներն երկնքում իրենց երեսները մեզանից դարձրին, որ չըլինի թէ տխուր դէմքով նայեն մեզ վրայ։ Եւ ահա եկել հասել է ժամանակը, որ ամէն մի վատ անուն մեզանից հեռու ձգենք։ Վախը թերահաւատութեան նշան է. մենք թերահաւատութիւնը մեզնից վաղուց հեռացրել ենք. նորա հետ միասին թող վախն էլ փախչի մեր մտքից ու մեր խորհուրդներից։

Առաքինի զօրավարը կրկին քաջալերեց ծածուկ ամեն մէկին, և բոլոր պակասութիւնները հոգաց իրենից և ընկերներից, ո՛վ զէնք չունէր՝ զէնք տուեց, ով հագուստ չունէր՝ հագուստ, և ով ձի չունէր՝ ձի։ Առատ ռոճիկներով[1] ուրախացնում էր ամէնքին. քաջ մարդիկների յիշատակարանները միշտ կըրկնում էր նոցա առաջ. Մակաբայեցւոց երևելի նկարագրութիւնը ձեռքն առած՝ կարդում էր բոլորի առաջ. զօրականի միտքն էր ձգում, թէ ինչպէս Մատաթիայի ազգատոհմը բաժան բաժան եղաւ. մեհեանները շինեցին, Աստծու ճանապարհից դուրս եկան և ընդունեցին մահուան պատիժը սուրբ միաբանեալների ձեռքից։

[1]) Օրական պաշար. սնունդ։

Երբոր այսպէս խօսաւ պրծաւ սուրբ զօրավարը, հաւախօսի ժամանակ հրամայեցին սուրբ Յովսէփն ու Ղևոնդը բոլոր քահանաների հետ միասին ժամասացութիւնը կատարել։ Սեղան կազմեցին, ամենասուրբ Խորհուրդը կատարեցին, աւազան կազմեցին, թէ որ զօրքի մէջ մի երախայ կար, գիշերը մկրտեցին. առաւօտեան հաղորդուեցան սուրբ Խորհրդին. և բոլոր զօրքի բազմութիւնն աղաղակեց ու ասում էր. «Թող հաւասարէ Աստուած մեր մահը արդարների մահի հետ և չմատնէ իւր եկեղեցին հեթանոսների ձեռքը»։ Այսպէս շտապում էին առաջիկայ գործին ձեռք տալու, որովհետև արևը դուրս գալուն մօտ էր և պարսից գունդը պատրաստութիւն էր տեսնում պատերազմ սկսելու։

Պարսից գնդի զօրավարն երբ տեսաւ առհասարակ թէ էլ յոյս չկայ ցրուել Հայերին ամուր միաբանութիւնից, յառաջ կանչեց անօրէն Վասակին և բոլոր ուրացեալ հայ իշխաններին, սկսեց հնարներ իմանալ նոցանից թէ ինչպէս պէտք է յաղթեն, հրամայեց յառաջ բերել փղերի երամակները, և ամեն մէկ փղին երեք հազար զինուորուած մարդ նշանակեց. խօսել սկսեց արքունի հրամանով մեծամեծների հետ ու ասաց. «Միտք բերէ թող ամէն մարդ մեծ թագաւորի հրամանը. լաւ է մահ ընտրէք քանթէ կեանք վատութեամբ. դուք ինքներդ լաւ գիտէք հայերի քաջութիւնը և իւրաքանչիւր մարդու անձնազոհութեան հոգին»։ Նաև նոցա միտն էր ձգում շատ ընկերակիցներին, որոնք թէև պատերազմից ազրեցան, բայց սրով ընդունեցին իրենց մահուան վճիռը, նոցա որդիքն ու աղջիկներն աքսորուեցան և բոլոր հայրական գաւառները ձեռքերից առան։ Կարգի բերեց բոլոր զօրքը և մեծ դաշտի երկայնութեանը ճակատ կազմեց. հրաման տուեց, որ գնդի աջ կողմից պատրաստ գտնուին Հայոց զօրավարի դէմուդէմը։

Քաջ Վարդանը բոլորի խորհրդով զօրագլուխներ նշանակեց. կռուի տեղը որոշեց բոլոր դաշտի երեսովը Աւրեաց զօրքի դէմուդէմը՝ Տղմուտ գետի ափում. առաջին

գունդը Սրբունեաց Ներշապուհ իշխանի ձեռքը տուեց և նորան նիզակակից նշանակեց Մոկաց մեծ իշխանին։ Երկրորդ գունդը տուեց Խորէն Խորխոռունու ձեռքը, և նորան նիզակակից նշանակեց Ընծայինին և Ներսէհ Քաջբերունուն։ Երրորդ գունդը տուեց Վանանդեցի Թաթուլին, և նորան նիզակակից նշանակեց Տաճատ Գնթունուն։ Իւր վերայ առաւ չորրորդ գունդը, և իրեն նիզակակից նշանակեց Արշաւիրին և իւր եղբօր Համազասպեանին [1])։

Այսպէս կազմուեցան, տասն սուրբ քահանաների օրհնութիւնը, Աստուած կանչեցին և երկու կողմն էլ գազանացած զօրութեամբ յարձակուեցան իրար վերայ։ Աղմուկի խստութիւնից և ձայների շատութիւնից սարերի քարանձաւները շարժ էին գալիս։ Վահանաւորների կոփկոփուլին և աղեղների լարերի ճարճատիւն ահաւասարակ ամենքի ականջը խլացնում էին, խումբ եղած բոլոր բազմութիւնը, գետը մէջերն առան փակեցին. և պարսից գունդը գետի դժուարութիւնից վախենալով տեղնուտեղն սկսեց որդունքի նման գեռալ, սաստիկ պարնուելով իրարու, երկու կողմից էլ շատ վիրաւորներ գետին ընկած դիաթաւալ էին լինում։

Քաջ Վարդանը պարսից գնդի աջ թևը կոտրելով գազանների կողմն էր ձգում. Մինչև անգամ մատեան գունդը քանդուեցաւ բաժանուեցաւ իւր պինդ կազմուածքից։ Այնպէս որ սկիզբը պարսից զօրքը փախչել սկսեց. իսկ Հայոց զօրքի միւս բազմութիւնից, ով որ կամաւ չէր ցանկացել երկնային բարութիւններին հասնելու, նոյնպէս փախաւ կորաւ։ Մուշկան Նիւսալաւուրտը տեսաւ, որ հայոց գնդից մի քանիսը բաժանուել են և յետ են մնացել սարերի հովիտների մէջ, այդ պատճառով սիրտ տուեց Արեաց զօրքին, որ իւր շուրջն էին և Վարդանի գնդի դէմն էին տեղ առել։ Այնտեղ երկու կողմն էլ զգացին իրենց յաղթութիւնը. քաջ Վարդանը իւր քաջ նիզակակիցների հետ միասին բաւական շատ կոտորած պատճառեց այն տեղումը, և ինքն

---

[1]) Ըստ Ղազարու «մէջտեղի գնդին գլխաւոր նշանակեց։

էլ արժանացաւ կատարեալ նահատակութեան ընդունելու։

Պատերազմի երկարելուց օրն էլ տարաժամել սկսեց և երեկոն վերայ հասաւ. շատերի մահուան բաժինները հասել էին, և երկու կողմի մէջն էլ մեծ իրարանցումն էր թագաւորած։

Նոքա, որոնք մնացել էին, ցրուեցան ամուր ձորերի լեռնադաշտերը, և երբ պատահում էին իրարու, մէկ անգամ էլի նորից իրար արիւն էին թափում. և մինչև արևի մայր մտնելն անդադար կատարուում էր նոյն անախորժ գործը։

Որովհետև գարնանային էր ժամանակը, ծաղկալից դաշտերը արիւնի գետ էին դառել. մէկը որ տեսնում էր այն ընկած դիակների ահագին կոյտը, սիրտը դող էր ելնում և աղիքը կտրատում. ոչ թէ կողմ կար, որ յաղթող էր, և կողմ էլ կար՝ որ յաղթուած, այլ քաջերը քաջերի դէմ ելան և երկուսն էլ յաղթուեցան։

Որովհետև Հայոց զօրավարը մեծ պատերազմի մէջ ընկած էր, չկար այնուհետև մի գլխաւոր, որ նորա մօտ ժողովուէին մնացած գունդը. ապրողներն աւելի շատ էին քանթէ մեռնողները. և ընկան նոքա երկրի ամուր տեղերը, զօռով տիրեցին շատ այնպէս բերդերի, որ ոչոք չէր կարող առնել։

Որոնք որ այն ժամանակ սուրբ Վարդանի հետ նահատակուեցան, այս մարդիկն են. Խորխոռունեաց ցեղից Խորէն, Պալունեաց ցեղից Արտակ, Գընթունեաց ցեղից Տաճատ, Դիմաքսեան ցեղից Հմայեակ, Քաջբերունեաց ցեղից Ներսէհ, Գնունեաց ցեղից Վահան, Ընծայնու ցեղից Արսէն, Սրուանձտեան ցեղից Գարեգին։ Եւ ինչպէս շատ հետամուտ եղանք, իմացանք նահատակուածների թուի մասին, պատերազմի տեղում աւագ նախարարների հետ մարտիրոսական պսակ ընդունեցին երկու հարիւր եօթանասուն վեց մարդ. և նոցա թիւը, որոնց ամբոցներից իջուցին սպանեցին, եօթը հարիւր յիսուն մարդ. բոլորը միասին հազար երեսուն վեց (1036) մարդ։

Իսկ պարսից զօրքից՝ պատերազմի օրն ընկածների

թիւն է (ինչպէս որ հաստատ տեղեկացել Պարսից զօրագլուխներից և ասել են մեզ), երեք հազար հինգ հարիւր քառասուն չորս (3544) մարդ։ Ուրացեալների կողմից կոտորուել են 3544 մարդ։ Մուշկան Նիւսալաւուրտը, երբոր տեսաւ թէ իւր զօրքը եօթն անգամ աւելի է փախուել քան թէ հայերինը, հանգստութիւն չէր կարող գտնել իր մտքի մէջ։

Եղիշէ, Ղազար. Փ.

## 126. Ե. ԴԱՐՈՒ ՀԱՅ ԿԱՆԱՅՔ

Իսկ թէ բոլոր Հայաստանի մէջ ընդհանրապէս որքան են երանելի առաքինիների կանայքը՝ թէ կապուածների և թէ պատերազմում սպանուածների, այդ ես համարել չեմ կարող։ Մօտ հինգ հարիւրին անուն անուն ճանաչում եմ։ Թէ մեծ, թէ փոքր ամենքն էլ առհասարակ միմիայն հաւատի առաքինութիւնն ունէին զգեցած. և կանանց բնական տկարութիւնը զօրացնելով մարդիկներից աւելի քաջ և յաղթող երևեցան։

Այն քնքոյշ կանայքն առհասարակ թէ նախարարների աղջիկներն և թէ մեծամեծների կանայքը՝ շարմղուն հացի տեղ կորեկ էին ուտում, անարատ գինու տեղ՝ ջուրը չափով էին խմում. կերպասի և ոսկեկար հագուստի տեղ՝ հաստաբակ բրդէ հալաւ էին հագնում. և զանազան տեսակ անկողինների փոխարէն՝ չոր խոտի վերայ էին պառկում գետնի երեսին. և նոքա՝ որ առաջ ընկուտ և քնասէր էին՝ հրեշտակների նման անքուն էին մնում։ Իւղով չօծեցին, սանտրով չկոկեցին իրենց գլխի մազերը։ Եւ ինչ որ անկարելի է կանանց համար չկատարել, այն է՝ շատախօսութեանն և շուտ շուտ քօղի տակից այս այն կողմ աչք ձգելուն՝ նոյնպէս յաղթեցին. և իրենց լեզուներին կապ դրին աւելորդ խօսք չխօսելու համար։

Թէպէտ և ամենքն էլ ձեռնասուն սպասաւորներ ունէին, բայց չէր երևում նոցա մէջ թէ որն է տիկինը և

որն աղախինը. ամենքն էլ մէկ հագուստ ունէին և երկուսն էլ միակերպ չոր գետնի վերայ էին պառկում. մէկը միւսի համար տեղ չէր ձգում. չունէին նոքա ջոկ կերակուր եփողներ և ոչ էլ փոքրերը մեծերին հրեսարբիչ չէին տալիս։ Այս քնքոյշ կանանց ձեռներին սապոն չդիպաւ և հանդէսի ժամանակ զուարթութեան համար իւղ չմօտեցաւ նոցա. առաջներն խատակ ամաններ չդրին և ուրախութեան համար բաժակներն առաջ չեկան. նոցա դռները մի խընդրակ էլ է չբացեց և պատուական մարդիկներից ոչ ոք չըհրաւիրուեցաւ նոցա դահլիճները. նոցա մօքից չանցաւ թէ մի ընտանի դայեակ կամ գոնէ մի հարազատ սիրելի ունին աշխարհիս վերայ։ Փոշի ու ծուխ նստաւ նորեկ հարսների սրահների և լուացարանների վրայ. և սարդի ոստայններ ձգուեցան նոցա հարսնութեան սենեակներում. նոցա սեղանի պարագաներն անչքացան, նոցա ապարանները քանդուեցան, կործանուեցան և տակն ու վրայ եղան նոցա ապահովութեան ամրոցները։ Զորացան, սևացան ծաղկալից բուրաստաններն և գետնի հետ հաւասար եղան գինեբեր այգիների տունկերը։ Նոքա իրենց աչքերովը տեսան իրենց աշխատանքի յափշտակումը և իրենց ականջներովը լսեցին իրենց սիրելիների չարչարանքը։ Նոցա գանձերն արքունիս գրաւեցին, և չմնաց ամենևին մի զարդ անգամ նոցա երեսի վերայ։

Հայաստանի այն փափուկ մեծացած տիկինները, որ պահուել մեծացել էին զանազան կակուղ ծածկոցների տակ և պատգարակների մէջ, միշտ բոբիկ և հետիոտն էին գընում ժամ՝ աղօթելու։ Նոքա, որ երեխայութիւնից հորթի ուղեղով և որսի փափուկ մսով էին սնուել, վայրենիների նըման խոտակեր կեանք էին վարում մեծ ուրախութեամբ. Նոցա մարմինների կաշին սևացաւ, ներկուեցաւ, որովհետև ցերեկն արևից էին այրւում և բոլոր գիշերն էլ գետնի վերայ էին ընկած։ Նոցա բերանից միշտ և հանապազ սաղմոս էր լսւում. և նոցա գլխաւոր մխիթարանքը մարգարէների գրքեր կարդալն էր. կախ էին բացել և հակառակում էին կարևոր մեղքերին. սիրով լուացին նախանձի կապու-

տագոյն ներկուածը. ապահովութեան արմատը կտրեցին և խոնարհութեամբ ոտնակոխ արին ամբարտաւանութիւնն ու հասան երկնաւոր բարձրութեան։

Այն այրի կանայքը, որ նոցա մէջն էին, նորից առաքինութեան հարսներ եղան. իսկ կապուած նախարարների կանայքը կամաւ կապեցին իրենց մարմնաւոր ցանկութիւններն և հաղորդակից եղան սուրբ կապեալների չարչարանքին։ Իրենց կեանքում՝ նմանեցան մահուամբ նահատակուած քաջերին, և հեռուից վարդապետ և մխիթարող եղան բանտարկուածներին։ Իրենց ձեռներով աշխատեցան ու կերակրուեցան և թագաւորական ռոճիկը տարէցտարի թոշակ էին անում և ուղարկում էին ամուսիններին մխիթարելու։ Շատ ձմեռների ձիւնիր հալան, գարուն եկաւ, նորեկ ծիծառներ հասան. կենցաղասէր մարդիկ տեսան այդ և ուրախացան, բայց նոքա երբէք չկարողացան տեսնել իրենց ցանկալիներին։ Գարնան ծաղիկները նոցա միտն էին ձգում իրենց հաւատարիմ ամուսիններին, բայց նոցա աչքերը կարօտ մնացին նոցա երեսի ցանկալի գեղեցկութիւնը տեսնելու։

Որսի բարակներն անհետացան, որսորդների ճանապարհները փակուեցան, ջնջուեցան։ Նոցա մարդիկների անունները բնագիրների մէջ յիշուեցան, և ոչ մի տարեկան տօն չկարողացաւ բերել նոցա հեռու երկրից։ Նոցա ճաշատեղերի վերայ նայեցին կանայք և լաց եղան. և ամենայն ատեանի մէջ յիշեցին նոցա անունները. շատ արձաններ դրած էին նոցա անուանը և նոցա վերայ նշանակուած կար իւրաքանչիւրի անունը։

Եւ երբ այսպէս ամեն կողմից նոցա մտքերն ալեկոծ էին լինում, նոքա դարձեալ չթուլացան ամենևին երկնաւոր առաքինութիւնից։ Է՛լ սովորութիւն չարին հարցնելու հեռուից եկած մէկին, թէ Երբ կը լինի, որ տեսնենք մեր սիրելիներին. այլ այն էր նոցա փափագն և խնդրուածքն առ Աստուած՝ թէ ինչպէս որ սկսել են, այնպէս քաջ սրտով և լիքն երկնային սիրով գլուխ հանեն իրենց սկսածը։

Եղիշէ

## 127. ՎԱՍԱԿԻ ՎԵՐՋԻՆ ՕՐԵՐԸ

Մի հանդիսաւոր օր պարսից Թագաւոր Յազկերտ հրամայեց ընթրիքի հրաւիրել բոլոր մեծամեծներին և երեւելի իշխաններին։ Հրաւիրուած էր և Վասակը։ Նա հագաւ այն պատուական զգեստը, որ ստացել էր Թագաւորից. գլխին դրեց ոսկէ խոյրը (գլխարկը), մէջքին կապեց մարգարիտներով և ակնեղէններով զարդարուած ոսկէ գօտին, ականջներից կախեց օղերը, վզից՝ մանեակը, ուսերին գցեց ստմոյրը, և բոլոր ունեցած պատուանշանները հագին՝ գնաց պալատ։ Արքունիքի բակում շղթայակապ նստած էին մի քանի հայ իշխաններ և քահանաներ։ Երբ նրանք տեսան զուգուած և զարդարուած Վասակին՝ սկսեցին ծաղրել նրան և ասել. «Ո՛վ անխելք վաճառական, պատիւդ վաճառեցիր մի քանի կանացի զարդարանքների. բայց իմացիր, որ շատ շուտ կըզրկուես նրանցից»։ Անցնելով դրանց առաջով՝ Վասակը մտաւ ներսի գահլիճը, որ մեծ իշխանների հրապարակն էր, և նստեց։ Այս միջոցին դուրս է գալիս արքունիքից Թագաւորի սենեկապետը, մօտենում է նրան և ասում. «Թագաւորն ուղարկեց ինձ քեզանից հարցնելու, թէ ո՞ր արդար վաստակներիդ համար ես ստացել այդ պատուանշանները»։ Յիշեցրեց այն բոլոր չարագործութիւնները, որոնց համար դատապարտել էին նրան. ասաց, որ նա ապօրինի կերպով տիրեց Սիւնեաց աշխարհին, նենգութեամբ և քսութեամբ սպանել տուեց իր հօրեղբայր Վաղինակին և ինքը ստացաւ նրա իշխանութիւնը։ Դատապարտեց նրան և այլ շատ բաների համար, որոնց վկայ էին բոլոր մեծամեծները։ Վասակը պապանձուեց և իրան արդարացնող ոչ մի բան չկարողացաւ ասել։ Այնուհետև մահուան վճիռ կարդացին նրա գլխին։ Դահճապետն եկաւ, հանեց նրանից այն բոլորը պատուանշանները, որ ստացել էր Թագաւորից, և հագցրեց մահապարտի զգեստ։ Կապեցին նրա ձեռներն ու ոտները, կանացաբար նստեցրին էգ ձի և տարան ձգեցին այն բանտը, ուր գտնւում էին բոլոր

մահապարտները։ Ամեն օր դուրս էին բերում նրան հրապարակ, բոլոր զօրքի առաջ խայտառակում էին և ծաղրում. Կողոպտեցին, հանեցին նրանից ամեն բան, որ ունէր իր հետ, և այնպիսի ծայրայեղ աղքատութեան մէջ էին պահում, որ իր ծառաները հաց էին մուրում և կերակրում նրան։ Նա տուեց իր բոլոր կալուածները, նոյն իսկ կանանց զարդերը արքունիքին՝ նա տուժեց, բայց էլի չըկարողացաւ հատուցանել այն բոլոր պարտքերը, որ դրել էին նրա վրայ։

Այսպէս անարգուեց Վասակը ամեն կողմից. բանտումը նա ընկաւ ծանր ցաւերի մէջ։ Մահուան հոտ փչեց նրա մարմնից, նոյն իսկ ծառաները փախան նրանից։ Միայն լեզուն էր կենդանի նրա բերանում, բայց խոստովանութիւն չէր դուրս գալիս նրա շրթունքներից։ Նա ճաշակեց ամենադառն մահ իր բարեկամներն անգամ ոտի տակ տուին նրան, իսկ թշնամիները սաստիկ հարուածներով էլ չկշտացան։ Եւ չգտնուեց գերեզմանի տեղ այն մարդու համար, որ կամենում էր մատնութեամբ Հայոց աշխարհի թագաւոր լինել։ Նա չէր թողել իր կեանքում ոչ մի չարութիւն, որ արած չլինէր, բայց և չմնաց ոչ մի չարչարանք, որ չանցնէր նրա գլխով մահուան ժամանակ։ Շան պէս սատակեցաւ և էշի նման քարշքշուեցաւ։

Ե ղ ի շ է

Ծառի ճըճին ծառէն է,
Ջար թշնամին տանէն է,
Վա՜յ այն տոհմին, այն ազգին,
Որոյ մատնիչն ազգէն է։

---

## 128. ՎԱՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

Յազկերտի թագաւորութեան եօթն և տասներորդ տարին Վրաց Աշուշայ իշխանն արքունի դրան մեծամեծներից իւրաքանչիւրին անհամար ընծաներ տալով՝ մանաւանդ Միհրներսէհին՝ խնդրեց և առել տուեց թագաւորին,

որ նորան բոխչեն Մամիկոնեան Հմայեակի որդոցը, որոնց առել էր Վասակը գայեակների ձեռքից. և նոքա դեռ շատ երեխայ էին։ Մեծամեծներն էլ յօժարեցին Թագաւորին և նա կատարեց Աշուշայի խնդիրքը։

Մամիկոնեան Հմայեակի կինն անուանի էր և Հայաստանի կանանց մէջ ամենից բարձր էր, ընտիր և խոհեմ։ Նա մեծացրեց Վրաստանում և ուսում տուեց իւր այն որդոցը, որոնց Աշուշան իբրև պարգև խնդրեց Յազկերտից և բերեց իրենց մօր Զուիկի մօտ. այնտեղ Վրաստանում մեծացան մանուկներն և ուսում առան ու ամեն բանի մէջ առաջադէմ ու հռչակաւոր էին. ամեն հասկացող մարդու երևում էին նրանք յաջողակ և զարմանալի. առաջին որդու անունն էր Վահան, երկրորդինը՝ Վասակ և երրորդին՝ Արտաշէս, նրանք մի ուրիշ եղբայր էլ ունէին Վարդ անունով, որ մնացել էր Տայքում, գայեակների մօտ։

Այն ժամանակուայ անպիտան իշխաններն օրէցօր տեսնում էին առաջադիմութեան աճումը Մամիկոնեանների որդոց մէջ. ըստորում նրանք խորհուրդի մէջ ականաւոր էին, խելացի և հնարագէտ. նետաձգութեան մէջ սիրուն և ճիկ տեղին խփող. որսի մէջ թեթև շարժող և ամենից առաջ սպանող. երկու ձեռքից էլ աջողակ էին. նրանցով փայլում էին բոլոր հայոց տանուտէրների ընթրիքները. նրանցով զարդարւում էին ամեն տան մէջ օտարներն ու ընտանիները։ Իրանք և հոգս էին քաշում Արշարունեաց տէր երանելի Արշաւիր Կամսարականի որդոցը (որոնք Վարդանի դստեր ծնունդն են) խրատելու և ուղղութիւն տալու իրենց իմաստութեանն ու արուեստին համաձայն։ Եւ այսպիսի բարեմանութիւններ անելու աւելի արի էր Հմայեակի մեծ որդին՝ Վահանը, որովհետև խելացի, առողջախորհուրդ և բարեսէր մարդ էր։ Մինչև անգամ պարսիկ գործակալները, թէպէտ ակամայ, բայց սիրում և պատւում էին նրան և Թագաւորի առաջը գովում էին նրա լաւութիւնը։ Այնպէս որ Թագաւորն ինքը տարեկալ ծանօթացաւ և լաւերի շարքն էր դնում նրան ու

քոլորի առաջը գովում և պատուի արժանի էր համարում։ Բայց նրա նախահարց գործերը մտաբերելով քաշւում էր արժանաւոր պատիւը տալու նրան, մանաւանդ երբ վրայ-վրայ լսում էր այն նախանձորդների բանսարկութիւնը, որոնց սաստիկ վախեցնում էր Մամիկոնեան Վահանի աջողութիւն ունենալը։

Մաղխազ Գադիշոն և ուրացողների խմբերը՝ երբ տեսնում էին Մամիկոնեան Վահանին լաւ կողմերով այնպէս երևելի զարգացած հնար էին փնտրում, թէ ինչպէս նրան ու նրա եղբայրներին կորցնել կարողանան. պարսիկների միտն էին ձգում նրա նախահարց մասին՝ թէ նրանցից ո՛ր մէկը չէ խռովեցրել Պարսկաստանը. «ուրեմն, ասում էին, երբ և լցէ, սա էլ նոյն խռովութիւնները պիտի հանէ ձեր գլխին»։

Վահանն իր նախանձորդների այսչափ դրգռուելը տեսնելով, գնաց դուռը և հաւատը փոխեց, բայց չկարողացաւ դրանով կապել չարախօսների բերանը, որովհետև այն՝ որ մի ուղիղ խօսք խօսել անգամ չգիտէր հրապարակի մէջ մի իշխանի առաջ, Վահանին ասում էր. Նստում է, ասում էին, և ամենքին քիթուպռունկ է շինում, ամեն բանի մէջ մտնում է և ոչ ոքի չի թողնում գործ կատարելու։ Վահանը մի գործակից ունէր Վրիւ անունով՝ ասորի մարդու որդի, որ չկարողանալով արքունի գործը կատարել, գանգատաւոր էր լինում Վահանի վերայ Պերոզի առաջ թէ «ոսկէհատի գործին ինձ մօտիկ չի թողնում. և ինքն է երկրի բոլոր ոսկին ժողովել ու մտածում է կայսեր մօտը կամ Հոնաց երկիրը գնալ և ոսկին նրանց տալով ուզում է զօրք խնդրել և ապստամբել քեզանից»։ Վահանն էլ շուտով վեր առաւ բոլոր ոսկին ու գնաց Դուռն և ներկայացաւ թագաւորին։ Թագաւորն իմացաւ նրանից թէ ինչքան է ոսկին, որ նա բերել է իւր հետ, և շատ ուրախացաւ. յետոյ Վահանի առաջը նորէն ասել տուեց Վրիւին այն խօսքերը, որ առաջ խօսել էր նրա վրայ։ Վահանը պատասխանեց թագաւորին և ասում է. «ես այնքան կոյր չեմ, որ Արեգաց ոյժը տեսնել չկարողանամ, ես որ՝ դրա

ասելովը՝ ապստամբուել եմ ուզում, դա ինքն էլ լաւ գիտէ, որ մի ծառայ անգամ չունիմ, որ ինձ համար խոհարարութիւն անէ և երկու երեք պատանի անգամ ձեռքիս տակ չունիմ, որ ինձ ծառայեն։ Իմ զօրքիս ույժն այդքան է. թէ որ մի օտար երկիր փախչել ուզենայի, ինչո՞ւ այսքան ոսկին այստեղ կը բերէի»։ Եւ Վահանն արդարացած դուրս եկաւ այն ատեանից և պատուով ճանապարհ ընկաւ եկաւ Հայաստան։

Ղազար Փարպեցի

---

## 129. ՎԱՀԱՆԻ ՄԱՐԶՊԱՆՈՒԹԻՒՆԸ

Այն ժամանակներն Հայաստան եկաւ Անդեկան մարզպանը. սա մի խելացի, մաքուր և հասկացող մարդ էր և կարող էր ճանաչել և ջոկել իմաստունը յիմարից, լաւը վատից. նա հետզհետէ նկատելով Վահանի խելօքութիւնն ու հեռատեսութիւնը, արդարախոհութիւնը, երկրի վերայ հոգս քաշելն և սրտի քաջութիւնը՝ յայտնեց Վաղարշ թագաւորին լիով ամեն բան։

Անդեկանը Հայաստանից եկաւ անձամբ թագաւորի մօտ և ասում է. «համարձակութիւն եմ առնում յայտնել ձեր առաջը թէ անյարմար է ուրիշ մարզպան նշանակել. որովհետև ուրիշ մարզպան, որ Հայաստան է գնում, երկու երեք տարի հազիւ կարող է ճանաչել նախ՝ այն երկրի հեշտն ու դժուարը և ապա նորա մարդիկներին լաւն ու վատը։

Եւ Վահանի պէս մարդու լաւութեան ու յաջողակութեան վերայ նայելով երկար ժամանակ մտածում էի, և երկրի ու թագաւորական գործերի համար լաւ համարելով նորան, վստահութիւն գտայ ասելով, որպէսզի ինչ որ արժանն է մտածէք և կատարէք»,

Անդեկանից որ լսեց այս ամենը, Վաղարշը շուտով հրաման արաւ հրովարտակ գրել Հայաստան և Մամիկոնէից տիրոջն ու Հայոց զօրավարին Հայաստանի վերայ մարզպան նշանակել։

Իսկ Վահանը թէպէտ հայ մարդկանց նախանձոտութիւնը ճանաչելով, դժուարանում էր ընդունելու, բայց թագաւորի հրամանին հակառակելու էլ իրաւունք չունէր. և երբ հրովարտակն առաւ, շուտով մի անդրուվար ուղեց, որ Աստծու տուն գնայ. այս որ լսեցին քաղաքի մարդիկն առհասարակ թէ նախարարներն և ազատները, թէ քաղաքացիք և ռամիկները, մարդ ու կին, ծեր ու տղայ, մինչև անգամ հարսներն էլ ուրախութիւններից առժամանակ մոռացան իրենց հարսնութեան ամօթն ու դուրս եկան առագաստներից և ամենքը վազեցին դէպի եկեղեցի. և Աստծու տունը բաւական չեղաւ բոլորին իր մէջն ընդունելու, և դուրսը լցուեցան եկեղեցու սրահներն և փողոցներն և շրջակայ հրապարակի բոլոր տեղերը։

Եւ այն օրը բարեսէրների համար անչափ ուրախութեան օր էր, իսկ խարդախների համար անմխիթար տրտմութեան օր։

Եւ սուրբ Յովհան կաթողիկոսն ուրախ սրտով եկաւ խաղաղութեան տեղն և խաղաղութեան ողջոյնը տալով ասաց.

«Եկեղեցին սիրողնե՛ր, Առաքեալների որդի՛ք, Քրիստոսի արիւնով փրկուածնե՛ր, մի՛ ծառայեցնէք ձեր հոգիները մարդկանց երկիւղին. տուէք կայսրինը կայսրին և Աստծունն Աստծուն»։

«Ահա դուք եկեղեցին սիրեցիք և եկեղեցին էլ ձեզ սիրեց. թագաւորներին գութ տուեց եկեղեցին. գայլերին գառ դարձրեց. ձեզ փառաւորեց և ճշմարտութեան թշնամիներն ամաչեցին»։

«Իսկ ես այսօր սրտիս ուրախութիւնից և մտքիս ցնծութիւնից ձեռքերս երկինք եմ բարձրացնում և աղաղակում. «Օրհնուի այն Տէր Աստուածը, որ ինձ արժանի արաւ եկեղեցու որդւոցը, որ ինձ էր յանձնել, պատուով ու շքեղութեամբ պայծառացած տեսնելու։ Ո՞ւր են առանց Աստծու գոռոզացածները. ո՞ւր են արիւն թափողները. ո՞ւր են եկեղեցին արհամարհողները, օրէնքը ոտնատակ անողները, սրբութիւն պղծողները, մոխրատուն շինողները, ճշմարտութիւն մոռացողները, արդարութիւն հայհոյողները. փախա՛ն, կորա՛ն, ամօթո՛վ մնացին»։

Ղազար Փարպեցի

## 130. ՋՐՕՐՀՆԷՔԸ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐԻ ՕՐՈՎ

Մի եւրոպացի ճանապարհորդ արեւելքում Հաննովերի Հելտեսհայմ քաղաքացի, կրօնաւոր Վիլլեբրանդ անունով՝ 700 տարի առաջ իր ուղեւորութեան ժամանակ՝ գտնւում էր Կիլիկիայում, ուր երկու ամսի չափ հիւրասիրեց նրան մեր Լեւոն Ա. Թագաւորը։

Վիլլեբրանդ վարդապետը Սիս քաղաքում 1211 թուին ներկայ լինելով հայոց Ջրօրհնէքի հանդիսին, ահա ինչպէս է այն նկարագրում.

«Սիս քաղաքը՝ տէր Թագաւորի մայրաքաղաքն է. բնակիչները անթիւ են և հարուստ. պարիսպ չունի, ուստի նրան աւելի քաղաքաւան կը կոչէի, եթէ մէջը չլինէր հայոց կաթողիկոսարանը։ Սակայն ունի մի ամուր բերդ լեռան գագաթի վրայ, որի ոտքից սկսւում է քաղաքը աստիճանաբար դարիվայր տարածուել։ Ջրօրհնէքի հանդէսը հայերը այս կերպով են կատարում. ծննդեան տօնից տասներկու օր առաջ՝ որ մենք լատիններս խնդումով, կերուխումով ենք անցկացնում, նրանք ապաշխարութիւնով և պասով են անցկացնում, հրաժարուելով մսից, գինուց, ձըկից։ Իսկ բուն խթման օրը՝ ծոմ են պահում, որպէս զի վերջալոյսից յետոյ պատարագ մատուցանեն։ Իսկ երրորդ օրը Քրիստոսի ծննդեան տօնն են կատարում, ասելով՝ Յիսուս նոյն օրը ծնաւ և 30 տարուց յետոյ նոյն օրը մկրտուեց։ Առաւօտուն ամէնքն շտապում էին քաղաքի մօտի գետեզերքը գնալ, ուր որ Թագաւոր տէրն էլ գնում էր՝ այս կարգով. Երբ Թագաւորը զարմանահրաշ ճոխ պճնուած բարձրահասակ ձիու վրայ հեծած էր, նրա կողքից գնում էին Ալեման ասպետների կարգապետը, Սելեկիոյ հիւրընկալ ասպետների բերդապետը. իրանց կրօնակից հազար ընկերներով. յետոյ գալիս է տէր Ռուբէն Թագաւորազը և զօրականների բազմութիւնը գեղեցկազարդ հագնուած, որոնց մարդիկ ամէն մէկ զօրախմբի դրօշները և վառերը տանում էին ձեռներին բարձրացրած և նրանց

տարած ձիերի սանձից բռնած՝ մեծ թագաւորի առաջից գնում էին։ Նրա և այդ խմբի միջով գնում էին շատ զինակիրներ իբրև անձնապահներ թագաւորի, իսկ ժողովրդի բազմութիւնը չորս կողմից ողջունում էր նրան սաստկաձայն աղաղակելով. «Սուրբ թագաւոր»։

Այսպիսի մեծ հանդէսով թագաւորը եկաւ իջաւ գետեզերքում սարքած վրանի տակ. ապա եկան յոյներն իրանց սրբազանով, շատ սրբազան սպասներով, և ապա այնչափ փողերի և երաժշտական նուագների ձայներ էին լսւում, որ աւելի մի հանդէս քան թէ մի թափօր էր ձևանում. Սրանք էլ եկան որոշած տեղը կանգնեցին, և ամենքը սպասում էին հայոց եկեղեցական ուխտին, որ գալիս էր խաչերով, խաչվառներով, ոսկեհուռ զգեստաւորւած, ակնախտիղ ծանրագին սպասներով, իրանց կաթողիկոսով, խոնարհական կերպով վայելչակարգ թափօր կազմած։ Երբոր բոլոր թափօրը մէկ տեղ եկաւ, սկսեցին քաղցրաձայն երգել, գրքեր, աւետարաններ և աղօթքներ կարդալ, օրհնեցին ջուրը, մկրտեցին ս. խաչը, հեղմամբ սրբալոյս միւռոնի։ Այն ժամանակ մէկը գետի մէջ մտաւ և շաքարաբերան կանչեց. «Կեցցէ թագաւորը մեր յաւիտեան». բոլոր բազմութիւնը պատասխանեց. «Ամէն»։ Յետոյ թագաւորը և ուրիշները օրհնած ջրով իրանց ցօղեցին, իսկ տաորիները մերկացած ընկան ջուրը։

«Այս արարողութիւնն աւարտելուց յետոյ, եկեղեցականները յետ դարձան իրանց տեղը. իսկ թագաւորը և զինուորականները փութացին դէպի դաշտերը, և պալատականները երիվարները վազեցնելով, նիզակներ նետելով՝ զինուորական խաղեր արին, ամբողջ օրը մեծ ուրախութիւններով անցուցին։

«Այս էլ գիտցէք, որ տէր թագաւորը այդ Սիս քաղաքի մօտ իրան զբօսանքի մի պարտէզ է պատրաստել, որի սքանչելի փափկութիւնները նկարագրելը, խոստովանում եմ, որ իմ կարողութիւնիցս վեր է»։

## Գ. ՃԱՄԲՈՐԴԱԿԱՆ

### 131. Լեհաստանի հայերը

*Բագրատունեաց հարստութեան անկումից յետոյ ԺԲ. դարում հայերն սկսան գաղթել դէպի Լեհաստան։ ԺԶ. ԺԷ. դարերում հայոց թիւը Լեհաստանում հասաւ մօտ 200,000 հոգու, որոնք բնակուած էին մեծ մասամբ Լեմբերգ (Լվով) և Կամենեց քաղաքներում։ Լեհաստանում հայերը ձեռք բերին մեծ հարստութիւն, և մեծամեծ արտօնութիւններ։ Նրանք իրաւունք ստացան ներքին ինքնավարութեան, որ կոչւում էր վօյթ. դատը վարում էին հայերէն, Մխիթար Գօշի դատաստանագրքով։ Հայերի բարեկեցութիւնը հիմնովին խանգարուեց Նիկոլ Թորոսովիչ անունով հայ հոգեւորականի շնորհիւ, որ ուրանալով հաւատն՝ ընդունեց կաթոլիկութիւն և եզուիտների աջակցութեամբ սարսափելի հալածանք սկսեց հայերի դէմ։ Լեմբերգի 50,000 հայերից այդ հալածանքի շնորհիւ մնաց միայն 5000 հոգի։ Երկար դիմադրելուց յետոյ 1689-ին հայերն ստիպուած էին ճանաչելու Հռոմի գերիշխանութիւնը։ Այդ օրուանից հայերի հարուստ գաղթը Լեհաստանում սկսեց նուաղել և այսօր նրանցից մնացել են հազիւ 5,000 հոգի. բոլորն էլ կաթոլիկ, մեծ մասամբ լեզուն մոռացած։ Այդ հայերի մնացորդին էր ահա, որ տողերս գրողն այցելեց 1899-ին։*

### Այց Լեմբերգի հայերին

*1899 թուի յունիսի վերջերին՝ ես մնաս բարով տուայ Եւրոպային։ Ցամաքագոյն ճանապարհը՝ հայրենիք վերադառնալու, ընկնում էր Միւնխէնի, Վիէննայի և Լեմբերգի վրայով։*

*Լեմբերգ հասայ ես գիշերը ժամը 10-ին։ Առաւօտ կանուխ շտապեցի հայ կանոնիկոս Աւգուստ Թէոդորովչի տունը, որի հասցէն ձեռքս էր. սակայն մեծ եղաւ հիասթափումս, երբ ժամը 9-ին նրան տանը չգտայ, այն ինչ*

Ես որոշել էի նոյն օրն ևեթ շարունակել ճանապարհս։ Լեհ աղախինը, որ բացի իր մայրենի լեզուից ոչ մի այլ լեզու չէր հասկանում, առաջնորդեց ինձ մի այլ տուն, ուր որոնածս անձի մասին տեղեկութիւն պիտի ստանայի։

Զորրորդ յարկում կանգ առնելով, աղախինը նշան արաւ, որ զանգահարեմ։ Հազիւ դուռը բացուել էր և այցետոմսս ներս էի ուղարկել, որ դռան շէմքում երևեցաւ բարակ, բարձրահասակ, լուրջ և խիստ դիմագծերով մի կաթոլիկ հոգևորական և քաղաքավարութեամբ ներս հրաւիրեց ինձ։—Յայտնեցի, որ ես հայ ճամբորդ եմ և ցանկանում եմ անպատճառ տեսնել տեղիս հայ ուսանողներին։ Նա մի տոմսակ տուաւ, որով պիտի գնայի Թէոդորովչին համալսարանում։—Շնորհակալութեամբ հեռանալով այդ աստուածաբանի մօտից, դռանը այցետոմսի վրայ կարդացի, որ նրա անունն էլ Թէոդորովիչ է. ուրեմն հայ է։

Դարբասն անցնելիս՝ աչքս կանգ առաւ շէմքի քարի վրայ, ուր մի տեսակ ծանօթ և տարօրինակ գծեր գրաւեցին ուշադրութիւնս... և ով զարմանք. մօտիկից նայելով՝ առաջս բացւում է մաքուր Մեսրոպեան գրերով մի կիսամաշ արձանագրութիւն, որ ընկած լինելով շարունակ ոտի տակ, մօտ ապագայում իսպառ կորչելու է։

Համալսարանում չգտայ Թէոդորովիչին։ Ժամը արդէն 11-ին մօտերն էր, ես կամաց-կամաց վերադառնում էի նրա տունը, երբ մի փողոցի անկիւնում, կարդում եմ լեհերէն՝ «Հայոց փողոց». մի քիչ յետոյ ներս եմ մտնում մի փոքրիկ եկեղեցու բակ, ուր դարբասի անկիւնում, մարմարեայ մի քարի վրայի հայերէն արձանագրութիւնը տարակոյս չի թողնում, որ հայոց եկեղեցու բակումն եմ։ Մի շարք գերեզմանաքարեր, հին Մեսրոպեան (երկաթագիր) գրերով, փարատում են ամեն մի կասկած. ես դիտում եմ եկեղեցին, անցողաբար կարդում եմ արձանագրութիւնները և կանգ եմ առնում մի նոր—գեղեցիկ յուշարձանի դիմաց... Հնութիւններ շատ ունիմ տեսած... բայց այն զգացումը, որ ես ստացել եմ անսպասելի կերպով Եւրոպայի մի անկիւնում մայրենի լեզուի հետքեր գտնելով,

այն միտքը, թէ մի անգամ այստեղ ապրել ու խօսել են հայեր, որոնց կենդանի ապացոյցը տեսնում եմ այս արձանների վրայ, ինձ մի տեսակ թովիչ, կախարդական և երկիւղալի տպաւորութեան մէջ էին դրել։ Մարդ չէ ուզում հաւատալ իր աչքերին և միանգամայն շփոթւում է. դրանք մեր կորստեան լաւագոյն ապացոյցներն են... Մարդ մտածում է անցեալի, ներկայի և ապագայի մասին, և մի զառանցալի ու տխուր անորոշութիւն ճմլում, կեղեքում է մարդու սիրտը...

«Համեցէք, վերև համեցէք», լսում եմ յետևից և հաւատալս իսկի չի գալիս. ո՞վ պիտի այստեղ հայերէն խօսի, ո՞վ գիտէ իմ հայ լինելս։ Ինձ այնպէս թուաց, թէ ականջներս խաբում են, թէ այս արձանագրութիւններն են, որ լեզու առած ինձ հետ հայերէն են խօսում։ Ճանապարհի բազմաթիւ տպաւորութիւններից և անքնութիւնից յոգնած երևակայութեան համար մի տարօրինակ բան չէ բաց աչքով զառանցելը... սակայն ձայնը կրկնւում է։ Յետ եմ նայում պատուհանին, որտեղից ձայնն է գալիս և զարմանքով նկատում, որ տեսածս իրականութիւն է. «համեցէք» կրկնում է մի պարոն ժպիտն երեսին, վերև համեցէք»։

Մի քանի քայլով արդէն երկրորդ յարկումն էի, ուր հաւաքուած գտայ եօթ-ութ հոգի, բոլորեքեան հայ-կաթոլիկ հոգևորականներ։ Բոլորն էլ գիտեն մի քանի խօսք հայերէն, ոչ աւել։—Մինը միայն, Դաւիդովիչ, անսայթաք հայերէն է խօսում. միւսների հետ սկսեցի գերմաներէն բացատրուել։—Նրանցից տեղեկացայ, որ Թէոդորովիչը իմացել է իմ գալը և ինձ է որոնում։ Հայ հոգևորականները տեսնելով ինձ եկեղեցին դիտելիս, ճանաչել են, որ ես պիտի լինիմ նորեկը և ներս են կանչել։—Մի քանի րոպէ խօսակցելուց յետոյ նրանք մի ծառայ տուին, որ ինձ ցոյց տայ Թէոդորովիչի տունը։ Հազիւ դռնից դուրս էի եկել, որ մի զոյգ առոյգ և երիտասարդ ձեռներ սեղմեցին իմ բազուկը.—դա Աւգուստ Թէոդորովիչն էր, իմ որոնած հայ ուսանողը, հայ կաթոլիկ հոգևորականի տարազով։ Սև ու թարմ դիմագծերով մի տաք ու վառվռուն երիտա-

սարդ էր դա… Նա առաջնորդեց ինձ իր բնակարանը, ուր Եւրոպայի հայ ուսանողների բարեները հաղորդելուց յետոյ, յայտնեցի, որ կ'ուզէի մնացեալ ուսանողներին էլ տեսնել, որ շուտով ճանապարհս շարունակեմ։

Թէոդորովիչն ինձ հայի պէս հիւրասիրելուց յետոյ առաջնորդեց պ. Մանուկեւիչի մօտ, ուր երկու սենեակում չորս հայ ուսանող միասին են ապրում։ Մի ժամից յետոյ տասնի չափ ուսանողներ արդէն շրջապատել էին ինձ։— Հայեր, այնպիսի վառուած հայեր, որոնց նմանը ես երբէք չեմ տեսել։ Մի կողմից նրանք ուշ ու միտք դարձած ուզում են անթիւ հարցերով գաղափար ստանալ մեր կացութեան մասին. նրանք հրճւում են, լսելով, որ հայերի մեծամասնութիւնը դեռ հայերէն է խօսում, ժողովրդի մեծ մասը դեռ հողագործ է, ունինք մամուլ, դպրոցներ ու կրթուած մարդիկ, որ կաթոլիկութիւնը մեզ համար վտանգաւոր չէ… միւս կողմից ամեն ջանք ու ճիգ թափում են ցոյց տալու, որ իրանք էլ դեռ հայեր են, լաւ հայեր, թէև կաթոլիկ ու լեզուն մոռացած։ Մարդ ուղարկեցին և բերել տուին «Հայոց դպրոցից» միակ հայ տղան, որ դեռ չէ մոռացել մի քանի հայերէն բառեր, իսկ երբ նա սկսեց հայերէն «մէկ, երկու» համարել, նրանց հիացմունքը հասաւ հրճուանքի։ Թեղձէր, չգիտեմ թէ քանի քանի հայ ընտանիքներ դիտմամբ ջանք են թափում մոռանալու հայերէնը…։ Նրանք ուզեցին ինձ հայավարի հիւրասիրել և բերին բուժէն «այծի միս», որ միմիայն տեղացի հայերի կերակուրն է. դա պատրաստւում է այծի մսից և մի տեսակ երշիկ է… Ճաշից յետոյ, երեկոյեան, հայերի թիւը հասաւ մօտ 16-ի. կանչեցին միակ հայ գինւորին, որին է յանձնուած տեղական զօրքի պաշարը գնելու և մատակարարելու գործը՝ շնորհիւ իր աշալրջութեան։

Ինձ ստիպեցին, որ ազգային տաղեր երգեմ, և նոյն երեկոյեան գրի առան ու սովորեցան «Բամբ որոտանը», որ նրանց սաստիկ դուր եկաւ։ Նրանց ոգեւորութիւնն այն աստիճանի է հասել, որ որոշել են, միջոցները ներածին պէս, Հայաստան գալ, հայ աղջկայ հետ ամուսնանալ և հա-

յերէն սովորել։ Ոմանք ձեռ են քաշել իրանց ընտրած աղջիկներից՝ հայ աղջիկ ուզելու մտադրութեամբ։ Կարծելով թէ ինձ համար անդուրեկան է նրանց կրօնը—կաթոլիկութիւնը, օգտուելով կանոնիկոս Թէոդորովիչի բացակայութիւնից, բացատրում էին, որ առաջին յարմար րոպէին նրանք պատրաստ են մայրենի եկեղեցու գիրկը դառնալ։

—Ես նրանց հասկացրի, որ անցել են կրօնական մոլեռանդութեան դարերը, թէև ցաւալի է այն, որ հայերից շատերը կաթոլիկ են դարձել, բայց և այնպէս նրանք մեզ համար նոյնպիսի հարազատ ու սիրելի եղբայրներ են, ինչպէս և լուսաւորչականները, միայն թէ իրանց հայ զգան և հայ ճանաչեն...

Այդ երեկոյ թատրոն չլինելու պատճառով, ինձ տարան ցիրկ, այնտեղից էլ ընթրիքի և ապա իրանց մօտ ննջելու։ Առաւօտ կանուխ ես ինձ հիւրընկալներին թողնելով քնած՝ շտապեցի կանոնիկոս Թէոդորովիչի մօտ, որին գտայ պարապելիս։ Երիտասարդ հոգևորականը մի լաւ գրադարան ունի, յատկապէս հայերին վերաբերեալ գրքերի՝ եւրոպական բոլոր լեզուներով։ Հին լեզուներից զատ նա խօսում է, գրում է ֆրանսերէն և գերմաներէն, իսկ լեհերէնը նրա մայրենի լեզուն է։ Չնայելով որ մայրը լեհ է, նա է տեղական հայութեան հոգին ու եռանդը. գրում է լեհ և գերման թերթերում և առանձին բրօշիւրներ ունի նուիրած հայոց խնդրին։ Ազատ կարդում է հայերէն, միայն շատ քիչ բան է հասկանում։ Նրա ցանկութիւնն է կարելոյն չափ շուտով Հայաստան գալ հայերէն սովորելու, որի համար նա ուզում է մինչև անգամ ուսումը կիսատ թողնել։ Իմ բարի խորհուրդն էր համոզել, որ նա առաջ վերջացնի ուսումը, ապա նուիրուի հայերէնի ուսոյթին,

Գործն աւելի հեշտաւոր անելու համար, ես նրանց պահանջի համեմատ խոստացայ մի հայ ուսանող ուղարկել, որ ուսուցանէ նրանց, և ինքն էլ ուսանի համալսարանում։ Մենք գնացինք հայոց եկեղեցին ժամերգութիւնը լսելու։ Չը կարողացայ ըմբռնել. ի՞նչ լեզուով էր կատարւում ժամերգը։ Գրքերը դիտելուց տեսայ, որ կար-

գում և երգում են հայերէն. սակայն այն աստիճանի խորթ արտասանութեամբ, որ հասկանալ անկարելի էր։ Ամէն բան կորսուել ու մոռացուել է, բացի ծէսից։ Պատարագիչն էր հայ կաթոլիկ եպիսկոպոսը, Լեհաստանի հայերի առաջնորդը, հայ տիպարով մի քթեղ հոգևորական։ Այնուհետև Աւգուստ Թէոդորովիչն ինձ ուղեկցեց քաղաքից մի քիչ դուրս զբօսնելու... Ճանապարհին նա ցոյց էր տալիս այս կամ այն տունը, այս և այն եկեղեցին ու վանքը, որ ժամանակով հայերին են պատկանել, իսկ հիմա անցել են լեհերի ձեռը։ Նա ինձ ցոյց տուաւ քաղաքի կենդրոնում մի հիանալի արձան, նուիրած մի յայտնի լեհացի թագաւորի յիշատակին, որ հայի գործ է, արուեստագէտն էլ դեռ կենդանի։ Պատմեց յայտնի նկարիչների, մամուլի ներկայացուցիչների, բանաստեղծների, ջութակահարների և այլ նշանաւոր արուեստագէտների ու դիպլոմատների մասին հայ-ծագումով, որոնցով պարծենում է լեհ ազգը— Հայերն այնքան լաւ անուն են ունեցել այստեղ և այնքան մեծ հայրենասիրութիւն, որ Սենկևիչը իր մի պատմական վէպի մէջ մեծ համակրանքով է խօսում նրանց մասին...

Այդ օրը ճաշից առաջ հարկ էր այցելել տեղական մի քանի հայերի, մինին (արձանագործին) տանը չգտանք, երկրորդը - վաճառականը շատ սիրալիր ու զարմացած ընդունեց «հայի» այցելութիւնը, երրորդը պրօֆեսսոր— Յովհաննէս Անտոնիչը—Բոլոցի ասպետ, պատկանում է տեղական արիստոկրատիային, դասախօսում է գեղարուեստի պատմութիւն և յայտնի գիտնական է։ Նա բարձրահասակ, մորթու թուխ գոյնով և բուն հայկական տիպարով մի պարոն է, որ հայի լրջութեանը միացնում է կիրթ եւրոպացու մեղմ ու դուրեկան շարժուձևերը։

Նա մեզ ընդունեց վերին աստիճանի սիրալիր, իր գրասենեակում, ուր հաստ գրքերով ծանրաբեռնած սեղանի մօտ սուրճ հրամցուց։ Մի քանի վայրկեանից յետոյ սիրալիր խօսակցութիւնը դարձաւ ընկերական, կարող եմ ասել եղբայրական։ Հասկանալի է, խօսակցութեան նիւթն ինչ կը լինէր... ինձ հետաքրքրողը Լեհաստանի հայերն էին,

իսկ պրոֆեսորի ցանկութիւնն էր կարելոյն չափ շատ տեղեկութիւններ ստանալ մեր մասին։ Այդ ամենի հետ ինձ զարմացնողն ու հիացնողն այն էր, որ մի լեհական ազնուական, մի աւստրիական հպատակ և վերջապէս մի գիտնական, առանձնացած ու դարերով կտրուած հայրենիքից, ոչ միայն արտաքինով, այլ և հոգով մնացել է կատարեալ հայ։ Ես առանց քաշուելու ասացի նրան իմ կարծիքը, աւելացնելով, որ նա պարտական է Հայաստան գալու և իր աչքերով տեսնելու այն ամենը, ինչ որ նրան հետաքրքրում է... «Մենք մի Հայրիկ ունինք, որին ուխտ են գալիս ամեն տեղի հայերը, ես պիտի պատմեմ ձեր մասին նրան և նրա սիրտը պիտի ցաւի, եթէ դուք ձեր որդիական յարգանքները չմատուցանէք նրան Էջմիածնում։ Ես ձեզ ճիշտ եմ ասում, մինչև օրս մենք չգիտէինք, որ Եւրոպայում մենք ձեզ նման բանիմաց հայ եղբայրներ ունինք, այդ մասին ես պիտի յայտնեմ մեր մամուլի մէջ, և դուք հայերի յանդիմանութեանը պիտի արժանանաք, եթէ մեզ այցելութեան չգաք։ Իբրև արևելցի ես պարզ եմ ասում այն, ինչ որ մտածում եմ, մենք էլ արուեստ ունինք. ձեր վրայ պարտք կայ ճանաչել տալու մեր արուեստը Եւրոպային»։

Իմ խօսակցութիւնը, ինչպէս երևում է, լաւ տպաւորութիւն էր թողել պրոֆեսորի վրայ, որովհետև երբ ոտքի ելանք մեկնելու, նա համարեա զօրով ստիպեց, որ նոյն երեկոյեան անպատճառ իրան կրկին այցելութեան գնանք. տեսնելով որ այդ անկարելի է, քանի որ նոյն օրը ես մեկնելու էի, նա խնդրեց ներկայ գտնուել իր դասախօսութեանը՝ վերջում մի քիչ զրուցելու համար։

Ժամանակի սակաւութեան և ճանապարհի պատրաստութեան պատճառով ես ու իմ բարեկամ Թէոդորովիչը հազիւ դասախօսութեան վերջին մտնել կարողացանք լսարան, ուր խօսում էր պ. Անտօնևիչը։ Նա մի այնպիսի ընդունելութիւն ցոյց տուեց, որ ես պէտք է մինչև ականջներս կարմրէի։ Մեր մտնելը նկատելուն պէս, նա վերկա-

ցաւ տեղից և խորը կերպով գլուխ տուաւ, որի պատճառով ամբողջ լսարանը՝ օրիորդներ ու երիտասարդներ, հայեացքները ուղղեցին դէպի մեզ։ Դասախօսութեան նիւթը Միքէլ Անջէլօ-ի մի պատկերն էր։

Նա մեզ առաջնորդեց իր աշխատանոցը... և բաց արաւ մի խումբ ստուար կարտոններ, որոնց վրայ գիտնականի հոգածութեամբ ու խնամքով արտահանած էին բոլոր այն արձանագրութիւնները, ծաղկանկարներն ու քանդակները, որ երբ և իցէ ստեղծել են Լեհաստանի հայերը։ Այն գրերը, որ ես ցաւելով հանդիպել էի հայ հոգևորականի շէնքում կորստի մատնուած, հիացմունքով տեսայ, որ հայ-գիտնականը խնամքով ժողովել և պահում է... Պ. Անտոնևիչը տեղական հայ-եկեղեցու երեցփոխն է, ուզում է նոյն եկեղեցին նորոգել հայ ճաշակով, ուստի ինձանից տեղեկութիւններ և նիւթեր խնդրեց 17 դարու հայ արուեստի մասին։ Վերջացնելով այդ հաւաքածուն դիտելը, մենք նստանք հարևան սենեակում խօսելու։ Նկատելով համալսարանի ուսանողների և պրօֆեսորների ցանկը, նա սկսեց հաշուել և ցոյց տուաւ, որ պրօֆեսորներից վեցը հայ ծագում ունին, բայց երկուսն են միայն, որ դեռ չեն մոռացել իրանց ազգութիւնը։ Ուսանողների մէջ հազիւ ութ հոգի հայ են գրել իրանց, որի վրայ վրդովուելով, նա պատուիրեց Թէոդորովիչին «իր անունով յանդիմանելու այն ուսանողներին, որոնք իրանց հայ անունը մոռացել են նշանակելու ցանկի մէջ. եթէ ռուսինը, լեհը, գերմանացին այստեղ չեն մոռանում իրանց ազգը, մենք ի՞նչու պիտի մոռանանք»։ Մինչ այդ, պրօֆեսոր Անտոնևիչը, մանկական պարզութեամբ խնդրեց լսել իր երգածը և հաւաստիացնել՝ արդեօք ճի՞շտ է եղանակը... և յիսնամեայ գիտնականը սկսեց երգել «Մեր հայրենիք թշուառ անտէր»... մի այնպիսի տենչանքով, որ կարելի էր լաց լինել, եթէ մարդ չամաչէր։ Այդ երգը նա սովորած է եղել Վենետիկի հայրերից, առանց հայերէն գիտենալու։

Լսելով որ տեղական հայ ուսանողները ուզում են հայերէնի ուսուցիչ հրաւիրել, նա սաստիկ ուրախացաւ, աւե-

լացնելով, որ աշակերտներից մէկն էլ ինքն ու իր որդին պիտի լինին։ Երբ ես կրկին խնդրեցի խոստանալ Հայաստան գալու, նա ասաց, որ առաջիկայ երեք տարուայ ընթացքում այդ չի կարող անել, որովհետև գիտական նպատակով նա պաշտօնապէս պարտական է ուղևորուել Իտալիա և Պորտուգալիա, իսկ այնուհետև «երբ ես հայերէն սովորած կը լինիմ, այն ժամանակ կուգամ Հայաստան իմ աչքով տեսնելու և հասկանալու, որովհետև ես ուսումնասիրած չեմ համարում այն բանը, որ թարգմանների միջոցով է կատարւում»։ Նա հայերէն սովորելու դասագիրք խնդրեց ինձանից, որ անկարող էի տալ, քանի որ այսպիսին աշխարհաբարի համար գոյութիւն չունի։ Խոստանալով նիւթեր ուղարկել հայ արուեստի և հայ երաժշտութեան մասին, յայտնել մանաւանդ՝ արդեօք թիւրքերի ու պարսիկի գործածից, հայի գործած կապերտը, գորգը և կամ որևէ արուեստի գործը որոշւում է, ես մնաս բարև ասացի պրոֆեսորին, որ մի անմոռանալի և դուրեկան տպաւորութիւն թողեց վրաս։ Իբրև յիշատակ նա ինձ տուաւ մի փոքրիկ բրօշիւր, Լեհաստանի հայերի մասին, որ իր գրածն է և քաղուած է «Աւստրօ Ունգրիան պատկերով ու խօսքով» յայտնի գործից։

Նոյն երեկոյեան ժամը 10-ին, 12 ի չափ երիտասարդ հայեր երկաթուղու կայարանն եկան ուրախ երգերով և յոյսերով ճանապարհ դնելու «Հայաստանցի բարեկամին» ուղարկելով իրանց լաւագոյն իղձերն ու ցանկութիւնները իրանց հեռաւոր եղբայրներին...

Երկաթուղին սլանում է, ես առանձնացած օթեակում շարունակ մտածում եմ, երա՞զ էր այս ամենը թէ իրականութիւն... Ես յաւիտեան չեմ մոռանայ այդ բարի, ազնիւ ու հիւրասէր երիտասարդներին, որոնք երկու օրուայ ընթացքում այնքան դուրեկան և անջնջելի տպաւորութիւն թողին վրաս...

Գ. Վանցեան

## 132. Դ Է Պ Ի   Ա Ն Ի

Ալեքսանդրապոլից մինչև Անի մոտ 50 վերստ է։ Անցնելով Ախուրեան գետը՝ դուք մտնում էք մի ընդարձակ դաշտ—Շիրակայ դաշտի շարունակութիւնը։ Այդ դաշտի միջից հեզիկ սահում է Ախուրեանը՝ բաժանելով ռուսաց և տաճկաց նախկին սահմանները։ Գետի երկու կողմում ձգւում են բազմաթիւ գիւղեր։ Այդ գիւղերի մէջ, որոնցից ոմանք տաճկաբնակ, ոմանք հայաբնակ և ոմանք խառն են, կան կանգուն և անկանգուն, հին և նոր, աւեր և կիսաւեր եկեղեցիներ և վանքեր․․ որոնք մի առանձին տպաւորութիւն են գործում առաջին անգամ այդ երկրում ոտք կոխող հայ ճամբորդի վրայ։

Կարծես մի ելեքտրական զօրութեամբ հեռադիտակս դէպի Ալաճայի ստորոտը խոնարհուեց և Անւոյ աւերակները յանկարծ իմ աչքին դիպան... Աստուած իմ... չեմ կարող խօսքով բացատրել այն՝ ինչ որ նոյն րոպէում ես զգացի... Սիրտս փղձկաց և արտասուքներս ինձ հեղձամղձուկ արին։ Սրտատրոփ և տագնապալից կառքիցս վայր իջայ և ջերմ արտասուքով իմ կաթոգին և մոռացուած հայրենիքի սուրբ հողն առաջին անգամ համբուրեցի։

Ոչ թէ հայ, այլ ամեն մարդ, ինչ ազգից կուզէ, թող լինի, տեսնելով առաջին անգամ այդ քաղաքը՝ չէ կարող անտարբեր նայել նրա աւերակներին, որոնք մի ծանր, մի արտաճմլիկ տպաւորութիւն են գործում մարդու վրայ։

Աւերակների շատութիւնը և միասին լինելը, նրանց վիթխարի տեսքը, վսեմութիւնը, փառաւորութիւնը՝ այդ ամենը կենդանութիւն են ներշնչում։ Միւս կողմից՝ փլատակների կոյտերը, հողաբլուրների և քարաբլուրների ահռելի տեսարանները իրանց մեռելութեան հոտ փչող լռութեամբ մի զարհուրելի գերեզմանոցի պատկեր են ներկայացնում։ Ձեր աչքն արագարար այս և այն կողմն է ձգւում, իսկ ձեր ուշքն ու միտքը անդադար այս և այն կողմն է ստոստում. ելեքտրական մի ցնցիւն, մի սար-

սուտ էք զգում ձեր ջղերում և կարծես ուզում էք թող-նել-փախչել այդ ահաւոր և փառաւոր, այդ սխրալի ու տխրալի տարօրինակ քաղաքից, որի ամեն մի անկիւնից, ամեն մի կողմից տաղաչափի ասածի նման՝

Հետզհետէ քեզ անձ նոր-նոր ձայն
Սրտիդ մէջ, տիկին, արձագանք կուտան.
Ամեն մի քարէ մի նոր ձայն կելլէ,
Ամեն մի բեկոր նոր բան կը պատմէ.
Ո՛ր կողմը նայես՝ տխուր տեսարան.
Ո՛ր կողմը դիտես՝ աւերակ միայն.
Կամ հրաշալի սուրբ եկեղեցեաց
Կը տեսնես դու լոկ գմբէթը մնացած,
Կամ մեծակառոյց ի հիմանց ի վեր,
Պատւեր կանգնած են ապարանքներ.
Ահա կը շարժին, անձ կերերին,
Նոքա էլ հիմա գետին կը փռուին։
Իսկ դու զգացուած, տխուր ցօղալին
Աչքով կը տեսնես աւերակ Անին։

(Մկրտիչ Պալեան)

Անին տեսնող ամեն ճանապարհորդ իր անունն ու ազգանունը և մի քանի սրտառուչ տողեր մատիտով, ածուխով կամ կաւիճով գրել է այս և այն տեղում։

Այդ արձանագրութիւնները բոլորն էլ սրտացաւ բովանդակութիւն ունին. Նրանց մէջ կան այնպիսիները, որ աւելորդ չհամարեցի դուրս բերել յիշատակարանիս մէջ։

Ահա այդ տողերը.

1. Գեղածիծաղ զուտ գարունը տիրելու է այս երկրում.
Քաջ և անվախ հայ անունը մնալու է միշտ աշխարհում։

2. Եկի, տեսի և ողբացի.

3. Աստուած իմ, ինչու թողիր, որ անօրէնները պղծեն քո սուրբ տաճարը. ինչու թողիր քեզ սիրող և պաշտող ազգդ։

(Այս տողերը ռուսերէն է և նրա գրողը մի ռուս գնդապետ)։

4. Այսքան զօրութիւն ունեցող մի ազգ՝ եթէ մինչև

հիմա չէ՛ անհետացել, այսուհետև երբէք չի անհետանայ։
(Սորա գրողը մի Ֆրանսիացի է։)

5. Ամեն տղայ ունի իրան հէր ու մէր,
Մէջ աշխարհիս դու ես անտէր մնացեր.
Արարածոց լոյս է բացուել անջնջեր,
Քեզի համար մթոտ, ամպոտ սև օրեր։
6. Հեռուից կ'երևին ժամ ու զանգատուն.
Բերդն ու պարիսպ նկուն, կիսով քայքայուն,
Քաղաքդ, շէնքերդ անընակ,
Դէհ, ի՞նչպէս հայու աչք չողբայ անքուն։
Ձերևիր թագաւոր, չերևիր զինուոր.
Հայաստան սգաւոր, վա՜խ, էս ի՞նչ սև օր.
Արարատ, քո ախուր ազգդ ցիր ու ցան,
Երկիրդ ոտաց կոխան, ափսո՜ս քեզ համար։
(Այս գողտրիկ տողերը մի պատուական հայ-կաթոլիկ վարդապետի են)։

«ՓՈՐՁ» Գեղամեան

---

## 133. ԿԱՐԻՆ ԿԱՄ ԷՐԶՐՈՒՄ

Կարին քաղաքը գտնւում է Եփրատ գետի ակունքների մօտ, Թիւրքաց Հայաստանի այն մասում, որ հին ժամանակ կոչւում էր Բարձր Հայք։

Հայաստանի ամեն մի թիզ հող հին ժամանակներից սկսած օտարները աշխատել են խլել. յոյն, պարսիկ, արաբ, թաթար, թուրք և այլ ցեղեր Հայաստանին տիրելու համար նրան աւերել են, նրա բնակիչներին կոտորել։ Այսպիսի բարբարոսութիւնների շատ է վկայ եղել և Կարինը։

Պատմութիւնից յայտնի է, որ դեռ Ե. դարում Ք. յ. Անատոլ անունով մի յոյն զօրավար Հայոց Կարին գիւղը ամրացնելով քաղաք դարձրեց և ի պատիւ յունաց Թէոդոս կայսեր այդ քաղաքը Թէոդոպոլիս անուանեց։ Այնուհետև քրիստոնեայ յոյները և կռապաշտ պարսիկները երկար կռւում էին իրար դէմ Հայաստանը իրար ձեռքից

խլելու համար։ Իսկ Է. դարում Հայաստանի վրա յարձակուեցին մահմեդական արաբները և տիրելով մեր երկրին գրաւեցին և Թէոդոպոլիս քաղաքը, որին տուին Էրզրում անունը, որ նշանակում է յոյների (ուռում) երկիր։ Արաբներից յետոյ Հայաստանը ստեղծեցին թաթարներ, որոնց ցեղերից մէկը, այսինքն թիւրքերը, վեցերորդ դարի սկզբում տիրեցին նրան։ Այդ ժամանակից մինչև օրս Կարինը մնաց թիւրքաց ձեռքում։ Զարմանալի չէ, որ այդքան փոփոխութիւններից յետոյ Կարինում այժմ դժուար է հին Հայաստանի յիշատակներ գտնել։

Կարինը այժմ թիւրքաց Հայաստանի ամենամեծ վարչական կենդրոնն է։ Նա Էրզրումի նահանգի կամ վիլայէթի գլխաւոր քաղաքն է և առաջնակարգ ամրութիւնն է։ Կարինը գտնւում է այն մեծ ճանապարհի վրայ, որը Տրապիզոնից տանում է Պարսկաստան։ Կարինը թիւրքաց Հայաստանի այն գլխաւոր առևտրական կենդրոնն է, ուր Հայաստանի զանազան կողմերից հաւաքւում են ամեն տեսակ բերքեր և ապրանքներ. այսպէս օրինակ, Բաղէշից բերում են կարմիր կտաւ, Վանից շալեր, Արաբկիրից բամբակեայ մի գործուածք, որ կոչւում է մանիսայ, Խարբերդից գինի և մետաքսի մի գործուածք, որ կոչւում է գեազի, իսկ Բարձր Հայք զանազան կողմերից ստացւում են մեծ քանակութեամբ գայլի, աղուէսի, կուզի և այլ թանձրամորթ գազանների մորթիներ։

Կարինը կապւում է Անդրկովկասի հետ Կարս քաղաքի միջոցով։ Չնայած իր վարչական և առևտրական նշանակութեան՝ Կարինը շատ ողորմելի արտաքին տեսք ունի. նրա փողոցները նեղ են, ծուռ ու մուռ ու կեղտոտ, տները փոքր են և անշուք. չեն երևում եկեղեցիների գմբէթներ, այլ քաղաքի զանազան կողմերում բարձրանում են մզկիթների մինարէներ։

Կարին քաղաքում ապրում են մօտաւորապէս 8 հազար տուն բնակիչներ, որոնցից հազիւ 3 հազար տունը հայ լինի, իսկ մնացածը՝ թուրք։ Բացի հայերից և թիւրքերից կան նաև սակաւաթիւ պարսիկներ, եւրոպա-

ցիք և յոյներ։ Հայերի թիւը պակասեց՝ երբ 1828 թուականի ռուս տաճկական պատերազմից յետոյ հայերի մի մասը թէ քաղաքից և թէ շրջակայ գիւղերից գաղթեց Ռուսաստան։ Այդ գաղթականները հաստատուեցին Ալեքսանդրապօլի, Ախալցխայի և Ախալքալաքի կողմերում։

Լ. Սարգսեան

## 134. ՀՆԴԿԱՍՏԱՆԻ ՀԱՅԵՐԸ

Հայերն Հնդկաստան անցան Պարսկաստանից, մանաւանդ Նոր-Ջուղայից, և իբրև ճարպիկ վաճառականներ, հաստատուելով Կալկաթա, Բօմբա, Մադրաս, Սուրաթ քաղաքներում ձեռք բերին մեծ հարստութիւն և հասան բարձր դիրքերի։ Երբ անգլիացիք տիրել ուզեցին Հնդկաստանին, հայերը միջնորդ հանդիսացան նրանց և հնդիկ իշխանների մէջ։

Հնդկաստանի հայերը մեծ դեր են կատարել մեր մտաւոր վերածնութեան գործում։ Հնդկաստանի հարուստ հայերից աղա Շամիրը և Ամիր-խանը փողով ուզում էին գնել Հայաստանը և ազատել թուրքերի և պարսիկների ձեռքից։ Առաջին հայ լրագիրը «Ազդարար» հիմնուեց Մադրաս քաղաքում, 1794 թ. Շմաւոնեան քահանայի ձեռքով։

Կալկաթայում հայերն ունին այսօր մի ճեմարան, որին կից մի ժամանակ գոյութիւն ունէր և տպարան, ուր Թաղեաթեանի խմբագրութեամբ հրատարակւում էր «Ազգասէր» օրագիրը։

Հնդկահայ Մուրադի և Ռափայէլի թողած փողերով է, որ այսօր պահպանւում է Վենետիկում Մուրադ-Ռափայէլեան դպրոցը. և Նոր Նախիջևանում մի քանի դպրոցներ (տես Նալբանդեանի կենսագրութիւնը)։ Հնդկաստանից հայ վաճառականներն անցան Ջաւա և այնտեղից էլ մինչև Չինաստան ու Ճապոնիա.

(Մի գլուխ «Կայսեր ճամբորդութիւնից դէպի արեւելք»)

Հնդկաստանում, վաղուց արդէն աչքի է ընկնում հայ

տարրը մի որոշ ազդեցութեամբ։ Նրանք իրանց կապերը չեն կտրել Էջմիածնից, և ամեն մի կաթողիկոսական ընտրութեանը մասնակցում են հայ ձայներ և Գանգէսի ափերից։ Կովկասը և ռուս-պետութիւնը դորա համար էլ սիրելի են հայ ազգին, որի անդամներից շատերը առևտրով հեռացել են Ասիայի խորքերը և շատ տեղերում գրաւել են աչքի զարնող տնտեսական դրութիւն։

Երբ մեծ մօնղօլներից մինն ամուսնացնել էր ուզում իր մօտ ծառայող անգլիացի բժշկին, նա հրաժարւում էր ոչ քրիստոնեայ աղջկայ հետ ամուսնանալ. այն ժամանակ նրան առաջարկեցին մի հայ զինուորականի աղջիկ։ Երբ անգլիական առաջին դեսպանը Հնդկաստանում, պ. Ռօ, ճամբորդում էր երկրի խորքը, նրա խոհարարը խիստ հարբեց հայ դուքանչու մօտ։

Առևտրական գործերով Հայկի սերունդը ցրւած է ամբողջ Հնդկական թերակղզում և ուր հնարաւոր է եղել, հիմնել է մի մի ծաղկած գաղթավայր։ Այսպէս օրինակ Կալկաթայում հայ կօլօնիան այնքան հարուստ և փարթամ էր, որ 1724 թ. Ակոր.Նազարը հիմնեց մի հայ-լուսաւորչական եկեղեցի։ Սորան կից հայերն ունեին հիմա մի ճեմարան և աղքատանոց, իսկ մի ժամանակ այստեղ կար տպարան և հրատարակւում էին հայ գրքեր ու լրագիր։

Կաթողիկոսի ստորագրեալները Կալկաթայում, գիտենալով Ռուսաստանի նշանակութիւնը հայերի վերաբերմամբ, ցանկացան մի ընծայ տալ Ն. Կ. Բ. Թագաժառանգ Ցեսարևիչին. դորա համար էլ հայ արծաթագործները պատրաստեցին մի արծաթեայ մօդել հռչակաւոր հնդկական տաճարի—«Բուդդա-Հայաս», որ և մատուցուեց ըստ հարկին։

Իշխ. Ուխտոմսկի

---

## 135. ՄԻ ՊՏՈՅՏ ՆԱԳԱՍԱԿԻՓՈՂՈՑՆԵՐՈՒՄ

Առաւօտը շատ վաղ ջինրիկշաները արդէն խմբուել էին լուսամուտների տակ, ուշադիր մեր դուրս գալուն, և

հենց որ երևացինք գոների մեջ, նրանք ուրախ վազ տուին դէպի մեզ, իրար առաջը կտրելով։

Առանց վարանումի չէր, որ մենք տեղի տուինք նրանց խնդրանքին ու հեծանք թեթև կառքերը։

Ջինրիկշաները խսկոյն հանգստացան, սրբուեց նրանց դէմքից պաղատանքի արտայայտութիւնը, և մեզ մի թեթև ու խնամածու ժպիտ ձօնելով՝ աշխոյժ լծուեցին ու առաջ վազեցին։

Աջ ու ձախ երևում ու աչքից կորչում էին չինացի գերձակների ու կօշկակարների աշխատանոցներն իրանց ցուցանակներով և այլ այդ կարգի ուրիշ խանութներ, որոնք ծառայում են եւրոպացիների պէտքերին։ Չինացիք շատ վարժ եւրոպական շորեր են կարում, ճարպիկ կերպով յարմարուելով մեր ճաշակին ու տարազին, որ նրանց համար այնքան խորթ է։

Այդ տեսակէտից առանձին աջողութիւն ունին կնոջ հագուստ կարողները, այնպէս որ եւրոպուհիք յօժարութեամբ դրանց են յանձնում իրանց արդ ու զարդը։

Ուրախ է կեանքը եւրոպական թաղում։

Անթիւ գարեջրատների բաց դռներից դուրս են խուժում հարբած երաժիշտների հնչիւնները, որի չափի տակ զուարթ պարում են գլուխները տաքացած օտարազգի նաւաստիները,

Մենք արագ անցանք կամրջով այն բազմաթիւ ջրանցքներից մէկը, որոնք ցանցի պէս կտրում են քաղաքը, և մտանք արդէն զուտ ճապոնական մասը։

Մի վայրկեան ամէն բան շուրջդ խաղալիքի տպաւորութիւն է անում։ ամէն ինչ այնքան մանր է ու փոքրագիր։ Փողոցը այնպէս նեղ է, որ եթէ պատահմամբ եւրոպական մի կառք ներս մտնէր, կը խցէր ամբողջ փողոցի շարժումը. էլ ինչ ասել կուզէ, որ շուռ տալ բացարձակապէս կարող չէր լինի։ Ինչքան էլ շատ փոքր լինէին մեր կառքերը, նորից ստիպուած էինք իրար ետևից գնալու, տեղով գնացողների ճամփան չփակելու համար։ Սակայն փողոցը ոչ մութ էր թւում, ոչ էլ մռայլ շնորհիւ շէնքերի

ցածութեանը։ Տները բոլորն էլ անխտիր երկյարկանի են, կղմինդրէ մի օրինակ թեք կտուրներով և բամբուկի բարակ պատերով։ Ցածի յարկում գետեղուած է լինում խանութը կամ արհեստանոցը, վերևում ապրում է տէրը։ Ընդհանուր տպաւորութիւնը մօտաւորապէս նոյնն է, ինչ որ ասիական բաղարը Կովկասում։ Այստեղ էլ չկան արտաքին պատեր. այստեղ էլ ապրանքը դարսուած է դուրսը։ Ամեն ինչ բաց է, ամեն ինչ մատչելի ցանկացողի աչքին։ Հիմնական մեծ տարբերութիւնն այն է, որ այստեղ հետք անգամ չկայ ասիական համբաւաւոր անկարգութեան ու կեղտի։

Շուրջը ամեն բան փայլում է մաքրութիւնից։ Շէնքերը այնպէս սեղմ ու անընդհատ կցուած են իրար, որ մարդ ակամայ սարսափում է, մտածելով, թէ ինչ է լինելու քաղաքը, եթէ յանկարծ հրդեհ ընկնի։ Ի՞նչ ճարակ կայ այստեղ բոցերից։ Գարտոնի նման բարակ տները չոր յարդի պէս մի վայրկեանում կայրուեն։ Բայց իսկապէս հրդեհը այնքան էլ մեծ ու յաճախ չի լինում այստեղ համեմատաբար։ Ճապոնացին կրակի հետ չափազանց զգոյշ է։

Նա երբեք գիշերը չի թողնի նաւթի լամպը վառ։ այլ միայն ւղի կանթեղը, որ հեշտ է հանգչում։

Բացի այդ իր թանկագին իրերը նա միշտ պահում է տան կից մի փոքրիկ քարաշէն մասում։

Իսկ հրդեհի ժամանակ նրանք խմբովին օգնութեան են վազում այրուող տան ներսը. վերջն էլ օգնում են հրկիզեալին, ընդհանուր օժանդակութեամբ նրա համար մի նոր տուն գնելով։

Տները խիստ էժան են և ծախւում են պատրաստ. նրանց թեթևութեան ու կազմի պարզութեան պատճառով հեշտ է և տեղափոխելը։

Փողոցը լի է կեանքով։

Փափուկ գետնի վրայով արագ սլանում են ճարպիկ ջիները, քաշելով իրանց փոքրիկ կառքերի մէջ մի կոկետ ճապոնուհու կամ տուրիստների մի ամբողջ շարք։

Անց է կենում մանրավաճառը, կրելով իր ուսին՝ փայ-

տից կախած զամբիւղները, որոնք լի են ամեն տեսակ բանջարեղէնով, պտուղով կամ ձկնով։

Փողոցում անասուն գրեթէ չես տեսնում։ Սակաւ, շատ սակաւ է հանդիպում մի ձի կամ էզ, սմբակները յարդով կապած պայտի փոխարէն։ Տիրոջ ցոյց տուած մեծ հոգածութիւնից պարզ երեւում է, որ նրանք մի առօրեայ երեւոյթ չեն ճապոնացու կեանքում։

Ահա մի փոքրիկ աղջիկ անփոյթ կերպով իր լայն գօտու մէջ տանում է փոքրիկ եղբօրը, որը հանգիստ նիրհում է նրա մէջքին. մինչդեռ աղջիկը հետաքրքրութեամբ կանգ է առնում գոյնզգոյն ապակէ գնդակների դէմ, որ ծախու է դրել փողոցում թափառական մանրավաճառը։

Երիտասարդ ճապոնուհիները մանր քայլերով զգոյշ անց են կենում, իրանց բարձր փայտէ կօշիկները շարունակ թխթխկացնելով։ Նրանց մուգ սեւ մազերի գեղեցիկ շինեօնը հիւսուած է կօրալներով. գլխարկ երբէք չկայ. պաշտպանւում են արեւից ու անձրեւից իրանց տարօրինակ ու գեղեցիկ հովանոցներով։ Հագի կիմոնոն (խալաթ) գրկում է ճապոնուհու մէջքը, սահում է ցած ու պինդ փաթաթւում է նրա ոտներին։ Զունեն ոչ օղ, ոչ մատանի, ոչ էլ ընդհանրապէս մեր կանանցից այդչափ սիրուած միւս ոսկեղէն զարդերը։

Նրանց գլխաւոր հպարտութիւնն է կազմում գեղեցիկ օբին (գօտի), որ լայն շերտով մի քանի անգամ գալարուած է նրա մէջքին եւ մի տեսակ կօրսէտի դեր է կատարում։ Այդ գօտին նրա հագածութեան մասնաւոր առարկան է միշտ եւ նրա ճաշակի ու շնորքի սովորական չափը։

Որքան օբիի կտորը գեղեցիկ է, որքան հարուստ է նրա բանուածքը եւ որքան շնորհալի կապուածքը, այնքան աւելի է իր ընկերուհիների նախանձը շարժում։

Տղամարդու կիմոնոնը խալաթ) կնոջինից շատ քիչ է տարբերւում, մանաւանդ անվարժ աչքի համար. նա էլ է կապում գօտի, միայն շատ աւելի նեղ։

Իսկ նրանց մինչեւ ականջները քաշած եւրոպական

գլխարկը, հագի փայտէ ծանր կոշիկների հետ միասին մի հետաքրքիր խառնուրդ է կազմում Եվրոպայի և Ասիայի։ Անբաժան հովհարը կամ մի հովանոց բռնած ձեռին՝ նրանք հանդիսա գնում են ու գալիս իրանց բարի ու մտածկոտ դէմքերով։

Մի շատ բնորոշ դէմք էր ներկայացնում և ոստիկանը, որ ամբողջապէս եւրոպական սպիտակ զգեստների մէջ, երկար սուրը մէջքին, կանգնել էր այնտեղ իր վսեմ պաշտօնի խորին գիտակցութիւնը երեսին։

Մօտիցս լսւում է յանկարծ զանգակի սուր հնչիւնը։ Մի բարձրահասակ մարդ կանգ է առել փողոցի ճիշտ մէջտեղը և թատրոնական վեհափառութեամբ, յենած ձեռի դրօշակին, որի վրայ մի քանի ճապոնական տառեր են գրած, մի անբնական ձայնով ինչ-որ ասում է արագ, շարունակ դիմելով աջ ու ձախ շրջապատողներին, որոնք սակայն մի մեծ հետաքրքրութիւն չէին ցոյց տալիս։

Կրկին զանգակ, և ձայնողը շարժւում է առաջ, տանելով հետը իր արտասանած բացականչութիւնների հանելուկը։ Մի այլ տեղ բարձր պոռում է մի ուրիշը, երևի յանձնարարելով իր ձեռքի բռնած գիրքը. միւս կողմը մի մարդ անդադար զանգահարում, անցորդների ուշքը իր ապրանքի վրայ դարձնելու համար։

Քիչ հեռուն լսւում է յանկարծ մելամաղձոտ մի սուլոց և երևում է մի կոյրի կերպարանք յենած իր գաւազանին, որ զգոյշ առաջ է գալիս շուրջի իրարանցումի միջով։ Դա մի մասսաժիստ է, որ սուլոցով իր անցնելն է յայտնում։

Այդ արուեստը Ճապոնում անյիշելի ժամանակներից կոյրերի մենաշնորհն է կազմում։

Տները մասնաւորապէս հետաքրքիր են նրանով, որ դրսի պատ չունենալով անցորդին միջոց են տալիս ճապոնացու նիստն ու կացը կատարելապէս ուսումնասիրելու և բաց են անում բնորոշ տեսարանների մի ամբողջ շարք՝

Ամէն մի տուն կարծես մի շրջանակ լինի, ուր մեզ

պարզ ցուցադրուած են նրանց բնակիչների կեանքն ու աշխատանքը։

Ահա այստեղ բոլորովին ճաղատ մի ճապոնացի շրջապատուած թղթէ լապտերների ու հովանոցների մի ամբողջ կոյտով՝ մեծ հոգածութեամբ նկարում է։ Մի անսովոր լրջութիւն կայ նրա դէմքին։ Այն բարեսիրտ ու միամիտ կենդրոնացումը, որով կատարում է նա իր աշխատանքը, քեզ ակամայ երեխայ է յիշեցնում։

Կից խանութում մետաքս են ծախում. պատերին կախուած են կտորներ քմահաճ նկարներով։ Գործավար ճապոնուհիները մէկը միւսի ետևից բաց են անում յաճախորդի առաջ մետաքսի նեղ փաթեթները, մինչ տէրը, չոքած իր մանրիկ սեղանի առջև, բոլորովին խորասուզուել է հաշիւների մէջ։

Մի քիչ դէնը մոմ են պատրաստում, խանութի մեծ մասը բռնում է կանաչ հեղուկով լիքը տաշտը, որի մէջ թաթախում են անդադար փոքր կլոր փայտեր. չորացնում են, թաթախում նորից. և այսպէս մի քանի անգամ, մինչև մոմը պատրաստ լինի։

Կողքին մի աշխատանոցում պատանիներն իրանց ձեռագործի վրայ ծռուած ասեղնագործում են ոսկեթել քմահաճ նկարներ։

Ոսկերիչի խանութում շինում են գեղեցիկ գօտիներ, փոքրիկ բռոշներ, որոնք սուր են ներկայացնում, և այլ մանր զարդեր. սրանց գլխաւոր գնողները տուրիստներն[1]) են։ Բայց այնտեղ բնաւ չէք տեսնի թանկագին քարեր, որին ճապոնացին արժէք չի տալիս։ Նրան գրաւողը շինուածքի գեղարուեստական կողմն է։

Յաճախ աչքիդ հանդիպում են սափրիչի խանութներ, ուր յաճախորդները բոլոր ուժով գլուխները յետ ճկած՝ նստած են մի յուսահատ դիրքով, քթները յանձնած սափրիչի բարեհաճ տրամադրութեանը, կամ մի ճապոնուհի, որ զբաղուած է իր տուալետն աւարտելով։

---

[1]) Ճամբորդ։

Ապա նորից գալիս են խանութները։

Հովհարներ, ափսէներ, գամբիւղներ, բոլորն էլ կախուած առաստաղից, ծածանւում են անցորդի քթի տակ։ Նրանց ետևից նկատւում է մի ամբողջ շարք յարդէ տոնամանների իրանց թաւշէ գեղեցիկ օղակներով. կամ մի չաստուած, որ իր ահագին փորովը բազմած է սեղանի գլխին։

Շատ են ժամագործները։ Ժամացոյցը արևելքում խիստ է յարգուած։ Չինացիք նկարուելու ժամանակ ժամացոյցը դնում են իրանց մօտը սեղանի վրայ, երբեմն նոյն իսկ երկուսը, իրանց աւելի փառահեղութիւն տալու համար։

Լուսանկարիչների ցուցանկարներն էլ բաւական յաճախ են աչքի ընկնում. մանաւանդ եւրոպական թաղի մօտերը։ Լուսանկարը շատ էժան է. 12 հատ գեղեցիկ գունաւոր տեսարանը արժէ իէն (մօտ 2 ռուբլի)։ 12 փոքր նկար վիզիտի դիրքով, այն էլ ամենալաւ լուսանկարչի մօտ, արժէ նոյնպէս 2 ռ., իսկ աշխատանքը չափազանց մաքուր է ու սիրուն։

Ուտեստի շուկան նոյնպէս մօտիկ է եւրոպական մասին։ Խանութները շարուած են իրանց տեսակի համեմատ. մի շարք միայն միս են ծախում, ապա բանջարեղէն, պտուղ, ձուկ և այլն։

Միրգը դրած է ապակէ զանգակների տակ, որ սաստիկ մաքուր են պահում։

Ձկան խանութը ներկայացնում է վրան ծածկած մի բակ, ուր խառն թափած են ձկան կոյտերը քարէ յատակին։ Եւ ինչ երկակենցաղ ասես, որ այստեղ չլինի, ահագին քանակութեամբ ժժմակներ, ճիճուներ, խեչափառներ և այլն, որին եւրոպացին նայել անգամ չէ կարող։

Առհասարակ ձուկը ճապոնացու գլխաւոր ու նախընտիր կերակուրն է, և բրնձից յետոյ առաջին տեղն է բռնում։

Ձուկն ուտում են մեծ մասամբ հում։ Մեխով տալիս են գլխին, նրա տանջանքին վերջ տալու համար, հանում են փորոտին, կտրատում են, դնում են պնակի մէջ և հրամցնում։

Այսպէս պատրաստած ձուկը նրանց սիրելի կերակուրն է իբրև դէսսերտ։

Միս ուտում են չափազանց քիչ, գերադասում են պտուղն ու բանջարը։ Պտուղներից սովորական են բանան, անանաս, կոկոս և երեխի գլխի մեծութեամբ ահագին նարինջներ (պամպելմուս), այլ և եամամօ, որը մի մեծ ելակի է նման ու մի տեսակ ձիւթի հոտ ունի։

Շատ կան նոյնպէս քաղցրավաճառներ. ճապոնացին սիրում է անուշեղէն. խմորեղէնը լինում է թէ հում, թէ եփած։ Նրանց կարկանդակների ու շաքարեղէնների տեսքն այնքան էլ գրաւիչ չէ մեզ համար։ Միայն խիստ համեղ է «կաստերա» ասուած տորթը. այն էլ սպանական ծագում ունի։

* * *

Բոլոր արտիստները, մանաւանդ ռուսները, իրանց պարտքն են համարում այցելել Նագասակի հռչակը կազմող վարպետ Իեզակիի արհեստանոցը, ուր կրիայի պատեանից գեղեցիկ իրեր են պատրաստում։

Իեզակին, որին ամենքը «Ժեներալ Կրիայ» են անուանում, սովորական, հաստլիկ, կարճլիկ մի մարդ է բարի դէմքով։ Մեզ ընդունեց մեծ սիրով, սեղմեց ձեռքս եւրոպավարի, բարեւեց մեզ մի թոթով ռուսերէնով և իսկոյն հրամայեց թէյ բերեն։

Ճապոնական թէյը հրամցնում են փոքրիկ գաւաթներով և առանց շաքարի. բայց համեղ կաստերան լիուլի փոխարինում է շաքարի պակասը։

Թէյից յետոյ Իեզակին մեզ առաջնորդեց վերի յարկը, ուր իրերն էին ցուցադրուած։ Փղոսկրի քանդակումը հիանալի է ուղղակի իր նրբութեամբ ու գեղեցկութեամբ։ Ամենից աւելի աչքի ընկնող տեղում զետեղուած էին կրիայի պատեանից շինած ճապոնական ու եւրոպական մի քանի ռազմանաւեր։

Կայմերը իրանց կայմններով, պարանները, ելարանները, մինչև անգամ սանդուղքի իւրաքանչիւր աստիճանը դուրս էր բերուած զարմանալի ճշտութեամբ ու մաքուր։

Ինգակիի այն մանրանկար գեղարուեստական փոքրիկ աշխարհից մենք ընկանք ուղղակի ժողովրդական ու եռուն առևտրի տաճարը—Ճապոն Բազարը, որ մեր՝ կարաւանսարային համապատասխանող մի բան է։

Դա մի մեծ կլոր շէնք է, ուր խանութների շարքը ձգւում է ճառագայթի ձևով դէպի կենդրոնը, ապա կենդրոնից չես կարող դուրս գալ, մինչև որ այդ ամբողջ լաբիրինտը անց չկենաս իր բոլոր անկիւններով ու թեքումներով, եթէ միայն յուսահատած, կէս ճամբից յետ չդառնաս,

Ապրանքի տեսակները շատ չեն և շարունակ կրկնւում են։ Մասնաւորապէս շատ կան զանազան գոյն թաւշեայ քսակներ, զարդ հերկալներ, և անթիւ, անհամար թղթէ հովհարներ ամեն տեսակ ֆանտաստիկ նկարներով ծածկուած։

Պատերից կախուած են ճապոնական տիկնիկներ, աչքերը չռած և մոնղոլական տիպիկի դէմքերով։ Մեծ տեղ է բռնում խանութը։

Նրանց գրքերն էլ են իրանց տեսակի։ Թուղթը աւելի հաստ է և խորտուբորդ, տպել կարելի է միայն մի երեսի վրայ, այնպէս որ մեր մի թերթին համապատասխանում է նրանց կրկնատակ ծալած երկու երեսը։ Կազմն էլ տարօրինակ է. թղթերը կարում են մետաքսէ թելով, որ դրսից մի գեղեցիկ հանգոյց է կազմում։

Ծախողները կին են մեծ մասով։ Օտար անցորդներին նրանք կանչում են անգլիերէն կամ ռուսերէն, բաւական յաջող գուշակելով նրանց ինչ ազգից լինելը։

Նագասակիում օտար լեզուներից ամենից աւելի տարածուածը ռուսերէնն է. դրան նպաստում է Կամաւոր Ֆլօտի յաճախակի երթևեկը և ռուս ռազմանաւերի այցը։

* * *

Նագասակիի փողոցներով իմ անցնելը ոչ ոքի ուշադրութիւնը չէր գրաւում։ Եւրոպացիներին ընտելացած են արդէն։

Միայն երբ երկար կանգ էի առնում մի որևէ խանութի առաջ, դիտում էին ինձ ոտից գլուխ՝ զարմանալով

երևի, թէ ինչն էր ինձ այդպէս հետաքրքրողը։

Մի ճապոնուհի նկատելով, որ հայեացքս մի մասնաւոր հետաքրքրութեամբ եմ ուղղում խանութի խորքը, խնդրեց, որ ներս մտնեմ նրա բնակարանը, եթէ կըհաճեմ։

Եւ ինչ ասել կուզի, որ մեծ ուրախութեամբ ընդունեցի նրա առաջարկը, և նրա հետ մի նեղ ու փոքր անցքով մտանք տան մասը։ Դա արդէն բնակարանն էր, մի մեծ սենեակ, որ հեշտութեամբ կարելի է մի քանիսի վերածել շարժական թեթև պատերի միջոցով։ Յատակն այդտեղ քիչ բարձր է նախասենեակից։ Հետևելով տեղական քաղաքավարութեանը, հանեցի կօշիկներս սանդուղքի գլխին և գուլպաներով կոխեցի սենեակի մաքուր հասիրը։

Շուրջը ամէն-ինչ մաքրութիւնից փայլում էր։ Թղթէ պատերին նկարուած էին արագիլներ։ Անկիւնում զետեղուած էր սիրուն երկթև ճենապատը և մի փոքրիկ թաղար՝ մէջը մանրադիտական մի ծառով։ Սենեակի խորքում պատի մէջ ծալքն էր, ուր ցերեկներն անկողիններն են դարսում։ Ճապոնացին, ինչպէս յայտնի է, կահ-կարասի չի սիրում, ասելով թէ դրանք փոշի հաւաքելուց զատ ուրիշ բանի պէտք չեն։

Անկողինը փռում են գետնի հասիրի վրայ, ճաշում են չոքած և ամէն մէկի առաջ կայ մի-մի ցածլիկ փոքրիկ սեղան, կամ յաճախ ուղղակի գետնին։

Սենեակից դուրս գալով, մտանք ցանկով շրջապատուած բակիկը, իր մանրիկ պարտէզիկով, ուր բանտարկուած էր պտուղներով ծանրաբեռնուած մանդարենի մի ծառ, կարծես վանդակի մէջ։

Այդ պարտէզիկի կենդրոնում ցոլցլում էր մի աւելի փոքրիկ լճակ, մէջն էլ մանրադիտական մի ժայռիկ, որի վրայ հպարտ վեր էր բարձրանում մի մի գաճաճ ծառիկ։

Ճապոնացին շատ է սիրում բնութիւնը. գիւղերում նա աշխատում է շինել իր բնակարանը կարկաչուն առուակի ափին, կամ սարի սիրուն լանջին, որտեղից լայն գեղեցիկ տեսարան է բացւում։ Իսկ քաղաքում հեռու այդ

բոլորից նա ուզում է բնութեան գոնէ մի նմուշը, մի փոքրիկ կտոր իր մօտն ունենայ։

Ճապոնացու տանը, թէ ներսը, թէ բակում, ամեն բանի վրայ մի մասնաւոր դրօշմ կայ գոհունակութեան, չափաւորութեան և գեղարուեստական պարզութեան։

Օր. Հ. Մելիք-Հայկազեան

---

# Դ. ԱԶԳԱԳՐՈՒԹԻՒՆ

## 136. Գնչուներ եւ հայ բօշաներ

«Ուզան բերանը կեման կովէն լաւ է»։
Բօշ. առած։

Մի ժողովուրդ, որ ազգութիւն, հայրենիք և կրօն չունի, որ «չի ցանում, չի հնձում, թռչունի պէս ապրում է», որի հայրենիքը աշխարհն է ամբողջապէս, հովանին երկինքը, հարստութիւնը մի աւանակ և քանի չուլ ու փալաս,—դա բօշան է։ Նա գիմանում է հիւսիսի սառնամանիքին, տանում է հարաւի խորշակն անփեաս։ Ամեն տեղ նա ապրում է և բնակւում որպէս իր սեփական տանը. ubi bene, ibi patria[1]), ահա նրա գաղափարը հայրենիքի մասին։ Դաւանում է այն բոլոր կրօնները, որոնց ծանօթ է, ընդունում և խօսում է այն բոլոր ազգերի լեզուները, որոնց հետ մօտիկ յարաբերութիւն ունի։ Ամեն երկիր նա անխտիր համարում է իր հայրենիքը, ամեն լեզու, որի գիտենալուց շահ է սպասում, իր մայրենի լեզուն և ամեն ինչ իր սեփականութիւնը։ Մի անօրինակ, եզակի աշխարհ-քաղաքացի՝ կօսմօպօլիտի մի կատարելատիպ—դա գնչուն է առհասարակ և բօշան ի մասնաւորի։

Հպարտ իր աղքատութեան մէջ, անկախ և ազատասէր առանց որևէ քաջութեան, աշխարհակալ և հարկատու առանց զէնքի և աշխարհասասան պատերազմների. անհոգ, որպէս երկնքի թռչունը, նա հնձում է այնտեղ, ուր չի

---

[1]) Ուր լաւ, անդ հայրենիք։

ցանել. պահանջում և ստանում է այն, որ չի տուել. վայելում է այն, որ իր քրտինքով չի վաստակել. «Մի՛ այսուհետև հոգայցէք վասն վաղուի, զի վաղիւն վասն իր հոգասցի», դա բօշայի կեանքի բնաբանն է։

Նա վստահ է, որ ամեն տեղ կիշխէ, կը տիրապետէ, այն մտքով, ինչ մտքով, որ բօշան հասկանում է իշխել և տիրապետել բառերը։ Նա համոզուած է, որ ամենքը պարտական են իրան հարկ տալու, և հաւատացած է, որ ամենից կը ստանայ իր պահանջը, ուստի և նա ամենուրեք, ամեն տեղ է, ուր բանաւոր արարածներ կան։ Սարերն ու ձորերը չեն խափանում նրա ընթացքը, ծովն ու անապատը արգելք չեն դառնում նրա անընդհատ թափառելուն։ Եղանակների յանկարծական փոփոխութիւն, անձրև, արև, ձիւն կամ փոթորիկ երկիւղ չեն ազդում նորան։

Տոկունութեամբ յաղթելով բոլոր բնական արգելքներին և պատահարներին, նա իր թռուցիկ բնակարանով մերթ երևում է հարաւի տօթակէզ անապատներում, մերթ հիւսիսի սառնամանիքում և չքանում է որպէս պատկեր։ Նա չի ճանաչում ոչ սահման, ոչ տարածութիւն և ոչ արգելք. ուստի և թափառում է աշխարհի բոլոր մասերում և բոլոր ազգութիւնների մէջ անխտիր։

Զուր չէ այն աւանդութիւնը, որ մեր բօշաներն իրանց Կայէնի սերունդ են համարում, հաւատալով, թէ երկնային անէծքն է, որ նրանց «երերեալ ու տատանեալ» թափառել է տալիս իրանց նախահօր մեղքը քաւելու համար։ Չունենալով հող և մասնաւոր սեփականութիւն, նա ամբողջ աշխարհի բերքն իր սեփականութիւնն է համարում, ուստի և սեփականատիրոջ վստահութեամբ մտնում է ամեն մի օտարականի տուն, ըստ երևոյթին արդարացի պահանջով. թէև այդ պահանջը քողարկած է լինում աղերսախառն բառերով և արտայայտւում է խնդիրքի ձևով.— Նա իր հաքկը, իր ապրուստն է պահանջում, և վա՜յ նրան, որ չի՛ յարգի այն կոսմօպոլիտի խնդիր-պահանջը։ Կարկուտի նման կը թափուի բօշայի բերանից նրա անսպառ անէծքը մերժող տան գլխին։ Այդ իր իրաւունքն է համարում նա.

նրա զէնքը իր կծու անէծքն է և ագէտ ու սնոտիապաշտ ժողովրդի վրայ ազդում է նա այդ միջոցով։ Բօշան ապրում է իր ճարտար լեզուի և ռամիկներին սարսափեցնող անէծքի շնորհիւ։

Բօշայի ազնիւ յատկութիւններն աւելի աչքի են ընկնում, եթէ նրան համեմատելու լինինք ոչ թէ մի նըստակեաց և քիչ թէ շատ քաղաքակիրթ ազգի հետ, այլ իր ցեղակից և համարեա նոյն միջոցներով ապրուստ հայթայթող թուրք գնչուի հետ, որ կրօնով մահմեդական է։ Թէև սոցա կեանքի հանգամանքները, աւանդական պարապմունքը միևնոյնն են, թէև ծագումով նոքա պատկանում են միևնոյն ցեղին, բայց վարք ու բարքի մաքրութեամբ և հոգեկան ազնիւ յատկութիւնների առաւելութեամբ հայ բօշան շատ ու շատ բարձր է թուրք գնչուից։

Մինչ վերջինը պատրաստ է յարմար բոպէին՝ առանց առիթը բաց թողնելու թալանել մտած տունը, գողանալ ամեն մի ձեռն ընկած առարկայ, եթէ նրա գործողութիւնը դիտող չկայ, կամ զբաղեցնել տանտիրոջը հմայութիւններով, որ ընկերակիցը միջոց գտնի մի բան թըռցնելու, հայ բօշան երբէք, ոչ մի դիպուածում այդպիսի ստորութիւն յանձն չի առնի։

«Չգողանալ»-ը նրա ցեղի աւանդական և սրբազան պատուէրներից մինն է։ Երբէք ոչ մի անգամ բօշան չի բռնուած գողութեան մէջ. գոնէ ինչքան հետաքրքրուել ենք, չենք պատահել մէկին, որ մեր ասածի հակառակը պնդէր։

Այդ է պատճառը, որ ոչ մի տեղ արգելուած չէ բօշայի մուտքը. ամեն տանտէր վստահ է նրա հաւատարմութեանը. մինչդեռ ոչ մի թուրք գնչու այդպիսի հաւատ չի վայելում և ազատ մուտք համարեա չունի տներում։ Նոյնն է և Եւրոպայի գնչուն, որին առհասարակ հաւատ չեն ընծայում։—Նրանք իրանց արդարացնում են մի բնորոշ աւանդութեամբ. Եւրոպայի գնչուների ասելով՝ չորրորդ մեխը Քրիստոսի խաչից՝ գողացել է մի գնչու. ուստի այդ օրից նրանց ներելի է համարւում գողութիւնը, և գնչուներից ով շատ գողութիւն անէ, այնքան էլ շուտ դրախտ կըգնայ։

Թուրք գնչուն աւելի գործնական և խորամանկ է, երբ բանը գալիս է մարդկանցից փող կորզելուն։ Նա շատ լաւ գիտէ օգտուել ռամիկ ժողովրդի սնահաւատութիւնից զանազան խաբեբայութիւններով։ Գնչու թրքուհիները իրանց «ֆալ» երով (հմայութիւն), եղունգներին նայելով, վհկութեամբ կամ անբարոյական կաքաւով, տզրուկի նման ծծում են միամիտ ամբոխի արիւն-քրտինքով վաստակածը։ Հայ-բօշան բոլորովին չգիտէ գործադրել այդ թէև՝ ստոր, բայց դիւրին փող կորզելու միջոցներից և ոչ մինը։

Զզուելի է թուրք գնչուի թախանձանքը. նրա խմբի մօտից չի կարելի անցնել առանց նոցա ագահութեանը բաւարարութիւն տալու։ Եթէ կառքով ես և կամ ձիով, նոքա արձակում են իրանց մերկանդամ մանչ և աղջիկ երեխաներին, որոնք ամենաշուտ գնացող կառքի յետևից էլ վազում են անընդհատ մի քանի վերստ՝ և մինչև բան չեն ստանում, յետ չեն դառնում։ Քարտասիրտ անցորդը միայն անբաժին կարող է թողնել այդ ստահակներին, որոնցից ազատուելու ոչ մի հնար չկայ։ Հայ բօշաների մէջ այդ սովորութիւնը բոլորովին չկայ. նոցա մանուկները խնդրելու սովորութիւն չունին։ Այդ պարապմունքը պատկանում է միմիայն կանանց. այն էլ երբէք նոքա դրամ խնդրելու սովորութիւն չունին, մանաւանդ ճանապարհին։ Նոցա խնդիրքը միմիայն տներիցն է լինում։ Յաճախ թուրք գնչուները իրանց հետ ման են ածում կապիկներ ժողովրդին ցոյց տալու համար և նոցա պարել տալով, փող են հաւաքում։ Այս պարապմունքները անծանօթ են մեր բօշաներին։ Նոյն իսկ արտաքին հագուստից կարելի է ճանաչել այս ցեղակից թափառականների բարոյական տարբեր աստիճանները։ Թուրք գնչուն կարծես բոլորովին զուրկ է ամօթխածութիւնից և վայելչութեան զգացմունքից. նա շրջում է համարեա մերկ առանց քաշուելու. նա լկտի է և անպարկեշտ։ Մինչդեռ բօշան միշտ խուսափում է մերկութիւնից։ Նրա հագուստը թէև հնոտի, ծածկուած անթիւ, բազմագոյնի կարկատաններով, բայց երբէք անվայելուչ և պատառոտած չէք տեսնի, նա սաստիկ բարոյական է։

Սակայն պէտք է աչքի առաջ ունենալ, որ Նոցանից մինը կրօնով մահմեդական է և այդ կրօնի շնորհիւ նրա մէջ պիտի երևան գային որոշ յատկանիշներ, որոնք կարող են ծնել միայն այդ կրօնից. մինչդեռ հայ բօշան, իբրև քրիստոնեայ-լուսաւորչական ժողովուրդ, որ մշտապէս ապրում և շփւում է մեզ հետ, շատ բարձր պիտի լինէր նրանից։ Բացի այս, թէև Նոքա միևնոյն ծագումն ունին, բայց պատկանում են տարբեր ընտանիքների, այնպէս որ իրանց ցեղական լեզուները միմեանց անհասկանալի է և խորշում են միմեանցից։

Գ. Վանցեան

---

## 137. ԵՒՐՈՊԱՑՈՑ ԿԱՐԾԻՔԸ ՀԱՅՈՑ ՄԱՍԻՆ

Օսմանեան կայսրութեան մէջ հայերն են ամենամեծ առևտուր ունեցողները և միևնոյն ժամանակ այդ գործը ամենից աւելի հմտութեամբ առաջ տանողները։ Նրանք համբերող են, խնայող ու անխոնջ, նրանք ճանապարհորդում են Ասիայում և Հնդկաստանում, նրանք խանութներ ունին ամեն տեղ։ Հայոց մեծ մասը մեքենական արհեստներով են պարապում։ Նրանք սեղանաւորներ են, կապալառու և փաշաների ու ուրիշ մեծամեծ անձերի գործակալներ։ Նրանց մեղադրում են իբրև թէ ոչ մի միջոց չեն խնայում հարստանալու համար և թէ, երբ կարող են, խաբում են ապրանքների մէջ։ Սակայն պէտք է խոստովանել, որ ձգտելով ձեռքից եկածի չափ շատ փող աշխատելու՝ հայերը, շատ սակաւ է պատահում, որ ճիշտ չկատարեն իրանց պարտաւորութիւնները և ճիշտ են կատարում իրանց խոստմունքները։

Հայերը խիստ են իրանց վարք ու բարքի մէջ, ճըշտութեամբ պահպանում են իրանց հաւատի պատուէրները, ագէտ են և նախապաշարուած, նրանց պակասում է միայն կրթութիւն և մի տէրութիւն, որ այնքան ճնշող չլինէր, որքան տաճկականը և աւելի արդար լինէր, հայերը

վերին աստիճանի յարգելի ժողովուրդ կը դառնային։

Եթէ այս պատկերի վրայ աւելացնենք պարզ ճաշակ, խիստ խնայողութիւն, զարմանալի կանոնասիրութեան ոգի, մեծ ընդունակութիւն առեւտրական գործերում, մենք նկարագրած կը լինենք հայերի լաւ կողմերը։ Գուցէ ոչինչ հակադիր պատկեր ներկայացնելու չունենայինք, եթէ հայերը, անկախ ազգ կազմելով՝ միշտ խաղաղ դրութեան մէջ ապրած լինէին և կառավարուէին սեպհական օրէնքներով. բայց հրէաների պէս, կապուելով իրանց պատմական յիշատակներով աշխարհի սկզբի հետ, նրանց պէս ցրուած լինելով բոլոր Ասիայում՝ նրանք միշտ ենթարկուած են եղել բռնակալ տէրութիւնների, հպատակուած լինելով Տաճկաստանում տարբեր հաւատի տէրերի, որոնք ուրիշ առաջնորդ չեն ունեցել, բայց եթէ իրանց կրքերը, և ոչ ուրիշ օրէնք, բայց եթէ կամքը։

Նրանց չքեղ ապրուստը, հարստութիւնները կարող էին գայթակղել իրանց բռնակալներին, և նրանք դիզում էին գանձեր և վհատ էին։ Մի անզգոյշ խօսք, մի անկեղծ կարծիք կարող էր յաճախ կործանել նրանց—նրանք լուռ և երեսպաշտ դարձան։ Երախտագիտութիւնը դէպի իրանց պատուազուրկ եղած բարերարները կարող էին վնասել իրանց, նրանք երբեմն ապերախտ են գտնուած։ Մահմեդական երկրներում չկարողանալով մեծամեծ պաշտօնների ու պատիւների հասնել՝ վաստակելու սէրը նրանց գործունէութեան միակ շարժառիթը դարձաւ (Օլիվիէ)։

Աշխարհիս երեսին եղած հայերի թիւը կարելի է երեք միլիոն համարել։ Կիսից աւելին բնակւում են Տաճկաստանում։ Շատերը ապրում են Ռուսաստանում, մանաւանդ Կովկասեան նահանգներում. շատ հայեր կան նոյնպէս և Պարսկաստանում... Ամենայն տեղ, ուր գտնւում են նրանք, համարուած են ճարպիկ և բանիմաց մարդիկ և բոլորեքեան համաձայն են և խոստովանում են, որ նրանք հասարակ խելքի տէր մարդիկ չեն։

Տաճկաստանում նրանք աւելի բարձր են հանդիսա-

ցել, քան շրջակայ ազգութիւնները իրանց առևտրական գործունէութեամբ և այն ընդունակութիւններով, որ ունին դէպի մեքենական արհեստները։ Գլխաւոր վաճառականները հայերն են, ինչպէս և բոլոր սեղանաւորները, և դուք կարող էք համոզուած լինել, որ կը գտնէք նրանց ամեն մի ձեռնարկութեան և գործի պարագլուխ, որ մասնագիտական պատրաստութիւն է պահանջում։

Նրանք տաճկի հաստատամտութիւն ունին՝ առանց նրա անշարժութեան, նրանք յոյնի նուրբ ու թափանցիկ միտքն ունին առանց նրա թեթևամտութեան. միով բանիւ նրանք արևելքի անգլօ-սաքսոնացիքն են։ (Դիվայա)։

Ասում են, որ հայերը արևելքում նոյնն են, ինչ որ զուիցերացիք արևմուտքում. աւելի արդար կը լինէր հոլանդացիների հետ համեմատել նրանց. նրանց մէջ նկատւում է նոյն յարատև, բայց հանգիստ գործունէութիւնը, նոյն ձգտումը՝ հարստութիւն ձեռք բերելու, թէև դա մի փոքր բան լինէր, նոյն արհամարհանքը դէպի արտաքին փայլը։ Նրանց բոլոր առաջադիմութիւնները, որ կատարւում են անդորրութեան մէջ, անյայտ են Եւրոպային, ուր չեն հասնում նրանց գրքերը և պարբերական հրատարակութիւնները։ (Դիւլորիէ)։

Բոլոր նշաններից երևում է, որ հէնց այս ազգը աստուածային տեսչութեամբ ընտրուած է իբրև առաջնորդ՝ քրիստոնէութիւնը և քաղաքակրթութիւնը տարածելու արևելքում։ Տարակոյս չկայ, որ մեծ պատմական համաշխարհային նշանակութիւն ունի այն հանգամանքը, որ այս քրիստոնեայ ժողովուրդը ցրուած է մի մեծ տարածութեան վրայ, Մարոկկոյից սկսած մինչև Չինաստան և միևնոյն ժամանակ նրա բոլոր անդամները կապուած են միմեանց հետ կրօնական կապերով։ (Հաքստհաուզէն)։

---

## 138. Ա. Վ. ԵԼԻՍԷԵՎԻ ԿԱՐԾԻՔԸ ՀԱՅՈՑ ՄԱՍԻՆ

(Կարդացուած Ս. Պետերբուրգի Կայսերական Աշխարհագրական Ընկերութեան նիստում *1887* թ. մարտի *4*-ին)

*Տաճիկներից յետոյ մենք դառնում ենք հայերին, թէպէտ սրանք աւելի տարածուած լինելով Փոքր-Ասիայում՝ գուցէ աւելի բազմաթիւ լինին, քան թէ միւս բոլոր ազգերը այս ազգագրական տարրերով հարուստ աշխարհում։ Հայը, որպէս և հելլենացին կենդանի հանգոյց է կազմել արևմտքի և արևելքի մէջ մարդկութեան կեանքի երկու նշանաւոր վայրկեաններում, երբ արևմուտքի քաղաքակրթութիւնը թափանցում է մինչև արևելքի սիրտը նրան դարևոր նիրհից զարթեցնելու համար։ Հայոց դերը այժմ աւելի պատուաւոր է, որովհետև նրանք տարածում են քաղաքակրթութիւնը մինչև այն լեռները, որոնք հիւսիսից ներփակում են Միջագետքը։ Բացի այդ նշանաւոր պաշտօնից, հայերը արժանի են մեր առանձին ուշադրութեանը ոչ թէ միայն մարդաբանական, այլ և կենսաբանական և պատմական տեսակէտներից։ Մի ազգութիւն, որ կարողացել է պաշտպանել իր անհատականութիւնը Նեբրովթի և Շամիրամի ժամանակներից մինչև մեր օրերը, պահպանելով մասամբ և իր տիպը, սովորութիւնները, լեզուն և կրօնը՝ չնայելով որ ոչ մի ազգ, նոյն իսկ հրէաները, չի ենթարկուել այսքան տառապանքների,—պատմութեան մէջ երբէք չպէտք է մոռացուի։*

*Զարմանք է յարուցանում և գոյութեան կռուի տեսակէտից ոյժերի յարատևութիւնը և տոկունութիւնը այս փոքր ազգի, որ այսքան դարեր հզօր ազգերի մէջ սեպաձև մխուած է։ Կործանուեցան Մեծ-Ասորեստանը և Բաբելոնը. պարսից ահագին պետութիւնը, պարթևաց, մակեդոնացոց. հռովմայեցոց, արաբացոց տէրութիւնները, մեծամեծ ազգեր բնաջինջ անհետացան աշխարհիս երեսից, իսկ հայոց ազգը ոչ միայն կենդանի մնաց, այլ և լի կեանքով և յու-*

սով տոչորւում է գիտութեան ծարաւով և սիրով դէպի աշխատանքը։ Մինչև այժմ խորհում է նա թօթափել հազարամեայ լուծը, զարգացնում է իր լեզուն, ուսանում է գիտութիւններ, առաջ մղում ինքն իրան և արդէն շատ բանի հասել է։

Այս ազգը մի աւելի խորին հանելուկ է պատմութեան համար, քան թէ հրէաներն ու գնչուները։ Այս երկու աշխարհաքաղաքացիները համարեա մշտական թափառականներ են, զուրկ հայրենիքից, որոնց համար ubi bene ibi patria· իսկ երկրագործ հայը չէ թողել իր Հայաստանը, Վանայ ծովակի ափից չէ գաղթել և Մասիսի ստորոտից չէ հեռացել։ Հայ երկրագործի սերտ կապը իր մայրենի հողի հետ՝ կենդանի հերքումն է այն անձանց սխալի, որոնք դասում են նրան հրէաների հետ մի կարգում՝ համարելով հայերին միայն վաճառական ժողովուրդ։ Ճշմարիտ է, որ ճակատագիրը նշանակելով հային, ինչպէս և յոյնին, միջնորդական կայ արևմուտքի և արևելքի միջև, շնորհել է նրանց հաւասար յատկութիւններ՝ ճարպկութիւն, հնարագիտութիւն, լայանի մտքերի նրբութիւն, բնաւորութեան տոկունութիւն, որոնք թէ հայոց և թէ յունաց ընդհանուր յատկութիւններն են։ Բայց այս ամենը բաւական չէ՝ բացատրելու համար հանելուկը հայերի գոյութեան, այն հայերի, որոնց հետ Եւրոպան սկսում է փոքր առ փոքր ծանօթանալ, և տակաւին Բեռլինի վեհաժողովում նա հրաժարւում էր իբրև ազգութիւն ճանաչել հայերին։

Զննելով սրանց բազմադարեան պատմութեանը, հազարաւոր արկածներին, որոնց ենթարկուել է այս ազգը, հայոց տիպը ներկայացնում է այնուամենայնիւ աւելի հաստատ տոկունութիւն, քան թէ Փոքր-Ասիայի ազգերի որ և է ուրիշ տիպ, այնպէս որ ամենամաքուր արիւն պարունակող ազգերի թւում կարելի է դասել և՛ հայերին, որոնք միևնոյն ժամանակ հանդիսանում են և՛ տիպի մաքրութիւնը պահպանող՝ այն չափով, ինչ չափով, որ նրանք իրանց հայրերից ու պապերից ժառանգել են։

## Է. ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԲԱՆԱՀՅՈՒՍՈՒԹՅՈՒՆ

—

### 139. ԳՈՂԹԱՆ ԵՐԳԵՐ

*Վահագի ծնունդը*

«Երկնէր երկին և երկիր·
Երկնէր և ծիրանի ծով,
Երկն ի ծովուն ունէր
Զկարմրիկ եղեգնիկն.
Ընդ եղեգան փող՝ ծուխ ելանէր,
Ընդ եղեգան փող՝ բոց ելանէր,
Եւ ի բոցոյն պատանեկիկ վազէր.
Նա հուր հեր ունէր,
Ապա թէ՝ բոց ունէր մօրուս,
Եւ աչկունքն էին արեգակունք»։

—

*Արտաշէսը փախցնում է Սաթենիկին*

«Հեծաւ արի արքայն Արտաշէս ի սեաւըն գեղեցիկ.
Եւ հանեալ զոսկէօղ շիկափոկ պարանն,
Եւ անցեալ՝ որպէս զարծուի սրաթև՝ ընդ գետն,
Եւ ձըգեալ զոսկէօղ շիկափոկ պարանն՝
Ընկէց ի մէջք օրիորդին Ալանաց,
Եւ շատ ցաւեցոյց ըզմէջք փափուկ օրիորդին,
Արագ հասուցեալ ի բանակն իւր»։

—

*Արտաշէսի հարսանիքը*

«Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեանն Արտաշէսի,
Տեղայր մարգարիտ ի հարսնութեան Սաթենկանն»։

—

*Արտաշէսի մահը*

«Ո՛ տայր ինձ զծուխ ծըխանի
Եւ զառաւօտն Նաւասարդի,

Զվազելն եղանց և զվազելն եղջերուաց,
Մեք փող հարուաք և թմբկի հարկանէաք։

—

Արտաւազդի բողոքը

«Մինչ դու գնացեր, և զերկիրս ամենայն ընդ քեզ տարար-
Ես աւերակացս որպէս թագաւորեմ»։

—

Արտաշէսի անէծքը

«Եթէ դու յորս հեծցիս յազատն ի վեր ի Մասիս,
Զքեզ կալցին քաջք և տարցին յազատն ի վեր ի Մասիս.
Անդ կացցես և զլոյս մի՛ տեսցես»։

—

Վարդգէս մանուկ

«Հատուած գնացեալ Վարդգէս մանուկն ի Տուհաց
գաւառէն զՔասաղ գետով,
Եկեալ նստեալ զՇրէշ բլրով, զԱրտիմէդ քաղաքաւ,
զՔասաղ կետով,
Կռել կոփել զդուռն Երուանդայ արքայի»։

—

Գողթան երգերը հայ ամենահին բանաւոր ստեղծագործութեան բեկորներն են, որ մեր ձեռն են հասել շնորհիւ Մովսէս Խորենացու. դրանք երգւում էին Գողթան գինեէտ գաւառում, դրա համար էլ գողթան երգեր են կոչւում։

## 140. Ի ԼԵՒՈՆ [1]) ՈՐԴԻ ՀԵԹՄՈՅ [2]) Ա,

Աւաղ ըզԼէոնն ասեմ,
Որ տաճկաց դուռն ընկել գերի,
Իմ լուս, իմ լուս, ու սուրբ կոյս,
Սուրբ խաչն օգնական Լէոնին ու ամենուս։

Սուլդանն ի մօյտան ելել
Իր ոսկի գուռնդն կու խաղայ։

Խաղաց ի Լէոնն երետ
«Առ խաղա ու տուր տատայիդ։

Լէոն դու տաճիկ լինիս,
Ես ու իմ տատաս քէ գերիս»։

Լէոնն ի բերդին նստել
Դաստակն աչիցն ու կուլար.
«Բէլվանտ որ ի Սիս կերթաս,
Դուն խապար տանիս պապայիս»։

Ոնց որ պան ալ գան լըսեց
Շատ հեծել քաջեց երամով.
Եկաւ ի սուլդանն ելաւ
Շատ գետեր եհան արընեց։

Իառ գԼէոն որդին
Ու հասաւ արտին մուրատին։
Իմ լուս, իմ լուս, ու սուրբ կոյս,
Սուրբ խաչն օգնական Լէոնին ու ամենուս։

## 141. ՈՂԲ ՋՈՒՂԱՅԵՑՒՈՑ

Ափսոս քեզ հայոց խեղճիկ ժողովուրդ,
Ցիրուցան ելաք անմեղ անխորհուրդ,
Գերի գնացաք դէպի ի Խորասան
Քաղցած ու ծարաւ, ոտկոր թշուառական։

Հարիւր ու հազար ցաւի դիմացաք
Ձեր քաղցրիկ երկրէն ոտ դուրս չըդրաք.
Հիմի ձեր հօր, մօր գերեզման թողաք,
Տներն ու ժամերը ուրիշի տուաք։

[1]), [2])—Հեթումը Հայոց թագաւոր էր Կիլիկայում, պատերազմի ժամանակ նրա որդի Լեոնը գերի ընկաւ Եգիպտացոց ձեռքը հայ իշխանների մատնութեամբ. Հեթումի օգնութեամբ միայն նա ազատուեցաւ գերութիւնից։—Այս է անա երգի նիւթը, որ 13-րդ դարու գործ է. (Տես պատմական բաժինը. Կիլիկիոյ վիճակ և Ջրօրհնէքը Ռուբէն թագաւորի ժամանակ)։

Էս սիրուն դաշտերը, մեծ մեծ քաղաքներն
Քաղցրիկ ջրերն, ձեր չէն գեղերն,
Ումն էք թողնում դուք, որ մոռանում էք,
Էդպէս կըլինի, որ մոռանում էք.

Վախում եմ էնպէս մոքերնուցդ ընկնի
Ինչքան որ ողջ էք, մոքերնուդ չընկնի,
Բարի ձեր որդւոց թոռանց պատմեցէք,
Էսպէս հայրենիքն քանդած թողեցիք։

Մասիսի անուննն, Նոյայ տապանի,
Արարատ դաշտի, սուրբ Էջմիածնի.
Մեր խոր Վիրապի, սուրբ Գեղարդ, Մուղնի,
Զմոռանան մինչի օրն դատաստանի։

Աչքս կուրանար, շլինքս կոտրուէր,
Խեղճ Հայաստան, քեզ էսպէս չըտեսնէր.
Թէ մեռած էի, ինձ երանի էր,
Քան թէ կենդանի՝ աչքս բաց տեսնէր։

Ստեփան վարդապետ

1605 թ. Շահ-Աբասի ժամանակ, երբ Ջուղայեցոց քշում էին Ասպահան։ Այս երգը գտել և հրատարակել է Գալուստ Շիրմազանեանց։

---

## 142. ՍԱՍՈՒՆՑԻ ԴԱՒԻԹ

Քրիստոնեայ Հայաստանը երկու դար շարունակ (Է.-Ժ. դար) կռիւ էր մղում հզօր ու յաղթական արաբների դէմ, որոնք անտանելի հարկերով ճնշում էին երկիրը։ Հայերը շատ անգամ զէնքի դիմեցին արաբներից ազատուելու համար։ Նշանաւոր դարձաւ այդ կռիւներից մինում Բագրատ Բագրատունին։ Նա իշխում էր Տարօնի և Սասնի վրայ Թ. դարում։ Մուսէ արաբ զօրավարը յարձակւում է Բագարատի վրայ. սա միացած այլ հայ իշխանների հետ հալածում է Մուսէին յաղթութեամբ։ Մուսէի տեղ գալիս է

Յուսուփ ամիրան։ Սա խորամանկութեամբ հրաւիրելով Բագրատին իր մօտ, շղթայում և ուղարկում է Բաղդադ (851 թ.)։ Ազատւում են Բագարատի որդիքը՝ Դաւիթ և Աշոտ, ապաստանելով Սասուն։ Սասունցիք, առաջնորդ ունենալով Յունան անունով մի հերոսի, ցած են գալիս լեռներից, և կոտորում են արաբ զօրքին։ Յուսուփին նրանք գտնում են թագնուած եկեղեցու (Մուշ) գմբէթում և չամփրում են։

Այս Յունանն է անա Ջէնով Օհանը և Բագրատունի Դաւիթն է, Սասունցի Դաւիթը։

Սրանք պատմական անձեր են և սրանց կատարած քաջագործութիւնների շուրջն է, որ հիւսուել է ժողովրդական վէպը «Սասունցի Դաւիթ» անունով[1])։ Ներկայումս այս վէպից հաւաքուած և հրատարակուած կան մի տասնեակից աւելի վարիանտներ։ Սրա առաջին գտնողն ու հրատարակողն եղաւ Գար. եպ. Սրուանձտեանը։ Դրանցից առնելով Յովհ. Թումանեանը մի փոքրիկ հատուած, շնորհալի կերպով փոխադրեց գրական լեզուի, թողով հաւատարիմ ժողովրդական բնագրին և շատ անգամ նոյն իսկ բառացի ժողովրդական արտայայտութիւններին։

---

## 143. ՍԱՍՈՒՆՑԻ ԴԱՒԹԻ ՔԱՋԱԳՈՐԾՈՒԹԻՒՆԸ

Մսրայ Մելիքը անհամար զօրքով,
Եկաւ ու նստեց Բաթման գետի քով,
Ով եկաւ խըմեց,
Գետը ցամաքեց.
Սասմայ քաղաքում մընացին ծարաւ։
Ջէնով Օհանին զարմանքը տարաւ.
Քուրքը վեր առաւ, սարը բարձրացաւ,
Սարը բարձրացաւ, տեսաւ, ինչ տեսաւ.

---

[1]) Այս դէպքերը գեղեցիկ նկարագրուած են Ծերենցի «Երկունք Թ. դարու» վէպի մէջ, ուր հերոս Սասունցի Յովնանը, մեր Ջէնով Օհանն է։ Տես այս գրքում Ցոփանի Տեսիլքը (եր. 268)։

Ճերմակ վըրանից դաշտը ճերմակել,
Ասես էն գիշեր ձըմեռը եկել,
Ըսպիտակ ձիւնով ծածկել էր Սասուն։
Լեղին ջուր կտրեց, կապ ընկաւ լեզուն.
Հարա՜յ կանչելով՝ փախաւ, տուն ընկաւ.
—Վա՜յ, փախէ՛ք, եկա՜ւ... հա՜յ, հարա՜յ, եկա՜ւ։
Մըսրայ թագաւոր ելել է, եկել,
Եկել մեր դաշտին բանակ է զարկել,
Թիւ կայ աստղերին, թիւ չըկայ զօրքին...
Վա՜յ մեր արևին, վա՜յ մեր աշխարքին...
Եկ, ոսկի տանենք, աղջիկներ տանենք,
Զօրքենք առաջին, պաղատանք անենք,
Գուցէ մեզ գթայ,
Մեզ սըրի չըտայ...
—Դու կա՛ց, հօրեղբա՛յր, դու դարդ մի՛ անիր·
Գընա՛, քու օդում դու հանգիստ քընիր։
Ըսաց Դաւիթը. ես կելնեմ կերթամ,
Մըսրայ Մելիքին պատասխան կըտամ։
Դաւիթը թողեց Ձէնով Օհանին,
Գընաց ախոռից դուրս քաշեց հօր ձին,
Զըրահը հագաւ, զէնքերը կապեց,
Ձին հեծաւ, կանգնեց ու ձէնով երգեց։

Երգեց Դաւիթը ու ձին քշեց,
Ելաւ Սասմայ սարի գլուխ,
Նայեց ներքև,—դաշտը խիտ-խիտ
Կոխած փոշին, կըրակ ու ծուխ։
Տեսաւ, կանգնեց ամպի տակին,
Ու էն անծայր ծովի վըրայ
Գոռաց ձէնովն իր ահագին՝
Տարածելով սարսափ ու ահ.

—Ով քընած էք—արթո՛ւն կացէք,
Ով արթուն էք—ելէ՛ք, կեցէ՛ք,
Ով կեցեր էք—զէնք կապեցէք,
Զէնք էք կապել—ձի՛ թամբեցէք,
Ձի էք թամբել—հելէ՛ք, հեծէ՛ք,
Յետոյ չասէք, թէ մենք քընած,
Դաւիթը գող-գող եկաւ, գընաց»...

Էնպէս գոռաց, ասպանդակեց
Ու, ինչ ամպից կայծակ զարկի,
Մըսրայ զօրքի մէջ տեղ զարկեց,
Շողացնելով թուր—կայծակի։

Զարկեց, փըշրեց մինչև կէսօր։
Կէս օր արիւնն ելաւ հեղեղ,
Քըշեց, տարաւ հազարաւոր
Մարդ ու դիակ ողջ միատեղ։

Կար զօրքի մէջ մի ալևոր,
Աշխարհք տեսած ու բանագէտ.
—Տղէ՛ք, ասաւ, ճանպայ տուէք,
Գընամ, խօսեմ ես Դաւթի հետ։

Գընաց, կանգնեց Դաւթի առաջ,
Էնպէս խօսեց էն ծերունին.

—Դալար կենայ կուռըդ, ով քաջ.
Թուրըդ կտրուկ միշտ քո ձեռին։

Մի ծերունուս խոսքին մըտիկ,
Տես՝ քու խելքը ինչ է կտրում,
Ի՞նչ են արել քեզ էս մարդիկ,
Հէ՞ր ես սրանց դու կոտորում։

Ամեն մինը մի մօր որդի,
Ամեն մինը մի տան ճըրագ,
Որը կին է թողել էնտեղ՝
Աչքը ճամպին, խեղճ ու կրակ։

Թագաւորը զօրով-թըրով
Հաւաքել է, էստեղ բերել,
Խեղճ մարդիկ ենք պակաս օրով,
Մենք քեզ վնաս ինչ ենք արել։

Թագաւորն է քու թշնամին,
Կըռիւ ունիս, իր հետ արա.
Հէ՞ր ես քաշում թուր-կայծակին
Էս անճարակ խալխի վըրայ։

—Լաւ ես ասում դու ծերունի,
Ասաւ Դաւիթն ալեւորին,
Բայց թագաւորն ո՞ւր է հիմի,
Որ սև կապեմ նրա օրին։

—Մեծ վըրանում քընած է նա,
Է՜ն, որ միջից ծուխը կելնի,
Էն ծուխն էլ հօ ծուխ չի որ կայ,—
Գոլորշին է իր բերանի,

Ասին. դէպի մեծ վըրանը
Ասպանդակեց Դաւիթն իր ձին.
Թըռչեց, գընաց ու դըռանը
Գոռաց կանգնած արաբներին.

—Ո՞ւր է, ասաւ, ինչ է կորել,
Դուրս կանչեցէք, գայ ասպարէզ.
Թէ մահ չունի—մահ եմ բերել,
Գըրող չունի—գըրողն եմ ես։

Մելիքն, ասին, քուն է մըտել,
Օխտը օրով պէտք է քընի.
Երեք օր է դեռ անց կացել,
Չորս օր էլ կայ—քունը առնի։

—Ի՞նչ, բերել է աղքատ ու խեղճ
Խալխին լցրել ծովն արիւնի,
Ինքը մտել վըրանի մէջ,
Օխտը օրով հանգիստ քընի՜...

Քընել-մընել չեմ հասկանում.
Վե՛ր կացրէք շուտ, դուրս գայ մէյդան.
Էնպէս դըրան ես քնացնեմ,
Որ չըզարթնի էլ յաւիտեան...

Եկան մարդիկ ճարահատուած՝
Շամփուր դըրին թէժ կըրակին
Ու զարկեցին խոր մրափած
Մըսրա-Մելիքի բաց կըրընկին։

«Օ՜ֆ, էլ հանգիստ քուն չունի մարդ
Էս անիծուած լուի ձեռից».
Խոր մռնչաց հըսկան հանդարտ
Ու շուռ եկաւ, քընեց նորից։

Եկան բերին մեծ գութանի
Խոփը դըրին թէժ կրակին
Ու կաս-կարմիր, կէծկըծալի,
Շիկցած դըրին մերկ թիկունքին։

«Օ՜փ, էլ հանգիստ քուն չունի մարդ
Էս անիրաւ մոծակներից».
Աչքը բացաւ հըսկան հանդարտ,
Ուզում էր ետ քընել նորից.

Տեսաւ Դաւթին, գլուխն ահեղ
Վեր բարձրացրեց մըռընչալով,
Փըչեց վըրէն, որ թըռցընի
Էն աժդըհին մի փըչելով.

Տեսաւ, տեղից ժաժ չի գալի,
Զարմանք ու ահ պատեց հոգին.
Արնոտ աչքերն ըսպառնալի
Ցառեց խոժոռ Դաւթի աչքին։

Նայեց թէ չէ—ըզգաց՝ իր մէջ
Տասը գոմշի ուժ պակասեց.
Պառկած տեղից վրայ նստեց
Ու ժպտալով՝ հետը խօսեց.

--Բարո՜վ, Դաւիթ, յոգնած ես
դիռ,
Ե՛կ, մի նստիր, խօսենք կարգին,
Ցետոյ դարձեալ կռիւ կանենք,
Եթէ կըռիւ կուզես կըրկին…

Իր վըրանում բըռնակալը
Թառսուն գազ խոր հոր է փորել,
Ցանցով փակել մութ բերանը,
Վըրէն փափուկ խալի փըռել։

Ում որ յաղթել չէր կարենում,
Շողոմելով կանչում էր նա,
Նըստեցնում էր իր վըրանում
Էն կորստեան հորի վրայ։

Իջաւ Դաւիթ ձիուցը ցած,
Գընաց, նստեց… ընկաւ հորը։
—Հա՜, հա՜, հա՜, հա՜, վերից խնդաց
Մսրայ դաժան թագաւորը։

—Դէ, թո՛ղ հիմի գնայ խաւար
Հորում փըթի, էնքան մընայ.
Ու անագին մի ջաղցաքար
Բերաւ, դըրաւ հորի վըրայ։

Քընեց էն գիշեր Ջէնով Օհանը։
Գիշերն երազում երևաց ծերին՝
Մըսրայ երկընքում արև ճառագած,
Սև ամպ էր պատել Սասնայ սարերին։
Սաստիկ վախեցած՝ վեր թռաւ տեղից.
—Վա՜յ, կնի՛կ, ասաւ, մի ճըրա՛գ արա.
Գընաց մեր մանուկ դաւիթը ձեռից,
Սև ամպ էր իջել Սասունի վրայ։
—Տունըդ չըքանդուի, ասաւ կընիկը,
Ով գիտէ Դաւիթն ուր է քէֆ անում…
Դու էլ քեզ համար քու տանդ քնած՝
Ալրիշի համար երազ ես տեսնում։
Քընեց Օհանը։ Վեր կացաւ դարձեա՛լ.
—Կնի՛կ, Դաւիթը նեղ տեղն է ընկա՛ծ.—
Մըսրայ վառ աստղը շողում էր պայծառ,
Մեր աստղը հազիւ ցոլքում դալկացած։
—Ի՞նչ եղաւ քեզ, մա՛րդ, գիշերուան կէսին,
Բարկացաւ վըրէն կընիկն աղմուկով.
Խաչ քաշեց էլ ետ Օհանն երեսին,

Շուռ եկաւ, քընեց խըռոված հոգով։
Մի ուրիշ պատկեր աւելի ահեղ.—
Տեսաւ երկնքի բարձր կամարում
Վառւում էր Մըսրայ աստղը փառահեղ.

Սասմայ աստղիկը սուզուեց խաւարում
Զարթնեց վախեցած։—Տունըդ քանդուի կին,
Ես վո՞նց լսեցի քու էդ կարճ խելքին.
Կորաւ մենմենակ մեր ջահէլն անտէր.
Վեր կաց. շուտ արա, զէնքերըս մի բեր...

Ելաւ Օհան, գոմը մտաւ,
Զարկեց ճերմակ ձիու մէջքին.
—Է՛յ ճերմակ ձի, մինչ էրր, ասաւ,
Կը հասցընես Դաւթի կըռուին։

—Մինչև լուսը կըհասցընեմ,
Ու ձին տուաւ փորը գետնին։
—Մէջքըդ կոտրի, լուռ ինչ անեմ,
Լաշի՞ն հասնեմ ես, թէ՞ նաշին։

Կարմիր ձիու մէջքին զարկեց,
Սա էլ էրխտ փորը գետնին։
—Ջա՛ն Կարմիր ձի, մինչ է՞րբ, ասաւ,
Կը հասցընես Դաւթի կռուին։

—Մի ժամի մէջ, Կարմիրն ասաւ,
Կը հասցընեմ Դաւթի կռուին։
—Լեղի՜ ղաոնայ, սև մահ ու ցաւ,
Ինչ տուել եմ քեզ էն գարին։

Հերթը եկաւ, Սևին հասաւ,
Գետնին չէրխտ մէջքը սև ձին։
—Է՜յ, ջա՛ն Սևուկ, մինչ է՞րբ, ասաւ,
Կը հասցընես Դաւթի կըռուին։

—Եթէ ամուր մէջքիս մընաս,
Ոտքդ դընես ասպանդակին,
Մինչև մէկէլ ոտըդ շուռ տաս—
Կըհասցնեմ, ասաց Սև ձին։

—

Սև ձին քաշեց Զէնով Օհան,
Զախը դըրաւ ասպանդակին՝
Այն էլ մինչև շուռ տար վըրան՝
Կանգնեց Սասմայ սարի գըլխին։

Տեսաւ Դաւթի նըժոյգն անտէր
Սարերն ընկած խըրխընջալով,
Ներքև Մըսրայ զօրքը ծըփում,
Ինչպէս անծայր, ծըփուն մի ծով։

Օխտը գոմշի կաշի հագաւ,
Որ չպատռի իրեն զօրից,
Կանգնեց Օհան ու ամպի պէս
Գոռաց Սասմայ սարի ծէրից.

—Դաւի՜թ, գոռաց, ծըտեղ ես դու.
Յիշի՜ր խաչը պատարագի,
Սուրբ Տիրամօր անունը տո՛ւր,—
Լոյսը դուրս եկ արեգակի...

Զէնը գնաց գըմբրդըմբալով՝
Դաւթի ականջն ընկաւ հորում.
Հա՜յ-հա՜յ, ասաւ, հօրեղբայրս է,
Սասմայ սարերից ինձ է գոռում.

— Ո՞վ Մարութայ Աստուածածին,
Ո՞վ անմահ խաչ պատարագի,—
Ձե՛զ եմ կանչել,—հասէք Դաւ-
թին...
Կանչեց, տեղից կանգնեց ոտքի։

Էնպէս զարկեց Ջաղցաքարին,
Քարը եղաւ հազար կըտոր,
Կտորները երկինք թըռան,
Ու զընում են մինչև էսօր։

Ելաւ հորից, կանգնեց ահեղ,
Սարսափ կալաւ դև Մելիքին։
—Դաւիթ, ասաւ, ե՛կ դեռ էստեղ,
Մեզան նստենք... խօսենք կար-
գին...

—Էլ չեմ նստիլ ես քու հացին,
Դու ըլմարդի, վախկոտ ու նենգ.
Շուտ զէնքըդ առ, հեծի՛ր քու ձին,
Դուրս եկ մէյդան, կըռիւ անենք։

—Կըռիւ անենք, ասաւ Մելիք,
Իմն է միայն զարկն առաջին։
—Քոնն է, զարկի՛ր, կանչեց
Դաւիթ,
Գընաց, կեցաւ դաշտի միջին։

Ելաւ, կանգնեց Մըսրա-Մելիք,
Իր գուրզն առաւ, հեծաւ իր ձին,
Քըշեց, գնաց մինչ Դիարբէք
Ու էնտեղից եկաւ կըրկին։

Երեք հազար լիտր էր քաշում
Հսկայական իր մըկունդը.
Եկաւ, զարկեց, կորաւ փոշում
Ու երերաց երկրի գունդը։

—Երկիր քանդուեց, կամ ժաժք
եղաւ,
Ասին մարդիկ շատ աշխարքում։

—Չէ, ասացին արնի ծարաւ
Հըսկաններն են իրար զարկում։

—Մեռաւ Դաւիթ էս մի զարկից,
Ասաւ Մելիք իրեն զօրքին։
—Կենդանի՛ եմ ամպի տակից
Գոռաց Դաւիթ Մըսրա-Մելքին։

—Հա՛յ-հա՛յ, մօտիկ տեղից եկայ,
Տես, ո՛րտեղից հիմի կը գամ։
Ու վեր կացաւ, կանգնեց հըս-
կան,
Իր ձին հեծաւ երկրորդ անգամ։

Երկրորդ անգամ քշեց Հալար
Ու բաց թողեց ձին Հալաբից։
Բուք վերկացաւ, տեղ ու տա-
րափ,
Արար աշխար դողաց թափից։

Եկաւ զարկեց, զարկի ձէնից
Մօտիկ մարդիկ ողջ խըլացան։
—Գընա՛ց Դաւիթ Սասմայ տա-
նից,
Գուժեց գոռոզ Մըսրայ արքան։

—Կենդանի՛ եմ, գոռաց Դաւիթ,
Մին էլ արի—հերթն ինձ հասաւ։
—Հա՛յ-հա՛յ, մօտիկ տեղից եկայ,
Կանչեց Մելիք ու վեր կացաւ։

Երրորդ անգամ հեծաւ իր ձին,
Գընաց մինչև հողը Մըսրայ,
Ու էնտեղից՝ գուրզը ձեռին՝
Քըշեց, եկաւ Դաւթի վըրայ։

Եկաւ, զարկեց բոլոր ուժով,
Ծանր զարկով հըսկայական,
Փոշին ելաւ Սասմայ դաշտից,
Բըռնեց երեսն արեգական։

Երեք գիշեր ու երեք օր
Կանգնեց փոշին ամպի նման,

Երեք գիշեր ու երեք օր
Բօթը տուին Դաւթի մահուան։

Երբոր անցաւ երեք օրը,
Էն ամպի պէս կանգնած փոշում
Կանգնեց Դաւիթ, ինչպէս սարը,
Գըրգուռ սարը մէգ-մըշուշում։

—Մելիք, ասաւ, ո՞ւր է հերթը...
Սարսափ կալաւ զօռ Մելիքին,
Մահուան դողը ընկաւ սիրտը,
Ու տապ արաւ գոռոզ հոգին։

Գընաց, խորուկ մի հոր փորեց,
Իջաւ, մըտաւ վիհն էն խաւար,
Վըրէն քաշեց քառսուն կաշի
Ու քառասուն ջաղացի քար։

Մըռընչալով՝ ելաւ տեղից
Էն առիւծի առիւծ որդին,
Իր ձին հեծաւ ու փոթորկեց,
Խաղաց, շողաց Թուր-կայծակին։

Առաջ վաղեց՝ մազերն արձակ՝
Մելքի պառաւ մայրը ջադու,
—Դաւի՛թ, մազըս առ ոտիդ տակ,
Էդ մի զարկը ինձ բաշխիր դու...

Երկրորդ անգամ Թուրը քաշեց,
Էս անգամ էլ վազեց քոյրը.
—Դաւի՛թ, եթէ կուզես, կանչեց,
Իմ սրտին զարկ երկրորդ Թուրը...

Վերջին զարկի ժամը հասաւ,
Ելաւ Դաւիթ երրորդ անգամ.
—Էս մի զարկն ու Աստուած,
ասաւ.
Էլ մարդ չըկայ, պէտք է որ տամ։

Ասաւ, ելաւ ու փոթորկեց,
Թըռաւ, ցոլաց Դաւթի հուր ձին,
Ձին փոթորկեց, փայլատակեց,
Ու ցած իջաւ Թուր-կայծակին։

Անցաւ քառսուն գոմշի կաշին,
Անցաւ քառսուն քարերը ցած,
Միջից կըտրեց ժանտ հըրէշին,
Օխտը գազ էլ գետնը գընաց։

—Կենդանի՛ եմ, մին էլ արի,
Գոռաց Մելիք հորի տակից.
Լսեց Դաւիթն ու զարմացաւ
Իրեն զարկից, Թուր-կայծակից...

—Մելի՛ք, ասաւ, թափ տուր մի
քեզ...
Ու թափ տուաւ Մելիքն իրեն,
Միջից եղաւ ճիշտ երկու կէս,
Մէկն ընկաւ դէ՛ս ու միւսը դէ՛ն...
Յովհ. Թումանեան

---

## 144. ՊԱՆԴՈՒԽՏ ԱՌ ԿՌՈՒՆԿ

Կռո՛ւնկ, ուստի՞ կուգաս, ծառայ եմ ձայնիդ.
Կռո՛ւնկ, մեր աշխարհէն խապրիկ մի չունի՞ս.
Մի՛ վազիր՝ երամիդ շուտով կը հասնիս.
Կռո՛ւնկ, մեր աշխարհէն խապրիկ մի չունի՞ս։
Թողեր եմ ու եկեր մլքերս ու այգիս,
Քանի որ ա՜խ կ'անեմ, կու քաղուի հոգիս,

Կռունկ, պահ մը կացիր. ձայնիկդ ի հոգիս.
Կռունկ, մեր աշխարհէն խապրիկ մի չունի՞ս։
Սրտերնիս կամեցաւ, ելանք գընացինք,
Այս սուտ աստըւորիս դարդերն իմացինք,
Աղուհացկեր մարդկանց կարօտ մնացինք,
Կռունկ, մեր աշխարհէն խապրիկ մի չունի՞ս։
Ղարիպին սիրտն է խոց, ջիգեարն է վառած,
Կերած հացն է լեղի ու ջուրն է հարամ.
Կռունկ, մեր աշխարհէն խապրիկ մի չունի՞ս։
Աշունն է մօտեցեր, գնալու ես թէդպիր,
Երամ ես ժողվեր հազարներ ու բիւր.
Ինձ պատասխան չտուիր, ելար գնացիր.
Կռունկ, մեր աշխարհէն գընա՛, հեռացի՛ր.

---

## 145. ԵՐԳ ՇԻՆԱԿԱՆԱՑ

Լուսնեակն անուշ, հովն անուշ,
Շինականի քունն անուշ.
Ծագեց լուսնակն երկընուց,
Հովիւի փողն էր անուշ։
Հօտաղն եզներ կարածայ,
Մաճկալ պառկեր, քունն անուշ։
Ջըգըզըգուն քամին կը փչէ,
Ծովային հովն էր անուշ։
Դաշտեր, ձորեր մընջեր են,
Ջրեր գըլգըլան, ձէնն անուշ.
Հաւքեր թառան իրենց բուն,
Բլբուլի տաղն էր անուշ.
Անմահական հոտ բուրէր,
Քաֆուր վարդի հոտն անուշ։

*Ժողովրդական երգ*

Շարադրութեան ընդհանուր նիւթ. համեմատել Քուչակի «Պանդուխտին երգը, Կռունկը, Ծիծեռնակը, Աղասու մօր և կնոջ նամակները». և դուրս բերել մի ընդհանուր պատկեր պանդխտութեան։

# Գ. ԱՇՈՒՂՆԵՐ

## 146. Քուչակ Նահապետ

Ծաղիկներու փոքրիկ հաւաքածուն, որ մեզի մնացած է Նահապետ Քուչակէն, ամենէն մաքուր ադամանդն է, զոր մեզ հին գրականութիւնն արտադրած ըլլայ, և ապշեցուցիչ բան մըն է, որ այդ գործը, ինչպէս և անոր հեղինակին անունը, մինչև ցարդ անծանօթ մնացած ըլլայ ոչ միայն մեր հասարակութեան, այլև նոյնիսկ մեր գրագէտներուն։

Ո՛չ մէկ կենսագրական ծանօթութիւն չունինք, դըժբաղդաբար, Քուչակի վրայ։ Կը կարծուի, որ ծնած և ապրած է ԺԶ դարու առաջին կիսում, Ակն քաղաքում.

Իբրև հեղինակ այս տաղաշարքին, Քուչակ կը դառնայ մեզի համար ամենէն ինքնատիպ և ամենէն անուշ երգիչը հին հայութեան, շատ բարձր՝ միջնադարեան բոլոր միւս ծանօթ քերթողներէն, Գրիգոր Աղթամարցիէն, Մկրտիչ Նաղաշէն, Յովհ. Թլկուրանցիէն, Ֆրիկէն, Սեբաստացի Ղազարէն, նոյն իսկ բարձր՝ Շնորհալիէն և բոլոր մեր միւս դասական բանաստեղծներէն, իրեն հետ բաղդատուելու արժանի ունենալով միայն Գրիգոր Նարեկացին, որ միստիքական մղձաւանջին, քրիստոնէական խաւարտչին եղերգութեան ձայնն է, ինչպէս Քուչակը՝ անկաշկանդ ու սիրով արբշիռ սրտին հրճուանքներուն, ցաւերուն, երազանքներուն ու խոհանքներուն անմահ դայլայլը։

Ա. Չոպանեան

## 147. ՍԻՐՈՅ ԵՐԳԵՐ

Ծիծեռնակի ձագ լինէի, ցերեկը տունըդ մտնէի.
Քո բարձըր լայն սըրահում ես իմ բունը շինէի.
Հէնց որ մութը-մթանար, վայր գայի տունդ մտնէի.
Հէնց որ լոյսը լուսանար, ելնէի բունս մտնէի։

Մետաքսէ գօտի դառած, ցերեկը մէջքդ գրկէի,
Կամ անուշ նռան գինի, ամանից մէջն ածուէի,
Հէնց առնէիր խմելու, ցածնայի դունչդ պագնէի։

Ջուր, գըլգըլալէն կուգաս, գետի թոր [1]) ակնէն կուգաս.
Երթաս այդ ձորերդ ի վայր, ձայնըդ գայ ու դուն չերևաս.
Գիտեմ սիրու տէր ես դուն, օտար աշխարհ կու գնաս,
Երթաս ու սիրուդ հասնիս, գիշերն ի քուն չի լինաս [2]),

Երեսդ ինչո՞ւ է դեղնել, այտերիդ գոյնը գնացել,
Հօ քո որդին չէ՞ մեռել, կամ օտար երկիր գնացել.
Թէ ես լամ, հախ ունիմ, որ գիտեմ, ինչ եմ կորուցել.
Կորել է իմ հոգուս հոգին, անհոգի եմ մնացել։

Երեսդ է լուսնի նման, խոպոպներդ է սև գիշեր,
Այտերդ դըրախտի խնձոր, ծովի պէս խոր են քո աչեր.
Ունքեր կեռ ու մեռ ունիս, թուխ աչեր, թարթիչդ է նետեր,
Բերանդ է կարմիր շաքար, մէջը լիքը մարգարիտներ։

---

## 148. ԽՐԱՏԱԿԱՆ

Այն օրը որ մօրէդ ծընար, դու լայիր՝ ամէն խնդային.
Հէնց մաքուր էլ այս աշխարհէն, որ երկիր լայ՝ դու ծիծաղիս։
Արի, որ մի խրատ տամ, թէ խելք ու միտք ունիս, լըսէ,
Անգէտի հետ մի դատի, թէկուզ հազար էլ քեզ սիրէ։
Անգէտն նըման է հուրի, ուր ընկնի՝ այնտեղը կայրէ,
Գիտունը նըման է ջուրի, ուր երթայ կանաչ կը բուսնի։

---

## 149. ՊԱՆԴՈՒԽՏԻՆ

«Գնամ ու գնամ», կասէր որդիս, չհաւատացի.
Երբ «Մնաս բարով» ասաց, կասկածեցի.

---

[1]) Մաքուր. [2]) Չես լինում։ Այս հատուածի լեզուն բնագրին համապատասխան է։

Երբ ոտն ասպանդակեց, ես զարմացած մընացի.
Այլ բան չը կարցայ ասել, «ուր որ երթաս, ճամբադ բարին»։
Այն ճամբան, որ դու երթաս, վարդ ու մուրտ առջևդ
բուսնին.
Այն քաղաքը, որ դու մտնիս, գրողի ձայնը չհանի.
Այն խնջոյքը, որ դու նստիս, գաւաթներդ գինով լըցուի.
Ծովերը գինի դառնան, իսկ նաւերը ճաշերով լի։
Քուչակ

---

## 150. ՍԱՅԵԱԹ-ՆՈՎԱ

Սայեաթ-Նովան ծնաւ Թիֆլիզ, մօտ 1712 թ.։ Նրա հայրը Հալէպցի էր և Թիֆլիզում ժամկոչ, մայրը Հաւլաբարցի էր։ Ս. Նովայի անունը Արութիւն էր. պստիկուց նրան տալիս են ջուլհակի մօտ։ Միտ աչքաբաց լինելով, ինքն իրա համար մի մեքենայ է հնարում, կտաւը հեշտութեամբ գործելու համար։ Փոքրուց, պաս պահելով, ականջ է դնում ամեն խաղ ասողի և «Ս. Կարապետի կալոզութիւնով» սովորում է քամանչա և չօնգուր ածել։ Վերջը բոլորովին թողնում է ջուլհակութիւնը և իրան նուիրում է աշուղութեան, երգելով թուրքերէն, վրացերէն և հայերէն։ Նա այնքան հռչակ է ստանում, որ դառնում է Հերակլ թագաւորի պալատական երգիչ, իսկ նրա ժողովրդականութիւնն այնքան մեծ է, որ մինչև այսօր, մահից հարիւր և աւելի տարիներ յետոյ նրա երգերն և անունը քաջածանօթ են ամեն մի թիֆլիզեցու։ Թիֆլիզեցոց քէփի և ուրախութեան անհրաժեշտ զարդն էր նա, և ով ուզում էր ուրախութիւն տեսնել, Սայեաթ-Նովին էր լսում։ Նա արժանի էր ժողովրդի սիրուն ու համակրանքին. ուրախ ու վառվռուն երգերի հետ, նա շատ բարձր էր հասկանում իր նշանակութիւնը և խրատն ու բարի խորհուրդ անպակաս էր անում ժողովրդից. նա իրան ժողովրդի «նօքար» էր անուանում. «արի, համով դուլուղ արա, խալխի նօքար Սայեաթ-Նովա, ով քէզի լեղի պարգևի, դուն տուր շաքար, Ս. Նովա»։

Նա խրատ էր տալիս. «ամոթ սիրէ, ադաբ սիրէ, ար սիրէ և կամ գիր սիրէ, գրիչ սիրէ, դաւթար սիրէ»։

Մէկ էլ, ձանձրացած աշխարհի կեանքից ու վայելքներից, նա ասում է. «կու հագնիմ մազեղէն, կու հագնիմ շալն, կերթամ ու ման կուգամ վանքերն մէկ-մէկ», և նա թողնում է տուն, ընտանիք, չորս զաւակներն ու գնում Հաղպատ, ձեռնադրւում վարդապետ։

Նոր իմացան թիֆլիզեցիք, թէ ի՛նչ կորուստ ունեցան Սայեաթ-Նովի գնալով, որովհետև նրանց կարծիքով նրա նման աշուղ էլ չէ եղել։ Պատմում են, որ մի աշուղ գալով Թիֆլիզ, յաղթում է բոլոր աշուղներին և սազները խլում. Սայեաթ-Նովան որ լսում է, գալիս է Թիֆլիզ, հագնում աշխարհիկ շորեր և հէնց մէյդանի կամուրջի տակին, սառած Քուռի վրայ նստած՝ վէճի բռնւում նորեկ աշուղի հետ, յաղթում է նրան, հայրենի քաղաքի պատիւը կրկին հաստատելով։

Աղա Մամադ Խանը 1795 թ. երբ տիրում է Թիֆլիզին, Սայեաթ-Նովան գտնւում էր Ս. Գէորգ եկեղեցում. պարսիկներն յարձակւում են նրա վրայ և ստիպում, որ հաւատն ուրանայ. «չիմանամ քիլիսադան, դօնմանամ Իսադան», (եկեղեցուց դուրս չեմ գայ, հաւատս չեմ ուրանայ) պատասխանում է և նահատակւում պարսիկների ձեռքով գրեթէ 80 ամեայ ծերունին։

Սայեաթ-Նովան մեր աշուղների մէջ ամենից յայտնին և ամենից նշանաւոր է Քուչակից յետոյ, նա աշուղական տափակ և արհեստական դարձած ձևերի մէջ դնում է խորին զգացմունք և աշխոյժ. նա միևնոյն ժամանակ խորին համոզմունքի և գաղափարի տէր մարդ էր, որ քիչ է պատահում բանաստեղծների մէջ։ Թողնել սազն ու քամանչան, թագաւորի պալատն ու ժողովրդի ուրախութեան սեղանները և գնալ մտնել վանք աղօթելու համար, մարտիրոսական մահ ընդունել հաւատի համար, այնքան հմայիչ ու գրաւիչ սէր երգելուց յետոյ, դա սովորական մարդու գործ չէ, այլ մի անհատի, որ գիտէ և կարողացել է իր քարոզածը իր կեանքի գնով ապացուցանելու։

Համեմատիր «Աշուղների մրցումը» և «Աշուղ»։

## 151. ԽՐԱՏ

Արի՛ ինձ անգաճ կա՛լ, ա՛յ դիվանա սի՛րտ,
Հայա սիրէ, աղա՛ր սիրէ, ա՛ռ սիրէ.
Աշխարքս քու՛նն ըլի, ի՞նչ պիտիս տանի՝
Աստուած սիրէ, հոգի՛ սիրէ, եա՛ր սիրէ։
Էն բանն արա՛՝ վուր Աստծու շարքումն է,
Խրատնիրըն՝ գրած հարանց վարքումն է.
Երիք բան կայ՝ հոգու, մարմնու կարգումն է՝
Գի՛ր սիրէ, ղալա՛մ սիրէ, դաւթա՛ր սիրէ։
Ե՛կ, արի՛, սի՛րտ, մի՛ կենա դու մէ դամաղի,
Հալալ մտիկ արա հացի ու աղի.
Հէնց բա՛ն արա, մարդ վըրէդ չծիծաղի՝
Խըրա՛տ սիրէ, սա՛բըր սիրէ, շա՛ր սիրէ։
Հըպարտութին չանիս՝ դուր կու գաս տէրիդ,
Խոնարութին արա քանց քիզ դէվէրիդ.
Աստուած դիփուննանցըլ մին հոգի էրիտ՝
Աղքատ սիրէ, ղոնաղ սիրէ, օտար սիրէ։
Սայեաթ-Նովա, էրնէկ քիզ թէ էս անիս,
Հոգուդ խաթրի, մարմնուդ ումբըր կէս անիս,
Թէ գուզիս վուր ղատաստան չտեսանիս՝
Վա՛նք սիրէ, անապա՛տ սիրէ, քա՛ր սիրէ։

1735 թ. 1 մայիսի

---

## 152. * * *

Դուն էն գլխէն իմաստուն իս, խելքդ յիմարին բար մի՛ անի,
Էրազումն տեսածի հիդ միդ մէ հէսաբ մի՛ անի.
Ես խօմ էն գլխէն էրած իմ, նուրմէկանց քաբաբ մի՛ անի.
Թէ վուր, գիդիս, բէզարիլ իս, ուրիշին սաբաբ մի՛ անի։
Չկայ քիզ պէս հուքմի հէքիմ, դուն Ռոստոմի Զա՛լ թագաւուր
Ազգըդ ազգերումն գոված, համ դուն իս զօզալ թագաւուր.
Թէ էսէնց էլ սուչ ունենամ՝ գլուխս արա տալ, թագաւուր,
Մըտիկ արա քու Սաեդօղլին, նահախ տիղ ղազաբ մի՛ անի։

Քանի կուզէ քամին տանէ՝ ծովէմէն աւազ չի պակսի.
Թէկուզ ըլիմ, թէկուզ չըլիմ, մէջլիսներուն սազ չի պակսի.
Թէ կու պակսիմ, քիչ կու պակսիմ, աշխարհս մէ մազ չի պակսի,
Սայեաթ-Նովու գերեզմանն Հինդ, Հաբաշ, Արար մի անի։

## 153. ԵՐԳՉԻ ՊԱՐՏԱՃԱՆԱՉՈՒԹԻՒՆԸ

Արի, համով զուլում արա, խալխի նօքար Սայեաթ-Նովա,
Ամեն մարդ չի կանա ճանգի շահով շըքար, Սայեաթ-Նովա.
Ո՛վ քիզի լեզի պարգևի, դուն տոււ շաքար, Սայեաթ Նովա,
Ղաստ արա, շուշէդ չկոտրին, չխըփին քար, Սայեաթ-Նովա։
Թէկուզ դպրատանըն պահ տաս, ծեծով չի խրատուի խուլըն,
Ինչըու անձնէն չդուրս էհայ անախտելի էն չար գիւլըն,
Բէդասլըն ասըլ չի դառնայ, թօլով չի սիպտակի սիւը,
Ծուռ փէտն չի դրստի ռանտան, դուրգեար Սայեաթ-Նովա։
Թէկուզ իմանաս. գիտենաս աստղերու համբարքըն սիրուն,
Անբարի գործն կորած է, կարգն Հարանց վարքըն սիրուն,
Աւետարանի խօսքերն մարգարիտ է, կարդն սիրուն,
Մի ածի խոզի առջևն լալ ու գովար, Սայեաթ-Նովա։
Վուրտից հարանիք, վուրտից սուգ, վուրտից սօյբաթ
խաղ է ըլում.
Վուրտից ժամ, վուրտից պատարագ, վուրտից սիրով տաղ է ըլում,
Թէ վուր հոգուդ կամքն ես անում, մարմինդ բէզամաղ է ըլում,
Վուր մէ դարդին կու դիմանայ դուն, ջրատար Սայեաթ-Նովա։
1758 թ.

Սայաթ-Նովա

## 154. ***

Ասում ես՝ դիմացիր, ո՞նց դիմանամ, մի՞թէ ես եմ քար,
Դարդիս արա մէկ ճար։
Կեանքըս մաշել ես բոլորովին, ամենը խապառ,
Էս ցաւն է դըժւար,
Էսքան նեղութիւն ինձի մի տար անողորմաբար,
Ո՛վ դու իմ սիրահար։
Շատ վախտ է, քաշում եմ կարօտըդ, չես գալիս երես.
Մինչ ե՞րբ դիմանամ ես։

Իմ անբախտութիւնը ինձի բաւ է՝ մի՛ անիլ էդպէս,
Կեանքըս արեցիր կէս։
Ողորմութիւն արա աղքատիս, քաշի, մօտըդ տա՛ր —
Տանջիլ մի՛ չարաչար։
Վախտ որոտում ես, վախտ ամպում ես, վախտ մթնում ես
շատ,
Անձրևում ես կաթ-կաթ։
Վախտ բարկանում ես, վախտ նեղանում, կամենում ես
ինձ չար,
Սարսափում է աշխարհ։
Զարակամների խօսքերն քեզ խրատ ես արել,
Խիստ շատ վատ ես արել,
Ուրիշների հետ սէր անելը ազատ ես արել,
Ինձի եադ ես արել։
Ես իմ բաղդից եմ գանգատաւոր, միշտ և մուղաբար,
Ինձ չի տալիս դադար։
Անգին պարգևիցդ պարգևեա բոյոց գըոյս,
Բողբոջ ես նորաբոյս։
Ե՛կ, սէր իմ, աղաչում եմ, խղճա՛, խղճալոյս,
Տուր բաւականին յոյս։
Ե՞լ ինքըդ էս անտանելի ցաւին գըտիր հընար,
Ինձ մի թողիր անճար։
Ցաւերըդ ինձ ես տալիս, ուրիշներին քաղցր խօսքերըդ,—
Ինձ է՞ս է քու խէրըդ։
Ինձնից աւելի, սաս տեսնեմ, ո՞վ է քու տէրըդ,
Ինձ նա տայ քու սէրըդ։
Դու քու դարդերըդ լաւ գիտես, խեղճ Աղամ-Ազբար,
Խալխն ի՞նչ է խաբար։

Ազբար-Աղամ

## 155. ՄԻՍԿԻՆ ԲՈՒՐՋԻ

Սա ծնուել է Հին Նախիջեւանում 1810 թ. և եղբայրների հետ եկել Գանձակ։ Շատ աշխոյժ, չարաճճի երեխայ էր, վառոդէ պատրոյգ պայթեցնելիս դեռ մանկութիւնից մի աչքը փչացրեց։ Ոչ մի արհեստի վրայ երկար չէր մընում, չափազանց ինքնասէր էր, աչքի վերաբերմամբ նըկատողութիւն լսելիս թողում էր վարպետին փախչում։ Ինչքան էլ Միկիչ եղբօրից ծեծւում էր վարպետներ շուտ շուտ փոխելու համար, չէր կոտրւում։ Վերջը Բուրջին դարձաւ Գանձակի մի ռուս պաշտօնեայի տանը ծառայ-խոհարար։ Սրամտութեան շնորհով կարճ միջոցում ռուսերէն խօսելու մէջ վարժուեց, յետոյ եղաւ թարգմանը ռուս պաշտօնեաների։ Երբ լեզու գիտէր, վրացերէն էլ սովորելու համար փախաւ Թիֆլիս։ Նրա լեզուի ճարտարութեան վրայ հիացած էին ամենը։ Աւելի բան տեսնելու, սովորելու ծարաւից դրդուած Թիֆլիսը թողեց ու շրջելով հասաւ Թաւրիզ ու այնտեղ վարժուեց փարսերէնի մէջ։ Շրջմոլիկութիւնը չինեց արհեստ, հաստատ գործի չըկըպաւ, որովհետև դեռ փոքրուց խաղեր յօրինելու, ասելու շնորհք ունէր, դրանով ապրուստ էր անում։ Ականատեսները պատմում են՝ խաղ ասելիս ոգևորւում էր, ամեն ինչ ասում էր անպատրաստից, բառերը վարար ջրի պէս վրխում էին բերանից։ Քսան տարեկան հասակում արդէն աշուղ էր և իրան անուանում էր Միսկին Բուրջի, այսինքն խեղճ Բուրջի։ Միջին հասակ, բարակ կազմուածք ունէր, կոյր աչքի վրայ կախած պահում էր մի կտոր կաշի։ Չքաւոր էր, բայց նրա կծու լեզուից հարուստները խիստ վախենում էին. ամեն սուփրի վրայ նրան հրաւիրում էին, որ խաղ ասի, սրախօսութիւններով զուարճացնի։ Նրան առատօրէն վարձատրում էին անպատրաստ ասած շնորհալի խաղերի համար, որոնցով ծաղրում էր այս ու այն հարստի անվայել արարքը։ Երբեմն մեծ խնջոյքի վրայ հարիւրներ էր ժողովում, բայց երկու օրից ետ դըր-

պանում բան չէր մնում։ Ասում են՝ կարօտեալների տներն այցելել շատ էր սիրում, մէկին փող էր բաշխում, մէկին հացի նոր շորը, միւսին գլխի լաւ գտակը։ Անփոյթ էր հագնուելու կողմից, մի օր կարելի էր տեսնել գառով, կլապիտոնով կապա վրէն, ընտիր չաքմէքը ոտին, բուխարի գդակը գլխին. ամենը եանից *Բուրջի բէկ* էին կանչում, մի երկու օրից ետ երևում էր աղքատի կերպում՝ հնմաշ չուխով, արծաթէ գոտու տեղ թոկի կտոր մէջքին։ Հագուստը փոխում էր, բայց խրոխտ, մտրակող լեզուն պահում նոյնը։

Նա նուագել չէր իմանում, շատ էլ ախորժելի ձայն չունէր, աշակերտներ չէր պահում։ *Մարիոնետկա օյիննե-րը* բանացնում էր նա զուռնում ձիով շրջելով։ Այդ խաղի համար հրաւիրւում էր գիւղերը հարսանիքների. հասարակ ժողովուրդը նրան կանչում էր *Օյինբազ Բուրջի*։

Եղբայրները սոխպմամբ Բուրջուն ամուսնացրել էին, որ թափառական կեանքից ձեռ վերցնի։ Երկար չէր քաշել, կինը մեռել էր, զաւակ էլ չէր մնացել։ Ծերերի ասելով՝ կնկայ թաղումից ետ Բուրջին իրա տան բոլոր սարք ու կարգը, իրեղէնները դուրս է բերել ժողովրդի առաջ ու ասել. «աշխարհի հետ ինձ կապողը նշանածս էր, ես երկրորդ անգամ պսակւողը չեմ, այսուհետև ինձ ոչ տուն է հարկաւոր, ոչ տան սարք, իմ խաղերի հետ ես էլ՝ շահիր Միսկին Բուրջին ժողովրդինն եմ։ Եղբայրաբար մօտ եկէք, ձեր խղճով գին կտրեցէք ու էս բաները վերկալէք։ Թանկ ու էժանը՝ դուք գիտէք, էնքան փող տուէք, որ քելեխի ծախսը ծածկեմ»։

Ժողովուրդը այդ խօսքերից սրտաշարժուած մի մի կտոր բան է վերցրել ու նրա բոլոր պարտքը վճարել։

Միսկին Բուրջին գրագէտ էր, յօրինած խաղերը ակըսած 1832 թ. մուծում էր իրա «դաւթարի» մէջ, որ ես 1892 թ. տեսայ Գանձակում մի մասնաւոր մարդու տան։ Կազմի վրայ իրա սեպհական ձեռով գրել էր. «ման էօլում, էս դաւթարին ուրիշ ղալամ չըխառնէք»։ Խաղերը մեծ մասամբ երգիծաբանական են։ Միսկին Բուրջու անունն ա-

առջին անգամ յիշել է բժ. Գ. Հախվերդեանը, յետոյ Ոսկան Յովհաննիսեանը, տպագրելով նրա հայերէն երգերից 6 ը «Նոր-Քնարք»-ների մէջ, ապա Միք. Միանսարեանցը արտատպելով նրա երգերից 2-ը «Քնար Հայկականի» մէջ, Մ. Բուրջու անտիպ մնացած դաւթարի մէջ կան հայերէնի հետ և թուրքերէն երգեր, բայաթիներ, ամենն էլ իրա ձեռով գրած։

Մ. Բուրջին խաղալու մոլութիւնն ունէր, որը եղաւ նրա մահուան պատճառը։ Միանգամ Շուշում Ջաֆար Ղուլի բէկից խաղի մէջ տարաւ նրա թէ փողը, թէ դրափէ վերարկուն և թէ թուրը։ Երբ Գանձակ էր գալիս Բուրջին, վիրաւորուած բէկը մարդիկ է ուղարկում և Ասկեարանի կիրճում սպանել տալիս։ Այդ պատահեց 1847 թ. յունիսի 7-ին։ Թաղուած է բերդի պարսպի դրանը։

Քամ. Ս.

## 156. Է Ջ Մ Ի Ա Ծ Ի Ն

Էջմիածին խիստ սիրուն պայծառ տեսի,
Երկու հարիւր կանթեղ՝ յիսուն ջահ տեսի,
Դիփ ամենը ջերկա ջերկա վառ տեսի,
Վաթսուն աւել հէնց ոսկէ բուրվառ տեսի,
Լուսաւորչի տաճարն մարմար տեսի։

Մարմար քարից շինած էր աւազանն,
Բերին դրին տասներկու գաւազանն,
Որ խաչով խաչակնքեց Սրբազանն,
Ինքն իրան եփեց մեռոնի ղազանն,
Համբուրեցի, մէկ էսպէս հնար տեսի։

Ուխտ՛ին եկել Հիւսիսոյ մինչ՛ի Հարաւ.
Դիփ լի էին, ոչ սոված՛ին, ոչ ծարաւ.
Տասներկու եպիսկոպոս թափոր արաւ,
Տիրացուների ձայնը խելքս տարաւ,
Նրանց ժամ ասելն-ուրիշ բառ տեսի։

Հռիփսիմէն, Շողակաթն, Գայիանէն—
Երեքն էլ խիստ զօրաւոր նշան են.
Մեծ ու փոքր հինգ հարիւր միաբան են,
Աջով, խաչով սիրուն պատարագ կանեն,
Երկք հարիւր ոսկէկապ շուրջառ տեսի։

Միսկին Բուրջին ասում է՝ չիլիլ հատը,
Սուրբ Լուսաւորիչն է տուել խրատը,
Որ անիծեց՝ խոզ դարձաւ Տրդատը.
Ոսկի արծաթ պատկեր է ամեն պատը,
Աբրշումէ խալիչէքն զառ տեսի։

Էջմիածին. Նշանակում է միածինն իջաւ։ Լուսաւորիչը երազում տեսնում է, որ Քրիստոս ցած է տալիս երկնքից և մուրճով խփում գետնին։ Հէնց այդ տեղ էլ նա 302 թ. հիմնեց Հայոց առաջին մայր տաճարը։ Վաղարշապատում, Տրդատ թագաւորի օգնութեամբ էջմիածինը 1600 տարիների ընթացքում մի քանի անգամ աւերուել և նորից շինուել է։ Ներկայ շէնքը 618 թուականից հին պիտի չլինի։ Նրանից ոչ շատ հեռու գտնւում են Հռիփսիմէի, Շողակաթի և Գայանէի վանքերը, որոնցից նշանաւոր է մանաւանդ Հռիփսիմէն իբրև զուտ հայ ոճով շինուած մի եկեղեցի։ Էջմիածնումն է նստում ամենայն հայոց կաթողիկոսը, այնտեղ է եփւում Ս. միւռոնը և այնտեղից է կառավարւում ամբողջ հայ եկեղեցին։ Էջմիածինն ունի հայ ձեռագիրների ամենահարուստ հաւաքածու և մի թանգարան հայ հնութիւնների.—Էջմիածնումն է գտնւում Գէորգեան Ճեմարանը։

# Է. ՎԵՐԱԾՆՈՒՆԴ ԵՒ ԱՐԵՒՄՏԵԱՆ ԲԱԺԻՆ

## 157. ՎԵՆԵՏԻԿԻ ԵՒ ՎԻԵՆՆԱՅԻ ՄԽԻԹԱՐԵԱՆՆԵՐԸ[1])

Վենետիկի նշանաւոր հնութիւնները և յիշատակարանները դիտելուց յետոյ՝ գրօսասէր ճանապարհորդներից քչերը միայն կը հեռանան այդ «ծովերի թագուհի» մայրաքաղաքից՝ առանց այցելելու Ս. Ղազարի կղզին, ուրեղ, անցեալ դարու առաջին քառորդում շատ դժպատեհութիւններից և թափառումներից յետոյ՝ ապաստան գտաւ մի փոքրիկ հայկական գաղութ։ Ս. Ղազարի կղզու մեծահամբաւութեան մասին վկայում են թէ այցելուների ստուար մատեանը, ուրեղ մենք կարող ենք կարդալ զանազան ազգութիւններին պատկանող անձանց անունները, և թէ դէպի կղզին անդադար դիմող գոնդոլների երամը։

—

Մխիթարեան մենաստանի հիմնարկութիւնը տեղի է ունեցել անցեալ դարու առաջին քառորդում, երբ 1717 թւին Վենետիկեան հանրապետութեան հրամանագրով ս.

---

[1]) Մխիթարեան միաբանութիւնը 200 տարուայ ընթացքում մեզ տուել է մօտ հարիւր հեղինակ և մօտ 1000 հատոր աշխատութիւն։ Այդ գրքերը կազմում են հայ ամբողջ գրականութեան մի հինգերորդ մասը։ Ինչպէս մեր մտաւոր վերածնունդը, այնպէս նաև մեր հին գրականութեան ու լեզուի վերստին ծաղկելը մենք պարտական ենք Մխիթարեաններին։ Մխիթարեանները հիմնեցին արեւմտեան աշխարհիկ լեզուն. Նրանք առաջինը ծանօթացրին մեզ եւրոպացոց հետ։

Ղազարի կղզին, որ երբեմն բորոտների ապաստան էր, յանձնւում է ի մշտական սեփականութիւն Մխիթար վարդապետին և նրա աշակերտներին, որոնք ոտք էին դրել Վենետիկ դրանից երկու տարի առաջ յունական Մեթոնէ քաղաքից (Պելոպոնէզի հարաւ-արեւմտեան մասում), որտեղ նրանք շարունակ ենթարկւում էին վտանգների թուրք խաժամուժ զորքերից։ Բայց ո՞վ էր հեռաւոր Հայաստանի այդ զաւակը—Մխիթարը։

Մխիթարը ծնուել է Փոքր-Ասիայի Սեբաստիա քաղաքում 1676 թ. փետրուարի 7-ին. նրա հօր անունը Պետրոս Մանուկեան էր և մօր անունը՝ Շահրիստան։ Պատանի Մանուկը (այդպէս էր Մխիթարի անունը մինչև հոգևոր կոչում ընդունելը) երկու բարեպաշտ կանանց դաստիարակութեան և խնամքի տակ մեծանալով՝ որոնց բարերար ազդեցութիւնն իր վրայ նա միշտ գոհունակութեամբ խոստովանում էր, ցոյց էր տալիս մի առանձին սէր դէպի ուսումն և, զուգընթացաբար, հակումն դէպի կրօնաւորութիւն։ Սարկաւագ ձեռնադրուելուց յետոյ՝ Մխիթարը մի փոքր ժամանակ մնաց Սեբաստիայի Ս. Նշանի վանքում, որտեղ նա ուսումնասիրում էր Ս. Գիրքը, մինչև որ նրան ներկայացաւ բարեյաջող առիթ ս. Էջմիածին ուղևորուելու։ Ս. Էջմիածնում Մխիթարը հիւանդացաւ և երկար չկարողացաւ մնալ։ Այստեղից սեբաստացի մի բարեկամի հետ նա Սևանայ վանքը մեկնեց, բայց այստեղ և Մխիթարին վիճակուած չէր երկար մնալու, որովհետև ամայի կղզու կեանքը չէր կարող գոհացում տալ նրան։ Անցնելով Երևան հայրենիք վերադառնալու դիտաւորութեամբ՝ նա ընդհատեց իր ճանապարհը Հասան-Կալայում, որտեղ Ս. Աստուածամօր վանքի վանահայրը առաջարկեց նրան դասատուի պաշտօն վանական դպրոցում։ Մէկ տարի ու կէս մնալով այս պաշտօնի մէջ՝ Մխիթարը, ինչպէս հաւատացնում են նրա կենսագիրները, հնարաւորութիւն ունեցաւ մօտէն ծանօթանալու կաթոլիկ եկեղեցու դաւանաբանութեանը, որովհետև այս կողմերում մանաւանդ Կարինում, պապական պրոպագանդան մեծ ծաւալ էր ստա-

ցել։ Կարինում Մխիթարը ծանօթացաւ մի անձնաւորութեան հետ, որ եղել էր Հռոմում, սա պատմեց Մխիթարին պապի հզօրութեան, նրա պալատի շքեղութեան, յաւիտենական քաղաքի տաճարների փարթամութեան և վեհութեան մասին։ Այս պատմութիւնները, անշուշտ, դիւրագրգաց երիտասարդի վրայ ունեցան իրանց ազդեցութիւնը։ Կարինից Մխիթարը ճանապարհ ընկաւ Երուսաղէմ, որտեղից նա մտադիր էր ուղևորուել Իտալիա, սակայն նրա բաղձանքը անկատար մնաց։ Ճանապարհին նա հիւանդացաւ և 1655 թ. վերադարձաւ հայրենիք։ Յաջորդ տարին այս ոգևորուած երիտասարդը Կարինում վարդապետ ձեռնադրուեց։ Իր շրջագայութեան ժամանակ Մխիթարը մօտէն ծանօթացել էր իր հայրենակիցների հոգևոր պէտքերի հետ և այդ ժամանակներն է, որ նրա մէջ յղանում է մի միտք՝ հիմնել մի կրօնական-գիտական ընկերութիւն, որի նպատակը լինէր պատրաստել քարոզիչներ և ուսուցիչներ հայ ժողովրդի համար։ Բայց մի այդպիսի ընկերութիւն կազմելը Մխիթարի ուժերից վեր էր, մանաւանդ որ նա ինքը դրա համար բաւարար կրթութիւն չունէր, ուստի նա ուղևորւում է Կ. Պոլիս և յայտնում է իր մտադրութիւնը Խաչատուր վարդապետին, որը ուսել էր կաթոլիկների դպրոցում և յայտնի էր իբրև գիտնական և եռանդոտ անձն։ Փոխանակ խրախուսելու և աջակցելու՝ Խաչատուր վարդապետը զանազան արգելիչ հանգամանքներ մէջ բերելով, մերժեց Մխիթարի ծրագիրը և վերջինս դարձեալ ձեռնունայն վերադարձաւ հայրենիք 1698 թ.։ 1700 թւին Մխիթարը կրկին գալիս է Կ. Պոլիս իր աշակերտների հետ. այդ ժամանակ Թիւրքիայի մայրաքաղաքի հայ հոգևորականութիւնը կատաղի կռիւ էր մղում ժողովրդի մէջ տարածուող կաթոլիկ պրոպագանդայի դէմ։ Մխիթարը՝ հէնց այդ ժամանակ իր լատիներէնից թարգմանած մի քանի հրատարակութիւնների պատճառով հայ հոգևոր իշխանութեան կողմից կասկածի տակ ընկաւ, այնպէս որ նա ստիպուած էր առժամանակ արձակել իր աշակերտներին և պատսպարուել Կապուցինների վանքում։ 1701 թւի սեպ-

տեմբերի 8-ին նա կազմում է իր աշակերտներից մի վանական միաբանութիւն, որի նպատակը պէտք է լինէր՝ ուսումնասիրել բոլոր հարկաւոր գիտութիւնները և նպաստամատոյց լինել հայ ժողովրդի հոգևոր պէտքերին։ Ամենայարմար երկիրը, որտեղ միաբանութիւնը կարող էր հաստատուել, համարւում է Վենետիկի իշխանութեան տակ գտնուող Մորէան։ Վերջապէս բազմաթիւ արկածներից և վտանգներից յետոյ Մխիթարը իր աշակերտներին հետ փոխադրւում է այստեղ։ Մխիթարի խնդրանօք Վենետիկի կառավարութիւնը տալիս է նրան հող վանքը կառուցանելու համար, և երկու կալուած, որոնց եկամուտներով միաբանութիւնը պէտք է պահպանէր իր գոյութիւնը։ Երբ Վենետիկեան հանրապետութեան սահմաններում նոր հաստատուած միաբանութեան լուրը հասաւ Հռոմ, Մխիթարը հարկադրուած եղաւ միաբանութեան կանոնադրութիւնը ներկայացնել պապական իշխանութեանը և ձեռք բերել նրանից վաւերացում 1712 թ.։ Այս հանգամանքներում յակամայից, ինչպէս կարծում են կենսագրողները, տեղի ունեցաւ Մխիթարի յարումն կաթոլիկ եկեղեցուն և պապի գերիշխանութիւնը ընդունելու անհրաժեշտութիւնը։

Սակայն Մխիթարին և նրա աշակերտներին երկար չյաջողուեց մնալ Մորէայում։ Թիւրքիայի ու Վենետիկի մէջ ծագած պատերազմը ստիպեց Մխիթարին թողնել Մորէան և որոնել նոր ապաստարան։ 1715 թ, նա իր աշակերտների հետ գալիս է Վենետիկ։ Վենետիկի հանրապետութեան ծերակոյտը չմերժեց իր հովանաւորութիւնը փախստականների. Թիւրքերից յափշտակած հողերի փոխարէն որոշեց տալ Մխիթարին ի մշտական սեփականութիւն ս. Ղազարի կղզին, որ հեռու չէր նոյն իսկ Վենետիկից, բայց քաղաքի սահմաններից դուրս էր համարւում։ 1717 թ. սեպտեմբերի 8-ին՝ միաբանութեան հաստատման տարեդարձի օրը, Մխիթարը փոխադրուեց կղզին և ձեռնամուխ եղաւ վանական շինութիւնների կառուցմանը. Թէ վանական կառավարութեան և թէ մասնաւոր նուիրատուների նպաստների շնորհիւ Մխիթարեաններին այս անգամ

յաջողուեց Իտալիայի հողի վրայ աւելի հաստատուն հիմք դնել։ Երեսուն տարուց աւելի Մխիթարը անցուց ս. Ղազարի կղզու վրայ, բոլորովին նուիրուած լինելով նրան բարեկարգելու հոգսերին։ Կառուցուելիք շինութիւններին վերահասու լինելով՝ նա գտնում էր ժամանակ գրական աշխատութիւնների համար ու հետամուտ էր լինում իր աշակերտների զբաղմունքներին։ 1749 թուի ապրիլի 27-ին, 74 տարեկան հասակում, Մխիթարը կնքեց իր բազմարդիւն և ճակատագրի փոփոխականութեանը մատնուած կեանքը։ Տարէցտարի Մխիթարեան միաբանութիւնը բարգաւաճում էր, սրա հետ միասին և աւելանում էր նրա անդամների թիւը։ Ասիայի և Եւրոպայի զանազան տեղերից դիմում էին Վենետիկ աշակերտներ՝ ս. Ղազարու վանական վարժարանում Մխիթարի ղեկավարութեամբ կրթութիւն ստանալու համար։ Միաժամանակ հարստանում էր և մատենադարանը, որը այժմ հսկայական ձեռագրների քանակութեան նկատմամբ՝ ս. Էջմիածնի մատենադարանից յետոյ առաջին տեղն է բռնում. հիմնուեցաւ ևս տպարան, որը լոյս է ընծայել շատ ընտիր հրատարակութիւններ և անխոնջ աշխատում է մինչև այժմ։ Անցնենք այժմ Մխիթարեանների գործունէութեանը։

Հայոց գրականութիւնը և լեզուն XIV դարուց սկսած հետզհետէ անկման էր մօտենում և հայ ժողովրդի կրթութիւնը զգալի կերպով ցած իջնում։ Առանձին անհատների փորձերը՝ բարձրացնել լեզուն, գրականութիւնը և կրթութիւնը կատարեալ անկումից ոչ մի արդիւնաւէտ հետեւանք չէին ունենում։ Մխիթարեանները, որոնց գլխաւոր նպատակներից մինն էր հայ լեզուի մշակումը, ամենայն եռանդով սկսեցին ուսումնասիրել, մշակել և մաքրել գրաբարը և այդ բանի համար նրանք հրատարակեցին մի շարք քերականական ձեռնարկներ և բառգրքեր։ Առաջին լիակատար քերականութիւնը գրաբարի, որ արժանի է այդ անուան, կազմուած է հայր Միք. Չամչեանի ձեռքով։ Քերականական աշխատութիւններին կից պէտք է յիշել նոյնպէս բառարանների վերաբերեալ աշխատութիւնները. դեռ

յինքը Մխիթարը, իր միւս աշխատութիւնների թւում, թողեց երկհատոր բառգիրք հայ լեզուի, որ լոյս տեսաւ հեղինակի մահից յետոյ։ Իր ժամանակի համար դա մի հսկայական գործ էր, թէ ի նկատի առնենք, որ նա միանգամայն և անդրանիկ էր, իբրև այդ տեսակի աշխատութիւն։ Միաբանութեան երեք անդամներ՝ Հ. Հ. Աւետիքեան, Սիւրմէլեան և Աւգերեան կազմեցին նոր (որ կոչւում է մեծ) Հայկազեան բառարանը. այդ վիթխարի գործը գլուխ բերելու համար պահանջուեց յիսնամեայ անդուլ աշխատանք։ Գործի կէտ նպատակն էր՝ առաջադրել, որքան հնարաւոր էր այն ժամանակ, ամբողջ և առձեռն ճոխութիւնը գրաբարի։ Հայ պատմութեան ուսումնասիրութեան շրջանում Մխիթարեանների գործունէութիւնը նշանաւոր է, յատկապէս նրանով, որ նրանք՝ իբրև առաջինք, ժողովեցին պատմութեան վերաբերեալ շատ նիւթեր. այդ տեսակէտից կարևոր է նոյն հայր Միք. Չամչեանի աշխատութիւնը. վերջինը հրատարակեց գրաբար ընդարձակ պատմութիւն հայոց ամենահին ժամանակներից սկսած մինչև 1784 թ. երեք ստուար հատոր։ Հայ աշխարհագրութեան և հնախօսութեան վերաբերեալ երկերից նախ պէտք է յիշել հայր Ինճիճեանի հիմնական աշխատութիւնները՝ «Աշխարհագրութիւն հայոց» և «Հնախօսութիւն հայոց»։ Վերջին ժամանակների պատմական-աշխարհագրական աշխատութիւնների մէջ խիստ կարևոր տեղ են բռնում գիտնական բանաստեղծ հայր Ղ. Ալիշանի երկերը՝ Սիսուան, Այրարատ և Սիսական, որոնք ներկայացնում են Կիլիկիայի, Այրարատեան և Սիւնեաց նահանգների նկարագրութիւնները։ Հայ գրականութեան պատմութիւնը նոյնպէս սկիզբ է առել Մխիթարեանների մէջ. դեռ 1829 թ. աբբահայր Սուքիաս Սոմալը հրատարակեց եւրոպական լեզուով հայոց գրականութեան վերաբերեալ առաջին համառօտ աշխատութիւնը, իսկ աւելի մշակուած գործ ներկայացնում է հայր Զարբանալեանի երկհատոր պատմութիւնը հայոց գրականութեան։ Վերջապէս Մխիթարեանները յայտնի են իբր անխոնջ հրատարակիչներ և թարգմանիչներ. Նրանք

ունին ընտիր թարգմանութիւններ հին և նոր լեզուներից. իբրև հրատարակիչներ՝ Մխիթարեանները մեծ ծառայութիւն են արել, նրանք հրատարակել են և հրատարակում են հին հայ գրականութիւնից բազմաթիւ յիշատակարաններ, որանք հայ լուսաւորութեան և հրատարակչական գործի մէջ մի դարաշրջան են կազմում՝ թէ իբրև խնամքով տպագրուած և թէ նրբաճաշակ կազմուած։

Եւրոպական գիտութեան առաջ Մխիթարեանների ծառայութիւնները խիստ գնահատելի են այն տեսակէտից, որ նրանք մեծապէս նպաստել են հայագիտութեանը Եւրոպայում. Մխիթարեանների հրատարակած քերականութիւնները, բառարանները և հին հեղինակների բնագիրները եւրոպացի գիտնականների համար միակ և լիակատար աղբիւրներն էին։ Մխիթարեանները իրանց ծառայութիւններով համակրութիւն և յարգանք վաստակեցին ոչ միայն հայերի կողմից, նրանք՝ իբրև օրինակելի աշխատաւորներ, յարգւում են և նրանց ապաստան տուող Վենետիկից և ապա ամբողջ գիտական Եւրոպայից։ Ուսումնականներից շատերը վայելել են նրանց խնամատար ուշադրութիւնը և սրտագին հիւրասիրութիւնը իրանց զբաղմունքների ժամանակ Մխիթարեանների հարուստ մատենադարանում. Նրանց հիւրերի թւում մանաւանդ պէտք է յիշել լորդ Բայրընին, որ Մխիթարեանների մօտ ուսանում էր հայ լեզուն. այն սենեակը, որտեղ պարապել է նա, մինչև այժմ կոչւում է Բայրընի առանձնասենեակ։

Խօսելով Վենետիկի Մխիթարեանների մասին, չի կարելի անուշադիր թողնել և Վիեննայի Մխիթարեաններին։

Կրօնական հողի վրայ ծագած տարաձայնութիւնների վախճանը, որոնց մասին երկարաբանելը մենք աւելորդ ենք համարում, այն եղաւ, որ 1773 թւին Մխիթարեանների մի մասը բաժանուեց և, թողնելով Վենետիկը, ուղղուեց նախ Տրիեստ, որտեղ հիմնեց իր մենաստանը՝ աջակցութիւն և հովանաւորութիւն գտնելով աւստրիական թագուհի Մարիամ Թերեզայից, և ապա 1811 թ. տեղափոխուեց Վիեննա։ Այստեղ նրանք հիմնեցին դպրոց ու հիմնա-

լի տպարան, որը այժմ Վիեննայում համարւում է ընտիրներից մէկը։ Վիեննայի Մխիթարեանների մատենադարանը նոյնպէս արժանի է ուշադրութեան. թէև նա հարուստ չէ Վենետիկցոց մատենադարանից, բայց վերջին ժամանակներս ուշի ուշով աշխատում են հոխացել հայկական բաժինը՝ մանաւանդ ձեռագիրների ճիւղը, և կազմել ժողովածու հայ պարբերական հրատարակութիւնների. Վիեննայի միաբանութիւնն ունի և մի փոքր թանգարան, որտեղ առանձնապէս աչքի է ընկնում դրամագիտական բաժինը. կայ և հայ դրամների լիակատար ժողովածու։

Վիեննայի Մխիթարեանների գիտական գործունէութիւնը՝ համեմատելով Վենետիկցոց գործունէութեան հետ, աւելի փոքր ծաւալ ունի՝ մասամբ այն պատճառով, որ իբր ինքնուրոյն հիմնարկութիւն, նա աւելի նորագոյն է, թէև դրանից երբէք չէ նսեմանում այդ գործունէութեան նշանակութիւնը։ Վիեննայի Մխիթարեանները աւելի համբաւ ունին իբրև լեզուագէտներ. գիտական աշխատութիւնների մէջ առանձնապէս մասնացոյց անելու է աբբահայր Արսէն Այտընեանի «Քննական քերականութիւն հայ աշխարհիկ լեզուի» վրայ։

Թարգ. Յ. Բաղչեան

Братская помощь Л. М.

## 158. ՂԵՒՈՆԴ ՎԱՐԴԱՊԵՏ ԱԼԻՇԱՆ (1820—1901)

Ալիշանն աշխարհ եկաւ Պօլիս։ Նրա հայրը հնագէտ սեղանաւոր էր։ Հէնց դրա համար էլ նա մանկութիւնից սիրեց յարգել և գնահատել հնութիւնները, վերջը դառնալով ամենամեծ հայ հնաբանը։ 1832-ին նրան տանում են Վենետիկ, Մխիթարեանների մօտ ուսանելու, ուր նա իր ընդունակութեամբ և ջանասիրութեամբ գրաւում է ամենի ուշքը։

1840-ին նա արդէն կրօնաւոր էր և մի տարի յետոյ Ռափայէլեան վարժարանի ուսուցիչ։ Այդ ժամանակից էլ սկսւում է նրա գրական գործունէութիւնը տևելով մինչև

նրա մահուան օրը։ Մի գործունէութիւն, որ իր նմանը չունի մեր մէջ. նախ իբրև վառվռուն և ազգասէր բանաստեղծ, ապա իբրև բանիբուն և անխոնջ պատմագէտ, հնախոյզ և մանրամասն աշխարհագիր, որ Ալիշանի սիրած ճիւղն էր։

Նա մանկութիւնից նուիրում է իրան հայ-անցեալի ուսոյթին, ուստի գնում է Հռոմ, Մանթուա, Բերլին, Լոնդօն, և ուսումնասիրելով այն ամենն, ինչ որ հայերի վերաբերեալ գտնում է, գրքեր կամ ձեռագիրներ, արտագրում է կարևոր համարուած յիշատակարանները, որոնցից նա յետոյ պիտի կազմէր իր մեծաւաստակ գրքերը։

Ալիշանի առաջին գործն էր. «Քաղաքական աշխարհագրութիւն», որ պատրաստել էր ուսանող ժամանակ, ինչպէս և հետևեալ «Տեղեկագիր Հայոց Մեծաց»-ը. 1881-ից սկսած նա հետզհետէ հրատարակեց. «Շիրակ», «Սիսուան», «Այրարատ», «Սիսական» և այլն, որոնց ամեն մինի մէջ մանրամասն նկարագրում է համապատասխան գաւառը կամ նահանգը պատմական, աշխարհագրական, բուսական, կենդանական և առհասարակ ամեն կողմերից։ Դրանք զարդարուած են հիանալի պատկերներով և իրանց նմանը հազուագիւտ է նոյն իսկ եւրոպական լեզուներում, միմիայն դրանց գինը մի քանի հարիւր ռուբլի արժէ։

Թէպէտ այդ գրքերի նիւթը լուրջ-գիտական աշխարհագրական է, բայց Ալիշանը զարմանալի ընդունակութիւն ունէր այդպիսի սառը նիւթն արտայայտել բանաստեղծական խանդով և ոգևորութեամբ։ Նա չի պատմում, այլ կարծես երգում է։ Բանաստեղծելիս նա պատմում է և ուսումնասիրելու կամ քննելու ժամանակ երգում ու բանաստեղծում։ Գիտնականն ու բանաստեղծը, ծանր տեւական ուսումնասիրողն ու վառվռուն երևակայողը խորին հայրենասիրի հետ հիւսուած էին նրա մէջ մի զարմանալի ներդաշնակութեամբ. և այդպէս էլ նա մնաց մինչև խորին ծերութիւն։

Իբրև կրօնաւոր նրա բանաստեղծական խանդը սահմանափակուած էր հայրենասիրական պերճ ու ընդարձակ

քերթուածների մէջ միայն. սէրը նա չէր կարող երգել, իսկ հայրենասէր երգերի ընդարձակութեամբ ու խորութեամբ նա ուսուցիչն է մեր բոլոր նոր և նորագոյն բանաստեղծների։ Նրա սիրած մոտիվներն են հին հայոց փառքը. «Կարմիրն Վարդան և բլբուլն Եղիշէ»…

Փոքր գործերից յայտնիներն են. «Յուշիկք հայրենեաց, Շնորհալի և Պարագայ իւր, Հայ-Բուսակ, Հին հաւատք Հայոց, Հայ-Վէնետ, Նուագք» (հինգ հատոր) և այլն։ Միայն տպած գրքերի թիւը 40-ից աւելի է. թողել է և բազմաթիւ անտիպ գործեր։

Ալիշանը իր բանաստեղծական և գիտական երկերով մի գրական հսկայ է այդ բառի լայն իմաստով. որ բազմահատոր և լայնածաւալ գործերի ընդարձակութեամբ, երգչի բազմազան և բազմաբեղուն արտադրութիւններով նա կարող է մրցել Եւրոպայի ամենաբեղմնաւոր հեղինակների հետ, իսկ մեր մէջ նա մրցակից չունի և եզակի է։ Այդ էր ահա պատճառը, որ նա վայելում էր եւրոպական հռչակ և պատուաւոր անդամ էր շատ համալսարանների և գիտական ընկերութիւնների։

Նա մի թուլակազմ, փոքրահասակ ու վտիտ մարդ էր, մի այնպիսի համեստ բնոյթով, որ առակի կարգն է անցել։ Ջանասիրութիւնը, տոկունութիւնն ու հայրենասիրութիւնը խորին համեստութեան հետ, այս էր նրա բնոյթի գլխաւոր յատկանիշը։ Ուստի նա էր և կը մնայ մինն այն սակաւաթիւ մտաւոր և բարոյական հսկաներից, որի նմանն երբ և իցէ արտադրել է հայ ազգը։

Գ. Վանցեան

## 159. ՆԱԽԱՍԱՐԴԻ ՏՕՆԵՐԸ

Հայք ունեցել են երկու տարեգլուխ՝ սրբազան և քաղաքական։ Սրբազան տարեգլխին բնութիւնը ծաղկափթիթ ծիծաղով կենդանացնում էր մարդկանց. իսկ քաղաքական տարեգլխին, որ Նաւասարդն (օգոստոս) է, կիսով չափ

այրուած բնութիւնը ինքը կենդանանում էր մարդկանց հաստատած տօներով և հանդէսներով։ Տարուայ ամենատաք ամիսը՝ հայոց բարեկենդանն էր, կաղանդն էր, կրօնական, զինուորական և աշխարհախումբ հանդէսներով հայոց աշխարհը գարնանանման գեղեցկանում էր։ Նաւասարդի տօները՝ պահապան աստուածների տօներ էին, նախնեաց քաջերի յիշատակներ էին, կտրիճների մրցանք էին, հասարակ ժողովրդեան խաղեր և վայելքներ էին, որ 3000 տարուայ չափ մեր երջանիկ նախնիքը կատարեցին, թընդացին, դոփեցին Բագրեւանդայ տափերի և բլուրների վրայ, մինչև նոցա տակ ծածկուեցան։ Այդ հանդէսները կատարում էին քրմապետները, նոցա փոխանակեցին խաչապաշտ քահանայապետները, որոնք մեհեանների տեղ եկեղեցիներ շինեցին։ Բայց դուրսը բնութիւնը իր կերպարանքը չփոխեց, ազգը իր հանդէսները չփոխեց, այլ տօները սրբեց, և աստուածներին նուիրելու փոխանակ՝ ճշմարիտ Աստծուն և Նորա նահատակներին նուիրեց։ Գրեթէ անկարելի էր, որ Ս. Գրիգոր հայերին հեթանոսութիւնից քրիստոնէութեան դարձնելով, այն հին մեծահանդէս աշխարհաժողով զբօսանքի օրերը անհանդէս, անյիշատակ թողնէր։

Նաւասարդից մի քանի օր առաջ կատարւում էր վարդածղի, վարդանման Աստղիկ դիցուհու տօնը, որի փոխանակ հայոց առաջին հայրապետը կարգեց Վարդավառ, Քրիստոսի պայծառակերպութեան տօնը, որ և հայերը մինչև այսօր պայծառապէս տօնում են։ Իսկ Նաւասարդի առաջին օրը (օգոստոսի 11), որ հայոց տարեգլուխն է, ազգային ամենից մեծ, պանծալի, սրբազան օրն էր, և հանդէսները շատ օրեր տևում էին՝ զանազան յիշատակներով, որոնք մի անունով Ամանորայ էին ասւում, կամ աշխարհաժողով։ Այս վերջին անունը ցոյց է տալիս, թէ այդ տօնին Բագրեւանդայ բարձրաւանդակների հանդիսականները միշտ մեծ բազմութեամբ էին ժողովւում. Թագաւորն իր Այրարատեան չորս բիւր գնդովը, նախարարները ութ բիւր գումարտակներով, 600 գաւառատեարք և 400 գահակալ իշխաններ, բազմաթիւ քրմեր իրանց պաշ-

տօնեաններով և ուրիշ հազարաւոր հանդիսականներ այս տօնը զարդարում էին։

Ի՞նչ էր այս Հայոց համաշխարական տօնի պատճառը. Նախ՝ ինչպէս գիտենք, հին տարեմուտն էր, որովհետև Նաւասարդ նշանակում է Նոր տարի։ Երկրորդ՝ Նաւասարդը ջրհեղեղի յիշատակն էր, ուստի և այդ օրերը զանազան ջրախաղեր էին կատարում՝ տալանով Արարատ սարի վրայ մարդկանց փրկութեան տօնը յիշատակելու համար։ Իսկ մենք հիմա, ինչպէս յայտնի է, ջրի այս հանդէսը Վարդավառի օրն ենք կատարում։ Երրորդ՝ տօն էր Ամանորայ ամենաբերից, ինչպէս առաջ յիշեցինք, որը երևի բերքի և առատութեան չաստուած էր համարւում։ Ուրիշ շատ պատճառների հետ մէկն էլ այն էր, իբրև թէ Մասիսի վհի մէջ Արտաւազդի շղթաններն կրծելուց տարուայ վերջին օրը մաղի բարակութեան և կտրելու է հասնում, և հազիւ թէ Արտաւազդ սպառնում է տարուայ հետ բոլոր աշխարհը վերջացնել և աշխարհախումբ տօնը համաշխարհական սուգ դարձնել, Նաւասարդի օրը դարբինները իրանց սալը ծեծում են, և այդ ձայնից աշխարհը Արտաւազդի աւերմունքից ազատւում է։ Այժմ ոչ միայն Նաւաըարդի օրը, այլ և ուրիշ օրերին դարբինները սովորութեամբ սալը ծեծում են, զոր օր. ամենայն կիրակի օրերը կամ չարչարանքի ուրբաթ օրը։ Այդ ամենայն յիշատակներից վերագոյն և հնագոյն և տօնելի յիշատակ այս օրուանս էր՝ Հ Ա Յ Կ Ը, մեր ազգի Նախահայրը, և նորանով մեր ազգի ձևանալը, որ մեծ յաղթութեամբ ազատեց Բէլի բռնութիւնից։ Այս տօնի սկզբնաւորութիւնը համարւում է 2492 տարի Քրիստոս թուականից առաջ օգոստոսի 11-ին կամ Աբրահամից մօտ 500 տարի առաջ, այս տօնը բուն Օր հայկական և Տօն ազգային է։ Հայկայ մեծ քաջութեան և անուան համար էր, որ նորա յաջորդները Նաւասարդի օրերուն իրանց ազգի ոյժը ներկայացնողը կրաբիճ զօրքերի աշխարհագումար հանդէսներ էին անում, և այն մեծ անձի անունը աւելի անմոռանալի արեցին երկընքի համաստեղութեանց մէջ դրոշմելով, որովհետև այն հա-

մտադրությունը։ Որ ուրիշ ազգերը Որիոն են կանչում, մենք անվանում ենք Հայկ։ Եվ այսպես անա 46 դար է, որ Հայկայ աստղի բարձրանալու օրերը անխափան յիշեցնում են մեր ազգային և հայկական օրը, որ և մենք՝ ինչ վիճակի մէջ որ լինենք, պէտք է նորա անունը յիշենք, տօնենք և անմոռաց հանդիսացնենք, քանի որ Հայ ազգի անունն ու լեզուն պահում ենք։ Այն տօնն էլ՝ քրիստոնեայ հայերի մէջ անմահացնելու համար, մեր հայր Լուսաւորիչը այս օրը նուիրեց Ս. Կարապետ Յովհաննուն, որ մեր աշուղներին յայտնի մուրազատու Մշու սուլթանի տօնն է։

Նաւասարդից երկու շաբաթ յետոյ հայերը մէկ աշխարհախումբ տօն էլ ունէին՝ Հայաստանի ամենից սիրելի և ամենիցս մեծ խնամակալ պահապանի անունը յարգելու համար, որ է Անահիտ դիցուհին, որին հայերը շատ պատւում և պաշտում էին և ոսկի արձաններ էին կանգնեցնում։ Մեր Տրդատ Թագաւորի թղթից իմանում ենք, որ այդ Անահիտն է մեր ազգի փառքն ու կեցուցիչը, որին ամենայն Թագաւորները պատւում էին. նա է մայր ամենայն զգաստութեանց, բարերար ամենայն մարդկան բնութեան, նորանով կայ և կենդանութիւն է կրում հայոց երկիրը, հայերի խնամակալն է։ Ս. Գրիգոր Լուսաւորիչը Անահտին իջեցրեց Հայոց տիկնութիւնից և տեղը բարձրացրեց Ս. կոյս Աստուածածին։

Այս բոլոր եկեղեցական տօները այժմ շարժական տօներ են, ուստի և ճշտութեամբ նոյն օրերին չեն կատարւում, բայց և այնպէս յիշեցնում են հին Նաւասարդի տօները։

Ղ. Վ. Ալիշան

---

## 160. ՍԱՀԱԿ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ (Ե. դար)

Վաթսուն տարի էր, որ հագարացիք մտեր և տիրեր էին ի Հայաստան, իրաւ, երբեմն բարեբարոյ և արդարախոհ ամիրապետաց և ոստիկանաց և մեր ազգի իշխանաց խոհեմութեամբն՝ հանդարտ և խաղաղութիւն կու գտնէր

աշխարհն, բայց շատ անգամ այլ՝ կամ մերայնոց անզգուշութեամբ և կամ հարկահանաց բռնաբարութեամբ՝ նեղութիւն և վտանգ պակաս չէր։

Սմբատ Բագրատունի՝ նախարարաց զօրագլուխն, իր ցեղակից իշխաններն և ուրիշ ցեղերէ այլ գլխաւորներ գաղտուկ ժողովեց 'ի խորհուրդ, թէ ի՞նչ ընեն այսպիսի վտանգաւոր ատեն։ Ուրիշ ճար չգտան, բայց եթէ իրենք զիրենք ապրեցնել, չափելով յարեւմուտս Յունաց կայսեր երկիրը։ Զգուշութեամբ երթալով՝ եկան դէպի 'ի Մասիս լեռը և բանակեցան յանուանի աւանն Ակոռի, և ահա լըսեցին որ այլազգիք իմացեր են իրենց միտքը, ու Նախճաւանի կողմնակալն 8000 և աւելի հոգւով ետևնուն ընկած՝ «ոչ մեխեցան 'ի հեռոյ նոցա. քանզի... կամէին կենդանւոյն կլանել զնոսա»։ Մերոնք փութացան փրթան լեռնէն վար, անցան Երասխ գետը, և Վարդանակերտ ըսուած աւանի մը մէջ բանակեցան, որ կարծեմ Խորվիրապի մօտերն էր. այլազգիք այլ նորէն ետևնուն ընկան։ Հայք մէկ կողմանէ բանակնին ամրացընելով և գիշերապահներ դնելով, միւս կողմանէ պատգամ ղրկեցին առ արաբացիս և իմացուցին, որ իրենց մտածութիւննին ուրիշ բան չէր, բայց միայն գլուխնին ապրեցնել փախստեամբ և օտարութեամբ, իրենց տեղն ու ստացուածքը՝ թողլով անոնց ձեռքը. ուրեմն թող տան՝ որ մնաս բարով ըսեն, հեռանան իրենց հայրենիքէն,— Եւ ոչ այս ցաւալի հրաժարական ողջոյնը տալու ներեցին բռնաւորքն, այլ յարձակեցան հայոց վրայ, որք և ոչ 2000 հոգի էին. սակայն աղօթքով և վերջին ջանքով ու քաջութեամբ միաբանեալ՝ դէմ ելան իրենցմէ չորս և հինգ հեղ բազմաթիւ բանակին այլազգեաց։ Ասոնք կէս մը գիշերուան ցրտէն փառցած, (վասն զի ձմեռն էր և ձեան վրայ անցուցեր էին գիշերը), կէս մը ցուրտ հովէն ծեծուած, և այլ աւելի՝ յուսահատեալ քաջաց հարուածներէն, բոլորովին շփոթեցան, քշուեցան, ջարդուեցան. փախչողներն այլ թափեցան Երասխայ վրայ՝ անդին անցնելու. գետն որ սառեր էր՝ անոնց փախստական ոտից դոփմանէն պատռելով ներքև առաւ, կլլեց, ծածկեց։ Եւ

այն ահարկու սպառազէն բիւրաչափ բանակէն՝ հազիւ 300 հոգիք կրցան փախչել. զորոնք դարձեալ պիտի ջարդէին հայք, եթէ չապրեցընէր մեր նախարարաց մէկուն տիկինն Շուշան, որ և քրիստոնէաբար գլթով անոց վէրքերն այլ պատելով, զգեստ և դրամ տալով՝ դարձուց խուրեց առ ամիրապետն արաբացւոց՝ Աբդլմէլիք. և ընդունեցաւ անկէց շատ ընծայ և պատիւ ի փոխարէն մարդասիրութեանն։ Յաղթական գունդն հայոց՝ թշնամեաց աւարներն առին, համարձակ իրենց ճամբան գնացին, մտան յամուր տեղից մեր Տայոց աշխարհին, որ այն ատեն յունաց իշխանութեան տակ էր, և կայսրէն այլ պատիւ կըտան։ — Այս է Վարդանակերտի կռիւն, անուանի մեր պատմութեան մէջ այս ժամանակիս, և ամօթալի յարաբացւոց պատմութեան, որոյ անուանն և տարին անգամ չէին ուզեր յիշել։

Այս կռուէն սիրտ առած ուրիշ հայ իշխանք այլ ի Վասպուրական՝ գիրենք նեղացընող այլազգեաց գունդերը ջարդեցին։ Բայց եթէ առով՝ իրենց վտանգը քիչ մը հեռացուցին. աւելի այլ ծանրացուցին։ Վասն զի ամիրապետն Աբդլմէլիք իր կուսակալաց փախստական զօրքերը տեսնելով և լսելով եղածը, պատուէր ըրաւ Մահմէդ ոստիկանին, որ երթայ խստիւ պատժէ զհայս։ Մահմէտ առաջինէն աւելի պատրաստութեամբ և սրտմտութեամբ եկաւ գալու, զհայաստան սրով և հրովը մաշելու։ Հիմայ մերոնց՝ ոչ միայն անոր դէմ կենալու ճար չկար, այլ գրեթէ և ոչ փախչելու։ Մէկ հատիկ և յետին հնարք գտաւ Հայաստան՝ որ սրբակեաց և ալէզարդ հայրապետը (Սահակ), փութացնել ընդ առաջ ահաւոր զօրավարին. որ եթէ հընար է, իր վարուց, հասակին և աստիճանին շնորհօք՝ անոր զէնքերը և ձեռքը կապէ։ Սրբակենցաղ հայրապետն՝ որ արդէն վշտահար տառապեալ կեանքը կնքելու մօտ էր, յանձն առաւ այդ դժուար պատգամաւորութիւնը, իբրև յետին և ծանր հայրական պարտ։ Ելաւ իր ընիկ երկրէն և աթոռէն, վերջին ողջոյնները և օրհնութիւնները տալով, թէ հասարակաց որդւոցը, և թէ ամենուն դեռ Մահմէտ

մեր սահմանաց չհասած՝ ինքն մտաւ յԱսորիս, և հասաւ մինչև ի Խառան քաղաք. այլ չկրցաւ յառաջ շարժիլ. յոգնութիւն, ծերութիւն և սրտցաւութիւն՝ վերջին հիւանդութիւնը բերին, Թևերը թուլացուց, ոտքերը կապեց մահը, մահ՝ որ միայն չկրցաւ սիրտը պաղեցընել, ինչուան անոր յետին շարժը։ Մահն հոս շուտ երևցաւ, բայց ուշ հասաւ, վասն զի մեռնողն ցրուեց անոր անյաղթելի կարծեցեալ հնարքը. ճարտասան լեզուին և եռանդուն սրտին թարգման թողուց ձեռացը մէջ կնքած թուղթ մը՝ առ ոստիկան Մահմէտ, պատուիրելով որ իմացընեն անոր իր փափագը։

Գնացին աղաչաւորքն առ ոստիկանն, որ և շուտով հասաւ ի Խառան. բերին տուին իրեն թուղթը՝ յորում գրեր էր հայրապետն սքանչելի իմաստութեամբ և ծանրութեամբ մը, խնդրելով որ խնայէ հայոց, ներէ անոնց ըրածին, չդիպչի անոնց հաւատքին. այլ ինչպէս առաջին ամիրապետք թողեր էին՝ ինքն այլ թողու. միայն հարկը առնու և պահէ վաշխարքը։ Ու եթէ այսպէս ընես, գրէր, Աստուած քու կամքդ կատարէ և կու յաջողէ, ապա թէ չես լսեր ինձի՝ ոչ իմ օրհնութիւնս և ոչ Աստուծոյ կուգայ վրադ. այլ միտքդ դրածիդ հակառակն կու պատահի, և ամեն կողմէն վրադ չարիք կու թափին։ — Զարմացաւ, զարհուրեցաւ ահեղ զօրավարն. և լսելով որ դեռ թաղած չեն սրբոյն մարմինը, եկաւ անձամբ, և տեսնելով այն հանդարտեալ հանգուցեալ կերպարանաց վրայ աստուածախօս պատգամ մը, խոնարհեցաւ պատկառանօք, երկու երեք անգամ սէլամ-ալէք ըսաւ, որուն՝ կըսեն ոմանք, թէ մեռեալ մարմինն այլ, պատասխան տուաւ խաղաղութեան ողջունի։ Մահմէտ հայրապետին աջը բռնելով և վկայ կոչելով զԱստուած, իբրև կենդանի մարգարէի հետ խօսեցաւ և ըսաւ. Քու թղթէդ ճանչցայ քու իմաստութիւնդ, ով մարդ Աստուծոյ, դու իմ սուրս կապեցիր, և քու ժողովուրդդ ապրեցուցիր, եթէ ուզածէդ բան մը չկատարեմ՝ բած անէծքներդ գան վրաս, ապա թէ կատարեմ՝ ինչպէս որ խօսք կու տամ. օրհնութիւնդ վրաս ըլլայ։

Գազանացեալ գետոյ պէս վազող զօրավարն՝ դադարեցուց զօրքերը, հայոց դալկահար պատգամաւորները՝ անկարծելի կենաց յուսով նորոգեց, ոչ միայն բանիւ այլ և գրով ազատութեան հրովարտակ կնքելու և տալով, որ առաջին Ալի ամիրապետին տուածէն ետև գլխաւոր ազատագիրն եղաւ հայոց, և կոչուեցաւ երկրորդ կամ փոքր մանշուր։ Այս հրովարտակը՝ սուրբ խաչավառից և դրօշուց հետ պարզած՝ տարին հայրապետին մարմնոյն հետ՝ իրեն հաւատարիմքն և Հայաստան նոր հոգի առած՝ իր մահուչափ սիրող և սիրելի հայրապետը հանգոյց յանմահութիւն...

Հ. Ղևոնդ Ալիշան

Յազկերտ պարսից թագաւորը պահանջում էր, որ հայերը քրիստոնէութիւնն ուրանան և կրակապաշտ դառնան։ Հայերն ընդդիմացան և 451-ին Վարդան Մամիկոնեանի առաջնորդութեամբ դուրս եկան պատերազմի, Աւարայր դաշտում, Տղմուտ գետի ափին։ Վարդանը նահատակուեց։ Այս պատմութիւնը մեզ աւանդել է ականատես բանաստեղծ և պատմիչ Եղիշէն։ Նաւապետ Ալիշանն այս առթիւ է գրել իր Պլպուլը, նրա կարծիքով Վարդանը նահատակուելով դարձաւ Վարդ. իսկ Եղիշէն դարձաւ բլբուլ, որ նստելով վարդի վրայ շարունակ երգէ ու ողբայ նրա կեանքն ու գործերը։

---

## 161. ՊԼՊՈՒԼՆ ԱՒԱՐԱՅՐԻ

Ո՞նց կաս իմ լուսնակ, հեզիկ ու հանդարտ
Համասփիւռ լուսովդ ի լեռ, ձոր և արտ,
Եւ ի Նահապետս, որ մտօք մոլար,
Գիշերաժամիկ ժուռ գամ յԱւարայր,
Ուր քաջ ու աննըման իմ հարք Հայկազունք
Ընկան զէտ հըսկայ, ելան զէտ զուարթունք.
Մի՞թէ կաս սփռել ոսկերաց սըրբոց
Ջիւնափայլ ամպէդ ոսկեթել ծածկոց,
Թէ՞ ճերմակ ճակտիդ՝ թէպէտ և պայծառ
Բաշխես արենէն ուղես կարմիր վառ.
Թէ՞ լըռիկ մընջիկ ափշիս տակաւին

Թէ ի՛նչպէս ընկաւ Վարդանն ահագին,
Մահու սև ստուերն ի սիրտ թըշնամեաց,
Զհոգին ձըգելով յերկին առ Աստուած։
Դու այլ ով Տղմուտ, տրտում ու արիւնուտ,
Որ գաս կամկար լաս ի մէջ շամբերուտ.
Եւ հովիկդ, որ գաս ի Մակուայ քարէն
Կամ ի ծեր Մասեաց սըրբազան սարէն,
Դու այլ ինձ նման դողդող և երեր
Թոյլ թեօք անցնիս սարեր ու ձորեր,
Անտառէ անտառ, տերևէ տերև,
Կոծկոծելով գաս ի դաշտիս վերև,
Զայս մաշած շընչիս վերջին հառաչանք
Զըգել ի հայոց սըրտից արձագանք։
Ո՜հ, դու բարեկամ այրուած սըրտերու,
Խօսնակ գիշերոյ, հոգեակ վարդերու,
Երգէ, պըլպուլիկդ, երգէ ի սարէդ,
Զանմահ քաջն հայոց երգէ հոգւոյս հետ.
Թաղէի վանուց ձէնիկդ ինձ դիպաւ,
Սըրտիկս՝ որ ի խաչն էր կից՝ թունդ առաւ,
Ի խաչին թևէն թռայ ու հասայ,
Գտայ զքեզ ի դաշտ քաջին Վարդանայ։
Պլպուլ, քեզ համար մեր հարքն ասացին,
Թէ չէ հաւ՝ պլպուլ մեր Աւարայրին,
Եղիշեայ հոգեակն է քաղցրագըրուցիկ,
Որ զՎարդան ի վարդըն տեսնու կարմրիկ.
Զմեռն յանապատ կու գնայ՝ կայ ի լաց,
յԱրտազ գայ զգարունն ի թուփ վարդենեաց,
Երգել ու կանչել յԵղիշէին ձայն,
Թէ պատասխանիկ մ'արդեօք տայ Վարդան։

Ղևոնդ Ալիշան

Գրեցէք սրա բովանդակութիւնն համառօտակի։ Ո՞ւմ է դիմում հեղինակը Վարդանի մասին տեղեկութիւն առնելու. ո՞վ է սոխակը և ո՞վ Վարդան ըստ բանաստեղծի։

---

## 162. ԾԵՐԵՆՑ—ԲԺՇԿ. ՅՈՎՍԷՓ ՇԻՇՄԱՆԵԱՆ 1822— 1888

Ծերենցը ծնաւ Պօլիս, 1822-ին. Ալիշանի հետ ուղևորուեց Վենետիկ և դաստիարակուեց Մխիթարեանների

մօտ, ապա ուսաւ և աւարտեց Պարիզի համալսարանի բուժական բաժինը։

Վերադառնալով հայրենիք, նա ցոյց տուաւ եռանդուն գործունէութիւն որպէս բժիշկ, ճառախօս, և հրապարակագիր։ Կրթուած հայ կաթօլիկներն այդ ժամանակ ցանկացան վերջ տալ այն անելութեանը, որ կար լուսաւորչական և կաթօլիկ հայերի մէջ, միացեալ ընկերութիւն կազմեցին «Համազգեայ» անունով.—այդ միութեանը խիստ հակառակ էր կաթոլիկների պատրիարք Հասունը, որի հակառակորդները կոչուեցան Հակ-Հասունեան. դրանց մէջ նշանաւոր դեր էր խաղում Ծերենցը, որ մի խումբ կրթուած հայ կաթոլիկների հետ անցաւ մայրենի եկեղեցու գիրկը։ 60-ական թւերին նա հիմնում է մի ընկերութիւն, որի նպատակն էր հողագործական դպրոցներ բանալ Հայաստանում և այդ նպատակով ուղևորւում է Կիլիկիա, այնտեղ այդպիսի դպրոց բանալու։ Ծառայում է Կիպրոսում որպէս պետական բժիշկ, իսկ եօթանասնական թւերին գալիս է Թիփլիզ, ուր Ներսիսեան դպրոցում աւանդում է հայոց պատմութիւն։ Ռուս-թուրքական պատերազմից յետոյ, երբ ռամն ու քրդերը մեծ աւերումներ լին գործել, Շիշմանեանը Թիֆլիզից ուղևորւում է Հայաստան թշուառ հայերին բուժական և նիւթական օգնութիւն հասցնելու։

Կիլիկիա և Կիպրոս ճամբորդելով, նա հիմնովին ծանօթացաւ տեղի աշխարհագրութեանը, որ անհրաժեշտ էր նրա անզուգական վիպասանութեան «Թորոս Լևոնի» համար։ Այդտեղ նա ցոյց է տալիս հայերի հետզհետէ կենդրոնանալը ի Կիլիկիա և Ռուբինեան թագաւորութեան հաստատուիլը։ Ծերենցը շատ ուշ սկսեց վէպեր գրել, բայց հետևեալ վէպերը. «Թէոդորոս Ռշտունի» և «Երկունք Թ. դարու» ցոյց տուին, որ նա մի տաղանդաւոր վիպասան է և գիտէ անցեալի դէպքերն ու տիպերը զարմանալի կերպով կենդանացնել։

Նրա վէպերի մէջ տիրող հիմնական գաղափարն է ազգասիրութիւն եւ ժողովրդասիրութիւն —ժողովրդի միջից դուրս եկած հերոսներն են, որ ստեղծում և առաջնոր-

գում են պատմական դէպքերին ազգային ոգով, ընդդէմ իշխանների, որոնք անհատական նեղ շահերից աւելի բան չէին հասկանում։ Պատմական յայտնի դէպքերի տակ նա արծարծում և քարոզում էր իր սեփական համոզումները մի շնորհալի ֆանտազիայով և աշխոյժ ոճով։

Նա մեռաւ Թիֆլիզ 1888 ին և թաղուեց Խօջի-Վանքի գերեզմանատանը։

## 163. ՅՈՀԱՆԻ ՏԵՍԻԼՔԸ [1])

Յոհանը իր Սասունցի լեռնցիների հետ ցած էր իջել Մշու դաշտը և ոչնչացրել արաբական բանակը, ազատելով Մուշ քաղաքը և Ս. Կարապետի վանքը։ Վանքի միաբանները ուրախացած թշնամու կորուստի վրայ, պատարագում են գոհաբանական աղօթքի, Յոհան եկեղեցւոյ դուռը կանգնած և սկսած էր սաղմոսերգութեան՝ երբ յանկարծ զգաց, որ ձեռք մը իր ուսին վրայ յեցաւ։ Երբ գլուխը դարձուց տեսաւ երկայնահասակ չոր ծեր մը, որուն ձիւնի պէս ճերմակ մօրուքը մինչև գօտին՝ լայն մոխրագոյն բուրդ վերարկու մը մինչև ոտքերը կիջնէր, թխամորթ էր իր խորշոմեալ երեսին գոյնը, իր սև և մեծ աչքերը փայլ և հրապուրիչ քաղցրութիւն ունէին, միանգամայն, առանց խօսք մը արտասանելու ձեռքէն բռնեց, առաւ դուրս հանեց, և երբ լուսնին աղօտ լուսով երկու հոգի միայն գտնուեցան. «Եկ, Յոհան, իմ եաւէս, ըսաւ, եթէ կուզես որ ապագային վարագոյրը պատռի և ցոյց տայ քեզի հանդերձեալը՝ գաղտնիք Աստուածային, եկ, մի վախեր»։

— Ե՞րբ վախեր եմ ես, որ հիմա պիտի վախեմ, ըսաւ Յոհան, զինուոր սասունցի մը երբէք չէ վախցեր։

[1]) Կարդա այս գրքում Սասունցի Դաւթի առաջաբանը։ Թեոի կամ Ձէնով Օհանը նոյն այս Խուլթեցի Յովհանն է, որ Սասունցիների հետ ցած գալով լեռներից, կոտորեց արաբաց զօրքը և Մսլամելիքին։

—Բայց դու խառնուրդ ես զինուորի և քահանայի, դու խառնուրդ ես հաւատոյ և թերահաւատութեան, դու խառնուրդ ես քաջութեան և եթէ ոչ երկիւղի՝ գոնէ կասկածանաց։

—Ես հաստատ եմ իմ հաւատքիս վրայ՝ ես զինուոր եմ…

—Ինձ զքեզ մի՛ ճանչցներ. դու տղայ էիր, զքեզ տեսայ, հեռացար դու սա լեռներէն, իմ աչքերս քեզի հետ էին և զքեզ կը տեսնէին և քու ամեն գաղտնիքդ կը նշմարէին. ուստի քալէ երթանք, չէ՞ս ուզեր դու իմանալ ապագան, մի՞թէ դրա համար չէ՞ր, որ կաղօթէիր, միթէ՞ երկիւղը, որ մի՛ զուցէ Հայաստան երկրի թշուառութեան պատճառ եղաւ այդ հրոսակին կոտորածովը՝ միթէ՞ այդ չէ, որ զքեզ կը տանջէ։

Ծերուն ցուրտ երկաթեայ ձեռքը կը սառեցնէր Յովնանու ձեռքը և իրենք կը քալէին ձիւնին վրայ, որ կը մռնչէր իրենց ոտքերուն տակ, և անխօս կը շարունակէին իրենց ընթացքը։ Կը բարձրանային՝ կիջնէին և դարձեալ կելնէին, սառած առուակներ և գետակներ կանցնէին. անցան նաև մեծ գետ մը, որու սառոյցին ընդարձակութիւնը իմացուց Խութեցւոյն թէ Արածանին էր, որ կանցնէին և դեռ իրենք կերթային լուսնին աղօտ լուսով մինչև բլուրներու, ժայռերու, կիրճերու, գահավէժներու և փապարներու մէջ, դարձեալ այս ուղեգնացութեան ծրագիրը կորսնցուց Յովնան, մինչև քարայրի մը մուտք ներկայացաւ իրենց և ծերը առանց իր ընթացից արագութիւնը թողլու՝ մտաւ մութուն մէջ, ուր խաւարը շօշափելի եղաւ և էլ աւելի ամուր սղմելով իր ընկերին ձեռքը կը քաշէր կը տանէր խորէ ի խոր, վասն զի շարունակ կիջնէին։ Յովնան առանց երկիւղ զգալու կը խորհրդածէր ինքնիրեն. «Զորս ժամ է և աւելի, որ մենք այդ ծերուն հետ կարշաւենք և դեռ նա յոգնութեան փոքրիկ նշան մը չի ցոյց տալ, իր ձեռքը, որ կը դողայ և ոչ կը տաքանայ, սառ լինէր իմ ձեռացս տաքութեամբ կը հալէր, իսկ ինք իմ ձեռքս կը սառեցնէ»։

—Յովհան, ծռէ և այնպէս հետևէ ինձ, ըսաւ ծերը, մի՛ շտկուիր մինչև որ քեզ իմաց չի տամ։

Եւ այնպէս մի փոքրիկ ժամանակ երթալէն վերջ, ծերուն յորդորով շտկուեցան և Յովհան զգաց, որ աւելի համարձակ շունչ կառնուր՝ թէպէտ միշտ գետնափորներու մէջ էին և ոչ նշոյլ կար ոչ բնական և ոչ արհեստական լուսոյ։ Բայց վերջապէս հասան այնպիսի տեղ մը, ուր հեռու նշոյլ մը սկսաւ երևալ և մտան ընդարձակ լուսաւորուած սրահ մը, ուր ոսկեձոյլ աշտանակներու վրայ մեղրամոմներ և բազմաթիւ արծաթի կանթեղներ իրենց լոյսը կը ցոլացնէին, և հրաշալի արձան մը կանգնած էր պղնձէ պատուանդանի մը վրայ. այն համբաւաւոր ոսկիածին և ոսկիամօր Անահտայ արձանն էր նա՝ պաշտպանի հին հայրենեաց, և իր աջ կողմը Վահագնի և ձախը Աստղկան արձաններ կանգուն էին, սա երեք արձաններուն պատուանդաններուն յեցեալ. եռոտանի մը կար դարձեալ ոսկեձոյլ. չէր կարելի իմանալ թէ այս տաճարը՝ վասն զի իրօք տաճար մ՚էր սա իր գմբէթովը, որու չորս կողմը դեռ ուրիշ փոքր գմբէթներ կային, գետնին տակն է՞ր թէ գետնէն դուրս բարձրացած. վասն զի պատերը բոլոր արձաններով և քանդակներով էին զարդարած և վրայի գմբէթէն կախ էր ահագին ապակեայ ճրագարան մը, ո՛ գիտէ ո՛ւստի և ո՛ր հեռաւոր երկրէ բերուած այդ տեղ այդ անդնդախոյս աստուածութեանց պաշտօնը և նսեմացեալ խաւարը շքաւորելու համար։

Այս տեսարանը յանկարծ այնչափ զարմացուց և շլացուց զՅովհան, որ և ոչ զգա՛ց թէ ինչպէս և երբ հեռացաւ իրմէ իր ծեր առաջնորդը, ուստի սկսաւ նայիլ և զննել այդ հին յիշատակաց և արուեստներու հրաշալիքը, որոնց նմանութիւնը կըմտածէր թէ ո՛ւր տեսած էր ինք, ՚ի Կոստանդնուպոլիս թէ ՚ի Բաղդատ։

Եւ երբ այս մտածութեան վրայ էր, յանկարծ իր ուշադրութիւնը շարժեցաւ վասն զի երգելու ձայներ սկսան լսուիլ և տաճարը լցուեցաւ Արաբիոյ և Հնդկաց անուշահոտ խնկերով և եռոտանին իբրև թէ խնկաման կամ բուր-

մառ մը լինէր՝ դուրս կըփչէր զմայլեցուցիչ մուխ մը, որ զարմանալի ազդեցութեամբ այդ մարդուն երկըթէ ջիղերը կակուղ ոսկւոյ սկսաւ դարձնել։ Դուռ կըփնտրէր Յովհան, և ահա չէր կարող նշմարել նաև այն դուռը, ուսկից ինք ներս մտեր էր. և իր սուր աչքերը շփոթեցան, վասն զի մուտքը կարող չէր նշմարել, և իրօք կըտեսնէր թէ բանտի մը մէջ էր՝ բայց փառաւոր բանտի մէջ։

Հազիւ թէ այս խորհրդածութիւնը մտքէն անցաւ և ահա Վահագնի և Աստղկան պղնձէ պատուանդաններուն անյայտ դռները բացուեցան և երգեցիկ քրմաց և քրմուհեաց բազմութիւն մը զոյգ զոյգ սկսան դուրս ելնել և արձաններուն առջև շարուիլ. իրենց հարուստ և ճոխ ոսկեթել և նկարէն զգեստները, հաճոյական էին աչաց, և երբ Յովնան անոնց մանրամասն դիտողութեան զբաղած էր՝ ահա Անահտայ պատուանդանին դռնէն դուրս ելան մեծ քրմապետը և մեծ քրմուհին և երգերը լռեցին։ Մեր լեռնցին քրմապետը մէկէն ճանչեց, թէպէտ զգեստներուն պերճութենէն փոխուած՝ բայց նոյն ծերն էր, որ զինքն հոն բերել էր. իսկ քրմուհին երիտասարդ և շատ գեղեցիկ կին մը էր, որ երբ եռոտանւոյն առջև կանգնեցաւ, թալուկ եկաւ երեսին։ Նոյն վայրկենին երգերն լռեցին, եղէգեայ սրինգներ սկսան փափուկ և տխուր երաժշտութիւն մը հնչեցնել, որ մտիկ ընողին հեշտալի եթէ չէր գալ, վայրկենէ մը վերջը շատ ազդու և սրտաճմլիկ բերկրութիւն մը կը բերէր անձին։ Քրմապետը այն տեղն ձեռք տուաւ և հրաւիրեց քրմուհին, որ անցնի նստի ոսկի եռոտանւոյն վրայ, և ինք շրջապատեալ իր խումբէն՝ կանգնեցաւ իր աստուածութեանց առաջ թևերը տարածելով և անձայն աղօթելով, հազիւ թէ շրթունքը կը շարժէին։ Եւ ահա քանի մը րոպէ չեղած ամեն աչք որ եռոտանւոյն պշուցեալ էին՝ կը տեսնէին փոքրիկ ջղային ցնցմունքներ մեծ քրմուհւոյն վրայ, անոնց յաջորդեց վիճակ մը՝ որ իբրև թէ մարմարէ արձան յեղափոխեց այդ եռոտանւոյն վրայ նստողը, մինչև որ աչքերը սկսան բացուիլ անսովոր և սևեռնայուածքով. ան տեղն քրմապետին բերին գիրք մը, որուն թերթերը

արծաթեայ բարակ տախտակներ էին և նա բացաւ էջ մը, ուր ոչինչ չի կար գրուած և ներկայեց բրմուհւոյն. «կարդա՛, ներշնչեալդ յԱստուածոց» ըսաւ հզօր ձայնով. երաժշտութիւնն դադրեց, և այնպիսի լռութիւն մը տիրեց և ամեն շունչ այնպէս կեցաւ, որ մէկ բան մը միայն կը լսուէր՝ բրմուհւոյն շնչառութիւնը. և ամեն աչք իրեն կը նայէր։

Եւ բրմուհւոյն հեկեկանաց ձայնը այսպէս խօսեցաւ. «Քի՜չ են, Հայաստան, քու չարչարանքդ, քի՛չ են քու տանջանքներդ, դեռ կանգուն են քու քաղաքներդ, դեռ կանգուն են քու տաճարներդ, դեռ հարսի և փեսայի ձայները կը լսուի ի քեզ, դեռ տղայն օրրանին մէջ կը ճուայ, դեռ հուրը վառարանին մէջ կը ճարճատէ, դեռ մուխը երդեկաց վրայէն կը բարձրանայ։ Դեռ քու որդիքդ բարձրավիզ կը քալեն, դեռ երկաթը իրենց ձեռքին և իրենց մէջքին վրայ կը փայլի, դեռ սաղավարտը իրենց գլխին վրայ կը ճաճանչէ. դեռ քու աղջիկներդ ծիրանիներով կը զարդարուին, դեռ նոցա վզին վրայ ոսկի մանեակ և թևերնին ապարանջաններ կը նշուլեն. բայց այդ ամենուն վերջն է՝ քու քաղաքներդ պիտի անմարդանան, քու շէներդ անշէն պիտի մնան, քու տաճարներդ կիսակործան, քու տուններդ անկենդան, ուրախութեան և հարսանեաց ձայներուդ՝ ողբերու և լալերու ձայներ պիտի յաջորդեն, քու զէնքերուդ շկահմանց՝ շղթայներու ձայներ, քու մանեակներուդ և ապարանջաններու, հնչմանց՝ գերութեան խարազաններու ճարճատմունք. այո՛, քու կտրիճներդ գերի իրենց երկրին մէջ՝ գերի օտարութեան մէջ, քու աղջիկներդ աղախին իրենց հայրենի տան՝ և դռան պանդխտութեան մէջ։ Երբ արևելք երեսդ դարձնես՝ թշնամի պիտի գտնես, երբ արևմուտ դառնաս՝ թշնամի պիտի տեսնես, օգնութիւն պիտի խնդրես՝ նախատինք՝ արհամարհանք պիտի գտնես, երկինք աչքերդ պիտի դարձնես՝ նա կայծակ և կարկուտ քեզի պիտի տեղայ, քու զաւակներդ նաև շատ անգամ եղբայրասպան իրենց մօտ սիրտը պիտի վիրաւորեն»։

Ձեռքերը ծալած փայտ կտրեր մնացել էր Յովհան, կը նայէր այդ կնկան երեսին գոյնին, կը նայէր աչքերուն

մարմրուկին և վերջը արցունքներուն, կը լսէր այդ անսովոր ձայնը՝ կը խորհրդածէր ինքնիրեն և կըսէր. «Այդ կինը եթէ գերասան էլ է, շատ լաւ կը խաղայ իր դերը, ես յոյն թատրականաց մէջ նաև այդպիսի մը չեմ տեսած. եթէ բառերը ճշմարիտ են, վա՜յ է մեզի, վա՜յ մեր հայ ազգին. ի՞նչ ապացոյց կրնայ տալ իր դուշակութեանց այդ անսովոր մարգարէուհին»։ Այս միջոցին քրմուհին գլուխը կուրծքին վրայ իրրև թէ խոր քուն էր, սրինգներն իրենց տխուր երաժշտութիւնը դարձեալ կը շարունակէին, երբ յանկարծ ցնցուեցաւ նա և եռոտանին սարսեցաւ, աչքերը բացուեցան լի տխուր սրտմտութեամբ և ցուցամատը կարկառ դէպ Յոփյան. Ո՞վ դու, գոչեց, պէտք է աշխատիս, պէտք է ցոյց տաս՝ օրինակ լինիս հայ թշուառ աշխարհի թէ ժողովուրդը ողորմելի արհամարհելի էակ մի չէ, թէ իր արիւնը ունի այն ամեն առաքինութիւն, որով կըպարծին նոքա, որ իրենց հարց անուան վրայ կը գոռոզնան և շատ անգամ զուրկ են նոցա առաքինութենէն... գնա, ասպարէզն ընդարձակ է, գալիք պատուհասը սոսկալի է, զօրացիր վասն զի հեռի չէ օրը, որ վահանները պիտի ջախջախին՝ նիզակները կտրտին՝ սուրերը փշրին, գնա, ժողովրդեան զինուոր, երկնային զօրութիւնք քեզի օգնական թող լինին։

Եւ անա բուրմանց ամպ մը պատեց դարձեալ եռոտանին, լոյսերը ամենքը մէկէն խաւարեցան և Յոփյան ընկեալ՝ խորտակեալ և վերջի խօսքերէն սակաւ ինչ կենդանացեալ, թանձրամած խաւարին մէջ կը խարխափէր՝ երբ օգնական ձեռք մը զգաց թէ իր ձեռքէն բռնեց։

— Եկ Յոփյան, հետևէ ինձ, ըսաւ ծանօթ ձայնը։

Եւ սկսան քալել այդ մթութեան մէջ և մի և նոյն կերպով ինչպէս առաջ մտեր էին։ Ծեր քրմապետն էր, որ կառաջնորդէր, մինչև վերջապէս հասան այն քարայրին բերանը՝ լուսնի լուսոյն տեղ արևու լոյսը ամեն բան կը լուսաւորէր։

—Գնա, որդեա՛կ Յոփյան, երկնային զօրութիւնք քեզի օգնական լինին, ըսաւ ծերը, և քարայրին մթութեան

մէջ թաղուեցաւ։ Իսկ Ցոլման քիչ մը տեղ անզգայ քայքելէն վերջ, արթնցաւ և ճանչեց թէ Աշտիշատի աւերակներէն էր շրջապատեալ։ Ան ատեն իմացաւ թէ հայկական հին կրօնքը 550 տարի վերջը, անհետ եղած երկրի վրայէն, դեռ գետնի տակ կապրէր յանծանօթս։

«ԵՐԿՈՒՆՔ» — Ծերենց

Ի՞նչպես է ներկայացնում հեղինակը հայոց հեթանոսական կրոնը. իրակա՞ն է դա, թե երևակայական. Ինչ ստույգ բան գիտենք հայոց հեթանոսական կրոնից և ովքեր էին հայոց գլխավոր Աստվածները. Արամազդ. Անահիտ. Վահագն և Աստղիկ։

---

## 164. ԿԻԼԻԿԻՈՅ ՎԻՃԱԿԸ ԺԱ. ԴԱՐՈՒՄ

Արտաքոյ կարգի վիճակ մ՚ էր այն ատեն Կիլիկիոյ վիճակը. հայ ժողովուրդ մը Տորոսի լեռներուն մէջ օր աւուր կաւելնար, վասն զի Հայաստան և Փոքր-Ասիա այլակրօնք տիրանալով, անտանելի կընէին հայրենական, անձնական և կրօնական ազատութիւնը. հալածանք և գերութիւն իր և ամենքին բաժինն էր։

Ժողովուրդը, ինչպէս ասիական ամէն ժողովուրդք, երբէք չէր երևակայած այնպիսի ազատ կառավարութիւն, ինչպիսի ունեցած էին յոյնք և հռովմայեցիք իրենց պատմութեան մէկ ժամանակին, զոր հանրապետութիւն անուանած էին։ Մեր եկեղեցական հայրապետք հազիւ թէ քրիստոնէական կրօնից գրքեր ու գաղափարներ թարգմանելու և տարածելու ժամանակ ունեցեր էին, իսկ ազգային պատմութեան մշուշ համառօտութիւնը այնչափ տկար էր ժողովրդեան մտքին մէջ, որ հայ զօրավարներ իրենց զօրաց քաջալերութեան օրինակի համար, հրէից պատմութեան դիմելու պարտաւորած էին։ Ուստի Տորոսի վրայ ժողովուած հայուն բազմութիւնը, ինչպէս ժամանակակից օտարազգիք ալ կը վկայեն, երկու կատարելութիւն ունէր. պատերազմական քաջութիւն, քրիստոնէական հաւատք. ամէն մարդ զինուոր և ամէն մարդ իր հայրենի կրօնին

գերին էր։ Իրեն համար ազգային դրօշակ խաչն էր և իր բոլոր աստուածաբանութիւնը Լուսաւորչայ կրօնքն անփոփոխ պահպանելն... Ուստի հալածանք Սելճուկեանց, հալածանք Ամիրապետաց և անթիւ մահմեդական Ամիրայից, հալածանք Բիւզանդական կայսերաց, հալածանք նաև ի Վրաց՝ զինք քշել բերեր էին Տօրոսի բարձունքը և հոն կը լեցուէր, կը դիզուէր ամպի պէս ժողովուրդը, որ կարելի չէր թէ քիչ-քիչ իբրև վտակ՝ վերջը իբրև գետ և էն վերջին իբրև հեղեղ չիջնէր և դաշտը չողողէր։

Բայց ժողովուրդը միշտ առաջնորդի պէտք ունէր, ինչպէս ամեն ժողովուրդք ունեցեր են և պիտի ունենան։ Հայ ժողովուրդը միշտ կը նկատէր երկու տեսակ մարդիկ. իր կրօնական գլուխները, որ զինք միշտ կը յորդորէին Պօղոսի հետ՝ «Հնազանդ լինել մարմնաւոր տէրանց» և նախարարական հին սերնդոց պայազատքը, որ իբրև թէ փառաց ճաճանչ մը գլխուն վրայ կը կրէին, յարգանք, պատիւ և իշխանութիւն աննախանձ և անուրանալի սեփականութիւն անձանց համարելով։

Ամեն ամրոց, բերդ կամ դղեակ իշխանի մը ստացուածքն էր, որ միշտ Արծրունի, Բագրատունի, Կամսարական, Սիւնի, Պահլաւունի, Մամիկոնեան և ուրիշ ասոնց նման սերնդոց կը վերաբերէին, որք ազնուականաց ընական առաքինութեամբ և թերութեամբ առաջ կամ ետ կ'երթային, յօգուտ կամ ի վնաս անձանց և հայութեան։ Ժողովուրդը միշտ իր սրտի ձայնին և մտքին համոզման հետևելով, այս իշխանաց և բերդակալաց մէջ զանոնք կը վերադասէր, իւր առաւել ինքնիշխանութեան և հայրենի հնաւանդ կրօնից և սովորութեանց պաշտպան էին և հետևապէս նաև իրենց ազգին։ Ասկից նաև Ռուբինեանց ժողովրդականութիւնը, որոնք հայութեան բուն ներկայիչքն էին իր աչքին, մինչ իբրև օտարածին կարհամարհէր յունացեալքն և լատինացեալք, որք սեբաստոսութեան, տուքութեան և այլ ուրիշ տիտղոսներով Բիւզանդական կայսերէն մեծապատիւ կը վարձատրուէին։

Կային նաև անոնց մէջ այնպիսիներ, որ ոչ միայն ի-

րենց ազգին պաշտպանութիւնը կարհամարհէին, այլ օտարաց հաճոյ լինելու համար իրենց ազգը արհամարհել և անկից օտարեալն ու զանի հարստահարելն իրենց սովորութիւն ըրած էին։

«Թորոս Լևոնի» - Ծերենց

---

## 165. ՄԿՐՏԻՉ ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆ (1828—1868)

Մկրտիչ Պէշիկթաշլեանը իր ճառերից մինում հետևեալն է ասում. «տարիկա է մեծանձն մարդկանց ճակատագիրը. մեծ ըլլալ, բայց դժբաղդ, ճրագի պէս ուրիշները լուսաւորելով իրենք հատնիլ»։ Ու շատ գեղեցիկ սազում են այս խօսքերն հէնց իր անձին, որ մեծ լինելով անբաղդ ապրեց, ուրեմն լուսաւոր կեանքն ամբողջովին նուիրեց հասարակութեանը։

Ծնաւ Պօլիս, 1828-ին, հայ-կաթոլիկ ծնողներից։ Մայրն անմիջապէս մեռնում է և Մկրտչին խնամում է խորթ մայրը, (որ հարազատ մօր պէս շարունակում է խնամել ու մեծացնել Մկրտչին նաև հօր մահից յետոյ)։ Նորան Պէշիկթաշլեանն անուանում է «հրեշտակատիպար մայր»։ 1839-ին Մկրտիչը մտնում է Մուրատ-Ռափայէլեան դպրոցը Պատուա քաղաքում։ Այստեղ ահա, իտալական երկնի և իտալացի արուեստի ազդեցութեան տակ դաստիարակւում է Մկրտիչի նուրբ ու մելամաղձիկ ոգին։ Վերադառնալով Պօլիս, նա պարապում է մասնաւոր դասերով։ Շնորհիւ իր հեզ ու խոհուն բնոյթին, բարեկիրթ ձևերին և ազնիւ զգացումներին, նա ձեռք է բերում մեծ համակրանք ու դիրք ժամանակակից Պօլսի բարձր շրջաններում և բազմաթիւ համակրողներ է գտնում իր անզուգական տաղանդին։

Նա Պօլսում հայ թատրոն հիմնողներից և պահպանողներից մինն էր։ Կաթոլիկ և լուսաւորչական հայերի մէջ մի ժամանակ մեծ ատելութիւն կար. այն աստիճան, որ նրանք միմեանց մատնում էին իբրև դաւաճաններ։ Մի խումբ կրթուած հայ կաթոլիկներ այդ խտիրը վերացնելու համար սկսան մօտենալ լուսաւորչականներին և կազմեցին մի ընկերութիւն «Համազգեայ» անունով, որի հիմ-

Նաղիրներից մինն ու հոգին էր Մկրտիչը։ Այդ առթիւ է գրուած «Եղբայր եմք մենք» ոտանաւորը։

Հայերէնն այն ժամանակ դեռ յարգի չէր. Պէշիկթաշլեանը թէ ուսուցչութեամբ և թէ իր ընտիր բանաստեղծութիւններով մէկն էր, որ յարգելի դարձուց և տարածեց մայրենի լեզուի սէրն և ուսուցումը Պօլսի բարձր շրջաններում։ Նրա աշակերտուհիներից մինը, հայութիւնից օտարացած օրիորդ Վահանեան, Պէշէկթաշլեանի շնորհիւ դարձաւ մեր յայտնի հեղինակուհիներից մինը, Տիւսաբ անունով։

Պէշիկթաշլեանը կանացի սիրտ ունի. մեղմ ու դուրեկան, փափուկ, սահուն, նուրբ և մելամաղձոտ։ Նրա լաւագոյն ոտանաւորները գրաբար են։ Նա մեր առաջնակարգ լիրիկ (քնարական) բանաստեղծներից է։

Նա մեռաւ 1868-ին և թաղուեց Պէշիկթաշի գերեզմանատանը, Պօլիս։

Կարդա և համեմատիր Ծերենցի կենսագրութեան հետ։

---

## 166. ԵՂԲԱՅՐ ԵՄՔ ՄԵՔ

Ի բիւր ձայնից բնութեան շքեղ
Թէ երգք թռչնոյ սիրողաբար,
Մատունք կուսին ամենագեղ
Թէ որ զարնեն փափուկ քընար,
  Զունին ձայն մի այնքան սիրուն,
  Քան զանձկալի եղբայր անուն։

Տուր ինձ քու ձեռքդ. եղբա՛յր եմք մեք,
Որ մրրկաւ էինք զատուած,
Բաղդին ամեն ոխ չարանենգ
Ի մի համբոյր ցրուին ի բաց։
  Ընդ աստեղօք ինչ կայ սիրուն,
  Քան զանձկալի եղբայր անուն։

Երբ ալեոր Մայր Հայաստան,
Տեսնէ զորդիս իւր քովէ քով,
Սրտին խորունկ վէրքըն դաժան

*Քաղցր արտասուաց բուժին ցօղով,*
*Ընդ աստեղօք ի՞նչ կայ սիրուն,*
*Քան զանձկալի եղբայր անուն։*

*Մէկտեղ լուցինք մենք ի հնում...*
*Եկէք դարձեալ յար անբաժան*
*Խառնենք զարտօսն և զխնդում,*
*Որ բազմածնունդ ըլլայ մեր ջան։*
*Ընդ աստեղօք ի՞նչ կայ սիրուն,*
*Քան զանձկալի եղբայր անուն։*

*Մէկտեղ յոգնինք, մէկտեղ ցանենք,*
*Մէկտեղ թափին մեր քրտինքներ,*
*Ըզհունձ բարեաց յերկինս հանենք*
*Որ կեանք առնուն հայոց դաշտեր,*
*Ընդ աստեղօք ի՞նչ կայ սիրուն,*
*Քան զանձկալի եղբայր անուն։*

Մ. Պէշիկթաշլեան

---

## 167. Գ Ա Ր Ո Ւ Ն

*Ո՜հ, ինչ անուշ և ինչպէս զով*
*Առաւօտուց փչես, հովիկ*
*Ծաղկանց վրայ գուրգուրալով*
*Եւ մազերուն կուսին փափկիկ,*
*Բայց չես հովիկ իմ Հայրենեաց,*
*Գնա, անցիր սրտէս ի բաց։*

*Ո՜հ, ինչ աղու և սրտագին*
*Ծառոց միջէն երգես, թռչնիկ,*
*Սիրոյ ժամերն ի յանտառին*
*Ըզմայլեցան ի քո ձայնիկ.*
*Բայց չես թռչնիկ իմ Հայրենեաց,*
*Գնա, թռիր սրտէս ի բաց։*

*Ո՜հ, ինչ մրմունջ հանես, վըտակ,*
*Ականակիտ և հանդարտիկ.*
*Քու հայելւոյդ մէջ անապակ*

Նայի՛ն գիրենք վարդն ու աղջիկ.
Բայց չեն վըտակ իմ Հայրենեաց,
Գընա՛, հոսէ՛ սրտէս ի բաց։

Թէպէտ թռչնիկն ու հովն հայոց
Աւերակաց շըջին վերայ,
Թէպէտ պղտոր վըտակն հայոց
Ոտքիններու մէջ կը սողայ,
Նոքա հառաչք են Հայրենեաց,
Նոքա չերթան սրտէս ի բաց։

Մ. Պէշիկթաշլեան

Ո՞ւմ է դիմում հեղինակն այս ռոմանսի մէջ. հովիկին, թռչունին և վտակին։ Էլ ո՞վ մեր բանաստեղծներից դիմում է այդ տարրերին։—Ալիշանը։ Այս ռոմանսը համեմատել «Բլբուլն Աւարայրի»-ի հետ, ցոյց տալ նմանութիւն ու տարբերութիւնը։ Ո՞րքան աշակերտը (Պէշիկթաշլեան) ենթարկուած է վարժապետին (Ալիշան)։ Հետևողութի՞ւն է սա, նմանողութիւն, թէ մի ինքնուրոյն ստեղծագործութիւն։—Ալիշանի ազդեցութեան տակ գրած մի ինքնուրոյն ստեղծագործութիւն է սա։ Ալիշանը մի էպիկ է, մի պատմող։ Պէշիկթաշլեանը մի լիրիկ։

---

## 168. ՅԱԿՈԲ ՊԱՐՈՆԵԱՆ (1840—1891)

Ծնաւ Ադրիանուպոլիս, ուր և ստացաւ իր կրթութիւնը։ Երեք տարի աշակերտել է Ներսէս Վարժապետեանին (ապա պատրիարք), որի խորհրդով, հայ դպրոցն աւարտելուց յետոյ, մտնում է յոյն դպրոց, ուսում և միջոց է ունենում ծանօթանալու յոյն կլասիկների հետ։ Գիտէր նաև ֆրանսերէն և իտալերէն։

Պարոնեանի վրայ ամենից շատ ազդել են Արիստաֆոնն ու Մոլիէրը։ Զնայելով իր խոշոր երգիծական տաղանդին, նա ունեցել է մի շատ հասարակ և առօրեայ հոգսերով լի կեանք։

1860-ին է սկսում նրա գրական կեանքը «Արևելեան ատամնաբոյժ» երգիծական գրուածով։ Այնուհետև նա բակսում է հրատարակել «Թատրոն» թերթը, որը չորս տա-

բուայ ընթացքում ութ անգամ դադարման է ենթարկւում շնորհիւ իր սուր և կծու լեզուի, մինչև որ պատրիարքի հրամանով խսպառ դադարում է։ Նա շարունակ մասնակցում էր մեր պարբերական թերթերին և ամսագրներին։

1878-ին լոյս տեսաւ նրա գլուխ գործոցը՝ «Ազգային Ջոջեր», որ ժամանակակից նշանաւոր հայերի կենսագրութիւնն է երգիծական սուր ու զուարճալի ոճով գրուած, ուր ծաղրի հետ միասին, պախարակելով պակասութիւնները, ծիծաղով էլ գրուատում է նրանց արժանիքը։

Այնուհետև լոյս են տեսնում. «Պտոյտ մը Պօլսոյ թաղերուն մէջ», «Մեծապատիւ Մուրացկաններ», «Բաղդասար աղբար», «Հոս-հոսի ձեռատետրը» և այլն...

Մեր գրականութիւնն առանց սխալուելու կարելի է լացի և ալօթքի գրականութիւն անուանել. Պարոնեանն առաջինն է, որ ժպտալ է տալիս մեզ. Նա հայ գրականութեան առաջին ժպիտն է, առաջին ծիծաղը։ Նրա տաղանդը զուտ երգիծական էր և աչքի ընկնող, որովհետև մեր մէջ նա չունի նախորդ։ Պարոնեանի ծաղրը սուր ու վիրաւորական չէ, այդպէս ծաղրել գիտէր Ռ. Պատկանեանը, այլ թեթև ու խրատական. Նա չի ծաղրում, այլ ծիծաղում է և ծիծաղ է յարուցանում նոյն իսկ ծաղրուած անհատի մէջ...

---

## 169. ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐԸ

«Մեծապատիւ մուրացկանների» մէջ Պարոնեանը ներկայացնում է միամիտ, բայց հարուստ Աբիսողոմ աղային, որ Պօլիս գալով, իր թեթևամիտ փառասիրութեան շնորհիւ զոհ է դառնում «Մեծապատիւ մուրացկանների» շողոքորթ խաբեբայութիւններին, որոնք աւելի խղճալի են քան ծիծաղելի։ «Մեծապատիւ մուրացկաններ» անուան տակ Պարոնեանը ներկայացնում է նոր տեսակի Մուրացկաններ, որոնք ողորմութիւն են խնդրում թէև, բայց ոչ աղքատ մուրացկի պէս, այլ իբրև «Մեծապատիւ

պարոններ»։ Այսպէս խմբագիրը, որ գալիս է մի քանի բաժնեգին կորզելու իր լրագրի համար, լուսանկարիչը, քահանան, բանաստեղծը, փեսայ որոնող մօջիքուլները և այլն, ամենքն գալիս են մատուցանելու իրանց յարգանքը և մի քանի ոսկի կորզելով հեռանում են։ Հետևեալ հատուածը ներկայացնում է այդ տեսարաններից մինը։

—

Աբխաղամ աղային ներկայացաւ երիտասարդ մը, որ վաճառականի չէր նմաներ, սեղանաւորի ալ չէր նմաներ, արհեստաւորի ալ չէր նմաներ, գործաւորի ալ չէր նմաներ, և վերջապէս անանկ բանի մը կը նմանէր, որուն նմանը չկայ։ Հազիւ երեսուն երկու տարեկան կը թուէր։ Կապոյտ աչերով, դեղին մազերով զարդարուած ըլլալով, ունէր նաև երկու մատ մօրուք, որ մայրաքաղաքիս մէջ կամ ազոյ նշան է և կամ չքաւորութեան։ Հագուստներն այնքան հին էին, որ հնախոյզները զանոնք գնելու համար մեծաքանակ գումար մը կուտային։ Սակայն եթէ հագուստի մասին վանողական էր՝ դէմքի մասին քաշողական զօրութիւն ունէր այս անձը։

—Ծառայ եմ մեծապատուութեանդ, մեծապատիւ Տէր, պոռաց այս երիտասարդն սենեակէն ներս մտնելով և մօտենալով Աբխաղամ աղային։

—Ի՞նչ կայ, ի՞նչ կուզէք, հարցուց Աբխաղամ աղան վախնալով։

—Վսեմափայլ տէր, ձեր գալուստն լսելով, փութացի հոս գալ, իմ խորին մեծարանացս հաւաստին ձեր ոտքերուն տակ դնել։

—Ոտքերուս տակը. շատ աղէկ, դի՛ր, ըսաւ Աբխաղամ աղան, որ կը կարծէր թէ մուճակ բերած էր իրեն։

—Շնորհակալ եմ, բարձրապատիւ տէր, ըսաւ երիտասարդը, գլուխը բացաւ և սեղանի վրայ ելաւ կանգնեցաւ։

Աբխաղամ աղան այս տեսարանին առջև բոլորովին շուարած՝ անհամբեր տեսնել կուզէր թէ ի՞նչ պիտի ընէր այս պարոնը սեղանին վրայ։

Երիտասարդը ծոցէն թուղթ մը հանեց և աչերն

Աբխողոմ աղային անկելով բոլոր ձայնովը պոռաց.

— Տէարք և տիկնայք...

Աբխողոմ աղա այս անարկու ձայնէն վախնալով՝ նըստած տեղէն երկու կանգուն վեր ցատկեց և չկրնալով ինքզինքը զսպել պոռաց.

—Ո՞վ է աս մարդը, յիմարանոցէն փախած խե՞նթ է, թէ յիմարանոց երթալու յիմար.

—Հայ ազգն, շարունակեց երիտասարդը ձայնը քիչ մը իջեցնելով, այսօր այնպիսի հանդէս մը կը կատարէ, որ մեր հայրենեաց ամենէն քաջ դիւցազնին նուիրուած է...

—Միտքդ ի՞նչ է, եղբայր...

—Կար ժամանակ մը, ուր խաւարը լուսոյ դէմ կը կռուէր, տգիտութիւնը գիտութեան դէմ, անցեալն ապառնիին դէմ, հրամայականը սահմանականին դէմ, սուրը գրիչի դէմ, ատելութիւնը սիրոյ դէմ, կրակը ջուրին դէմ, միսը բանջարեղէնի դէմ. իսկ հիմա անցան այն ժամանակները, անոնք անցեալ են, մենք ապառնի, անոնք խաւար են, մենք լոյս, անոնք տգէտ են, մենք գիտուն, անոնք սուր են, մենք գրիչ, անոնք ատելութիւն են, մենք սէր, անոնք կրակ են, մենք ջուր, անոնք միս են, մենք բանջարեղէն, անոնք վարունգ են, մենք խնձոր, անոնք փուշ են, մենք վարդ. անցան, անցան այն դարերը. ուր մարդկութիւնը տգիտութեան օրօրոցին մէջ մէկ մը ասդին, մէկ մը անդին կերթար կուգար...

—Միտքդ ի՞նչ է, եղբայրս, ես քեզի բան մը չըրի, ի՞նչ կուզես ինձմէ, գնա՛ քեզի բարկացնողին զրուցէ այդ խօսքերը...

—Այո՛, մարդկութիւնը կը չարչարուէր, կընախատուէր անգութ բռնաւորներու ձեռքէն և չէր գիտեր, որու երթալ և որու բողոքել։

—Տէր ողորմեա՛... Տէր ողորմեա՛, ըսաւ ինքնիրեն Աբխողոմ աղա, քաշելիք ունինք եղեր... ես կրնամ հիմա զինքը սեղանէն վար առնել, բայց կը վախնամ որ ծոցէն ատրճանակ մը կը հանէ և կը զարնէ ինծի, վասն զի խիստ բարկութեամբ կը խօսի։

—Իսկ երբ գիտութիւնն եկաւ, շարունակեց ատենաբանը, և վանեց ագիտութիւնն ինչպէս լոյսն՝ խաւարը, սէրն՝ ատելութիւնը, գրիչն՝ սուրը, ապագայն՝ անցեալը, այն ատեն, ա՛յ, այն ատեն... այո՛, այն ատեն, այո՛ կ՚ըսեմ, այն ատեն միայն հասկցուեցաւ, որ մարդկութիւն, ազգ և հայրենիք բառերը բառարանները լեցնելու համար շինուած բառեր չէին, այլ ամեն մարդու մտքին մէջ, սրտին մէջ, հոգւոյն մէջ երկաթեայ տառերով և անջինջ կերպով դրոշմուելու բառեր էին...

—Եղբա՛յր, կաղաչեմ, վա՛ր իջիր և այնպէս զրուցէ ցաւդ...

Ատենաբանը կայնած տեղը այնպէս կը դողար, որ Աբխազոմ աղային սիրտը կը հատնէր թէ երիտասարդը գետինը պիտի իյնար։

Ուստի չուզելով այլ ևս համբերել, պոռաց ինքնակոչ ատենաբանին երեսն ի վեր.

—Վա՛ր իջիր սըկէ։

—Կաղաչեմ, մի՛ սաստեր զիս։

—Վա՛ր իջիր, ապա թէ ոչ...

—Մի՛ կոտրեր իմ սիրտս, որ ազգին համար կը բաբախէ։

—Ինչ ըսելիք որ ունիս, եկուր քովս մարդու պէս նստէ և ըսէ, հոն տեղուանքը ելնել ի՞նչ պիտի ըլլայ։

—Կաղաչեմ, թո՛ղ տուր վերջացնեմ. ա՛հ, չես գիտեր թէ որչափ կը յուզուիմ, երբ ճառ կը կարդամ։

—Վա՛ր իջիր։

Ատենաբանը բեմէն կիջնայ և կերթայ աթոռի մը վրայ կը նստի։

—Հիմա զրուցէ ինծի, միտքդ ի՞նչ, կըսէ Աբխազոմ աղա բարկութեամբ։

—Կաղաչեմ, մի՛ բարկանար։

—Ի՞նչ կուզես, զրուցէ, շուտ հիմա։

—Բարկութեամբ մի՛ վարուիր հետս, ոտքդ պագնեմ, սիրտս լեցուած է, հիմա կսկսիմ լալ։

—Լալու ի՞նչ կայ, եղբայրս։

—Ծառայել կը փափաքի գրականութեամբ ազգի ծառայել, բայց այս ազգը շատ ապերախտութեամբ կը վարուի իր գրագէտներուն դէմ։

—Ատոր մէջ ես ի՞նչ յանցանք ունիմ։

—Դուք յանցանք չունիք և թերևս իրաւունք ունիք... ոտանաւորներ ունիմ գրած հայրենիքի վրայ, սքանչելի կտորներ, պատուական տողեր, որոնց մէջ երևակայութիւնը, աւիւնը, խանդն, հուրն ու բոցը սաւառնաթև կը սլանան։

—Շատ աղէկ, ատոր համար լալո՞ւ է։

Մեր ազգն անոնց յարգն ու պատիւը չճանչնար, զանոնք տղայական բաներ են կը կարծէ և թող կուտայ, որ զանոնք գրողը անօթի մնայ։

—Ես ի՞նչ ընեմ։

—Կաղաչեմ, քաղցրութեամբ վարուէ հետս։

—Ի՞նչ բրած ունիմ քեզի։

—Ձեզի պիտի աղաչէի որ...

—Ի՞նչ, շուտ ըսէ...

—Մի՛ պօռար երեսս ի վար, հոգիդ սիրես, հիմա կսկսիմ լալ...

Նորէն սկսաւ լալ գրագէտը։

—Տէր Աստուած, Դու՛ն համբերութիւն տուր ինծի, ըսաւ Աբիսողոմ աղան մեկուսի...

—Խնդիրքս սա էր, որ կուզէի տպել տալ քիչ մը առաջ կարդացած ճառս...

—Գնա տպել տուր, քու ձեռքէդ բռնող կա՞յ։

—Պիտի խնդրէի ձեր մեծապատուութենէն, որ տպագրութեան ստակը դուք տայիք։

—Ինչո՞ւ... ի՞նչ պատճառ կայ, որ քու ճառիդ համար ես դրամ տամ։ Լսուա՞ծ բան է, որ մէկը իրեն շահուն համար գիրք տպէ, ծախքն Աբիսողոմը տայ։

—Կը խնդրեմ, սիրտս արդէն խոցուած է, դուք ալ նոր վէրք մի՛ բանաք հոս։

—Ինչո՞ւ վէրք պիտի բանամ եղեր. գնա բանըդ, եղբայր, փորձանք եղար գլխուս։

—Գիտէ՞ք որքա՛ն ծանր է գրագէտի մը աստանկ խօսքեր լսելը...

—Չեմ գիտեր և գիտնալ չեմ ուզեր։

—Բանաստեղծի մը սիրտը շատ փափուկ է, ամենաթեթև խօսքէ մը կը վիրաւորուի։ Այս նիւթին վրայ ոտանաւոր մը գրած ունիմ, կարդամ, մտիկ ըրէք։

—Ոտանաւոր մտիկ ընելու ժամանակ չունիմ։

—Կաղաչեմ, ոտանաւորիս հետ խստութեամբ մի՛ վարուիք. այն ոտանաւորին համար զոր դուք չէք ուզեր մտիկ ընել, երկու ամիս աշխատած եմ ես. և երբ անոր նախատուիլը տեսնեմ՝ արժանապատուութիւնս կը վիրաւորուի։ Կաղաչեմ, ոտանաւորիս համար գէշ մի՛ գրուցէք... Կը խնդրեմ, թո՛յլ տուէք ինձ կարդալ զայն անգամ մը...

—Ես ոտանաւոր մտիկ ընելու չեկայ հոս։

—Շատ լաւ. ողբերգութիւն մը գրած եմ, անոր վրայէն անցնինք։

—Չեմ ուզեր, ես անօթի եմ, հիմա կերակուր պիտի ուտեմ։

—Շատ լաւ, ուտելիքի վրայ ատենաբանութիւն մը ընեմ։

—Ժամանակ չունիմ մտիկ ընելու։

—Կաղաչեմ, այդ խօսքը ուրիշ անգամ մի՛ ըսեր, ատկէ աւելի ծանր խօսք չկայ հեղինակի մը համար, որ իւր մէկ աշխատասիրութիւնն ուրիշի կարդալու փափաք կը յայտնէ։ Կը խնդրեմ, բարձրապատիւ տէր, քաղցրութեամբ վարուեցէք հեղինակներու հետ։

—Գլխուս վրա՛յ նստեցունեմ քեզի։

—Ոտքդ պագնեմ, մի՛ ծաղրէք զիս. ինչո՞ւ ձեր գլխուն վրայ նստեցունէք։

—Ի՞նչ ընեմ հապա. քսակս քեզի՞ տամ՝ հեղինակներու հետ քաղցրութեամբ վարուած ըլլալու համար։

—Ո՛չ, միայն ճառիս տպագրութեան ծախքը։

—Քանի՞ ոսկիով կը լմննայ գործդ։

—Չորս ոսկիով կը լմննայ, բան մը չէ, իմ Մեկենաս—

պիտի ըլլաս, ես ալ քու անունդ ոտանաւորով մը գրքոյկին ճակատը պիտի դնեմ։

—Ճակա՞տը դնես պիտի։

—Այո։—Ինչո՞ւ համար։

—Որպէս զի ամեն մարդ գիտենայ թէ ձեր ստակովը տպուած է ան գիրքը։

– Շատ լաւ, պատասխանեց Աբիսողոմ աղան և քսակէն չորս ոսկի հանեց տուաւ։ Հեղինակն հազար յարգանք մատուցանելով՝ դուրս ելաւ։

Աբիսողոմ աղան ետևէն կանչեց զինքը և հարցուց.

– Չ՚կրնար ըլլալ, որ գրքին ճակատը ստացուորներուս ալ անունները դնես և իմացունես ազգին, որ Աբիսողոմ աղան կովեր, ոչխարներ, էշեր և ագարակներ ունի իր քաղաքին մէջ։

– Ատ ձեր ըսածները համուերգութեան ճիւղին կը վերաբերին։—Չեմ հասկնար։

—Ատոնց վրայ ոտանաւոր կըգրուի, եթէ կը փափաքիք՝ ոտանաւոր մը շինեմ։

—Ի՞նչ ընեմ ոտանաւորը։

—Լրագրի մը մէջ տպել կուտաք։—Կը տպե՞ն։

—Ինչո՞ւ չպիտի տպեն. եթէ կէս ոսկի տալու ըլլաք՝ քառասուն անգամ կը տպեն։

—Շատ աղէկ. ատ ըսածդ գրէ։—Գլխուս վրայ։

—Վաղը առտու կը բերե՞ս։

—Վաղը առտո՞ւ... ի՞նչ կըսէք... մէկ ամիսէն հազիւ կրնամ պատրաստել։—Մէ՞կ ամիսէն։

—Հազիւ. ոտանաւոր կարդալը դիւրին է, բայց գրելը դժուար։ Գեղեցիկ ոտանաւորի մը համար քիչէն քիչ երկու ամիս պէտք է։—Ի՞նչ կըսէք...

—Այո, բայց ես կաշխատէմ ամիսէ մը լմնցունել։

—Ատ ի՞նչ դժուար բան է եղեր։

—Ի՞նչ կարծեցիք հապա. երկու ամիս պիտի սպասեմ, որ մուսաս գայ և ներշնչէ ինձի, որպէս զի գրեմ, առանց մուսայի ոտանաւոր չգրուիր։

—Եթէ այդ մուսան գալու չըլլայ..

— Անպատճառ կուգայ։

— Չկրնար ըլլալ, որ նամակ մը գրես և աղաչես իրեն, որ շուտ մը գայ և դուն ալ երկու ամիս չսպասես։

— Անիկայ ինքն իրեն կուգայ, նամակի պէտք չունի, մեծապատիւ տէր։

— Ո՞ւր կը նստի... շա՞տ հեռուն է։

— Այո, շատ հեռու է, բայց կուգայ։

— Ցամաքէ՞ն թէ ծովէն։

— Չէ, մեծապատիւ տէր, չէ։

— Ո՞վ է ուրեմն աս գետնին տակը անցնելու մարդը... ուսկի՞ց պիտի գայ... ըսէ որ ճանբայ մը մտմտանք ու բերել տանք... Եթէ մէկ երկու ոսկի տանք՝ այս շաբաթ կուգա՞յ։

— Այո, երկու ոսկի տալուդ պէս գործը կը դիւրանայ և մուսայս այս շաբաթ վազելով կուգայ, պատասխանեց անմուսայ բանաստեղծը, ոսկի բառը լսելուն պէս։

— Գրէ ուրեմն իրեն, իմ կողմէս ալ յատուկ բարևներ ըրէ, և ըսէ, որ Աբխազում աղան քեզ տեսնել կուզէ։

— Գլխուս վրայ։ Մնաք բարեաւ, տէր, շնորհակալ եմ ձեզմէ. ծառայ եմ ձեր մեծապատւութեանը, և կաղաչեմ որ ընդունիք...

— Ո՛չ, ըսաւ Աբխազում աղան բարկութեամբ, ալ երկար ըրիր. ահա ինչ որ ըսիր ընդունեցի և դեռ ինչ կուզես, որ ընդունիմ...

— Խորին յարգանացս հաւաստիքը, տէր .. որով մնամ ձեր մեծապատւութեան ամենախոնարհ ծառայ։

— Շատ աղէկ։

Մեկնեցաւ բանաստեղծն, երկու ոսկիով բերել տալ խոստանալով մուսայն, զոր ոմանք աւելի աժան գնով բերել կուտան։ Մուսայի մ'օրականն հիւանի մ'օրականէն աւելի չէ այժմ։

Յ. Յ. Պարոնեան

Ի՞նչպիսի մարդ էր Աբխազում աղան։ Ինչական բանաստե՞ղծ էր արդեօք նրան ներկայացողը. իրակա՞ն և բնակա՞ն են արդեօք այդ տիպերը, թէ չափազանցեալ։ Ինչո՞ւ է ծաղրում հեղինակն այդպիսի տիպերին և աջո՞ղ է ծաղրում։ Ի՞նչ վատ կողմերն է ծաղրում հեղինակը։

## 170. ԳԱՐԵԳԻՆ ԵՊԻՍԿ. ՍՐՈՒԱՆՁՏԵԱՆ (1840—1892)

Ծնաւ դեկտեմբերի 14-ին 1840 թւի, Վանում. աշակերտ էր Վանայ մօտ գտնուող Վարագայ դպրոցում, որ բաց էր արել Խրիմեան Հայրիկը։ Յետոյ նա ձեռնադրուեց վարդապետ և եղաւ աջակից և ուսուցիչ նոյն դպրոցում.— Սրուանձտեանը յայտնի էր որպէս հիանալի բանահաւաք. ժողովրդական աւանդութիւնները, սովորութիւնները, նախապաշարումներն ու սնոտիապաշտութիւնները նրա գրչի տակ առնում են մի զարմանալի կայտառութիւն ու կենդանութիւն.—Նրա «Թորոս Աղբարը», «Գրոց Բրոցը»-ը, «Հնոց-Նորոց»-ը մի մի կոթող են ժողովրդական անգիր գրականութեան։ Ներսէս պատրիարքի յանձնարարութեամբ նա ճամբորդեց Փոքր-Ասիա Հայաստան՝ հայերի մասին ճիշտ և մանրամասն տեղեկագիր ներկայացնելու։ Այդ ճամբորդութիւնը Թորոս-Աղբարի մէջ նա նկարագրում է այնպէս կենդանի, այնքան պարզ ու բանաստեղծական, որ կարդացւում է ինչպէս մի վէպ։—Սասունցի Դաւթի վէպը նրան ենք պարտական։ Սրուանձտեանը մեռաւ 1892 թ. նոյեմ. 17-ին։

---

## 171. ԱՌԱՒՕՏ

### Ա

Առաւօտ է։ Ինչպէս ամեն տեղ՝ այնպէս էլ Հայաստանի գիւղերում ամենքը շարժողութեան մէջ են։ Գիւղացիները արդէն զարթել են այն փոքրիկ թռչնիկի ձայնից, որ գալիս նստում է երդիքների վրայ ու կանչում. «Ճծէ, լծէ»։ Նրանք արդէն լծել են իրանց եզներն ու գոմէշները և բաւական վարել են գետինը։ Տների մէջ մատակներն ու կովերը կթել են։ Ոչխարների հօտն էլ դաշտումը մաղաշ արօտներից արդէն մի քաղցր նախաճաշ է արել։ Տանտիկինըն էլ կովերն ու հորթուկներն է դուրս հանում։

Գիւղի աղջկերքն էլ խումբ-խումբ գնում են դէպի

կանանչ մարգագետինը։ Ծաղիկները կոխելով, ծաղիկներ քաղելով և իրար վրայ ածելով, ծիծաղելով, խայտալով։ Նրանք հանդիպում են կաքաւների երամին, լորին, արտուտիկին, որոնք խոտերի տակից թռչկոտում են թփից-թուփ ուզենալով իրար նմանիլ, դու ասա, աղջկե՞րքը թևաւոր թռչուններին, թէ թռչունները ոտնաթռիկ աղջկանց։ Նրանք անցնում գնում են առաջ՝ բանջարներ ժողովելու և կանչելու, աղջկերքը՝ «քա՛, քա՛», կաքաւները՝ «զա՛ւ, զա՛ւ»։

Բ.

Կռունկը երամով կարաւան է կազմել սլաքաձև, օդի բարձր տեղերովն անցնելով՝ «կռո՛ւ, կռո՛ւ» է կանչում։ Ծառա՛յ եմ ձայնին։

Երկարասրունք արագիլը կտուցը սրած՝ բոյնից դուրս է եկել՝ «հո՛դ, հո՛դ» ձայներով դէպի դաշտն է վազում ջրի ու ցամաքի օձերը բռնելու և սպանելու։

Ձորթան-տարուկը գիւղի տանիքների վրայ ու բակերի մէջ է թագնուել, որ չորթան յափշտակէ։

Կոյր բուն այս ժամանակ իր համար մի բոյն է որոնում, որ ծածկուի այնտեղ, վերջացնելով իր «վա՛յ վա՛յ»-ն, որով սգում էր գիշերը, մի չորացած ծառի կամ գերեզմանաքարի վրայ նստած։

Ձկնկուլը գետերի ափերն է վազում ու «ձը՛կ, ձը՛կ» կանչելով ձուկ-մուկ է որոնում կուլ տալու։

Բադն ու սագը ջրերի վրայ նստած՝ կայտառ նաւավարների պէս թռվռում են ու երգում։

Սանրակատար յոպոպը անհանգիստ ոստոստում է և անդադար աղաղակում՝ «յո՛պ, յո՛պ»։

Դեղնապորտիկը փափուկ ու մաքուր, ճերմակ ու դեղին շորեր հագած՝ փոքրիկ մացառների ու թանձր խոտերի միջից գլխիկը ցոյց տալով ու թագցնելով՝ իր ձայնն է լսեցնում։

Սոխակի ձայնն էլ լսւում է բոլոր երգողների ձայնել հետ և ամեն լսողի ուշքը ու միտքը վերացնում։

Բարբարոս բազէն որոտացող ձայնով վեր ու վայր

պլանում՝ մի անմեղ ու անզգոյշ աղաւնի կամ տատրակ պատառոտելու։

Անգղները, ձրի ապրող քիւրդերի պէս, մի սպանուած հոտ առել, գնում են նրա դիակի մսերը կողոպտելու։ Ահա արծիւն էլ երևում է. նրա հզօր թևերի բաղխումից օդը շառաչելով պատռւում է. բոլոր թռչունները մի անգամից լռում են, մինչև անցնի հեռանայ այդ ահեղ ու փառահեղ թագաւորը։

Գ. Վ. Սրուանձտեան

Համեմատեցէք Պռօշեանի նկարագրած «գարնան» հետ. ցոյց տուէք նմանութիւնը և տարբերութիւնը։

---

## 172. ԻՄԱՍՏՈՒՆ ՋՈՒԼՀԱԿԸ

Մի թագաւոր նստած էր իր գահի վրայ։ Հեռաւոր երկրից մի դեսպան եկաւ և, առանց խօսելու, թագաւորի գահի շուրջը մի կլոր գիծ քաշեց ու լուռ ու մունջ մի կողմը քաշուեց, նստեց։

Թագաւորը այս մարդու արարմունքից ոչինչ չհասկացաւ. կանչեց իր իշխաններին. նրանք էլ մի բան չհասկացան։ Թագաւորը շատ վատ դրութեան մէջ էր։ Նրա համար մեծ ամօթ էր, որ իր տէրութեան մէջ մի խելօք մարդ չէր գտնւում՝ դեսպանի արածը հասկանալու համար։ Թագաւորը սաստիկ նեղացած՝ յայտնեց ամենքին, որ եթէ նրան պատասխան տուող չգտնուի, էլ ոչ ոքի կենդանի չի թողնի։

Թագաւորի կողմից խնդրակներ ման եկան ամեն կողմ, և վերջը մի տան մէջ գտան մի ջուլհակ (ոստայնակ)։ Տեսնում են, որ այն մարդը մի տեղ նստած՝ միևնոյն ժամանակ երեք գործ է շինում. — համ իր կտաւն է գործում, համ երկու երեխայի օրօրոց է օրօրում, համ էլ տանիքի վրայ ցորեն է փռել, մօտը մի ճիպոտ է տնկել. երբ ինքը կտաւի թելերը շարժում է՝ կտաւը գործւում է, օրօրոցները օրօրւում են, այն ճիպոտն էլ շարժուելով՝ տանիքի ծտերն են փախչում, ցորենից հեռանում։

Նրանք այս բանի վրայ շատ են զարմանում։ Յետոյ նրան պատմում են, թէ հեռաւոր երկրից մի մարդ եկաւ, Թագաւորի գահի շուրջը մի գիծ քաշեց, և ոչ ոք չկարողացաւ իմանալ, թէ դրանով ինչ էր ուզում ասել։ «Վերկաց, գնանք. եթէ դու նրա միտքը իմանաս՝ Թագաւորը քեզ մեծ պարգևներ կը տայ»։

Ջուլհակը մի քիչ մտածում է, յետոյ առնում է երկու վէգ ու մի վառիկ և գնում է հետները։ Հասնելով Թագաւորի մօտ՝ վէգերը հանում է և ձգում դեսպանի առաջը։ Դեսպանը գրպանից մի բուռը կորեկ է հանում ու շաղ տալիս գետնին։ Ջուլհակը բաց է թողնում վառիկը, որն իսկոյն սկսում է կտցահարել կորեկը։

Այս բանը տեսնելով՝ դեսպանը տրեխները հագնում է ու սուս ու փուս դուրս գնում։

Թագաւորը Ջուլհակին հարցնում է. թէ «Այդ ի՞նչ արիր»։ Ջուլհակը պատասխանում է. «Այդ մարդը եկել էր ասելու, թէ «մեր Թագաւորը գալիս է քեզ հետ պատերազմելու, քո երկրին տիրելու. խոնարհվու՞մ ես, թէ կռուով ես ուզում պատասխանել»։

Ես նրա առաջը վէգեր ձգելով հասկացրի, թէ «Դուք մեզ համար երեխաներ էք, գնացէք վէգ խաղացէք. դուք ո՞վ, մեզ հետ կռուողն ո՞վ»։ Նա իր շաղ տուած կորեկով ուզեց հասկացնել, թէ «մեր զօրքերը անթիւ, անհամար են. դուք ի՞նչ կարող էք անել»։ Եւ երբ ես վառիկս բաց թողի ու նրա բոլոր կորեկը կերաւ, դրանով պատասխանեցի, թէ «մեր մի մարդը ձեր հազար մարդուն կը ջարդէ. գնա պատմիր քո Թագաւորին»։

Թագաւորը այս բացատրութիւնը լսելով՝ մեծամեծ պարգևներ տուեց Ջուլհակին և ուզեց նրան վէզիրի պաշտօն տալ։ Բայց Ջուլհակը պարգևների մի մասովը բաւականացաւ և Թագաւորին ասաց. «Ո՛չ, Թագաւոր, թո՛ղ որ ես Ջուլհակ մնամ, վէզիրից ինչ պտուղ ուզում ես՝ տուր միայն Ջուլհակին ու կօշկակարին էլ մարդու տեղ դիր»։

Գ. Վ. Սրուանձտեան

## 173. ՊԵՏՐՈՍ ԴՈՒՐԵԱՆ (1851—1872)

*Դուրեանը ծնուել 1851-ին Կ. Պոլսում. Նրա հայրը գործին էր։ Մանկութիւնից նա ճանաչեց կարիքն ու նեղութիւնը իր բոլոր դառնութեամբ։ Մի կտոր հաց ճարելու համար նա ստիպուած էր յանձն առնել այնպիսի գործեր, որոնք ոչ մի առընչութիւն չունէին նրա կոչման հետ։ Այդ դառն կարիքն էր, որ գերեզման տարաւ Դուրեանին այն ժամանակ, երբ նա նոր էր մտել կեանքի գարունը. 21 տարեկան, հիւծուած թոքախտից, նա պիտի խոնարհէր իր գլուխը մահուան մանգաղի առաջ։ Ո՛չ մէկը հայ բանաստեղծներից այնքան փայլուն ապագայ չէր խոստանում, ինչպէս Դուրեանը և ոչ մէկն էլ նրանցից այնքան նեղ, թշուառ ու կարճատև կեանք չունեցաւ, ինչպէս Դուրեանը։*

*Դուրեանի երգերը դառն են ու տխուր, ինչպէս իր կեանքը. Նրա երգերի հիմնական մոտիւն է հայրենիք, սէր և մահ.—մանաւանդ մահ, որի ներկայութիւնը նա զգում էր գրեթէ գիտակցութեան առաջին օրից, որի պատճառով նրա ամէն մի տողը, ամէն մի բառը տոգորուած է մի անհուն թախիծով, ինչպէս այդ տեսնում ենք հետևեալ երգի մէջ, որ ըստ աւանդութեան՝ գրել է անկողնու մէջ, հիւանդ ժամանակ[1]).*

---

## 174. Տ Ր Տ Ո Ւ Ն Ջ Ք

*Է՛, մընաք բարով, Աստուած ու արև՛*
*Որ կը պըլպըլաք իմ հոգւոյս վերև...*
*Աստղ մ'ալ ես կերթամ յաւելուլ երկնից,*
*Աստղերն ի՞նչ են որ, եթէ ոչ անբիծ*
*Եւ թըշուառ ոգւոց անէծք ողբագին,*
*Որք թըռին այրել ճակատն երկնքին.*

---

*[1]) Դուրեանն իբրև մարդ, տես «Հաւաքածոյ ընտիր գրուածոց» երես 90. Ա. Ջ.*

Այլ այն Աստուծոյն՝ շանթերու արմատ
Ցանելու զէնքերն ու զարդերն հըրատ...
Այլ, ո՛հ, ի՛նչ կըսեմ... շանթահարէ զիս,
Աստուած, խոկն հսկայ փշրէ հիւլէիս՝
Որ ժպրհի ձգտիլ՝ սուզիլ խորն երկնի,
Ելնել աստղերու սանդուղքն անհալի...
Ողջո՛յն քեզ, Աստուած, դողդոջ էակին,
Շողին, փըթիթին, ալւոյն ու վանկին,
Դու, որ ճակտիս վարդն ու բոցն աչերուս
Խըլեցիր թըթռումս շրթանց՝ թռիչն հոգւոյս,
Ամպ տըւիր աչացս, հեք տըւիր սըրտիս,
Ըսիր մահուան դուռն ինձ պիտի ժըպտիս,
Անշուշտ ինձ կեանք մը պահած ես ետքի,
Կեանք մը անհուն շողի, բոյրի, աղօթքի.
Իսկ թէ կորնչի պիտի իմ հուսկ շունչ
Հոս մառախուղի մէջ համր անշշունչ,
Այժմէն թո՛ղ որ շանթ մ'ըլլամ դալկահար,
Պըտուտիմ անուանդ, մընչիմ անդադար,
Թո՛ղ անէծք մ'ըլլամ ու կողըդ խըրիմ,
Թո՛ղ յորջորջեմ քեզ. «Աստուած ոխերիմ»:
Ո՜հ, կը դողդոջե՜մ, դժգոյն եմ, դժգո՛յն,
Փըրփըրի ներսըս դըժոխքի մ'հանգոյն...
Հառա՛չ մ'եմ հեծող նոճերու մէջ սև,
Թափելու մօտ չոր աշնան մէկ տերև...
Ո՜հ, կայծ տըւէք ինձ, կա՛յծ տըւէք, ապրի՛մ...
Ի՜նչ, երազէ վերջ գըրկել ցուրտ շի՜րիմ...
Այս ճակատագիր ինչ սև է, Աստուա՛ծ,
Արդեօք դամբանի մրուրո՞վ է գըծուած...
Ո՜հ, տուէք հոգւոյս կրակի մի կաթիլ,
Սիրե՜լ կուզեմ դեռ 'ւ ապրիլ ու ապրիլ...
Երկնքի աստղե՛ր, հոգւոյս մէջ ընկէք,
Կա՛յծ տուէք, կեա՛նք՝ ձեր սիրահարին հէք.
Գարունն ո՛չ մէկ վարդ ճակտիս դալկահար,
Ո՛չ երկնի շողերն ժըպիտ մ'ինձ չե՛ն տար.
Գիշերն միշտ դագաղս, աստղերը ջահեր,
Լուսինն յար կուլայ, խուզարկէ վըհեր.
Կըլլան մարդիկ, որ լացող մը չունին,
Անոր համար նա դըրաւ այդ լուսին.
Եւ մահամերձն ալ կուզէ երկու բան.
Նախ կեա՛նքըը, վերջը լացող մ'իր վըրան:

Ի զո՜ւր գրեցին աստղերն ինձի «սէր».
Եւ ի զո՜ւր ուսոյց բուլբուլն ինձ «սիրել»,
Ի զո՜ւր սիւզեր «սէր» ինձ ներշնչեցին.
Եւ գիս նորատի ցուցուց ջինջ ալին,
Ի զո՜ւր թաւուտքներ լռեցին իմ շուրջ,
Գաղտնապահ տերեւք չառին երբէք շուրջ,
Որ չլսովէն... երազքըս վըսեմ,
Թոյլ տըւին, որ միշտ ըզնէ երազեմ,
Եւ ի զո՜ւր ծաղկունք, փըթիթներ գարնան՝
Միշտ լնկարկեցին խոկմանցս խորան...
Ո՜հ, նոքա ամենքը գիս ծաղրեր են...
Աստուծոյ ծաղրն է աշխարհն ալ արդէն...

Պետրոս Դուրեան

Բանի՜ մասերից է բաղկանում այս ոտանաւորը. ի՜նչ մըտքեր և յոյզեր են արտայայտուած այնտեղ. ի՜նչ հոգեկան վիճակի մէջ է գրուած այն։ Արդեօք լաւ պատկերացած է այստեղ Դուրեանի կեանքը իր զառնութիւններով։ Եթէ կենսագրութիւն չունենայինք, կարո՞ղ էր այս երգը նիւթ դառնալ Դուրեանի կենսագրութեան.—Ի՞նչպիսի բանաստեղծ է Դուրեանը. լիրի՞ք թէ էպիք։

## 175. Լ Ճ Ա Կ

Ի՞նչու ապշած ես, լճակ,
Ու չեն խայտար քու ալեակք,
Մի՞թէ հայելւոյդ մէջ անձկաւ
Գեղուհի՜ մը նայեցաւ։

Եւ կամ մի՞թէ կըզմայլին
Ալեակքդ երկնի կապոյտին,
Եւ այն ամպոց լուսափթիթ,
Որք նմանին փրփուրիդ։

Որքան ունիս դու ալի՝
Ճակատս այնքան խիկ ունի,
Ո՛րքան ունիս դու փրփուր,
Սիրտս այնքան խոց ունի բիւր։

Այլ թէ գոգդ ալ թափին
Բոյլքն աստեղաց երկընքին,
Նըմանել չէս կրնար դուն
Հոգւոյս՝ որ է բոց անհո՜ւն։

Հոդ աստղերը չեն մեռնիր,
Ծաղիկներդ հոդ չեն թառմիր,
Ամպերն չե՜ն թըրջիր հոդ,
Երբ խաղաղ էք դու և օդ։

Շատերը զիս մերժեցին,
«Բընար մ'ունի սոսկ»—ըսին,
Մին՝ «զողդոջ է, գոյն չունի»,
Միւսն ալ ըսաւ.—«կըմեռնի՜»։

Ոչ ոք ըսաւ.—«Հէ՜ք տըղայ,
Արդեօք ի՞նչու կը մըխայ,
Թերեւս ըլլայ գեղանի,
Թէ որ սիրեմ, չըմեռնի»

Ոչ ոք ըսաւ. «Սա տըղին
Պատանք սիրտը տըրտմագին,
Նայինք ինչե՜ր գրուած կան»...
—Հոն հրդեհ կայ, ո՛չ մատեան.

Հոն կայ մոխի՜ր... յիշատակ...
Ալեակքդ յուզին թող, լըճա՛կ,
Զի քու խորքիդ մէջ անձկաւ
Յուսահատ մը նայեցաւ։

Պետրոս Դուրեան

---

## 176. ԻՄ ՄԱՀԸ

Եթէ դժգոյն մահու հրեշտակ
Անհուն ժպտով մ'իջնէ իմ դէմ,
Շոգիանան ցաւքս ու հոգիս,
Դիտցէք, որ դեռ կենդանի եմ։

Եթէ ընտրըս իմ տիպար
Մոմ մը վառի ու մահադէմ,
Ո՜հ, նըշուլէ ցուրտ ճառագայթ,
Գիտցէք, որ դեռ կենդանի եմ։

Եթէ ճակտովս արտօսրաթոր
Զիս պատանի մէջ ցուրտ գերթ
վէմ
Փաթթեն, դնեն սեւ դագաղը,
Գիտցէք, որ դեռ կենդանի եմ։

Եթէ հընչէ տխուր կոչնակ,
Թրթռուն ծիծաղն մահու դժխեմ[1],
Դագաղս առնէ իր համր քայլ,
Գիտցէք, որ դեռ կենդանի եմ

Եթէ մարդիկ այն մահերգակ,
Որք սեւ ունին ու խոժոր դէմ՝
Համասփռեն խունկ ու աղօթք,
Գիտցէք, որ դեռ կենդանի եմ։

Եթ յարդարեն իմ հողակոյթ,
Եւ հեծեծմամբ ու սըգալէն
Իմ սիրելիքը բաժնուին,
Գիտցէք, որ դեռ կենդանի եմ

Իսկ անմըշան եթէ մնայ
Երկրի մէկ խորշն հողակոյտն իմ
Եւ յիշատակս ալ թառամի,
Ա՜հ, այն ատեն ես կըմեռնիմ։

Պետրոս Դուրեան

---

## 177. ԱՐՓԻԱՐ-ԱՐՓԻԱՐԵԱՆ

Արփիարն ծնուած էր Սամսոն, շուրջ 1850 թուականին, իր ծնողացը Ակնէն Պոլիս գալու ճանապարհին վրայ։ Կը պատկանէր Ակնայ ամենանշանաւոր ամիրայական գերդաստանի մը, որ նախապէս կանուանէր Վառեան։ Իր

[1]) Ժանտ։

նախնական ուսումը առաւ Պոլիս, Օրթագիւղի ազգ. վարժարանը, որուն շրջանը աւարտելէ յետոյ՝ գնաց Վենետիկ, Մուրատ-Ռափայէլեան վարժարանը, ուր աշակերտեցաւ Ալիշանի։ Տասնեօթը տարեկան պատանի, վկայականը առնելով, վերադարձաւ Պոլիս և առևտրական ասպարէզը թեակոխելով սկսաւ միաժամանակ իր հանրային գործունէութիւնը։ Մասնակցեցաւ բազմաթիւ ընկերութեանց հիմնարկութեան, որոնց մէջ, գլխաւորաբար, հոգին եղաւ Արարատեան ընկերութեան, որուն նպատակն էր Հայաստանի մէջ վարժարաններ հիմնել։ Այս առթիւ յարաբերութեան մտաւ «Մշակի» հիմնադիր ողբացեալ Արծրունիի հետ, որ ընդարձակ հանգամանակութեամբ մը մեծապէս քաջալերեց այդ ընկերութիւնը։ Այդ թուականէն ասդին, մինչև վերջին ժամանակներս, Արփիարեան մըշտատև աշխատակից մը մնաց «Մշակին», նախ Հայկակ ծածկանունով և վերջին տարիներս ** ստորագրութեամբ։

Արփիար Արփիարեանի մահով (սպանուեց 1908 յունուարի 30-ին Կահիրէում) կաներեւութանայ ժամանակակից հայ գրականութեան ամենանշանաւոր դէմքերէն մէկը, որ 54 տարեկան ըլլալով, քառորդ դարէ մը աւելի մամուլի կը ծառայէր։ Պոլսոյ և Կովկասի զանազան հանդէսներուն ու օրաթերթերուն աշխատակցելէ վերջ, 1892-ին հիմնեց «Հայրենիք» մեծ օրագիրը, որը եղաւ ազատական կուսակցութեան օրգան և իր քարոզած գաղափարներովն ու հրատարակած գրական գլուխ-գործոցներովը շատ մեծ և արգիւնաւոր ներգործութիւն մը ունեցաւ ժամանակակից սերունդին բարոյական ու մտաւորական յառաջդիմութեանը վրայ։ Յեղափոխական շարժումին մասնակցութեանը բերումով՝ 1896-ին անգամ մը մահափորձի ենթարկուեցաւ իր քաղաքական հակառակորդներու կողմէն Պոլսոյ մէջ։ Վէրքերէն բժշկուելէ վերջ, 1896-ի կոտորածներէն ետք, ձգեց Պոլիսը և Լոնդրա հաստատուեցաւ, ուր երկար տարիներ «Նոր Կեանք» քաղաքական ու գրական հանդէսը հրատարակեց։

1901-ին քաղաքական կեանքէ հեռանալով Վենետիկ բնակեցաւ, ուր շարունակաբար Ս. Ղազար կղզիին Մխիթարեան նշանաւոր վանքը յաճախեց, բանասիրական և գրական ուսումնասիրութիւններով զբաղելու համար։ Վենետիկ ապրած միջոցին էր, որ ազգային ժամանակակից կեանքէ առնուած վէպ մը գրեց «Կարմիր Ժամուց» վերնագիրով« Զմայլելի և սրտայոյզ գործ մը, որ կարելի է հրաշակերտ մը նկատել։ Այդ ատեն էր նաև, որ երկրորդ անգամ իր վրան մահափորձ մը կատարուեցաւ և հակառակ ստացած վէրքերուն՝ մահէ խուսափեցաւ։ Աւելորդ է ըսել, որ այս երկրորդն ալ, ինչպէս առաջինը, քաղաքական հակառակորդներուն գործն էր։

1906-ին Եգիպտոս հաստատուելով՝ Գահիրէին մէջ կը հրատարակէր «Լուսաբերն» ու «Շիրակը»։

Իր անձնական համոզումներուն ու քաղաքական հայեացքներուն պաշտպանութեամբը կորովալիր, հակառակ նոյնիսկ մահուան սպառնալիքներուն, Արփիարեան վայրկեան մը իսկ չդադրեցաւ իր թերթովը բուռն պայքար մղելէ անոնց դէմ, որոնք Ամերիկայի, Եւրոպայի և Եգիպտոսի հայերը կահաբեկէին և հաւանականաբար վրէժխնդրութեան զոհ մը եղաւ ինք։

Աշխատութեամբ ու գործունէութեամբ զեղուն այս նշանաւոր մարդուն ողբերգական վախճանը՝ անփոխարինելի կորուստ մըն է հայ գրականութեան համար, ուր գրաւած տեղը շատ մեծ էր։ Ցղացումի տարօրինակ յորդութեամբ մը գրական զանազան տեսակի գեղեցիկ յատկութիւններով օժտուած, Արփիար Արփիարեան անզուգական լրագրող մը ըլլալով հանդերձ, նշանաւոր վիպագիր մը, մեծ երգիծաբան ու ջղուտ, սրամիտ և զուարթախօս քրոնիկագիր ալ էր։

---

# 178. ՀԻՆ ԷՖԷՆՏԻՆ ԵՒ ՆՈՐ ՔԱՀԱՆԱՆ

—Սրբազա՛ն, աս լերան արջը ե՞րբ եկաւ։

—Լերան ա՞րջը ով է, էֆէնտի, հարցուց բմծիծաղով մը եպիսկոպոսը, որ բան մը չէր հասկցած։

—Ա՛յ, հեռու կարդէն, աս ասօրուան ղարիբը։

—Տէր Յուսիկ հա՞յրը կը հարցնէք, էֆէնտի, ընդդիմաբանեց եպիսկոպոսը, շեշտին մէջ արտայայտելով դըժգոհութիւնը, զոր կը զգար Աստուծոյ պաշտօնէին նկատմամբ անհարկի լեզուի մը դէմ։ Ու շարունակեց.

—Երեք օր է։

—Ո՞վ խրկեց։

—Ո՞վ պիտի խրկէր ուր Պատրիարքարանէն յանձնարարագրով եկաւ, միւս պանդուխտը արդէն գացած ըլլալուն։

—Է՜, ալ ասանկ ատեն հոս խրկելիք ուրիշ մարդ չգտա՞ն։

—Ի՞նչ կայ, էֆէնտի, ի՞նչ եղաւ, ի՞նչ ըրաւ, հարցապնդեց եպիսկոպոսը ակներև սրտնեղութեամբ։

—Ի՞նչ կայ մի, ի՞նչ եղաւ մի, ի՞նչ ըրաւ մի։ Ինծի՞ կը հարցնէք, սրբազան։ «Ականջս ունին և ոչ լսեն, աչս ունին և ոչ տեսանեն»։

—Ինչ որ կայ. կաղաչեմ, պարզօրէն ըսէ՛ք էֆէնտի, խնդրեց եպիսկոպոսը։ Այս քահանային նկատմամբ եթէ առաջուց բան մը գիտէք, այդ ուրիշ խնդիր է։

Պզտիկ ագնուաշուք մը, որուն աչքը պատուհանն էր, այդ րոպէին նշմարելով պանդուխտը, որ խնդրակատարէն կելլէր, էֆէնտիին իմացուց։

—Ներս կանչեցէք, հրամայեց էֆէնտին։

Հայաստանցի տէրտէրը եպիսկոպոսին առջևը խոնարհութիւն ըրաւ, ու ներկաները համահաւասար «օղջոյն»-ով մը բարևելէ յետոյ, ոտքի վրայ մնաց։ Էֆէնտին նստիլ հրամայեց։ Տէրտէրը չլսելու զարկաւ։ Ոտքի վրայ կեցած էր ի յարգանս եպիսկոպոսին և ոչ թէ աշխարհականի մը։

Դիրքի փոփոխութեան հրամանը նուիրապետական բարձունքէն կը սպասէր։ Պարտաճանաչ մեծարանքի այս համարձակ արտայայտութիւնը ղարիպին վրայ հրաւիրեց եպիսկոպոսին բարեացակամ տրամադրութիւնը։

—Նայէ, տէր հայր, նայէ, հրամայեց դաշն ձայնով։

Տէրտէրը սրբազանին առջև խոնարհելով նայաւ։

Քանի մը վայրկեանի լռութենէ յետոյ, էֆէնտին՝

—Հրամանքդ ո՞ր տեղէն ես, տէրտէր, հարցուց, հատիկ-հատիկ արտասանելով իւրաքանչիւր վանկ։

—Տմուզ գեղէն, պատասխանեց Տէր Յուսիկ, առանց «ծառայ եմ, էֆէնտի» նախաբանին՝ որ պանդուխտներուն բերան պարտաւորիչ էր։

—Տմուզ գեղէ՞ն, հը՛մ, մրթմրթաց էֆէնտին քթին տակէն։ Ու բարձրաձայն.

—Է, հոս ալ գիտե՞ս ուր է։

—Ստամպոլ չէ՞։

—Հա՛, ատ ալ գիտես եղեր։ Աղէկ, աղէկ։ Է, Հասան փաշան ալ գիտես ո՞վ է։

Ուսերը վեր թօթուելով, երեսը պատին դարձուցած, պանդուխտը արհամարհանքով մը մրմռաց.

—Է, ես ի՞նչ գիտնամ, ո՞վ է։ Ով կուզէ՝ թող ըլլայ։ Աշխարհիս երեսը շունէն շատ Հասան փաշայ կայ։

Եկեղեցականները սկսան մօրուքնին շոյել։ Էֆէնտին պարտաւորուեցաւ լայնկեկ թաշկինակի մը օժանդակութեանը դիմել, արքայապիղծ յանդգնաբանութիւնը չլսած ըլլալու համար։ Ագնուաշուքները քթերուն տակէն ամմա հէօտիկա փսփսացին իրարու։ Էֆէնտին իր թաշկինակը ծալլելով, շարունակեց ծանրութեամբ.

—Աս Հասան փաշան քու գիտցածներէդ չէ, տէրտէր։ Պէշիկթաշի Հասան փաշան է։

Սպառնացայտ շեշտը, զոր էֆէնտին «Պէշիկթաշ»-ին զարկաւ, թէև ժողովականներուն երեսները մթացնեց, բայց բնաւ ներգործել չթուեցաւ Հայաստանի տէրտէրոջ վրայ, որ ա՛լ աս անգամ պոռթկաց.

—Է՛, ես ի՞նչ ընեմ, ո՛ր տեղինը կուզէ թող ըլլայ։ Հա-

սան փաշա մըն ալ մեր խասապան կայ։ Եւ, ամիրա, ես քեզի բան մը ըսեմ. սանկ սուրբ օրով մեծ մեղք է, պատարագէն ետքը անհաւատ շուներուն անունները բերաննիս առնելով ծոմերնիս աւրելը։

Ու հաւատացեալ քրիստոնէի խղճմտանքի խայթէն տանջուած, ոտքի ելաւ և եպիսկոպոսէն մեկնելու հրաման խնդրեց։ Սրբազանը՝ խորհրդաւոր հարցումներուն շարժառիթը իմանալու ինքն ալ հետաքրքիր՝ խնդրուած թոյլտըւութիւնը զլացաւ։

Էֆէնտին հարցումներն ու վճիռները անայլայլ շարունակեց՝ առանց շուտափոյթ գոհացում շնորհելու իր շուրջը գտնուող հետաքրքիրներուն անհամբերութեանը։

—Աս Հասան փաշա քու մէմլէքէթին Հասան փաշաներէն չէ, պոռաց գրեթէ։ Ու ձայնը ցածցընելով ցածցընելով։

—Աս Հասան փաշան, Նորին Վեհափառութեան աչքն ու ականջն է. սորվէ։

—Է, ինծի՞ ինչ, ամիրա, ինչ կուզէ՝ թող ըլլայ, դիմադարձեց տէր Յուսիկ, իր անհոգ արհամարհանքի շեշտովը։ Կուզէ աչքը ըլլայ, կուզէ ականջը, որ ծակը կուզէ թող ըլլայ։

Եպիսկոպոսը՝ այս մենամարտական հարց-պատասխաններուն ալ վերջը մը դնելու ժամանակը հասած համարելով, էֆէնտիէն խնդրեց, տէր Յուսիկ հօր պարզօրէն յայտնել ինչ որ իմացնել կուզէր։

Էֆէնտին անդրադարձաւ, որ եպիսկոպոսը այս անգամ կը զգուշանար «Ձեր վսեմութեան հրամանները հաղորդել» նուիրագործեալ բանաձևին կիրառումէն։ «Աըմպըլ» տէրտէրի մը կոպտութիւնը նոյն իսկ քարոզչին վրայ կազդէր։ Մտքին մէջ իր հեղինակութեանը դէմ կղերական ըմբոստացման կասկածը ծնաւ։ Բայց կը զգար թէ կացութեան տէրը ինքն էր։ Նախ՝ ձեռքին հինգ մատերը շրթունքէն օդը, օդէն շրթունքը տարուբերելով, գոչեց.

—Ժողովուրդը գրգռող ան ինչ եղանակներ էին։ Լու-

րը հիմակ գնաց Հասան փաշային։ Ծուռնալ եղանք, ծուռնա՞լ։

Ու հազիւ լսելի մրմունջով մը.

— Ան ինչ «ազատութիւն» է, որ պոռացիր, ակրտէր։

Եպիսկոպոսը, աւագերէցը, ամբոսակալը յօնքերնին բռստեցին։ Տէր Յուսիկ առանց վարանումի պատասխանեց.

— Մեր հազարաւոր տարիներու աղօթքներն են. մեր սուրբ հայրապետներուն գրած ծէսերն են։ Ի՞նչ, աս ժամը հայ քրիստոնէի ժամ չէ՞։

Ու հայաստանցին աչքերը խոլոր մոլոր ժուռ ածեց եպիսկոպոսին երեսը, քահանաներուն երեսը։ Բայց մը ամէնքն ալ հիազարհուր ցնցուեցան։ Այդ հրուտ նայուածքին մէջ Հայաստանի սպանական ցասումը կը ցոլար։ Թասմնեցաւ էֆէնտին ինքն ալ։ Մեղմաձայն հագագով մըն էր, որ պատասխանեց.

— Ան երանելիները ուրի՛շ ատեն կապրէին։ Հիմակ դարը ուրիշ դար է։ Սուրբ հայրապետները, մեռնինք նէ, անդին հոգիներուս փրկութեանը կօգնեն. սմա աստեղ մեզի չեն ազատեր։

Ու ինքզինքը զսպելով՝ հարցուց.

— Դուն հոս մնալո՞ւ եկար։

— Այնպէս է. ատեն մը մնալու եկեր եմ։

— Է, մնալու եկեր ես նէ, ան քու Տոմուզ գեղդ մոռցիր դէ, հոս խուզի գեղցի եղիր։ Աստուծով նորէն գեղդ երթաս նէ, հոն ինչ կուզես նէ, ան եղիր։ Հոս հէմ քեզի կընես, հէմ մեզի։ Հոս քաղաքագէտ ըլլալու է։ Ականջիդ օղ ըրէ աս պատուիրանը—Օրթագեղ՝ սկիզբն իմաստութեան երկիւղ Հասան փաշայի։

— Անանկ է, էֆէնտի, անանկ է. շա՛տ պատուական խրատներ, աղաղակեց ազնուաշուքներու խմբերգը միանուագ։

Եպիսկոպոսը միջամտութեան հարկ զգաց։

— Բայց, էֆէնտի, ինչ ընելու է, հարցուց դէմքը խոժոռած։ Աս Հասան փաշայ է, աս Հիւսէին փաշայ է ըսելով մեր եկեղեցական արարողութիւնները փոխելո՞ւ

ենք, ջնջելու ենք։ Եթէ հինգ հարիւր տարիէ ի վեր ատ քաղաքագէտ իմաստութեան դպրոցին աշակերտած ըլլայինք՝ այսօրուան օրս Հայաստանեայց եկեղեցի մնացած չէր ըլլար։ Գացող պանդուխտն ալ «ազատութիւնը» կըսէր, աւագերէց հայրն ալ երբ սպասաւորէ՝ կըսէ, ես ալ եթէ սպասաւորեմ, պիտի ըսեմ։

—Սրբազա՛ն, սրբազա՛ն, խեղճդ կանչէ որ տուն գայ, աղաղակեց էֆէնտին ըսել ալ կա՛յ, լսել ալ կա՛յ։ Երեսուն տարի է ես աս ժամն եմ. օր մը օրանց մէկերնիդ լսեցի՞ք որ ազատութիւնէն ետքը ժողովուրդը «ամմէն» պոռայ, «տէր ողորմեա» գոչէ։ Հէ՞։

Այս ուշագրաւ դիտողութեան վրայ մտածելու համար քանի մը րոպէ շնորհելէ յետոյ, տրտմաձայն մրմնջեց.

—Աս մէկ ամիս է ինչ կը դառնամ, չիյտէ՞ք։

Յուլիս տասնհինգի ակնարկութիւնը յուշարար ազդարարութիւն մըն էր. ազգին համար նոր ստեղծուած կացութեան ծանրութիւնը չմոռնալու զեկուցում մը։ Լրջացան երեսները, կարկեցան բերանները։

Էֆէնտին շուրջը աչք մը նետեց, դէմքերը այլափոխեալ տեսաւ։ Հոգ չէր. թող իրենք ալ քաշէին։ Կէս ժամէ ի վեր ինքն ալ կը տագնապէր իր իշխանութեանը դէմ ընդվզումի նշաններէն։ Կը զգար թէ իր ազդեցութեանը տըկարացումը Օրթագեղին աղետաբեր պիտի ըլլար։ Անգլուխ մնալով, իր թաղն ալ «անխոհեմութեան» պիտի մղուէր։ Ինքն իր մէջը փրկչի կոչում զգացողի գիտակցութեամբն էր, որ ուզած էր Օրթագեղը փորձանքի դէմ ապահովել։ Հիմակ որ ա՛լ նպատակին հասած ըլլար կը կարծէր, հարկ տեսաւ մեղմանալ։ Կապը կտրելու չէր. ուստի խօսքն անուշութեամբ պանդուխտին ուղղեց։

—Հիմա, տէր հայր, ինծի մտիկ ըրէ, որ ըսեմ, յայտարարեց։ Ես ամենէն աւելի նախանձախնդիրն եմ եկեղեցական արարողութիւններու, բայց «հարկը օրէնքը կը լուծէ» ըսել են։ Ու դառնալով միւս եկեղեցականներուն, աւելացուց։

—Ես քիչը կըսեմ, դուք շատը հասկցէք։

—Բայց ինչպէս ըլլալու է, էֆէնտի, հարցուց աւագերէցն անուշութեամբ։

—Ի՞նչպէս ըլլալու է, հիմակ ըսեմ, պատասխանեց էֆէնտին, ու տէր Յուսիկին դառնալով, իր հրահանգները տուաւ։

—Սա «առ»-ն ըսերնէդ կամացուկ մը կը հանես, հազալով մը։ Մարդ ենք, հազերնիս կը բռնէ. ան ալ մեղք չէ՞ եա։ «Զատ»-ը կուտես։ Կուտես տէրտէր, կուտես, չէ նէ ան մեզի կուտէ։ «Եղբարց մերոց»-ին հազդ քիչ մը կանցնի, «Գերելոց»-ին վրայէն, լփռելով։ Էֆէնտիմ, գերելոց ըլլալ չեն ուզեր նէ, թող խելքերնին գլուխնին կենան։ Փառք Աստծու, մենք ալ հայ քրիստոնեայ ենք, մեզի՞ ինչու գերելոց չեն ըսեր։ Էֆէ՛մ։

—Անանկ է եա, անանկ է եա, ձայնեց նորէն աշխարհականներու խմբերգը միանուագ, ու բարեխրատն ալ շարունակեց.

—«Եւ շնորհ յառաջիկայ»-ին եկա՛ր մի, քեզի խուլա՛ծ խուլա՛ծ իզին, պոռա ու պոռա. կուզես նէ թող ձանդ մինչև Շնորհք էֆէնտիին տունը հասնի։

Ընդհանուր քրքիջ մը պատասխանեց այս կատակաբանութեան, որ էֆէնտիին հանդարտացմանը բարեգուշակ նշանն էր։

—Հիմակ «ընտոր ըլլալու է»-ն սորվեցա՞ր եա, տէր հայր, ալ երթաս բարով։ Տէր ընդքեղ ըսելով հրահանգիչ էֆէնտին պանդուխտ քահանան արձակեց։

—Էֆէնտի, յայտարարեց տէրտէրը ոտքի ելլելով, ատանկ խօսքերէն ես բան մը չեմ հասկնար։ Սրբազանը եթէ կը հաճի թող հրաման տայ ու ալ կիրակի օրերը ես սպասաւորութիւն չընեմ։

—Է, էն աղէկն ալ ատ կըլլայ, քրթմնջեց էֆէնտին սրտնեղութեամբ։

Պանդուխտը եպիսկոպոսին առջև խոնարհութիւն ըրաւ, երկու քահանաներ առանձին ողջունեց, և աշխարհականներուն ալ ընդհանուր մէկ բարև մը տալով դուրս ելաւ։

«ԿԱՐՄԻՐ ԺԱՄՈՒՑ». Արփիար Արփիարեան

## 179. Ա Մ Պ Ը

Ա՛մպ լուսեղէն, ուր երազներս ապրեցան,
Երկինքին մէջ, լուսնին աշխարհն արծաթի, —
Ու քեզի հետ փըշրած կիյնան ցիր ու ցան.
Այդ փըշրանքէն տաք տաք արցունք կը կաթի։

Բաժնուելով քու շողերէդ մըտերիմ,
Հովերու բիրտ հարուածին տակ կը փըրթիս.
Կեանքդ երկինքն էր. հոգը կըլլայ քեզ շիրիմ,
Ուր թաղուեցան հուր տենչանքներն իմ սըրտիս։

Եւ կը ժըպտին վերէն արեւ ու եթեր
Մեր վիշտերուն անկարեկիր ու անփոյթ,
Փայփայելով թեւերուն մէջ նոր ամպեր,
Նոր սարսուռներ ու երազներ ջինջ կապոյտ։

Մինչ մենք գոհեր սիրոյ անհուն պապակին՝
Անձրեւ կուլաս դուն, ես արցունք ցաւագին։

Տիկին Սիպիլ

---

## 180. Խ Ո Ւ Ն Կ Ը

Խունկը կը ծըխի խորանին առջին.
Բուրվառին մեղմիկ ճօճումովն արծաթ
Մուխի վարանք մը պըլլըուած խաչին
Մըշուշով կօծէ սուրբերուն ճակատ։

Պաղատանքներու սարսուռներ երկայն
Կամարներուն տակ կը մարին տակաւ,
Մոմերու դըժգոյն բոցերը լալկան
Թըթթող աչքերով կը հիւան կարգաւ։

Սուրբ սիւներուն մօտ շըղարշ մը ճերմակ
Գաղտուկ հեծքերու դողով կերերայ,
Սիրտ մը փաթթըուած ըստուերով համակ
Խունկին պէս լըռին հըրայրքով կ'եռայ։

Խունկը կը ցընդի բուրվառին ծոցէն
Ու եթերն ի վեր կելլէ խոյանքով,
Նիւթ էր՝ բոյր կըլլայ լափուելով բոցէն
Իր կեանքը ցօղուած լոյսի երանգով։

Հէք կընոջ սիրտն ալ, որ հոն կը մըխայ,
Պիտի չազատի իր պատեանէն կուռ,
Մինչև որ հալի, լուծուի տարրանայ
Լափուելով բոցէն տենչերուն մաքուր[1])։

Տիկին Սիպիլ

---

181. ՄԻՕՋՕԹԻՍ (Անմոռնուկ)

Դեռ կը լըսուէր ծառին ետև
Սոխակին երգն այն գիշեր,
Վարդին թերթերն հով մը թեթև
Թուփերուն տակ կը բըշէր։
Մինակ էի, լուռ և խոհուն,
Քունն աչքերէս կու տար խոյս,
Միտքըս կերթար հոն այդ պահուն,
Ուր կը թևեն սիրտեր կոյս։
Ու կիջնէի բարձունքէն վար,
Միտքս դատարկ, սիրտս սին։
Չի երկնքի լոյսերն հազար
Հոգւոյս ոչինչ կը խօսին։
Գըրքի մէջ մը բացի իսկոյն
Ինձ համար շատ թանկագին,
Եւ լեցուեցաւ հոգիս անհուն
Արցունքներով դառնագին։
Փունջը գըտայ, ոհ, փունջն այն սուրբ
Այն պաշտելի ձեռքին ձօն
Եւ կարդացի գիրերով նուրբ
«Զիս մի մոռնար» գրուած հոն։

---

[1]) Այս ոտանաւորների նիւթը համեմատեցէք Ահարոնեանի «Մայրերն»-ի հետ։ Ցոյց տուէք նմանութիւնն ու տարբերոյթը՝

Ծառն ունէր շուք, երկինք՝ նըշոյլ
Լըճակին մէջ սարսըռուն,
Ուր կը պարէր սիւզն հեզասոյլ
Հետ եթերին կայծերուն,
Այլ, ո՛ւր իր ձեռն, ո՛ւր իր պատկեր,
Ո՞ւր սիրող սիրան այդ տաքուկ,
Ո՞ւր սև աչերն իր լուսայեռ,
Ո՞ւր անուշ ձայնն իր փափուկ։
Արդ կը ծածկէ ցուրտ գերեզման
Ձեռքն որ տըւաւ այդ նըւէր.
Սիրան, որ ըզգաց, ո՜հ, շա՜տ այնքան,
Հողերուն տակ է սառեր։
Եւ դուն հոս ես, միօղօթիս,
Ո՜վ իր սիրոյն սի՛ն պատկեր,
Անոր սըրտէն ինձ կը խօսիս,
Մինչ իր շըրթունքն է լըռեր։
Տիկին Սիպիլ

---

## 182. ՁԿՆՈՐՍ

Տիրան մտաւ ծառի սաուերին մէջ ու աջ թեւովբունը գրկած, ճակատը յենեց երկու ճիւղերու միացման անկիւնին. և այդպէս կէս մը հողին, կէս մը ծառին, կէս մըն ալ դատարկութեան վրայ առկախ՝ անշարժ մնաց։

Վարը, ափին մօտիկ, ցիր-ցան չեչոտ ժայռերու շըրջանակի մը մէջ ձկնորսի փոքրիկ նաւակ մը կեցած էր։

Տիրան անսովոր հետաքրքրութեամբ մը կլանուած՝ իր բարձունքէն կը դիտէր ձկնորսին գզգզուած մօրուքը, այրուած դէմքը, ճերմակ մազերը, բաց թաւ կուրծքը, մինչև սրունքները բոբիկ ոսկրուտ ոտքերը, մաշուած ու թաց շալւարին լայն ծալքերը ու կարկտուած մինթանին դոյնըզգոյն կտորները։

Ծերուկը կըծռէր, կեռնէր, կը կըծկըւէր. Թեթև վարպետ շարժում մը — և ուռկանը բացուող հովհարի մը պէս

կը փռուէր օդին մէջ. չը՛ափ. ու կապարէ գնդակներու շրջանակը կանձրևէ ջուրին վրայ, իրեն հետ ցանցը դէպի յատակը քաշելով։

Երբեմն պարապ կ'ելնէր ուռկանը, երբեմն քանի մը ձուկ, որոնք ճարպիկութեամբ կը բռնէր ալիքը ու կը նետէր նաւակին խորը, ուր ծովուն ջուրը ներս էր ծծուեր ու թեթև մը կօրօրուէր։

«Երկու ձուկ, չէ՛, երեք է». «Հը՛, քարին տառու», «Մեղճ ծերուկ, յոգներ է», «խեչափառ, խեչափառ»։ Եւ ուրիշ ոչինչ մտածել չէր ուզեր։

Մտածումներու այս արուեստական սպանումէն այն ատեն միայն սթափեցաւ, երբ ձկնորսը ուռկանը նաւակին քիթը փռեց, թիերը ձեռք առաւ, ու քանի մը ճարպիկ շարժումով ժայռերու մէջէն դուրս ելաւ ու մտաւ փոքրիկ հրուանդանին ետևը։

Տիրան նայեցաւ շուրջը. արևը հորիզոնին կը քսուէր։ Ժամեր էին անցեր։

Հեռացաւ ծառէն և յարմար տեղէ մը ուրիշներու ոտքի հետքերէն օգտուելով բարձր ափէն իջաւ ծովուն եզրը աւազին վրայ, ուր արդէն բոլորովին ստուերին մէջ էր։

Անգամ մը-երկու գնաց որ եկաւ խիճերուն մէջ ձեռքի գաւազանովը ծովափի թաց փոքրիկ քարերը խշրտեցընելով։ Վերջը ջրերու գիրկէն դուրս նետուող տափակ ժայռերու վրայէն մէկն միւսը ցատկելով բաւական հեռացաւ եզերքէն։ Ծունկի եկաւ, ու սկսաւ փայտովը ժայռի թաց ու մամռոտ եզերքին փակած ոստրէ մը փրցընել։

Պինդ էր. գաւազանին ծայրը քարին ու կենդանիին մէջ անցուցած բոլոր ուժովը աշխատելու վրայ էր, երբ իրէն քիչ մը հեռու ծովուն մէջ բան մը ճողբեց և ջուրի կաթիլներու ամբողջ մանեակ մը շարուեցաւ իր դէմքին, գլխուն ու կրծքին վրայ։

Շանթ

## 183. ԹՈՒՂԹ ԲԱՑ ԱՆՈՂ ՄԱՅՐԸ

Թանձր ու թուխ ամպերը առեր էին երկինքը։ Եւ իրիկունը թէև այնքան ուշ չէր դեռ, բայց պարտէզը ծառերուն տակ մութի նուրբ քող մը տարածուած էր արդէն ամպերէն ծորող. մանաւանդ հսկայ չինարի երկար ու խիտ ոստերուն ներքեւ։

Հոդ, ճիշտ ծառի բունին կից, լայն գորգի մը վրայ ծալապատիկ կուչ էր եկեր պառաւը ու հնար եղածին չափ ինքն իր վրայ կըքած՝ ձեռքի խաղաթուղթերը կանոնաւոր տողերով իրարու տակ կը շարէր. դանդաղ լուռ, լուրջ, խորհրդաւոր ու թեթեւ մը դողացող ձեռքով։

Թուղթ կը բանար։

Իր աջ կողմը ամբողջ հասակովը դէմքին վրայ փըռուեր էր Հրանտ. և թև ու կրծքով բարձի մը մէջ խրած ուշադիր կը հետևէր մօրը ձեռքերուն։

— Նայէ, բաղդը նորէն թեւդ տակ ինկաւ. նկատեց կինը նոր բացած թուղթը մատնանիշ ընելով։ Բաղդաւոր տղաս. մինակ գլխուդ վրան քիչ մը նեղութիւն կայ. աս աղուոր չէ. մէկ ալ չեմ հասկընար սա երկու չէկերը քեզմէ ինչ կուզեն. սա չէկ մարդը ու սա չէկ կինը, որ ձախ կողմէդ չի հեռանար. չէկերէն զգոյշ եղիր, մանչս. ամեն կնկան ականջ մի կախիր. Աստուած պահէ քեզի անոնց փորձանքէն։

Հրանտ ժպտեցաւ. շատ աղէկ կը հասկընար մօրը ակնարկները։

— Իսկ ճամբորդելու մասին ոչինչ չե՞ն ըսեր թուղթերդ, հարցուց յանկարծ։

— Ի՞նչ ճամբորդել. դարձաւ կինը զաւակին՝ շեշտ անոր դէմքին գամելով աչքերը։

— Նա՛, չգիտե՞ս, դէպի չէկերու աշխարհը։

— Չէ՞ որ դեռ երկու-երեք ամիս ժամանակ ունիմ, կըսէիր։

— Այո. բայց, է՛, ո՞վ գիտէ, գործեր կրնար պատահիլ.

անակընկալ պատասխաններ, մարդ կըստիպուի շատպելու...

Բայց նշմարելով, որ մայրը անհանգստանալու սկսաւ, իսկոյն փոխեց տոնը.

—Իմ հարցուցածս ալ այդ է միայն, մարիկ. կուզէի գիտնամ, տեսնենք, թուղթերդ ինչ կըսեն։

—Ճամբա՛դ, ճամբադ դեռ շատ հեռուն է. տես, շարքին միւս ծայրը, ըսաւ պառաւը հաստատ ու վճռական։

—Հա՛. ուրեմն աղէկ։

Մայրը շարելը աւարտեց. երկու ձեռքերը ծրարու վրայ գոգը դրած՝ պահ մը լուռ սկսաւ դիտել խորին ուշադրութեամբ առջևը փռուած թուղթերուն գաղտնիքը. և քիչ մը վերջը սկսաւ նորէն հատիկ-հատիկ մեկնել.

—Ինչպէս ըսի գլխուդ վերի դին շատ մամըռուտ կայ. մամըռուտքը սիրտ կը մաշէ, հաճելի բան չէ. և այդ մամըռուտներն ալ, նայէ՛ հեռուներէն կու գայ վրադ. տե՛ս. եթէ անգամ մը ձեռք վերցնէիր այդ հեռուներէն։ Ուրիշ բան մըն ալ, որ չեմ հաւներ, տես, չորս դիդ բոլոր ուրիշ գոյնի թուղթեր են. կարծես օտար, պաղ շրջանակի մը մէջ, որ քու գոյնիդ չի յարմարիր։

—Է՛, ինչ վնաս ունի, մայրիկ. աւելի աղէկ. զանազան գոյները իրարու քով աւելի սիրուն կերևայ։

—Կերևայ, այո։ Ա՛խ, զաւակս. մի խաբուիր. մարդ իր շրջանակէն դուրս գալու չէ։ Երջանիկը ան է, ով իր գոյնի մարդոց հետ՝ իրեն սովորական շրջանակին մէջը կը դառնայ։ Իր շրջանակէն դուրս շատ բան սիրուն կրնայ երևալ. միայն, հաւատա՛, ոչ իրեն համար։ Ամեն մարդ իր գոյնին մէջ։

Հրանտ, որ մինչև հիմա անփոյթ՝ ժամանցի համար միայն մօրը կը լսէր, վերջին խօսքերուն ակամայ բարձրացաւ քիչ մը բարձէն, ու աչքերը յամառ սևեռեց մօրը հանդարտ ու տխուր դէմքին, ուր վշտերն ու անցեալը յարմարուելու ու համակերպելու անջինջ դրոշմը զարկեր էին։

Առանց որդուն շարժմանը մասնաւոր ուշ դարձնելու կը շարունակէր ան իր գուշակութիւնները, որը աւելի իր

սրտէն քան Թուղթերէն կը կարդար։ Բայց Հրանտ ալ չէր լսեր ոչինչ։

Ամպերու ու ծառի խորհրդաւոր կէս-մութին տակ, շուրջի գաղջ ու ճնշող օդի լռութեան մէջէն մօրը հատու յստակ ու տրտում շեշտերը պատգամի մը պէս իր ուղեղն էր թափանցեր։

«Երջանիկը ան է, ով իր գոյնի մարդոց հետ, իրեն սովոր շրջանակին մէջը կը գտնուի»...

Ծը՛ղղ, տաք հովը յարձակուեցաւ յանկարծ ծառի թաւ-ճիւղերուն մէջ ու կիսաչոր, դեղնակարմիր տերևներու անձրև մը տեղաց վար. քանի մը հատը երերալկալով ու դողդող եկան նստեցան Թուղթերուն վրայ։

Շանթ

# ՌՈՒՍ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԻՑ

## 184. ՋՐԱՀԵՂՁԸ

Ներս վազեցին մանուկները
Ու կանչում են հօրն ըշտապ.
—Ա՛պի, ա՛պի, էկ, մեր թօռը
Մեռել հանեց գետի ափ.
—Սուտ էք ասում, չա՛ն լակոտներ,
Գոռաց հայրը ահաբեկ—
Ըսպասեցէք դուք հալա դեռ,
Մեռելն յետոյ կըտեսնէք։

—Դիւան կըգայ—Ջուղաբը տուր,
Ցաւի միջում կըմըրամ...
Հընար չըկայ. բե՛ր, ա՛յ կնիկ,
Շորերըս տուր, մի գընամ։
—Ո՞ւր է մեռելն։—Ա՛յ ապի, ա՛յ։
Ճիշտ որ գետի եզերքին,
Թաց թօռի մօտ, գետնի վըրայ
Տարածուած էր մի մարմին։

Զարհուրելի դիակն ուռել,
Կապուտկել էր այլանդակ.
Արդեօք տանջուած մի թշուառ էր,
Հանգիստ գըտած ջըրի տակ.
Մի գետակուր ձըկնորս էր այն,
Թէ գինեմոլ մի ջահէլ,
Թէ անըզգոյշ վաճառական
Հարամու էր պատահել...

Ընչի՞ն է պէտք. աչք ածելով
Ըշտապում է գիւղացին
Ոտից բռնած ետ քարշ տալով,
Ջուրն է տանում խեղդուածին։
Ու թիակով գետի եզրից
Ջուրը հրեց նա նըրան,
Ու դիակը գընաց նորից
Փնտրի խաչ ու գերեզման։

Մեռելն երկար ջրի միջին
Ցած էր իջնում ճօճելով,
Աչքով ճամբեց մեր գիւղացին
Ու տուն դարձաւ կանչելով.
—Դէսը կորէք, ա՛յ լակոտներ,
Եկէք, բան տամ ձեզ—ատնեմ,
Ամա թէ որ ձէն էք հանել,
Հոգիներըդ կըհանեմ։

Գիշերն ուժգին բուք վերկացաւ,
Գետն եռնում է, որոտում...
Մարխն արդէն այրուեց, հանգաւ
Լուռ ու ծըխոտ խըրճիթում։
Ողջ քընած են։ Անքուն պառկած
Միտք է անում գիւղացին...
Բուքն ոռնում է... մին էլ յանկարծ
Լուսամուտը բախեցին...

—Ո՞վ ես։—Ներս թող, ա՛յ տանտէր, ներս...
—Ա՛յ ներս ու քեզ չօռ ու ցաւ.
Ի՛նչ ես շըրջում կայէնի պէս,
Ո՞ր սատանէն քեզ բերաւ։
Ի՞նչ անեմ քեզ ասա, հիմի.
Տեղըս նեղ է, տանը մութ.
Ու ծոյլ ձեռքով, ըրթմնջալով
Բաց է անում լուսամուտ։

*Ցոլում է լոյսն ամպի տակից։*
*Ահա կանգնած... մի մերկ մարդ.*
*Ջուր է հոսում նըրա միրքից,*
*Բաց են աչերն ու անթարթ։*
*Կախ են ընկած բազուկները,*
*Ողջ կարկամած սոսկալի.*
*Ուռած մարմնին քառչանգները*
*Կըպած՝ սեւին են տալի...*

*Անից մարեց՝ ճանաչելով*
*Իր մերկ հիւրին նա յանկարծ.*
*Փեղկը զարկեց։ Նա դողալով*
*—Ա՜յ դու ճաքես, քըրթմըրնջաց։*
*Ամբոխուեցին մըտքերը մութ.*
*Մինչև լոյսը նա դողում,*
*Մինչև լոյսը լուսամուտ*
*Բաղխում էին ու բաղխում։*

*Ամբոխն անեղ զրոյց ունի,*
*Թէ այս դէպքից գիւղացին*
*Ըսպասում է ամեն տարի*
*Միշտ նոյն օրը խեղդուածին։*
*Խառնվում է օրն առաւօտից,*
*Գիշեր գալի բուք ու մութ,*
*Ու խեղդուածը ամբողջ գիշեր*
*Բաղխում դուռն ու լուսամուտ։*

ՊՈՒՇԿԻՆ. Թարգ. Յովհ. Թումանեան

## 185. ՍՊԻՏԱԿ ԶԳԵՍՏ

Անարգ, խայտառակ մահուան մատնուած,
Հունգարացի կոմսը շղթայակապ էր.
Նա օգնել ուզեց իր խեղճ հայրենեաց.
Հպարտութիւնը խիստ վրդովուած էր։
Նա ստրուկներին, հոգով ստորացած՝
Վաղուց անողորմ թշնամի դարձաւ,
Եւ միշտ կռուելով ընդդէմ այս չարեաց
Կոմսը կախուելու դատապարտուեցաւ,
Հազիւ նա եղաւ քսան տարեկան,
Բայց պիտի մեռնէր։ Մահը չարիք չէ,
Այլ սփոփիչ է վշտին հոգեկան։
Բայց մեռնել անարգ, խայտառակ մահով,
Կախաղան ելած, ծաղր ու ծանակով,
Դառնալ կերակուր սև ագռաւների—
Ահա նախատինք, չարիք սոսկալի։
Առաւօտը նա մօրը գրկելով,
Ասում էր արտում՝ «Մայր, մնաս բարով,
Ահաւասիկ ես միակ որդիդ,
Մատաղ հասակիս դատապարտուած եմ
Կարճ օրուայ կեանքից ես անջատուելուն.
Անհետ պիտ կորչին ինձ հետ իմ անունն
Եւ իմ պատիւը։ Խնդրում է որդիդ,
Մա՛յր, որ դու փրկես քո խեղճ զաւակիդ։
Ո՛չ պատերազմի փոթորիկներում
Ահ չեմ զգացել, ոչ ծխում, հրում.
Բայց վաղուան օրը ելած կախաղան,
Ես պիտի դողամ տերևի նման»։
Մայրը ասում էր, մխիթարելով՝
«Դէհ չվախենաս, սիրած զաւակս,
Ես պալատ կերթամ և աղերսելով,
Արցունք կըթափեմ. ես իմ լացովը
Արքայի սիրտը, գուցէ կը շարժեմ;

Եւ առաւօտը, երբ կը տանեն քեզ
Դէպի կախաղան, պատշգամբի վրան
Թէ սև զգեստով կանգնած լինիմ ես,
Գիտցիր, զաւակս, անխուսափելի
Քեզ մահ կը լինի։
Ո՛չ այդքէն, դու հսկայի նման
Յառաջ պիտի գընաս մահիդ յանդիման։
Հօ քո արիւնը հունգարական է։
Իսկ թէ սպիտակ շոր իմ վրաս տեսնես,
Գիտացիր, որ մայրդ իր արցունքներով
Զաւակի կեանքը դարձրեց ապահով։
Թո՛ղ դահիճներից դու բռնած լինես,
Բայց երբէք, որդեակ, չդողաս սարսափ։
Կոմսը գիշերը հանգիստ է լինում,
Եւ ամբողջ գիշերը մնում է քնած.
Իր երազներում նա մօրն է տեսնում,
Պատշգամի վրայ՝ սպիտակ շոր հագած։
Գուժկան զանգակի ձայնն է ղօղանջում,
Վազում են մարդիկ հանդարտ քայլերով
Եւ շրջապատուած պահապաններով
Շղթայած կոմսը առաջ է գնում։
Քանի-քանի աչք պատուհաններով
Արցունք են թափում կոմսի յետևից,
Ինչքան ձգտում են կանացի ձեռքեր
Վերջին բարևի նորան ծաղիկներ.
Բայց կոմսը ոչինչ բան չի նըկատում,
Դէպի հրապարակ է միայն նայում,
Այնտեղ պատշգամբում մայրըն է կանգնած.
Հանգիստ, անվրդով, սպիտակ շոր հագած։
Ո՜հ, կոմսի սիրտը թընդաց խիստ ուժգին.
Դէպի հրապարակ համարձակ քայլով
Ընթացաւ կոմսը, ժպիտն երեսին,
Անտրտում վերև բարձրացաւ փութով,
Զուարթ և ուրախ դահճի մօտ գընաց
Եւ մինչև անգամ կախուելիս ժըպտաց։

Բայց ինչո՞ւ մայրը սպիտակ էր հագուել.
Ո՜հ, խաբէութիւն։ Այսպէս կարող էր
Սուտ խօսել մի մայր, սոսկ բեկուած ահից,
Որ իր զաւակը չըսարսէ մահից։

Համեմատեցէք. Մայրերը և այս. Ոսկպարուհի մայրը, Տիրամայրը և Սուսանը. Սաքօն, կոմսը և Թրխատու. Ի՞նչ գաղափարների են ծառայում այս հերոսները. ո՞րն է նրանցից ամենամեծ հերոսը։

---

## 186. Մ Ո Ւ Ր Ա Ց Կ Ա Ն

Ես անցնում էի փողոցով... Ինձ կանգնեցրեց մի ծեր, հալից ընկած մուրացկան։ Աչքերն արտասուալից, ուռած ու կարմրած, շրթունքները կապտած, հագին լաթեր, մարմնի վրայ անմաքուր վէրքեր...

Օ՜, ինչ այլանդակ կերպով մաշել-կերել էր այդ անբախտ արարածին աղքատութիւնը։

Նա ինձ պարզել էր իր կարմրած, ուռած ու կեղտերով ծածկուած ձեռքը... Նա հառաչում էր, նա խեղդուած ողորմութիւն էր աղերսում։

Գրպաններս սկսեցի տակն ու վրայ անել... Բան չըգտայ—ո՛չ փող, ո՛չ ժամացոյց, ո՛չ էլ նոյն-իսկ թաշկինակ... Հետս ոչինչ չէի առել... իսկ մուրացկանը շարունակ սպասում էր... և նրա կարկառած ձեռքը թոյլ կերպով երերում ու ցնցւում էր։

Ինքս ինձ կորցրած, շփոթուած՝ ես ամուր սեղմեցի այդ դողդոջուն, այդ կեղտերով ծածկուած ձեռը... «Թողութիւն արա, եղբա՛յր, ես ոչինչ չունիմ»։

Մուրացկանն իր կարմրատակած աչքերը յառեց վրաս. Նրա կապտած շրթունքները քմ՚ծիծաղ տուին, և նա էլ իր կողմից պինդ սեղմեց իմ սառած մատները։

«Է՛հ, ի՞նչ արած, եղբա՛յր.—ծամծմեց նա.—դրա համար էլ շնորհակալ եմ. այդ էլ մի ողորմութիւն է, եղբա՛յր»։

Ես հասկացայ, որ ինքս էլ ողորմութիւն ստացայ իմ եղբօրից։

Տուրգենեւ

## 187. Ա Ղ Ա Ւ Ն Ի Ն Ե Ր

Ես կանգնած էի սեպացած բլրի գագաթին։ Իմ առաջ մերթ ոսկեփայլ, մերթ արծաթափայլ շողշողում էր ծովի պէս սփռուած հաճարի հասուն արտը։ Բայց այդ ծովը չէր ծփում. նրա երեսին չէին խաղում անհանգիստ ալիքներ։ Օդը խեղդուկ ու անշարժ էր և գուշակում էր մի մեծ փոթորիկ։

Իմ շուրջը դեռ ջերմ ու աղօտ լոյս էր սփռում արեգակը. բայց այնտեղ, արտի այն կողմը, ոչ այնքան հեռու, մուգ-կապոյտ ամպակոյտը բռնել էր երկնակամարի ամբողջ կէսը։

Ամեն ինչ շունչը կտրել... ամեն ինչ թալկացել, նուաղում էր արևի վերջին չարագուշակ ճառագայթների տակ։ Չէր երևում ոչ մի թռչուն, ոչ էլ գէթ ձայն էր լսւում։ Ծնծղուկներն անգամ թաղ էին կացել։ Միայն մի տեղ, մօտերքում, ջրածաղկի մենաւոր, խոշոր տերևը յամառ կերպով շրշիւն ու շշուկ էր բարձրացնում։

Ափսինգի սաստիկ բուրմունքը բռնել էր հանդերը։ Ես նայում էի կապտագոյն ամպակոյտին... և սիրտս խռովւում, նեղանում էր։ Դէ՛, շո՛ւտ արա, մտածում էի ես. փայլի՛ր, փայլատակի՛ր. ո՛վ ոսկի օձ, ճայթի՛ր, դղրդա՛, ո՛վ որոտ. շարժուի՛ր, գլորուի՛ր, երկի՛ր թափուի՛ր՝ ո՛վ չարագէտ ամպակոյտ, վե՛րջ տուր այս թախծալի հեծութեանը։

Բայց ամպակոյտն անշարժ էր։ Նա առաջուայ պէս ճնշում էր լուռ ու մունջ երկիրը... և միայն կարծես աւելի ուռչում, մթնանում էր։

Ահա նրա միագոյն, կապուտակ երեսին մի բան սպիտակին տալով՝ սահուն ու հաւասար սլացաւ առաջ. սլացողը կարծես մի սպիտակ թաշկինակ կամ ձիւնի քուլայ լինէր։ Բայց դա մի սպիտակ աղաւնի էր, որ թռչում էր գիւղի կողմից։

Նա թռա՛ւ, թռա՛ւ, միևնոյն ուղղութեամբ... և սուզուեց անտառի յետևը։

Անցաւ մի քանի վայրկեան։ Նոյն անողոք լռութիւնը

